# ԺԵ ԴԱՐԻ ՀԱՅԵՐԵՆ ՁԵՌԱԳՐԵՐԻ ՀԻՇԱՏԱԿԱՐԱՆՆԵՐ



ՄԱՍՆ

Բ

ԵՐԵՎԱՆ

ИНСТИТУТ ИСТОРИИ АКАДЕМИИ НАУК АРМЯНСКОЙ ССР

МАТЕРИАЛЫ ПО ИСТОРИИ АРМЯНСКОГО НАРОДА
КНИГА ВОСЬМАЯ

# ПАМЯТНЫЕ ЗАПИСИ АРМЯНСКИХ РУКОПИСЕЙ XV ВЕКА

## ЧАСТЬ ВТОРАЯ
## (1451—1480 гг.)

*Составил*
*Л. С. ХАЧИКЯН*

ИЗДАТЕЛЬСТВО АКАДЕМИИ НАУК АРМЯНСКОЙ ССР
ЕРЕВАН
1958

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱՅԻ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԻՆՍՏԻՏՈՒՏ

ՆՅՈՒԹԵՐ ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ
ԳԻՐՔ ՈՒԹԵՐՈՐԴ

9(47.925)
Խ...

ԺԵ ԴԱՐԻ

# ՀԱՅԵՐԵՆ ՁԵՌԱԳՐԵՐԻ
# ՀԻՇԱՏԱԿԱՐԱՆՆԵՐ

ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ
(1451—1480 թթ.)

*Կազմեց*
*Լ. Ս. ԽԱՉԻԿՅԱՆ*

A 38



ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱՅԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
ԵՐԵՎԱՆ 1958

# ԵՐԿՈՒ ԽՈՍՔ

ԺԵ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարանների սույն ժողովածուն 1955 թվականին հրատարակված առաջին մասի, որի մեջ ընդգրկված էին 1401—1450 թթ. Հիշատակարանները, անմիջական շարունակությունն է կազմում: Սկզբից մտադրվել էինք երկրորդ հիսնամյակի բոլոր հիշատակարանները տալ մի հատորով, սակայն, նկատի ունենալով նյութի առատությունը, նպատակահարմար գտանք այս հատորի մեջ ընդգրկել 1451—1480 թթ., իսկ երրորդ հատորի մեջ՝ 1481—1500 թթ. հիշատակարանները:

Այս հատորի ընդարձակ առաջաբանը, նվիրված ԺԵ դարի երկրորդ կեսի քաղաքական ու սոցիալ-տնտեսական կյանքի պատմության հարցերին, վերաբերում է նաև երրորդ հատորի ժամանակաշրջանին, այդ իսկ պատճառով երրորդ հատորը ունենալու է միայն տեխնիկական բնույթի համառոտ առաջաբան:

Բացի 1481—1500 թթ. հիշատակարաններից, երրորդ հատորում հրատարակվելու են ԺԵ դարի անթվական հիշատակարանները, ինչպես նաև, որպես հավելված, մի շարք արժեքավոր հիշատակարաններ, որոնք ինչ-ինչ պատճառներով դուրս են մնացել ԺԴ և ԺԵ դարերի հիշատակարանների արդեն հրատարակված ժողովածուներից:

Լ. Խ.

# ՀԱՅԱՍՏԱՆԸ ԺԵ ԴԱՐԻ ԵՐԿՐՈՐԴ ԿԻՍԱՄՅԱԿՈՒՄ

(Առաջաբանի փոխարեն)

## 1

## *ՀԱՄԱՌՈՏ ԱԿՆԱՐԿ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԿՅԱՆՔԻ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ*

*ԺԵ դարի երկրորդ կեսը հայ պատմագրության ամենաամուլ շրջաններից է. այդ հիսնամյակի պատմությունը հնարավոր է շարադրել հիմնականում հայերեն ձեռագրերի հիշատակարանների ընձեռած նյութերով։*

*Այդ աշխատանքն առաջին անգամ փորձեց կատարել Միքայել Չամչյանը ԺԸ դարի 80-ական թվականներին։ Սակայն, ձեռքի տակ ունենալով 1451—1500 թթ. ընթացքում շարադրված այժմ հայտնի մեկ հազարից ավելի հայերեն հիշատակարաններից միայն մի քանիսը, ինչպես նաև հիմնական ուշադրությունը դարձնելով մահմեդական իշխողների միմյանց դեմ մղած պատերազմների պատմության ու հայ կաթողիկոսների հաջորդականությունը պարզելու հարցերի վրա, Չամչյանը, փաստական որոշ նյութ հավաքելով հանդերձ, չկարողացավ հաջողությամբ լուծել իր առջև դրած խնդիրը (տե՛ս «Պատմութիւն հայոց», հատոր Գ., Վենետիկ, 1786, էջ 497—511)։*

*Հաջորդ քայլն այս ուղղությամբ կատարվեց Չամչյանից մեկ դար հետո, բազմավաստակ հայագետ Ղ. Ալիշանի կողմից։ 1890 թվականին լույս տեսավ նրա «Այրարատ» ծավալուն աշխատությունը, որի դրվագներից մեկը («Թուրքման տիրապետողք ի Հայս ի ԺԵ դարու» խորագրով) նվիրված է հենց ԺԵ դարի քաղաքական պատմության հարցերին (տե՛ս «Այրարատ», էջ 321—330)։ Օգտագործելով մի շարք կարևոր հիշատակարաններ, Ալիշանը այդ դրվագում կարողացել է հիմնականում ճիշտ լուծել թուրքմեն տիրապետողների ժամանակագրությունը, որոշ դեպքերում անդրադառնալով նաև նրանց տիրապետության տարիներին տեղի ունեցած քաղաքական կարևոր անցուդարձերին։ Այնուհանդերձ, այդ շարադրանքը ևս չէր կարող հիմք ծառայել ԺԵ դարի երկրորդ հիսնամյակի գիտական պատմության համար, թեկուզ և այն պատճառով, որ մեզ հետաքրքրող ժամանակաշրջանին այստեղ նվիրված է ընդամենը 3 էջ (6 սյունակ)։*

*ԺԵ դարի պատմության մշակման գծով լուրջ ու արդյունավետ աշխատանք ծավալվեց վերջին տասնամյակում սովետահայ պատմաբանների կողմից։ Հանգուցյալ ակադեմիկոս Հ. Մանանդյանը «Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության» մեծարժեք մենագրության Գ. հատորում, օգտագործելով տպագրությամբ իրեն մատչելի հայերեն ձեռագրերի հիշատակարանները, ինչպես նաև ռուս արևելագետներ Վ. Մինորսկու և Ի. Պետրուշևսկու արժեքավոր*

ուսումնասիրությունները, ավելի հանգամանորեն քան նախորդները կանգ առավ Կարա-Կոյունլու և Աղ-Կոյունլու քոչվորական ցեղերի տիրապետության տակ հեծող հայ ժողովրդի պատմության հարցերի վրա և տվեց այդ շրջանի քաղաքական և սոցիալ-տնտեսական կյանքի կոնսպեկտիվ, բայց ընդհանուր գծերով ճշմարտացի նկարագիրը։ Ցավոք, ակադ. Հ. Մանանդյանի հիշյալ աշխատության Գ. հատորի բնագիրը հրատարակվեց որոշ հապավումներով (հատկապես իր վերջին մասում), ուստի նրա ԺԵ դարի պատմության շարադրանքը մինչ օրս անմատչելի է ընթերցողներին։ Ակադ. Մանանդյանն իր «Քննական տեսության» Գ. հատորի առաջաբանում դրել է. «Գիտական լրիվ ուսումնասիրությունն այս դարերի պատմության (ի նկատի ունի ԺԱ—ԺԵ դարերը—Լ. Խ.) հնարավոր կլինի, անշուշտ, այն ժամանակ, երբ հրատարակված կլինեն այս ժամանակներին վերաբերվող բոլոր վիմական արձանագրությունները, հայերեն ձեռագրերի... հիշատակարանները, հայ և օտար չհրատարակված սկզբնաղբյուրները ու նյութական կուլտուրայի անհայտ մնացած հուշարձանները» (Հ. Մանանդյան, Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, հատոր III, Երևան, 1952, էջ 9—10)։

Բարեբախտաբար այժմ արդեն այդ աշխատանքի մի զգալի մասը կատարված է։ 1951 թվականին լույս տեսավ Վ. Հակոբյանի «Մանր ժամանակագրություններ (13—18-րդ դդ.)» աշխատության առաջին հատորը, իսկ 1956 թ.— երկրորդը։ 1955 թվականին տողերիս գրողի աշխատությամբ հրապարակվեց «ԺԵ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ» ժողովածուի առաջին մասը, 1401—1450 թթ. հիշատակարաններով, 1956 թվականին հրատարակվեց նաև «Մատենադարանի պարսկերեն վավերագրերը» աշխատության առաջին պրակը, ԺԵ—ԺԶ դարերի հրովարտակների բնագրերով և հայերեն ու ռուսերեն թարգմանություններով (կազմող Հ. Փափազյան) և այլն։ Սույն ժողովածուի հրատարակությամբ, որի մեջ ամփոփված են 1451—1480 թթ. հայերեն ձեռագրերի հիշատակարանները, հնարավորություն է ստեղծվում արդեն, շատ ավելի բազմազան ու բովանդակալից նյութերի հիման վրա, քան մատչելի էր նախորդ ուսումնասիրողներին, անդրադառնալ հայ ժողովրդի պատմության ԺԵ դարի երկրորդ հիսնամյակի պատմության հարցերին։

Ձեռնարկելով այդ աշխատանքին, Առաջաբանին հատկացված էջերի նեղ սահմաններում, հույս ունենք, որ ոչ միայն կդյուրացնենք ժողովածուի նյութերից օգտվող մասնագետների աշխատանքը, այլև զգալի չափով կնպաստենք հայ ժողովրդի պատմության ծանր ու մղձավանջային, միևնույն ժամանակ և դեպքերով հարուստ ու բովանդակալից այդ ժամանակաշրջանի գիտական մշակման գործին։

## Ա

ԺԵ դարի առաջին հիսնամյակը, ինչպես առիթ ենք ունեցել նշելու «ԺԵ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ» ժողովածուի առաջին մասի առաջաբանում, փակվեց հայ ժողովրդի համար անբարենպաստ պայմաններում։

Կարա-Կոյունլուների ընդարձակածավալ պետության գահակալ Ջհանշահը 1450 թվականին 60 հազարանոց մի բանակ էր հանել Աղ-Կոյունլուների դեմ։

Ջհանշահի զորքերը, ավարի ու ավերի մատնելով Աղ-Կոյունլուների տիրապետության տակ գտնվող Արևմտյան Հայաստանի նահանգները, գրավեցին

Երզնկան, գերեցին Կամախի, Դերջանի, Բաբերդի, Կեղիի և Սատաղի շրջաններից բազմահազար հայերի։

Այս դեպքերի մասին գրանցումներ են կատարել մի շարք հիշատակագիրներ՝ Գրիգոր գրիչը 1451 թվականին՝ Երզնկայում, Դավիթ եպիսկոպոսը 1453 և 1457 թթ. և ուրիշներ։ Հատկապես մանրամասն ու կարևոր է Դավիթ եպիսկոպոսի 1457 թ. հիշատակարանը, որի պատմական մասը իրավամբ դիտվել է որպես ժամանակագրություն և հրատարակվել Վ. Հակոբյանի «Մանր ժամանակագրություններ»-ի II հատորում (էջ 210—212)։

Ըստ այդ հիշատակարանի, Երզնկայի գրավումից հետո Ջհանշահը Միջագետք է ուղարկում իր նշանավոր զորավարներից Ռուստամ Թարխան-օղլուն։ «Եւ անտի,— գրում է Դավիթը,— առաքեաց զոմն զաւրագլուխ ի Միջագետս՝ Թրխան-Աւղլի անուն։ Եւ նա եկեալ գերեաց զԹիլգուրան, և աւերեաց զնա, և չարչարեաց զբազում քրիստոնեայս և նահատակեաց» (Մանր ժամանակագրություններ XIII—XVIII դդ., հատոր II, կազմեց Վ. Ա. Հակոբյան, Երևան, 1956, էջ 210։ Ստորև այս աղբյուրը վկայակոչում ենք ՄԺ համառոտությամբ)։

Այնուհետև Թարխան-օղլին պաշարում է Մերտին քաղաքը և 1451 թ. օգոստոսի 30-ին ապարդյուն գրոհով փորձում է գրավել այն։ Վեց օր հետո քաղաքացիներն ապստամբում են իրենց տիրոջ՝ Աղ-Կոյունլու Ջհանգիրի դեմ և քաղաքը հանձնում Կարա-Կոյունլուներին, որոնք սրի են քաշում ու կողոպտում բնակիչներին։ Տուժում են հատկապես հայերը. «Եւ կապուտ նշան եդիր ի վերայ քրիստոնէիցն և բազում չարիս արար,— գրում է այդ մասին Դավիթ եպիսկոպոսը,— զոր թէ գրէի մի ըստ միոջէ նա գիրք մի լինէր զինչ Եսայի քաղոսածս, և այլ շատ» (Նույն տեղում, էջ 210)։

Ջհանգիրի և Թարխան-օղլու միջև փոփոխակի հաջողությամբ մարտեր են տեղի ունենում նաև 1452 և 1453 թվականներին։ Կարա-Կոյունլուների զորքերը համալրվում են Ջհանշահի Մահմադ-Միրզա որդու զինական ուժերով, սակայն նրանց չի հաջողվում գրավել Ամիդ քաղաքը, ուր կենտրոնացել էր Ջհանգիրն իր հիմնական ուժերով։ 1453 թվականի զատկին Կարա-Կոյունլուների ու Ջհանգիրի միջև կնքվում է հաշտություն. Մերդինը վերադարձվում է Ջհանգիրին։ Այս քայլով Կարա-Կոյունլուները խորացնում են Աղ-Կոյունլու երկու եղբայրների՝ Ջհանգիրի և Ուզուն-Հասանի միջև սկսված գահակալական պայքարն ու երկպառակությունը, բռնելով Ջհանգիրի կողմը։ Այնուհետև Կարա-Կոյունլուները հարձակվում են Ուզուն-Հասանի վրա, այս անգամ ևս չունենալով զգալի հաջողություն։

Հինգ տարի տևող և Արևմտյան Հայաստանի աշխատավոր ժողովրդին ծանր տառապանքներ հասցրած պատերազմն ավարտվում է Կարա-Կոյունլուների համար, նոր տերիտորիաներ զավթելու առումով, ապարդյուն. «Եւ ոչինչ կարաց առնել, կամ զԱրղնի, կամ զԱմիթ, կամ զՄէրտին, այլ դարձաւ յաշխարհ իւր»,— գրում է Դավիթ եպիսկոպոսը Թարխան-օղլու մղած պատերազմի վախճանի մասին (տե՛ս այս ժողովածուի № 38 հիշատակարանը, էջ 31)*։ Թշնամի կողմերի միջև հաշտություն է կնքվում («արարին խաղաղութիւն ընդ միմեանս»). Կարա-Կոյունլուները վերադարձնում են նույնիսկ հայկական 4 գյուղերից գերևարած 500 բնակիչներին և այլն (Նույն տեղում)։

---

* Ստորև այս ժողովածուի հիշատակարաններից արված քաղվածքներին կից, փակագծերում, տալիս ենք միայն նրանց համարները և էջերը։

Պատերազմի նման վախճանը հազիվ թե հնարավոր լինի բացատրել Կարա-Կոյունլուների թուլությամբ։ Ամենայն հավանականությամբ Աղ-Կոյունլուների տիրույթների վրա կատարած այս արշավանքի (որին, ի դեպ, Ջհանշահն անձնապես չէր մասնակցում) հիմնական նպատակն էր ապահովել թիկունքը՝ Արևելքում մեծ մասշտաբի նվաճողական պատերազմներ վարելու համար։

Ջհանշահը Թամուրյան Շահռուխի վասալն ու դրածոն էր. ճաշակած լինելով թամուրյանների ռազմական ուժի զորությունը Շահռուխի ու իր եղբոր՝ Սքանդարի միջև տեղի ունեցած երկարատև ու Կարա-Կոյունլուների համար աղետաբեր բախումների ժամանակ, նա անհնազանդության նշաններ ցույց չէր տալիս Շահռուխի կենդանության օրոք։

Դրությունը, սակայն, փոխվեց Շահռուխի մահից (1447 թ.) հետո։ Ուլուբեկի կարճատև թագավորության ժամանակ Թամուրյան գահը դարձավ կռվախնձոր, տեղի ունեցան միջդինաստիական տարբեր խմբավորումների ուժեղ բախումներ, որից օգտվեցին քոչվորական ցեղերի ավագանիները՝ երկրի քաղաքական կյանքում իրենց վերապահելով ինքնիշխան դեր։ Թամուրյան երբեմնի հզոր պետության ուժերը շլատվեցին։

Ահա քաղաքական այսպիսի պայմաններում Ջհանշահը որոշեց օգտվել ստեղծված նպաստավոր դրությունից և նվաճողական պատերազմ սկսել Արևելքում։

1452 թվականին, զինական մեծ ուժերով, Ջհանշահը ձմեռեց Ոստանում. «Եկն Ջըհանշայ փաթշահն և ի յՈստան նստաւ բոլոր ձմեռ մի՝ բազում զօրօք»,— հայտնում է այդ մասին Գրիգոր գրիչը (հշտկ. № 25, էջ 21)։ Իսկ 1453 թվականի սկզբներին «Երկու հարիւր հազար հեծելով» Ջհանշահը ներխուժեց թամուրյանների տիրույթները (հշտկ. № 173, էջ 131)։ Լուրջ դիմադրության չհանդիպելով Կարա-Կոյունլուները նույն թվականին գրավեցին Պարսկական Իրաքը և Ֆարսիստանը, այսինքն ողջ Արևմտյան Իրանը։

Քաղաքական այս անցուդարձերին անդրադարձել են բազմաթիվ հիշատակագիրներ։

Այսպես, 1453 թվականին Վանում Ավետարան ընդօրինակող Վարդան գրիչը հայտնում է, որ ձեռագրի ընդօրինակությունը կատարել է «ի թագաւորութեան Ջհանշահ միրզին, որ յայսմ ամս գնաց ի Պարս՝ ի պատերազմ, և էառ զտունն Խորասանայ» (հշտկ. № 44, էջ 35)։ Հովհաննես գրիչը նույն թվականին մի Մաշտոց էր ընդօրինակում Վարագում, «Ի յաշխարհակալութիւն Ջիանշայ ղանին, նշանաւոր տարի, որ զՋաղաթի տեղիքն կալաւ՝ զՇիրազ և զԱսպահան և գայլ քաղաքնին» (հշտկ. № 45, էջ 35)։

Սպահանի գրավման մասին մանրամասնություններ է պատմում դեպքերից տարիներ հետո (1462 թ.) մի Հայսմավուրք ստացող ոմն Թումաշահ, Արճեշում շարադրած ընդարձակ ուկարևոր հիշատակարանում։ Նա հայտնում է, որ «Եւ [Ջըհանշահ փաթշահն] բազում հենիւք և անթիւ զօրօք, և գնացեալ եմուտ ի տունն Իրաղայ (=Իրաք), և զամենեսեան գրաւեաց ընդ ձեռամբ իւրով, և հասեալ ի մեծ քաղաքն Ասպահան, որ է Շօշ քաղաքն... որ էր ամուր և բազմամարդ։ Որոց ընդդիմացեալ նմա պատերազմեցան. և յաղթեալ նոցա՝ առ զքաղաքն, և զամենայն զօրսն սրոյ ճարակ տուեալ և ի սուր սուսերի մաշեալ՝ քանդեալ և աւերեալ. և զջուր գետոյն կապեալ ի վերայ քաղաքին, զի որք ի նըղմունս և ի ներքնատունս և ի դարանս մտեալ էին և թաքուցեալ՝ ամենե-

քեան ջրասոյզ հեղձամղձուկ եղեալ սատակեցան։ Որ և քաղաքն ամենայն տապալեցաւ ի վերայ նոցա, զի հողաշէն էր» (հշտկ. № 221, էջ 172)։

Գրավելով Արևմտյան Իրանը Ջհանշահը առանձին երկրամասերի իշխանությունը հանձնում է իր որդիներին. «Որդիքն [Ջհանշահի] թագաւորեալ նըստան ի Շիրազ և յԱսպահան և ի Քրման»,— հայտնում է Խաչատուր գրիչը Կտուց անապատում շարադրած իր հիշատակարանում (հշտկ. № 225, էջ 181)։

1455 թվականին Ջհանշահն արշավում է Բաղդադ, որտեղ իշխում էր իր եղբորորդիներից մեկը (տե՛ս V. Minorsky, Jihan-shah Qara—qoynlu and his Poetry (Reprindet from BSOAS, 1954, XVI, 2, p. 294): Բաղդադյան արշավանքի և հետագա քաղաքական անցուդարձերի մասին փոքր-ինչ ուշացած գրանցումներ է կատարել 1457 թ. Հովհաննես գրիչը Ցիպնա վանքում. «Ցայսմ ամի,— գրում է նա,— Ջըխանշայ ղան էառ զԲաղդատ, և Կ. (60) պարնութիւն կալաւ, և ԿՌ. (60.000) ոգի ի սուրն քաշեցին, և ԼՌ. (30.000) ջորեբեռն մալ ի Ղափանն տարան» (հշտկ. № 112, էջ 81)։

Բաղդադից դառնալու ճանապարհին Ջհանշահն անցնում է Բաղեշի, Մուշի և Խլաթի շրջաններով և, ի պատասխան Բաղեշի քուրդ ամիրի անհնազանդության, ավերածություն է գործում նշված վայրերում. վերցնում է մեծ ավար և գերում հայ բնակչությունից 1500 հոգի։ Այս մասին նույն Հովհաննես գրչի վերոհիշյալ հիշատակարանում կարդում ենք. «Եւ դարձեալ, արքանեակն սատանայի Ջխանշայ ղանն եբեկ ի վերայ Բաղըշու, Մշու և Ղլաթայ, առ՚ւ աւար արար և տարաւ ՌՇ. (1500) գերի՝ կին և տղայ և սարկաւագ. և զամէն գերի Շ. (500) թամուրի կու ծախին» (հշտկ. № 112, էջ 81)։

Ջսպելով ապստամբական տրամադրությունները Բաղդադում և Բաղեշի քրդական ամիրության սահմաններում, Ջհանշահը 1457 թվականին ձեռնարկում է արևելյան երկրորդ խոշոր արշավանքին։

Այս անգամ նա խորանում է դեպի արևելք և գրավում Թամուրյան տիրույթների զգալի մասը՝ Համադանը, Ռեյը, Ղազվինը, Գիլանը, Խորասանը և այլ «քաղաքս անթիւս». իսկ այնուհետև մտադրվում է գրավել նաև Թամուրյան պետության մայրաքաղաք Հերաթը («Եւ կամի երթալ Հրէ»)*։

1458 թվականի հունիս ամսին, պարտության մատնելով Թամուրյան գահի հավակնորդ Միրզա-Իբրահիմին, Ջհանշահը մտնում է Հերաթ։

Սակայն նվաճված անծայրածիր երկրները տևական ժամանակով իրենց ձեռքում պահելու համար Կարա-Կոյունլուները չունեին անհրաժեշտ ուժեր։ Շուտով Թամուրյան պետության մեջ դադարում են գահակալական կռիվները. սուլթան Աբու-Սաիդը, պարտության մատնելով գահի մյուս հավակնորդներին, գրավում է իշխանությունը և դեսպաններ առաքելով Ջհանշահի մոտ, պահանջում է նրանից վերադառնալ Ադրբեջան։ Ջհանշահին, որն այդ օրերին լուր էր ստացել իր Հասան-Ալի որդու գլխավորությամբ Ադրբեջանում ծագած ապըստամբության մասին, այլ բան չէր մնում, քան հաշտության դաշինք կնքելով Աբու-Սայիդի հետ՝ հրաժարվել Արևելյան Իրանում կատարած նվաճումներից։

Հասան-Ալին բանտարկված էր Մակվի բերդում։ 1458 թվականին նա, ինչպես հաղորդում է Բաղիշեցի մի գրիչ՝ «Ելաւ ի զընտանէն և էառ զԹավրէզ»

---

* Այս և նախորդ արշավանքի ընթացքում Ջհանշահի կատարած նվաճումների թվարկում գտնում ենք մի շարք հիշատակարաններում։ Տե՛ս, օրինակ, հշտկ. № 111, էջ 79, № 118, էջ 86 և այլն։

(Հշտկ. № 136, էջ 101)։ Ապստամբ ամիրդադայի շուրջն են խմբվում Աղ-Կոյունլուներին գործակցած լինելու մեղադրանքով Ջհանշահի կողմից բանտարկված մի շարք ավագանիներ ու զորահրամանատարներ՝ Ղլիճ-Ասլանը, Արապշահը և այլք։

Ղլիճ-Ասլանը 1439—1445 թթ. հիշատակարաններում ու այլ աղբյուրներում կոչվում է Վանի և Ոստանի «կողմնապետ», իսկ Արապշահը Ջհանշահի կողմից կարգված էր Երզնկայի կառավարիչ։ 1456 թվականին Աղ-Կոյունլու Ջհանգիրը, կրկին անգամ գժտվելով իր Ուզուն-Հասան եղբորից, զինական օգնություն էր խնդրել Ջհանշահից։ Վերջինս, ուրախությամբ ընդառաջելով Ջհանգիրին, Դավիթ եպիսկոպոսի վկայությամբ՝ «ետ նմա զԵզնկայ քաղաքն և ասաց նմա գնալ յԵզնկայ և զԱրապշայ պակն, որ յԵզնկայ էր, առնուլ ընդ իւր և երթալ պատերազմել ընդ Հասան պակն» (Մժ, II. 211)։

Արապշահը, սակայն, չենթարկվեց Ջհանշահի կարգադրությանը. նույն աղբյուրի տվյալներով նա «ոչ իշխեաց դալ պատերազմել ընդ Հասան պակն» և խույս տալով գնաց Ջհանշահի մոտ։ Ջհանգիրը իր Ուայիս-բեկ եղբորն ուղարկելով Ջհանշահի մոտ՝ գանգատվեց Արապշահից. «Եւ Ճհանշահն,— շարունակում է իր պատմությունը Դավիթ եպիսկոպոսը,— զԱրապշահն թալանեց և զնդանեց, և փոխանակ Արապշէին եկ Ճհանկրին այլ հեծելս (նույն տեղում)։

Նոր առաքված զորքերի հրամանատարներն էին՝ Ռուստամ Թարխան-օղլին, Ալիշաքար բեկն իր որդու հետ և Փիրի-բեկը։ Ջհանգիրը Կարա-Կոյունլուներից ստանալով զինական այս օժանդակությունը, ճակատեց Ուզուն-Հասանի դեմ, սակայն նրա զորքի մի մասը անցավ Ուզուն-Հասանի կողմը, մյուս մասը լքեց պատերազմի դաշտը, իսկ Կարա-Կոյունլու զորապետները կրեցին խայտառակ պարտություն։ Ռուստամ Թարխան-օղլին գերվեց ու սպանվեց, մյուսները (բացի Փիրի-բեկից) նույնպես գերվեցին ու բանտարկվեցին Ուզուն-Հասանի կողմից։ Այս բոլորից հետո միայն Ջհանգիրը հնազանդվեց իր եղբորը և նրա մոտ «հեծելքաշ» ուղարկեց իր Սուլթան-Համզա որդուն (նույն տեղում, էջ 211—212)։ Աղ-Կոյունլու երկու եղբայրների միջև ծագած գահակալական պայքարը Կարա-Կոյունլուները չկարողացան խորացնել և օգտագործել ի նպաստ իրենց։

Հասան-Ալին հոր դեմ ապստամբություն բարձրացրեց հենց Ուզուն-Հասանի այս հաղթանակից հետո։ Հասան-Ալու ապստամբության ու հարակից դեպքերի մասին ուշագրավ տվյալներ են գրանցված ոստանցի խոջա Աբդլ-Ազիզի կողմից 1459 թվականին ձեռք բերված Ճաշոցի հիշատակարանում, որի սկզբի մասը, ցավոք, վնասվել ու դարձել է անընթեռնելի. պահպանված մասից ավելորդ չենք համարում մեջ բերել մեզ հետաքրքրող հատվածը. «...Վասն ծովացեալ մեղաց մերոց,— գրված է այնտեղ,— արձակեցաւ ի յերկաթոյն (խոսքը Հասան-Ալու Մակվի բերդից ազատվելու մասին է — Լ. Խ.) և բազում աւեր արար քաղաքաց, և զինչ բռնած կայր հօրն ազատեաց՝ զՂլիճ-Ասլանն և զորդին իւր (հավանաբար՝ Սեիդ-Ղասում — Լ. Խ.), զԱրապշէն և զորդին նորա. և ժողովեաց առ ինքն, և արար իւր բազում հեծելս։ Եւ յետոյ առաքեաց զՂլիճ-Ասլանն ի վերայ Վանայ բերդին, զի առցէ զնա, և ոչ կարաց։ Եւ ապա խորհուրդ չար արար վասն երկրիս մերոյ, և արար շատ աւեր և թա[լան]» (Հշտկ. № 154, էջ 117)։

Օգտվելով խառնակ այս դրությունից Աղթամարը գրավելու և կողոպտելու անհաջող փորձ է կատարում քրդական Ռոժիկ ցեղի ավագանիներից մեկը՝

Սեիդ-Ալին։ Զինված իր հրոսակախմբով, ունենալով երկու լաստանավ, նա 12 օր շարունակ սպասում է կղզու դիմաց-ցամաքում գտնվող Ախավանց գյուղում՝ Աղթամար թափանցելու, «զամենեսեան ի սուր սուսերի մաշելու» և «զսրբութիւնս գերի վարելու» մտադրությամբ։

Զաքարիա կաթողիկոսը, սակայն, իր ուժերով պատերազմում է նրա դեմ, գրավում է նրա լաստանավերը և փրկում Աղթամարը կողոպուտից (հշտկ. № 154, էջ 117)։ Այնուհետև, լուր ստանալով Ջհանշահի վերադարձի մասին, գնում է ընդառաջ, հանդիպում նրան Խոյ քաղաքում և պատմում «զաւերումն աշխարհիս»։ Ջհանշահը «բազում զօրօք» արշավում է անհնազանդ իր որդու վրա։ 1459 թվականին ճնշվում է Հասան-Ալու գլխավորած ապստամբությունը։

Զաքարիա կաթողիկոսի և Ջհանշահի վերոհիշյալ տեսակցության մասին կարևոր տվյալներ են գրանցված իրեն՝ Զաքարիայի նորահայտ մի կոնդակի և արճիշեցի խոջա Թումաշահի արդեն մեզ ծանոթ հիշատակարանի մեջ։

Զաքարիայի կոնդակը օգտագործված է Պետ. Մատենադարանի № 4779 ձեռագրի մեջ որպես պահպանակ և հասել է մեզ թերի վիճակով։ Կոնդակն ուղղված է ինչ-որ թեմի բնակչությանը, եկեղեցական տուրքերի հավաքման նպատակով այնտեղ նվիրակներ ուղարկելու առնչությամբ։ Սկզբում Զաքարիան ծանուցում է իր հոգևոր հոտին, որ ինքը կարևոր ծառայություններ մատուցած լինելով Ջհանշահին, բարձր պատիվների է արժանացել նրա կողմից և ստացել էջմիածնի կաթողիկոսական աթոռն ու Գր. Լուսավորչի աջը։ Դժբախտաբար կոնդակի հենց այն տողերն են տուժել, որտեղ կաթողիկոսը տվյալներ է գրանցել իր քաղաքական գործունեության մասին։ Պահպանված տողերից հնարավոր է լինում պարզել, որ ինչ-որ մարդիկ (հավանաբար Հասան-Ալու գլխավորությամբ ապստամբածները), «Կամէին սպանանել զինքն և զիւր մարդիկն»։ Զաքարիան, տեղեկանալով այդ վտանգի մասին, ինչ-որ ճանապարհներով կարողացել է խափանել նրանց մտադրությունը։ «Մեք էլ,— գրում է նա,— ի մէջ մտաք և ի մեղանէ ԲՃՌ. (200.000) դեկան ելաւ՝ խլըսեցի զիւբեանքն ի մահուանէ։ Փատշահն, [որ] տեսաւ ասաց՝ Երբ դու էնց լաւ մարդ ես էջմիածին [և] աջն քեզ» և այլն (էջ 173, տողատակ)։

Հայտնի է, որ էջմիածնի կաթողիկոսական աթոռի շուրջը լարված պայքար էր ծավալվում հայ եկեղեցական ու աշխարհիկ ֆեոդալների երկու ուժեղ խմբակցությունների միջև։ Առաջին խմբակցության մեջ միավորվում էին Այրարատի և Սյունիքի ֆեոդալ-կալվածատերերն ու մեծատունները, որոնք ձգտում էին տնտեսապես ու քաղաքականապես էջմիածինը ենթարկել իրենց։ Մյուս խմբակցությունը, նույն ձգտումներով, հենվում էր Վասպուրականի հայ իշխողների վրա։ Թովմա Մեծոփեցու մահվանից հետո (1446 թ.) վասպուրականցիների իդեական ու գործնական ղեկավարությունն անցավ Աղթամարի կաթողիկոսների ձեռքը։ Սրանք իրենց համարում էին «թագաւորազն, ի թոռանց և ի շառաւիղէ արքային Գագկայ» և ձգտում էին եկեղեցական իրենց ազդեցությունը տարածել բովանդակ Հայաստանի վրա։

էջմիածնի կաթողիկոսության ու Գր. Լուսավորչի աջի հանձնումը Զաքարիա կաթողիկոսին՝ ժամանակակիցների կողմից, իրավամբ, դիտվեց որպես աղթամարցիների հաղթանակ և ոգևորությամբ ընդունվեց Վասպուրականի եկեղեցականների ու մեծատունների շրջաններում։

Արճիշեցի խոջա Թումաշահը իր ընդարձակ հիշատակարանում Զաքարիա

կաթողիկոսի ու Ջհանշահի հարաբերությունների և էջմիածնի աթոռը Զաքարիային հանձնելու մասին մանրամասն տվյալներ է հաղորդում.

«[Ջհանշահ փաթշահն] զամենայն տունն Թաթարաց նըւաճեաց ընդ ձեռամբ իւրով, և դարձեալ եկն ի Թախթն իւր՝ ի քաղաքն Շահաստան, որ է Թաւրէզ։ Որոյ ընդառաշ գնացեալ մեծ հայրապետն տէր Զաքարիայն՝ աթոռակալ սուրբ Խաչին Աղթամարայ, որ էր Թագաւորազն՝ ի Թոռանց և ի շառաւեղէ արքային Գագկայ՝ բազում ընծայիւք և պատարագաւք։ Զոր յոյժ սիրով ընկալաւ զնա արքայն արքայից Ջըհանշահ փաթշահն և դշխոյն Բէկում-Խաթունն, և պատուեալ մեծարեցին զնա և ետուն նմա խըլայ և պարգև զաշ սուրբ Լուսաւորչին մերոյ՝ զսրբոյն Գրիգորի և զպատիւ պատրիարգութեաննւ Որոյ... եկեալ յաստուածարեալ և յաստուածանկար սուրբ Գրիգորաշէն և երկնահանգէտ կաթուղիկէ սուրբ էջմիածինն... նստաւ ինքնակալ պատրիարգ ընդհանուր ամենայն քրիստոնէական ազգի (իմա՝ Հայոց), որք են ընդ ամենայն ոլորտս տիեզերաց» (հշտկ. №211, էջ 172—173), նույնը մեջ է բերել իր «Պատմութեան» մեջ նաև Առաքել Դավրիժեցին (տե՛ս 1884 թ. հրակ., էջ 324—325)։

1460 թվականին արդեն Զաքարիան Աղթամարից տեղափոխվել էր էջմիածին և ճանաչվել շատ թեմերում որպես ամենայն Հայոց կաթողիկոս։ Արճիշեցի ոմն Ստեփանոս 1460 թվականին ձեռք բերած Ավետարանի հիշատակարանում հայտնում է, որ Զաքարիան «յայսմ ամի տիրեաց էջմիածնին և Լուսաւորչի սուրբ աջոյն» (հշտկ. №180, էջ 40), իսկ Հովհաննես գրիչը Արծկեում ճաշոց է ընդօրինակում «ի հայրապետութեան տեառն Զաքարիայի, ընդհանիւր Հայոց կաթողիկոսի և պատրիարգ Վաղարշապատու էջմիածնի՝ աթոռակալի սուրբ լուսաւորչին մերոյ Գրիգորի» (հշտկ. №177, էջ 135)։ Այս կարգի տվյալներ գրանցված են նաև այլ հիշատակարաններում։

Զաքարիան քաջ գիտակցում էր, որ մահմեդական փադիշահի բարյացակամությամբ միայն էջմիածնի կաթողիկոսական աթոռը գրավելով հարցը չի փակվելու։ Վասպուրականից դուրս հեղինակություն և հենարան ստեղծելու և օրինական կաթողիկոս Գրիգոր Ջալալբեկյանցի ու հակառակորդ խմբակցության մյուս գործիչների նյութած դավերի առաջն առնելու մտադրությամբ Զաքարիան շինարարական աշխատանքներ է ծավալում էջմիածնում և շրջակայքում։ Իր անդրանիկ կոնդակներում պարծանքով է շեշտում նա այդ հանգամանքը։ Հայտնում է, որ Ջհանշահի մոտ եղած ժամանակ փադիշահն իրեն ասել է հետևյալը. «զինչ հասըլ կայ առ քեզ, որ զինչ աւէր կայ շինես. էս քանի տարի զ[աշ]խարհս կերան ու աւէր պահեցին», «Մեք էլ եկաք,—շարունակում է նա,— շատ վարպետ բռնեցաք, որ զպակասութիւն և զթեր[ութիւն] լընունք ի յԱյրաբատեան գաւառս» և այլն (էջ 173, տողատակ)։

Խոսելով Զաքարիա կաթողիկոսի գործունեության նեղ անձնական ու խմբակային դրդապատճառների մասին, բնավ չպետք է մոռանալ էջմիածնի ու Աղթամարի կաթողիկոսական աթոռների միավորման դրական նշանակությունը դարեր շարունակ պետականությունից զրկված հայ ժողովրդի կյանքում։

Դառնալով ամենայն Հայոց կաթողիկոս, Զաքարիան սկսում է միջամտել նաև երկրի քաղաքական գործերին։

Օգտվելով Ջհանշահի երկարամյա բացակայությունից և Կարա-Կոյունլուների պետության ներսում ծագած երկպառակություններից Բաղեշի Շարաֆ ամիրը անհնազանդության նշաններ էր ցույց տալիս և հրաժարվում էր հարկատու լինել Ջհանշահին։

Հասան-Ալու գլխավորած ապստամբությունը ճնշելուց հետո, հավանաբար 1461 թվականին, Ջհանշահը Բաղեշի ամիրի դեմ է ուղարկում 12 000 հեծյալ մարտիկներից բաղկացած պատժիչ զորախմբեր։ Սրանք պաշարում են Խլաթի բերդը և, ինչպես հաղորդում է հիշատակագիր խոջա Թումաշահը՝ «գնացեալ ածրեալ քանդեցին զնա և բազում աւար ի մի ժողովեալ՝ նստան ի վերայ բերդին, և նեղէին առնել զնա, և զնոյն հանդերձեալ էին առնել ի Բաղէշ և ի Մուշ, ի Խութ և ի Սասունք և յամենայն գաւառսն նոցա»։

Ինչպես միշտ, նույնպես և այս անգամ պատերազմական գործողություններից տուժում են հիմնականում շրջակա գավառների անպաշտպան թողնված հայ գյուղերը։ Ջհանշահի զորքերն սկսում են գերեվարել բնակչությանը, քանդել ու ավերել գյուղերն ու շեները, տապալել եկեղեցիները, կողոպտել նյութական ու կուլտուրական արժեքները և այլն։

Զաքարիա կաթողիկոսը ժողովրդին գերությունից ու կոտորածից փրկելու համար փորձում է հաշտարարի դեր կատարել Ջհանշահի և ամիր Շարաֆի միջև*։ Ստանալով Ջհանշահի հավանությունն ու հանձնարարականը, Զաքարիան «ձիընթաց արշաւամամբ» ճեպում է Բաղեշ և համոզում ամիր Շարաֆին վճարել «կայսերական հարկը» և հնազանդվել Ջհանշահին։ Համաձայնությունը կայացվում է. հարկը Զաքարիայի ձեռքով մուծվում է Ջհանշահի գանձարանը, Խլաթի պաշարումը վերացվում է և «ամենայն խառնիճաղանճ ժողովուրդն՝ դհայ և զտաճիկ» ազատվում են «ի ձեռաց անաւրինաց և ի դառն գերութենէ»։

Ստանձնելով և հաջողությամբ իրագործելով հաշտարար-դիվանագետի պարտավորությունները, Զաքարիան մեծ պատիվների է արժանանում Ջհանշահի և քուրդ ամիր Շարաֆի կողմից, աճում է նրա հեղինակությունը նաև որպես ամենայն հայոց կաթողիկոս։

Այս տարիներին** Ջհանշահի դեմ Շիրազում ապստամբություն է բարձրացնում Փիր-Բուդաղ որդին, և նա ստիպված է լինում արշավել որդու դեմ։ Այս արշավանքի մասին է, անշուշտ, ակնարկում խոջա Թումաշահը, երբ իր հիշատակարանում գրում է. «Եւ եղև կրկին անգամ գնալ Ջհանշայ փաթշահին ի տունն Իրաղա, ի Շիրազ և ի Քրման» (հշտկ. № 221, էջ 175)։

Փիր-Բուդաղը պարտություն է կրում և ուղարկվում Բաղդադ, կառավարչի պաշտոնով։

Ջհանշահի բացակայությունից օգտվելով կենտրոնական Հայաստանում կրկին հայտնվում է Հասան-Ալին, որ նույն Թումաշահի հաղորդած տվյալի համաձայն «շրջէր թափառական զվերին կողմամբ գաւառին Արարատեան»։

Նա, «ճենգութեամբ չարախօսաց ոմանց», (ըստ Մ. Օրմանյանի այստեղ ակնարկված է Էջմիածնի հոգևորականության Գրիգոր Ջալալբեգյանցի կուսակից խմբակցությունը), մտադրվում է «ըմբռնել զմեծ պատրիարքն զտէր Զաքարիայն և պահանջել ի նմանէ գանձս և ինչս»։

Լուր ստանալով այդ մասին, Զաքարիան, վերցնելով իր հետ Գրիգոր Լու-

---

* Ի միջի այլոց, Մ. Չամչյանից սկսած պատմագրության մեջ տարածվել է այն սխալ տեսակետը, որ, իբր, Ջհանշահի հակառակորդն այս պատերազմում եղել է Ազ-Կոյունլու Ջհանգիրը։

** Ըստ Ղազի Ահմադ ուլ-Ղաֆֆարի ալ-Ղազվինու՝ 1466—1461 թթ. (տե՛ս V. Minorsky, նշվ. աշխ.), ըստ Մ. Չամչյանի՝ 1462 թվականին (տե՛ս «Պատմ. Հայոց», հատոր Գ, էջ 505)։

սավորչի աջը և այլ սրբություններ, գաղտագողի ճանապարհ է ընկնում դեպի Աղթամար։

Բախտախնդիր մի ամիրզաղայի հալածանքներից փախուստ տվող կաթողիկոսը, ոտք դնելով Վասպուրականի սահմանները, ջերմ ընդունելություն է գտնում հայ բնակչության կողմից։

Հասնելով Հուսկան որդի սուրբ Ստեփանոսի վանքը, որ գտնվում էր Աղթամարի հոգևոր իրավասության ներքո, Զաքարիան դուրս է գալիս ծպտյալ փախստականի իր վիճակից, իր ձեռքն է առնում հայ ժողովրդի որոշ խավերի պատկերացմամբ հայության կուլտուրական ու քաղաքական ինքնության սիմվոլը մարմնավորող Լուսավորչի աջը, վեր է պարզում մի ընտիր «խաչալամ», որի մի երեսին նկարված էր Քրիստոսի, իսկ մյուսին՝ Գր. Լուսավորչի, Տրդատ թագավորի և Հռիփսիմեի պատկերները, և բազմամարդ շքախմբով շարժվում է դեպի Աղթամար։

Նրա հանդիսավոր ուղևորության մասին ուշագրավ մանրամասնություններ է գրանցել նույն խոջա Թումաշահ հիշատակագիրը.

«Եւ եկ,— գրում է նա,— համբաւ գալոյ նորա՝ հանդերձ սուրբ աջովն և խաչալամովն, որ բարձրացեալ կայր ի ծայրս ձողոյ և խաչ ոսկի կառուցեալ ի գլուխ նորա. ընդ որ գրոհ տուեալ ամենայն բնակչաց գաւառացն ընդ որ գայր հայրապետն. և ամենեքեան ընդ յառաջ ընթանային խնկօք և մոմեղինօք և զենմամբ խոյոց և զուարակաց...։ Եկեալ եհաս ի գաւառն Տոսպայ, և մտեալ ի քաղաքն Վան՝ բազում եպիսկոպոսօք և վարդապետօք, քահանայիւք և բազմամբոխ ժողովրդօք, ձիօք և ձիաւորօք, և խաչալամն առաջի, և քահանայք յառաջ և յետոյ երգէին քաղցր եղանակօք, և այնպէս պերճ և փառաւոր եմուտ ի քաղաքն Վան» (հշտկ. № 221, էջ 175)։

Օտար բռնապետական լծի տակ կեղեքվող ու պետականությունից զրկված հայ ժողովրդի կողմից այդ մի ցույց էր, որով նա դրսևորում էր իր նվիրվածությունը ազգային տրադիցիաներին ու դժգոհությունն օտար տիրապետությունից։

Կաթողիկոսին Վանից Աղթամար ուղեկցելու դուրս եկավ հսկայական բազմություն, որի մեջ հատուկ խանդավառություն էին ցուցաբերում «աղատագունդ խօջայքն Վանայ՝ ձիօք և ձիաւորօք սպառազինեալք»։ Ոստանի հայերը Զաքարիային դիմավորեցին ոչ պակաս շուքով, սակայն տեղի քուրդ ամիրի և մահմեդական մյուս իշխողների աչքում վտանգավոր երևաց հայ կաթողիկոսի բազմամարդ շքերթը և նրանք «խորհեցան խորհուրդ չար, զի գաղտագողի նենգեսցեն հովուապետին»։ Զաքարիային այլ բան չէր մնում, քան առանց հապաղելու Աղթամար մտնելը։ Եվ նա, օրհնելով իր ուղեկիցներին, 1461 թվականի դեկտեմբերի 11-ին «էառ զսուրբ աջն Լուսաւորչին և եմուտ ի նաւն և գնաց յաստուածաբնակ կղզին յԱղթամար, ի հայրենի ժառանգութիւն իւր»։

1463—1465 թթ. ընթացքում Ջհանշահը գտնվում էր Իրաքում, և պատերազմում էր իր Փիր-Բուդաղ որդու հետ, որին, ինչպես ասացինք, Շիրազից հետո կառավարիչ էր կարգել Բաղդադում։

Փիր-Բուդաղը դիմադրում էր համառորեն։

Ջհանշահի այս արշավանքի մասին մեր հիշատակարաններում կան ուշադրության արժանի գրանցումներ։ Այսպես, 1464 թվականին Արդեյանի անապատում աշխատող Ղազար գրիչը հայտնում է, որ Ջհանշահը «բազում զաւրաւք պաշարեաց զքաղաքն Բաբելոն (իմա՛ Բաղդադ)» (հշտկ. № 264, էջ 218)։

1465 թ. Վանում աշխատող Վարդան գրիչը գրում է, որ «այս Բ. (2) ամ է, որ նստեր է [Ջհանշահը] ի վերայ Բաղդատ քաղաքին և խսարեր է զորդին իւր զՓիր-Պուտախն» (հշտկ. № 286, էջ 234), իսկ Հովհաննես Մանդասարենց նշանավոր գրիչը, ըստ երևույթին նախորդ գրչից մի քանի ամիս հետո շարադրելով բազմաթիվ իր հիշատակարաններից մեկը, գրում է արդեն, որ «Յայսմ ամի սպան չարաչար Ջհանշահ փադշահն զորդին իւր զՓիր-Պուտախ խանն ի Բաղդատ, և եկն ի Թավրէզ ի թախթն» (հշտկ. № 287, էջ 236)։

Փիր-Բուդաղի ապստամբությունը ճնշելուց հետո Ջհանշահը նախապատրաստվեց Աղ-Կոյունլուների դեմ վճռական մարտի, հույս ունենալով վերջնական պարտության մատնել Կարա-Կոյունլուների մշտական ու անհանգիստ այդ ախոյաններին։

Թուրքմենական այդ երկու ազգակից ցեղերը Փոքր-Ասիա էին գաղթել դեռևս ԺԳ. դարում, իլխան Արղունի գահակալության տարիներին (1284—1291), և բնակություն էին հաստատել Եփրատի ու Տիգրիսի վերին հոսանքներում (տե՛ս А.Мюллер, История ислама, III, СПб, 1896, էջ, 313—314)։ ԺԴ.դարի երկրորդ կեսերին Աղ-Կոյունլուները իշխում էին Պատմական Հայաստանի մի ընդարձակ մասի վրա՝ Ամիդից մինչև Սեբաստիա։ Սակայն Փոքր-Ասիայի պատմական թատերաբեմի վրա ակտիվ դեր սկսեցին կատարել նրանք ԺԵ. դարի սկզբներին, Լանկ-Թամուրի արշավանքներից հետո։ Նույն դարի 20-ական թվականներից Աղ-Կոյունլուների ու Կարա-Կոյունլուների միջև ծայր են առնում ռազմական բախումներ ու գոտեմարտեր՝ բովանդակ Հայաստանի վրա իրենց տիրապետությունը տարածելու համար։ Ըստ որում, Աղ-Կոյունլուները Կարա-Կոյունլուների դեմ դուրս էին գալիս միշտ Թամուրյանների հետ դաշնակցած և հարվածում էին իրենց ախոյաններին թիկունքից։

Ջհանշահի արևելյան հաջող արշավանքներով, ինչպես տեսանք, Թամուրյանների վտանգը Կարա-Կոյունլուների համար վերացավ, բայց այդ ժամանակ արդեն Աղ-Կոյունլուները ռազմական մեծ ուժ ունեին ու կարող էին գործել նույնիսկ առանց դաշնակիցների։

1454 թվականին, երբ Ջհանշահը նվաճումներ էր կատարում արևելքում և գրավել էր «զՇիրազ, և զԻսպահան, և զայլ բազում քաղաքս և զերրդորայս յաշխարհէն Ջաղաթայից», Վանա լճի հյուսիսային շրջանների վրա արշավեց Աղ-Կոյունլու Ուզուն-Հասանը։ Այդ շրջանների բնակչության համար ստեղծվեց ծանր կացություն, շատերը սպանվեցին, գերվեցին ու կողոպտվեցին։ Արճեշցի գրիչ Հովհաննես Մանգասարենցը շատերի հետ միասին ստիպված էր թողնել իր տունն ու տեղը և պատսպարվել անմատույց Լիմ կղզում։ Արճեշում սկսած և Լիմում ավարտած Ավետարանի հիշատակարանում ականատես գրիչը Ուզուն-Հասանի վերոհիշյալ արշավանքի մասին այսպիսի տողեր է գրանցել. «Բայց մեք կամք ի յահ և ի փախ, զի զաւրըն Ուզուն-Հասանի հանապազ կու գերեն զմեզ և թալանեն։ Ի յայսմ տառապանս կալով գրեցի զսուրբ Աւետարանս ի քաղաքիս Արճէշ կոչեցեալ և ի կղզիս, որ կոչի Լիմն» (հշտկ. № 52, էջ 41)։

Նույն այս արշավանքի մասին հետաքրքրական տվյալներ է հաղորդում նաև Սուխարա վանքում աշխատող Իգնատիոս գրիչը. «Վասն վրդովման և տատանեալ դառն ժամանակիս,— գրում է նա,— ի յահէ թշնամեաց փախեան երկիր, և ոմանք ամրացան յանառիկ կղզիս Լիմ՛ս կոչեցեալ և շատք ցրուեցան յերկիր Ամկու, և վասն ծովացեալ մեղաց մերոց անկան ի ձեռս հեծելի՝ թալանեցան, կողոպտեցան, շատ ոք սպանան...» (հշտկ. № 51, էջ 39)։

*Հաջորդ տարիներին բուռն թափով շարունակվում է Կարա-Կոյունլուների ու Աղ-Կոյունլուների հայ ժողովրդի համար աղետաբեր մրցակցությունը։ Ըստ որում, ինչպես տեսանք, Ջհանշահը, զինական ուժեր տրամադրելով ու սիրաշահելով Ուզուն-Հասանի Ջհանգիր եղբորը՝ բորբոքում է Աղ-Կոյունլու եղբայրների գահակալական գզվռտոցը, իսկ Ուզուն-Հասանը, իր հերթին, Ջհանշահի դեմ պայքարի է գրգռում Բաղեշի քուրդ ամիրներին ու գահը տենչացող անհնազանդ ամիրզաղաներին*։*

*Եվ ահա, գրավելով Պարսկական Իրաքն ու Ֆարսիստանը և վերջ տալով ներքին գժտություններին, Ջհանշահը մեծ արշավանք է կազմակերպում Աղ-Կոյունլուների դեմ։ Նախորդ տարիներին հաջող պատերազմներ մղած Ջհանշահը չէր կասկածում պատերազմի հաջող վախճանի վրա և նպատակ էր դրել ոչ միայն գրավել Աղ-Կոյունլուների հիմնական ամրություն Ամիդը, այլև հասնել մինչև Դամասկոս։*

*Իր գլխավոր զորահրամանատար Ղասիմ Փարվանաչու հետ մեկտեղ Ջհանշահը «բազում զորօք» դուրս եկավ Թավրիզից 1467 թվականի մայիսին։ Սակայն նրա զորքերը չեն շտապում թշնամու սահմաններին մոտենալ, այլ սկսում են կողոպտել ու ավերել ճանապարհին ընկած հայկական շրջաններն ու գյուղերը։ Ի վերջո, նոյեմբերի սկզբներին, Կարա-Կոյունլուների մեծ բանակը հասնում է Ճապաղջուր, բայց Ուզուն-Հասանը բռնում է նրանց առաջխաղացման ճանապարհը, պաշտպանություն կազմակերպելով բարձր լեռների վրա։*

*Ջհանշահը բանակ է դնում Սանճախ կոչվող վայրում։ Քոչվոր ավագանիների ռազմական խորհուրդը որոշում է շարժվել դեպի Աղճաղալա ձմեռելու համար՝ գարնանը, Երզնկայի վրայով, պատերազմական գործողությունները վերսկսելու մտադրությամբ։ Հիմնական բանակը ճանապարհելով, Ջհանշահը «Բ՛Ռ. (2000) պարաւնօք եկաց անդ (ի Սանճախ) աւուրս Գ. (3) յուտել և ի խմել, զի վաղիմ հասանէ զօրացն»։ Սակայն Ուզուն-Հասանը, որն ուշադրությամբ հետևում էր թշնամի բանակի շարժումներին, տասն հազարանոց զորախմբով, անսպասելիորեն հարձակվեց Ջհանշահի կերուխումից հանգստացող թիկնապահ զորքի վրա։ Կարա-Կոյունլուները նույնիսկ չկարողացան ուշքի գալ անակնկալից և դիմադրել հարձակվողներին։ Եվ այսպես, 1467 թվականի նոյեմբերի 10-ին, անփառունակ իր վախճանը գտավ 70-ամյա Ջհանշահը։ Այս սպանդի ժամանակ զոհվեցին բազմաթիվ Կարա-Կոյունլու նշանավոր «պարոնայք և իշխանք»։ Ջհանշահի որդիներից երկուսը գերվեցին. մեկը գլխատվեց, իսկ մյուսը կուրացվեց Ուզուն-Հասանի հրամանով**։*

---

** Ղադի Ահմադ ուլ-Ղաֆֆարի ալ-Ղազվինի կոմպիլատոր հեղինակը տեղեկություն ունի այն մասին, որ Հասան-Ալին, հոր դեմ բարձրացրած ապստամբության պարտությունից հետո (1457 թ.), ապաստան էր գտել Ուզուն-Հասանի մոտ՝ Դիարբեքիրում, այնուհետև միացել էր Բաղդադում ապստամբած իր Փիր-Բուդաղ եղբորը (տե՛ս* V. Minorsky*, նշվ. աշխ).։*

*** Հենվելով պարսկալեզու աղբյուրների վրա, Ի. Պետրուշևսկին Ջհանշահի վերջին այս արշավանքի ու պարտության պատմությունը շարադրում է այսպես. «1467 թ. մայիսին Ջհանշահը, իր գլխավոր ամիր Ղասիմ Փարվանաչու հետ միասին, մեծ զորքով արշավանքի դուրս եկավ Ուզուն-Հասանի դեմ։ Հարավային Հայաստանի Մուշի հարթավայրում Ջհանշահի զորքը պարտություն կրեց Աղ-Կոյունլուներից և տվեց մեծ կորուստներ։ Այդ ստիպեց Ջհանշահին գումարել քոչվոր ռազմական ավագանիների ժողով, որտեղ նահանջի որոշում կայացվեց...։ Աղ-Կոյունլուների բանակը սկսեց հետապնդել Հարավային Հայաստանից Ադրբեջան նահանջող Ջհանշահի զորքին։ Ճապաղջրի մոտ Ուզուն-Հասանին*

Ջհանշահի վերջին այս արշավանքի ու սպանության մասին մեծ հետաքրքրություն ներկայացնող գրանցումներ են արել բազմաթիվ հիշատակագիրներ ու ժամանակագիրներ։ Հատկապես ուշագրավ են անանուն ժամանակագրի և Մկրտիչ Խիզանցի ու Մովսես Արծկեցի գրիչների հաղորդած տվյալները։

«Ի ՋԺԷ. (պետք է լինի ՋԺԶ=1467). երէկ Ջիհանշան ի վերայ Հասան պակին և հասեալ մինչ ի Ճապղջուր. և Հասան պակն էառ զառաջքն ի հեռուստ բարձր լերամբ, և նա ել ի տեղին որ կոչի Սանճախ. և զօրսն առաքեաց դէպ Աղջախալան, և ինքն ԲՌ. (200) պարաւնօք եկաց անդ աւուրս Գ. (3) յուտել և ի խմել, զի վաղիմ հասանէ զօրացն և ելանէ յՇզնկան և անգի գալ ի վերայ Հասան պակին։ Եւ Հասան պակն իմացեալ զչար խորհուրդ նորա ԺԴ.—օ (իմա՛ 10.000-աւ) բօլորեց զՃիհանշան և եղև կռիւ, և բռնեցին զՃիհանշան Բ. (2) որդովն, և սպանին ի միում աւուր ԳՌ. (3000) հոգի պարոնայք և իշխանք, ազատք և ռամիկք, և զառ և զթալանն զոր արարին ո՞վ կարէ ասել» (Մժ, II, էջ 152—153, հմմ. նաև Մժ, I, էջ 168 և Ն. Պողարեան, Մայր ցուցակ ձեռագրաց սրբոց Յակոբեանց, չորրորդ հատոր, Երուսաղէմ, 1956, էջ 60)։

Ոչ պակաս արժեք է ներկայացնում Մկրտիչ Խիզանցու հիշատակարանի ստորև բերվող հատվածը.

«Ի թվ. Հայոց Ջ. և ԺԷ. (1468)... ել Ջհանշայ ղանն ի քաղաքէն Շահաստանայ, որ է Թաւրէզ բազում հէնիւ և զաւրաւք, և կամէր երթալ ի վերայ քաղաքին Ամթայ, և այլ ի վայր՝ մինչ ի Դամասկոս։ Եւ ի յերթալն ի ճանապարհին բազումք գողային ի յահէ սորայ, զի այս Ջհանշայս բազում գաւառաց և քաղաքաց տիրէր...։

Արդ, ի չուել ճանապարհի սորա բազում գաւառք աւերեցան և բնակիչք գաւառացն փախչէին ի յայրս և ի ծերպս վիմաց, սովալլուկ մեռանէին։ Եւ եկեալ եհաս ի գաւառն Տարաւնոյ՝ ի դաշտն Մշոյ. և անդ բազում աւերս արարին զաւրքն նորա, զի բազում էին և անհամար և ոչ ճանաչէին զաստուած, և ասէին թէ ի՞նչ է քրիստոնեայն, և քրիստոնէին աչք և բերան կա՞յ։ Եւ դիմեցին ի վանքն Ղազարու, և զլուսարարն խորովեցին ի կրակն և նահատակեցին, և անցին գնացին։ Եւ ի ճանապարհին իջավանեցան, և զաւրքն ի յիւրմէն ի բաց արձակեաց, և անահ և անկասկած գոլով ի թշնամեաց, ասելով, թէ ոչ ոք է ի վերայ երկրի, որ կարէ կալ առաջի իմ և սուր քաշել ի յերեսս իմ։ Զոր ասդ առարեալ թշնամեացն՝ դիմեցին ի վերայ նորա, և առին յաւարի զինչսն, և զնա սպանին և զորդիս նորա։ Եւ ի սպանմանէ սորա բազում աւերք եղեն

---

լուր տվեցին, որ Ջհանշահը, ճանապարհելով իր որդուն և գլխավոր ուժերը, ինքը, փոքրաթիվ վերջապահ ջոկատով, կանգ է առել հանգստի լեռնային մի կիրճում։ Ուզուն-Հասանը անակնկալ հարձակվեց նրա վրա գիշերով» և այլն (Տե՛ս И. П. Петрушевский „Государства Азербайджаиа в XV в." (Сборник статей но истории Азербайджана, выпуск I, Баку, 1949, էջ 158)։

Մեր կարծիքով հայերեն ձեռագրերի հիշատակարանները, որոնք անդրադառնում են Ջհանշահի այս արշավանքին, ինչպես նաև անանուն մի ժամանակագիր (տե՛ս Մժ, I, 168 և Մժ, II, 152—153) դեպքերը պատմում են ավելի մանրամասնորեն ու ճշմարտացի։ Հատկապես չի կարելի ճիշտ համարել Ի. Պետրուշևսկու հաղորդած այն տվյալը, ըստ որի, իբր, Ջհանշահի զորքերը Մշո դաշտում խոշոր պարտություն են կրել Աղ-կոյունլուներից, որից հետո էլ որոշել են նահանջել Ադրբեջան։ Պարզ է, որ Մշո դաշտից Ադրբեջան նահանջել ցանկացող զորքերը, ինչ ճանապարհ էլ նրանք ընտրած լինեին, չէին կարող հայտնվել Ճապաղջրում։

յամենայն տեղիս, ևս առաւել ի յերկիրս Հայոց. և բազում եկեղեցիք աւերեցան և բազում քրիստոնեայք սրով և սովով մեռան» (Հշտկ. № 345, էջ 271)։

Այս և հաջորդ տարիների քաղաքական անցուդարձերի ճշմարտացի նկարագիրը, ինչպես ասացինք, տրված է նաև Մովսես Արծկեցու չափածո հիշատակարանում, որը հորինված է Գրիգոր Խլաթեցու «Յիշատակարան աղետից»-ի նմանողությամբ։

Սկսվում է այսպես.

«Յիննն հարիւր Հայոց թվական
Ընդ որ ԺԶ. (16) այլ յաւելաս (=1467)
Այն մեծ արքայն արևելեան՝
Խաղաղարարըն Ջըհանշայն,
Ցամէն դիմաց եհան հրաման
Որ զօրք բազում ժողովեցան,
Եւ էշ նոքօք զԱսորեստան՝
Առ ի յաղթել զմիր Հասանն։
Իսկ Հասան բէկ քաջ փահլաւանն
Զօրօքն իւրով որ գումարան,
Ի քուն եգիտ ըզՋըհանշայն,
Զօրացն ի ղատ, անպահապան.
Որ և սպան անդէն ըղայն
Եւ զՄուհամատ որդի նորայն» (Հշտկ. № 424, էջ 333)։

Կարա-Կոյունլուների զինական ուժերը, ասացինք, որ հեռու էին գտնվում Ջհանշահի համար կործանարար ճակատամարտի վայրից և չէին կորցրել իրենց մարտունակությունը։ «Իսկ չար հեծեալքն, որ յետ դարձան՝ առին բազում առ և թաղթան»,—հայտնում է նրանց մասին Մովսես Արծկեցին (նույն տեղում)։

Սակայն Կարա-Կոյունլուների պետության մեջ դասակարգային հակասությունները այնքան էին սրվել ու քոչվոր ավազանու բարքերն այն աստիճանի քայքայվել, որ մի բռնակալի սպանությունն իսկ բավական եղավ իր բաղկացուցիչ մասերով կենտրոնի հետ չշաղկապված, ուժի ու ահաբեկման ճանապարհով հնազանդության մեջ պահվող տարացեղ երկրների ու ազգությունների անջատման և հսկայածավալ այդ պետության կատաստրոֆիկ անկման համար։

Ջհանշահը նորանոր նվաճումներ էր կատարում Ադրբեջանի և Հայաստանի գյուղացիության շահագործումն ու կազմակերպված կողոպուտը հրեշավոր չափերի հասցնելու ճանապարհով։

Ժամանակակից բազմաթիվ հիշատակագիրներ սրտաճմլիկ նկարագրություններ են թողել Ջհանշահի տիրապետության տարիներին ժողովրդի կրած տառապանքների մասին։

Գրիգոր գրիչը 1455 թվականին Հաղբատում ընդօրինակած ձեռագրի հիշատակարանում, Ջհանշահի տիրապետությունը բնորոշում է հետևյալ տողերով. «Ի ղառնութեան տաճկաց Ջիհանշահի, ի դառն և ի նեղ ժամանակիս, յիշխանութեան այլադաւան սեռի, որ յահէ և յերկեղէ նոցա մաշեալք և հալածական լինէաք, փախստեայք և մոլորեալք, գերեալք և տատանեալք, ի յառաւել խըստութենէ հարկապահանջութեան և ի հոլովութենէ գերելոցն և ի չքաւորութենէ ընչից ոչ կարեր օգնել եղբայր եղբօր և ոչ ողորմէր ազգս ազգիս...» (Հշտկ.

№ 66, էջ 51)։ Շուրջ տասն տարի այս գրանցումից հետո նույնպիսի գույներով է նկարագծում ժողովրդի վիճակը Հավուց-թառում մի Ծաշոց ընդօրինակած Ստեփանոս գրիչը։ Նա հայտնում է, որ Ջհանշահը 7 տարի է, ինչ մտել է Խորասան և այդ տարիներին «զաշխարհս սահուն և երերուն պահեաց՝ ի հարկապահանջութիւն, ի տառապանս և ի չարչարանս, այնպէս և հայր ղորդիս ուրանային» (Հշտկ. № 258, էջ 214)։

Այս Ստեփանոսին ձայնակցում է Դարանաղյաց գավառի Ավագ վանքում աշխատող մի այլ Ստեփանոս։ Իր ապրած ժամանակը «դառն ու դժար» որակելուց հետո նա հայտնում է, որ «ազգս տաճկաց... չար դարձան քան զգազան և ծարաւիք են քրիստոնէից արեան, և նոր ի նորոյ չար յայտնեն քրիստոնէից, զի ղխարաճն Դ. (4) ֆլորի արարին, և կապուտ արկին ի գլուխ քրիստոնէից, և զմեռեալն ի քաշ տան տանել, և այլ չարիք բազում խոկան և խորխտան ի վերա քրիստոնէից» (Հշտկ. № 256, էջ 211)։

Ժողովրդի տնտեսական ու իրավական վիճակի նմանօրինակ նկարագրություններ պահպանվել են նաև մի շարք այլ հիշատակարաններում (տե՛ս, օրինակ, Հովհաննես գրչի հիշատակարանը, շարադրված 1465 թ. Գեղարքունյաց գավառի Կած գյուղում և այլն)։

Հարկային լծի ծանրացման, քրիստոնյա հպատակների նկատմամբ կրոնական ճնշման ու արհամարհական վերաբերմունքի այս տարիները միաժամանակ բնական արհավիրքների՝ սովի ու համաճարակների տարիներ էին։

Մելքիսեթ գրչի 1453 թվականին շարադրած հիշատակարանից տեղեկանում ենք, որ «յայսմ ամի մորեխ երէկ և շատ աւերք էած ի տեղիս տեղիս» (Հշտկ. № 42, էջ 33)։ Մորեխին հաջորդեց սովը. 1453 թվականը «սովալլուկ տարի» կոչելով, մշեցի մի գրիչ հայտնում է, որ «սովն պատեալ էր զամենայն մարդ, ի մեծէ մինչև ի փոքր, որ չէ յիշելոյ զայն» (Հշտկ. № 41, էջ 33)։

1458 թվականին Հայաստանի մի շարք շրջաններում բռնկվում է համաճարակային ինչ-որ հիվանդություն «եկն յայսմ ամի մահ և կոտորեաց զբազումս, ի թուականիս մեր Ջէ.»,—գրում է այդ մասին բաղիշեցի մի գրիչ (Հշտկ. № 136, էջ 101)։ Հովհաննես գրագրի ամուսին Թանսուխը և դեռաբուսիկ զավակ Պաղտասարը զոհ են դնում այդ մահտարաժամին, անմխիթար սգի մեջ թողնելով գրագրին (Հշտկ. № 151, էջ 114)։

1463 թվականին Տարոնում ու Բաղեշում հայտնվում է մորեխ ու մեծ վնասներ պատճառում։ «Յայսմ ամի մորեխն երեկ և զաշխարհս ապականեաց»,—տեղեկացնում է Ստեփանոս գրիչը Տարոնի Ծղրգոտ մենաստանում (Հշտկ. № 236, էջ 194)։ Նրան լրացնում է որոշ մանրամասնություններով Բաղիշեցի Հովսեփ գրիչը. «....աստուած ի մեր մեղացն բարկացաւ և առաքեաց ի վերայ մեր մորեխ վնասակար, զոր ի տեղիս-տեղիս կերաւ զվաստակն և դարձեալ ողորմութեամբն աստուծոյ վերացաւ և ամէն ի ծովն հեղձան» (Հշտկ. № 237, էջ 194)։

Ըստինքյան հասկանալի է, որ տասնյակ տարիներ շարունակ բռնությունների ու ծանր հարկապահանջության տակ տառապող և հասարակական ու տարերային աղետների ենթակա ժողովուրդները բնավ շահագրգռված չպետք է լինեին Ջհանշահի պարտությունից ու սպանությունից հետո Կարա-Կոյունլուների դինաստիայի կայունացմամբ։

Կարա-Կոյունլուների նկատմամբ ժողովրդի տածած ատելության ու նրանց լծից ազատագրվելու բաղձանքի արտահայտություններ ենք գտնում բազմաթիվ հիշատակարանների մեջ։ Այդպիսիներից է, օրինակ, 1467 թվականին վանեցի

Կարապետի շարադրած հիշատակարանը։ Դրանցելով տեղեկություն այն մասին, որ Ջհանշահը «յայսմ ամի եկեալ բազում զօրօք և կամի պատերազմել ընդ Հասան-բէկին», վկիչն աղերսում է աստծուն զորություն տալ Ուզուն-Հասանին և պարտության մատնել Ջհանշահին։ Գրչի կարծիքով Ուզուն-Հասանը «պարիսպ ամուր է քրիստոնէից» (հշտկ. № 330, էջ 259)։

Մի այլ դրիչ, մեծ հույսեր կապելով Ուզուն-Հասանի հաղթության հետ, ցնծությամբ արձանագրում է այսպիսի տողեր. «Ողորմածն աստուած յետս դարձոյց և ոյժ և զաւրութիւն ետ Հասան բակին, …ի սուր սուսերի մատնեց զինքն (զՋհանշահն)՝ որդւովք և հեծելովք, և զքրիստոնէք ազատեց ի գերութենէ» (հշտկ. № 348, էջ 273)։

Մենք դեռ առիթ կունենանք տեսնելու, թե որքան անհիմն էին Աղ-Կոյունլուների հաղթանակի հետ կապած հույսերը. այնուամենայնիվ այս ավյալը պերճախոս վկայում է այն մասին, որ Կարա-Կոյունլուների ու Աղ-Կոյունլուների վերջին գոտեմարտի ժամանակ հայ ժողովրդի լայն զանգվածների համակրությունը Ուզուն-Հասանի կողմն էր։

Անհրաժեշտ է նշել, որ Ուզուն-Հասանը, իր հաղթանակն ապահովելու համար երբեմն, իրոք, սիրաշահում էր հայ մեծատոհմներին, հովանավորում հայ եկեղեցու նշանավոր գործիչներին և ձգտում կարգավորել հարկահանության գործը։

Ջհանշահի սպանությունից հետո երկրում սկսվեցին գահակալական կռիվներ նրա որդի Հասան-Ալու և Սքանդարի որդի Հուսեյն-Ալու միջև։ Այս պայքարից հաղթանակով դուրս եկավ Հասան-Ալին, որը արագորեն գատարկե·ով արքունի գանձարանը, դրամական առատ պարգևներով իր շուրջը համախմբեց հարյուր (ըստ Մովսես Արծկեցու՝ երկու հարյուր) հազարանոց մի բանակ, որի կազմում նշանակալից դեր էին կատարում քրդերը*։

Այս հսկայական բանակը սակայն չկարողացավ կասեցնել Աղ-Կոյունլուների հաղթարշավը։

1468 թվականի գարնանը Ուզուն-Հասանը երեսուն հազարանոց զորքով շարժվեց դեպի արևելք և բանակ զարկեց Խոյի դաշտում։ Ճակատամարտը տեղի ունեցավ Մարանդի մոտ։ Հասան-Ալու զորքի մեծ մասը լքեց իրեն և Ուզուն-Հասանը առանց դժվարության պարտության մատնեց Կարա-Կոյունլու վերջին փադիշահին։

Քաղաքական այս անցուդարձերի մասին հակիրճ, բայց բովանդակալից տվյալներ է գրանցել մեզ հայտնի անանուն ժամանակագիրը, այդ անցքերին անդրադարձել են նաև մի շարք հիշատակագիրներ։

Ջհանշահի պարտության ու սպանության մասին տողերից հետո անանուն ժամանակագիրը գրում է.

---

* Հավանաբար Հասան-Ալու գործակիցներից էր նաև Ոստանի քուրդ ամիր Եզդին-շերը, որն այդ նույն ժամանակ ասպատակում էր Ռշտունիքը։ 1469 թ. Գրիգոր ծաղկողը, Ցայշող գյուղում շարադրած հիշատակարանում խոսում է այս ասպատակությունների ժամանակ իրենց կրած տառապանքների մասին։ Նա գրում է. «Այն անիծեալ Էսաինշերն եբեկ և թալան արար դերկիրս Ռշտունեաց, յաւուր տօնի ծննդեան Քրիստոսի…։ Եւ մեք փախուցեալ դառն սրտիւք և լալօտ աչօք, ձիւնաթաթախ և տառապանօք, անկեալ ի յօտար երկիր, ի տեղիս տեղիս»։ Այնուհետև չափածո մի քանի տողով նա խնդրում է ձեռագրի պատվիրատուին, որ կորեկ ուղարկի իրեն, որ ինքն ուտի և «ի դարուն ելնէ բանով», իրենց ծանր վիճակի մասին հարելով հետևյալ դիպուկ տողերը՝

«Թալնած ենք ու մէկ չուխով,
Քաղցած ենք ու մէկ հացով» (հշտկ. № 365, էջ 282—283)։

*«Եւ ժամանակն այն ձմեռնամտին էր, և ոչ կարաց գնալ Հասան պակն յարևելք, ապա գարուն ել Հասան պակն ԼՌ. (30.000)-աւ և գնաց մինչ ի դաշտն Խօու, և էառ զամենայն խաղաղութեամբ և սիրով։ Եւ գայ որդի Ճիհանշին Ալի պակն ընդդէմ նորա ՃՌ. (100.000) մարդով ի Մարանդ և դիմամարտի և կոտրվի և փաղչի, և Հասան պակն առնու զզօրս նորա և զքսիպն և մտանէ ի Թօրէզ (իմա Թաւրէզ)» (Մժ, II, էջ 153, Ն. Պողարեան, Մայր ցուցակ, չորրորդ հատոր էջ 60, հմմ. նաև Մժ., I, էջ 168)։*

*Անհրաժեշտ ենք համարում մեջ բերել նաև Մովսես Արծկեցու չափածո հիշատակարանի համապատասխան տողերը.*

*«Հասան-Ալին, այն չար գազանն,*
*Որ ի Մակու էր ի ղընդան,*
*Ելեալ գնաց դէպ ի Ղափան,*
*Եւ կոտորեաց զհաղինայն,*
*Այնչափ երետ պարգևս մարդկան,*
*Վասն այն բազումք ժողովեցան,*
*Քան զերկերիւրըն հազարեան՝*
*Այլ աւելի անդ գումարան։*
*Իսկ ի գալ միւսն ամեան (= 1468)*
*Աղ-ղոյլուցիքըն զօրացան,*
*Ելին յաշխարհըն Հայաստան,*
*Մինչ յԵրասխայ յափըն հասան։*
*Հասան-Ալին՝ հեղ հիմարն այն*
*Մըտեալ նըստաւ ի կարճ մէշայն,*
*Զոր զօրքն անդէն ապստամբան,*
*'Ի ի թշնամիքն եկեալ խառնան։*
*Հասան-Ալեանքըն զարհուրան*
*'Ի ի բանակէն ելեալ փախեան.*
*Զոր և եկեալ սուլտան Հասանն*
*Մնացեալքն անիթիւ հնազանդեցան,*
*Նստեալ ի թաղթըն Շահաստան*
*Զաշխարհս էած իւրն հաւան,*
*Երկիր բոլոր խաղաղացան,*
*Որպէս ի մօր գիրերն տըղայն»։*
*(Հշտկ. № 424, էջ 333—334։ Հմմ. նաև հշտկ. № 366, էջ 283)։*

*Հասան-Ալին, յուրայինների հետ միասին մազապուրծ ճողոպրում և ապաստան է գանում Թամուրյան սուլթան Աբու-Սայիդի (1452—1469) մոտ։ Աբու-Սայիդը պատրաստություններ է տեսնում Ուզուն-Հասանի դեմ ելնելու, բայց Ադրբեջան է մտնում մեծ ուշացումով, 1468 թվականի աշնանը*։ Թամուրյանների բանակը ստիպված էր մտածել ձմեռելու մասին. սկզբից նրանք բանակ են զարկում Ղարաբաղում, ապա անցնում Մուղան ու Կասպից ծովի ափե-*

** Ի. Պետրուշևսկին, հենվելով պարսկալեզու աղբյուրների վրա, այս դեպքերը պատմում է փոքր ինչ այլ կերպ։ Ըստ նրա, Աբու-Սայիդը պատրաստություններ է տեսնում Ուզուն-Հասանի դեմ ելնելու Ջհանշահի պարտության ու սպանության լուրը ուշացումով ստանալուց անմիջապես հետո, սակայն մինչ պատրաստություններ կտեսներ ար-*

րը։ Աբու-Սայիդը հույս ուներ, որ Թամուրյանների հին դաշնակից շիրվանշահերը ծովային ճանապարհով կմատակարարեն իր բանակին անհրաժեշտ սննդամթերք։ Սակայն շիրվանշահ Ֆարուխ-Յասարը (1462—1500), տեսնելով որ ուժերի գերակշռությունը Ուզուն-Հասանի կողմն է, լքում է իր դաշնակցին։ Եվ այսպես, քաղցից ուժասպառ եղած Թ՚ամուրյան բանակը, 1469 թվականի ձմռանը, բնաջնջվում է Աղ-Կոյունլուների, Շիրվանշահի և Սեֆյան շեյխերի միացյալ զորքերի կողմից (И. Петрушевский, նշվ. աշխ., էջ 169—171)։

Ժամանակակիցների վրա մեծ ազդեցություն գործեցին Ուզուն-Հասանի տարած փայլուն հաղթանակները, և մեր հիշատակագիրներից շատերը զարմանքի արտահայտություններով լի տողեր են գրանցել այդ առթիվ։

Այսպես, Հովհաննես Մանդասարենցը, 1469 թվականին շարադրած իր մի հիշատակարանում հայտնում է, որ Ուզուն-Հասանը «յայս Ա. տարի Գ. փաթշահ կորոյս՝ զօրօք և զաւակօք՝ ղՋհանշահն, զՀասան-Ալի և զսուլտան Բուսաիտն. և իշխեաց ի Շամայ դռնէն մինչև Խորասան» (հշտկ. № 363, էջ 281)։ Նույն թվականին Մոկքի Փասավանք գյուղում աշխատող Իսրայել գրչի հիշատակարանից տեղեկանում ենք, որ Ուզուն-Հասանը «ի Հալպայ մինչև ի տունն Սըմրղնդայ էառ և հարկատու արար» (հշտկ. № 364, էջ 281)։ Հաջորդ՝ 1470 թվականին Հակոբ Խարբերդցին, անդրադառնալով նույն դեպքերին, հայտնում է, որ Ուզուն-Հասանը «տիրեալ է ի Բաբելոնէ մինչ ի Շիրազ քաղաք և ի Տրապիզոն, զոր բազում քաջութիւն արարեալ ի բազում տեղիս, և ի միում ամի Գ. ղան յաղթեաց և սպան զնոսա՝ զՃիհանշայն, և զորդիքն իւր, և զՊուսայիտ ղանն, և էառ զնոցա տեղիքն և զամրոցքն» (հշտկ. № 368, էջ 297) և այլն։

Այսպիսով, մեկ տարի ու մի քանի ամիսների ընթացքում մղած հաղթական պատերազմներով Ուզուն-Հասանը տապալեց Կարա-Կոյունլուների դինաստիան և Աղ-Կոյունլուների տիրապետությունը հաստատեց հսկայածավալ մի պետության վրա, որի կազմի մեջ էին մտնում մի շարք երկրներ՝ Հայաստանը, Ղարաբաղը (մինչև Կուր գետ), հարավային Ադրբեջանը (բացի Արդաբիլից), Քրդըստանը, Դիարբեքիրը, Արաբական Իրաքը, Պարսկական Իրաքը, Լուրիստանը, Ֆարսը, Քրմանը։

## Բ.

Ուզուն-Հասանը ժամանակակիցների վկայությամբ քաղաքական խոշոր գործիչ էր։ Ի տարբերություն քոչվոր ցեղերի մյուս պետերից, որոնք սովորաբար մտահոգված էին լինում միայն նվաճված երկրների ու ժողովուրդների կողոպուտով, նա քաջ ըմբռնում էր իր տիրապետության տակ ընկած երկրների քայքայված տնտեսությունը վերականգնելու կարևորությունը՝ պետական գանձարանը լցնելու համար։ Նա միաժամանակ ձգտում էր նաև իր կողմը գրավել նորաստեղծ կայսրության մեջ բնակվող նստակյաց ժողովուրդներին։ Հպատակներից հարկերի գանձման գործը կարգավորելու, հարկահանության ժամանակ ֆեոդալների ու պետական պաշտոնյաների անսանձ չարաշահումների առաջն

---

շավանքը սկսելու՝ Ուզուն-Հասանը պարտության է մատնում նաև Հասան-Ալուն (տե՛ս И. Петрушевский, Նշվ. աշխ., էջ 169)։

Մենք առաջնորդվեցինք Մովսես Արծկեցու հիշատակարանի տվյալներով, որտեղ գրված է.

«Հասան-Ալին, իւրքն ամենայն
Փախեալ հասին ի Ջաղաթայն,
ՋԹուսայիան առեալ եկան
Եւ զքառասուն որդին լըման» (հշտկ. № 424, էջ 334)։

առնելու նպատակով Ուզուն-Հասանը հրատարակեց հարկերի չափը սահմանող և հարկահանման սկզբունքները նշող օրենքների «Կանունննամե» կոչվող ժողովածուն, որը երկար ժամանակ (մինչև ԺԶ. դարի վերջը) կիրառության մեջ էր Իրանում և Օսմանյան կայսրության արևելյան երկրամասերում։

Այս միջոցառումները սակայն տևական արդյունք չտվեցին և հպատակ ժողովրդների վիճակի մեջ էական բարելավում տեղի չունեցավ։ Նշանակալից փոփոխություն տեղի չունեցավ նաև հայ ժողովրդի իրավական գոյավիճակի մեջ։ Ուզուն-Հասանը շարունակեց կրոնական անհանդուրժողականության տրադիցիոն քաղաքականությունը, սահմանեց քրիստոնյաներին տարբերակելու վիրավորական նշան, արգելեց զանգահարումը եկեղեցիներից և այլն։

Այս մասին 1470 թվականին կարևոր տվյալներ է հաղորդում Վերին-Նորավանքում աշխատող Հովհաննես գրիչը. նա գրում է. «Քանզի եղև այսմ ժամանակի հարկապահանջութիւն ի տաճկաց. քանզի եկն Ուզուն-Հասանն և էսպան զՋհանշէն՝ որդի Ղարա-Ուսուֆին և զորդիքն իւր, և նստաւ ի թախտն նորա, և եղև թասպութիւն յոյժ և հալածումն քրիստոնէից, և խափանեցին զհնչումն զանգակին, և քրիստոնեայք նշանաւ շրջէին» (Հշտկ. № 382, էջ 299)։

Ավելի պերճախոս է 1476 թվականին մի Տաղարան ընդօրինակած Ստեփանոս Զմշկածագեցի գրիչը, որը շարադրել է պատմական հարուստ բովանդակությամբ չափածո մի հիշատակարան*։

Հայ ժողովրդի տնտեսական և իրավական ծանր վիճակը բացատրելով հայերի իսկ գործած «մեղքերով», մեր բանաստեղծ-հիշատակագիրը հաղորդում է այսպիսի տվյալներ.

«Հարկապահանջն յամէն տեղի
Քաշէ ծեծէ զազգըս Արամի.
Խընդրէ արծաթ 'ւ ընտիր ոսկի,
Ցայնժ որ չունի փող պըղնձի։
Կապուտ նշան եդ քրիստոնեաց,
Զի բաժանին յանօրինաց.
Զմեռեալն ի ցած տանել ասաց,
Ջուանով չափել զվիզս մանկանց...։
Այլ և զհարումն զանգակի՝
Զգուշակ փողոյն Գաբրիէլի
Ետ խափանել յամէն տեղի՝
Գեղ 'ւ անապատ 'ւ ի քաղաքի» (Հշտկ. № 496, էջ 394)։

1467 թվականից ծայր առած պատերազմների, խոշոր զորաշարժերի ու բնակչության տեղահանումների հետևանքով 1468 թվականին բռնկվեց ծանր համաճարակ, որը տեղատվության ու մակընթացության տատանումներով, տևեց երկար տարիներ, ավերիչ ազդեցություն գործելով Հայաստանի բոլոր շրջաններում։ Այս մահտարաժամի մասին աղեկտուր տողեր են շարադրել բազ-

* Հիշատակարանը, թերի լինելով, չի պահպանել գրչի անունը, սակայն կարելի է ենթադրել, որ նրա հեղինակը նշանավոր բարունապետ Հովհաննես Համշենցու աշակերտ Ստեփանոս Զմշկածագեցին է։ Բանաստեղծական շնորհքով օժտված այս գրիչը 1461 թ. Ավագ վանքում ընդօրինակած ձեռագրի հիշատակարանում (տե՛ս հշտկ. № 256, էջ 206—212 և № 257, էջ 212—213), որոնց ընդարձակ մասերը նույնպես գրված են կանոնավոր չափածոյով, անդրադառնում է հարկապահանջության ծանրացման խնդրին, օգտագործելով նման արտահայտություններ։

*մաթիվ հիշատակագիրներ՝ Ոստանում, Խարբերդում, Արճեշում, Աղթամարում, Տփղիսում և այլ վայրերում։*

*1470 թվականին Ոստանում շարադրված մի հիշատակարանում դրված է. «Այս երկու ամ է, որ թանգութիւն, և ամենայն իրաց պակասութիւն, և մահտարաժամ յաշխարհէս չէ վերացեալ» (հշտկ. № 383, էջ 299)։ Նույն թվականին խարբերդցի Հակոբ գրիչը հայտնում է, որ «աստուածասաստ բարկութեամբ իջաւ աշխարհ որ կոչի մահտարաժամ. և բոլոր տարի մի է, որ կայ ի մեր քաղաքս և յերկիրս և ոչ վերանայ։ Եւ շատ դրունք փակեցան, և շատ հայր անորդի արար և շատ մայր անղաւակ, շատ եղբայր անեղբայր արար և շատ քոյր անեղբայր, շատ քահանայ անորդի մնաց և շատ ծըծկան տղայ անհայր, անմայր մնաց» (հշտկ. № 380, էջ 297)։*

*Արճիշեցի նշանավոր դրիչ Հովհաննես Մանդասարենցը 1470 թվականին զբաղված էր մի Ճաշոցի ընդօրինակությամբ. այդ աշխատանքի ընթացքում համաճարակի զոհ դարձան նրա բոլոր որդիները՝ Մեհերը, Սահարբեկը և Մխիթարը*։ Վերջինիս մահվան կապակցությամբ որդեկորույս հայրը ձեռագրի վերջում դրանցել է այսպիսի տողեր. «մահտարաժամ է անմեղ տղայոցս, աչքս կուրացել է ի բաղում լալոյս, մէջքս կոտորել է, ձեռս թուլացել է, զի իմ մէկ որդին Մխիթար ողորմելի հայրս սեւեց յայս աւուրքս և ես մնացի անյիշատակ» (հշտկ. № 384, էջ 300)։*

*Մանկամահ այս համաճարակի մասին խոսում են նաև Հայրապետ գրիչը Աղթամարում (1470 և 1471 թթ.), Աստվածատուր գրիչը Տփղիսում (1474 թ.) և, կրկին անգամ, Հովհաննես Մանգասարենցը Արճեշում (1479 թ.) (տե՛ս հշտկ. № 386, էջ 303, № 393, էջ 312, № 456, էջ 362, № 554, էջ 437)։ Վերջինս նույնիսկ նկարագրում է հիվանդության ընթացքը և տարաբախտ ծնողների հոգեկան տվայտանքները, հիշելով անշուշտ իր զավակների կսկծալի մահը։*

*Դառնանք կրկին քաղաքական անցուդարձերի շարադրմանը։*

*Պարտության մատնելով թամուրյաններին Ուզուն-Հասանը սկսեց ամրապնդել իր նվաճումները երկրի ներսում, հնազանդեցնել ու ռազմունակությունից զրկել բոլոր այն կիսանկախ ֆեոդալ տիրակալներին, որոնք գործակցել էին իր թշնամիներին և կամ կենտրոնական՝ իշխանությանը չենթարկվելու նշաններ էին ցույց տալիս։*

*Հիմնական հարվածն ուղղվեց Բաղեշի քրդական ամիրության դեմ։ Այդ մասին Մովսես Արծկեցին դրում է.*

*«Իսկ յանցանելն երրորդ ամեան,*
*Որ և զթաղթն ինքեանք կալան (իմա՛ 1470 թ.)*
*Հասան փատշահըն մեծ սուլտան*
*Զօրս առաքեաց ի Քըրտաստան»։*

*Այս արշավանքը նշանակալից արդյունք չտվեց։ Ընդհակառակը, «մեծ զօրավար» Սուլեյման բեկ Բիժան-օղլու գլխավորած բանակը, երկու ամիս ապարդյուն պաշարելով Բաղեշը, ստիպված է լինում վերադառնալ Վան՝ ձմեռելու. «քանզի քըրդերըն զօրացան կորուսանել զնա կամեցան»,— ասում է Մովսես Արծկեցին։*

---

* Հիշատակարանից դժվար է լինում որոշակի պարզել, թե «Մխիթար»-ը Հովհաննես Մանգասարենցի համաճարակին զոհ դարձած երրորդ որդու անունն է․ հարելի է կարծել նաև, որ այդ (Մխիթար) բառը վերաբերում է Սահարբեկին, որը միակ որդին լինելով ի մխիթարութիւն հօր, նույնպես մահացավ, անհիշատակ թողնելով նրան.

1471 թվականին արշավանքը վերսկսվում է ավելի խոշոր զինական ուժերով, Ուզուն-Հասանի նշանավոր երեք զորավարների՝ Սուֆի-Խալիլի, Սուլեյման Բիժան-օղլու և Բայանդուր բեկի հրամանատարությամբ։ Նույն հիշատակարանից տեղեկանում ենք, որ

«Ի Մուշ գնաց Խալիլ իշխանն
Եւ ի Բաղէշ քաջ Սուլէյմանն,
Եւ Բայանդուրն Ղօչ իմիրզայն՝
Կալաւ զբոլոր Խլաթայ Թումանն»։

Սուֆի-Խալիլի դեմ Մուշում դուրս է գալիս Քարիմ աղան, որը մտադրվում է նրան հաղթելուց հետո «ղզըրխտոնեայքըն զամենայն տանջել չարեօք զանազանեան»։ Սակայն, ըստ Մովսես Արծկեցու, հայերի պաշտպան Մշո սուրբ Կարապետը, որին նա անվանում է «թագաւոր Տարօնեան»՝

«Եհար, վանեաց զՔարիմ աղայն
Եւ զզօրս նորա զամենեսեան,
Զի շատք ի ծիմըն մըսեցան,
'Ի այլքըն սըրոյ ճարակ եղան»։

Բայանդուր բեկը վեց ամիս պաշարելուց հետո գրավում ու կործանում է Խլաթի բերդը և «ղպահողքն ըզբերդին այն արար իւրեանըն զօրական» (հշտկ. № 424, էջ 334—336)։

Բաղեշի պաշարումը երկարում է և տևում մեկ տարի հինգ ամիս. ի վերջո 1473 թվականին, Սուլեյմանին հաջողվում է գրավել բերդը և կոտորել քրդերին։ «Զբաղումս ի Մարաց ազգէն կոտորեաց և Հայոց ազգիս յոյժ՝ ողորմած է, զի դերի ոչ առնէ»,—գրում է մի հիշատակագիր Բաղեշի գրավման կապակցությամբ (հշտկ. № 461, էջ 365)։

Աղ-Կոյունլուները հարձակվում են նաև Բուխտան երկրի (Բոհտան-սու գետի հովիտը) քրդերի վրա, գրավում են «եօթն · բերդն յերկրին. Բուխտան», ապա, հետապնդելով քրդերին մտնում ու գրավում են նաև Ջեզիրեն, հաղթական արշավից հետո վերադառնալով «ի գաւառն Բըզնունեան, որ Արծկէ յորջորջի»։

Այս բոլորից հետո միայն Ուզուն-Հասանն իր զինական ողջ ուժը ուղղում է դեպի Արևմուտք՝ Օսմանյան Թուրքերի՝ դեմ։

Աղ-Կոյունլուների ու Թուրքերի միջև տեղի ունեցած բախումների ու մարտերի մասին խոսելուց առաջ անհրաժեշտ է փոքր ինչ կանգ առնել Օսմանյան կայսրության ստեղծման ու նվաճումների պատմության վրա, նկատի ունենալով այդ դեպքերի սերտ առնչությունը Արևմտյան Հայաստանի բնակչության պատմության հետ և աղետաբեր հետևանքները բովանդակ հայ ժողովրդի հետագա՝ կյանքի համար։

Օսմանյան կայսրությունն իր անվանակոչումը ստացավ Օսման բեյից, որը ԺԳ. դարի վերջին տարիներին, որպես Իկոնիայի սելջուկյան սուլթանության վասալ, իշխում էր Փոքր Ասիայի արևմտյան ծայրամասի՝ Բյուզանդական քայքայված կայսրության սահմանակից այն շրջանին, որի մեջ էին գտնվում Բիլեջիկ և Էսկիշեհիր քաղաքները։ 1299 թվականին, օգտվելով Իկոնիայի սուլթանության լիակատար քայքայումից, Օսմանն իրեն հայտարարեց անկախ տի-

րակալ։ Սրա որդի Օրխան բեյի գահակալության ժամանակ, 1326 թվականին, օսմանցիները, գրավելով Բրուսա քաղաքը, դուրս եկան Միջերկրականի ծովափ։

ԺԴ. դարի հաջորդ տասնամյակներում և ԺԵ. դարի առաջին կեսին՝ Մուրադ Ա (1359—1388), Բայազիտ Ա Իլդրում (1388—1403), Մահմադ Ա Չելեպի (1413—1421) և Մուրադ Բ Ղազի (1421—1451) սուլթանների գահակալության տարիներին օսմանցիները մի շարք հաղթանակներ տարան Փոքր Ասիայում ու Եվրոպայում։ Իսկ Մահմադ Բ Ֆաթիհի (1451—1481) ժամանակ թուրքական սուրը, ամենուրեք սարսափ տարածելով, ճանապարհ հարթեց օսմանյան պետության առաջխաղացման համար և՛ Եվրոպայի, և՛ Ասիայի աշխարհամասերում։

1453 թվականին Կոստանդնուպոլսի գրավումով վերջ է տրվում կիսակործան Բյուզանդական կայսրության գոյությանը* 1458 թվականին գրավվում է Աթենական հերցոգությունը. 1459 թվականին Սերբիան որպես փաշայություն միակցվում է Թուրքիային. 1460 թվականին ավարտվում է Մորեայի գրավումը։ 1461 թվականին, արհամարհելով Ուզուն-Հասանի միջամտությունը, որը Տրապիզոնյան կայսրությունը համարում էր Ակ-Կոյունլուների հովանու տակ գտնվող մի երկիր, Մահմադ Բ-ն վերջ է տալիս նաև Բյուզանդական երբեմնի հզոր կայսրության վերջին այդ հիշատակը։

Տրապիզոնի գրավմանը ժամանակակից Ստեփանոս գրիչը 1464 թ. Ավագ վանքում շարադրած իր հիշատակարանում հայտնում է, որ գրավելով քաղաքը օսմանցիները «բաժանէին զորգիսն և զդստերս ի մարց և ի հարց և զեղբայր՝ յեղբարց. և աղիողորմ էր լացն և աղաղակն, զոր ոչ կարեմ ընդ գրով արկանել, և զեկեղեցեացն և զսրբութեանցն վնասն որ եղեն ո՞վ կարէ թուել» (Հիշտկ. № 256, էջ 211)։

Քիչ անց գրավվում է նաև Լեսբոս կղզին, Բոսնիան և բազմաթիվ այլ երկրներ ու շրջաններ, իսկ 1471 թվականին նաև Ղարամանիան։

Այսպիսով, մի-երկու տասնամյակի ընթացքում թուրքերի ձեռքն են անցնում Սև և Միջերկրական ծովերի բոլոր այն նավահանգիստները, որոնք որպես առևտրի ու փոխանակության միջազգային նշանակություն ունեցող կետեր, կենսական նշանակություն ունեին ինչպես Ակ-Կոյունլուների, այնպես էլ եվրոպական մի շարք պետությունների (հատկապես Վենետիկի) համար։

Բնական է, որ այսպիսի դրության հետ հաշտվելու չէին տուժած կողմերը։ Վենետիկը փորձեց օսմանցիների դեմ ստեղծել եվրոպական ու արևելյան երկրների մի զինակցություն, սակայն այդ փորձը չպսակվեց հաջողությամբ՝ շահագրգռված կողմերի միջև սուր ներհակությունների առկայության հետևանքով։

1469 թվականին Ուզուն-Հասանը Իտալիա ուղարկեց լայն լիազորություններով օժտված մի դեսպանություն, որի կազմում կարևոր դեր էր կատարում խոշոր հայ առևտրական խոջա Միրաքը։ Ուզուն-Հասանի դեսպանները հասան Վենետիկ և, ինչպես հաղորդում է իր ուղեգրության մեջ վենետիկյան դեսպան

---

* Կոստանդնուպոլսի գրավման ողբալի փաստին անդրադարձել են մեր հիշատակարաններից մի քանիսը (տե՛ս, օրինակ, Հիշտկ. № 39, էջ 30—31), ինչպես նաև բանաստեղծներ Առաքել Բաղիշեցին և Աբրահամ Անկյուրացին, այդ առթիվ գրած իրենց ողբերում (տե՛ս Հ. Անասյան, Հայկական աղբյուրները Բյուզանդիայի անկման մասին, Երևան, 1957)։

*Կատերինո Զենոն, «մեծ ընծաներ [բերելով] իրենց տիրոջից, առաջարկում էին զինակցություն և պատվավոր դաշնակցություն կնքել Թուրքիայի և [Եգիպտոսի] սուլթանի դեմ, պայմանով, որ վենետիկցիները չթերանան իրենց նավատորմով հարձակվելու երկու իշխանությունների վրա» (Հովհ. Հակոբյան, Ուղեգրություններ, հատոր Ա, ժԳ.—ժԶ. դար, Երևան, 1932, էջ 156)։*

*Ուզուն-Հասանի դեսպաններից երեքը, որոնց թվում նաև խոջա Միրաքը, վենետիկից անցան Հռոմի պապի, ապա նաև Նեապոլի թագավորի մոտ, առաջարկելով նույնպիսի դաշինք։*

*Բանակցությունների ի վերջո ավարտվեցին հակաօսմանյան լիգայի ստեղծումով, որի կազմի մեջ էին մտնում Եվրոպայում՝ Վենետիկի հասարակապետությունը, Պապը, Նեապոլի թագավորությունը և Հունգարիան, իսկ Ասիայում՝ Աղ-Կոյունլուների պետությունը, Ղարամանիան և Կիպրոսը։*

*Ուզուն-Հասանին օգնության խոստումներ շատ արվեցին, սակայն եվրոպական դաշնակիցները չկարողացան Արևմուտքից հարձակվել թուրքերի վրա, ինչպես և, բոլոր ճանապարհները թուրքերի կողմից գրավված լինելով, անկարող գտնվեցին բավարար քանակությամբ հրետանի ու վառոդ ուղարկել։ Պատերազմն սկսվելու ժամանակ ողջ Ղարամանիան գտնվում էր արդեն օսմանցիների ձեռքում։ Այսպիսով, հակաօսմանյան լիգան ձևական բնույթ էր կրում և Թուրքիայի դեմ պատերազմող միակ ռեալ ուժը Աղ-Կոյունլուներն էին։*

*Ուզուն-Հասանի մեծ արշավանքը թուրքերի դեմ սկսվում է 1472 թվականին։ Իր որդի Սուլթան-Խալիլին նշանակելով Շիրազի կառավարիչ և նրա վրա պարտականություն դնելով «պահել զկողմանս արևելեան», Ուզուն-Հասանը գալիս է Տարոն, հիմնահատակ ավերում քրդերի ձեռքին գտնվող ինչ-որ բերդ (թերևս Մուշի բերդը) և վեզիր Օմար-բեկի ու զորավար Յուսուֆի հրամանատարության տակ գործող հարյուր հազարանոց մի հեծելազոր է ուղարկում «Հոռոմոց տուն», այսինքն՝ Օսմանյան կայսրության սահմանները Աղ-Կոյունլուներն սկզբից ունենում են նշանակալից հաջողություններ. մեծ ավերածություններ գործելով իրենց ճանապարհին՝ նրանք, Դերջանի ու Երզնկայի վրայով, հասնում են Թոխաթ։ Քաղաքը գրավվում է, ազգաբնակչությունը կողոպտվում։ Այս արշավանքին են վերաբերվում Մովսես Արծկեցու հետևյալ տողերը՝*

*«Քաղաքըն մեծ Թողաթ հասան,*
*Ոսկի, արծաթ եղև թաղթան,*
*Կումաշն ամէն հրով կիզան»։*

*Թոխաթի գրավումից հետո Աղ-Կոյունլուների բանակը դիմում է դեպի Ղարամանիա։ Մահմադ Բ-ի որդի Մուստաֆան, որը Ղարամանիայի կուսակալ էր նշանակված, ստիպված նահանջում է դեպի Քութահիա։ Սակայն քիչ անց, 1472 թվականի օգոստոսին, Կոնիայի մոտ տեղի ունեցած ճակատամարտում Աղ-Կոյունլուները կրում են պարտություն, զորահրամանատար Յուսուֆը գերի է ընկնում, Ուզուն-Հասանի որդիներից երեքը սպանվում են (տե՛ս Գ. Այվազովսկի, Պատմութիւն Օսմանեան պետութեան, հտ. Ա, Վենետիկ, 1841, էջ 210—217,* И. Петрушевский, *նշվ. աշխ., էջ 174)։*

*Միևնույն ժամանակ Աղ-Կոյունլուները կռվում էին նաև Եգիպտոսի մամլուկյան սուլթանության դեմ, մի հանգամանք, որ անշուշտ ջլատում էր նրանց ուժերը և նպաստում օսմանցիներին։ Այս ճակատում ևս նրանք չունեցան հա-*

*ջողությամբ։ Մովսես Արծկեցին հայտնում է, որ Փադիշահը (այսինքն Ուզուն-Հասանը) պաշարել էր Հալեպը, բայց քաղաքացիները չէին հնազանդվել նրան։*

*Այսպիսով, 1472 թվականին, օսմանցիների ու Աղ-Կոյունլուների միջև տեղի ունեցան երկրորդական նշանակություն ունեցող մարտեր, փոփոխակի, հաջողություններով։*

*Պատերազմը բորբոքվեց 1473 թվականին։ Գարնանը Մահմադ Բ սուլթանը (հիշատակագիրների կողմից «Ջիթախ» կոչված) հարյուր հազարանոց բանակով արշավի դուրս եկավ։*

*Դեպքերին ժամանակակից անանուն մի հիշատակագիր հայտնում է, որ «յայսմ ամի եկն անաւրէն խովանդքարն, որ Ջթախ կոչի, բաղում և անթիւ զօրօք ի Հոռոմոց աշխարհէն յաշխարհս մեր։ Եւ եկն նախ ի յԵզնկայն և այրեաց զքաղաքն» (հշտկ. № 434, էջ 343)։*

*Խաս Մուրադ փաշայի հրամանատարությամբ գործող օսմանյան առաջապահ գունդը հանդիպեց Ուզուն-Հասանի զորքերին, որոնք ծուղակ էին պատրաստել նրանց համար։ Վերոհիշյալ անանուն հիշատակագիրը այսպես է նկարագրում թշնամի բանակների Մալաթիայի մոտ տեղի ունեցած առաջին բախումը. «...Եւ սակաւ զօրօք յառաջ դային ընդդէմ Ջթախին։ Իսկ Ջթախն ոչ դիտէր դարանամուտ զօրաց մերոց, և յառաջ եկան և մտան ի պատերազմ ընդ սակաւ զօրացն, որ ընդդէմ նոցա կայր, և դարանամուտքն հասին զկնի, փակեցին զզօրսն Ջթախին, և եղև սաստիկ պատերազմ յառաւօտէ մինչև ցերեկոյ։ Յառաջ յաղթեցան զօրքն մեր, և հրամանաւ աստուծոյ յաղթեցան զօրքն Ջթախին, վասն զի, ել հողմն սաստիկ և փչեաց զերկրին փոշին ի վեր Ջթախին, և այնպէս փոշի եղև, որ մին զմին ոչ կարէր տեսանել։ Եւ զօրքն մեր զհետամտեալ սաստկապէս կոտորեց [զզաւրս] Ջթախին, և [զՄուրատ փաշայն]* բռնեալ և ածին Հասանին և սպանին։ Եւ ողորմութեամբն աստուծոյ [ազատեցաւ] աշխարհս մեր ի զօրաց Ջթախին» (հշտկ. № 434, էջ 343)։*

*Ուշագրավ են նաև հիշատակարանի շարունակության մեջ նկարագրված անցքերը։*

*Այս պարտությունը հուսալքում առաջ բերեց օսմանյան բանակում. «Իսկ փատրիա[ր՞]հն նոցա, որ խովանդքար կոչի,— շարունակում է մեր հիշատակագիրը,— փախեաւ և եմուտ ամրոցն անպիտան զօրօքն, իբրև վաթսուն հազարաւ։ Վասն զի ամրոցն, որ յետեւին էին բերեալ իբրև զքաղաք մի բոլոր էր մեծութեամբ և մեծամեծ զնջիլով և տախտակով պատ[եալ]»։*

*Օսմանյան բանակի փախուստն ու հուսալքումը սակայն երկար չի տևում. խմբելով իրենց ուժերը նրանք պատրաստվում են հակահարձակման։*

*Երկրորդ անգամ թշնամի բանակները բախվեցին Դերջանի դաշտում, 1473 թվականի օգոստոսի 12-ին։*

*Այս անդամ Աղ-Կոյունլուները կրեցին ծանր պարտություն.*

*Ուզուն-Հասանը, թողնելով պատերազմի դաշտում ամեն ինչ՝ փրկեց իր կյանքը փախուստով։ Նրա որդի Զեյնալը, որը բանակի աջ թևի հրամանատարն էր, սպանվեց կռվի դաշտում։ Օսմանցիների ձեռքն անցավ պատերազմական մեծ ավար. հազարավոր թուրքմեններ գերվեցին։*

*Աղ-Կոյունլուների պարտությունը բացատրվում է հրազենի պակասով և նրանց բանակի կազմակերպչական հնամենի ձևով. այդ բանակն ըստ էության*

* *Հիշատակարանի այս մասը վնասված ու անընթեռնելի է եղել. լրացնում ենք ըստ իմաստի, այլ ազբյուրների տվյալներով։*

իրենից ներկայացնում էր միայն քոչվոր ցեղերի աշխարհազոր, իսկ Օսմանյան բանակն այդ ժամանակ կազմված էր հիմնականում ենիչերիների մշտական զորադնդերից (И. Петрушевский, նշվ. աշխ., էջ 174)։

Ուզուն-Հասանի պարտության լուրը արագությամբ տարածվեց Հայաստանում և տխրությամբ արձանագրվեց հայ մի շարք հիշատակագիրների կողմից։

Թուրքական բանակը իր անցած ճանապարհին կողոպտում ու այրում էր շրջակայքի հայկական գյուղերն ու ավանները և դերում բնակչությանը։

Խախտյաց գավառում և, մասնավորապես, Բաբերդում օսմանցիների գործած անգթությունների մասին կարևոր տվյալ է հաղորդում դեպքերից տարիներ հետո (1480 թ.) Մարտիրոս գրիչը, որն Ամիրդովլաթ նշանավոր բժշկի պատվերով շարադրել է հիշատակարան թուրքերի կողմից Բաբերդից գերված և Կոստանդնուպոլսում վաճառված մի Սաղմոսարանի համար։ Այդտեղ գրված է. «Յորժամ գնաց մեծ խօնդքար սուլտան Մուհամատն ի վերայ Ուզուն-Հասանայ և կոտորեաց զնա, արար փախստական, բուին զերծեալ գնաց ի Թավրէժ. և սա դարձավ եմուտ ի Խախթեան գաւառ, ի քաղաքն Բաբերթ կոչեցեալ, այրեաց և աւերեաց և գերի երեր Ըստըմպօլ Սաղմոսարան մի լաւ և ընտիր աւրինակ» և այլն (հշտկ. № 563, էջ 441)։

1473 թվականի օգոստոսի 12-ի այս ճակատամարտով Արևմտյան Հայաստանի մի մասը վերջնականապես ընկավ օսմանյան թուրքերի ծանր ու իր հետևանքներով աղետավոր լծի տակ։

Աղ-Կոյունլուների պարտությունից հետո պետության մեջ գլուխ են բարձրացնում կենտրոնախույս ուժերը. Ուզուն-Հասանի որդիներից Ուղուրլու-Մուհամեդը 1474 թվականին ապստամբություն է բարձրացնում հոր դեմ, ապստամբությունը ճնշվում է մեծ դժվարությամբ. Ուղուրլու-Մուհամեդը պարտությունից հետո ապաստան է գտնում օսմանցիների մոտ։

Իր կենդանության վերջին տարիներին Ուզուն-Հասանը, խուսափելով ուժեղ ու հզոր հակառակորդներից, թալանչիական պատերազմներ է մղում թույլ հարևանների դեմ։ Ասպատակության ասպարեզ է դառնում հատկապես Վրաստանը, որն այդ ժամանակ մասնատված էր չորս անկախ իշխանությունների (Քարթլի — Արևելյան Վրաստան, Իմերեթ — Արևմտյան Վրաստան, Կախեթ և Սամցխե կամ Մեսխեթ)։

Դեպի Վրաստան առաջին խոշոր արշավանքը սկսվեց 1476 թվականի սեպտեմբերին*։ Օգտվելով այն առիթից, որ վրաց թագավոր Բագրատ Զ-ն (1466—1478) կռվի էր դուրս եկել լեզգիների դեմ, Ուզուն-Հասանը, հարյուր հազարանոց հեծյալ ու հետևակ բանակով, ներխուժեց Վրաստան և լուրջ դիմադրության չհանդիպելով, գրավեց և ավերեց Տփխիսը և ասպատակիչ խմբեր ուղարկեց երկրի տարբեր մասերը։

Գորու վրա հարձակվող զորախմբին հաջողվեց գրավել բերդը, կոտորել բերդի երեքհարյուր պաշտպաններին և 15 օր խուզարկումներ կատարելով անտառից դուրս բերել մեծ թվով գերիներ։ Այլ զորախմբեր հասան մինչև Աբխազիա և մինչև «ի կատար լերինն Կովկասու»։ Ամենուրեք կողոպտելով ու բնակչությանը սրի քաշելով, Ուզուն-Հասանի բանակը հետ վերադարձավ Վրաստանից մեծ ավարով և գերիներով։

* Ուզուն-Հասանը Վրաստանի վրա արշավանքի էր դուրս եկել նաև 1466—1467 թթ. ու գանձել 16.000 դուկատ փրկագին (տե՛ս И. Петрушевский, նշվ. աշխ., էջ 175)։

Ուզուն-Հասանի կազմակերպած այս արշավանքի մանրամասնություննե-րի, նրա զորքերի գործած ոճիրների մասին գրանցումներ են կատարել մի շարք հիշատակագիրներ, որոնցից ուրույն տեղ են գրավում մեզ արդեն ծանոթ Ստեփանոս Ձմշկածագեցի բանաստեղծ-հիշատակագիրը և Սամցխեի աթաբակ Ղորղորեի իշխանության սահմաններում գտնվող Բասենի էգեպատ գյուղում աշխատող Մելքիսեթ գրիչը։

Ծանոթանանք նախ Ստեփանոս գրչի հիշատակարանի համապատասխան հատվածին.

«Յինըն հարիւր Հայոց թուի
Եւ ի քսանհինգ սկսեալ ամի (= 1476)։
Որ տանուտէր Կարիճն ասի,
Հասան փադշահըն մեծ սուլտան
Ցամէն դիմաց հրաման եհան,
Որ զօրք բազում ժողովեցան,
Վասն աւերմանցն Վրաց տան։
Հարիւր հազար թիւ էր համակ
Ի ձիաւոր 'ւ ի հետևակ.
Տփխիս մտին խիստ համարձակ,
Առեալ արին զնա աւերակ։
Բագրատ թագաւորն Վրաց տան
Գնացեալ էր ի Լակզստան
Վասն կուոյ և բարկութեան,
Մնացեալ աշխարհն անտիրական....։
Զթուրքմանի ձայնն երբ լուան
Ամենեքեան ելեալ փախեան,
Մայրս 'ւ ի մացառուտս գնացեալ մտան,
'Ի այլքն ի բերդերն ամրացան։
ԶՏփխիս առեալ և նստէին,
Զմնացեալսն ինքեանց հնազանդէին.
Գումդ մի հեծեալ պատրաստեցին
Գօրոյ վերայ յուղարկեցին։
Ընդ հասանելն՝ ըղբերդն առին,
Զարսըն սրով կոտորեցին՝
Զերեք հարիւրսն՝ որք անդ կային։
Զկին և զտղայսն գերեցին,
Հապա ելեալք մայրին մտին,
Տասնևհինգ օր որոնեցին,
Զամենեսեան ըմբռնեցին,
Զար կապանօք առեալ բերին։
Զարսըն սրով խողխողէին,
Զպառաւ կանայս այլ ընդ նոսին,
Զքահանայսըն գենուին
Առեալ զարիւնն ըմպէին։
Ո՞վ կարէ գրով պատմել,
Կամ զմեռեալսն համարել,

Ըզմոնչիւն նոցա լըսել,
Որք ի յարիւման էին շաղախել...»

(Հշտկ. № 496, էջ 394—395):

Ոչ պակաս արժեք է ներկայացնում Մելքիսեթ գրչի հիշատակարանը: «Ի թուականութեանս Հայոց Ջ. և ԻԵ. (1476) ամի, ամսոյն սեպտեմբերի*,— գրում է նա,— ժողովեցան անթիւ զաւրքն տաճկաց և գնացին ղաղա ի Վրացտուն. և իջեալ բանակեցաւ առ ափն Քուռ գետոյն, ի քաղաքն Փայտակա[րա]ն, որ այժմ ասի Տփխիս. և սփռեաց ղաւրսն իւր յաշխարհն Վրաց, և հասեալ մինչև ի սահմանս Ափխաղից, և ելեալ ի կատար լերինն Կովկասու, և անդի ժողովեցին բազում աւարս և գերիս ի մի վայր, և շատ ոճիրս գործեաց: Քանզի ԼԲՌ. (32.000) գերեցաւ և ԽԸՌ. (48.000) մարդ ի սուր սուսերի մաշեցաւ: Զայս ամենայն մեր լուեալ և տեսեալ զարհուրէաք...» և այլն (Հշտկ. № 522, էջ 415):

Հիշատակագիրները տարբեր թվական տվյալներ են հաղորդում այս արշավանքի ընթացքում գերեվարվածների ու սրի քաշվածների մասին: Մելքիսեթ գրիչը, ինչպես տեսանք, սպանվածների թիվը 48 հազար, իսկ գերվածներինը՝ 32 հազար է հաշվում: Գրիգոր և Հովսեփ գրիչները հայտնում են, որ Ուզուն-Հասանի զորքերը «արարին ԼԶՌ. (36.000) գերի, թո՛ղ զայլսն, զոր սպանին և սրախոխ արարին» (Հշտկ. № 495, էջ 392): Զաքարիա գրիչը 1477 թվականին, վերհիշելով նախորդ տարվա արշավանքի սարսափները, գրում է, որ Ուզուն-Հասանը «առ ու գերի արաւ զաշխարհն Տփխիս՝ ԿՌ. (60.000) մարդ: ԼՌ. (30.000) ի սուրն անցուցին, ԼՌ. (30.000) գերի. վայ ինձ հազար բերան» (Հշտկ. № 525, էջ 418): Անանուն մի ժամանակագիր, սպանվածների մասին տվյալ չհաղորդելով, միայն գերիների թիվը վաթսուն հազար է համարում. «ՋԻԵ. (1477) թվին,— գրում է նա,— Հասան պէկն Վրացտուն գնաց և բազում գերիս արար, թուով ԿՌ. (60.000)» (Մ Ժ I, էջ 148):

Այս տվյալներից եթե նույնիսկ ընդունելի համարենք նվազագույնը, դարձյալ պարզ կլինի, որ Ուզուն-Հասանի այս արշավանքով Վրաստանը ծանր հարված կրեց: Չպետք է կասկածել միաժամանակ, որ գերվածների ու սպանվածների մեջ կային հազարավոր հայեր, որոնք ԺԴ. դարի 30-ական թվականներից, ինչպես և դրանից առաջ ու հետո, գաղթել ու բնակություն էին հաստատել հարևան Վրաստանի սահմաններում:

Դեռևս չէր դադարել այս արշավանքից դժբախտացած ընտանիքներում լացն ու կոծը, երբ Ուզուն-Հասանը, մեկ տարի միայն հանգիստ առնելով, կրկին արշավեց դեպի Վրաստան:

Վերը հիշատակված անանուն ժամանակագրության շարունակության մեջ գրանցված ենք գտնում հետևյալ տողերը. «ՋԻԶ. (1477) թվին դարձեալ գնաց [Ուզուն-Հասանն] Վրացտուն և սրահեղ եղև ի սրբոյն Գէորգա և եկեալ մեռաւ» (Մժ, I, էջ 143):

Շատ ավելի արժեքավոր են Ուզուն-Հասանի վերջին այս արշավանքի մասին ձեռագիր մի Հայսմավուրքի ստացող ոմն Ամիրի գրանցած տողերը. «Ի

* Մատենադարանի № 903 ձեռագիր Մաշտոցի 1ր էջի վրա կատարված են ընտանեկան հիշարժան դեպքերի գրանցումներ: Դրանցից մեկում ասված է. «Աստուածատուր [ծնաւ ի թվ.] ՋԻԴ. (1475), որ Ուզուն-Հասան գնաց ի Վրաստանն: Հավատ ընծայել՝ այս վկայությանը չենք կարող, որովհետև մեր հիշատակագիրները միաբանում են վրաց աղբյուրների հետ, որոնք նույնպես արշավանքի տարին համարում են 1476 թվականը (տե՛ս Լ. Մելիքսեթ-բեկ, Վրաց աղբյուրները Հայաստանի և հայերի մասին, Բ. հատոր, Երևան, 1936, էջ 135):

ամին ժամանակի,— գրում է նա 1478 թվականին,— եկն Հասան պարոն ի Վրացտուն և քակեաց, և բազումս սրով կոտորեաց, և աւէրս էած, և քառասուն հազար անձն գերեաց. և զտառապանքս սոցայ ո՞ կարէ գրով արկանել։ Բազումս եկ[եղ]եցիք քակեցին, զխաչ և զգիրք կորուցին զայլ անաւթ եկեղեցու Եւ ինքն չարայչար մահուամբ սատակեցաւ, որպէս մանկակոտորն Հերովքէս անիծեալն» (հշտկ. № 538, էջ 425)։

Այսպիսով, Ուզուն-Հասանը, այս արշավանքի ժամանակ «սրահեզ եղև» և «չարաչար մահուամբ սատակեցաւ» — 1478 թվականի հունվարի 5-ին։

Գ

Աղ-Կոյունլուների աշխարհակալ դինաստիայի հիմնադիր Ուզուն-Հասանի մահից հետո երկրով մեկ ծայր առան փահակալական կռիվներ նրա հինգ որդիների միջև։ Ազդեցիկ ու զորավոր քոչվոր ցեղերի ավագանիները, որպես գահի թեկնածու առաջ քաշելով հանգուցյալ փադիշահի որդիներից որևէ մեկին, ձգտում էին փաստական տերը դառնալ ողջ պետության։

Գահի շուրջը ծագած երկարատև ու արյունահեղ այս կռիվները պայմանավորված էին Աղ-Կոյունլուների պետության բնույթով։ Այն, նման արևելյան մյուս բռնապետությունների, բաղկացած լինելով տնտեսապես և քաղաքականապես չշաղկապված ու պատահականորեն միավորված էթնիկապես տարացեղ երկրամասերից, ենթակա էր ներքին բուռն փոթորիկների՝ անվանի որևէ դահակալի մահվանից կամ ռազմական պարտությունից անմիջապես հետո։

Իշխանությունը սկզբում գրավեց Ուզուն-Հասանի անդրանիկ որդի Սուլթան-Խալիլը, որը սպանել տվեց գահը տենչացող իր եղբայրներից Մաղսուդին։ Սակայն Սուլթան-Խալիլին վիճակված էր թագավորել ընդամենը վեց ամիս։ Նրա եղբայրներից Յաղուբը, ստանալով Բայանդուրի ու Մովսիլու քոչվոր ցեղերի ռազմական օժանդակությունը, դուրս եկավ ավագ եղբոր դեմ և 1478 թվականի հուլիսի 17-ին, Խոյի մոտ տեղի ունեցած ճակատամարտում, պարտության մատնեց նրան (И. Петрушевский, նշվ. աշխ., էջ 175)։

Քաղաքական խառն այս անցուդարձերի ժամանակ Վայոց-ձորի Սրկղունք գյուղում Դավիթ գրիչն ընդօրինակում էր մի Ճառընտիր։ Ձեռագրի 217-րդ էջի ընդօրինակման ժամանակ դեռևս թագավորում էր Խալիլը.

«Ի ղանութեան նոր փաթշահոյս
Խալիլ-Սուլտանն նստեալ այժմուս,
Ահաբեկեալ ի Վրացոյս»—

գրում է այդ մասին Դավիթը։ Իսկ երբ մեր գրիչն ավարտեց ձեռագրի ընդօրինակության աշխատանքները՝ Խալիլն արդեն սպանված էր։ «Եղև օարտ գրրգոյս,—գրում է նա գլխավոր հիշատակարանում,—ի թվիս Հայոց ՋԻԷ. (1478), և ի ղանութեան Յայղուպ-պէկին, որդոյ Հասան-բէկին, թոռինն Աւթմնայ, զոր յայսմ ամի էսպան զեղբայրն իւր զՍուլտան-Խալիլն և էառ զսուլթանութիւնն» (հշտկ. № 541, էջ 427)։

Նույն դեպքերի մասին տվյալներ է գրանցել 1479 թվականին Առեստ գյուղում նաև Մելքիսեթ գրիչը. «Հասան-բէգն մեռաւ և թագաւորեաց որդին՝ Սոլթան-Խալիլն, և միւս որդին Աղուբէկն (իմա՛ Յաղուբ-բէկ) յարեաւ բաղում զաւրաւք ի վերայ եղբօրն, և եսպան զնա, և ինքն թագաւորեաց ամենայն աշխարհի» (հշտկ. № 553, էջ 436)։

Յաղուբը թագավորեց տասներկու տարի՝ 1478—1490 թթ.։ Նա ռազմական գործին անընդունակ, թույլ բնավորության տեր մարդ էր, ուստի երկրի փաստական իշխանությունը գտնվում էր իր հոր՝ Ուզուն-Հասանի անվանի զորահրամանատարների՝ Սուլեյման բեկ Բիժան-օղլու (հիշատակարաններում կոչվում է Մեծ կամ Քաջ իշխան Սուլեյման), Բայանդուր բեկի (հիշատակարաններում՝ Բայանդուռ Ղոչ ամիրա) և Մովսիլու ցեղի պետ Սուֆի-Խալիլի ձեռքում։

Փորձառու այս զորահրամանատարների միջոցով Յաղուբին հաջողվեց հաղթական պատերազմներ մղելով վերականգնել Աղ-Կոյունլուների պետության քաղաքական վարկն ու տերիտորյալ ամբողջականությունը։

1479 թվականին Յաղուբի զորքերն արշավեցին Արևելք՝ թամուրյանների դեմ։ «Այժմ գնացեալ է բազում զօրօք ի յԱրևելս ընդ Ջաղաթին»,— հայտնում է Յաղուբի մասին վերը հիշատակված Մելքիսեթ գրիչը (նույն տեղում)։

Հաջորդ՝ 1480 թվականին, Բայանդուր բեկի հրամանատարությամբ, Աղ-Կոյունլուները ջարդ տվեցին Եգիպտոսի ու Սիրիայի սուլթան Սեյֆ-ադ-դին Կաիտ-բեյի (1468—1496) զորքերին, որոնք գրավելով Եդեսիան, մտադրվել էին շարունակել՝ իրենց առաջխաղացումը և տիրել Դիարբեքիրին։

Հակոբ Արծկեցի գրիչը 1480 թվականին շարադրած իր հիշատակարանում այս արշավանքի մասին գրում է. «Ի սոյն ամի եղև մեծ պատերազմն ի յՈւրհայ քաղաք, վասն զի Պաղ անուն զօրավարն Մսրայ սուլթանին եկեալ բազում զօրօք ի վերայ յՈւրհայոց, և աւարեալ զերկիրն քաղաքովն, և նստեալ ի վերայ բերդին՝ փլուց բովանդակ և ի յառ երեր։ Իսկ Աղուպ փատշահն, որդի Հասան փաթշահին... առաքեաց զքաջ զօրավարն իւր զՂօչ Բայանդուռն* բազում զօրօք։ Եւ պատերազմեցաւ ընդ Պաղին օրինօք, ճակատ առ ճակատ, և յաղթեալ նմա՝ կոտորեաց զզօրս սորա և փախստական արար շապաղ իւրեան հեծելին և յողորկեաց արմաղան Հոռոմոց սուլթանին» (Հ. Ոսկյան, Տարօն-Տուրուբերանի վանքերը, էջ 184—185)։

1484 թվականին Ստեփանոս գրչի ընդօրինակած հիշատակարանից տեղեկանում ենք, որ Յաղուբը մեծ ու ավերիչ արշավանք է ձեռնարկել Վրաստանում, հատկապես ծանր հարված հասցնելով Տփխիս մայրաքաղաքին։

«[Յաղուբ-բէկն],— գրում է նա,— բազում [քա]ղաք և տեղիք էառ և աւեր արար, և գնաց ի Վր[աց]տուն, և ղավ[ր]քն սփռեալ տարածեցան յերկիր /// և մտեալ ի մեծ քաղաքն Տըփխիս, և սուր ի [վերայ եդ]եալ կոտորեցին առհասարակ զծերս և զտ[ղայս, առ]հասարակ՝ զքահանայքն և [սա]րկաւագ[ունքն] ի յեկեղեցո միջին զենուին։ Եւ զորս փախըստա[կան ի] մացառս մայրոյ որոնէին և գտեալս [զենուին՝ որ]պէս զանասուն, և զբազումս գերեցուցին /// աւերեցին և բազում նոճիս գործեցին /// փախստական արարին ///» (Մատենադարան, ձեռ. № 7593, էջ 273բ)։

Այս նույն արշավանքի մասին 1487 թվականին, փոքր ինչ ուշացած տվյալ է գրանցել Սյունեցի մի գրիչ. «[Եաղուպ-պէկն] գնաց աւերեաց զերկիրն Տըփխեց, զեկեղեցի, ղխաչ, զամենայն կործանեաց, շատ գերեցոյց քրիստոնէից»։

Այս նույն 1487 թ. Բաղեշի քրդերը սրբազան պատերազմ («ղազա») էին

---

* Ի. Պետրուշևսկին, հենվելով Շարաֆ բեկի վրա, այս պատերազմում Աղ-Կոյունլուների զորքերի հրամանատար է համարում Սուլեյման-բեկ Բիժան-օղլուն (տե՛ս նշվ. աշխ., էջ 175). մեր կարծիքով Հակոբ Արծկեցի գրիչը, լինելով ժամանակակից նկարագրած դեպքերին, առավել արժանի է վստահության։

հայտարարել և մեծ վնասներ էին պատճառում Բաղեշի ամիրության հայ բնակչությանը։

Դրությունը մխիթարական չէր նաև օսմանցիների կողմից գրավված հայկական շրջաններում և Թուրքիայի հայաշատ քաղաքներում,

Սուլթան Մահմադ Բ -ի հրամանով, 1479 թվականին, բռնի տեղահանվեցին, ու տարվեցին Կոստանդինուպոլիս Ղարամանիայի հայերը։ Տարագրվածներից մեկը այդ «սուրգունի» մասին հայտնում է հետևյալը. «Ի Թուականիս Հայոց ՋԻԸ. (1479) սուրկուն արար խօնտքարն զՂարամանին աշխարհին զհայ ազգս, և զիս՝ զանպիտան հողս զՄարտիրոս՝ հետ բերին ի Կոստանդնուպօլիս» (Հշտկ. № 563, էջ 441)։

1480-ական թվականներին մի քանի անգամ բախվեցին օսմանյան և եգիպտական բանակները, և ամեն անգամ, երկուստեք կոտորածներից, գերությունից ու կողոպուտից անմասն չէին մնում ճակատամարտերի թատերաբեմ հանդիսացած շրջանների հայ ռայաթները («Հանդէս ամսօրեայ», 1927. սյուն. 433)։

1487 թվականին Բուդաղ-բեկի հրամանատարությամբ գործող օսմանյան զորքերից շատ զառնություններ կրեցին Սեբաստիայի շրջակայքի հայերը։ Փիլիպպոս դպիրը, որն այդ ժամանակ Սեբաստիայում զբաղված էր մի Ճաշոցի ընդօրինակությամբ, իր ժամանակը բնորոշելով «դառն ու նեղ» խոսքերով, պատմում է, որ «Բուտախ-բեկն դաստուր ունէր խոնդքարէն և էառ բաղում հեծել, եկաւ ի վերայ Անթափու և ջարդեցաւ, և շատ աւար էած Սեբաստիոյ երկրիս, և բազումք սրախողող մեռան, և շատ տեղ աւերեցաւ» (Մատենադարան, ձեռ. № 6273, էջ 343)։

Մի տարի հետո (1488 թ.) նույնպիսի ծանր վիճակ ստեղծվեց Սիս քաղաքում և շրջակա գավառներում բնակվող հայերի ու այլազգիների համար, երբ օսմանցիները արշավանքի դուրս եկան Եգիպտոսի սուլթանի դեմ. «Յայսմ տարոջս,— գրում է այդ մասին Մարգարա անունով մի գրիչ,— երեկ խոնդքարի տղէն ի վերայ Մսրայ սուլտանին և զՍիս առաւ և զիւր բերդորայքն զամէն. և շատ ազգի ազգի պատուհաս երեկ ի վերայ աշխարհիս վասն մեղաց մերոց. և աստուած յայլ պէթարէն ազատէ» (Մատենադարան, ձեռ. № 6273, էջ 343)։

Յաղուբի թագավորության վերջին տարիներին սրվեցին հարաբերությունները Աղ-Կոյունլուների և Արդաբիլի Սեֆյան շեյխերի միջև։

Սեֆյան շեյխերի ֆեոդալական դինաստիան, որ ԺԵ. դարի սկզբներից տիրում էր Արդաբիլի շրջանին, պատմական ասպարեզ իջավ որպես շիա աղանդին պատկանող դերվիշական միաբանության ժառանգական հոգևոր առաջնորդների ընտանիք։

Սեֆյանների հիմնական հենարանը հանդիսանում էին ադրբեջանական այն յոթ քոչվոր ցեղերը, որոնք հետագայում ստացան ղզլբաշ (կարմրագտակ) անունը։ Դրանցից միայն Շամլու և Ռումլու ցեղերն էին հաստատվել Արդաբիլի շրջակայքում, իսկ մյուս հինգ ցեղերը, կամ նրանց բաղկացուցիչ խմբերը, մտնում էին Աղ-Կոյունլու ցեղային խմբավորման մեջ և թափառում էին Արդաբիլից շատ հեռու ընկած երկրամասերում (Զուլկադար ցեղը, օրինակ, բնակություն էր հաստատել Մարաշի կողմերում)։

Ղզլբաշ բոլոր ցեղերը, դառնալով Սեֆյան շեյխերի վասալներ, համարվում էին նրանց մյուրիդները և ամեն տարի, իրենց «սուրբ» շեյխի առաջին իսկ կոչով, խմբվում էին նրա դրոշի ներքո, «անհավատների» դեմ սրբազան

պատերազմ վարելու համար. իսկ անհավատ համարվում էին բոլոր այն ժողովուրդները, որոնց հնարավոր էր կողոպտել, գերել ու կեղեքել։ Նրանց ասպատակությունների հիմնական զոհերն էին լինում Դաղստանն ու Վրաստանը։

Հայ անանուն մի հիշատակագիր, որի մեծարժեք գրության հետ ստորև առիթ կունենանք ի մոտո ծանոթանալու, ուշագրավ տվյալներ է հաղորդում ղզլբաշ մյուրիդների ամենամյա հավաքույթների և իրենց շեյխերի հրամանին հլու՝ նրանց ձեռնարկած արշավանքներին մասնակցելու մասին։ Նա գրում է. «Զի էր սահմանք և սովորութիւն նոցա, որ յամենայն ամի փութային ի կոչն նորա (իմա՛ Սեֆյան շեյխի) յամենայն աշխարհէ կարմրագտակ սօֆիքն, և զինուորէին նմա իւրեանց թոշակօքն, և փոխանակ առնելոյ ի նմանէ՝ ինքեանք տային նմա բազում ոսկի և արծաթ, և յամենայն պատերազմունս, ընդ որ երթայր, յօժարութեամբ կռուէին և մեռանէին առաջի նորա» (Բ. Սարգիսյան, Մայր ցուցակ, հտ. բ., էջ 1159—1161, Մատենադարան, ձեռ. № 6273, էջ 353—356 և այլն)։

Շեյխ Հայդարի իշխանության տարիներին (1456—1488) Սեֆյան ֆեոդալական աշխարհազորը, վերոհիշյալ հիշատակագրի հաղորդած տվյալներով, բաղկացած էր լինում 40 հազար նվիրված ու անկաշառ զինվորներից, ուստի Արդաբիլի շեյխերը ռազմական ու քաղաքական պատկառելի ուժ ունեին։

Դաղստան կամ Վրաստան արշավելիս, նրանք անցնում էին Շիրվանի վրայով, ոտնատակ տալով Շիրվանշահերի երկիրը։ Մի հանգամանք էր այս, որ չէր կարող չսրել ֆեոդալական երկու այդ իշխանությունների՝ Սեֆյանների ու Շիրվանշահերի՝ փոխհարաբերությունները։ Եվ ահա 1488 թվականին, երբ ողջ Առաջավոր Ասիան թատերաբեմ էր դարձել ռազմական գործողությունների, երբ «յաշխարհն Ջախաթային բազում պատերազմունք և արեան հեղումն եղև, և Մսրա սուլտանն և Հոռոմոց խոնդքարն զմիմեանս ջարդեցին և կոտորեցին», Սեֆյան շեյխ Հայդարը «ժողովեաց թղթով իւրով զամենայն սօֆիսն իւր՝ յամենայն երկրէ»։ Նրա կոչով հավաքվեցին 40 հազար ղզլբաշներ և նա ձեռնարկեց մե նոր արշավանք դեպի Դաղստան։

Սակայն այս անգամ Շիրվանշահ Ֆառուխ-Յասարը (1462—1500) արգելեց նրանց անցնել իր երկրով։ Զայրացած ղզլբաշները արհամարհեցին նրա արգելքը և ուժով մտան Շիրվան, Դաղստանում կատարելիք «գազայի» զոհ դարձնելով Շիրվանի ադրբեջանցի ու հայ բնակչությանը։ Հրեշավոր ոճիրներ գործեցին նրանք, կոտորեցին հազարավոր անմեղ մարդկանց՝ առանց տարիքի ու սեռի խտրության, մորթեցին բանող անասուններին, հրդեհեցին Շիրվան քաղաքը... Այս արշավանքի ընթացքում Շիրվանի ազգաբնակչության կրած անլուր տառապանքների մանրամասն նկարագրությունը պարունակող հիշատակարանից մեջ ենք բերում մի ուշագրավ հատված. «Եւ զամենեսեան,—գրված է այնտեղ,— որ ի ձեռն էած (Շեյխն-Հայդար) ի քրիստոնէից և ի տաճկաց՝ զարս և զկանայս՝ սրով կոտորեաց, և զքաղաքն ամենայն հրով այրեաց՝ կումաշօքն և որ ինչ էր ի նմա...։ Եւ զանասունսն զամենայն՝ զձի և զջորի, զուղտ և զոչխար սրով կոտորեաց, և այնպես ոչ խնայեաց ի մարդ և յանասունս» (Նույն տեղում)։

Շիրվանշահ Ֆառուխ-Յասարը, անզոր լինելով սեփական ուժերով հակահարված տալու ղզլբաշներին, օգնություն խնդրեց Յաղուբից։ Վերջինս ղզլբաշների դեմ ուղարկեց ուժեղ մի բանակ՝ անվանի զորավար Սուլեյման-բեկ Բիժան-օղլու հրամանատարությամբ։ Աղ-Կոյունլուներին մեծ զոհերի գնով միայն հաջողվեց պարտության մատնել Շեյխ-Հայդարին։ Վերոհիշյալ ընդարձակ հի-

*շատակարանում պատմական այս անցուդարձերը նկարագրված են այսպես. «Զի գոյժ արկեալ տէրն Շամախու ի Թաւրէզ, առ փատշահ փեսայն իւր Աղուպ, և ծանոյց նմա. և նա յուղարկեաց զիշխանն մեծ Սուլէման բազում զօրօք, որ գնացեալ ջանիւ մեծաւ մարտեան և յաղթեալ կոտորեցին առհասարակ զամենեսեան և ինքեանք ևս շատք մեռան» (Նույն տեղում)։*

*Այս և Յաղուբ փադիշահի գահակալության ընթացքում Հայաստանում ու հարևան երկրներում տեղի ունեցած քաղաքական անցուդարձերի համառոտ տարեգրությունը. հարատև պատերազմներ, գերևարություն, սով ու ավար, մասսայական կոտորածներ և այլ արհավիրքներ,— ահա հայ ժողովրդի կյանքի մշտական ուղեկիցները։ Անտարակույս նույն գառնությունները էին ճաշակում Աղ-Կոյունլուների լայնածավալ պետության մեջ ապրող բոլոր ժողովուրդները, առանց ազգության ու դավանանքի խտրության, սակայն հայ ժողովրդի դրությունն ավելի էր սաստկանում կրոնական այն հալածանքներով, որոնք հատկապես սուր բնույթ ստացան Յաղուբի թագավորության տարիներին։ Բազմաթիվ հիշատակագիրներ, մեկը մյուսից անկախ, աշխատելով Հայաստանի տարբեր ծայրամասերում, նույնանման տվյալներ են հաղորդում քրիստոնյա հպատակների նկատմամբ Յաղուբի վարած քաղաքականության մասին։*

*Այսպես, 1486 թվականին Թավրիզում նահատակված նշանավոր հայ վաճառական ու դիվանագետ խոջա Միրաքի վարքաբանության հեղինակ Գրիգոր Ջորթան Արճիշեցին Յաղուբին կոչում է «այր ժանտ և անօրէն, անգութ և անողորմ, հալածիչ քրիստոնէից», հայտնում է, որ «սա խափանեաց ի քրիստոնէից թամբով ձի հեծնուլ, զհնչումն ժամուց և զանգակաց, ղզենմունս, և սպիտակ գստի առանց կապուտի, և այլ բազում չարիս արար» (Մատենադարան, ձեռ. № 6273, էջ 337—343)։*

*Ժամանակակից մի այլ տեղեկատու՝ Բարսեղ անվամբ գրիչը հայտնում է, որ Յաղուբը «շատ փորձութիւն և նեղութիւն և վիշտ հասոյց քրիստոնեայ ազգին և եկեղեցականացն կարգաւորաց. և հայերէն միսն խափանեց, և զմեռեալն ի ցած ասաց տանուլ, և զժամ ղարնուլն խափանեց, և եկեղեցիք քակեց ի հմանէ, և քրիստոնէից ալրէնքն ճանգարեց, և շատ դառնութիւն արար ի վերայ քրիստոնէից» (Ա. Սիւրմէեան, Ցուցակ հայերէն ձեռագրաց Հալէպի..., Երուսաղէմ, 1935, էջ 68)։*

*Քրիստոնյաների նկատմամբ հալածանքի այս քաղաքականության հիմնադիրը Յաղուբը չէր անշուշտ։ Մենք արդեն առիթ ենք ունեցել ցույց տալու, որ այդպիսի սահմանափակումների ու կրոնական հալածանքների հիմքը դրել էր դեռևս Ուզուն-Հասանն իր հաղթանակից անմիջապես հետո։ Այնուամենայնիվ պետք է ենթադրել, որ Յաղուբը գերազանցեց իր հորը այս բնագավառում, խստացնելով քրիստոնյա հպատակների ճնշումն ու հարստահարումը։*

*Յաղուբը լուրջ փորձեր արեց նաև Սյունիքում և Այրարատում իրենց գոյությունը պահպանած փոքրաթիվ ու սակավազոր հայ ֆեոդալներին բռնի մահմեդականացման ճանապարհով ներձուլելու ուղղությամբ։*

*Պռոշյան իշխաններից սերված Հովհաննես եպիսկոպոսը 1488 թվականին Այրիվանքում շարադրած իր հիշատակարանում հայտնում է, որ «յայսմ ամի խ. (40)ազատորդի կալան, թէ տաճկացէք. այլ ողորմածն աստուած ձեռնտու և ատհական եղև նոցա... որ է. (7) ամիս կալուական կացին և բազում տուգանք տվին և ի հօատոցն Քրիստոսի ոչ դարձան» (Մատենադարան, ձեռ. № 4859, էջ 650բ)։*

Անշուշտ հայ ժողովրդի իրավական ու տնտեսական վիճակի խիստ ծանրությունն ի նկատի ուներ Ներսես Աբեղանցի գրիչը, երբ շարադրում էր իր հիշատակարանում՝ «Բազումք մահ խնդրէին անձանց իւրեանց ի բազմանալոյ անօրէնութեանն» պերճախոս տողերը (Մատենադարան, ձեռ. № 6273, էջ 346—347)։

Յաղուբ փադիշահը մեռավ 1490 թվականի վերջերին, Ղարաբաղում, թունավորվելով (ըստ ոմանց թյուրիմացաբար) իր մոր և եղբոր կողմից։ Դեպքերին ժամանակակից անանուն մի ուրիշ խրոնիստ այս կապակցությամբ գրում է. «[ՌԴՃ]Գ. (1490) թվին գնաց [Յաղուբ բէկն] ի Ղարապաղն. մայրն և իւր եղբայրն մահադեղ արբուցին Յաղուբ բէկին, նա իմացաւ՝ մօրն և իւր եղբօրն՝ Յուսայի բէկին մահադեղէն խմեցոյց, ի միասին մեռան ի Ղարապաղն» (Մժ, I, էջ 194)։

Յաղուբի մահվանից հետո ողջ երկիրը փոթորկվեց գահակալական արյունահեղ գոտեմարտերի հոսանքով և այդ պայքարը, կարճատև տեղատվություններով, ուղեկցեց Աղ-Կոյունլուներին մինչև նրանց պետության վերջնական անկումը՝ 1502 թվականին։

Դսեղցի Հովհաննես գրիչը, 1491 թվականին շարադրած իր հիշատակարանում, Յաղուբի մահվանից հետո ստեղծված քաղաքական կացությունը բնորոշում է հակիրճ ու ճշմարտացի հետևյալ տողերով. «Զ. և Խ. (1491) ամին, ի ցաւալից և տրտմազգեաց ժամանակիս, որ եղև մահ և կորուստ Աղուբէկին՝ որդոյ Հասան-բէկին։ Որ եղև յետոյ նորա աղմուկ և խռովութիւն ի մէջ տաճկաց. նոքա տկարացան և անկան» (Մատենադարան, ձեռ. № 6875, էջ 81ա)։

Փաստական իշխանությունը երկրում գտնվում էր Ուզուն-Հասանի մեզ արդեն ծանոթ զորահրամանատարներ աթաբեկ Սուֆի-Խալիլի և մեծ վեզիր Սուլեյման-բեկ Բիժան-օղլու ձեռքին։ Սրանք, ինչպես և նշանավոր այլ ավագանիներ, ձգտում էին Աղ-Կոյունլուների գահի վրա բազմեցնել իրենց խաղալիք դարձած Բայանդուրի թագավորող դինաստիայից սերված որևէ ամիրզադայի՝ պետության կառավարչությունն ամբողջովին առինքնելու համար։

Եվ ահա, քոչվորական մրցակից ցեղերի զորավոր առաջնորդների կամքով, երկրի տարբեր մասերում միաժամանակ փադիշահ են հռչակվում չորս տարբեր ամիրզադաներ։

Թավրիզում, Սուֆի-Խալիլի ջանքերով, գահ է բարձրանում Յաղուբի որդի Բայսունղուրը (1490—1492). Իրաքում մեծ ամիր Բայանդուր բեկը փադիշահ է հռչակում Յուղուբի եղբայր Մեսիհին. Համադանում Փոռնակ քոչվորական ցեղի ամիր Շահ-Ալին առաջ է քաշում գահի մի այլ հավակնորդ՝ Ուզուն-Հասանի թոռներից Մահմուդին։ Գահը գրավելու փորձ է կատարում նաև Ուզուն-Հասանի թոռներից՝ Ռուստամը (այս մասին տե՛ս И. Петрушевский, նշվ. աշխ., էջ 176)։

Սուֆի-Խալիլին հաջողվում է 1490—1491 թթ., հօգուտ Բայսունղուրի, պարտության մատնել գահի մյուս թեկնածուներին։ Մեսիհն ու Մահմուդը* սպանվում են այդ պայքարի ընթացքում, իսկ Ռուստամը բանտարկվում է Երնջակի բերդում։

---

* Փոռնակ ցեղի ամիր Շահ-Ալու և նրա կողմից փադիշահ հռչակված Մահմուդի պարտության ու սպանության մասին կարևոր են ԺԵ. դարի անանուն մի խրոնիստի գրանցած հետևյալ տողերը. «Նուէմբեր ամսոյ ի վերջքն (1490 թ.) մեծամեծ պարոնէքն յամէն յաղացան Խալիլ բէկին։ Նա զարունքն գնաց ի յՏ | ՙ | Փօռ[ն]ակ Շահ-Ալին վերայ, սպանեց զնա և զՈւղուռլու Մահմատի որդին» (Մժ, I, էջ 194)։

Քաղաքական խառն այս անցուդարձերը դրավել են հայ հիշատակագիրներից շատերի ուշադրությունը, որոնց շարքում իր ուրույն ու ակնառու տեղն ունի Մովսես Արծկեցին, 1491 թվականին շարադրած ընդարձակ հիշատակարանով։ Նա դրում է. «Ջի մեռաւ Աղուպ փատշահն ի թախթն իւր՝ ի Թաւրէզ, և մեռաւ ընդ իւր մայրն և եղբայրն։ Եւ Սօֆի-Խալիլն եդ ի թախթն զորդի փատշահին զԲայսանղուրն, և կոտորեաց ի յազգէ փատշահին, որ էին Բայանդուռ, աւելի քան զքսան մեծամեծ պարոնայք։ Եւ բազում զօրս ժողովեալ և անճա՛պարեալ գնաց ի յԵրազ, և անդ ի Համաղան կռուեալ, և բազում պարոնայք ի սուր անցան» (Մատենադարան, ձեռ. № 4822, էջ 471 ա)։

Սուֆի-Խալիլին, սակայն, վիճակված չէր ճաշակելու իր հաղթանակի պտուղները։ Շուտով նրա դեմ է դուրս գալիս Սուլեյման-բեկ Բիժան-օղլին և հարավային Հայաստանի (հատկապես Վասպուրականի) շրջանները դառնում են մրցակից հզոր ամիրների պայքարի թատերաբեմ։

Նկատի ունենալով այն հանգամանքը, որ ներքին գահակալական այդ կռիվները, տեղի ունենալով Հայաստանում, անմիջական կերպով ազդում էին նաև հայ աշխատավոր ժողովրդի վրա, պատճառելով նրան ծանր զրկանքներ, ավելորդ չենք համարում շարադրել պատերազմական գործողությունների համառոտ տարեգրությունը։

Սուլեյման-բեկը 1490 թվականին «բազում զաւրաւք» արշավել էր «ի վերայ բերդին Ամդոյ» (Մատենադարան, ձեռ. № 6495, էջ 436բ)։ 1491 թվականի սկզբներին, երբ Սուֆի-Խալիլը ուղի էր հարթում իր համար պետության ղեկը գրավելու, Սուլեյմանը դեռևս գտնվում էր «ի դաշտին Համթայ, առ ստորոտ Սեաւ լերինն» և պատերազմում էր Սուֆի-Խալիլի եղբորորդի Գուլաբի հետ, որը «մեծ պարոն և ուլուբէկի» էր։ Գահի հավակնորդների դեմ տարած հաղթանակից հետո Խալիլն իր ուժերն ուղղեց դեպի Ամիդ, վտանգավոր ու զորավոր իր հակառակորդի՝ Սուլեյման-բեկի դեմ։ Բայց մինչ նա կհասներ Բերկրի, Սուլեյմանն արդեն «կռուեալ կոտորեաց զզօրսն Գուլաբուն և եսպան զնա»։ Խալիլը արագ արշավով դիմեց դեպի իր թշնամին և հասավ Մանծկերտի դաշտը, սակայն Սուլեյմանը, ինչպես հաղորդում է Մովսես Արծկեցին իր մեծարժեք հիշատակարանում, «միւս կողմովն ծովուն» (այսինքն Վանա լճի հարավով) գալիս-հասնում է «յերկիրն Գաւաշից, հանդէպ Աղթամարայ» և սկսում տենդագին զորք հավաքել («և անդ զօրաժողով առնէր)։

Սուֆի-Խալիլը Մանզկերտում պատերազմի է բռնվում Սուլեյմանի կողմնակիցների հետ և, շատերին ջարդելուց հետո, Վանա լճի հյուսիսով հետ է վերադառնում՝ Սուլեյմանին պարտության մատնելու և նրան պատկանող Վանն ու շրջակա գավառները տիրելու հավակնություններով։

Մովսես Արծկեցին հայտնում է, որ Խալիլի զորքերը «ընդ անցանելն աւերեցին զերկիրս Արծկոյ, և աւար հարին, և բազում ոճիրս գործեցին, և մարդիք սպաննեցին»։ Այնուհետև Խալիլը, նույն հիշատակագրի տվյալներով, «գնացեալ աւերեաց զԱմուկ, զՎան և զՈստան երկրովն և արար առ և թալան և շատ աւերք։ Եւ զվաներն առաւել աւերեցին, զի զդարանսն գտին, և զգրեանսն և զամենայն սպասք եկեղեցեացն յաւար առին» (Մատենադարան, ձեռ. № 4822, էջ 470ա—470բ)։*

---

* Սուֆի-Խալիլի գերած ձեռագրերից մի քանիսը հետագայում փրկագնվել են հայերի կողմից ու վարձյալ նվիրաբերվել վանքերին։ Այդպիսիններից են օրինակ Մատենադարանի №№ 959 և 5860 Մաշտոցները։

Մի այլ գրիչ, Աղթամարցի Մատթեոսը, լրացնելով Մովսես Արծկեցուն, հայտնում է, որ Խալիլը Վանը կողոպտելուց ու ավերելուց բացի, վերցրել է նաև մեծ թվով գերիներ («ածերեալ և բազումս աւար և գերի արարեալ»)։ Գրտանըվելով Աղթամար կղզու հանդիպակաց ափին, «զայրանայր ի վերայ մեր, որպէս գազան պիղծն այն [Խալիլ] և բազում չարիս խորհէր, թէ առնում զտեղն և զամենայն սրախողխող առնեմ և զսրբութիւնսն քակեմ,—գրում է այդ մասին Աղթամարցի նույն հիշատակագիրը («Հանդէս ամսօրեայ», 1955, էջ 140)*։

Խալիլը Սուլեյման-բեկի վրա հարձակվելուց առաջ, իր դաշնակից Ոստանի քուրդ ամիր Եզդինշերին հանձնարարում է դարանամուտ լինել և հարվածել Սուլեյմանին թիկունքից։ Սակայն նրան չի հաջողվում ծուղակի մեջ գցել փորձված ու անվանի զորավարին։ Սուլեյմանը, նախահարձակ լինելով, նախ ջարդում է «զքուրդն Եզդինշէր, որ եկեալ էր յետնէ՝ դարան գործել նմա, անձինս Գռ. (3000)» և ապա, ժամանակ չկորցնելով, հարձակվում է Խալիլի վրա. «Եւ ամտի դարձեալ՝ դիմեաց ի վերայ Սօֆուն»,—հայտնում է նույն հիշատակագիրը (Մատենադարան, ձեռ. № 4822, էջ 471բ)։

Ճակատամարտը տեղի է ունենում 1491 թվականի օգոստոսի սկզբին Վանի դաշտում։ Սուֆի-Խալիլը պարտություն է կրում և սպանվում։

Խալիլի պարտության և սպանության լուրը հրճվանքով են ընդունում Աղթամարի միաբանները. նրանցից ոմանք, զայրույթով հիշելով Աղթամարը գրավելու և կողոպտելու մասին Խալիլի ունեցած մտադրությունը, Աղթամարի սուրբ Խաչի միջամտությամբ են բացատրում նրա կրած պարտությունը։ «Որով սաստեալ սուրբ Խաչի զաւրութեամբ,— գրում է Մատթեոս Աղթամարցին,— յետս դարձոյց զնա [զՍուֆի-Խալիլն], և գնաց ի Սուլիման բէկն, և կոտորեաց զնա ի դաշտին Վանայ. և կորեաւ անիծեալն աստուծոյ Սոֆի անունն այն»։

Պարտության մատնելով իր հակառակորդին և դառնալով Աղ-Կոյունլուների պետության փաստական տերը, Սուլեյման-բեկ Բիժան-օղլին անհրաժեշտ չգտավ գահազուրկ անել Սուֆի-Խալիլի դրածո փադիշահ Բայսունղուրին։ Վերջինս շարունակեց կատարել մարիոնետի իր դերը, այս անգամ արդեն ունկնդրելով նոր «էմիր ալ-ումարա» (ամիրների ամիր) Սուլեյման-բեկի հրահանգիչ ձայնին։

1491 թվականին, երբ Աղ-Կոյունլուները, զբաղված լինելով ներքին կռիվներով, ժամանակ ու հնարավորություն չունեին պաշտպանելու իրենց պետության սահմանները, աշխուժության որոշ նշաններ ցույց տվեցին Քարթլիի թագավոր Կոստանդին Բ -ն (1479—1505) և Սամցխեի աթաբեկ Ղորղորեն։

«Եւ յետ այսորիկ,— գրում է Մովսես Արծկեցին,— համարձակեցան ազգն վրաց, և ելեալ ի դուրս՝ շատ աւերք արարին, և զհայ և զտաճիկ թալանեցին, և շատ վրդովմունք եղև, և գեղք և գաւառք աւերեցան» (Մատենադարան, ձեռ. № 4822, էջ 471բ)։

Արծկեցուն ուշագրավ մանրամասնություններով լրացնում են երկու այլ

---

* Թերևս Սուֆի Խալիլը նպատակ ուներ գրավել Աղթամարը ոչ միայն ավարառության, այլ և Սեֆյան Շեյխ-Հայդարի անչափահաս որդիներին գերելու նպատակով։ Եվրոպական մի շարք ուղեգիրներ միաբերան վկայում են այն մասին, որ Շեյխ-Հայդարի որդիները, հատկապես հետագայում շահ հռչակված Իսմայիլը, երկար ժամանակ պահվել են Աղթամարում, հայ կուսակրոնների խնամակալության ներքո։

հիշատակագիրներ՝ Դսեղցի Հովհաննես գրիչը և Մելքիսեթ գրիչը «ի դաւաւէն Գուգարոյ»։

Սրանցից առաջինը հայտնում է, որ Յաղուբ բեկի մահվանից հետո, երբ «աղմուկ և խռովութիւն» ընկավ Աղ-Կոյունլուների պետության մեջ ու նրանք «տկարացան և անկան», «ազգս քրիստոնէից և թագաւորն Կոստանդինէն յաբեան և ուղիղ եղան և գնացին մինչև ի Գեղարքունի, մինչև Շիրակվան...։ Եւ էառ ղվաւոռյ բերթն թագաւորն, և ումի իշխանութիւն ի վերայ երկրիս և երկիրս ի յահէ անաւրինաց մտեալ կան ի բերթերն և ի ձորերն, զի խիստ սասանեալ կան» (Մատենադարան, ձեռ. № 6875, էջ 81բ)։

Մելքիսեթ գրիչը տեղեկություն է հաղորդում Սամցխեի աթաբեկի դեպի Արզրում կատարած արշավանքի մասին. «Յորում ամի մեռաւ Եաղուպ խանն,— գրում է նա,— և այլքն... մի ըմի կոտորեցին, մինչև մնաց և ոչ մի ի յազգէն Պաինդրոյ. Եւ ելեալ պարոնն վրաց Ղաւրղաւրէ ԼՌ. (30.000) մարդով ի վերայ քաղաքին Արզրումայ, և աւարի առ զերկիրն և արար զքաղաքն հարկատու» (Գ. Սրուանձտեան, Թորոս աղբար, Ա, էջ 119—121)։

Աղ-Կոյունլուների այս հարատև արշավանքներն ու տեղահանումները, որոնց ուղեկցում էին սպանություններ, գերևարություն ու տեղահանումներ, բնականաբար խիստ բացասաբար պետք է անդրադառնային ժողովրդական տնտեսության վրա։ Եվ իրոք, 1491—1492 թթ. Հայաստանում «Եղև սղութիւն հացի և ամենայն իրաց, կապեցաւ ամենայն աշխարհս, որ ոչ կարէին ի տեղաց ի տեղ երթալ»,— հայտնում է Մովսես Արծկեցին։ Անանուն մի հիշատակագիր նույն այս սղության մասին գրանցել է հետևյալ ողբաձայն տողերը. «Ո՜հ, ո՜հ, զայս գառն տարիս, ցորեանն ի Կ. (60) թ[ան]կ[այ] ու չկա, կորեկն ու դարին ի Ծ. (50) թ[ան]կ[այ]. և աղքատք ամէն խիստ տառապին և անիծեն զՍոֆին» (Մատենադարան, ձեռ. № 4782, փջ 220ա)։

Ժողովրդի վիճակը լրիվ պատկերացնելու համար ավելացնենք նաև, որ նույն այս տարիներին Հայաստանում տարածվում են զանազան տարափոխիկ հիվանդություններ։ «Եւ եղև ջերմ յոլով և ցաւք ազգի ազգի ի մարդիկ»,— հաղորդում է Մովսես Արծկեցին 1491 թվականի մեզ ծանոթ հիշատակարանում։ Նույն գրչի երկու տարի հետո շարադրած հիշատակարանից տեղեկություն ենք ստանում շատ ավելի մեծ թվով զոհեր պատճառող համաճարակային մի այլ հիվանդության բռնկման մասին. «Ի սոյն (1493) ամի,— գրում է նա,— եղև սաստուածասաստ պատուհասն ի վերայ երկրի, զի վասն ծովացեալ մեղաց մերոց եկն մահտարաժամ և տարածեցաւ ի վերայ ծովեզերիս. և եղև շատ խեղճ և ողորմ բաներ, և բազում տունք աւերեցան և դրունք փակեցան» (Մատենադարան, ձեռ. № 4515, էջ 233—235)։

Սուլեյման-բեկի հաղթանակով գահակալական պատերազմների հորձանքը կանգ չառավ։ Նրա դիկտատուրան ևս կարճատև եղավ։ Սուֆի-Խալիլին նա պարտության մատնեց, ինչպես ասացինք, 1491 թվականի օգոստոսին, բայց իշխանության ղեկը կարողացավ իր ձեռքում պահել ընդամենը մի քանի ամիս՝ մինչև 1492 թվականի մայիսի կեսերը։

Սուլեյման-բեկի դեմ քոչվոր ավագանիների դժգոհությունը գլխավորեց Բայանդուրի դինաստիայի կրտսեր ճյուղի ներկայացուցիչներից Դանա-Խալիլի որդի Իբրահիմ Այբա-Սուլթանը։ 1492 թվականի մայիսի 15-ին Այբա-Սուլթանը Երնջակի բերդից ազատ արձակեց գահի հավակնորդ Ռուստամին և արշավեց մայրաքաղաքի վրա։ Քոչվոր ցեղերի ամիրների մեծ մասը անցավ Ռուստամի և

Այբա-Սուլթանի կողմը և նրանց հաջողվեց, առանց մեծ դժվարությունների, պարտության մատնել Սուլեյման-բեկին ու Բայսունղուրին։

Այս դեպքերի մասին հավաստի տվյալներ է գրանցել ունիթոռ խրոնիստը. «[ՌԴԾ]ԴԲ. (1492) թվին,—նշում է նա,— Իբրահիմ իմիրզէն բազում զօրօօ նրեկ, մայիս ա[մս]ոյ ի ԺԵ. (15) Ըռստամ իմիրզէն հանեց և գնաց Սուլէյման բէկին վերայ։ Ս[ու]լէյմանն փախաւ ի Քուրդստան և սպանաւ ի ձեռն Դանա-Խա-լիլ[ի] որդոյն Նուր-Ալի բէկին» (Մ Ժ, I, էջ 195)։

Սուլեյման բեկի Թավրիզից փախուստի ստույգ օրը հնարավոր է լինում որոշել հետևյալ հիշատակագրությամբ. «Այսաւր փախեաւ Սուլիման բէկն ի Թաւրիզու. թվ. ՋԽԱ. (1492) արեգի Գ. (3) աւուր ամառնամտին, յերեսաց Ըռուստամ ամիրզին» (Մատենադարան, ձեռ. № 4782, էջ 305բ)։

Հայկական շարժական տոմարի ՋԽԱ. (1492) թվականի ամանորը համընկել է հուլյան տոմարի նոյեմբերի 18-ին իսկ արեգի 3-ը՝ հունիսի 1-ին. ուստի իրավացի է հիշատակագիրը այդ օրն ամառնամուտ կոչելով։

Այսպիսով Ռուստամը գրավում է գահը 1492 թվականի հուլիսի 1-ին և նոր ամիրների ամիր Այբա-Սուլթանի խնամակալությամբ թագավորում մինչև 1497 թվականը։

Գահազուրկ արված Բայսունղուր փադիշահը իր մայրական պապ Շիր-վանշահ Ֆառուխ-Յասարի զինական օժանդակությամբ ապարդյուն և իր հա-մար կորստաբեր փորձ կատարեց դահը վերագրավելու։

«Հուսէյին-Ալի բէկն,— գրում է ունիթոռ խրոնիստը,— էառ զԲայնսաղուր իմիրզէն, գնաց ի Շրվան, ձմեռն եկաց ի տեղն, գարունքն ելաւ ի Շրվանու և էրեկ ի Բաղարշայն» (ՄԺ, I, էջ 195)։

Բայսունղուրի ու նրա կուսակիցների դեմ միասնաբար դուրս են գալիս Ռուստամի ու Սեֆյան շեյխ Հայդարի երիտասարդ որդի Սեիդ-Ալու զորքերը. 1493 թվականին Ախարի մոտ տեղի ունեցած ճակատամարտում Բայսունղուրը պարտություն կրելով գերվում է և տարվելով Թավրիզ՝ խեղդամահ է արվում։

«Սահտ-Ալի բէկն գնաց կովեցաւ, յաղթեց ու զԲայնսաղուրն բռնէց ՌԴԾԴԳ. (1493) թվին, տարավ ի Թարվէզ, խեղդեցին»,—գրում է անանուն խրոնիստը։

Ռուստամը իր համար կայուն հենարան ստեղծելու նպատակով սկսում է պետական հողերից շռայլ բաշխումներ կատարել քոչվոր ցեղերի ավագանինե-րին։ Հասան-բեկ Ռումլուն հայտնում է, որ մեկ հարյուրամյակի ընթացքում, Կարա-Կոյունլու և Աղ-Կոյունլու փադիշահերից և ոչ մեկը այնքան սոյուրղալ-ներ չի բաժանել, որքան իր հնգամյա թագավորության տարիներին Ռուստամ փադիշահը (տե՛ս И. Петрушевский, նշվ. աշխ., էջ 177) Թերևս մասամբ դրա-նով պետք է բացատրել Աղ-Կոյունլուների կործանման եզրին հասած պետու-թյան խիստ կարճատև կայունացումը։

Նախորդ տարիների գահակալական կռիվների ու պատերազմների դաժանու-թյունները ճաշակած ժողովուրդը Ռուստամ փադիշահի թագավորության տա-րիներին փոքր-ինչ շունչ է քաշում։ Մեր հիշատակագիրները 1492—1497 թթ. ընթացքում շարունակում են ժողովրդի վիճակի մասին տխուր տվյալներ գրան-ցել, իրենց ապրած ժամանակը «խիստ նեղ և դժար» համարելով և այլն (տե՛ս, օրինակ, Մատենադարան, ձեռ. № 4155, էջ 137բ, ձեռ. № 4154, էջ 221ա և այլն)։ Այնուամենայնիվ, նրանք խիստ արտահայտություններ քիչ են գործա-

ծում և հարկահանության ծանրացման կամ մասսայական հալածանքների, սպանությունների ու դերևարության մասին չեն խոսում։

Սակայն, ընդհանուր առմամբ, Աղ-Կոյունլուների պետության հպատակ ժողովուրդների դրությունը այն աստիճանի ծանր էր, քոչվոր ավագանու կենտրոնախույս ձգտումները ղետական ապարատի նեխման հետևանքով այն աստիճանի անսանձ ձևերով էին արտահայտվում, որ պետության մոտալուտ փլուզումը կանխելու համար արմատական միջոցառումներ էին պետք։ Այդպիսի միջոցառումների կիրառման խիղտխ փորձ կատարեց Ուզուն-Հասանի թոռ Ահմադը։ Սա ծնվել ու մեծացել էր Օսմանյան կայսրության սահմաններում, ուրտեղ, Ուզուն-Հասանի դեմ բարձրացրած անհաջող ապստամբությունից հետո ապաստան էր գտել իր հայրը՝ Ուղուրլու-Մուհամմեդը։

Տեղյակ լինելով Աղ-Կոյունլուների պետության ներքին դրությանը Ահմադը, որին կարճահասակության համար Գյոդա-Ահմադ էին կոչում, նախապատրաստվում էր գրավելու Աղ-Կոյունլուների անկայուն գահը։

1497 թվականի գարնանը նա դալիս է Երզնկա, որտեղ իր կողմնակիցները նախօրոք արշավանքի համար անհրաժեշտ քանակությամբ ձիեր էին հավաքել։ Քոչվոր ավագանիների մի մասը, Այբա-Սուլթանի գլխավորությամբ, միանում է Ահմադին, և վերջինս սկսում է իր արշավանքը Ռուստամ փադիշահի դեմ։

Դեպքերի ընթացքը ումիթոռ խրոնիստը պատմում է այսպես. «ՌԴԽԶ է (1497) թվին Ուղուրլու-Մահմատի որդին՝ Սոլթան Ահմատն Ստըմբօլ էր. գնա երեկ, Ըռըստամն գնաց դէմ, կուիլ չկարաց, էրեկ ի Ղաճարին հեծէլն ժողովեցւ Սոլթան Ահմատն էրեկ ի Թարվէզ, Ըռստամն էրեկ ի վերայ, Ջուղու դաշտումն կռվեցան. Ըռստամն յաղթվեցաւ, սպանաւ բազում զօրօք» (Մժ, I, էջ 195)։

1497 թվականի մայիսի 3-ին Ահմադը բազմեց Աղ-Կոյունլուների գահին։ Նա իշխեց ընդամենը 8 ամիս, բայց այդ կարճատև ժամանակամիջոցում համառ ջանքեր գործադրեց քոչվոր ավագանու ուժերը ջլատելու և կենտրոնական իշխանության վարկն ու հեղինակությունը բարձրացնելու համար։ Նա մահապատժի ենթարկեց ու բանտերը նետեց կենտրոնախույս ձգտումներ ունեցող բազմաթիվ անվանի քոչվոր ցեղապետերի, հետ խլեց Ռուստամի կողմից ջռայլորեն բաժանված սոյուրղալները և իր համար ամուր սոցիալական հենարան ստեղծելու նպատակով, անց կացրեց հարկային նոր ռեֆորմ, որով չեղյալ հայտարարվեցին շարիաթով չնախատեսված մոտ երկու-տասնյակ նորահնար հարկեր ու տուրքեր (տե՛ս И. Петрушевский, Внутренняя политика Ахмеда Ак-Койунлу. Сборник статей по истории Азербайджана, вып. I, Баку, 1949, стр. 144—152):

Բնականաբար իր այս միջոցառումներով Ահմադը իր դեմ պետք է հաներ ոչ միայն թուրքմենական ցեղերի հզոր առաջնորդներին, այլև տիրող դասակարգերի բոլոր ներկայացուցիչներին, անկախ նրանց ազգային պատկանելիությունից։ Եվ իրոք, հայ բարձրաստիճան ու ազդեցիկ հոգևոր պետերից մեկը՝ Աղվանից կաթողիկոս պարոնտեր Առաքելը՝ ընդարձակ ու հետաքրքիր բովանդակությամբ իր հիշատակարանում, Ահմադի մասին գրում է հետևյալը։ «Եւ ի միւս ամին (1497) [յ]արեաւ ոմն արբանեակ սատանայի և կամարար բելիարեան դասուն ի Հոռոմաց տանէն՝ Սուլթան -Մահմուդ (իմա՛ Ահմադ) անուն, ի յազգէն Պայանդուրի, որդի Եաւղուրլուին (իմա՛ Ուղուրլու), էառ զթախտն Դայվրէժու և եսպան զԸռստում պէկն, և զբազումս ի ցեղէն Պայանդուրի ի

սոր սուսերի մաշեաց և բաղում ոճիրս գործեաց անասելի» (Մատենադարան, ձեռ. № 6964, էջ 138բ)։

Ահմադի դատաստանից խուսափած և Իրաք փախած Այբա-Սուլթանը և Ֆարսիստանի փոխարքա Ղասում-բեկը (Փոռնակ ցեղից) իրենց շուրջը համախմբեցին Ահմադի ներքին քաղաքականությունից դժգոհ բոլոր տարրերին և ապստամբություն բարձրացրին։ Ահմադը Ադրբեջանում զորք հավաքեց և արշավեց ապստամբների դեմ, սակայն 1497 թվականի դեկտեմբերի 13-ին Սպահանի մոտ տեղի ունեցած ճակատամարտում պարտություն կրեց ու սպանվեց։

Ունիթոռ խրոնիստը Ահմադի գահակալության ու վախճանի մասին գրում է հետևյալը. «Ահմատն գնաց ի Թարվէզ, սկսաւ մեծ պարնէքն բռնիլ, Իպայ-Սօլթանն փախեաւ, դիմաց Էրաղատումն (իմա՛ Իրաք. սխալմամբ տպված է «էր աղատումն»), Ահմատն հետևն գնաց, Իպէն յետ դարձաւ Ահմատն սպանեց ձմեռն» (Մժ, I, էջ 195)։

Ահմադի սպանությունից հետո երկրի փաստական իշխանությունը դարձյալ անցավ ամենակարող ամիրների ամիր Այբա-Սուլթանի ձեռքը։ Սա, ինչպես հաղորդում է նույն ունիթոռ խրոնիստը, «զՌուստամի որդին՝ զԱլւանդ իմիրզէն եբեր ի Թարվէզ, թագաւոր եդիր» (Նույն տեղ)։

Ժամանակագրություններին հատուկ այս չոր ու ցամաք գրանցումը վերաբերում է գահակալական պայքարի վերջնական արդյունքին։ Նրա շարադրողը լռությամբ է անցել այդ դեպքերի առնչությամբ հայ ժողովրդի կրած տառապանքների կողքով։ Բարեբախտաբար նույն պատմական անցուդարձերը իրենց արձագանքն են գտել նաև հիշատակարանների մեջ և մեր հիշատակագիրները, դեպքերին մոտենալով հայ աշխատավոր ժողովրդի շահերի ու ակնկալությունների տեսանկյունից, մանրամասնորեն գրանցել են հատկապես այն փաստերը, որոնք առնչվում են ժողովրդի կյանքին ու վիճակին։ Հատկապես արժեքավոր տվյալներ է պարունակում Քաջբերունիքի Ասպինակ գյուղում 1497—1498 թթ. Բարսեղ գրչի ընդօրինակած Ավետարանի հիշատակարանը, որն իր ընդարձակությամբ ու հարուստ բովանդակությամբ առանձնահատուկ տեղ է գրավում այդ թվականներին շարադրված հիշատակարանների շարքում։ Բարսեղը հայտնում է, որ 1498 թվականի փետրվար ամսին «Եղև փորձութիւն և նեղութիւն Հայոց ազգիս, զի արեանարբու և գազանաբարոյ զօրքն Իսմայէլեան և հեծեալքըն Պարսկաստանից շրջեցան ի Հայաստան աշխարհն. նախ ի գաւառն Վասպուրական՝ ի Վան և Ոստան, անթիւ բազմութիւն հեծելոց, որ էր ԺՌ. (10.000), ընդ ինքեանս ունելով զնորընծայ փադշահն զԱլուանդ. և կացին անդ ԺԵ. (15) աւր ուտելով և առնելով, ծեծելով և խլելով՝ ղրկեցին զտառապեալ ազգս Հայոց»։

Նորընծա փադիշահի հետ շրջող տասնհազարանոց զորախումբը Ոստանի ու Վանի շրջանից անցնում է Քաջբերունիք և որոշում ձմեռել Արճեշում ու շրջակա գյուղերում. «և ձմեռնացան քաղաքովն և երկրովն»,—հայտնում է Բարսեղ գրիչը։ Խիստ ծանր վիճակ է ստեղծվում Քաջբերունյաց գավառի հայերի համար։ Զինվոր այդ բարբարոսները, ձմռան սաստկասառույց ցրտին, բնակարաններից դուրս էին վարում մարդկանց ու անասուններին և «ինքեանք մտանէին ի ներքս՝ գրաստօքն իւրեանց»,—հայտնում է նույն հիշատակագիրը և շարունակում. «և զկերակուրսն, զոր ամբարեալ էին մարդոյ և անասնոյ՝ զամենեսեան ըմբռնեցին և առին։ Եւ նովաւ ոչ բաւացան, սկսան չարչարել զքրիս-

տոնևայսն վասն խոտի և յարգի, դարոյ և գինոյ և վասն կերակրոյ և ըմպելոյ»։

Այս բոլորից հետո հայերի վրա դնում են մինչ այդ չտեսնված ու չլսված չափով գլխահարկ՝ «Ի գլուխն ԲՌ. (2000) դահեկան»։ Բարսեղ գրիչը խոսում է նաև հարկահանության ժամանակ կիրառվող խոշտանգումների մասին. «Եւ բապում տանջանօք,— գրում է նա,— չարչարէին զքրիստոնեայս, կախէին և ծեծէին և ի բանդ արկեալ՝ պահէին յերկաթս մինչև շտային զհարկս» և այլն։

Հեռանալու կամ փախչելու ճար չկար «վասն սաստկութեան ձմռանն», ուստի «քրիստոնեայքն ահաբեկ եղեալ ոչ գիտէին եթէ զինչ արասցեն»։ Եվ այս անտանելի վիճակը տևում է այնքան ժամանակ «մինչև հատաւ խոտն և յարդն և գարին», և միայն ամեն ինչ սպառելուց, ժողովրդին մինչև վերջ թալանելուց հետո է, որ նորընծա Ալվանդ փադիշահն ու իր զորքերը հեռանում են Քաջբերունիքից. «Գնացին ի Թաւրէզ և խառնեցան ընդ Իբայ-Սուլթանին» (ձեռագիրը պահվում է Իրանի Փերիա գավառի Նրշկան գյուղում։ Հիշատակարանի ընդօրինակությունը գանվում է Մ. Տեր-Մովսիսյանի ձեռագիր ցուցակում)։

Նոր էր Ալվանդը Թավրիզում բազմել Աղ-Կոյունլուների գահին, երբ պայքարի ասպարեզ մտան դահի նոր հավակնորդներ՝ Յաղուբի որդի Մուրադ խանը, որն այդ ժամանակ գտնվում էր Շամախիում և Ալվանդի եղբայր Մուհամմադը*։

Մուհամմադի մասին հայ հիշատակագիրները որևէ տվյալ չեն հաղորդում, եթե անտեսենք Ալեքսիանոս գրչի 1498 թվականին Մաքենացոց վանքում շարադրած հիշատակարանի մի փոքր հատվածը, որտեղ Մուրադ-խանի հետ միասին, հիշատակվում է նաև ոմն Ահմադ-խան (հավանաբար կարդալու է՝ Մահմադ-խան)։ Սակայն ամիթոռ խրոնիստը մանրամասն խոսում է Բայանդուրի թագավորող դինաստիայի պայազատներից մեկի՝ ոմն Լաթիվ-բեկի մասին, որն իր գործունեության շատ կողմերով հիշեցնում է մեզ Մուհամմադին։

Լաթիվ-բեկը, իր որդիների հետ միասին 1498 թվականին ձերբակալվել է Այբա-Սուլթանի կողմից և նետվել Երնջակի բերդը։ Մի տարի անց՝ 1499 թվականին Լաթիվ-բեկի կողմնակիցներին հաջողվում է ազատ արձակել նրան բանտից, զորք հավաքել և նրա հրամանատարությամբ արշավել Այբա-Սուլթանի և Ալվանդի դեմ, որոնք այդ ժամանակ գտնվում էին Իրաքում։

«Մին տարին անցաւ,— գրում է խրոնիստը,— Աւդուլ-Բաղըն էրեկ բերդիս հէսար, բերդի մարդն զԼաթիւ բէկն հանէց զնդանէ, վէր եկին՝ զԱւդուլ-Բաղըն բռնեցին դրին բերդումն. Լաթիւ-բէկն գնաց զԻպայ-Սօլթանն սպանեց Էրաղատամն (իմա՝ Իրաքում), զԱլւանդին էառ ու իրեր ի Թախթն» (Մժ, I, էջ 195)։

Անվանի իրանագետ Ի. Պ. Պետրուշևսկին, հենվելով պարսկական աղբյուրների վրա, Այբա-Սուլթանի պարտությունն ու սպանությունը կապում է Մուհամմադի անվան հետ։ Նրա ձեռքի տակ եղած տվյալներով 1498 թվականին Ալվանդի դեմ ապստամբություն է բարձրացնում քոչվոր ավագանիների

---

* Ի. Պ. Պետրուշևսկին, բազմիցս վկայակոչված իր արժեքավոր աշխատության մեջ, հայտնում է, որ Գյոդա-Ահմադի սպանությունից հետո Այբա-Սուլթանը փադիշահ էր հռչակել Մուրադին, և հետո միայն, գժտվելով նրա հետ ու բանտարկելով նրան Մարագայի մոտ գտնվող Ռույինդիզ բերդում, ճանաչել էր Ալվանդին որպես փադիշահ (տե՛ս նշվ. աշխ., էջ 179)։

Ինչպես կտեսնենք ստորև, մեր հիշատակագիրները դեպքերի ընթացքը այլ կերպ են շարադրում։

մի խմբավորում, որպես դահի թեկնածու առաջ քաշելով նրա եղբայր Մուհամմադին։ 1499 թվականին Ազիզքենդի մոտ տեղի ունեցած ճակատամարտում Մուհամմադին հաջողվում է պարտության մատնել Այբա-Սուլթանին ու Ալվանդին. Այբա-Սուլթանը սպանվում է այդ ճակատամարտում (տե՛ս И. Петрушевскии, նշվ. աշխ., էջ 17)։

Ունիթոռ խրոնիստի՝ Լաթիվ-բեկի մասին հաղորդած և պարսկական աղբյուրների Մուհամմադի գործունեությունը բացահայտող տվյալների համադրումը թվում է, թե հնարավորություն են ընձեռում նույնացնելու այս երկու անձնավորություններին։ Եվ եթե լրացուցիչ աղբյուրներ գտնվեն այս նույնացումը հաստատող, ապա Մուհամմեդի գործունեության մասին հայտնի տվյալները կլրացվեն Լաթիվ-բեկի մասին ունիթոռ խրոնիստի հաղորդած ուշագրավ մանրամասնություններով։

Դահի մյուս հավակնորդ՝ Յաղուբ փադիշահի որդի Մուրադի քաղաքական գործունեության մասին ընդարձակ տեղեկություններ են գրանցել մի շարք հիշատակագիրներ, հատկապես Վանական ու Բարսեղ գրիչները։

Մուրադի քաղաքական ասպարեզ իջնելու ժամանակ Վանական գրիչն ընդօրինակում էր մի Մաշտոց. հիշատակարանում իր ապրած ժամանակաշրջանի մասին նա գրում է. «Ի նեղ և գառն ժամանակի, որ եղև հալածումն ի վերայ ամենայն քրիստոնէից», իսկ շարունակության մեջ մանրամասնություններ է հաղորդում այդ հալածանքի մասին, անդրադառնալով Մուրադի գործունեությանը։

«Զի եկն Մուրատ-խանն,— գրում է նա,— ի Շամախոյ, որդի Յաղուպ-բէկին, և չուեալ եկն ի Բազարչայն՝ էած հալածումն ի վերայ ամենայն քրիստոնէից։ Տանջէր ղաշխա[րհա]կանս և զկարգաւորքս և ասէր. «Տուք զչիզրայն, թասութ-ի ջիղրայն, թասխիր-ի թաւ[ա]ութ» (այսինքն՝ «տվեք գլխահարկը, գլխահարկի տարբերությունը և տարբերության թերացումը»). զի ոչ գիտէին, թէ զինչ բարբանջեսցեն և տանջեսցեն զհաւատացեալս։ Եղև հալածումն ի յերկրիս Վայիձորոյ, փախեաւ ամենայն երկիր ի լերինս և ի ծերպս վիմաց»։

Վայոց-ձորի և Երնջակի շրջաններում Մուրադ-խանի զորքերը շարունակում են իրենց կողոպուտն ու բռնությունները մինչև մայիս ամիս։ Վանական գրիչը, խուսափելով հարստահարիչներից, ստիպված է լինում վայրից-վայր տեղափոխվել, փախուստի կանգառներում շարունակելով ձեռագրի ընդօրինակման աշխատանքները։

«Ի ամսեանն հինգերորդի,— հայտնում է նա,— եկն Իպի-Սուլտեանն ի Դայէվրեժոյ, և եղեն ճակատ առ ճակատ, և ախտահարեալ զՄուրատ- խանն և արար զնայ ձերբակալ, և եդ ի բանտի» (Մատենադարան, ձեռ. № 960, էջ 307ա—307բ)։

Այս դեպքերին անդրադառնում է, ինչպես ասացինք, նաև Բարսեղ գրիչը։ Թշնամի ուժերը, ըստ նրա հիշատակարանի, հանդիպում են միմյանց Երասխի ափին. «Եւ ոչ կարէին պատերազմել,— գրում է նա,— վասն հորդահոսութեան գետոյն, մինչև փոքր մի նստաւ ջուրն։ Եւ ապա պատերազմեալ արարին բազում կոտորումն։ Եւ առ Իբայ-Սուլթանն [զՄուրատ]-խանն տարեալ ընկեց ի բերդն Մակուայ և արար գաւուպական ի դղեակս նորա»։

Հենց նույն այս օրերին, երբ Այբա-Սուլթանը պարտության մատնեց ու բանտարկեց Մուրադին, նրա դեմ դուրս եկավ Ուզուն-Հասանի Ջհանգիր եղբոր որդի Ղասումը, որն իշխում էր Ամիդում և Մերդինում։ «Եւ իբրև լուաւ զա-

*ռաջանալն Իբայ-Սօլթանին,— դրում է Բտրսեղը,— հարուցեալ բազում հեծելօք [Ղասում պարոնն] և եկն պատերազմել ընդ նմա»։*

*Այբա-Սուլթանը ժամանակ չկորցնելով արշավում է Ղասումի վրա. Թշնամի բանակները հանդիպում են միմյանց «ի ստորոտ լերին ի Սուկաւ, որ է Քոսադաղ», և 17 օր կանգնում դեմ-դիմաց, չիշխելով նախահարձակ լինել։*

*Երկյուղ կրելով թշնամու գերազանց ուժերից, Ղասումը խույս տալով ճակատամարտից՝ հետ է նահանջում։ Այբա-Սուլթանին չի հաջողվում հետապնդել ու ջարդել հակառակորդին, ուստի նա իր զայրույթը թափում է Բասենից մինչև Կարին ընկած գավառների անպաշտպան հայ գյուղերի վրա։*

*Բարսեղն այս մասին գրում է. «Իբայ-Սօլթանն զհետ զնացեալ ոչ եհաս նոցա, վասնորոյ զբարկութիւն սրտին յանմեղ քրիստոնեայսն եհան, ետ ասպատակաւ քանդել և աւերել և թալանել զգաւառն Բասենոյ և զԱւընկոյ...։ Եւ շրջեցան հեծելաղաւրքն ի յերկիրն ամենայն, և առին զամենայն առ և զաւար մինչև ի Կառնոյ քաղաքն, որ է Բէօզուպաւլիս»։*

*Դարձի ճանապարհին, Աղիովտում, Այբա-Սուլթանը կարգադրում է մի կամուրջ կառուցել, որպես շինանյութ օգտագործելով հայկական մի հին գերեզմանատան տապանաքարերը։*

*Մերձավորապես նույն այս ժամանակ (հավանաբար 1498 թ. աշնան սկզբներին) մեծ հալածանք է սկսվում էջմիածնի կաթողիկոսության նկատմամբ։ Ծանր հարկապահանջությունից նեղված Սարգիս կաթողիկոսը էջմիածնից փախուստ է տալիս դեպի Հաղբատ (Մատենադարան, ձեռ. № 6273, էջ 373)։ Հաղբատում ենք գտնում նրան նաև հաջորդ՝ 1499 թվականին։ Հակոբ Նետրաբենց գանձասացը, իր ընդօրինակած Ավետարանի հիշատակարանում, հայտնում է, որ «Յայսմ ամի... աւերեցաւ մեծ կաթողիկէն էջմիածինն և կաթողիկոսն տէր Սարգիսն փախըստական եղև» (Մատենադարան, ձեռ. № 8761, էջ 347ա)։*

*Մաքենոցաց վանքում աշխատող Ալեքսիանոս գրիչը 1498 թվականին շարադրած հիշատակարանում ուշագրավ տվյալ է հաղորդում այն մասին, որ Այբա-Սուլթանը երեք տարվա մալը հավաքել է բռնությամբ՝ երեք ամսվա ընթացքում. «[Այսմ ամի եղև] խռովութիւն խիստ,— գրում է նա,— Իպա-Սուլթան անուն պարոն էառ զԱհմատ-խանն և զՄուրատ-խանն զերեք տարէն մալն Գ. (3) ամսումն էառ» (Մատենադարան, ձեռ. № 3629, էջ 289բ)։ Այսպիսով միանգամայն պարզ է դառնում, որ խառնակ այս տարիներին սանձարձակ քոչվոր ավագանիները ժողովրդին ոչ թե հարկադրում, այլ բառիս ուղղակի իմաստով կողոպտում ու խոշտանգում էին։*

*Ծանր դրություն էր ստեղծվել հայերի համար նաև Վասպուրականում։ Օգտվելով Աղ-Կոյունլուների ներքին երկպառակտություններից, սկսում են իրենց դիրքերն ամրապնդել Հարավային Հայաստանի քուրդ ամիրները։ «Եւ ղաւրացան ազգքն Մարաց», «ազգն Մարաց դարձեալ զօրացան» — գրում են այդ մասին 1498—1499 թվականներին մի շարք հիշատակագիրներ։*

*Ոստանի քուրդ ամիրը՝ Եզդինշերի որդի Ջահիդ-բեկը՝ սկսում է ասպատակել Ռշտունիքի, Հեշատի, Սալմաստի, Աղբակի, Վանի և Բաղեշի շրջանները։*

*Այդ ասպատակությունների մասին մեր հիշատակագիրները մանրամասն*

տվյալներ չեն գրանցել, սակայն ստորև բերվող համառոտ ակնարկներն իսկ ուշագրավ են ու հետաքրքրական։

Մարգարա գրիչը Աղբակի Էրնկանի գյուղում 1499 թվականին շարադրած հիշատակարանում հայտնում է, որ ձեռագրի ընդօրինակման աշխատանքները կատարել է «ի դառն և ի նեղ ժամանակի, զի ոչ կայր փաթշախ, և ազգն Մարաց աւերեցին և քանդեցին զՑէշաւ, զՍալմաստ, զԱխ[լ]ակ, զՎան, և զՈստան, և զԱխթամար» (Մատենադարան, ձեռ. № 5222, էջ 278ա)։

1498 թվականի նոյեմբերի կեսերին Ջահիդ-բեկը գրավում է Աղթամարի կաթողիկոսների նստավայր ու հայրենական կալվածք Աղթամար կղզին, որը վաղուց ի վեր դրավում էր ընչաքաղց ավարառուների ախորժակը։*

Աղթամարի գրավման և այնտեղ կենտրոնացված նյութական ու կուլտուրական մեծ արժեքների կողոպտման մասին ողբաձայն տողեր են շարադրել մի շարք հիշատակագիրներ, որոնց շարքում դարձյալ ուրույն տեղ է գրավում Բարսեղ դրիչը, իր ընդարձակ հիշատակարանով։ Նա դրում է.

«Իսկ ի հասանելն մեր ի Նաւասարդն, դարձեալ եղև սուգ անմխիթար ազինս Հայոց, զի նենգաւոր և ոխակալ ազգն Մարաց դարձեալ զօրացան և եկեալ ասպատակեցին զերկիրն Ռըշտունեաց և արարին բազում առ և թալան։ Աւրըստաւրէ սպասէին առման վասն աստուածապահ կղզոյն Աղթամարայ, ասելով, թէ՝ Զինչ ի ծովու բոլորս մալ և գանջ կայ, ամենայն անդ է եդեալ։ Վասն որոյ ի դիպող ժամու կալան Դ. (4) փուռն (իմա՛ լաստ) և մտեալ ԲՃ. (200) քուրդ յանառիկ կղզին Աղթամար. և առին զամենայն ոսկի և արծաթ, զգանձ և զկումաշ, զդիրք և զԱւետարան, զաշ և ղխաչ, և արարին զԱղթամար որպէս հուղս մրգապահաց»։

Այս նույն ժամանակ, կամ փոքր ինչ առաջ, Այրարատյան նահանգի վրա արշավում է Սամցխեի աթաբեկ Ղորղորեն (մհ. 1498 թ.)։ Նրա զորքերը իրենց հետ ավար են տանում նաև ձեռագրեր, որոնցից մեկը փրկագնվում է 1499 թվականին Ախալցխայում, ոմն Մուրատի կողմից (Մատենադարան, ձեռ. № 6273, էջ 376)։

Մի խոսքով, Այբա-Սուլթանի փաստական իշխանության տարիներին Հայաստանում չկար խաղաղ մի անկյուն, ամենուրեք ժողովուրդը հեծում էր հարկային ծանր լծի տակ, կեղեքվում խաղալիք դարձած և արագությամբ իրար հաջորդող անզոր փադիշահերի ու նրանց հրամանատու քոչվոր ցեղերի ավազանիների կողմից։ Հայ բազմաչարչար գրիչներից մեկը, թարգման հանդիսանալով իր ժամանակի իշխող տրամադրությունների, այդ խառնակ տարիները բնորոշում է պատկերավոր ու դիպուկ այսպիսի տողերով. «Քանզի ի դառն և ի նեղ ժամանակի գրեցաք, որ ամենայն ազգս Հայոց իբրև զծով ալէկոծին ի ձեռն անաւրինաց, և շրջին յաշխարհէ յաշխարհ, և հանգիստ ոչ գտանեն» (Մատենադարան, ձեռ. № 5396, էջ 292ա)։

1499 թվականին Ալվանդ փադիշահի ու ամիրների ամիր Այբա-Սուլթանի դեմ, ինչպես տեսանք վերը, դուրս է գալիս Ալվանդի եղբայր Մուհամմադը (ըստ ոմնիթոռ-խրոնիստի՝ Լաթիվ-բեկը)։ Ազիզքենդի մոտ տեղի ունեցած ճակատամարտում հաղթանակ տանելուց, Այբա-Սուլթանին սպանելուց և Ալվան-

* Բարսեղ գրիչը գրավման ամսաթիվը նշում է այսպես՝ «Ի հասանելն մեր ի Նաւասարդն», իսկ 1498 թվականի նավասարդի 1-ը (ամանորը) ըստ հայկական շարժական տոմարի, համընկել է հուլյան տոմարի նոյեմբերի 17-ին (տե՛ս Recherches sur la chronologie Armenienne, par M. E'duard Dulaurier, Paris, 1859, p. 387).



4—94

դին փախուստի մատնելուց հետո, Մուհամմադը, 1499 թվականի մայիսին հաստատվում է գահի վրա։

Բանտից ազատվելով կրկին գահակալական պայքարի ասպարեզ է մտնում Մուրադը։ 1499 թվականի վերջերին, Սպահանի մոտ մարտի են բռնվում այս երկու ամիրզադաները։ Մուհամմադը սպանվում է կռվի դաշտում և հրապարակի վրա մնում են Աղ-Կոյունլուների գահի երկու մրցակիցներ՝ Ալվանդն ու Մուրադը։ 1500 թվականին սրանց միջև կնքվում է հաշտություն. պետությունը բաժանվում է երկու խոշոր մասերի։ Ալվանդը, նստելով Թավրիզում, իշխում է Ադրբեջանի, Հայաստանի և Քուրդիստանի վրա, իսկ Մուրադին բաժին են ընկնում արաբական ու պարսկական Իրաքները և Ֆարսը։ Դիարբեքիրի, Քրմանի ու Եզդի վրա իշխում են Բայանդուրի դինաստիայի այլ ամիրներ (տե՛ս И. Петрушевский, նշվ. աշխ., էջ 179)։

Իշխանության սֆերաների այս բաժանումից հետո էլ Աղ-Կոյունլուների պետության մեջ կարգը չի վերահաստատվում. երկրի տարբեր մասերում շարունակվում են տեղական նշանակություն ունեցող մարտեր. Բայանդուրի դինաստիայից սերված ամիրզադաներն ու քոչվոր ցեղերի ամիրները դուրս են գալիս մեկը մյուսի դեմ և այլն։

Հակոբ անվամբ մի գրիչ ստեղծված անկայուն ու խառնակ դրության պատկերը նկարագծում է հետևյալ խոսքերով. «Արդ, գրեցաւ սա (Աւետարանս) ի թըւիս Հայոց ՋԽԹ. (1500) ամի, ի դառն և դժար ժամանակի, որ Թաւրիզոյ փատշահութիւնն խարաներ էր և Աղ-Օղլուցող տղղն յիրար անկած էին և պարոնութիւն սոցա ոչ հաստատէին, և աշխարհս կայր յերերմանի, վասն զի միմեանց ոչ հնազանդէին և յԳ. (3)— Դ. (4) դիմաց բաժանեալ էին փատշահութիւնն և զմիմեանս կոտորէին։ Եւ շատ հայ և թուրք թալանուեցան, և գեօղք և քաղաքք աւերեցան, և ազգք քրդաց կոտորեցան և սպանեցան» (Մատենադարան, ձեռ. № 7979, էջ 295բ)։

Օգտվելով խառնակ այս դրությունից իշխանությունը գրավելու անհաջող փորձ է կատարում Ջհանշահ Կարա-Կոյունլուի որդիներից մեկը։ 1499 թվականին, հայտնվելով Գանձակի կողմերում, նա սկսում է զորք հավաքել։ 1500 թվականին նրա և Ալվանդի միջև տեղի է ունենում ընդհարում Ղոչ կոչվող դաշտում. Կարա-Կոյունլու ամիրզադան* պարտություն է կրում ու փախչում։ Հայ հեղինակներից այս մասին տեղեկություն են պահպանել անանուն խրոնիստը (տե՛ս ՄԺ, I, էջ 195) և Հակոբ Արծկեցի գրիչը։ Վերջինս իր մի հիշատակարանում այդ մասին գրել է հետյալ տողերը. «Աղ-Օղլուի թագաւորութիւնն անհաստատ էր և յիրար անկած, և միւս դիմաց Ղարայ-Օղլու ոմն ելաւ, և կռուեալ յոյժ կոտորեցան և կորեան» (Մատենադարան, ձեռ. № 6273, էջ 376—377)։

ԺԵ. դարի վերջին տասնամյակի քաղաքական անցուդարձերի վերը կատարած համառոտ շարադրանքն իսկ բավարար նյութ է մատակարարում համոզվելու համար, որ Աղ-Կոյունլուների պետությունն ապրում էր իր հոգևարքի ծանր օրերը։

---

* Սրա ով լինելը պարզված չէ։ Հնարավոր է ենթադրել, որ անանուն այս Կարա-Կոյունլուն Բարանի քոչվորական ցեղի պետ Սուլթան Հուսեյնն է եղել, որի տիրապետության տակ էին գտնվում Սևանա լճի մոտ գտնվող (արևելյա՞ն) շրջանները (հմմ. И. Петрушевский, Азербайджан в XVI—XVII веках. Сборник статей по истории Азербайджана, вып. I, Баку, 1949, стр. 226).

*Արդաբիլի սեֆյաններին պատմականորեն վիճակված էր նեխած այդ պետական օրգանիզմի գերեզմանափորը լինել և հին ավերակների վրա աշխարհակալ մի նոր պետության հիմքերը գնել։*

*1488 թվականին դեպքերի առնչությամբ մենք արդեն առիթ ունեցանք թռուցիկ մի ակնարկով ծանոթանալու Արդաբիլի Սեֆյան ֆեոդալական իշխանության կազմավորման ու քաղաքական կյանքի ասպարեզ մտնելու պատմության հետ։ Այդ թվականին Շեյխ-Հայդարը պարտություն կրեց ու սպանվեց Շիրվանշահ Ֆառուխ-Յասարի և Յաղուբ փադիշահի դաշնակցած զորքերից։ Այդ պարտությունից հետո սեֆյաններն այնքան թուլացան, որ նույնիսկ զրկվեցին իրենց հենակետ Արդաբիլից ու մյուս տիրույթներից։ Շեյխ-Հայդարի անչափահաս որդիները գերվեցին և, ինչպես հայտնում են Վենետիկցի դեսպաններ Կատերինո Զենոն, Ջիովանի Անջիոլելլոն ու ԺԵ. դարի անանուն վաճառականը, արգելվեցին Աղթամարում, հանձնվելով հայ հոգևորականության խնամքին*։*

*Տեսանք նաև, որ Ռուստամ փադիշահը Բայսունղուրի ու նրա հովանավոր Շիրվանշահ Ֆառուխ-Յասարի դեմ պայքարի ընթացքում օգտագործեց Շեյխ-Հայդարի ավագ որդի Սուլթան-Ալուն, վերադարձնելով նրան Արդաբիլը։ Ղզլբաշների դաշնակցությամբ միայն Ռուստամին հաջողվեց 1493 թվականին ջարդել իր հակառակորդներին։*

*Հասնելով քաղաքական իր նպատակին Ռուստամը սկսեց երկյուղ կրել իր «դաշնակիցներից» և 1949—1495 թթ. Աղ-Կոյունլուները կրկին անգամ գրավեցին Արդաբիլը և սեֆյանների մյուս տիրույթները։*

*1499 թվականի գահակալական պայքարի ու խառնակության թեժ օրերին Սեֆյան Շեյխ-Իսմայիլը, որն այդ ժամանակ ընդամենը 13 տարեկան պատանի էր, ղզլբաշ ցեղապետերի թելադրանքով ու խնամակալությամբ, սկսում է իր շուրջը համախմբել Ադրբեջանում, Փոքր-Ասիայում և Քուրդիստանում ցրված ու ղզլբաշ աղանդին հարող ցեղերի զինական ուժերը։ 1499 թվականի վերջերին Կաղզվանում նրա դրոշի տակ էին գտնվում արդեն 7 հազար հավատարիմ ու անձնազոհ ղազիներ («հավատի մարդիկ»)։ 1500 թվականի սկզբներից ղզլբաշներն սկսում են ասպատակություններ սփռել Սամցխեի աթաբեկության սահմաններում ու Շիրակում, իսկ նույն թվականի աշնանը մտնում են Շիրվան և գրավում Շամախին։ Ջարանի կոչված վայրում Շեյխ-Իսմայիլի ու Շիրվանշահ Ֆառուխ-Յասարի միջև տեղի ունեցած այրումահեղ ճակատամարտում հաղթանակ են տանում ղզլբաշները, իսկ Ֆարուխ-Յասարը սպանվում է փախուստի ճանապարհին։*

*Կարապետ Բերկրեցի գրիչը, 1501 թվականին շարադրած հիշատակարանում, նկատի ունենալով Շեյխ-Իսմայիլի այս արշավանքը, գրում է. «Սոֆին շատ աւերք արար, և գնաց ի Շամախի, և էառ զՇամախի, և եսպան զՇրուանշէն» (Մատենադարան, ձեռ. № 1591, էջ 389ր)։ Նույն արշավանքի մասին խոսում է նաև Հակոբ Արծկեցի գրիչը, 1501 թվականին ընդօրինակած Ավետարանի հիշատակարանում. «Ելաւ,— գրում է նա,— Կարմիր-գլուխ Սօֆին և զԱղօղլու ազգն կորոյս. և աշխարհս եղաւ յերերման» (Ն. Լալայան, Ցուցակ հայերեն ձեռագրաց Վասպուրականի, էջ 616)։*

* «Ուղեգրություններ», Ա, էջ 271—273։ Ի դեպ, Շեյխ-Հայդարի բոլոր երեք որդիների Աղթամարում արգելվելու մասին խոսում է միայն Անջիոլելլոն, մյուս երկու ուղեգիրները տվյալ ունեն միայն կրտսեր որդի՝ ապագա շահ Իսմայիլի մասին։

Շեյխ-Իսմայիլի գործունեության առաջին շրջանի, Շիրվանի ու Թավրիզի գրավման և հարակից դեպքերի մասին կարևոր սկզբնաղբյուր է նաև «Վկայաբանութիւն սուրբ նահատակացն տէր Ներսէսին և եղբաւրն իւրոյ խոճայ Դովլաթխարին» անտիպ գրվածքը, որը պահպանվել է Պետ. Մատենադարանի № 4876 Հայսմավուրքի մեջ (տե՛ս մայիսի 7-ի վարքերի շարքում)։

Ստորև մեջ ենք բերում վարքաբանության սկզբնավորությունը.

«Ի ժամանակի, որ զաւրացաւ անաւրէն պեղծ Իսմաէլն. և որդին էր անիծեալ չար գազան Շըխ-Հայդարին. և եկեալ յանկարծակի, մտեալ ի մէջ Շարուանայ տանն։ Եւ սպան ըղփայթիշահն Սրանշան և մեծայմեծք պարոնայք և փառաւոր խոճունայք, և բազում քրիստոնայք յանկան ի ձեռն անաւրինին և մաշեցան ի սուր սուսերի, և դիակունք ի յերկիր անկան և կերակուր եղան թռչնոց և գազանաց, որ չէ եղեալ արհաւիրք յԱդամա մինչև ի վերջ. և կալաւ զաթոռն Շրուանու...»։

1501 թվականին Շեյխ-Իսմայիլը Շարուրում ջարդ է տալիս Աղ-Կոյունլու Ալվանդի զորքերին և հանդիսավոր մուտք է գործում Թավրիզ։ Այս մասին ևս տեղեկություն ունի վարքաբանական գրվածքի անհայտ հեղինակը. «Ապայ դարձեալ ի յետև,— գրում է նա,— մտեալ յերկիրն Հատրբէճան և էառ ըղԴավրէժ, և նստեալ յանդ, և կոտորեաց ղպարոնայքս և մեծամեծս և գերեաց նոյնպէս»։

Ալվանդը իշխանությունը վերագրավելու փորձ է անում 1502 թվականին, բայց կրում է վերջնական պարտություն։ Ղըզըլբաշները պարտության են մատնում նաև Աղ-Կոյունլու մյուս փադիշահ Մուրադին։

Եվ այսպիսով վերացվում է Աղ-Կոյունլուների աշխարհածավալ պետությունը, որի կազմի մեջ, սկսած 1468 թվականից, մտնում էր նաև ողջ Հայաստանը։

Հայաստանի ու հարևան երկրների վրա իրենց կայուն տիրապետությունն են հաստատում նոր աշխարհակալներ՝ ղզլբաշ ցեղերի Սեֆյան շեյխերը։

Ի՞նչ հետևանքներ ունեցավ դինաստիաների այս փոփոխությունը հայ ժողովրդի պատմական կեցության և հետագա զարգացման համար, հայտնի է արդեն ընդհանուր գծերով և ավելի մանրամասնորեն կպարզվի, երբ կհրատարակվեն ԺԶ. ու հետագա դարերի հիշատակարանները, տնտեսական կարգի փաստաթղթերը, ինչպես նաև պարսկերեն ու այլ լեզուներով եղող ձեռագիր նյութերը։

Ավելորդ չենք համարում սակայն նշել այստեղ, որ Աղ-Կոյունլու քոչվորական ցեղերի տիրապետության տապալումով ու ղզլբաշ ցեղերի իշխանության հաստատումով հայ ժողովրդի աշխատավոր զանգվածների սոցիալ-տընտեսական գոյավիճակի և իրավական կեցության մեջ էական որևէ փոփոխություն տեղի չունեցավ։

Երկիրը բաժանվեց ղզլբաշ ցեղերի տիրապետության ու ազդեցության ոլորտների։ Այն բոլոր հարկերն ու տուրքերը, որ հայ ռայաթները մինչ այդ վճարում էին Աղ-Կոյունլուների պետական պաշտոնյաներին ու քոչվոր ցեղերի ավագանիներին, այժմ սկսեցին գանձել երկրի նոր տերերը։

Թե ինչպես էին ղզլբաշ ցեղերը իրենց տիրապետությունը իրացնում նոր գրավված երկրամասերում, պարզվում է Բարսեղ Արճիշեցի գրչի բազմարժեք մի հիշատակարանից։ Նկարագրելով ԺԶ. դարի առաջին տարիների քաղաքական անցուդարձերը Արճեշում ու նրա շրջակայքում, Բարսեղը գրում է. «Եւ

յետ այսր ամենայնի ապա եկին ՇԾ. (500) տուն կարմիր գլուխ Սօֆիք, Ծ. (50) խալֆայ, և Ժ. (10) բանակ արարին զքաղաքն և զերկիրն, և բաժանեցին ի վերայ և նստան» (Մատենադարան, ձեռ. № 4515, էջ 249)։

Այս տեղի ունեցավ 1501 թվականին։ Քիչ հետո, հավանաբար 1504 թվականին, նրանք սկսեցին իրենց հպատակեցրած հայ գյուղացիներից պահանջել այն աստիճանի ծանր մալ (ռենտա), որ մինչև այդ չէր լսված ու տեսնված։ «ԴԾ. բիւր (այսինքն՝ չորս միլիոն դահեկան) մալ ուզեցին յաւուր բարեկենդանին,— գրում է նույն Բարսեղը,— որ և անկան յամէն գլուխ ԴՌ. (4000) դեկան և յամէն գութան ԺՌ. (10.000) դեկան։ Եւ ողորմելի քրիստոնեայքն ոչ գիտէին, թէ զինչ արասցեն։ Դիմեցին չար կատաղիքն ի վերայ Բ. (2) տան մէկ հաւօլայ և բաղում տանջանօք չարչարէին, կախէին և ծեծէին. և ոչ գտանէր դրամ»։

Հարկահանությունն ավարտվում է նրանով, որ ղզլբաշները կողոպտում են ժողովրդին մինչև վերջին հնարավորությունը. խլում են ամեն ինչ՝ ոսկե ու արծաթե զարդեր (ապարանջան, դինդ, լանջանոց), հագուստ և այն ամենն ինչ նյութական արժեք էր ներկայացնում «թէ ի վերայ հողոյ և թէ ի ներքոյ հողոյ»։ «Զամէն զինչ ունէին տուին և դեռ ոչ կարացին ազատիլ»,—հայտնում է հիշատակագիրը։

Այսպիսով, պարզ է դառնում, որ հայ ժողովուրդը ոչինչ չկորցրեց Աղ-Կոյունլուների պետության կործանումից և ոչինչ չշահեց Սեֆյան ղզլբաշների հաղթանակով։

## 2.
## ՀԱՄԱՌՈՏ ԱԿՆԱՐԿ ՍՈՑԻԱԼ-ՏՆՏԵՍԱԿԱՆ ԿՅԱՆՔԻ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ

Ինչպես տեսանք նախորդ էջերում Հայաստանը ԺԵ. դարի երկրորդ կեսին, գտնվելով սկզբից Կարա-Կոյունլու, իսկ 1468 թվականից՝ Աղ-Կոյունլու թուրքմենական քոչվոր ցեղերի գերիշխանության տակ, անդադար կրում էր իր վրա տիրողների ձեռնարկած նվաճողական պատերազմների և ներքին գահակալական կռիվների ավերիչ ու կործանարար ազդեցությունը, չունենալով քաղաքական կյանքի ինքնուրույն հուն։

Սակայն սխալ կլիներ սրանից հետևցնել, թե պատմական Հայաստանը, իր բոլոր նահանգներով, լիովին զրկվել էր սոցիալ-տնտեսական իր ինքնությունից և դարձել քոչվորական կենցաղով ապրող տիրապետողների տնտեսական ու վարչական սիստեմի դիմազուրկ կցորդը։ Ուստի, հասկանալի է ըստ ինքյան, որ հայ ժողովրդի պատմության մեզ զբաղեցնող ժամանակաշրջանի ըստ հնարավորին ամբողջական ուսումնասիրության համար անհարժեշտ է ի մի բերել և քննարկել բոլոր այն պատահական ու ժլատ տվյալներն ու ակնարկները, որոնք ցրված են սկզբնաղբյուրների մեջ և փոքրիշատե հնարավորություն են տալիս մերձենալ ժողովրդի ներքին կյանքի, տնտեսության ու մշակույթի հարցերին։

Այս առումով ևս հիշատակարանները, ինչպես նաև նրանց առընթեր հանդիպող կալվածագրերը, նվիրաբերական արձանագրությունները և նման այլ աղբյուրներ՝ արժանի են ուշադիր ու խուզարկու քննության։ Սրանց ընձեռած տվյալներն են, որ օգնում են հիմնական գծերով ուսումնասիրելու Հայաստանի վարչական բաժանման, կիսանկախ ամիրությունների և կուսակալությունների

ներքին կյանքի ու իրավասությունների, հայ ֆեոդալական տների ու եկեղեցական կալվածատիրության, հայկական գյուղական համայնքի կազմակերպչական սկզբունքների ու ֆունկցիաների, քաղաքների, առևտրի ու արհեստագործության, գանձվող հարկերի ու տուրքերի հետ առնչվող հարցերի մի զգալի մասը։

Փորձենք համառոտակի անդրադառնալ այդ հարցերին։

Ա

Կարա-Կոյունլուների ու Աղ-Կոյունլուների տիրապետության տակ ընկած Հայաստանի հարավային նահանգներում ԺԵ. դարի երկրորդ հիսնամյակում ևս շարունակում էին իրենց գոյությունը քրդական դինաստիաներով կառավարվող կիսանկախ ամիրությունները։ Կարա-Կոյունլու Սքանդարը 1422—1427 թվականներին համառ պայքար մղեց քրդական այդ ամիրությունների դեմ։ Նրան հաջողվեց բռնությամբ, խորամանկությամբ ու խաբեբայությամբ չլատել քրդական այդ իշխանությունների ուժերը, հնազանդեցնելով նրանց գահին։ Ջհանշահի թագավորության տարիներին նրանք կրկին գլուխ բարձրացրին, վերականգնեցին իրենց իշխանությունները ու քաղաքական կշիռը, հմտորեն օգտագործելով Կարա-Կոյունլուների ու Աղ-Կոյունլուների քաղաքական հակամարտությունը։

Հայաստանի ամենախոշոր ու զորեղ քրդական ամիրությունը՝ Բաղեշի ամիրությունն էր, որը իլխանական վարչական բաժանման տրադիցիայով՝ շարունակում էր կոչվել նաև «Խլաթի թուման»։ Ռոժակի ցեղին պատկանող Բաղեշի ամիրների տիրապետությունը տարածվում էր Բաղեշի, Խլաթի, Մուշի, Խնուսի, ինչպես և Բասենի ու Ավնիկի վրա. որոշ ժամանակ նրանց էր ենթարկվում նաև Մանազկերտի շրջանը։

1390 թվականին Բաղեշի ամիր է հիշվում Ամիր-Շարաֆը (տե՛ս Ավագ քսակակարի վկայաբանությունը, «Հայոց նոր վկաները», գիտ. հրտ., էջ 158)։ Նրան հաջորդում է Շամս-ադ-դինը, որը Կարա-Յուսուֆից, որպես սոյուրղալ, ստանում է արդեն իր ընտանիքին պատկանող երկրամասը։ Սքանդարի իշխանության սկզբի խառը տարիներին Շամս-ադ-դինը գործակցում է Շահռուխին և ձգտում անկախանալ Կարա-Կոյունլուներից։ Գրիգոր Խլաթեցին նրան «չար սատանի արբանեակ» և «Նեռին կարապետ» կոչելով, հայտնում է.

«Որ նա արար հպարտութիւն
Ջհնազանդեցաւ Ասքանդարին»
(ԺԵ. դարի հշտկ., Ա, էջ 284)։

1424 թվականին Սքանդարին հաջողվում է մյուս քուրդ ամիրների հետ մեկտեղ մահապատժի ենթարկել նաև Շամս-ադ-դինին, սակայն Բաղեշի ամիրությունը շարունակում է գոյություն ունենալ և նշանակալից դեր կատարել Հայաստանի քաղաքական կյանքում նաև ԺԵ. դարի հետագա տասնամյակներում։

Շարաֆ-բեկի «Քրդերի պատմության» մեջ Ռոժակ ցեղի ամիրների պատմությունը շարադրված է գերազանցապես ավանդությունների հիման վրա, ուստի տարօրինակ չէ այն հանգամանքը, որ նրա հաղորդած տվյալները հաճախ հերքվում կամ ճշտվում են ժամանակակից հայ հիշատակագիրների գրանցած ստույգ ու վստահելի տվյալներով։

Այսպես, նշանավոր ամիր Շամս-ադ-դինից հետո, ըստ Շարաֆ-բեկի, Բաղեշի ամիրությունն անցնում է նրա կամազուրկ ու պետական գործի հմտություններ չունեցող որդուն՝ Ամիր-Շարաֆին։ Սրա կին Շահում-խաթունը ամուսնու կենդանության օրոք կենակցում է Միր-Սեյիդ Ահմադ Նասր-ադ-դինի հետ. իշխանությունը փաստորեն գրավվում է վերջինիս կողմից։ Ամիրությունը պառակտվում է մի շարք մասերի։ Այս անկայուն ու խառն դրությունը շարունակվում է այնքան ժամանակ, մինչև Ամիր-Շարաֆի որդին, հասակ առնելով, գրավում է իշխանությունը։ Սրան հաջորդում է որդին՝ Իբրահիմը, իսկ վերջինիս՝ ամիր Հաջի-Ահմադը (1443 թ. Բաղեշում սա կառուցում է մզկիթ ու քարվանսարա. մեռնում է 1465 թվականին)։ Հաջի-Ահմադի որդի Իբրահիմից հետո Աղ-Կոյունլու Ուզուն-Հասանը Բաղեշի ամիրությունը խլում է Ռոժակի ցեղից։ Այս դինաստիան կրկին հաստատվում է իր տիրույթներում 1494—95 թվականին, Շահ-Մահմադի ջանքերով (տե՛ս Charafnameh ou histoire des Kurdes par Scheref, prinse de Bidlis, publiée par V. Veliaminof-Zernof, tome I, premier partie, Պետերբուրգ, 1860, պրակ. բնագիր, էջ 377—387)։

Բաղեշի ամիրների այս ժամանակաբանությունը, հատկապես ԺԵ. դարի 40—60-ական թթ. նկատմամբ, խիստ վերանայման կարիք է զգում։

Ըստ հիշատակարանների 1445 թվականին Բաղեշի ամիր էր խելագար Շեյխ-Մահմուդը։ Ամիրության մեծամեծները հեռացրին նրան և ամիր հռչակեցին նրա եղբորորդի Շամս-ադ-դինին։ Այս վերջինս հիշատակվում է 1446—1455 թթ. Բաղեշում և Արճեշում շարադրված հիշատակարաններում որպես Ջհանշահին ենթակա «պարոն ամիր» կամ «Քրդաց ամիր»։

1459 թվականից մեր հիշատակագիրները Բաղեշի ամիր են համարում արդեն Ամիր-Շարաֆին, որը, ինչպես առիթ ունեցանք նշելու, Ջհանշահի արևելյան արշավանքների տարիներին ապստամբել էր Կարա-Կոյունլուների դեմ և ամրանալով իր իշխանության բերդերում, դիմադրություն էր ցույց տալիս Ջհանշահի կողմից ուղարկված տասներկու հազարանոց պատժիչ զորախմբերին։ Սրանք, ասպատակելով ու կողոպտելով ամիրության անպաշտպան թողնված գյուղերը, պաշարել էին Խլաթի բերդը և «զնոյն հանդերձեալ էին առնել ի Բաղէշ և ի Մուշ, Խութ և ի Սասունք և յամենայն գաւառսն նոցա»։

Պատերազմական գործողությունները Կարա-Կոյունլուների ու Բաղեշի ամիրության զինական ուժերի միջև դադարում են այն ժամանակ, երբ Զաքարիա կաթողիկոսի միջնորդությամբ Ամիր-Շարաֆը համաձայնում է «հարկն կայսերականն» վճարել Ջհանշահին ու ենթարկվել Կարա-Կոյունլուներին (տե՛ս, հշտկ. № 221, էջ 174—175)։

Այսպիսով, պարզվում է, որ Ջհանշահի արշավանքը Բաղեշի ամիրության դեմ ձեռնարկված էր կենտրոնական իշխանությանը ենթարկվել չկամեցող ամիրին հնազանդեցնելու համար։ Կարա-Կոյունլուները իրենց բավարարված զգացին այն բանից հետո, երբ Ամիր-Շարաֆը համաձայնվեց վճարել «կայսերական հարկը»։ Իր իշխանության տակ գտնվող ռայաթների նկատմամբ Ամիր-Շարաֆն այնպիսի ինքնիշխան տեր ու տնօրեն էր համարվում, որ այս դեպքից մի-երկու տարի հետո Բաղիշեցի Հակոբ գրիչը իր ընդօրինակած ձեռագրի հիշատակարանում հայտնում է, որ աշխատանքը կատարել է «ի ղանութեան Ամիր-Շարաֆին», ավելորդ համարելով նշել նույնիսկ Ջհանշահ փադիշահի՝ Ամիր-Շարաֆի սյուզերենի անունը։

Բաղեշի ամիրայության մեջ մտնող շրջանները կառավարվում էին հատուկ

հաքիմների — «գավառապեաների» կողմից, որոնք սովորաբար լինում էին քրդական այն ցեղերի առաջնորդները, որոնց էլը բնակություն էր հաստատել տվյալ շրջանում։ Ամիր-Շարաֆի ժամանակ, օրինակ, Տարոնում հաստատված էր քրդական Դմլի (Դումբուլի՞) ցեղը. նրանք «տեղի առեալ բնակէին ի նոյն դաւառն Տարօնոյ, առ ստորոտաւ լերինն այնմիկ Տօրոսի, ի մերձակայ (Ին-նակնեան վանից) դեօղսն»։ Հավանորեն հենց այդ Դմլիների ցեղապետն էր Հովհաննես եպիսկոպոսի վկայաբանության մեջ Տարոնի դավառապետ կոչված խալիլը։ Սրա կարգադրությամբ, 1463 թվականին, վերոհիշյալ Հովհաննես եպիսկոպոսը, ամբաստանված լինելով ինչ-որ մզկիթի քարերով եկեղեցի կա-ռուցելու հանցանքի մեջ՝ ձերբակալվում է և ուղարկվում Բաղեշ՝ Ամիր-Շարա-ֆի կողմից դատվելու համար. «Եւ կապեալ զնա յուղարկեաց ի Բաղէշ քաղաք՝ առ ամիրապետն Շարաֆ»,— գրված է վկայաբանության մեջ (տե՛ս «Հայոց նոր վկաները», դիտ. հրա., էջ 300)։ Այս փաստերից կարելի է եզրակացնել, որ Տարոնի հաքիմ խալիլի, ինչպես և մյուս «դավառապետների» դատական իրա-վասությունները սահմանափակ էին։

Բաղեշի ամիրությունը, անշուշտ, հարավային Հայաստանի ամենահզոր քրդական իշխանությունն էր, բայց ոչ միակը։

Վանա լճի հարավային շրջանները գտնվում էին Խիզանի քրդական ամի-րության տիրապետության տակ։ 1417—1442 թվականների հիշատակարաննե-րում, որպես Խիզանի ամիր բազմիցս հիշվում է Ամիր-Դայութը, ըստ Շարաֆ-բեկի՝ Ամիր-Սուլեյմանի որդին։ Դայութի ինքնիշխանությունն ի նկատի ունեբ կազմարար Ներսես մահդասին, երբ 1431 թվականին շարադրած հիշատակարա-նում մեծարում էր նրան «թագաւոր» տիտղոսով, գրելով՝ «ի թագաւորութեան մերոյ Ամիր-Դայուտի, և ի ղանութեան Սքանգարի» (ԺԵ. դարի հշտկ., էջ 412)։

ԺԵ. դարի երկրորդ հիսնամյակի հիշատակարանների տվյալներով Խիզանի ամիրության վրա հաջորդաբար իշխել են՝ ամիրզա Ղասումը (հիշված 1455 թ., տե՛ս. հշտկ. № 80, էջ 59), Ամիր-Սուլեյմանը (հիշված 1456, 1459 թթ., տե՛ս հշտկ. № 104, էջ 76 և № 155, էջ 118), Ամիր-Մելեքը (հիշված 1468 թ., տե՛ս հշտկ. № 350, էջ 274) և Դավութ-բեկը (հիշված 1497 թ., տե՛ս Մատենադարան, ձեռ. № 5402, էջ 338ա)։ Շարաֆ-բեկի տվյալներով այս Դավութը իշխել է 39 տարի (Scharaf-Nanıeh, էջ 212)։

Վասպուրականի կյանքում նշանակալից դեր էին կատարում նաև Ոստանի քուրդ ամիրները՝ Շամբոյան ցեղից։ Մի շարք հիշատակարաններ հնարավո-րություն են տալիս պարզելու, որ եղել են տարիներ, երբ քրդական ամիր-ների այս ընտանիքի իշխանության տակ էին գտնվում Վանը, Ոստանը, Աղբա-կը, Քարպահը, այլ խոսքով «Ոստանայ երկիրս մինչ ի Բաղէշ» (տե՛ս, օրի-նակ, ԺԵ. դարի հշտկ., Ա., էջ 326,375—376)։ Տիրելով Աղթամարի հարևան շրջաններին, նրանք հաճախ փորձ էին կատարում գրավելու ու կողոպտելու Վասպուրականի միակ հայկական այդ իշխանությունը։ Քրդական այս դինաս-տիայի պատմության ու տիրակալների ճյուղագրության հետ կապված մի շարք հարցեր հնարավոր է լինում պարզաբանել հիշատակարանների միջոցով։ Դի-նաստիայի հիմնադիր պետք է համարել, ըստ երևույթին, Ամիր-Եզդինին, որը 1390 թվականին հիշվում է որպես Վանի տեր (տե՛ս Մատենադարան, Արխի-վային բաժին, Տիրայր վարդապետի արխիվ, թղթ. 119, General catalogue of the armenian Manuscripts in the Bodleian Library, էջ 106)։

Այս Ամիր-Եզդինը 1392 թվականին իր եղբորից գրավում է Ոստանը (ԺԴ.

*դարի հշակ., էջ 597)։ Հիշատակված է քրիստոնյաների նկատմամբ չարանենգ դիրք. դրսված ծագումով թուրքմեն իր Փաշա-Խաթուն կնոջ հետ միասին 1398—1419 թթ. շարադրված հայկական մի քանի վկայաբանությունների մեջ։*

*Ամիր-Եզդինին հաջորդեց որդին՝ Մելիք-Մահմադը, որ դեռևս 1412 թվականին հիշատակված է հոր հետ միասին որպես Ռշտունիքի կողմնապետ (տե՛ս ԺԵ. դարի հշտկ., Ա, էջ 220 «Ի կողմնապետութեան մերոյ աշխարհիս Ամիր-Եզդնին և որդոյն իւրոյ Մելիք-Մահմադին»)։*

*1432 թվականին Մելիք-Մահմադը թունավորվեց Սքանդարի կողմից և նրան, ըստ երևույթին, հաջորդեց եղբայրը՝ Ոստանի տեր Սուլթան-Ահմադը։ Սա ևս, Բաղեշի ամիր Շամս-ադ-դինի հետ միասին խաբանոք հրավիրվեց Սքանդարի մոտ, բանտարկվեց Երնջակի բերդում, ապա սպանվեց, հավանաբար 1424 թվականին։ Ամենայն հավանականությամբ ամիր Եզդինի և Փաշա-Խաթունի որդիների եղեռնական այս վախճանն ի նկատի ուներ Գոհար-Մելիքի վկայաբանության ընդօրինակողներից մեկը, երբ վարքի վերջում ավելացնում էր այսպիսի տողեր. «Իսկ անիծեալ Խաթունն Փաշայ, յետոյ բերանն ցեցոտեալ սատակեցաւ և Գ. որդիք նորա ի սուր սուսերի մաշեցան ի ձեռաց Թուրքաց (իմա Սքանդարի). և զամենայն ամրոց և զքաղաքս առին, որ և զոսկերս նոցա հրով այրեցին...» («Հայոց նոր վկաները», էջ 196)։*

*Շարաֆ-բեկի տվյալներով Ոստանի ամիրությունը մի քանի տասնամյակ խլված է եղել Շամբոյան ցեղից և վերագրավվել է Ասադ-եդ-դին Ոսկեբազուկի կողմից (*Scharaf-Nameh, *էջ 92—95)։ Հավաստել կամ մերժել այս տվյալը չենք կարող. հիշատակարաններից գիտենք սակայն, որ Ամիր-Եզդինի թոռներից Փիր-բեկը ԺԵ. դարի 30-ական թվականներին շարունակում էր իշխել Ռըշտունիքի կողմերում։ 1431 կամ 1433 թվականին նրան հաշողվեց նույնիսկ գրավել ու կողոպտել Աղթամար կղզին։ Հայտնի է նաև, որ 1462 թվականին Ոստանը գտնվում էր դարձյալ քրդերի ձեռքին, նրանց իշխանն «էր ազգաւ քուրդ՝ ժանտ և անագորոյն, ամենևին թշնամի քրիստոնէից» (հշտկ. № 221, էջ 176)։ Խոսքը այստեղ, ամենայն հավանականությամբ, Ամիր Եզդինշերի մասին է, որ մերձավորապես նույն տարիներին գերել էր Ոստանի եկեղեցիների սրբությունները, իսկ 1469 թ. (կամ քիչ առաջ) կողոպտել էր Ռշտունիքի հայերին (հշտկ. № 365, էջ 282)։*

*Ըստ Շարաֆ-բեկի, Ասադ-եդ-դինին հաջորդել է որդին՝ Եզդինշերը։ Եթե սա 1460-ական թթ. հիշված Եզդինշերը չէ ապա՝ երրորդն է այդ անունը կրող Ոստանի քուրդ ամիրներից։ Այս Եզդինշերը 1490 թվականին, երեք հազար հոգուց բաղկացած զորախմբով, որպես Սուֆի-Խալիլի դաշնակից, մասնակցում էր նրա և Սուլեյման Բիժան-օղլու պայքարին։ Եզդինշերը իր ուժերով պետք է դարանամուտ լիներ ու հարձակվեր Բիժան-օղլու վրա թիկունքից, սակայն Աղկոյունլուների փորձված զորավարը ծուղակի մեջ չընկավ. մինչև Սուֆի-Խալիլի հետ ճակատամարտի բռնվելը նա ջարդեց Ոստանի ամիրին։*

*Եզդինշերին հաջորդել է Ջահիդ-բեկը։ Սա, ինչպես տեսանք, 1498 թվականի նոյեմբերին գրավեց ու կողոպտեց Աղթամար կղզին, և «բազում աւերս արար, և անչափ մալ ու մանդրուն՝ հայի և տաճկի, աւարի և բնականի թալանեաց և տարաւ» (Մատենադարան, ձեռ. № 6324, էջ 303ա)։ Մի շարք գրիչներ արձանագրում են, որ Ջահիդ-բեկի ժամանակ «ազգն Մարաց դարձեալ զօրացան»։ Ըստ Շարաֆ-բեկի Ջահիդ-բեկը հպատակվել է Շահ-Իսմայիլին ու իշխել Ոստանում 60 տարի* (Scharaf-Nameh, *էջ 95)։*

Բացի Բաղեշի, Խիզանի ու Ոստանի քրդական խոշոր ամիրություններից Հայաստանում գոյություն ունեին նաև տերիտորիայով փոքր և նվազ քաղաքական կշիռ ունեցող քրդական այլ ամիրություններ՝ Հազոյում, Սասունում, Ջերմուկում, Սպարկերտում, Բալույում, Մժնկերտում և այլ վայրերում։

Պատմական Հայաստանի մյուս շրջաններում իշխում էին Թուրքմենական ազդեցիկ ցեղերի ավագանիները, բարձրաստիճան զինվորականները և կառավարող դինաստիայի ամիրզադաները։ Սրանք փադիշահերի կողմից ստանում էին բարեբեր հողային տիրույթներ (օլքաներ), իրենց ձեռքում կենտրոնացնելով այդ տիրույթների (որոնք հաճախ ընդարձակ երկրամասեր էին լինում) վարչական ու զինվորական կառավարչությունը։ Հայ հիշատակագիրները նրանց «կողմնապետ» կոչումն են տալիս։

Օլքաների ամիրները ձգտում էին իրենց տիրույթները դարձնել ժառանգական, սակայն այդ միշտ չէր նրանց հաջողվում։ Հանցապարտ լինելով պետության առաջ՝ նրանք զրկվում էին իշխանությունից։ Ամիրները հաճախ պաշտոնազուրկ էին արվում նաև փադիշահերի ու կառավարող դինաստիաների փոփոխության հետևանքով։

Հիշատակարանները հնարավորություն են տալիս հետևելու Վանի «կողմնապետության» ամիրների հաջորդականությանը ԺԵ. դարի 30-ական թվականներից մինչև դարի վերջերը։

Քրդական ամիրությունների դեմ Սքանդարի ձեռնարկած համառ պայքարից հետո Վանի օլքան հանձնվեց ոմն Ղլիճ-Ասլանի, որը, ամենայն հավանականությամբ, Կարա-Կոյունլու քոչվորական ցեղերի միության բաղկացուցիչ ցեղերից մեկի ավագներից էր։

Զարչի Մուրադի վկայաբանության մեջ, որ շարադրել է 1484 թվականից հետո Գրիգոր Զորթան Արճիշեցին, տեղեկություն կա այն մասին, որ 1439 թվականին Վանի իշխանն էր Ղլիճ-Ասլանը. կառավարչության գործերին մասնակցում էր նաև նրա Սեիդ-Ղասում որդին։

Ղլիճ-Ասլանը հիշատակվում է, որպես Վանի ու Ոստանի կողմնապետ նաև 1444 ու 1445 թվականներին։ Թումա Մինասենց նշանավոր գրիչը 1445 թվականին շարադրած իր հիշատակարանում Ջհանշահից հետո հիշատակում է Ղլիճ-Ասլանին, անվանելով նրան «կողմնապետ մերոյ աշխարհիս, որ տիրէ Վանայ և Ոստա՛նայ» (ԺԵ. դարի հշտկ., Ա, էջ 579, հմմ. նաև էջ 566)։

Կարա-Կոյունլուների ու Աղ-Կոյունլուների բախումների ժամանակ Ղլիճ-Ասլանը կասկածվելով, թերևս ոչ առանց հիմքի, անհավատարմության մեջ Ջհանշահի կողմից բանտարկվել է։ 1458 թվականին, փախչելով բանտից հարել է Հասան-Ալուն և մասնակցել Ջհանշահի դեմ բարձրացրած նրա ապստամբությանը, Վանը վերագրավելու ուղղությամբ ապարդյուն փորձեր կատարելով։ 1459 թվականին Ոստանում գրված մի հիշատակարանում տվյալ կա այն մասին, որ Հասան-Ալին «առաքեաց զՂլիճ-Ասլանն ի վերայ Վանայ բերդին, զի առցէ զնա, և ոչ կարաց» (հշտկ. № 154, էջ 117)։

Վանի բերդն այդ ժամանակ արդեն գտնվում էր Ջհանշահի կաթնեղբայր Մահմուդ-բեկի ձեռքին, որը 1462 թվականի նշանավոր հիշատակարանում կոչվում է «գոռոզն Մահմուտ բէկ», «որ նստէր յամուրն Շամիրամայ՝ ի բերդն Վանայ» (հշտկ. № 221, էջ 175—176)։

Հիշատակարաններում գրանցված որոշ տվյալներից, ինչպես նաև Մուրատ Վանեցու վկայաբանությունից (սպանվել է 1485 թ.) հայտնի է դառնում, որ

Աղ-Կոյունլուների հաղթանակից հետո Վանի «կողմնապետությունը» հանձնվել է Ուզուն-Հասանի նշանավոր զորավար Սուլեյման-բեկ Բիժան օղլուն, «որ էր աթաբակ և հայրագլուխ Ծաղուպ փաթշահին» («Հայոց նոր վկաները», էջ 320)։ 1487 թվականին Վանից ոչ հեռու գտնվող Սղգա վանքում շարադրված հիշատակարանի մեջ Սուլեյման-բեկը հիշված է որպես տեղի պարոն (Մատենադարան, ձեռ. № 955, էջ 246ա), իսկ մի այլ հիշատակարանում տվյալ կա այն մասին, որ «Ցայսմ ամի (այսինքն՝ 1487 թ.) գնաց Սուլէյման պարոն ի վերայ Սոկաց, և Մոկաց պարոն փախեաւ, և էառ զերկիրն ամենայն և հնազանդեցոյց» (Մատենադարան, ձեռ. № 6273, էջ 347)։

Այսպիսով, Վանի օլքայի օրինակով պարզվում է, որ Կարա-Կոյունլուների և Աղ-Կոյունլուների տիրապետության տասնամյակներում, հակառակ այն բանի, որ քոչվոր ցեղերի ավագանիներն ու զորահրամանատարները ձգտել են ամուր կերպով հաստատվել իրենց հանձնված օլքաներում, այդ շրջանները դարձնելով ժառանգական տիրույթ, սակայն այդ ուղղությամբ նրանց ջանքերը ցանկալի արդյունք չեն տվել։

Հիշատակարանների հաղորդած կցկտուր տվյալները հնարավորություն են տալիս փոքրիշատե հետևելու նաև Այրաբատյան նահանգի վրա իշխող ամիրների հաջորդականությանը ԺԵ. դարի սկզբից մինչև Աղ-Կոյունլուների դինաստիայի հաստատումը։

ԺԵ. դարի առաջին քառորդում Ջագավանքում, Օշականում, Բագարանում և Կարսում շարադրված մի քանի հիշատակարաններից պարզվում է, որ պատմական Հայաստանի Այրարատյան նահանգի մեծ մասն այդ ժամանակ գտնըվում էր Սաաթլու քոչվորական ցեղի ավագանիների ձեռքում։ Նրանք իշխանություն էին հաստատել այդ շրջաններում, ամենայն հավանականությամբ, Ամիր-Սաաթի ժամանակ, որը վախճանված պետք է լինի 1411 թվականից առաջ։ 1411, 1412 և 1414 թվականներին, Բագարանում, Կարսում և Օշականում աշխատող գրիչները, որպես պարոն հիշատակում են Ամիր-Սաաթի որդի Փիր-Հուսեյնի անունը, իսկ 1425 թվականին, Ջագավանքում շարադրված մի հիշատակարան տալիս է Ամիր-Սաաթի թոռներ Փիր-Ղաիպի և Ավդուլի անունները (տե՛ս ԺԵ. դարի հշտկ., Ա, էջ 124, 134, 162, 335)։ Ըստ երևույթին Ամիր-Սաաթի այս թոռներով էլ ավարտվում է քոչվորական այդ ընտանիքի տիրապետությունը Այրարատում։ ԺԵ. դարի 30-ական թվականներին Սքանդարի կողմից Այրարատյան նահանգի կառավարիչ է նշանակվում Սյունյաց իշխան Բեշկեն Օրբելյանի մեծամեծ պաշտոնների ու տիտղոսների արժանացած Ամիր-Ռուստամ որդին (այս մասին տե՛ս Հ. Փափազյան, «Մի էջ Արևելյան Հայաստանի քաղաքական կյանքի պատմությունից» հոդվածը, տպ. Հայկ. ՍՍՌ ԳԱ «Տեղեկագրի», 1955, № 8-ում, 86—88)։

Սքանդարի եղեռնական վախճանից հետո պաշտոնանկ եղած Ռուստամը ապաստան էր գտել Լոռի գաղթած իր հոր մոտ (ԺԵ. դարի հշտկ., Ա, էջ 468)։

1441 թվականին Ամենայն Հայոց կաթողիկոսական աթոռի Էջմիածին տեղափոխվելու և նոր կաթողիկոսի ընտրության կապակցությամբ Այրարատյան նահանգի կուսակալ է հիշվում ոմն Ցաղուբ-բեկ, որի նստավայրն էր Երևանը։

1462 թվականին Այրարատյան նահանգի «վերին կողմերը» ենթարկվում էին արդեն Ջհանշահի Հասան-Ալի որդուն։

Բերված փաստերից կարելի է հետևցնել, որ տարբերվելով հարավային

Հայաստանում գոյություն ունեցող քրդական կիսանկախ ամիրությունների, որոնք ժառանգաբար կառավարվում էին տեղական քուրդ ամիրների դինաստիաներով, Հայաստանի մյուս մասերում թուրքմենական քոչվոր ավագանիներից և ոչ մեկը չկարողացավ կայուն տիրապետություն հաստատել։ Կենտրոնական իշխանության կողմից որպես առանձին երկրամասերի կառավարիչներ ուղարկվող «կողմնապետները», ինչպես նաև օլքաներ ստացող քոչվոր ավագանիները, հակառակ իրենց ձգտման, չկարողացան ժառանգական տերը դառնալ իրենց հանձնված շրջանների։ Ամեն մի նոր գահակալ իր համար ամուր հենարան ստեղծելու նպատակով պետության եկամտաբեր շրջաններից (որոնց մեջ, անտարակույս, մտնում էին նաև կենտրոնական Հայաստանի շրջանները) հետ էր կանչում նախորդների կողմից կարգված կառավարիչներից շատերին և նրանց փոխարեն այդ նույն շրջանները հանձնում իր դահին հավատարիմ քոչվոր ավագանիներին ու զինվորական բարձրաստիճան հրամանատարներին։

Հայաստանի քրդական ամիրությունները ու «կողմնապետությունները» իրենց ներքին կյանքում անկախ էին։ Ամիրները օժտված էին ոչ միայն հարկային այլև վարչական ու դատական իմունիտետի իրավունքներով։ Նրանցից յուրաքանչյուրն ուներ իր արքունիքը, որը կենտրոնական արքունիքի մանրանկար պատճենն էր։ Կենտրոնական պետության գործակալությունների պաշտոնյաները մուտք չունեին ինքնավար այդ շրջաններում։ Ամիրներն ինքնուրույն կերպով դատում էին պատժապարտ հանցագործներին, նույնիսկ մահվան վճիռ տրձակում և կամ դատը հանձնում շար'ի դատարանին, որին մասնակցում էին տվյալ վայրի մահմեդական բարձրաստիճան հոգևորականները՝ ղազու գլխավորությամբ*։

Կալվածքների վաճառքը, օտարումը, նվիրաբերությունը և նման կարգի այլ տնտեսական գործարքներ հաստատվում էին ամիրների կողմից՝ «ամիրաց մըլքաթըղթովն և նըշանովն» (ԺԵ. դարի հշտկ., Ա, էջ 565)։ Կնքված որևէ համաձայնագրի խախտողները պարտավորվում էին տուգանք վճարել տեղի ամիրին և այլն**։

Ամիրությունների ներքին կյանքում մեծ դեր էին կատարում տվյալ շրջանում հաստատված քոչվորական ցեղերի ավագանիները։ 1445 թվականին, օրինակ, Բաղեշի ամիրության «մեծամեծները», առանց կենտրոնական իշխանության միջամտության, պետական գործերից հեռացրին խելագարված ամիր Շեյխ-Մահմուդին, նրա փոխարեն ամիր կարգելով եղբորորդուն՝ Շամս-եդ-դինին (ԺԵ. դարի հշտկ., Ա, էջ 585)։

Հայաստանի ամիրությունների ու «կողմնապետությունների» բնակչության մեջ հայ էթնիկական տարրը գերակշռում էր։

Վարչական ու հարկային տեղական ատյաններում հայ խոշոր առևտրականներն ու վաշխառուները, իսկ երբեմն նաև հոգևորականության ներկայա-

---

* Տե՛ս Բաղեշում, 1390 թ. նահատակված Ավագ քսակկարի վկայաբանությունը (Հայոց նոր վկաները, էջ 158) և «Պատմութիւն կնոջ միոյ, որում անուն էր Շնոհվոր». Նահատակվել է Բաբերդում, 1494 թ. (ձեռ. № 7366, էջ 421բ) ինչպես նաև Ոստանում, 1398 թ. նահատակված Թամար կամ Գոհար-Մելիքի վկայաբանությունը (Մատենադարան, Արխիվային բաժին, Տիրայր վարդապետի արխիվ. թղթ. 119, էջ 106)։

** Ծանոթանանք մի փաստի հետ։ 1461 թ. ոմն Պողոս վարդապետ, ի դիմաց ժողովարարությունից գանձված գումարների, հանձնում է Արծկեի Սրանչելագործ վանքին 1600 թանկայի արժողությամբ իր «հալալ ապրանքը»։ Այդ առթիվ գրված համաձայնագիրն ավարտվում է հետևյալ խոսքերով. «Ով ի յայս դավէես ի դուրս ելանէ Ռ. (1000) թանգայ տուգանք տայ ամիրին» (հշտկ. № 201, էջ 160)։

ցուցիչները գրավում էին եկամտաբեր պաշտոններ։ Այսպես, օրինակ, Թովմա Մեծոփեցու հաղորդած տվյալի համաձայն Արծկեում «առաջնորդ քաղաքի», այսինքն ձեռնավոր է եղել ոմն Ստեփանոս քահանա (Թ. Մեծոփեցի, էջ 47 և 113)։ Ձեռնավորության պաշտոնում քահանա հորը հաջորդել է Հովհաննես որդին, որը իր դիրքն ամրապնդելու և մահմեդական բռնակալների վստահությունը շահելու դիտավորությամբ հավաքել է Քաջբերունյաց գավառի բոլոր ընչաղուրկ ու անտուն տառապյալներին, որոնք ըստ պատմիչի «դրամի միջոց տէր ոչ են» և բռնի քշելով նրանց Արճեշ ու հանձնելով պետական պաշտոնյաներին, պահանջել է յուրաքանչյուրից 540 թանկա գլխահարկ (Թ. Մեծոփեցի, էջ 117)։

1481 թվականի հիշատակարաններից մեկում ուշագրավ վկայություն է պահպանվել Վասպուրականի շրջաններից մեկում իշխող ոմն Էման-բեկի արքունիքում «հաղինադարի» (գանձապետ) պաշտոն գրաված տեր Կարապետ անունով մեկի մասին. «Յիշխանութեան աշխարհիս մեծ և հռոխտ պարոնին Էման-բէկին, որ տէր Կարապետս հազինադար էջ» (Նոր-Ջուղա, ձեռ. № 544)։ Գանձապետության պաշտոնը թույլ էր տալիս վաշխառու այս հոգևորականին իր միջոցներով կառուցելու սուրբ Գեորգ վանքի գմբեթը։

Նույն թվականի մի այլ հիշատակարանում ինքն իր մասին տվյալներ է հաղորդում Ոստանի տերերի արքունիքում Լալայի (դաստիարակ) պաշտոն ունեցող Միրանշահը։ Սա, Աղթամարի տանուտերերի ու Ոստանի հայ թամղաչիների կամավորությամբ մեկնել է փադիշահի դուռը և մեծ գումարներ ծախսելով ձեռք է բերել հարկային որոշ արտոնություններ և Աղթամարի ու այլ վայրերի եկեղեցիներին պատկանող ձիթհաններից գանձվող հարկը՝ նվիրել է այդ սրբավայրերին, որպես ձիթագին։

Նա գրում է. «Ես՝ Լալա-Միրանշէս, աստուծոյ կարողութեամբն ու սուրբ Խաչիս գնացի ի փաթշահի դուռն, և յիսնէ շատ խարճ արարի և ղթամղէն, որ ստանն էր ի յետ կտրեցի և տեղացս էրի, Աղթամարայ տանուտերացս մեծի և փոքու և Ոստանայ թամղաչոց կամաւորութեամբն, և ի յԱղթամարայ մալն դրի. և ձիթահացներու հարճն սուրբ Խաչին և այլ եկեղեցեացն ձիթագին տու[ին]ք դամղին փոխան և ոխֆ արարինք սուրբ Խաչին» (Մատենադարան, ձեռ. № 5333, էջ 334ա)։

Հիշատակարաններում և ձեռագիր կալվածագրերի ու նվիրաբերական արձանագրությունների մեջ հիշատակված են բազմաթիվ հայ խոջաներ, որոնք, եթե դատելու լինենք տարբեր վանքերի նրանց կողմից նվիրաբերված մեծագին պարգևներով՝ հսկայական գումարներ էին կուտակել առևտրի, վաշխառության ու հարկերի կապալառության ճանապարհով։

Այդ կարգի խոջաներից էր, անշուշտ, պարոն Սեթի որդի խոջա Հովսեփը, որը 1479 թվականին Մուշում ձեռք բերած ձեռագրի հիշատակարանում Պողոս գրչի կողմից մեծարվում է այսպիսի խոսքերով, «Հավատարիմ և ողորմած աղքատաց և տնանկաց, ամենագովելի և մեծաշուքն և իշխան Տարունւոյ գաւառիս խոճայ Յովսէփ» (հշտկ. № 556, էջ 438)։ Դրվատական այս խոսքերի միջոցով միայն հնարավորություն չունենք պարզելու, թե ինչ նկատի ուներ գրիչը խոջա Հովսեփին Տարոնի իշխան կոչելու համար։ Այնուամենայնիվ, հիշելով նաև նրա հորը հատկացված «պարոն» տիտղոսը, կարելի է չտարակուսել, որ այդ խոջան միաժամանակ տեր էր նաև կալվածքների։

Նատ հիշատակադիրներ հետաքրքրական փաստեր են հաղորդում հատ-

կապես Վանի «ազատագունդ» խոջաների մասին։ Սրանք էին, որ 1461 թվականի դեկտեմբերին «ձիօք և ձիաւորօք սպառազինեալ», մեծ շուքով Վանից Ոստան ուղեկցեցին Գրիգոր Լուսավորչի աջը հափշտակած Զաքարիա կաթողիկոսին, որն էջմիածնից գաղտագողի փախուստ տալով՝ մեկնում էր Աղթամար։

Վանի այս խոջաներից ու թամղաչիներից շատերը հանվանե հիշատակվում են 1476 թվականին Ազարիա գրչի շարադրած հիշատակարանում։ Դրանցից էին թամղաչիներ Էդգարը, Շաղավաթը, Մուսեխը և Սմբատը, որոնք Վանի Պողոս-Պետրոս եկեղեցին ազատեցին ձկան և ընկույզի թամղայից։ Հիշատակարանի շարունակության մեջ Աղարիա գրիչը թվարկում է նաև Մելիք Բախտիարի, ռես Փերիջանի և ռես Սարխողի հետ միասին՝ տասը անվանի խոջաների անուններ, որոնք վերացրել են Վանի եկեղեցիներից գանձվող «ոխֆերու շարէքն» և այլն (հշտկ. № 506, էջ 404—405)։

Այս կարգի փաստերը, որոնց թիվը կարելի է բազմապատկել, վկայում են այն մասին, որ հարավային Հայաստանի քրդական ամիրություններում և կենտրոնական իշխանության կողմից նշանակված «կողմնապետների» իրավասության ներքո գտնվող հայկական շրջաններում, քուրդ և թուրքմեն ցեղապետների և ավագանիների հետ միասին հայ աշխատավոր գյուղացիությանը շահագործում էին նաև հայ մեծատուն խոջաները, թամղաչիները և ձեռնավորները։

Խիստ աննշան էր երկրի քաղաքական կյանքում հայ մեծամեծների կատարած դերը, սակայն տնտեսության բնագավառում նրանք գործունեության լայն ասպարեզ ունեին. և աշխատավոր ժողովրդից դաժանորեն քամվող հարկերը հոսում էին ոչ միայն դեպի ամիրների գանձատները, այլ զգալի չափով նաև՝ դեպի հայ խոջաների դրամաքսակները։

Սակայն սխալ կլիներ կարծել, թե հայ ժողովրդի իշխող վերնախավը ամենուրեք դիմահեղձվել ու ընդունել էր խոջայի և վաշխառուի կերպարանք։ Ընդհակառակը, հիշատակարաններն ընձեռում են նյութեր, որոնք այս կամ այն չափով հնարավորություն են տալիս ծանոթանալու Հայաստանի այլևայլ մասերում իրենց գոյությունը դեռևս պահպանած ֆեոդալական տների, նրանց կալվածքների և երկրի տնտեսական ու կուլտուրական կյանքում կատարած նրանց դերի հետ։ Ֆեոդալական այդ տիրույթները, միմյանցից բաժան-բաժան, տիրող թուրքմեն ու քուրդ ամիրներին ենթակա շրջանների հարևանությամբ կամ գերիշխանության տակ լինելով, զինական ու քաղաքական տեսակետից մեծ կշիռ չունեին անշուշտ։ Սակայն լինելով հայ ժողովրդի անկախ գոյության վերջին հիշատակները, նրանք սնում էին ազատագրական պայքարի գաղափարներ ու որոշակի դեր էին կատարում ժողովրդի կուլտուրական տրադիցիաների պահպանման ու զարգացման գործում։

Բ

Քննության ենթակա ժամանակաշրջանում Հայաստանում պահպանված ֆեոդալական տիրույթների ու կալվածքների մեծագույն մասը պատվարել էր իրեն վանական կալվածատիրության ցուցանակներով։

Հասկանալու համար հայ ֆեոդալական դասի ուշագրավ այս կերպարանափոխության տնտեսական ու քաղաքական դրդապատճառները, անհրաժեշտ է մի երկու խոսքով բացահայտել հայ եկեղեցու նկատմամբ մահմեդական իշխողների վարած քաղաքականությունը։

Իր դարավոր գոյության ընթացքում հայ եկեղեցին, արտահայտելով իշխող դասակարգի շահերը և ձգտելով հեռու պահել ժողովրդական մասսաներին

սոցիալական պայքարից՝ շոշափելի ծառայություններ էր մատուցել երկրի ոչ միայն հայ, այլև օտար տերերին, և ի տրիտուր իր ծառայությունների տիրողների կողմից միշտ էլ, այս կամ այն չափով, հովանավորվել ու ստացել էր որոշ արտոնություններ։ Աստիճանաբար, հայ ֆեոդալական տների բռնի վերացմանն ու մասնատմանը զուգընթաց, եկեղեցին իր վրա վերցրել էր նաև հայ ժողովրդի ներքին գործերի տնօրինման ֆունկցիաներ, մի հանգամանք, որի հետ չէին կարող հաշվի չնստել երկրի մեկը մյուսին հաջորդող զավթիչները։

Ուշագրավ է, որ այս կամ այն դինաստիայի կամ առանձին տիրակալի համար ստեղծված ծանր քաղաքական կացության ժամանակ, նրանք, հայ ժողովրդական մասսաների համակրանքը շահելու կամ օգնությունն ապահովելու մտադրությամբ, անհրաժեշտ էին համարում սիրաշահել հայ հոգևորականությանն ազդեցիկ շերտերին, եկեղեցու արտոնություններն ընդարձակելու, նվերներ բաշխելու, երբեմն նույնիսկ եկեղեցիներ կառուցելու ճանապարհով։

Հայտնի է, օրինակ, որ Ջհանշահի որդի Հասան-Ալին, իր հոր պարտությունից ու սպանությունից հետո, երբ նախապատրաստվում էր հակահարված տալու Աղ-Կոյունլուներին.

> «Եկեղեցի շինեաց զՄակուայն,
> «Որոյ անուն սուրբ Վարդան,
> Եւ նա չեղև իւրն օգնական
> Կամօք վերինըն հայրական»
> (հշտ. № 424, էջ 334)։

Ուզուն-Հասանը ևս, 1472 թվականին, երբ ճանապարհ էր ընկել օսմանցիների դեմ պատերազմելու, պատշաճ գտավ նվերներ բաշխել Գլակա հեղինակավոր վանքին։

Այս մասնակի դեպքերին, անշուշտ, նշանակություն չէր տրվի, եթե չլինեին հայկական վանական հաստատությունների նկատմամբ մահմեդական իշխողների հովանավորիչ քաղաքականությունը բացահայտող բազմաթիվ անտարակուսելի փաստեր։

Վերջերս, աշխատությամբ հմուտ իրանագետ Հ. Փափազյանի, Մատենադարանի կողմից հրատարակվեց ԺԵ.—ԺԶ. դարերից պահպանված պարսկերեն հրովարտակների արժեքավոր ժողովածուն, որը Հայաստանի ու հարևան երկրների սոցիալ-տնտեսական հարաբերությունների պատմությունը լուսաբանող բազմապիսի ու ճոխ նյութեր է պարունակում (տե՛ս Մատենադարանի պարսկերեն վավերագրերը, I, Հրովարտակներ, պրակ առաջին (ԺԵ.—ԺԶ. դդ.), կազմեց Հ. Փափազյան, Երևան, 1956)։

Այդ հրովարտակներից հինգերորդը, տրված Ուզուն-Հասանի կողմից 1475 թվականին Դարաշամբի հայ կուսակրոն հոգևորականությանը, հնարավորություն է տալիս եզրակացնելու, որ էջմիածնին ենթակա բոլոր կուսակրոնները ազատ են եղել խարաջ ու ջիզյա հարկերից։ «Հին ժամանակներից ի վեր մինչև օրս,— գրված է այդ հրովարտակում,— երբեք այնպիսի օրենք չի եղել, որ Ուչքիլիսայի (էջմիածին) կրոնավորներից ու սևազգեստներից խարաջ և ջիզյա պահանջեն» (նշվ. աշխ., էջ 49)։ Նույնպիսի արտոնություններ են վայելել նաև Գանձասարի կաթողիկոսի հոգևոր իշխանության տակ եղող կրոնավորները։ Ջհանշահի կին Բեգում-Խաթունի կողմից 1462 թվականին տրված հրովարտակում ուղղակի կարգադրված է նրանցից «չիզյայի և Բեյթ-ուլ-մալի պատրվակով» ոչինչ չպահանջել, նրանց չորքոտանիներից ուլաղ չվերցնել,

*չիջեանել նրանց պատկանող վայրերում և այլն։ Չպետք է կասկածել, որ նույնպիսի արտոնյալ վիճակումն էին գտնվում նաև Աղթամարի կաթողիկոսությանը ենթակա վանական հաստատությունների կրոնավորները։*

*Պարսկերեն հրովարտակները առաջնակարգ նյութեր են պարունակում նաև վանական հաստատություններին պատկանող կալվածքների նկատմամբ մահմեդական իշխողների հովանավորիչ դերը պարզելու տեսակետից։*

*Ջհանշահ փադիշահը անթվական մի հրովարտակով կարգադրում է պետական ամեն տեսակ հարկերից՝ մալից (հողային ռենտայի պետությանը տրվող մաս), իխրաջաթից (արտակարգ ծախսեր) և դիվանական ավարիզից (պետության նկատմամբ հարկային պարտավորություններ) ազատ համարել Տաթևի և Վաղադնի վանքերին պատկանող կալվածքները։ Հրովարտակում ասված է, որ այդ արտոնությունը տրված է նախկին գահակալների հրամանագրերի օրինակով։ Պետական բոլոր կարգի պաշտոնյաները,— ասված է հրովարտակում,— պետք է ենթարկվեն հրովարտակի ոգուն և Տաթևի վանահայր Շմավոնի «ցանքսերից, վարելահողերից ու բերքից մալ ու խարջ չպահանջեն, նրա մարդկանց մուսալլամ և ցուցակագրումից ազատ ճանաչեն» (Նույն տեղում, էջ 44)։*

*Այսպիսի արտոնություններով, հարկավ, օգտվում էին հայկական բոլոր վանական հաստատությունները, ուստի պարզ են դառնում անտեսական այն շարժառիթները, որոնք դրդում էին հայ ֆեոդալական տների ԺԵ. դարի սակավազոր ներկայացուցիչներին իրենց պատկանող կալվածքները նվիրաբերել իրենց իսկ իշխանության տակ գտնվող վանքերին, նախօրոք այդ վանքերի վանահայրության պաշտոնը դարձնելով իրենց ընտանիքի ժառանգական ստացվածք։*

*Հայ աշխարհիկ ու հոգևոր կալվածատիրությունը քննության ենթակա ժամանակաշրջանում այն աստիճանի ներաճված էր մեկը մյուսի հետ, որ հաճախ դժվար է լինում որոշել նրա դասային կերպարանքը։ Եվ ահա կյանքի է կոչվում սոցիալական մի նոր տերմին՝ «պարոն-տէր», որը հատկացվում է բոլոր այն հայ կալվածատեր-ֆեոդալներին, որոնք շարունակում են իրենց ձեռքում պահել իրենց հայրենական կալվածքները, լինելով միաժամանակ և «պարոն» (այսինքն՝ աշխարհիկ իշխան), և՛ «տէր» (այսինքն՝ հոգևոր առաջնորդ)։*

*Պարոն-տեր էին կոչվում Աղթամարի ու Գանձասարի կաթողիկոսները, Սյունյաց եպիսկոպոսները, Հավուց-թառի և բազմաթիվ այլ վանքերի առաջնորդներն ու թեմերի եպիսկոպոսները։*

*Սակայն ոչ ամեն դեպքում էր միևնույն անձնավորության ձեռքում կենտրոնանում որևէ ընտանիքի ժառանգական տիրույթի երկփեղկված իշխանությունը։ Կան դեպքեր, երբ որպես այս կամ այն տիրույթի կամ կալվածքի տեր հանդես են գալիս աշխարհիկ պարոններ, իրենց գործակից ունենալով տեղի հոգևոր իշխանության պետերին, որոնք գերազանցապես լինում էին կամ այդ պարոնի մերձավոր ազգականներից, կամ էլ նրա հլու կամակատարներից ընտրվածներ։*

*Վանական կալվածատիրության անվանական քողնցքով պատվարված այս կարգի տնտեսություններն ի նկատի ուներ Մատթեոս Ջուղայեցին, երբ 1411 թվականին շարադրած իր «Քննութիւն գործոց առաքելոց» աշխատության մեջ գրում էր. «Թէ ոչ գոյ բարուք իշխան վանիցն, զոր ինչ լինի ի վանսն՝ յիշխանքն անցանի, և վանքն տրտնջան» (Մատենադարան, ձեռ. № 1402, էջ 159ա)։*

Հայ կալվածատիրության կերպարանափոխված այս ենթատեսակի մեջ կարելի է դասել Պռոշյան, Հասան-Ջալալյան և մի շարք այլ ֆեոդալական տների ժառանգական տիրույթները։

Եղել են նաև դեպքեր, երբ վանական հաստատությունների վրա իշխանություն են բանեցրել ուղղակի աշխարհական մարդիկ, առանց հոգևոր գործակիցների։ Այսպիսի դեպքեր ի նկատի ունեն նույն Մատթեոս Ջուղայեցին, երբ «Մի գողանար» բնաբանով քարոզի մեջ գրում էր. «Տածուկ գող կոչին նոքա, որք ոչ ունին ստիճան ինչ յեկեղեցոյ և են աշխարհական կամ միայնակեց և առնուն ի ձեռն առաջնորդութիւն եկեղեցոյ» (Մատենադարան, ձեռ. № 2229, էջ 133բ)։

Եկեղեցու առաջնորդությունը հափշտակած այս կարգի աշխարհիկ մարդկանցից մեկի մասին հիշատակություն ենք գտնում 1455 թվականին Կողբում, Լուսավորչի և սուրբ Սուքիասանց եկեղեցիների հովանու ներքո ընդօրինակված ձեռագրի հիշատակարանում։ Գրիչը հայտնում է, որ այդ եկեղեցիների «առաջնորդ էր Թաթար տանուտէր և եղբայր նորա Փասիլ» (Հշտկ. № 69, էջ 54)։

Հայաստանի ծայրագավառներում կարող էին լինել, անշուշտ, նաև այնպիսի կալվածատերեր, որոնք անհրաժեշտություն չէին զգում պատվարել իրենց տիրույթները վանական ցուցանակներով. սակայն այդ կարգի կալվածատերերի մասին մեր տվյալները խիստ անբավարար են։ Ուստի, առանց վարանման կարելի է պնդել, որ հայ աշխարհիկ ու հոգևոր կալվածատիրության միաձուլման ու սերտաճման այս երևույթը, մերթ եկեղեցականի, մերթ աշխարհիկի գերակշիռ դիրքով, բնորոշ էր ողջ Հայաստանի համար։

Այս անհրաժեշտ լուսաբանումից հետո թռուցիկ ակնարկով ծանոթանանք բոլոր այն հայ ֆեոդալական տիրույթների հետ, որոնք օտարերկրյա տիրակալների անդադար հարվածներից մասնատվելով՝ շարունակում էին դեռևս պահպանել իրենց կիսանկախ գոյությունը ԺԵ. դարի երկրորդ հիսնամյակում։

Հարավային Հայաստանում ամենախոշոր հայկական ֆեոդալական տիրույթը Աղթամարն էր։

Աղթամարի ֆեոդալական իշխանությունը, զուգակցված հոգևոր իշխանության հետ, սկզբնավորվեց 1113 թվականին, երբ Խեդենիկ արքայունի սերնդից՝ Արղլմսեհ Կյուրոպաղատի որդի Դավիթը հայտարարեց իրեն ինքնագլուխ կաթողիկոս։ Մինչև ԺԳ. դարի 70-ական թվականները կաթողիկոսական աթոռը ժառանգում էին այս նույն ընտանիքին պատկանող եկեղեցականները։ 1272 թվականից, սակայն, Աղթամարի կղզին ու կաթողիկոսությունը դարձավ Սեֆեդին արքայունի ընտանիքի ժառանգական ստացվածքը։ Այս Սեֆեդինը ամուսնացել էր Դավիթ կաթողիկոսի եղբորորդի (˚) Խեդենիկ արքայունի Մարիամ դստեր հետ, որպես օժիտ ստանալով Աղթամար կղզու կեսը։ Հետագայում, կարիքի մեջ ընկած իր աներոջից նա գնեց նաև Աղթամարի մյուս կեսը և կաթողիկոսական աթոռին նստեցնելով իր Ստեփանոս որդուն՝ հիմք դրեց Աղթամարի աշխարհական ու եկեղեցական տիրակալության նոր դինաստիայի։ Եվ Ստեփանոսից սկսած Աղթամարի կաթողիկոսական աթոռը անցնելով հորեղբորից եղբորորդուն, կամ մի այլ մերձավոր ազգականի, մինչև ԺՋ. դարի վերջերը, որպես ժառանգական տիրույթ, մնում է այս ընտանիքի ձեռքում (տե՛ս Ն. Ակինյան, Գաւազանագիրք կաթողիկոսաց Աղթամարայ, Վիեննա, 1920, էջ 42 և հտ.)։ Սրանք, թերևս ունենալով իրական հիմք, իրենց համարում էին



5—94

«թագատրազն» «ի Թոռանց և ի շառաւեղէ արքային Գագկայ» (տե՛ս, օրինակ, Հշտկ. № 221, էջ 172)։

Աղթամար կղզու վրա մեզ հետաքրքրող ժամանակաշրջանում կար 600 տուն զուտ հայ բնակիչ ունեցող մի փոքրիկ քաղաք, որ օտարազգիների կողմից Արմենիկ էր կոչվում։ Այդ քաղաքի ուշագրավ նկարագրությունը գտնում ենք անանուն Վենետիկցի վաճառականի ուղեգրության մեջ (1511—1520). «Կղզու վրա,— գրում է նա,— կա մի փոքրիկ քաղաք, երկու մղոն շրջագծով, քաղաքն ունի այնքան տարածություն որքան կղզին։ Այս քաղաքը կոչվում է Արմենիկ, շատ բազմամարդ է և միայն հայ քրիստոնյաներն են բնակվում այնտեղ, առանց ոչ մի մահմեդականի, ունի շատ եկեղեցիներ, բոլորը հայ քրիստոնյաների պաշտամունքի համար...։ Քաղաքի կամ կղզու դիմաց գտնվում վ է մի ծովածոց, հիանալի մի դաշտով, որ ունի բազմաթիվ գյուղեր՝ բնակված հայ քրիստոնյաներով, կան շատ մշակված հողեր ու գեղեցիկ պարտեզներ՝ ծառերով, որոնք արտադրում են ամեն տեսակ պտուղ» («Ուղեգրություններ», հատոր Ա, էջ 300—301)։

Կարելի է ենթադրել, որ բացի կղզուց, Աղթամարի կաթողիկոսներին էր պատկանում կղզու հանդիպակաց ափի վրա գտնվող բարեբեր գյուղերի մի մասը։ Ստույգ տվյալ ունենք այն մասին, որ 1463 թվականին, 1000 թանկա գումարով, Աղթամարի վանքը գնել էր մի նոր գյուղ (այս մասին քիչ հետո)։ Աղթամարի կաթողիկոսների եկամուտների մի խոշոր մասն էլ գոյանում էր ենթակա թեմերից գանձվող եկեղեցական հարկերից ու տուրքերից։

Ժամանակակիցների կողմից Աղթամարը դիտվում էր որպես «տեղի ապաստանի ամենայն աշխարհացս» և իր ընչեղությամբ ու հարստությամբ գրգռում էր Ոստանի քրդերի ախորժակը։ «Զինչ ի ծովու բոլորս մալ և գանձ կայ՝ ամենայն անդ է եղեալ»,—այդպես էին մտածում նրանք և կղզին կողոպտելու հաճախակի փորձեր կատարում։

ԺԵ. դարի 60-ական թվականները Աղթամարի կաթողիկոսության աննախընթաց հաջողությունների ու փառքի տարիներն էին։

Զաքարիա Գ. կաթողիկոսը, ի դիմաց Ջհանշահին մատուցած ծառայությունների, ստանալով Էջմիածնի կաթողիկոսությունը՝ իր իշխանությունը տարածեց գրեթե ողջ հայ եկեղեցու վրա։ Ստանձնելով ինքնակամ դիվանագետի պաշտոն, նրան, ինչպես գիտենք արդեն, հաջողվեց հաշտեցնել Բաղեշի ապստամբ ամիր Շարաֆ-բեկին Ջհանշահի հետ, ուստի «մեծարանաւք խըլայեալ եղև երկուց գոռոզաց այլասեռից՝ ի Թուրքման փաթշահէն և ի քուրթ ամիրայէն»։ Այնքան ուժեղ էր զգում իրեն այս «թագատրազն» կաթողիկոսը, որ Լուսավորչի գահը գրավելուց հետո մտորում էր նաև Կարա-Կոյունլուների թևածությամբ Արծրունյաց թագավորությունը վերականգնելու հնարավորությունների մասին։ Գահի թեկնածուի ընտրությունը պետք է, անշուշտ, կատարվեր Զաքարիայի մերձավոր ազգականների շրջանից։ Եվ որքան էլ աննշան լինեին այդ ընտանիքի աշխարհական պայազատները, նրանցից մեկին, Զաքարիայի եղբայր Գուրջիբեկի որդի Սմբատին, վիճակված էր «թագավորի» դեր ստանձնել հայկական թագավորության «վերականգնման» հանդեսին, որը տեղի ունեցավ Զաքարիայի մահից հետո՝ 1465 թվականին, նրա հաջորդ ու գործի շարունակող Ստեփանոս կաթողիկոսի ժամանակ։

Սմբատը հիշատակվում է միայն Աղթամարում գրված մի երկու հիշատակարանում, 1465—1471 թվականներին, որպես «թագաւոր» կամ «պարոն»։ Նրա

*«գործունեության» մասին գիտենք միայն մի փաստ. 1465 թվականին նորընծա այս «թագավորը», 210 թանկա գումարով վաճառում է ոմն Հովհաննես կրոնավորի՝ իր հորեղբայր Զաքարիա կաթողիկոսից նվեր ստացած ձեռագիր Շարակնոցը։*

*Որքան էլ հիմնազուրկ և անիրականանալի էին Աղթամարի կաթողիկոսների սին երազները կաթողիկոսական գավազանի հետ մեկտեղ թագավորական գայիսոն ունենալու մասին, այնուամենայնիվ դրանք ևս որոշակի հետաքրքրություն են ներկայացնում հայ ազատագրական մտքի պատմության տեսակետից և ցուցանիշ են Վասպուրականում պահպանված այդ միակ հայկական ֆեոդալական իշխանության քաղաքական ու տնտեսական կշռի։*

*Հայկական ֆեոդալական տիրույթներ, շատ ավելի մեծ չափով քան հարավային Հայաստանում, պահպանվել էին Սյունիքում, Խաչենում և կենտրոնական ու հյուսիսային Հայաստանի այլ շրջաններում։*

*Համեմատաբար առատ տվյալներ են պահպանվել Վայոց-ձորի Պռոշյանների մասին։*

*1461 թվականին Սրկղունքում շարադրված մի հիշատակարանի մեջ Վայոց-ձորի իշխաններ են համարված պարոն Ջուման և պարոն Խանիկը (հշտկ. № 196, էջ 157)։*

*1473 թվականին արդեն պարոն Ջուման հիշվում է առանց Խանիկի ընկերակցության. «Եւ մերում նահանգի պարոնութեանս պարոն Ջումին»,—գրում է հիշատակագիր Դավիթը (հշտկ. № 438, էջ 346)։ Երկու տարի հետո շարադրված մի այլ հիշատակարանում Ջումայի և նրա մերձավորների մասին գրված են ուշադրության արժանի մանրամասնություններ։ Պարզվում է, որ «ասպարապետ Հայոց», «իշխանաց իշխող» պարոն Ջուման սերված է Պռոշյաններից («թոռին մեծին Պռաւշայ»), ունեցել է պարոն Ղլըբեկ, Ուլուբեկ, Թումանբեկ անունով որդիներ և պարոն Հայկազ, Ամիր-Վասակ, Խաղբակ, Ամիր-Հասան անունով եղբորորդիներ։ Նրա եղբայրներից Հովհաննեսն ու Ստեփանոսը գրավել են Վայոց-ձորի արքեպիսկոպոսական աթոռը, նստավայր ունենալով Այրիվանքը (հշտկ. № 474, էջ 375, հմմ. նաև հշտկ. № 501, էջ 400)։*

*Հովհաննես ու Ստեփանոս եպիսկոպոսները կենդանի էին տակավին 1488 թվականին և շարունակում էին կառավարել իրենց հոգևոր թեմը։ Այդ մասին տվյալ է գրանցել ինքը՝ Հովհաննես եպիսկոպոսը, իր եղբայր Ստեփանոսին անվանելով «եպիսկոպոս... Կոտայից երկրիս» (Մատենադարան, ձեռ. № 4859, էջ 650բ)։ Նույն հիշատակարանում նա դառնորեն արձանագրում է, որ Յաղուբ-բեկի թագավորության տարիներին մեծ հալածանք է սկսվել քրիստոնյաների նկատմամբ. «Զի ժամանակս դառն էր, որ այլազգեաց շատ նեղութիւն քաշեցաք»,— գրում է նա։ Հալածանքի հիմնական նպատակն է եղել հավատափոխության պահանջ ներկայացնելով՝ իշխանությունից զրկել հայ սակավաթիվ ֆեոդալներին և կամ բռնի մահմեդականացման ճանապարհով՝ ասիմիլյացիայի ենթարկել նրանց։ Հիշատակարանի շարադրման թվականին (1488) տիրողների կողմից բանտ են նետվում 40 հայ «ազատորդի»-ներ. նրանց ներկայացվում է հավատափոխության պահանջ։ Այդ ազատորդիներից էին նաև հիշատակագրի եղբորորդի՝ պարոն Հայկազը և պարոն Ավագը, որոնք «Է. (7) ամիս կալուլական կացին, և բազում տուգանք տվին, և հաւատոցս Քրիստոսի ոչ դարձան» (Մատենադարան, ձեռ. № 4859, էջ 650բ)։*

*1493 թվականին Այրիվանքում շարադրված մի հիշատակարանից տեղե-*

կանում ենք, որ այդ տարի վախճանվել է Ստեփանոս եպիսկոպոսը և նրան հաջորդել տեր Բարսեղը, լինելով նույնպես «Թոռն մեծին Պռուշայ» (Գ. Սրվանձտեան, Թորոս աղբար, Բ, էջ 304)։

Պարոն Ջումայի թոռներից մեկը՝ պարոն Արղության 1498 թվականին իշխում էր Զորավանքում*։ Վանական անունով մի գրիչ, հետապնդվելով Մուրադ-խանի ավազակաբարո զորքերից (այն ժամանակ, երբ «եղև հալածումն ի յերկրիս Վայիձորոյ»), վայրից վայր տեղափոխվելով, ի վերջո կայան գտավ այդտեղ։

Պռոշյան իշխանների մասին 1475 թվականին շարադրված հիշատակարանում, ինչպես տեսանք, պարոն Ջուման մեծարված է «ասպարապետ Հայոց» և «իշխանաց իշխող» տիտղոսներով։ Հայ ֆեոդալական տների անկացման ու մանրացման այս շրջանում այդպիսի մեծադղորդ տիտղոսներ շռայլվում էին առատորեն, և դրանց միջոցով հազիվ թե հնարավոր լինի պարզել այս կամ այն հայ իշխանի քաղաքական ու տնտեսական կշիռը։ Այնուամենայնիվ պարոն Ջումայի և նրա ազգականների մասին առկա տվյալները իրավունք են տալիս եզրակացնելու, որ ԺԵ. դարի երկրորդ հիսնամյակում ևս Վայոց-ձորի որոշ մասերը շարունակում էին մնալ Պռոշյանների իշխանության ներքո։

Հիջրեթի 853 (մեր՝ 1451) թվականին կազմված պարսկերեն մի կալվածագրից (Մատենադարան, Արխիվային բաժին, Պարսկերեն վավերագրերի ֆոնդ, № 934) պարզվում է, որ ամիր Բեշքենի որդի Ռուստամը վաճառել է Տաթևի վանահայր Շմավոն Անգեղակոթցուն իրեն պատկանող Սվարանց, Տաշու, Աղանց և Տանձատափ գյուղերը (տե՛ս Հ. Փափազյանի «Մի էջ արևելյան Հայաստանի քաղաքական կյանքի պատմությունից» հոդվածը, նշվ. տեղ, էջ 86)։ Կասկածից դուրս է, այսպիսով, որ ԺԵ. դարի երկրորդ հիսնամյակում էլ Սյունիքում որոշ կալվածքներ ունեին Օրբելյան տան ժառանգները։ Հիշատակարաններում սակայն նրանց մասին կան միայն սակավարժեք ակնարկներ։

Տեսանք, որ 1461 թվականին Սբկղոմքում շարադրված հիշատակարանի մեջ, Պռոշյան Ջումայի հետ մեկտեղ հիշատակված էր ոմն պարոն Խանիկ։ Դատելով անունից, որ հատուկ է Օրբելյաններին, կարելի է ենթադրել, որ այս Խանիկը ծագումով Սյունյաց Օրբելյաններից էր։

1471 թվականից հասել է մեզ Սյունիքում կալվածքներ ունեցող Օրբելյան մի այլ իշխանի՝ Ստեփանոսի որդի, Սմբատի թոռ և Իվանիկի թոռնորդի պարոն Սմբատի հիշատակարանը մի Ավետարան գնելու մասին (Հշտկ. № 399, էջ 317)։ Նույն Սմբատն է հիշված 1495 թվականին, որպես Վայոց-ձորի արքեպիսկոպոս պարոն-տեր Եղիշեի հայր, «իշխանաց իշխան պարոն Սմբատ» տիտղոսով (Բ. Սարգսյան, Ցուցակ, Ա, էջ 585)**։

* Ըստ Ղ. Ալիշանի Զորավանքը նույնն է Ցուրայ վանքի կամ Ցրւանքի հետ և գտնվում է Տաթևից ոչ հեռու, Ցուրայ բերդի սահմաններում (տե՛ս «Սիսական», էջ 244)։ Կարծում ենք սակայն, որ Զորավանքը Մարտունու շրջանի Զորագյուղի կամ Շոգագա գյուղի մոտ գտնվող, այժմ ավերակ, վանքն է, որի մասին տվյալներ է հաղորդում իր «Տեղեկագիր Գեղարքունի ծովազարդ գավառի» աշխատության մեջ Մ. Սմբատյանը (էջ 509—510)։

** Այստեղ պարոն Սմբատը համարվում է Տարսայիճի որդի, մինչդեռ վերը վկայակոչված հիշատակարանի տվյալներով նրա հոր անունը եղել է Ստեփանոս։ Կարծում ենք, այնուամենայնիվ, որ գործ ունենք միևնույն անձի հետ, ենթադրելով, որ նրա հայրը կոչվել է Օրբելյանների ընտանիքում շատ տարածված Ստեփանոս-Տարսայիճ երկանուններով։ Ստեփանոս-Տարսայիճ էր կոչվում նաև 1314—1331 թթ. Սյունյաց մետրոպոլիտ եղած Օրբելյան իշխանազունը։

*Եղիշե արքեպիսկոպոսի մասին տվյալներ կան նաև 1475 և 1490 թվականներին շարադրված հիշատակարաններում, որոնցում նա կոչվում է «յազգէ Բուրթէլանց» կամ «թոռն մեծին Բիւրթէլեանց»։ Նրան հատկացված պարոն-տեր կոչումը իրավունք է տալիս եզրակացնելու, որ Եղիշեն օժտված է եղել նաև աշխարհիկ իշխանությամբ, տիրելով Բուրթելյան տան երբեմնի ընդարձակ կալվածքների մի մասին։*

*Արցախում շարունակում էին իշխել Հասան-Ջալալյան և Դոփյան ֆեոդալական տների սերունդները։*

*ԺԵ. դարի 50-ական թվականներին Խաչենի տերն էր պարոն Ջալալի որդի Աղպաստ իշխանը։ Սրա որդին էր Սայտումը, իսկ թոռը Վելիշանը։ 1473 թվականին «Ի գաւառիս Խաչենաձորոյ» գրված մի Ավետարանի հիշատակարանում ասված է, որ ընդօրինակության աշխատանքները կատարվել են «ի տէրութեան տեղւոյս պարոն Վելիշանին» (Հշտկ. № 435, էջ 344)։ Վելիշանը 1480 թվականին Գանձասարի վանքում թողել է նվիրաբերական մի արձանագրություն. «Ես Վելիշանս,— գրված է այնտեղ,— և եղբարքս իմ, որդիք Սայտումին, թոռն մեծին Աղբաստու տեառն Խաչենու, տուաք Ալմանայ իւր Դ. սահմանամն ի սուրբ ուխտս Գանձասարայ» («Վիմական տարեգիր», էջ 174)։*

*Գանձասարի կաթողիկոսությունը Խաչենի Հասան-Ջալալյանների ժառանգական ստացվածքն էր համարվում։ Գանձասարի կաթողիկոս են եղել Աղպաստի եղբայր Հովհաննեսը (մհ. 1470 թ.), Սայտումի թոռ Սարգիսը (մհ. 1554 թ.) և շատ ուրիշներ, նույն այս ֆեոդալական ընտանիքից։*

*Խաչենի Հասան-Ջալալյաններից կախման մեջ էին Դոփյան իշխանական տան սերունդները, որոնք մեզ հետաքրքրող հինամյակում 3 ընտանիքների էին բաժանված՝ Ուլուբեկենց, Այտենեցւոց և Ջհանշեցվոց (տե՛ս Հակոբ Թոփճյան, Ցուցակ ձեռագրաց Խաչիկ վարդապետի Դադյան, մասն Ա, Վաղարշապատ, 1898, էջ 89)։*

*ԺԵ. դարի կեսերին Դոփյան իշխաններից ամենահեղինակավորն էր Տուրսումի որդի Այտին իշխանը, որ հաջորդել էր հորը 1430 թվականին։ Մի արձանագրության մեջ նա հիշվում է որպես «պարոն Փոքր Սիւնեաց, Ականոյ և Հաթերքոյ և Հանդաբերդոյ և ծովակին Գեղամայ՝ մինչ ի Շողվաքայ» (Կարապետ եպս., Դոփեանք և Մելիք-Շահնազարեանք, Էջմիածին, 1914, էջ 88—89)։*

*Դոփյանների մասին Խաչիկ վրդ. Դադյանի ձեռագրերի ցուցակում հրատարակված պատմական փոքրիկ գրվածքում ասված է, որ «ի ժամանակի սորա (Այտինի), ի զօրանալ իսմայելացւոց և ի նուաղիլ տանս Հայոց ցիր և ցան լինելն իշխանացն Հայոց՝ յարեան այլազգիքն և զմուլքն մեծ իշխանին Հասանայ պէթալմոլ արարին։ Գնաց պարոն Այտինն ի դիւան և երեք ամ աշխատեաց և բազում ինչ տուեալ ազատեաց ի ձեռաց այլազգեացն զվանօրայքն և զշինաբէնքն» (Ցուցակ ձեռագրաց Խաչիկ վարդապետի, Ա, էջ 89)։*

*Այսպիսով, Այտինին հաջողվում է, հավանաբար Ջհանշահի թագավորության տարիներին, դատական ատյաններում երեք տարի քարշ գալուց և հսկայական միջոցներ վատնելուց հետո, կրկին տեր դառնալ իր հայրենական կալվածքներին։*

*Դոփյանները մահմեդական իշխողներից իրենց կալվածքները պատվարելու համար հաճախ խոշոր նվերներ էին տալիս իրենց իշխանության տակ գտնվող վանքերին։ Հաթերքի Դադի վանքի զանգակատան արձանագրություններից մեկում խոսք կա Դոփյան չորս իշխանների (Շահանշահի որդի, Հա-*

սանի Թոռ Սեյտի. Վահրամի որդի, Հասանի Թոռ Գրիգոր իր եղբայրների հետ միասին. Տուրսունի որդի, Աղբուղայի Թոռ Այտին և Հասանի որդի, Ճհանշահի Թոռ Շահանշահ) կողմից Դադի վանքին կալվածքներ նվիրաբերվելու մասին։ Կալվածքների ստացողն է Ավագ եպիսկոպոսը, որը նվիրատու ազգական իշխանների կողմից կոչված է «մեր ճոճատր»։ Պետք չէ կասկածել, որ Դոփյանների «ճոճատր» եպիսկոպոսը սերված էր նույն իշխանական տնից (Մ. Բարխուդարյան, Արցախ, էջ 209)։

Հայ իշխանազունները ոչ միայն միաբանում էին իրենց վանքերը տնտեսապես ամրապնդելու համար, այլև բախվում էին՝ իրարից կալվածքներ շորթելու մտադրությամբ։

1456 թվականից պահպանվել է մի ուշագրավ փաստաթուղթ, որը հնարավորություն է տալիս վեր հանելու հայ ֆեոդալների առօրյա սահմանավեճերից ու կռիվներից մի դրվագ, ինչպես նաև ցույց է տալիս Դոփյանների կախումը Հասան-Ջալալյաններից։

Արասլա կոչվող կալվածքի պատկանելության շուրջը վեճ է ծագում Մեչլիսի որդի, Ջալալի Թոռ Ուլուբեկի և Մեհրապի որդի, Արղութի Թոռ Շահանշի միջև։ «Ի մեր հայրենեացս մէջն խաւսք իլաւ» գրված է փաստաթղթում։ Պարոն Ուլուբեկի մարդկանցից մեկը սպանվում է այդ վեճի ժամանակ և կռվող կողմերը դիմում են իրենց սյուզերեն Աղպաստին։ Սահմանավեճը հարթելուց հետո կազմվում է հատուկ համաձայնագիր, վիճելի կալվածքը ճանաչվում է որպես Ուլուբեկի հայրենիք։ Համաձայնագիրը վավերացվում է՝ Գանձասարի առաջնորդ Եղիա եպիսկոպոսի, Հովհաննես կաթողիկոսի, պարոն Աղպաստի, նրա եղբայրներ Աղեկի ու Ամիր-Հասանի, ինչպես նաև Տուրսունի որդի Միրզալու և ումն Պաստամի (հավանաբար՝ Ջալալի որդի) ստորագրություններով և ավարտվում «ով որ այս սարհատիս դաւի անի՝ աստուծոյ նահլաթ լինի» խոսքերով։*

Ակամայից մտաբերում ես Մատթեոս Ջուղայեցու դառն խոսքերը իր ժամանակի հայ իշխանների մասին. «Այժմ մնացեալ սուտ իշխանքն Հայոց,— գրում է նա,— զմիմեանց շիլս հատանեն, և զարմանալի ես, զի բոլոր երկիրս աւեր և վասն աւերածիս կռուին» (Մատենադարան, ձեռ. № 1402, էջ 215բ)։

Հայ խոշոր կալվածատերերից էին նաև Գառնիի շրջակայքում գյուղեր ունեցող այն իշխանները, որոնք իրենց համարում էին Գրիգոր Պահլավունու սերնդից։ 1487 թվականին Հավուց-Թառի Ամենափրկիչ վանքի վանահայր Զաքարիա վարդապետը՝ այդ «աղատազուն» ընտանիքի պարոն-տերը, վերստանում է նախկինում իրենց պատկանած Մանկուս, Ավանիկ, Կուտիս, Հայոց-Թառ, Կուտուց վանք, Ավանասար, Թ'առնիս, Սուրբ Սարգիս գյուղերը գլխովին և Կոխտ գյուղի 3 գանկը (կեսը)։ Նշված ինը գյուղերի կալվածագրում Զաքարիան հանդես է եկել ոչ որպես Ամենափրկիչ վանքի վանահայր և չի նշել, որ այդ գյուղերը նվիրաբերվում (վակֆ են արվում) վանքին։ Այս կապակցությամբ Սիմեոն Երևանցին, իր նշանավոր «Ջամբռ»-ում գրում է. «Արդ, Զաքարիա վարդապետս զայսոսիկ ի յառնունլ, յիւր անուն առնու, և զանուն Ամենափրկչին ոչինչ յիշէ

* Ուշագրավ այս համաձայնագիրը հրատարակված է Մ. Բարխուդարյանի «Արցախ»-ում (էջ 187), որպես ՋԵ. (1456) թվականի և Ս. Ջալալյանի «Ճանապարհորդութիւն» Բ մասում (էջ 243—244), որպես ՋԷ. (1458) թվականի փաստաթուղթ։ Նկատի ունենալով այն հանգամանքը, որ Ջալալյանի վերծանումը լի է աղաղակող սխալներով, համաձայնագրի թվականը համարում ենք 1456-ը։

ի ղտպալայոջն, զի սոքա ի բնէ անտի ազատազունք էին և անուանիք, շատաղդ և հարուստք, յորոց թէպէտ ոմանք վանականք լինէին, ոմանք աշխարհականք, սակայն մի էին տամբք և ընչիւք, և իւրեանց էր համարեալ գեօղն և վանքն առանց խտրութեան» (Զամբռ», էջ 277)։

Սիմեոն Երևանցին իր այս տողերով տվել է հայ աշխարհիկ ու վանական կալվածատիրության միաձուլման և սերտաճման երևույթի խորն ու ճշմարտացի նկարագիրն ու բացատրությունը։

ԺԵ. դարի երկրորդ հիսնամյակում հայկական ֆեոդալական փոքր մի իշխանություն կար նաև Քարթլիի վրաց թագավորությանը ենթակա Լոռիում։ Այդ մասին մեզ հասած միակ տվյալը գրանցել է 1494 թվականին Հոռոմայրում ընդօրինակած Ավետարանի հիշատակարանում Գալուստ գրիչը. նա հայտնում է, որ աշխատանքը կատարել է «պարոնութեան Լոռոյ պարոն Ղդրին, և ի դիւանութեան երկրիս պարոն Դաւթին, և եղբօրորդւոյն իւրոյ պարոն Ամիրշանին» (Մ. Տեր-Մովսիսյանի ձեռագիր ցուցակից)։

Այս միակ վկայության հիման վրա անհնարին է որոշել Լոռվա հայկական իշխանության տեղադրությունը, սահմանները, կշիռն ու զորությունը։ Այնուամենայնիվ, ելնելով այն փաստից, որ Լոռվա «պարոնությունը» ունեցել է իր դատական ատյանը («դիւանութիւն»), պետք է մեծ հավանականությամբ ենթադրել, որ եղել է ֆեոդալական կիսանկախ իշխանություն։

Բացի վերը թվարկված, համեմատաբար խոշոր ու ազդեցիկ, ֆեոդալական տիրույթներից, Հայաստանի այլևայլ մասերում շարունակում էին գոյություն ունենալ հայ մանր կալվածատերեր։ Սրանք շարունակում էին իրենց ձեռքում պահել առանձին գյուղեր ու կալվածքներ, հաճախ ստիպված լինելով հարմվել կրոնավորի սքեմ։

Ծանոթանանք այդ կարգի մանր հողատեր-կալվածատերերից մի քանիսի հետ։

1452 թվականին Եղվարդում հիշատակվում է տեր Մանուել եպիսկոպոսը, «որդի պարոն Աւաքին, թոռն պարոն Ազիզբէկին» (Հշտկ. № 20, էջ 16)։ 1465 թվականին շարադրված մի հիշատակարանից տեղեկանում ենք, որ Եղվարդ գյուղը իր շրջակայքով գտնվել է ոմն պարոն Վիշելի վերակացության ներքո. «ի վերակացութեան երկրիս պարոն Վիշելին» (Հշտկ. № 284, էջ 232)։

1460 թվականին, Բջնիում, որպես «առաջնորդ» հիշված է պարոն Սարգիսը (Հշտկ. № 172, էջ 131), 1467 թվականին, Բյուրականում՝ պարոն Բարաճանը, իր կնոջ՝ իշխանուհի Թամարի հետ միասին.

«Այլ և զպարոն Բարաճանի
Եւ զԹամար իշխանուհի...»

դրված է հիշատակարանում (Հշտկ. № 370, էջ 288)։

1499 թվականին Կեչառույքի վանքի առաջնորդ էր պարոն-տեր Փիլիպպոսը։ Պարոն-տեր տիտղոսը հնարավորություն է տալիս եզրակացնելու, որ Փիլիպպոսը Կեչառույքում ունեցել է և՛ հոգևոր, և՛ աշխարհիկ իշխանություն։

Այս ցանկը կարելի է կրկնապատկել այլ սկզբնաղբյուրների, հատկապես վիմական արձանագրությունների, ընձեռած տվյալներով։ Սակայն կարծում ենք, որ մեր բերածն էլ բավական է համոզվելու համար այն բանում, որ Հայաստանի մի շարք շրջաններում, հարմարվելով քաղաքական ու սոցիալական նոր պայմաններին, պատվարելով իրենց եկեղեցական հողատիրության ցու-

ցանակներով, շարունակում էին գոյություն ունենալ հայ ֆեոդալական մանր իշխանություններ։

Մեծ չէր այդ իշխանությունների տնտեսական և քաղաքական կշիռը վաղուց ի վեր անկախությունից զրկված և օտար տիրակալների հարկային ծանր լծի տակ կեղեքվող հայ ժողովրդի կյանքում, սակայն կարևոր դեր էին ստանձնել նրանք դարերի ընթացքում ստեղծված կուլտուրական արժեքների պահպանման և հայրենի երկրի կորցրած ազատությունը վերականգնելու ձգտումները արծարծելու և վառ պահելու գործում։

Գ

Հիշատակարանները շատ ավելի հարուստ ու բովանդակալից տվյալներ են պահպանել հայկական վանական հաստատությունների, նրանց կալվածքների ու տնտեսության, եկամտի ու հասույթի աղբյուրների, ինչպես նաև երկրի կուլտուրական կյանքում կատարած նրանց դերի մասին։

1468 թվականին Խիզանում աշխատող Մկրտիչ քահանա գրիչը, խոսելով Ջհանշահի վերջին արշավանքի ու սպանության մասին, ջերմ տողեր է ձոնում նրա հասցեին. «Եւ բազում եկեղեցիք ի յաւուրս սորա շինեցան և նորոգեցան,— գրում է նա,— և էր խաղաղու[թիւն] Հայոց աշխարհիս. և բազմացան քահանայք և կարգաւորք և վանորայք. և էր շինութիւն ի բոլոր իշխանութեան սորա» (հշտկ. № 345, էջ 271)։

Նախորդ էջերում մենք արդեն առիթ ունեցանք տեսնելու, թե ինչպիսի «խաղաղություն» ու «շինություն» էր տիրում հայոց աշխարհում Ջհանշահի ժամանակ։ Բայց որ, իրոք, Ջհանշահի տիրապետության դաժան ու դժվարին տարիներին Հայաստանում վերանորոգվեցին ու կառուցվեցին մի շարք վանքեր ու եկեղեցիներ, այդ հարցում մեր քահանա գրիչը չէր շեղվում ճշմարտությունից և նրա խոսքը չէր մնում «ձայն բարբառոյ յանապատի»։

Ծանոթանանք մի քանի փաստերի։

1460 թվականին, Մելքիսեթ աբեղայի ջանքերով, վերաշինվեց Վանից հյուսիս գտնվող Երերանի վանքը։ Շինարարական այս աշխատանքների մասին մանրամասն տվյալներ է գրանցել ինքը՝ Մելքիսեթ ժրաջան աբեղան. «Շինեցի զժամատունս, և զկրկին գաւիթս, և զերկու տնտեսատունս՝ ամառան և ձմեռան, և այլ բազում հոգաբարձութեամբ աշխատեցայ ի տուն և ի գուռն, ի յանդաստան և ի վախմըն. ըստ կարողութեան անձին մերում նորոգեցաք զվանքս և շնորհազարդ զարդարեցաք զեկեղեցիս սգեստիւք պատարագաց, նաև մանկամբք սուրբ Սիոնի» (հշտկ. № 174, էջ 132)։

Նույն թվականին, Մարուգե ճգնավորի ջանքերով, կառուցվում է Գեորգ զորավարի վանքը «...շատ չարչարեցաւ և շինեաց զսուրբ ուխտս ի կորդէ» (հշտկ. № 180, էջ 140)։

1460 թվականին, ինչպես նշեցինք քաղաքական անցուդարձերին նվիրված էջերում, Աղթամարի Զաքարիա Գ. կաթողիկոսը Ջհանշահի կողմից ստացավ նաև Էջմիածնի կաթողիկոսությունը և իր նստավայրը տեղափոխեց Էջմիածին։

Ինքնագիր իր մի կոնդակում, որ առաջին անգամ հրատարակվում է սույն ժողովածուի մեջ (տե՛ս էջ 173—174, տողատակ), Զաքարիան մանրամասն տվյալներ է հաղորդում Էջմիածնի աթոռին տիրելու հանգամանքների մասին և վերապատմում այն զրույցը, որ տեղի է ունեցել իր և Ջհանշահ փադիշահի միջև, այդ պարգևը իրեն տալու ժամանակ։ «Ու ասաց փաթշահն,— գրում է

նա,— զինչ հասըլ կայ առ քեզ, որ զինչ աւեր կայ շինես, էս քանի տարի վ[աշ]խարհս կերան ու աւէր պահեցին», «Մեք էլ եկաք,— շարունակում է Զաքարիան,— շատ վարպետ ռանեցաք, որ զպակասութիւն և ղթերու[թիմ] լընունք ի յԱրարատեան գաւառս»։

Եվ իրոք, 1461 թվականից, տեղեկություն է հասել մեզ այն մասին, որ Զաքարիա կաթողիկոսը Էջմիածնում «զժամատեղս պայծառացոյց և աներկիւղ պահեաց ի մէջ այլազգեաց սեռից, և զհի[ւ]րատոմս յորդորեաց և լիացոյց առատաձիր պարգևաւք» (հշտկ. № 195, էջ 156)։

Շարունակենք մեր թվարկումը.

1464 թվականին ոմն Դանիել վարդապետ միաբանելով Հավուց-թառի Ամենափրկչին «կրկին զարդարեաց և. սալեց և նորոգեաց» վանքը (հշտկ. № 258, էջ 214)։

1464 թվականին ոմն Դանիել վարդապետ, միաբանելով Հավուց-թառի Ամենափրկչին, «կրկին զարդարեաց և սալեց և նորոգեաց» վանքը (հշտկ. № 370, էջ 290)։

1475 թվականին Աւագտեր վարդապետը «վերստին նորոգեաց շինութեամբ և պայծառութեամբ ժամատեղաց» Բոլորաձորի կամ Բոլորաբերդի անապատը՝ Վայոց-ձորի Սրկղունք ամրոցի մոտ (հշտկ. № 475, էջ 378)։

1476 թվականին ոմն տեր Կարապետ Վանում «վերստին նորոգեաց զսուրբ քումբեթն և զժամատունն և զդուռն սուրբ եկեղեցւոյն և զարդարեաց գեղեցիկ չուրչառաւք և ժամատեղաւք» (հշտկ. № 506, էջ 403)։

1490 թվականին «Եռափափաք տենչմաբ» ոմն Ավան աղա նորոգեց Խորոտիկի վանքը, և այլն, և այլն։

Վանքերի նորոգման, ընդարձակման, նոր շինություններով ճոխացնելու թվարկված մեծածախս աշխատանքները կատարվում էին վանահայրերի, եպիսկոպոսների ու աշխարհական մեկենասների կողմից, անշուշտ, ոչ միայն հոգու փրկության համար։

Ջերմեռանդ վանասիրության սոցիալական ու տնտեսական դրդապատճառների մասին մենք արդեն առիթ ունեցանք որոշ խոսք ասելու։

Այժմ աշխատենք պարզել, թե ինչ ճանապարհներով էին վանքերը ընդարձակում իրենց կալվածքները ու բազմապատկում շահույթի աղբյուրները։

Նոր կալվածքների ձեռք բերման հիմնական աղբյուրը նվիրաբերությունն էր։ ԺԵ. դարի նվիրաբերությունները, չնչին բացառությամբ, լինում էին մանր հողակտորներ, արտեր, այգիներ ու պարտեզներ։ Ձեռքի տակ ունենք այդ կարգի նվիրաբերությունների մասին բազմաթիվ փաստաթղթեր, գրանցված և՛ հիշատակարաններին առընթեր և՛ նրանցից անկախ, պաշտամունքային ձեռագրերի (Ավետարան, Հայսմավուրք, Ճաշընտիր) դատարկ թերթերի ու լուսանցքների վրա։ Որոշ վանքեր ու եկեղեցիներ իրենց գրատների լավագույն ձեռագրերը օգտագործել են ստացված նվերների մասին արձանագրություններ գրանցելու նպատակով, ուստի և ստեղծվել են նվիրատվությունների յուրատեսակ ցուցակներ, որոնցում տվյալներ կան նաև նվիրատուների, նրանց ազգականների, նվիրաբերության առարկայի ու բնույթի մասին։

Այս կարգի ցուցակներից իր հիմնական մասով մեզ հետաքրքրող ժամանակաշրջանին է վերաբերվում Վանի Պողոս-Պետրոս եկեղեցու ցուցակը, որի գրության համար պատշաճ են համարել օգտագործել Սարգիս Շնորհալու

«Մեկնութիւն կաթուղիկեայց թղթոց» ստվար աշխատության դատարկ թերթերն ու լուսանցքները (տե՛ս Մատենադարան, ձեռ. № 4673)։

Ծանոթանանք այդ ցուցակի նվիրաբերական գրանցումներից մի քանիսի հետ։

Ձեռագրի 579ա էջի ստորին լուսանցքում գրված է. «Քրիստոս աստուած, քո սուրբ ծնաւղի բարէխաւսութեամբդ լուսաւորեա զհոգի բարեպաշտ տանուտրոշն զԳուլերում... (թվարկված են Գուլերի ազգականներից 17-ի անունները), որ ետուն զայգին ոխֆ սուրբ առաքելոցս Պետրոսի և Պօղոսի, անչինչ յիշատակ նոցա, ամէն»։

639ա էջի ստորին լուսանցքում.

«Քրիստոս աստուած քո սուրբ և սարսափելի տնաւրինութեամբդ լուս և մաքրեայ յաղտո մեղաց զհոգի Գրիգոր քահանայի Ծերունոնց, որ իւր որդիքն տվին զարտն սուրբ առաքելոցս ընձայ և աւգնական լուսացին»։

652բ էջի ստորին լուսանցքում.

«Տէր աստուած ողորմեա Կարապետին և ծնողացն և ամուսնոյ իւրոյ, որ վնեաց զարտն և ետ ընձայ սուրբ առաքելոցն յիշատակ»։

ԺԴ.—ԺԵ. դարերի տարբեր ձեռագրերով նույն գրքի մեջ գրանցված են մի քանի այլ արձանագրություններ ևս՝ մեկ այգու և երեք արտերի նվիրաբերման մասին (տե՛ս ձեռ. № 4673, էջ 638բ, 653ա, 664ա, 673ա, և այլն)։

1461 թվականին ոմն Հովհաննես 8 ֆլորինով գնում է մի այգի և նվիրում սուրբ Նշան անունը կրող ինչ-որ վանքի։ Նվիրաբերական արձանագրության մեջ մանրամասնորեն ցույց են տրված այգու սահմանները, կալվածագիրը վավերացված է ռայիս Ամենավագի, մի քանի խոջաների և այլ հեղինակավոր անձանց ստորագրություններով։ Վերջին պարբերության մեջ ասված է. «Ես Յոհանէս և իմ եղբօր որդիքս Ալէքսանոս և Մովսէսն Ը. (8) ֆլի. (ֆլորի) տըւաք և գնեցաք զայգին և տըւաք ի սուրբ Նշանն յիշատակ Ամինատնին հոգուն. այլ մարդոյ տաւի տալապա չկա։ Ի թվ. Ջ. և Ժ. (1461)» (A Catalogue of the Armenian Manuscripts in the British Museum, by F. Conybeare, London, 1913, № 18)։

Աղթամարի Ստեփանոս կաթողիկոսի աթոռակալության տարիներին (1465—1489) Հայոց-ձոր գավառի Կեմ գյուղի, «տանուտէրաց կամօք» ոմն Հերենըսի որդի Ստեփանոս նվիրում է, Պուտուկի վանքին իր «հերենական» գնած մուլքն՝ զՓոս արտն» և Թադեոս առաքյալի վանքին՝ «զձորի դրան արտն» (Մատենադարան, ձեռ. № 4515, էջ 229—230)։

Տվյալներ ունենք «Կորի մի արտ, Բ. (2) ծառով» Գեորգ զորավարի վանքին (Մատենադարան, ձեռ. № 4814, էջ 255բ), մի այլ արտ՝ «խոտերովն և ջրովն»՝ Տոսա գյուղի Գեորգ զորավարի եկեղեցուն (Մատենադարան, ձեռ. № 4740, էջ 74բ) և բազմաթիվ այլ վարելահողեր ու այգիներ տարբեր վանական հաստատությունների նվիրաբերվելու մասին չհրապարակված արժեքավոր վավերագրեր։

Բացի անշարժ կալվածքներից վանական հաստատությունները նվեր էին ստանում նաև այլ կարգի «ոխֆ»-եր։

Այսպես, օրինակ, ԺԴ. դարում ապրած Ամիր-Ազիզ անունով մեկը պարտավորվում է ձրիաբար իր ջրաղացում աղալ Մուղնու վանքի ողջ աղունը, տարին մեկ օր իր հոր հոգու համար պատարագ արվելու պայմանով։ Այս մասին շարադրված արձանագրության մեջ կարդում ենք. «Ես Վարձիգույս որդի Ամիր-

Ազիզին եկի ի Մաւզնոյ վանքս, դրի յիշատակ իմ հոգուս, որ զինչ վանուցն ազում լինի՝ իմ ջաղացն աղցվի, որ զինչ միաբանք լինին վանքս՝ ուտեն...։ Եւ միաբանք վանիցս՝ Իգնատիոս եպիսկոպոսս և այլ աբեղայքս ի տարին մէկ ժամ կատարենք Վարձիգուլին հոգուն քանի վանքս ենք, և յետ մեզ հաստատուն պահաւղքն ավհնին յաստուծոյ ամէն, և ով ոք որ վանքս լինին՝ զայս կատարեն»։ (Մատենադարան, ձեռ. № 3646, փշ 256ա)։

Նույնպիսի պարտավորություն է վերցնում իր վրա, սուրբ Քառասնից վանքի նկատմամբ, Պարսամ անունով մի ջրաղացպան։ Այդ առթիվ կազմված արձանագրության մեջ ասված է, որ նա «ոխֆ» է արել վանքին «ջաղչի վարձն» (Մատենադարան, ձեռ. № 4845, էջ 1ա)։

Նույն սուրբ Քառասնից վանքը, նույն տարիներին, ոմն Աղուպշահի որդիներից «ոխֆ» է ստանում «գաշտպահութիւն», այլ խոսքով՝ նվիրատուները իրենց վրա են վերցնում վանքի դաշտերի պահպանության գործը (նույն տեղում)։ Վարդան անունով մի նախրապան ԺԵ. դարում պարտավորվում է առանց վարձի արածացնել Վանի Պօղոս-Պետրոս եկեղեցու քահանաների կովերը։ Գրանցելով այդ պարտավորությունը իրենց պատկանող մի Հայսմավուրքի էջերում, եկեղեցու քահանաները այն՝ պարտադրելով տարածում են ապագայի բոլոր նախրապանների վրա, և անիծում բոլոր նրանց, ովքեր երբէէ կհամարձակվեն վարձ պահանջել իրենց կովերն արածացնելու համար։ Այդ առթիվ ձեռագրում արված համառոտ գրանցման մեջ ասված է. «Դարձեալ, յիշեցէք ի Քրիստոս զնախրորդ Վարդանն, որ զսուրբ Պօղոսու իրիցանու կովերու վարձն թարխան արար ... որ և յետ սոցա յանդգնի և առնու՝ նա պատժի ի սուրբ Առաքելոցս» (Մատենադարան, ձեռ. № 5313, էջ 588բ)։

Ոմն ներկարար էմնադին, իր ծնողների, եղբայրների ու որդիների հետ միասին պարտավորվում է ձրի ներկել Վանի նույն Պօղոս-Պետրոս եկեղեցու քահանաներին պատկանող գործվածքները. «զսուրբ Պօղոսու քահանայից ներկ թարխան արար»,—գրված է պարտավորագրի մեջ (Նոր-Ջուղա, ձեռ. № 544, տե՛ս Ս. Տեր-Ավետիսյանի անտիպ ցուցակը, Պատմության ինստիտուտի արխիվում)։

1493 թվականին Շահմելիք անունով մի կին Կյուրղի վանքին նվիրում է «խալկին մի կէս մոթնոց», այսինքն՝ կես մոթի տարողությամբ պղնձի աման (Գ. Սրուանձտեան, Թորոս Աղբար, Ա, 217)։

1510 թվականին Ներքին-Մարմետ գյուղաքաղաքի քահանաներն ու տանուտերերը՝ Մելիք Պախտիարը, Ռես Սաղդաթիարը, Թամղաչի Մուսեխը և ուրիշներ («և զայլն ամենայն») պարտավորվում են ամեն տարի 20 բեռ ձուկ (տարեխ) տալ սուրբ Կարապետի վանքին. «Յամէն տարի Ի. (20) բեռն ձուկն ոխֆ արարին յիշատակ իւրեանց հոգոյն և իւրեանց ծնօղացն»,— գրված է այդ պարտավորագրի մեջ (Մատենադարան, ձեռ. № 4869, էջ 669բ)։

1573 թվականին ոմն Նալբանդ Հակոբջան «ոխֆ» է անում սուրբ Սահակի վանքին, պարտավորվելով անվարձ պայտել վանքի առաջնորդի ձին (ՍՅՎ, սյուն 680)։

Այսպիսով, պարզվում է, որ հայկական վանքերն ու եկեղեցիները մեզ հետաքրքրող ժամանակաշրջանում ոչ միայն ընդարձակում էին իրենց անշարժ կալվածքները՝ նոր այգիներ, վարելահողեր, խոտհարքներ, տներ նվեր ստանալով, այլև շահվում էին տարբեր զբաղմունքի ու արհեստի տեր մարդկանցից

նրանց ջրաղացներից, ներկատներից, ձկնորսարաններից և այլ արհեստի գործատներից ձրիաբար օգտվելու արտոնություն ստանալով։

Անտարակույս, վանական հաստատությունների ստացած նվերների մի զգալի մասը արվում էր կամովին։ Նվիրատուներից շատերը հավատացած էին, որ իրենց և մերձավորների հոգիները փրկվելու են վանքի միաբանների կողմից նվերների դիմաց խոստացված պատարագների ամենակարող զորությամբ։ Սակայն եկեղեցականներն իրենք միջոցների առաջ կանգ չէին առնում մեկավորների հոգու «փրկության» գործին միջամտելու համար և որոշ վանքեր սահմանել էին նույնիսկ «մեղաց գին» կոչվող տուրքը։ Ամեն ոք կարող էր «մեղաց գին» անվան տակ շոշափելի որևէ նվեր կամ գումար վճարելով՝ մաքրագարդել իր հոգին։ 1429 թվականից մեզ հասել է Գրիգոր Լուսավորչի գերեզման կոչվող վանքում գրված մի փաստաթուղթ «մեղաց գնի» մասին. «... Այլ և,— գրված է այնտեղ,— թողութիւն արասցէ... տէր Շուքրանի բազում մեղացն սուրբ Աստուածածնին բարեխօսութեամբ և Լուսաւորչին արժանաւոր աղօթիւքն, զի երկու հարիւր սպիտակ մեղաց գին ետ ի վանիցս պակասութեան, որոյ աստուած ոչ յիշէ զիւր մեղքն» (Ղ. Փիրղալեմյան, Նոտարք հայոց, էջ 92)։

Այս տվյալը հնարավորություն է տալիս ենթադրելու, որ կամովին թվացող նվիրաբերությունների մի մասը վանքերը ստացել են որպես «մեղաց գին»։

Վանքերի առաջնորդներն ու ազդեցիկ միաբանները, երբ ցանկանում էին իրենց կալվածքներին կցել որևէ նոր գրավիչ այգի կամ արտ՝ գործը, իհարկե, ինքնահոսի չէին թողնում, այլ եռանդուն ջանքեր գործադրելով ձգտում էին համոզել դրանց տերերին, որպեսզի նրանք այդ այգին կամ արտը կամովին և անվարձահատույց նվիրաբերեն վանքին։

Այս տեսակետից որոշակի հետաքրքրություն է ներկայացնում սուրբ Ատոմի վանքի վանահայր Հայրապետի նամակը, հասցեագրված Ջամինից գյուղի քահանա Ստեփանոսին, ռես Վարդանին և ազդեցիկ տանուտերերին (ըստ հնագրական տվյալների շարադրված պետք է լինի ԺԶ. դարի սկզբներին)։ Տեր Հայրապետը մեծ ցանկություն ուներ վանքի սեփականությունը դարձնելու այդ գյուղում գտնվող ինչ-որ պարտեզ։ Իր այս ցանկության մասին նա գրում է պահանջի շեշտով, առանց շեղումների ու երկարաբանության, այսպես. «Ես արշեւ ի ձեզ և ի ձեզանէ կու խնդրեմ, որ զէդ բաղչէդ տաք ի վանք՝ ի դուռն սուրբ յԱտոմի, յիշատակ ձեր և ձեր ննջեցելոց»։ Գյուղի քահանային շահագրգռելու համար Հայրապետ վանահայրը խոստանում է նրան նվիրել իր մի Ավետարանը, որը որպես «ամանաթ» գտնվելիս է եղել քահանայի մոտ. «որ տիրութիւն անես և կանգ[ն]իս ու զմեր խնդրուածս կատարես, բաւ էչ»,—գրում է նա (Մատենադարան, ձեռ. № 6324, էջ 306բ)։

1489 թվականին Արտամետում շարադրված մի հիշատակարանի առընթեր գտնվում է Դավիթ երեցի նվիրաբերական արձանագրությունը, իր ողջ ունեցվածքը Արտամետի Աստվածածնի վանքին նվիրաբերելու մասին։ Այդ արձանագրության վերջում կան ուշադրության արժանի այսպիսի տողեր. «Եւ դարձեալ, աստուած զայն տանուտէրն ալրհնէ, որ վերայ Աստուածածնի կենայ ու հոգ տանի. որ անհաւատ ու անօրէն մարդ շատ կան, որ յաստուծոյ չեն երկընչեր. վասն որոյ պատճառ առնեն և այլ և այլ չար սերմանեն զկապած և զփակած ոխֆ» (Մատենադարան, ձեռ. № 5537, էջ 298ա—298բ)։

«Կապած և փակած ոխֆ»-երը վանական հաստատություններից հետ խլելու հաճախակի փաստերը թելադրել են վանականներին նվիրաբերական ակտերը

փակել յոթնապատիկ անեծքի բանաձևերով, ուղղված այն անձնավորություններին դեմ, որոնք երբևէ կհամարձակվեին վեճի բռնվել վանքի հետ և խլել նվիրաբերված այս կամ այն կալվածքը։

Սակայն չեն օգնել նույնիսկ այդ անեծքները և հաճախ, որևէ մեկի կողմից նվիրաբերված կալվածքը, կրկին գրավվել է նվիրատուի ազգականների կամ ժառանգների կողմից. մի հանգամանք, որ ըստ ինքյան կասկածի տակ է առնում նվիրաբերությունների կամովին լինելը։

Ծանոթանանք բնորոշ մի փաստի. 1489 թվականին «աստուածասէր և բարեմիտ» ոմն քրիստոնյա Մարտիրոս, Արտամետի Կռընկեց սուրբ Աստվածածնի վանքին «ոխֆ» է անում Ջալիմելեքի կոչված արտը։ «Ով որ այլայլէ, կամ հակառակէ, կամ դաւէ անէ՝ զպատիժն յաստուծոյ առցէ»,—գրված է այդ նվիրաբերության մասին մեզ արդեն ծանոթ հիշատակարանում (նույն տեղում, էջ 296բ)։

Չնայած անեծքի կաշկանդիչ ուժին, որոշ ժամանակ անց, նույն արտը խլվում է վանքից։ Առաջին նվիրաբերությունից 62 տարի հետո, 1551 թվականին, ոմն Եղդանբախշ, տեր Հովանես ու Թահար, և «զամենայն ազգատոհմն իւրեանց» նույն Ջալիմելեքի կոչված արտը կրկին «ոխֆ» են անում նույն Կռընկեց սուրբ Աստվածածնի վանքին (տե՛ս նույն տեղում)։

Ասացինք, որ ԺԵ. դարի համար բնորոշ են վանքերին տրվող մանր նվիրաբերությունները։ Սակայն սխալ կլիներ կարծել, որ այս շրջանում չէին լինում խոշոր կալվածքների, առանձին գյուղերի ու գյուղամասերի նվիրաբերություններ։ Գանձասարի վանքը, օրինակ, հենց այս տարիներին Հասան-Ջալալյան ու Դոփյան իշխաններից ստացել է մի շարք գյուղեր։ Ուշագրավ է սակայն այն, որ հայկական վանքերը կալվածքներ էին ստանում ոչ միայն հայ, այլև օտարազգի իշխողներից։ «Պատմութիւն վասն Բողա խաչին» գրվածքի մեջ պատմվում է այսպիսի ուշագրավ դեպք. Վարագա վանքի վանականները 1451 թվականին բոխ բույսից պատրաստում են մի խաչ, որը, իբր, հրաշքներ է գործում։ Այդ խաչի զորությամբ,— ասված է պատմության մեջ,— բուժում են նաև տեղի քուրդ ամիրի անդամալույծ որդուն։ Դրա դիմաց քուրդ ամիրը «զայն տեղն, ուրանօր ինքն բնակէր՝ շուրջանակի արտորէիւք՝ ետ սրբոյ վանիցն յիշատակ և վախմ արքունական նոմոսիւք և բազում իշխանացն այլազգեաց մատանեաւ կնքեալ անջնջելի յիշատակ, յորում այժմ կայ և վայելեն [յ]աշորդք սուրբ ուխտին Վարագայ։ Եւ ոչ ոք կարէ իշխել հպիլ և կամ մերձենալ անդանօր անդաստանին, հերկել և կամ ցանել և կամ սերմանել առանց առաջնորդաց հրամանին, ո՛չ այլազգիք, ո՛չ քրիստոնեայք» (ԼՑՎ, էջ 89)։

Մեծ ու հարուստ վանական հաստատությունները ձեռք էին բերում նոր կալվածքներ նաև գնումների ճանապարհով։

1463 թվականից հասել են մեզ Աղթամարի կաթողիկոսության տեղապահ Ներսես եպիսկոպոսի երկու կոնդակների սևագրությունները։ Դրանցից մեկում կոնդակագիրը խնդրում է իր թեմի հայերին նյութական օժանդակություն ցույց տալ «խախտեալ և սագերն թափեալ» սուրբ Խաչ վանքը վերաշինելու համար։ Ավելի կարևոր բովանդակություն ունի մյուս կոնդակը. այստեղ Ներսես եպիսկոպոսը հայտնում է, որ «գեաւղ մի կայր մաւտ ի վանքս և խիստ նեղութիւն կու հասուցին վանացս» և որ «տէր գեաւղոյն ծախեց մեզ ի Ռ. (1000) թանկայ»։

Այդ հազար թանկայի կեսը՝ վանքը վճարել է գյուղի տիրոջը կանխիկ, իսկ մյուս կեսը վճարելու համար Ներսես եպիսկոպոսը խնդրում է հավատացյալ-

ներին օժանդակել վանքին. «Եւ դուք,— դիմում է նա,— ձեր հոգոյդ համար և այս սուրբ եկեղեցեացս, թէ հոգւոյ էք պահել և թէ էմայ (՞)՝ տուք ի ձեռն դոցա (վանական ժողովարարների), որ բերեն» և այլն (Մատենադարան, Պատառիկների հավաքածու, № 1449)։

Այսպիսով, կիսով չափ ղարձյալ աշխատավոր գյուղացիության հաշվին, Աղթամարը կամ նրան ենթակա վանքերից մեկը* 1463 թվականին տեր է դառնում մի նոր գյուղի։

Գրիգոր Տաթևացին իր «Քարոզգրքի» ամառան հատորում ունի այսպիսի ուշագրավ տողեր. «Այժմու քահանայապետք... պատճառանօք առնեն ընդ բանադրանօք և յետոյ մերկացուցանեն զժողովուրդն իւրեանց» (էջ 298)։ Այսինքն՝ որևէ շինծու պատրվակով բանադրում են այս կամ այն համայնքի բնակչությանը և վերացնում բանադրանքը միայն այն բանից հետո, երբ «մերկացնում»՝ թալանում են ժողովրդին։

Հայ բարձրաստիճան հոգևորականությունը մեզ հետաքրքրող ժամանակաշրջանում ևս չէր խորշում բանադրանքը շահույթի աղբյուր դարձնելուց։ Այս մասին է վկայում Աթանանց գյուղի բնակչությանը Զաքարիա Գ կաթողիկոսի կարգադրությամբ տրված օրհնության գիրը, որը պատահմամբ փրկվել է կորուստից, օգտագործվելով որպես Մատենադարանի № 5512 ձեռագրի պահպանակ։

Օրհնության այդ գրից տեղեկանում ենք, որ սուրբ Աստվածածնի անունով մի վանք Աթանանց գյուղում ունեցել է «ոխվի արտ», այսինքն վանքին նվիրված վարելահող։ Սակայն տարիներ առաջ այդ վարելահողը խլվել է վանքից ու տրվել «անօրինաց»։ Այդ իսկ պատճառով «առաջին սպասաւորքն սուրբ եկեղեցոյս՝ նախնիքն մեր՝ դիր անիծից և բանադրանաց գրել էին այն անիրաւ մարդկանց»։ Անեծքի ու բանադրանքի այդ գիրը մնացած է եղել գյուղի վրա մինչև ռես Բաղշայիշի ժամանակ (թվարկվում են նաև Բաղշայիշի ժամանակակից «գեղի տանուտէրքը»), երբ «սոքա ամենեքեան միաբան վառեցան ի սէրն Քրիստոսի և ի սուրբ Աստուածածնին, և զայն արտն խաղ (իմա՝ հախ) ու մուլք տւփն Աստուածածնին. և զայն առաջին անիծիցն թուղթն պատառեցին և զանէծքն ի յաւրհնութիւն փոխեցին»։ Օրհնության գրի մեջ անեծքի սարսուռ ազդող խոսքեր են ուղղված բոլոր նրանց հասցեին, ովքեր երբևէ կհամարձակվեն այդ վարելահողը կրկին անգամ խլել եկեղեցուց։

ԺԵ. դարում ընդհանրապես և դարի վերջին տասնամյակներում մասնավորապես, մեծ ծավալ է ստանում աշխատավոր ժողովրդի գաղթն ու փախուստը հայրենի երկրից դուրս։

Ապարանից սուրբ Նշանի վանքում 1497—1507 թթ. շարադրված մի կոնդակում**, որը հասցեագրված է Կթանից գյուղի քահանաներին, այդ մասին գրված է. «Գիտացիք, որ անւրէնքն կու նեղացուցեն զքրիստոնայքս սուտ պատճառաւ, կու թողուն զտունն, զարտն ու զայգին և զայլ ապրանքն ու փախին»։

---

* Ներսես եպիսկոպոսի կոնդակում հիշատակվում են սուրբ Աստվածածին, Սալնապատի սուրբ Կարապետ, սուրբ Գրիգոր և սուրբ Խաչ անուններով սրբությունները։ Դժվար է որոշել գյուղը Աղթամարի սուրբ Խաչ վանքի համա՞ր է գնվել, թե՞ վերը հիշված վանքերից մեկ ուրիշի։

** Կոնդակի մերձավոր ժամանակը որոշվում է այնտեղ հիշատակված Ատոմ կաթողիկոսի անունով, որը աղբյուրներում հիշված է հենց 1497—1507 թվականներին։

*Նշևլով այս տխուր իրողությունը կոնդակի հեղինակները անիծում են բոլոր նրանց, ովքեր տեր են կանգնում գյուղից փախածների մլքին։ «Զինչ ի յայս դիրս և յԱւետարանս ափհնութիւն կայ,—գրված է այնտեղ,—ի վերայ այն մարդոյն, որ այլ անոր (փախչողի) մլքին տիրութիւն չէնէ...։ Ով որ ոչ լսէ և զայս առնէ՝ նայ Ջէ. (7) պատիճ պատուհասն ի վերայ Կայենի երեր՝ նայ առնու... սատէնս մարմնով անիծած և անդէն տանջի ի դառն դժոխքն ի սատանայէ, ամէն» (Մատենադարան, ձեռ. № 7757, էջ 1ա)։*

*Առաջին հայացքից դժվար է լինում ըմբռնել կոնդակի իմաստը։ Շատերը թողել են իրենց ողջ ունեցվածքը՝ տունը, արտն ու այգին, և փախել այլ աշխարհ։ Արդ, ինչո՞ւ են Ապարանից վանքի կրոնավորները արգելում համագյուղացիներին տեր կանգնել անտեր ու անժառանգ մնացած այդ մլքերին։ Մեզ թվում է, թե ուրիշներին արգելելով վանքը իրեն էր վերապահում այդ կալվածքների սեփականումն ու օգտագործումը, ելնելով հայ եկեղեցական կանոններով սրբագործված այն սկզբունքից, ըստ որի անժառանգ մնացածների գույքը պատկանում է եկեղեցուն։ «Ու այս է, զոր կարգեալ է Հայաստան եկեղեցիս, զի մեռելոյն ինչքն քահանային է»,— գրել է այդ մասին Մատթեոս Ջուղայեցին («Ի գլխոյն Ղուկասու հաւաքումն բանից», Մատենադարան, ձեռ, № 5232, էջ 76ա)։*

*Այսպիսով, պետք է ենթադրել, որ վանական որոշ հաստատություններ ձգտում էին ընդարձակել իրենց կալվածքները նաև իշխողների բռնություններից ու կամայականություններից այլ երկրներ գաղթող գյուղացիների հողն ու այգին սեփականելու ճանապարհով։*

*Վանական հաստատությունները, ինչպես և առանձին հոգևորականներ զբաղվում էին նաև վաշխառուական գործարքներով, տոկոսով փոխ էին տալիս կարիքավորներին և այլն**։

*Անշուշտ, պարտապանների հիմնական մասը հարկերի ծանրության տակ կքած գյուղացիությունն էր։ Եվ որոշ վանական հաստատություններ, ինչպես կարելի է եզրակացնել ԺԶ. դարից մեզ հասած մեծարժեք մի փաստաթղթից, փորձում էին ընդարձակել իրենց հողակտորները նաև ի հաշիվ պարտապան գյուղացիների։ Ծանոթանանք այդ փաստաթղթի կարևոր մասի հետ.*

*«Աստուած օրհնէ զԳանձակ գեղ, որ միաբան մի խորհուրդ եղեն և տուին զՈստակիսի գերեզմանաց արտն անչինչ յիշատակ հոգոյ իւրեանց և ննջեցելոց, եթէ մելիք, եթէ համբայ, եթէ մեծ, եթէ փոքր՝ ամենեքեան տուին։ ԻԵ. (25) ղուռուշ կայր ընդ գեղն ի վերայ արտի տիրոջն. մեք գեղով ողջ միաբան*

---

* *Ձեռքի տակ ունենք ԺԶ.՝ դարի առաջին տասնամյակներից երկու մուրհակ, որոնցում որպես փոխատուներ հանդես են գալիս կրոնավորներ։ Նկատի ունենալով, որ այդ կարգի միջնադարյան փաստաթղթերից հայտնի են միայն եզակի օրինակներ, ավելորդ չենք համարում սոսկ մեջ բերել այդ մուրհակները.*

*1. Գրված է, հավանաբար, Երզնկայում 1504 թվականին. «Ի թվականին Ջ. և ԾԳ. Ես Յոհան աբեղայս առի Ժ. (10) կարմիր փող ի Սարգիս վարդապետէն ի փոխ, և զգիրքս գրաւ գրի առ նայ, մինչև զփողերն տանք և զգիրքս առնունք։ Տէր Յովանէսին վկայութեամբ գրեցաւ գիրս հոկտեմբերի Է. (7)» (ձեռ. № 4834, էջ 58ա)։*

*2. Գրված է Ամիթում, 1536 թվականին.*

*«Ի թվին ՋՁԵ., մարտի ԻԳ. ես Մաղաքիա վարդապետս ի յԱմիթ ԻԶ. (26) սուլթանիա ֆլորի տուի ի Խարբերդու խոճա Շահրուզն, վկայութեամբ տէր Ներսէս աւագերեցուն, և խոճա Սահակին, և խոճա Սարխոշին, և տէր Եղիին, և աստուած ի վերայ ամենայնի վկա» (ձեռ. № 5353, էջ 1ա)։*

տփնք Թումայ սուրբ Առաքելոյն յիշատակ անջինջ և անհակառակ...» (Մատենադարան, ձեռ. № 4868, էջ 320բ)։

Վանքերից շատերը, ավելի ճիշտ նրանց մեծամասնությունը, հողագործությունից ու այգեգործությունից բացի, զբաղվել են նաև անասնապահությամբ, ինչպես և ունեցել են ջրաղացներ, ձիթհաններ, խանութներ ու եկամտաբեր այլ հաստատություններ։

Վանքերի տնտեսական գործունեության այս բնագավառների մասին ևս հիշատակարաններն ու նվիրաբերական արձանագրությունները կարևոր տվյալներ են պահպանել։

Այսպես, ԺԵ.—ԺԶ. դարի գրչությամբ հասել է մեզ Թումա եպիսկոպոսի դրությունը Դատվանում ինչ- որ վանք վերաշինելու և վանական քայքայված տնտեսությունը վերականգնելու մասին։ Աղճատված այդ դրությունը մեծ դըժվարությամբ հնարավոր է լինում վերծանել այսպես.

«Ես Թումայ եպիսկոպոս ///նք///ք/// տօյար (գուցե պետք է կարդալ «տաւար») մի չկէր Դատվան, տուն մի շէն չկէր. շինեց[ի] փադախ ու մարագ ու սրահ ու բակեր, պտ[հ]զուկա. (՞) գնեցի, Ճ. (100) գլուխ ոչխար ի դրուց բերի, գութան կապեցի Գ. (3), խոփ ու ձեւիչ Գ. (3), խարաւարի խոփ Զ. (6), Գ. (3) նոր բախ, կացին Բ. (2), լոզ Գ. (3), ուրագ /// ակիշ ու շամփուր Ե. (5), պղինձ Զ. (6), եզքն ԺԴ. (14), կովերն Ը. (8)» (Լենինգրադի Սալտիկով-Շչեդրինի անվան գրադարանի ձեռագր. բաժին, H. C. № 39 ձեռագիր, էջ ա)։

Թումա եպիսկոպոսը վերականգնում է Դատվանի վանքի տնտեսությունը ավերակների վրա, երբ այնտեղ նույնիսկ «տուն մի ի շէն չկէր»։ Չնայած դրան, հենց սկզբից եպիսկոպոսին հաջողվում է վանքի համար ձեռք բերել 100 գլուխ ոչխար, 8 կով, 14 եզ և անհրաժեշտ քանակությամբ գյուղատնտեսական գործիքներ։

Որ երկրագործության զուգընթաց վանական տնտեսությունները զբաղվում էին նաև անասնապահությամբ երևում է նաև այլ փաստաթղթից. 1498 թվականին ումն Դավիթ երեց Արտամետի Կոընկաց սուրբ Աստվածածնի վանքին նվիրում է իր ողջ ունեցվածքը՝ իր «կայ ու չկէն»։ Նվիրաբերությունը կատարվում է Արտամետ ու Զվըստան գյուղերի համայնքի բոլոր անդամների վկայությամբ։ Այդ կապակցությամբ շարադրված գրության մեջ, ի թիվս նվիրաբերված շարժական ու անշարժ այլ գույքերի, հիշատակված են նաև խոշոր ու մանր եղջերավոր անասուններ. «ոչխար՝ թէ մէկ է, թէ հարիւր է, զտաւար՝ թէ մէկ է, թէ Ծ. (50), թէ ջուլ է, թէ ջվալ է, թէ տուն է, թէ տեղ է, թէ դուռ է, թէ դուրս է, թէ խոփ է, թէ ձևիչ է, թէ բախ է, թէ փայտատ է, թէ զինչ և իցէ՝ Ռ. (1000)-էն մինչև ի մէկ, մէկէն մինչև ի հազար ոխք եմ արեր ի դուռն Կոընկեց սուրբ Աստուածածնին» (Մատենադարան, ձեռ. № 5537, էջ 298ա)։

Վանական տնտեսությունների մասին մեր գիտելիքները փոքր ինչ հարստանում են նաև այն հիշատակարանների տվյալներով, որոնցում, այս կամ այն կապակցությամբ, վանքի միաբաններից հետո, թվարկվում են նաև վանքի տնտեսն ու բոլոր գործավորները, իրենց զբաղմունքի բնագավառներով։ Ծանոթանանք այդ կարգի հիշատակարաններից երկուսի խնդրի լուսաբանմանը նպաստող հատվածների հետ։

Լիմ կղզում 1421 թվականին շարադրված մի հիշատակարանում «զամենայն գործաւորք դրան սուրբ եկեղեցւոյ»-ի շարքում հանդիպում ենք տնտեսին, մաճկալին և հովվին (ԺԵ. դարի հշտկ., Ա, էջ 254)։ Գրիգոր Լուսա-

վորչի գերեզման կոչվող վանքում հիշատակված են «տնտեսք և հովիւք և իշավարք և լծուարք և այլ աշխատաւորք» (Լ. Փիրղալեմյան, Նօտարք հայոց, էջ 91—92)։

Մատթեոս Ջուղայեցին հնարավորություն է տալիս պարզելու նաև «այլ աշխատաւորք»-ի ինչ լինելը. նա թվարկում է վանքերում հետևյալ պարտականությունների ունեցող գործավորներին՝ «ա. աղօնարար, բ. եփող ապրին, գ. թխող հացին, գ. փայտաբերն, ե. ջրբերն, զ. բաժանողն, է. հոգացողն զհաց և ղըմպելի և զվաճառ» (Մատենադարան, ձեռ. № 1402, էջ 162բ)։

Այս և լրացուցիչ այլ տվյալների հիման վրա կարելի է եզրակացնել, որ վանքերը իրենց կալվածքները մշակում էին, հիմնականում, իրենք, այդ նպատակով պահելով անհրաժեշտ քանակությամբ քաշող անասուններ (եզներ ու գոմեշներ)*, ինչպես նաև ունենալով գյուղատնտեսական անհրաժեշտ գործիքներ (գութան, խոփ, ձևիչ, բահ, կացին, փայտատ, մանգաղ, լոզ—կեռ դանակ և այլն)։

Վանական տնտեսությունների վրա աշխատում էին «վանից գործաւորները», որոնք, գերազանցապես, վարձկան մշակներ էին։ Սակայն այն վանքերը, որոնք ունեին սեփական գյուղեր, օգտագործում էին նաև այդ գյուղերի բնակիչների կոռային աշխատանքը։ Այս մասին ԺԵ. դարից ուղղակի վկայություններ չեն պահպանվել, բայց կան տվյալներ հետագա դարերից։ Այսպես, ԺԷ.. դարում, հին տրադիցիաների հիման վրա Տաթևում գրանցված «Հուլավարն, այսինքն վանքական դիւղօրէից հողոց տասանորդքն» արժեքավոր ցուցակում, Տաթև, Սվարանց, Աղանց, Տանձատափ և վանքապատկան մյուս գյուղերի բնակիչների վանքի նկատմամբ ունեցած պարտավորությունների շարքում ամեն անգամ նշվում է նաև հետևյալը. «Գլխավլին, բոլոր գեղովն» պարտավոր են ամեն տարի, առանց վարձատրության «մէկ օր վարեն, Բ. օր (կամ Գ. օր) հունձ անեն, և մէկ օր ալ ջաղ անեն ինչ բան որ լինի, և մէկ օր եղնարածքն վանքիս համար խոտ հարեն» (Մատենադարան, ձեռ № 6271, էջ 678)։

Վանական հաստատությունները հաճույքով երկնավոր տիրոջ առջև բարեխոսում էին նաև այն մարդկանց և նրանց մերձավորների հոգիների փրկության համար, որոնք կամովին ստանձնելով այս կամ այն պարտավորությունը, նպաստում էին վանական տնտեսություններում տարվող աշխատանքներին։ Այդպիսի մեկն էր ուստա Խալիֆը, որը ԺԵ. դարի անթվական մի արձանագրության տվյալներով. «յամէն տարի Բ. (2) գութան է տուէր սուրբ Վարդանայ» (Մատենադարան, ձեռ. № 1524, էջ 921բ)։

Վերը բերված փաստերը իրավունք են տալիս եզրակացնելու, որ վանքերի մեծագույն մասը, եթե ոչ բոլորը, իրենց պատկանող կալվածքների մի մասը մշակում էին սեփական միջոցներով։ Վանական տնտեսությունների գոյությունը արդյունավետ կլիներ, անշուշտ, այն դեպքում, երբ տվյալ վանական հաստատությունը վանքի շրջակայքում ունենար համեմատաբար ընդարձակ տարածությամբ վարելահողեր։ Իսկ երբ վանքը այլևայլ ճանապարհներով ձեռք էր բերած լինում տարբեր և միմյանցից հեռու գտնվող գյուղերում առանձին ար-

* 1457 թվականին Թովմա առաքեալի վանքի վանահայր Աբրահամը, «աշհամրեւրի փարէնհ ամբողջովին իր վանքի պեաքերի համար ծախսելու արտոնություն ստանալու նպատակով Աղթամարի վանքին տալիս է չորս եզ ու չորս գոմեշ (Ղ. Փիրղալեմյան, Նօտարք հայոց, էջ 186—187)։ Պետք է ենթադրել, ուրեմն, որ և՛ Աղթամարի, և՛ Թովմա առաքյալի վանքերի քաշող անասունները հաշվվում էին տասնյակներով։

սեր, խոտհունձներ, այգիներ ու այլ կալվածքներ. այդ դեպքում բնական է ենթադրել, որ դրանք մշակվում էին ոչ թե վանքի կողմից, վանքապատկան անասուններով ու գործիքներով, այլ տարբեր պայմաններով՝ վարձակալման էին հանձնվում այդ կալվածքի գտնված վայրի բնակիչներին։ Վարձակալության կարող էին տրվել նաև վանքապատկան մասսիվ ու ընդարձակ հողամասերը այնպես ինչպես, ըստ երևույթին, այդ կատարում էր Վարագա վանքը, եթե դատելու լինենք «Պատմութիւն բողա խաչին» մեղ արդեն ծանոթ գրվածքից։ Վերհիշենք. այնտեղ ասված էր, որ ոմն քուրդ ամիր «զայն տեղն ուրանօր ինքն բնակէր՝ շուրջանակի արտորէիւք» նվիրել է Վարագա վանքին, և որ «ոչ ոք կարէ իշխել հայիլ և կամ մերձենալ անդանօր անդաստանին, հերկել և կամ ցանել և կամ սերմանել առանց առաջնորդաց հրամանին, ոչ այլազգիք և ոչ քրիստոնեայք»։

Պետք է ենթադրել, ուրեմն, որ վանքի անդաստանը հերկել, ցանել կամ սերմանել ցանկացողներին այդ բանը թույլատրվում էր «առաջնորդաց հրամանով», բնականաբար, արդյունքի զգալի մասը վանքին տալու պայմանով։

Ցավոք, վանքապատկան կալվածքների մշակման պայմանների, գյուղացիների պարտավորությունների և հարակից այլ հարցերի լուսաբանման համար, առայժմ ուշադրության քիչ թե շատ արժանի տվյալներ չկան, ուստի վաղաժամ է խորանալ այդ բնագավառում։

Վանքերի տնտեսական գործունեության մասին մեր խոսքն ավարտելուց առաջ նշենք նաև, որ նրանցից շատերը ունեին ջրաղացներ, ձիթհանքեր ու եկամտաբեր այլ հաստատություններ։

Նոր Ջուղայի հայերեն ձեռագրերի հավաքածուի № 481 ավետարանում պահպանվել է 1442 թվականին գրանցված մի փաստաթուղթ այն մասին, որ ֆրա Պետրոս Սալիթաղեցին, ոմն Մխիթարի որդի Խտրշահին պատկանող հողում կառուցել է ջրաղաց. «զամենայն պիտոյքն, այսինքն՝ զքարն, զցիցն, զնաւն և զայլ ամենայն փայտերն, որ ի պէտք է շինութեանն, զամենայն մեք պատրաստեցինք»,—գրում է ֆրա Պետրոսը, պայմանով, որ ջրաղացի երկու բաժինը պատկանի վանքին իսկ մեկ բաժինը՝ Խտրշահին։

Արբերդի վանքի միաբանների շարքում 1470 թվականին հիշատակվում է նաև ջրաղացպան Մկրտիչը (հշտկ. № 386, էջ 303), ուստի ջրաղաց է ունեցել նաև այդ վանքը։

Խառաբաստի վանքը ԺԵ. դարի առաջին կեսին երկու ակ ջրաղաց ուներ Բոլորամարդ գյուղում և երկու ջրաղաց՝ Խառաբաստում (Ղ. Փիրզալեմյան, Նոտարք հայոց, էջ 31—32)։

Լալա-Միրանշահի 1481 թվականի հիշատակարանից տեղեկանում ենք, որ Աղթամարը և այլ եկեղեցիներ ունեցել են ձիթաղացներ։ Դրանցից գանձվող հարկը (խարճը) բաշխվել է եկեղեցիներին որպես ձիթագին (Մատենադարան, ձեռ. № 5333, էջ 334ա)։

Վանի սուրբ Վարդան եկեղեցու ձեռագրերից մեկում ԺԵ. դարում կատարված մի արձանագրության մեջ կարդում ենք, «Դարձեալ, յիշեցէք ի Քրիստոս զՂուլաղուզն, որ զձիթաղացն ոխվ էրետ սուրբ Վարդանայ, ու քանի չի շինած՝ յամէն տարի Ի. (20) ղիտր ձէթ տայ» (Մատենադարան, ձեռ. № 1524, էջ 37ա)։ Պարզ է, ուրեմն, որ ձիթաղաց պետք է ունենար նաև այդ եկեղեցին։

1648 թվականի նվիրաբերական մի արձանագրության մեջ խոսվում է այն մասին, որ Սարգիս դարբինը նվիրել է Լիմ կղզու սուրբ Գեորգ վանքին իր դար-

*բընի սալը (Մատենադարան, ձեռ. № 4690, էջ 646ա)։ Այս տվյալը իրավունք է տալիս եզրակացնելու, որ որոշ վանքերի կից եղել են նաև գործատներ, ավյալ դեպքում՝ դարբնոց։*

*Տարբեր դարերից տվյալներ ունենք նաև վանքերին պատկանող խանութների մասին։ Այսպես, օրինակ, 1565 թվականին վանեցի խոշոր վաճառական ու վաշխառու՝ Մելիք Ղուկիշանը Տիրամոր եկեղեցուն է նվիրել «դուքան մի յիւր դուքաներացն» (Մատենադարան, ձեռ. № 4515, էջ 292) և այլն, և այլն։*

*Այսպիսով, հայկական վանական հաստատությունները մեզ հետաքրքրող ժամանակաշրջանում զգալի տնտեսական ուժ էին ներկայացնում. նրանք ոչ միայն շարունակում էին պահել իրենց ձեռքում շարժական ու անշարժ մեծաքանակ կալվածքներ, այլև օգնության ձեռք էին կարկառում և իրենց շվաքի տակ պատսպարում երբեմնի հզոր հայ ֆեոդալական տների մասնատված և ուժասպառ շառավիղներին։ Ինքնուրույն պետականությունից զուրկ հայ ժողովրդի կյանքում նրանց, ինչպես տեսանք, վիճակված էր կատարել նաև աշխարհիկ որոշ ֆունկցիաներ։*

**Դ**

*Հայ եկեղեցին, ինչպես նախորդ դարերում, այնպես էլ մեզ հետաքրքրող ժամանակաշրջանում, շարունակում էր կիրառել դատական իր ֆունկցիան։ Ինչպես մահմեդական բարձրաստիճան հոգևորականությունը՝ մահմեդական հպատակների նկատմամբ, այնպես էլ հայ հոգևորականությունը՝ հայերի նկատմամբ իրավասու էր դատական վճիռներ կայացնելու քաղաքացիական դատական ատյաններին ենթակա ամեն կարգի հարցերում (ժառանգական վեճեր, ամուսնալուծություն և այլն)։ Նույնիսկ քրեական բնույթի փոքր զանցանքները, որոնք վերաբերելով հայ համայնքների ներքին կյանքին՝ չէին շոշափում պետության շահերը, քննարկվում ու լուծում էին ստանում հայ եկեղեցու դատական ատյաններում։*

*Հայ կաթողիկոսների կողմից եկեղեցական տուրքեր գանձելու նպատակով ամեն տարի թեմերն ուղարկվող նվիրակները, ինչպես նշված է Զաքարիա կաթողիկոսի 1462 թվականի մի կոնդակի մեջ, իրավունք էին ստանում «հրամանաւ և իշխանութեամբ ի մեր (կաթողիկոսի) անձի տեղ կապել և արձակել,* իրաւունս և դատաստանս առնել» *և այլն (էջ 174, տողատակ)։ Դատական վեճեր հարթում էին, սակայն, ոչ միայն կաթողիկոսական նվիրակները, այլև ամեն մի շրջանի կենտրոնական վանական հաստատության հեղինակավոր վարդապետները, որոնք վճիռներ էին կայացնում հայ եկեղեցական «կանոնգրքի», Մխիթար Գոշի «Դատաստանագրքի», ինչպես նաև սովորութային իրավունքի նորմերին համապատասխան։*

*1408—1411 թվականներին, Քաշբերունիքի բնակավայրերից մեկում վեճ է ծագում հանգուցյալ Կարապետ քահանայի որդիների միջև, հոր թողած ժառանգության, հատկապես ձեռագիր Ավետարանի ու Շարակնոցի բաժանման կապակցությամբ. «Եւ անգաւ աղաղակ և աղմունք ի մէջս իւրեանց վասն Աւետարանիս և Շարակնոցիս»,—գրված է այդ մասին շարադրված հիշատակարանում։ Վեճը հարթելու համար Մեծոփա վանքից գալիս են նշանավոր վարդապետներ Թոման և Հովհաննեսը։ Նրանք բաժանում են «զամենայն ինչ որ կայր՝ երեք բաժին»։ Վիճելի Ավետարանը վարդապետների որոշմամբ տրվում է Հայ-*

րապետ եղբորը, իսկ Շարակնոցը՝ Ղազարին (տե՛ս ԺԵ. դարի հշտկ., Ա, էջ 125)։

Հայ հոգևորականության դատական ֆունկցիան ավելի ցայտուն երևում է Գրիգոր Ծերենց Խլաթեցու (մհ. 1425 թ.) մի նամակից, որի բարձրաստիճան հասցեատիրոջ անունը, դժբախտաբար, չի պահպանվել։

Նամակագիր Գրիգոր Ծերենցը տեղեկացնում է, որ ոմն Ղազար* լուր է տվել իրեն, թե հասցեատերը դժգոհություն է հայտնել այն կապակցությամբ, որ «մարդիկք ի մեղանէ սորաին և ի ղատին անկանին և քէպին յիշեն», այսինքն՝ շատերը, անբավական մնալով Խտռաբաստի վանքի վարդապետների դատական որոշումներից, խորշում են վանական դատարաններից և դիմում մահմեդական դատական ատյաններին։

«Մեր օրէնքս այս է,— գրում է Խլաթեցին,— թէ հարսին զարդերքն ու բաժինքն է, թէ փեսային, թէ տղայ եղեալ է ի միջին՝ այն ամենայն տղային է, և թէ տղայ չէ եղեալ ի մէջ՝ ուրան է զայն՝ գնացելոյ հոգին հոգան։ Եւ թէ այլ մնայ՝ փեսային հօր տուածն յիւր տէրն դառնայ և աղջկայ հօր տուածն՝ յիւր տէրն դառնայ, ապա կերածն ու մաշածն չգայ յիշումն։ Մեր առաջնորդաց հրամանքն այս է, և որ ռավի չլինի՝ մասն ու բաժին ընդ անհաւատսն դիցէ, և դուք ողջ լերուք ի տէր տստուծով» (Մատենադարան, ձեռ. № 8076, էջ 74բ)։

Այս կարևոր նամակը ոչ միայն հաստատում է այլ աղբյուրներից ևս հայտնի իրողությունը՝ հայ հպատակների քաղաքացիական դատական գործերը հայ հոգևորականության կողմից տնօրինվելու մասին, այլև հնարավորություն է տալիս պարզելու, որ Մխիթար Գոշի «Դատաստանագիրքը» իրոք գործածության մեջ է եղել միջնադարյան Հայաստանում։ «Մեր առաջնորդաց հրամանքս այս է» խոսքերով, մեծ հավանականությամբ Գրիգոր Ծերենցը ակնարկում է Գոշի «Դատաստանագրքի» առաջին մասի ՃԻԱ. կանոնը՝ «Յաղագս դատաստանաց առնակնոջ մահուան և անդրէն դառնալոյ բաժնի նորա, որ կոչի պռոյգք»։ Այդ կանոնում Գոշն ուղղակի ասում է, որ այդ հարցում հայկական սովորույթը տարբերվում է մահմեդական ու հունական սովորույթից, այդ իսկ պատճառով պատշաճ է համարում կնոջ մահվան դեպքում, «թէ մնասցէ զաւակ՝ հոգասցի հոգւոյ նորա պէտք եւ մնացեալն զաւակին լիցին։ Իսկ եթէ զաւակ չիցէ մնացեալ... դարձցի անդրէն բաժինն ի ձեռս ծնողացն կամ եղբարցն նորա. եւ ըստ նորին պատուիրելոյ հոգասցին զհոգի գիտութեամբն առնն, եւ որ սակաւ մնայ նոցա լիցի... (Մխիթարայ Գօշի Դատաստանագիրք հայոց, Վաղարշապատ, 1880, էջ 289—290)։

Չի կարելի կասկածել, որ հայ եկեղեցին, ունենալով դատական ինքնավարություն, նշանակալից դեր էր կատարում ժողովրդի կողմից դարերի ընթացքում մշակված սովորույթների ու իրավական պատկերացումների պահպանման գործում, իսկ այս վերջին հանգամանքը, իր հերթին, կարևոր լծակներից մեկն էր հայ ժողովրդի ինքնագիտակցության պահպանման և օտար նվաճողներին դիմագրավելու գործում։

Մեծ էր վանական հաստատությունների դերը նաև ուսումնական գործում,

---

* Հավանաբար Մեծոփա վանքի միաբան Ղազար կրոնավորն է, որի մասին տվյալներ կան 1410—1435 թթ. Մեծոփա վանքում շարադրված մի քանի հիշատակարաններում (տե՛ս ԺԵ. դարի հշտկ., Ա, էջ 104, 451, 454)։ Եթե ճիշտ է այս ենթադրությունը, ապա կարելի է, թերևս, նամակը հասցեագրված համարել Թովմա Մեծոփեցուն։

ինչպես նաև անցյալում ստեղծված գրական ու պատմական հուշարձանների՝ ձեռագիր մատյանների պահպանման և ընդօրինակությունների միջոցով բազմացնելու բնագավառում։

Հրատարակվող հիշատակարանների գրչության վայրերի ցանկը ըստ ինքյան պարզաբանում է, թե ո՛ր շրջաններում և ի՛նչ կենտրոններում էին հիմնականում շարունակվում ձեռագրերի ընդօրինակման մեծ ծախսեր ու ջանքեր պահանջող աշխատանքները։ Նշենք միայն, որ ԺԵ. դարի երկրորդ հիսնամյակի անընդհատ արշավանքների ու պատերազմների և բնական արհավիրքների տարիներից մեզ հասած հարյուրավոր ձեռագրերը ինքնին վկայական են հայ ժողովրդի գրասիրության ու կուլտուրական գործունեության անկոտրում ծարավի։

Անհրաժեշտ տնտեսական ու քաղաքական պայմանների բացակայությամբ պետք է բացատրել այն հանգամանքը, որ ԺԵ. դարի երկրորդ հիսնամյակում Հայաստանում չկային Գլաձորի կամ Տաթևի համբավավոր համալսարանների նման ուսումնական ու կուլտուրական խոշոր կենտրոններ։ Սակայն Հայաստանի տարբեր շրջաններում մեզ հետաքրքրող ժամանակաշրջանում ևս գոյություն ունեին տարրական ու բարձրագույն տիպի ուսումնական հաստատություններ, որոնք զգալի դեր էին կատարում հայ եկեղեցու համար բանիմաց ու գրագետ վարդապետական կադրեր պատրաստելու գործում։

Ամենանշանավոր ուսումնական հաստատությունը այս տարիներին, անշուշտ, Դանիել վարդապետի* աշակերտ՝ Հովհաննես րաբունապետ Համշենցու գլխավորած համալսարանն էր՝ Սեպուհ լեռան Ավագ վանքում, ապա՝ նրա մոտակայքում գտնվող Կապոսի վանքում։

Այս համալսարանի մասին մեզ հայտնի հնագույն տեղեկությունը գտնում ենքՍտեփանոս գրչի կողմից 1463 թվականին Ավագ վանքում շարադրված հիշատակարանում, ուր գրված է. «...այլ և համարէն եղբարցս մերոց սրբազանից, որք հաւաքեալ կան յայսմ համալսարանիս՝ ի վանքս Աւաք, առ ոտս առատաշնորհ երջանիկ րաբունապետիս (Յովհաննիսի) և երկուս դասագլխացս՝ տէր Աբրահամիս և տէր Մարգարէիս»։ Հիշատակարանի շարունակության մեջ այս Աբրահամը կոչվում է անհաղթ փիլիսոփա և համարվում «սկիզբն և պատճառ դասատանս»։

Նույն գրիչը կարևոր տվյալներ է հաղորդում Ավագ վանքի համալսարանի մասին նաև հաջորդ՝ 1464 թվականին, Դիոնիսիոս Արիոպագացու աշխատությունների իր ընդօրինակած ժողովածուի հիշատակարանում։ Պարզվում է, որ Համշենցի րաբունապետի շուրջը «յայս լսարանիս՝ ի վանքս Աւագ» հավաքված են եղել «անձինք Լ. (30), արք պարկեշտք և գովելիք»։ Դրվատանքի ջերմ խոսքեր ուղղելով «քաջ րաբունի» Հովհաննեսի հասցեին, Ստեփանոսը չի մոռանում հիշատակել նաև նրա աջակից Աստվածատուր վարդապետ Ջերմացուն.

«Որ ջերմեռանդ սիրով վառի
Ի շինութիւն այս սուրբ ուխտիս»։

Չեն մոռացվում նաև գրչի աշակերտակիցները. հանվանե հիշատակվում են նրանցից շատերը (հշտկ. № 256, էջ 207—208)։

---

* Այս Դանիել վարդապետն եղել է Գրիգոր Տաթևացու աշակերտներից։

Որոշ չէ, թե մինչև ո՞ր թվականն է Հովհաննես Համշեցին դասավանդել Ավագ վանքում. գիտենք միայն, որ 1489 թվականին արդեն նրա գլխավորած ուսումնական հաստատությունը Ավագ վանքից փոխադրված է եղել Կապուտ կոչվող սուրբ Հակոբի վանքը։

Համալսարանի հռչակը տարածված էր Հայաստանի արևմտյան բոլոր նահանգներում և հայկական գաղթավայրերում։ Համշենցու մոտ ուսանում էին կաֆայեցիներ, տրապիզոնցիներ, տիվրիկցիներ, դարանաղցիներ, սեբաստացիներ, հաղպատցիներ և այլ վայրերից եկած ուսանողներ։ 1489 թվականին Տարոնի Գլակա վանքի սաներից ոմն Գրիգոր հայտնում է, որ «առի զհամբաւ Յովհաննէս քաջ րաբունապետին, որ է աշխարհաւ Համշենցի, ի թագաւորական ազգէ, եթէ նստեալ կայ ի գաւառն Եկեղեաց, ի դրունս սուրբ Յակոբին, և ունի աշակերտք բազում, և ուսուցանէ հանգոյն նախկին վարդապետացն»։ Տեղեկանալով այդ մասին Գրիգոր Տարոնացին, ինչպես ինքն է ասում, «յուղի անկեալ եկա և մտի ի համալսարանս նորա և նստա ի յունկնդրութիւն աստուածային իմաստութեան, զոր ատրըստաւրէ պատմէր հոգովն սրբով և տպաւորէր ի միտս աշակերտացն»։

Հովհաննես Համշենցին վախճանվեց 1497 թվականին, Կապուտ վանքում, մինչև իր կյանքի վերջին օրերը ղեկավարելով համբավավոր համալսարանը։

1463—1497 թվականների ընթացքում Եկեղյաց գավառի Ավագ և Կապուտ վանքերում ընդօրինակված ձեռագրերի հիշատակարաններում Հովհաննես Համշենցու և նրա գլխավորած համալսարանի մասին շատ է խոսվում։ Մի շարք հիշատակագիրներ Հովհաննեսին վերագրում են ազնվական ծագում, համարելով նրան «ի թագաւորական ազգէ» (օրինակ՝ Մատենադարան, ձեռ. № 55, էջ 161ա) կամ «պարոն-որդի» (հշտկ. № 256, էջ 207)։ Կարելի է ենթադրել, որ նա սերվել է հայ ֆեոդալական այն ընտանիքներից, որի ներկայացուցիչները ԺԵ. դարի առաջին կիսում իշխում էին Համշենում, որպես կիսանկախ տիրակալներ*։

Ի՞նչ գիտելիքներ էր հաղորդում իր ունկնդիրներին Հովհաննես Համշենցին, ստույգ չգիտենք։ Նրա աշակերտներից մեկը՝ Մաղաքիա Բերդակեցին, 1494 թվականին շարադրած չափածո հիշատակարանում, իր ուսուցչին մեծարում է այսպիսի խոսքերով.

«Սա լոյս ծագի մէջ աշխարհի,
Լուսաւորող սա համայնի՝
Հայոց տառապեալ ազգի,
Ուսուցանող սա միշտ լինի
Ի տուէ և ի գիշերի։
Զխրթնածածուկ բանս մատենի
Յայտնէ մանկանցս Սիրովնի,
Զբանս առնու սա ի մտի
Իբր կերակուր ի բերանի.
Ծասկէ ծամէ ի խորհրդի

* Այս ընտանիքից ցարդ հայտնի են հետևյալ իշխանները՝ Առաքել (հիշված 1406—1422 թթ.). Դավիթ (հիշված 1425—1440 թթ.) և Վարդ (հիշված 1440 թ.)։ Սրանց մասին տե՛ս «ԺԵ. դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ», մասն Ա, Առաջաբան, էջ XLVIII—L։

Կակղցէ զիմաստ բանի,
Լնու ի միտս լսողաց՝
Աշակերտացն որպէս տզի»

(Մատենադարան, ձեռ. № 620, էջ 298ա)։

Թե ինչպիսի՞ գրքերի խրթնածածուկ իմաստներն էին պարզաբանվում Հովհաննես Համշենցու կողմից, հնարավոր է լինում որոշել հենց նրա աշակերտների ընդօրինակած ձեռագրերով. դրանք են Գրիգոր Նյուսացու (Մատենադարան, ձեռ. № 620), Գրիգոր Նաղիանզացու (Մատենադարան, ձեռ. №№ 112, 115), Բարսեղ Կեսարացու (Մատենադարան, ձեռ. № 620), Դիոնիսիոս Արիսպագացու (Մատենադարան, ձեռ. №№ 114, 1309) աշխատությունների ժողովածուները, «Մեկնութիւն նուրբ գրեանց» ուշագրավ բանասիրական գործը (Մատենադարան, ձեռ. № 55) և այլ ձեռագրեր։

Որ աստվածաբանական-իմաստասիրական բովանդակության վերոհիշյալ աշխատություններն ընդօրինակվում էին Համշենցու սաների կողմից ոչ միայն բազմացման, այլև ուսուցողական նկատառումներով, այդ պարզ երևում է այդպիսի ձեռագրերից մեկի (Գրիգոր Նազիանզացու աշխատությունների ժողովածու) հիշատակարանից, որ շարադրված է Հովհաննես գրչի կողմից 1497 թվականին։ Այստեղ իր արդեն հանգուցյալ ուսուցչին գրիչն անվանում է «բացայայտող այսմ տառի», այսինքն՝ Գրիգոր Նաղիանզացու գրությունները մեկնաբանող։

Այսպիսով պարզվում է, որ Հովհաննես Համշենցու գլխավորած համալսարանը միջնադարյան բարձրագույն տիպի ուսումնական հաստատություն էր, և պատրաստում էր հայ եկեղեցու համար անհրաժեշտ աստվածարան վարդապետներ։

ԺԵ. դարի երկրորդ հիսնամյակի հիշատակարաններում տվյալներ են պահպանվել նաև ուսումնական այլ հաստատությունների և առանձին նշանավոր վարդապետների ու րաբունապետների մասին։

Այսպես, ԺԵ. դարի 50-ական թվականներում Թբիլիսիում աշխատել է Ստեփանոս անունով մի րաբունի՝ Կարապետ րաբունապետի աշակերտներից։ Վերջինիս մասին 1452 թվականին Թբիլիսիում շարադրված մի հիշատակարանում գրված է. «Նաև զգերապատիւ և զնրբահայեաց և զզարդարեալն իմաստութեամբ և զբարձրացեալն աստիճանաւ զլոյս հոգոյ հայր և զուսուցիչ սորա (Ստեփանոս րաբունու)՝ զԿարապետ րաբունապետ, որ բազում աշխատութեամբ ուսոյց զվարդապետական և զերաժշտական գիտութիւնս» (հշտկ. № 22, էջ 18)։

1462 թվականին Կտուց անապատում հիշվում է Թովմա Մեծոփեցու աշակերտներից Ստեփանոս վարդապետը, «որ է հոգևոր հայր մեր և խրատիչ ամենայն բարութեանց, որ և զաւգուտն քարոզեաց ի գիշերի և ցերեկի մեզ, և է փիլիսոփայ երիցական արհեստի և ծաղիկ ժամատեղեաց, և է գիտակ ամենայն հին և նոր կտակարանաց աստուածային գրոց գիտութեան, որ յար և նման է վարժապետին իւրոյ Թումայ վարդապետին» (հշտկ. № 225, էջ 182)։

1470 թվականից տեղեկություն ունենք Խարբերդի մոտակայքում գտնվող Սուր վանքում հիմնադրված դպրոցի մասին։ Այս դպրոցի ուսուցիչ Սիմեոն րաբունապետը, ինչպես ասված է մի հիշատակարանում, հաստատվել էր «յանապա[տ]ն, որ կոչի Սուր վանք, և [դպ]րոց կ[ար]գեալ բազում [ա]շ[ա]կե[ր]տաց՝ լու[սաւ]որելով ըզ[հ]եռա[ւ]որս և զմերձա[ւ]որսն» (հշտկ. № 380, էջ 297)։

*Դպրոց է եղել նաև Վայոց-ձորի Բոլորաբերդ անապատում։ 1475 թվականին այստեղ մի Ավետարան ընդօրինակած Ավադոէր գրիչը (հետագայում վարդապետ) հայտնում է, որ աշխատել է «առ ոտս երիցս երանեալ և քաջ հռետորի և բանիբուն վարդապետի և անյաղթ փիլիսոփայի՝ վարժապետիս իմոյ Սարգսի, զի որպէս զարեգակն փայլէ յաղգս Հայոց» (Հշտկ. № 474, էջ 375)։*

*Անշուշտ, դպրոցներ կային նաև այլ վանքերին կից և, բացի այդ, ամեն մի վարդապետ կամ գրչության արվեստի հմուտ վարպետ պահում էր մեկ-երկու աշակերտ, ուսուցանելով նրանց գործնական իր գիտելիքները՝ գրչությամ, մանրանկարչություն, մագաղաթ պատրաստելու կամ թուղթ կոկելու եղանակներ և այլն։*

*Այդպիսի բազմաթիվ վարդապետներից մեկը 1497 թվականին Արգելանի վանքում «բազում աշխատութեամբ ուսոյց զմեզ (իմա՝ Հովսեփ Աղթամարցի գրչին) զարուեստքս՝ գշինել մագաղատիս, և ղգրել սորին, այլ և զնկարել» («Հանդէս ամսօրեայ», 1940, էջ 210)։*

*Գրիչներից ու ծաղկողներից շատերը իրենց անպաճույճ ու սրտաբուխ հիշատակարաններում պարտք են համարել երախտագիտական խոսք ասել նաև իրենց ուսուցիչների մասին, որոնք «դառն և դժուար» այդ տարիներին իրենց նման, մեծ զրկանքներով ու ջանասիրությամբ ընդօրինակել են ձեռագրեր և գրչության արվեստի գաղտնիքներն են բացել իրենց աշակերտների առաջ։*

*Այսպիսով, կուլտուրական կյանքը Հայաստանում ԺԵ. դարի երկրորդ հիսնամյակում, չնայած քաղաքական ու տնտեսական անբարենպաստ պայմաններին՝ չէր մարել իսպառ։ Հայաստանի տարբեր շրջաններում, տնտեսապես ապահով այս կամ այն վանական հաստատության հովանու ներքո, դեռևս շարունակում էին ուսումնասիրել հայ հին գրականության հուշարձանները, ընդօրինակում ու բազմացնում էին հին ձեռագրեր և իրենց գիտելիքներն էին հաղորդում երիտասարդ սերնդին նախկին համբավավոր ուսուցիչների՝ Հովհան Որոտնեցու և Գրիգոր Տաթևացու նվազ գիտուն ու բանիմաց, սակայն շանասեր ու աշխատունակ հետնորդները։*

### *Ե*

*Հայ ժողովրդի ամենաստվար հասարակաշերտը՝ աշխատավոր գյուղացիությունը, մեզ հետաքրքրող ժամանակաշրջանում, կրելով օտար տիրապետողների կեղեքիչ լծի հիմնական ծանրությունը և հարստահարվելով սեփական տերերի կողմից, շարունակում էր արյուն-քրտինքով հերկել հայրենի հողը։ Բնականաբար մեզ համար հատուկ նշանակություն են ստանալու հիշատակարանների ու ձեռագիր մյուս աղբյուրների բոլոր այն տվյալները, որոնք, այս կամ այն չափով, նպաստելու են հայ աշխատավոր գյուղացու արտադրական կենցաղի, գյուղական համայնքի կազմակերպչական սկզբունքների, սոցիալական շերտավորման և հարակից հարցերի լուսաբանման գործին։*

*«Գյուղական համայնք» գիտական տերմինը միջնադարյան հայկական աղբյուրներում բնականաբար չի հանդիպում։ Այդ ինստիտուտի մասին խոսելիս ԺԴ.—ԺԵ. և ժամանակամերձ դարերի սկզբնաղբյուրները օգտագործում են «ժողովուրդ» տերմինը՝ «ժողովուրդ գեղիս» (Մատենադարան, ձեռ. № 7991, էջ 237բ), «ժողովուրդ Շամպայ» (Հ. Աբրահամյան, Կալվածագրեր, էջ 11), «Սալախանի ժողովուրդ» (Մատենադարան, ձեռ. № 4512, էջ 155ա) և այլն։*

Գյուղական համայնքի հետ առնչվող պաշտոնեության մասին ակնարկներ պարունակող սկզբնաղբյուրներում առաջին հերթին հիշատակվում են ձեռնավորներն ու տանուտերերը (ռայիսները)։ Այդ պաշտոնյաների գոյությունը անհրաժեշտ էր նկատվում բոլոր գյուղերում։ Մատթեոս Ջուղայեցին «անկարգ չէն» է համարում այն գյուղը, որ «ոչ ունի ձեռնաւոր և տանուտէր» (Մատենադարան, ձեռ. № 1402, էջ 83բ), իսկ նրա ուսուցիչ Գրիգոր Տաթևացին՝ որբ այն տունը, «որ չունի տանուտէր,... գեղ, որ չունի ձեռնաւոր» (Մատենադարան, ձեռ, № 1402, էջ 83բ)։

Արձանագրական ու մատենագրական մի շարք տվյալներից հայտնի է դառնում, որ ձեռնավորները տեղական ֆեոդալներից նշանակվող պաշտոնյաներ են եղել, որոնք հարկադրել են հարկահանման օբյեկտները, որոշել հարկի չափը, հսկել հարկահանման գործին*։

Ձեռնավորները նշանակվում էին գավառապետների, ամիրների կամ հարկային իմունիտետ վայելող ֆեոդալների կողմից՝ տվյալ շրջանի կամ գյուղի ազդեցիկ, ունևոր և փարթամ ընտանիքների ավագներից. Նրանք պետության կամ ֆեոդալի շահերն էին պաշտպանում գյուղերում։

Գյուղական համայնքի ավագը աղբյուրներում կոչվում է ռես կամ տանուտեր**։

Ռեսի պաշտոնը ընտրովի էր, և որոշ տվյալներից դատելով, ընտրությունը կատարվում էր տարին մեկ անգամ։

Մի ձեռագիր Ավետարանի գնման մասին 1590 թվականին գրանցված արձանագրության մեջ ասված է, որ «գիրս գրեցաւ էն տարիս, որ Ամիր-Բաբօն տանուտէր էր», իսկ 1606 թվականի մի հիշատակարանում՝ «գնեցաւ այգիս ըռէս Շաղաւաթի տարին»։

Այս տվյալներից, սակայն, սխալ կլիներ եզրակացնել, թե ամեն տարի ընտրվում էին նոր ռեսներ և ընտրությունը կատարվում էր այս կամ այն անձնավորության գործարար հատկությունների հաշվառմամբ միայն։ Ընդհակառակն, կան տվյալներ, որոնք հնարավորություն են տալիս եզրակացնելու, որ ռեսի պաշտոնը գրավում էին գյուղերի ամենափարթամ ու ազդեցիկ ընտանիքների անդամները և այն ժառանգական դառնալու տենդենց ուներ։

Այսպես, 1537 թվականի մի հիշատակարանում խոսք կա ոմն Կարապետ «փոքր տանուտէրի» մասին, որը «վեց ամ տանուտրութիւն արար գեղջս Վաղարշապատու, ի ԻԲ. (22) ամաց փոխեցաւ առ Քրիստոս» (Ս. Տեր-Ավետիսյանի ձեռագիր ցուցակում նկարագրված մի Ավետարանի հիշատակարանից)։

1471 թվականին Խժիշկ գյուղի տանուտեր է եղել ոմն «իմաստուն երիտասարդ պարոն Վաշօ (կամ Վաղօ), որդի պարոն Մկրտչի» (Հշտկ։ №, 408, էջ 324)։

---

* Մանրամասնությունները տես մեր «ԺԴ.—ԺԵ. դարերի հայկական գյուղական համայնքի մասին» հոդվածը, տպագրված «Պատմա-բանասիրական հանդեսի», 1958 թ. № 1-ում (էջ 110—133)։

** Տանուտեր տերմինը Նախարարական շրջանից մինչև ուշ միջնադար՝ բազմիցս փոխել է իր բովանդակությունը։ ԺԴ.—ԺԵ. և հետագա դարերում տանուտեր էին կոչվում ինչպես գյուղական համայնքի ընտրովի առաջնորդները, այնպես էլ գերդաստանների ավագ անդամները, որոնց ձեռքում էր կենտրոնացված տվյալ ընտանիքի տնտեսության ղեկավարությունը։ Գյուղերի և առանձին տների տանուտերերին միմյանց հետ չշփոթելու համար մեր շարադրանքում առաջինի նկատմամբ գործ ենք ածում ռես (ռայիս) տերմինը, որը մեզ հետաքրքրող ժամանակաշրջանի աղբյուրներում նույնպես շատ գործածական է։

1498 թվականին մեզ ծանոթ Բարսեղ գրչի Ասպիսնակ գյուղում շարադրած հիշատակարանում հիշված է «զնոր տանուտէրն զպարոն Ջաշուռն, որ տղայ-հասակ Ի. (20) ամաց ի տանուտրութիւն հաստատեցաւ և է ձեռնաւոր դեղիս»։

Այս տվյալները, կարծում ենք, բավարար են ցույց տալու համար, որ գյուղի ռեսների ընտրության ժամանակ մեծ նշանակություն էր տրվում թեկնածուի ընչեղությանն ու սոցիալական դիրքին, և այդ պաշտոնը գրավում էին հարուստ ու ազդեցիկ ընտանիքների ներկայացուցիչները նույնիսկ այն դեպքում, երբ նրանք շատ երիտասարդ (նոր միայն 16—20 տարեկան) լինելով՝ հազիվ թե ինքնուրույն կարողանային վարել գյուղական համայնքի ներքին, բարդ ու դժվարին, գործերը։

Մեծ էր ռեսների գործունեության շրջանակը։ Նրանց գլխավորությամբ էր կատարվում հողաբաժանությունը, առուների ու ջրանցքների անցկացումն ու մաքրումը*, հարևան գյուղական համայնքների միջև ծագած վեճերի հարթումը, հարկերի բաշխումը գյուղական համայնքի մեջ ընդգրկված տների վրա, հարկահանության վրա հսկողությունը և այլն, և այլն։

Օգտվելով իրենց դիրքից ու իշխանությունից գյուղերի ռեսներն ու ձեռնավորները հնարավորություն ունեին տարբեր ճանապարհներով շահվել գյուղացիների հաշվին։ Մատթեոս Ջուղայեցու հաղորդած ուշագրավ մի ավյալից կարելի է եզրակացնել, որ նրանք, հաճախ, գյուղացիների վրա էին բարդում պետությանը կամ կալվածատիրոջը տրվող հարկերի նաև այն մասը, որը պետք է վճարեին իրենց գերդաստանները։ Ջուղայեցին «ծածուկ գողերի» շարքն է դասում այդպիսիներին, որոնք «յաղքատս դրկեն և այնպէս երևեցուցանեն, թէ մեք աւելի տամք և յաղքատացն առեալ տան և զինչս իւրեանց պահեն» (Մատենադարան, ձեռ. № 2229, էջ 133ա։ Հմմ. Գր. Տաթևացու հետևյալ տողերի հետ. «Եւ որ առաջնորդ է գեղի և ի գեղջէն դրկէ՝ բոլոր գեղին լինի գող», Քարոզգիրք, ամառան հատոր, էջ 25)։

Այսպիսիներից էր ըստ երևույթին, Մութ գյուղի ռեսը, որը, հավանաբար հանդիպելով գյուղական համայնքի դիմադրությանը, վերացրեց «աղչկան յաղկ» և «շանիգադէ» հարկերը և պարտավորվեց մյուս գյուղացիների հետ մասնակցել ինչ-որ հարկի վճարմանը։ Պահպանվել է այդ մասին շարադրված համաձայնագիրը, որ հնագրական տվյալներից դատելով՝ ԺԵ. դարից է։ Այնտեղ գրված է. «Քրիստոս աստուած ալրհնէ զըռէս Ստեփանոսն և զիւր որդիքն, որ ողորմեցաւ գեղիս Մթայ, և եթող զաղչկան յաղկն, որ ի գեղստանին և զշանիգադէն (իմա՝ «շանակիսաթ»—ապօրինի պահանջմունք) և զմեր շարաֆի /// ըռէսն ի հետ գեղին տայ և զաւերանիքն ի վերայ գեղիս չի դնէ։ Քրիստոս աստուած զինքն ալրհնէ և զիւր որդիքն և զիւր եղբարքն, և զգեղի տանուտէրքն, որ կամակից եղան՝ զէս բադաղաթս ի գեղէս ի վեր կալին։ Աստուած ողորմի իւրեանց հոգւոյն և իւրեանց ծնաւղացն, ամէն։ Ով որ յիրար տայ կամ առնու կամ ի յասան ձգէ՝ նայ զանէծքն զհայենին առնու...» (Մատենադարան, ձեռ. № 4814, էջ 129ա)։

Գյուղական համայնքի պաշտոնեության մասին խոսելիս չպետք է անտեսել նաև գզրին։ Որ բոլոր գյուղերն ունեցել են իրենց գզիրները, այդ երևում է Աղթամարի Ստեփանոս կաթողիկոսի աթոռակալության տարիներին (1465—

* Վերը հիշատակված ռես Ամիր-Բարոն, օրինակ, իր տանուտիրության շրջանում, ինչպես հաղորդում է նրան ժամանակակից հիշատակագիրը՝ «վերի աղբիւրն հանեց և վարի առուն Սալթաղցուցէ ջոկեց»։

1489) Մամռտանից շրջանի գյուղերից մեկի բնակչությանը ինչ-որ վանական հաստատության կողմից ուղղված գրությունից։ Այստեղ գյուղական համայնքի պաշտոնեությունն ու բնակչության սոցիալական կազմը թվարկված է այսպես. «թէ ըռես է ու թէ տանուտէր, թէ գզիր է, թէ հարուստ է և թէ աղքատ» (Մատենադարան, ձեռ. № 9645, էջ 203)։

Գզիրը ռեսին ստորադրված պաշտոնյա էր. վերջինիս կարգադրություններն ու հրահանգները նա հաղորդում էր համայնքի անդամներին և, ըստ երևույթին, մասնակցություն ուներ նաև հարկերի ու տուրքերի կամ նրանց մի մասի հավաքման գործին։ Նրա պարտավորությունների մասին կարևոր վկայություն է պահպանված «Խազալ իմաստասիրի Տուասցւոյ ասացեալ վասն բանական հոգոյ գիտութեան» խորագրով միջնադարյան մի գրվածքում (Մատենադարան, ձեռ. № 1113, էջ 105ա—112բ)։ Այստեղ մարդու մարմինը նմանեցված է քաղաքի, իսկ նրա անդամները՝ ձեռք, ոտք և այլն՝ «գործաւորաց քաղաքի»։ «Որկրամոլութիւն նման է գզրի, որ ժողովէ յամենայնէ զպիտոյս և զհարկ քաղաքին» կարդում ենք այդ գրվածքում։ Ճիշտ է, խոսքն այստեղ քաղաքի ու նրա «գործաւորների» մասին է, բայց հազիվ թե քաղաքի ու գյուղի գզիրների պարտավորությունները մեծ չափով տարբեր լինեին միմյանցից։

Գյուղական համայնքների տնտեսական ու վարչական կյանքում մեծ դեր էին կատարում տանուտերերը՝ տնտեսապես ապահով, ունևոր և ազդեցիկ գերդաստանների ավագները։ Իրենց գերդաստանի ներսում նրանց խոսքը օրենք էր, գործը՝ անառարկելի։ Գրիգոր Տաթևացին Երգ երգոցի մեկնության մեջ գրում է. «...Այսպէս և տանուտէրք տանց իւրեանց և վերակացուք միաբանից, իշխանք երկրի և քահանայք ժողովրդոց» (Մատենադարան, ձեռ. № 1264, էջ 432ա), այսինքն՝ ինչպես իշխանները տեր են իրենց երկրի, վանքի առաջնորդները միաբանների, քահանաները իրենց հոգևոր հոտի նկատմամբ, այնպես էլ տանուտերերը իրենց տան անդամների նկատմամբ։ Տանուտերերի համաձայնությամբ ու կամքով էր օտարվում գյուղական համայնքին պատկանող այս կամ այն արտն ու արոտավայրը, ամեն պարագայում նրանք էին հանդես գալիս որպես կալվածքների վաճառքի կամ գնման մասին շարադրված փաստաթղթերի վավերացնողներ ու նման կարգի գործարքների վկաներ, նրանք էին, որ գյուղի շահերն էին պաշտպանում հողատիրոջ կամ պետական պաշտոնեության առաջ, մի խոսքով, ինչպես ասված է 1462 թվականի մի հիշատակարանի մեջ Մարմետի տանուտերերի մասին, նրանք էին, որ «վարեն և ուղղեն խաղաղութեամբ զգեաւղս և պահեն ի յաւել առ ու պահանջողաց զաղքատսն» (Հշտկ. № 225, էջ 183)։

Մարմետի նման խոշոր բնակավայրում, որ հաճախ կոչվում է գյուղաքաղաք, տանուտերերի քանակն անցնում էր 30-ից։ 1462 թվականի հիշատակարանում հանվանե թվարկվում են նրանք, մեծարվելով, «պարոն» տիտղոսով՝ «պարոն Սադաղէն Վարդանայ որդին, պարոն Էգկարշէն՝ Խաչատրու որդին, պարոն Դովլաթշէն՝ Մաղթումի որդին, պարոն Գուոչիբէկն՝ Թաթարի որդին, պարոն Սարգիսն՝ Բիազտի որդին, պարոն Մկրտիչն՝ Սազաթիլայ որդին», և 25 այլ տանուտեր «պարոններ» (Նույն տեղում)։

Հիշատակագիրը բաղձանք է հայտնում, որ այս տանուտերերի որդիները կմեծանան, «ի չափ հասակի հասնեն և զտունս հաւր իւրեանց և զգեաւղս ի շէն պահեն»։ Տեղեկություն ունենք այն մասին, որ հիշատակագրի բաղձանքը մասամբ իրագործվել է։ Վերը թվարկված տանուտեր պարոններից երկրորդի՝

էդկարշահի կամ էդգարի որդի Բախտիարը 1510 թվականին հիշատակվում է որպես «զՎանայ քաղաքի և երկրի մելիք»։ Սրան հաջողվում է Շահ-Իսմայիլից ստանալ հատուկ հրովարտակ և փրկել Վանի պաշարված բնակչությանը «կարմիրգլուխ» (ղզլբաշ) Բերամ-բեկի զորքերի կոտորածից ու գերությունից։ Այս դեպքը պատմող հիշատակարանի մեջ Ներքին-Մարմետի վերոհիշյալ տանուտերերի 1510 թվականին ապրող ժառանգները թվարկվում են այսպես՝ «զգեօղի տանուտրայքն՝ զմելիք Բախտիարն և զըռէս Սաղդաթիարն, զթամզաչի Մուսեխն, զՂասումն, զԱրապշէն, զՂօչասարն, զԽօշնագարն... զՍիրադան, զՔամալն, զՆաւասարղն, և զԳուլամիրն և զայլն ամենայն»։ Սրանք խոստանում են տարին 20 բեռ ձուկ տալ սուրբ Կարապետի վանքին (Մատենադարան, ձեռ. № 4869, էջ 669բ)։

Փոքր գյուղերում, բնականաբար, ընչեղ ու ազդեցիկ տանուտերերը մեծ թիվ չէին կազմում։ 1474 թվականի մի հիշատակարանում Մատղավանք գյուղի ազդեցիկ մարդիկ թվարկված են այսպես. «...Եւ աւրհնեսցէ զտանուտէր և զառաջնորդ գեղիս՝ զռէս Աւետշէն՝ իւր ծաղկեալ որդովքն, զպարոն Սօլթանշէն՝ իւր զաւակօքն, զՅոհանէսն՝ իւր որդովքն, զԴանաբէկն՝ իւր զաւակաւքն, և զայլ ամենայն ժողովուրդք գեղիս՝ զմեծ և զփոքր, զաղքատ և զհարուստ, զայր և զկին, զծեր և զտղայ» (Հշտկ. № 460, էջ 364)։

Նույն պատկերն ենք տեսնում նաև Մուղնի գյուղում 1491 թվականին։ Այստեղ շարադրված մի հիշատակարանի մեջ հանվանե նշված ենք գտնում միայն 4 տանուտերերի անուններ. «Եւ զտանուտէրքս գեղիս՝ զՇահաղիզ, զխաւճա Մովսէս, զՍատաղէն, զԾղտանբաշխն» (Մատենադարան, ձեռ. № 6293, էջ 461բ)։

Այս և նման բազմաթիվ հիշատակարաններում նշվում են միայն գյուղի ունևոր և ազդեցիկ, ուստի և համայնքի կյանքում նշանակալից դեր կատարած գերդաստանների տանուտերերի անունները։ Դժվար չէ սրանից եզրակացնել, որ գյուղական համայնքների մյուս գերդաստանների ավագները, որոնք նույնպիսի «տանուտէրեր» էին իրենց ընտանիքում, էական դեր չէին կատարում համայնքի ներքին կյանքում և գյուղական տանուտերերի անվանական թվարկման ժամանակ անտեսվում էին, մտնելով սոսկ «այլ ամենայն ժողովուրդք գեղիս», կամ «շինականք», կամ «հողագործք» հավաքական տերմինների տակ*։

Գյուղական ազդեցիկ տանուտերերին մյուս գերդաստանների ավագներից

---

* Զաքարիա կաթողիկոսի այլ առիթով հիշատակված կոնդակի մեջ, որն ուղղված է եկեղեցական թեմերից մեկի բոլոր բնակիչներին, ժողովրդի դասային կազմը բառահայտված է այսպես. «Եպիսկոպոսք, վարդապետք և քահանայք, ռայիսք, տանուտէրք, արուեստաւորք և հողագործք՝ մեծ և փոքր»։ Ինչպես տեսնում ենք, այստեղ էլ արհեստավորներն ու հողագործները նշված են տանուտերերից հետո, որպես նրանցից ստորադաս սոցիալական դասեր։ Որոշակի հետաքրքրություն է ներկայացնում նաև կոնդակի շարունակության մի հատվածը։ Զաքարիա կաթողիկոսը ինքնագոհությամբ տեղեկացնում է, որ Ջհանշահից ստանալով Էջմիածնի կաթողիկոսությունը, եկել է Էջմիածին և Արարատյան գավառում՝ մեծ կառուցումներ կատարել, որանից հետո՝ «զինչ պաա[ուա՛]կան եպիսկոպոսք և վարդապետք, ազատորդիք և երևելի տան[ու]տէրք՝ ամենեքեան ի յաթոռս ժողովեցան և մեծ սիրով ընկալան զմեզ և հնազանդեցան» (էջ 173—174, տողատակ)։

Էջմիածնում գումարված այս ժողովի մասնակիցների շարքում հիշատակված «երևելի տանուտէրք»-ը գյուղական ազդեցիկ ու հարուստ ընտանիքների ավագներն էին անշուշտ, որոնք միջանկյալ դիրք էին գրավում «ազատորդիների» ու «արուեստաւորների և հողագործների» միջև։

տարբերակելու համար, երբեմն, առաջինների նկատմամբ գործ է ածվում «գըլխաւոր տանուտէր» տերմինը։ Մելքիսեթ և Կարապետ վանեցիների վկայաբանության մեջ (նահատակվել են 1403 թ.), օրինակ, գտնում ենք այսպիսի տողեր. «Եւ կալեալ ութ հոգի՝ կրակեցին և զմինն ի գլխաւոր տանուտէրացն հարեալ խոցեցին ի գլուխն և ի կուշտն սրով» («Հայոց նոր վկաները», գիտ. հրտ., էջ 200)։

Չնայած սոցիալական ու տնտեսական հողի վրա գյուղական համայնքի ներսում առաջացած շերտավորման, որի մասին դեռևս առիթ կունենանք խոսելու, մեզ հետաքրքրող ժամանակաշրջանում համայնքի տնտեսական ու իրավական հիմքերը դեռևս բավարար չափով ամուր էին և համայնքը միասնական ուժերով կարողանում էր դիմագրավել հողաբաժանման ենթակա վարելահողերի բռնագրավման փորձերին, լինեին դրանք ֆեոդալ-հողատերերի, վանական հաստատությունների, թե գյուղական տանուտերերի կողմից։ Գյուղական համայնքը հանդես էր գալիս, որպես տվյալ գյուղի հողային ֆոնդի տնօրինող։ Համայնքի իրավասության տակ գտնվող հողային ֆոնդի մեջ մտնող ամեն մի հողակտոր դիտվում էր որպես համայնքային հողի անկապտելի մաս, անկախ այն հանգամանքից, թե տվյալ դեպքում ում ձեռքումն էր գտնվում նրա օգտագործման իրավունքը։

Որևէ հողամասի օգտագործման իրավունքի օտարման ժամանակ, ամեն պարագայում, պահանջվում էր գյուղական համայնքի միասնական կամքն ու համաձայնությունը։

Բերենք մի բնորոշ փաստ. 1445 թվականին (կամ մի քանի տասնյակ տարի դրանից հետո) կազմված նվիրաբերական մի արձանագրության մեջ ասված է. «Քրիստոս աստուած պահէ ղքահանայս և զտանուտէր և ղռայիս գեղջիս Աղաւ՝ զմեծ և զփոքր առհասարակ, որք կամեցան և զսուրբ Ովաննէսն շինեցին վանք, որ ի վաղուց ժամանակէ հանգել էր»։ Աղու գյուղի համայնքը, հանդես գալով, միասնաբար, տնտեսական իր միջոցներով վերաշինում է սուրբ Հովհաննեսի վանքը և իր հողային ֆոնդից վանքին «լուսագին» է տալիս մի արտ (Գ. Սըրվանձտյան, Թորոս աղբար, Բ, Կ. Պոլիս, 1885, էջ 306—307)։

ԺԶ. դարի անթվական նվիրաբերական մի փաստաթղթի մեջ նույնպիսի տվյալ կա Ուշտոմիքի Գանձակ գյուղի մասին. «Աստուած օրհնէ զԳանձակ գեղ,— ասված է այնտեղ,— որ միաբան մի խորհուրդ եղեն և տուին զՌստակիսի գերեզմանաց արտն անջինջ յիշատակ հոգոյ իւրեանց և ննջեցելոց» (Մատենադարան, ձեռ. № 4868, էջ 321բ)։

Այլ կապակցությամբ տեսանք, որ Զաքարիա կաթողիկոսի կենդանության օրոք (մհ. 1464 թ.), Աթանանց գյուղի համայնքը ստիպված է եղել իր վրա դրված անեծքի թուղթը օրհնանքի վերածելու համար սուրբ Աստվածածնի վանքին նվիրաբերել հողային իր ֆոնդից մի արտ։ Այս կապակցությամբ շարադրված արձանագրության մեջ թվարկված են գյուղի ռես Բաղշայիշը և 13 «աստուածասէր տանուտէրքը» (Սադաղա, Մելիք, Կարապետ, Թումա երեց, Թումա քահանա, Ավետիս, Հովսեփ, Ներսես, Սարգիս, Հովհաննես, Մկրտիչ, մի այլ Հովհաննես, Ջանիբեկ և «այլ միաբան գեղի տանուտէրքս»), որոնք «ամենեքեան փառեցան ի սէրն Քրիստոսի և ի սուրբ Աստուածածինն, և զայն արտն խաղ ու մուլք տըւին Աստուածածնին» (Մատենադարան, ձեռ. № 5512, էջ 1ա)։

Կարելի է մեջ բերել այս կարգի տասնյակ այլ փաստաթղթեր, որոնք բո-

լորն էլ միաբերան վկայում են այն մասին, որ գյուղական համայնքի անօրինության տակ գտնվող հողային ֆոնդից որևէ արտ օտարելու կամ նվիրաբերելու համար պահանջվում էր տվյալ գյուղական համայնքի բոլոր տանուտերերի համաձայնությունը։

Գյուղական համայնքը հաճախ հանդես է գալիս նաև որպես շարժական գույքի կոլեկտիվ սեփականատեր։

1469 թվականին Խիզանի շրջանի Սուր գյուղի տանուտերերից մեկը մի Ավետարան է նվիրում իր հայրենի գյուղին և պատվիրում, որ «Մի ոք իշխեսցէ զսա իւրն սեփականել՝ քահանայ կամ տանուտէր, այլ գ[ե]աւղն ամէնքն խնամ տանեն ի վերա և պահեն, զի Աւետարանս դեղին եմ տուեր» (Հշտկ. № 375, էջ 293, հմմ. նաև Մատենադարան, ձեռ. № 6348, Հովհ. ավետարանչի նկարի վերին մասում գրված հիշատակագրությունը)։

Այս տվյալները, սակայն, բնավ չեն խոսում այն մասին, որ որևէ գյուղի սահմանների մեջ գտնվող բոլոր հողերը, անխտիր, գտնվում էին գյուղական համայնքի իրավասության ներքո։ Ընդհակառակը, կան տվյալներ, որոնք հնարավորություն են տալիս եզրակացնելու, թե գյուղական հողային տարածությունները ստորաբաժանված էին արդեն մի շարք ենթախմբերի (համայնքի տնօրինության տակ գտնվող վարելահողեր և արոտավայրեր, մասնավոր սեփականություն դարձած հողեր, գյուղատերերի կողմից սեփականացված հողեր, վանական հաստատությունների կողմից օգտագործվող կամ նրանց սեփականությունը դարձած հողեր և անմշակ ու խոպան հողային տարածություններ)։

Բնականաբար, ամենածավալուն խմբի մեջ մտնում էին այն վարելահողերն ու արոտավայրերը, որոնք գյուղական համայնքին պատկանող հողային հիմնական ֆոնդը լինելով, պարբերաբար, մեկ կամ մի քանի տարին մեկ անգամ (նայած տվյալ շրջանում գոյություն ունեցող սովորույթին) բաժանվում էին գյուղական համայնքի լիիրավ ընտանիքների միջև՝ ըստ շնչաքանակի։

Համայնքային հողերի պարբերաբար կրկնվող հողաբաժանումների մասին Հայաստանի տարբեր շրջաններից ունենք բազմաթիվ վկայություններ՝ ԺԹ. դարի վերաբերյալ։ Որ այդպիսի հողաբաժանումներ եղել են նաև մեզ հետաքրքրող ժամանակաշրջանում, այդ մասին կարելի է դատել ոչ միայն հետագա դարերի տվյալների քննության ու վերլուծության ճանապարհով, այլև հենվելով ԺԴ.—ԺԶ. դարերի աղբյուրներում պատահականորեն գրանցված մի-երկու ոչ ուղղակի վկայությունների վրա։

Ծանոթանանք դրանց։ ԺԴ. դարի նշանավոր իմաստասեր Հովհաննես Որոտնեցին (մհ. 1386 թ.), իր «Վերլուծութիւն Ստորոգութեանց Արիստոտէլի» աշխատության մեջ, «Բաժանական հասարակութիւն» հասկացությունը բացահայտելու համար օրինակ է բերում նաև գյուղերի վարելահողերը («անդաստան գեղից»), դրանով իսկ հավաստելով, որ գյուղական համայնքի վարելահողերը ենթակա են եղել բաժանումների (տե՛ս Յովհան Որոտնեցի, Վերլուծութիւն Ստորոգութեանցն Արիստոտէլի, Երևան, 1956, էջ 6)։

ԺԶ. դարի մի փաստաթղթի տվյալներով, Ուշտունիքի Բեսավենք գյուղի տանուտերերը միաբան պարտավորվում են սուրբ Գեորգի վանքին ամեն տարի տալ «ամէն բաժին կես կապիճ ցորեն սերմ» (Մատենադարան, ձեռ. № 9223, ԺԷ., էջ 1բ)։ Մեծ հավանականությամբ, այստեղ, «բաժին» տերմինի տակ պետք է հասկանալ այն հողաբաժինները, որոնք համայնքի կողմից տված են եղել

*օգտագործման հավասար անձերից բաղկացած բազմանդամ ընտանիքների և կամ սակավաշունչ մի քանի ընտանիքներից կազմված ժամանակավոր խմբերի (հողաբաժանման համփա-չարեքային սկզբունքով)։ Որ վերոհիշյալ պարտավորությունը ստանձնած «բաժինների» տերերը հավասար քանակությամբ հող են ունեցել, այդ երևում է այն բանից, որ նրանցից յուրաքանչյուրը պարտավորվում է վանքին տալ հավասար քանակությամբ (կես կապիճ) ցորեն։ Ըստ ինքյան հասկանալի է, որ պարբերաբար կրկնվող հողաբաժանումների դեպքում միայն՝ գյուղական ընտանիքները կարող էին ըստ շնչաքանակի հավասար չափով հող ունենալ։*

*Կարծում ենք, որ սխալ գործած չենք լինի, եթե ԺԹ. դարում Հայաստանի բազմաթիվ շրջաններում կիրառվող համփա-չարեքային հողաբաժանության ձևը համարենք հատուկ նաև մեզ հետաքրքրող ժամանակաշրջանին։ Թվում է, թե դրա համար ունենք նաև բավարար կռվան։ Մեզ արդեն, այլ կապակցությամբ, ծանոթ է Ուշտունիքի Գանձակ գյուղում շարադրված նվիրաբերական արձանագրությունը, որի կարևոր մասում ասված է. «Աստուած օրհնէ զԳանձակ գեղ, որ միաբան մի խորհուրդ եղեն և տուին զՈստակիսի գերեզմանաց արտն անչինչ յիշատակ հոգոյ իւրեանց և ննջեցելոց, եթէ մելիք, եթէ համբայ, եթէ մեծ, եթէ փոքր՝ ամենեքեան տուին» (Մատենադարան, ձեռ. № 4868, էջ 321բ)։*

*Դժվար չէ համոզվել, որ այստեղ գործածված «համբայ» տերմինը, ըստ իմաստի համապատասխանում է նման կարգի նվիրաբերական ակտերի մեջ բազմիցս գործածված «տանուտէր» տերմինին։ Եվ հենց այն հանգամանքը, որ «տանուտէր»-ը հնարավոր են համարել փոխարինել «համբայ»-ով, ըստ ինքյան ենթադրել է տալիս համփա-չարեքային հողաբաժանման սկզբունքի տարածված լինելը նաև մեզ հետաքրքրող ժամանակաշրջանում։ Հողաբաժանման այդ ձևի կիրառման ժամանակ բազմամարդ գերդաստանները, բավարարելով ամբողջական հողաբաժին ստանալու համար անհրաժեշտ շնչաքանակի նորման (16 հոգի), կամ գերազանցելով այն՝ ստանում էին մեկ լրիվ, երբեմն մի քանի (համապատասխան գերդաստանի շնչաքանակի) հողաբաժիններ (համփաներ)։*

*Գյուղական համայնքի հողային ֆոնդից ստանալով մեկ կամ մի քանի ամբողջական բաժին վարելահողեր, ունենալով անհրաժեշտ քանակությամբ քաշող անասուններ ու գյուղատնտեսական գործիքներ, ինչպես նաև ապահովված լինելով աշխատավոր ձեռքերով, տանուտերերի կամ համփաների գերդաստանները ինչպես արդեն ասացինք, գյուղերում մեծ ազդեցություն ու կշիռ ունեին և, ինչպես կտեսնենք ստորև, տնտեսապես կախման վիճակի մեջ էին պահում չքավոր համագյուղացիներին։ Ուստի հասկանալի է, թե ինչու հայ գյուղացու խոսակցական լեզվում «համփա» բառը պետք է ստանար նաև «ունևոր դասին պատկանող անձ» նշանակությունը (Ս. Մալխասյանց, Հայերեն բացատրական բառարան, III, էջ 35, նաև* Материалы для изучения эко омического быта гос. крестьян Закавказского края, т. I, вып. I, Тифлис, 1885, *էջ 20—21)։*

*Ձեռագրերի հիշատակարաններում բազմիցս հանդիպում ենք այդպիսի տանուտերերի կամ համփաների, որոնք տնտեսապես ապահով լինելով, հնարավորություն էին ունենում հանդես գալու որպես մեծագին ձեռագրերի պատվիրատուներ ու գնորդներ։ Հիշատակարաններից շատերի մեջ թվարկված են այդ տանուտերերի բազմաքանակ «արեան մերձաւորները»։ Մեծ մասամբ հնա-*

րավորություն չի լինում պարզելու, թե նույն հարկի տա՞կ են ապրել, արդյոք, արյունակից այդ ազգականները, թե՞ ղատ-ղատ ընտանիքներով. սակայն որոշ դեպքերում հիշատակարաններն ընձեռում են այդպիսի հնարավորություն։

Այսպես, օրինակ, 1462 թվականին, որպես Աղթամարում ընդօրինակված մի Ավետարանի ստացողներ, հիշվում են Գիշուկ և Շամշա ամուսինների 6 արու զավակները՝ Սարգիս, Խաչատուր, տեր Ավագ, Աստվածատուր, Հովհաննես։ Այնուհետև թվարկվում են այդ եղբայրների կանայք, որդիներն ու թոռները, ընդամենը 66 անուն (Հշտկ. № 226, էջ 185)։ Կարծում ենք. որ բազմասերունդ այդ եղբայրները միասնաբար մի ձեռագիր կորող էին ստանալ այն դեպքում միայն, եթե կազմեին մի մեծ գերդաստան, ապրեին մի հարկի տակ։

Հրատարակվող հիշատակարաններից շատերի մեջ տվյալներ կան ազգակցական նույն սկզբունքներով կազմված բազմանդամ ընտանիքների մասին, որոնք իրենց կազմում ունենում էին հաճախ ընտանիքի 16, 17, 18 և ավելի անդամներ։

Բազմանդամ ու մեծ գերդաստանների գոյությունը մեզ հետաքրքրող ժամանակաշրջանում հավաստվում է նաև այլ աղբյուրներով։ Թովմա Մեծոփեցին, օրինակ, հաղորդում է, որ Շահռուխի 1430 թվականի արշավանքի ժամանակ Քաջբերունյանց գավառի Մաչառուաց դյուղից՝ «ի միոջէ տանէ» գերվեցին 10 հոգի (Պատմ. Լանկ-Թամուրի, էջ 92)։ Պետք է ենթադրել, անշուշտ, որ 10 հոգի գերի տված ընտանիքի անդամների թիվը, առնվազն, կրկնակի անգամ մեծ էր։ Շատ ավելի ուշագրավ է բազմանդամ գերդաստանների մասին Սիմեոն Լեհացու «Ուղեգրության» մեջ բերված տվյալը, որը սակայն վերաբերում է ԺԷ. դարի սկզբին և միայն Խարբերդի ու Սեբաստիայի շրջաններին։ Խարբերդի մասին լեհահայ հեղինակը զարմանքով արձանագրում է հետևյալը. «Ու անդ եւս մեծամեծ տներ էին, որպէս Սեւրստու։ Անդ տեսաք մէկ տունն քառասուն օրոցք. և ամէնքն հօր հնազանդ. և թէ հայրն մեռանէր՝ մեծ եղբօրն հնազանդէին. և այսպէս մեծ սէր և միաբանութիւն մեծ տեսաք երկիրն այն, զոր այլ տեղ երկու եղբարք կամ երկու քոյրք ոչ կարեն ի միասին բնակել ի միում տան» («Հանդէս ամսօրեայ», 1934, էջ 157—158)։

Գյուղական համայնքի բոլոր անդամներին պատկանող ու պարբերաբար հողաբաժանման ենթակա հողային ֆոնդից զատ, գյուղերում կային նաև այս կամ այն ընտանիքի կողմից սեփականացված կամ սեփականություն դառնալու ընթացքի մեջ մտած հողակտորներ։

Գրիգոր Տաթևացին իր Քարոզներից մեկում ունի այսպիսի ուշագրավ արտահայտություն. «զանդաստանս ինչ յորժամ ի բազում ամս կալնու ոք՝ հայրենիք լինի նմա» (Քարոզգիրք, ձմռան հատոր, էջ 593)։

Այս ուշագրավ վկայություն է. համայնքի ազդեցիկ ու ունևոր տանուտերերը, օգտագործելով իրե՛նց կշիռն ու հեղինակությունը, առանց մեծ արգելքների ի վիճակի էին իրենց գերդաստանների կողմից մշակվող այս կամ այն արտը նոր հողաբաժանումների ժամանակ կրկին ու կրկին պահել իրենց ձեռքում և, ի վերջո, «պարսպով և նշանիւ սահման դնելով»,— ինչպես ասում է Գրիգոր Տաթևացին (Գիրք Հարցմանց, Կ. Պոլիս, 1729, էջ 298),— հանել գյուղական համայնքի հողաբաժանման ենթակա հողային ֆոնդից։

Պետք է ենթադրել, որ մեզ հետաքրքրող ժամանակաշրջանում այս ճանապարհով գյուղական համայնքի հողային ֆոնդի որոշ մասն արդեն, ամրացված

լինելով այս կամ այն գերդաստանին, «հայրենիք» դառնալու ընթացքի մեջ էր մտել։

1470 թվականին Աղթամարում շարադրված նվիրաբերական մի արձանագրության մեջ թվարկված են Արբերդ գյուղի արտերից մի քանիսի անունները. դրանք են՝ Ծիտկանց արտ, Ներկարարենց արտ, Աշըղի արտ (Մատենադարան, ձեռ. № 8928, էջ 289ա—289բ)։ ԺՆ.—ԺԶ. դարի անթվական մի փաստաթղթի համաձայն Աթանանց գյուղի տանուտերերի կամքով Վարդպատրիկի վանքին նվիրաբերում են վեց արտ՝ «զխաչի արտն, ու զծուռ արտն, ու զուռուտն, ու Շապխոնց քռէն, ու Ջաւգերոնց արտն, ու Ջաւգերոնց Թումի արտն» (Մատենադարան, ձեռ. № 6324, էջ 305ա)։

1567 թվականին շարադրված մի հիշատակարանում կա տվյալ այն մասին, որ ոմն տեր Ներսես, Բաղեշից ոչ հեռու գտնվող Մարգատ գյուղի «պղնձագործ Մախսուտի արտերն, զՄահտեսի Մուրատի արտն», ինչպես նաև երկու ձեռագիր ու մի արծաթի սկիհ է նվիրում սուրբ Աստվածածնի վանքին (Գ. Սրվանձտյան, Թորոս աղբար, Բ, էջ 257)։

Բերված փաստերն ուշագրավ են այն տեսակետից, որ նվիրաբերվող արտերի մեծագույն մասը կոչվում է այս կամ այն անձնավորության կամ գերդաստանի անուն-ազգանունով (Ծիտկանց, Շապխոնց, Ջավգերոնց, պղնձագործ Մախսուտի, մահտեսի Մուրատի և այլն)։ Ակնհայտ է, որ վերոհիշյալ արտերը բոլորի կողմից ճանաչված իրենց անունները կարող էին ստանալ այն դեպքում միայն, երբ տվյալ գերդաստանը կամ տանուտերը տվյալ արտը մշակած լիներ «բաղում ամս»։

Համայնքապատկան հողերի մի մասի օգտագործման իրավունքի սեփականման պրոցեսը Հայաստանում սկսել էր դարեր առաջ, ուստի համայնքի մեջ ընդգրկված փարթամ գերդաստաններից շատերը մեզ հետաքրքրող ժամանակաշրջանում տիրում էին զգալի քանակությամբ այգիների, վարելահողերի և այլ կալվածքների։

Դրանց տնօրինման գործին համայնքը իրավասու չէր միջամտելու և յուրաքանչյուր «հայրենատեր» գերդաստան կարող էր ցանկացած ձևով տնօրինել (նվիրաբերել, վաճառել, օտարել) իրեն պատկանող վարելահողը կամ խոտհարքը։ Մերձավոր ազգականների համաձայնությունը, սակայն, այդ դեպքում պարտադիր էր։ Նույնիսկ այն դեպքում, երբ գերդաստանը բաժանվել էր առանձին ընտանիքների, նախկինում ողջ գերդաստանին պատկանող վաճառված կամ այլ ճանապարհով օտարված այս կամ այն կալվածքը ենթակա էր հետ գնման, եթե ազգականներից որևէ մեկը համաձայն չէր օտարման այդ ակտին։ Գրիգոր Տաթևացին այս կապակցությամբ գրում է. «Եւ որ կամի զհայրենիս աղքատին յետ գնել՝ պիտոյ է... նախ, որ լինի ազգական նմա, զի օտարըն ոչ կարէ գնել» («Քարոզգիրք», ձմեռան հատոր, էջ 86)։

Ազգականների հետագա միջամտությունից վանական որևէ հաստատության նվիրաբերված կալվածքները զերծ պահելու մտադրությամբ, նվիրաբերական արձանագրությունների մեջ անհրաժեշտ էին համարում հատուկ շեշտել, որ ազգականներից և ոչ մեկը իրավունք չունի երբևէ վեճ բացելու տվյալ նվիրաբերության առթիվ. համարձակվողների հասցեին ուղղվում էին անեծքի սարսուռ ազդող խոսքեր։ Գիտենք արդեն, որ 1489 թվականին ոմն Դավիթ երեց՝ Արտամետի Կոնկեց սուրբ Աստվածածնի վանքին նվիրաբերել էր իր ողջ ունեցվածքը։ Այդ մասին շարադրված հիշատակարանի վերջում Դավիթ երեցը

գրանցել է այսպիսի տողեր. «Ով որ հակառակէ յետ իմ անցման, կամ դաւէ անէ, կամ դալապ անէ մազի մի չափ, թէ այդ է, թէ տլբօր զարմ է, թէ հօրեղբօր զարմ է՝ դաւէ և տալապ անէ, եկեղեցոյ փարվիանգէն հանէ ե ցրւէ, նա զանէծքն օծին և զԿայենին, զՅուդային և զՆեռան առցէ, ամէն» (Մատենադարան, ձեռ. № 5537, էջ 298ա)։

«Հայրենիք» դարձած կալվածքների օտարման մասին պահված արձանագրությունները զգալի թիվ են կազմում. դրանցից մի քանիսի հետ այլ կապակցությամբ արդեն ծանոթացել ենք, ծանոթանանք ևս մի-երկու փաստերի։

1474՝ թվականին ոմն տեր Հովհաննես իր «մայրենի» (այսինքն՝ մորից ժառանգություն ստացած) այգին նվիրաբերում է Արարուց սուրբ Նախավկայի վանքին, հատուկ շեշտելով, որ այդ նվիրաբերությունը անդարձ է և «ոչ ում դաւէ չի լինի, ոչ եղբաւր, ոչ եղբաւրորդոյ, ոչ ազգի և ոչ աւտարի, ոչ որդոյ և ոչ թոռան» (Պետ. Մատենադարան, ձեռ. № 9093, էջ 435բ)։

1465—1489 թվականներին ոմն Ստեփանոս Հեքեմըսի որդի, Հայոց ձորի Կեմ գյուղի տանուտերերի կամքով, Պոտուկի վանքին է նվիրում իր «հերենական դնած մուլքն՝ զՓոս արտն»։ Նվիրաբերության պայմանն այն է, որ «զինչ երէց որ եկեղեցոյն ծառայութիւն առնէ՝ զէն արտի բերքն այն ուտէ, և ի տարին հինգ անդամ զՀէրենըսենց դերեզմաներն օրհնէ» (Ղ. Փիրղալեմյան, Նշխարք պտմ. Հայոց, Բ, ձեռ. № 4515, էջ 229—230)։

Որոշ գյուղերում «հայրենիք» կամ «մուլք» կոչվող կալվածքներն այնքան ընդարձակ տարածություն էին բռնում, որ գյուղի հողային ֆոնդը երկփեղկվել էր համայնքային և մլքային բաժինների։ Այդպես էր, օրինակ, Քարվակ գյուղում, որտեղ կար հատուկ «մլքի դաշտ»։ Այդ դաշտում գտնվող իր «հալալ մուլքը» ԺԶ. դարում ոմն Թերձակենց Թումա նվիրաբերեց Ժաժկանց սուրբ Ավետարանին (Մատենադարան, ձեռ. № 3850, էջ 99ա)։

Գյուղերի սահմաններում կային նաև ընդարձակ տարածություն բռնող ապառաժ, անջրդի, ճահճային կամ մի այլ պատճառով երկրագործական աշխատանքի համար ոչ պիտանի հողեր։ Դրանք կարող էին դառնալ այս կամ այն գերդաստանի սեփականությունը, եթե նրանք, միջոցներ ներդնելով ու ջանքեր գործադրելով, կարողանային օգտագործելի դարձնել այդ հողերը։

1507 թվականին ընդօրինակված մի Ավետարանի մեջ կա հետաքրքրական մի գրանցում. ոմն Ստեփանոս ինչ-որ սուրբ Կիրակոսի վանքին նվիրում է գանձագին մի պարտեզ ու մի ջրաղաց։ Բացի այդ բարեգործությունից, նույն Ստեփանոսը՝ «Ճամ կորդեց, ոխք արար Կեշայ կարմընջին»,—ասված է նվիրաբերական ուշագրավ այդ արձանագրության մեջ։ «Կորդ» նշանակում է խոպան, անվար հողամաս, իսկ «կորդել», բնականաբար, նշանակելու է խամ կամ խոպան հողը մշակել, դարձնել օգտագործելի։ Այսպիսով պարզվում է, որ վերը նշված Ստեփանոսը իրավասու էր ցանկացած ձևով վարվելու ինչպես իր կողմից գնված պարտեզի ու ջրաղացի, այնպես էլ «կորդած», այսինքն մշակելի դարձրած արտի հետ։

Ըստ երևույթին համանման բովանդակություն ունի նաև Պետ. Մատենադարանի № 4868 ձեռագրում ԺԶ. դարում գրանցված՝ ստորև բերվող նվիրաբերական արձանագրությունը. «Աստուած օրհնէ զԿեցնայ Եղէգեց ծաղկեալ ծերունի Շատարևենց Աղաջան, որ զիւր հալալ մուլքն՝ զքռայուտն ոխ արար՝ զկէսն սուրբ Աստուածածնին և զկէսն սուրբ առաքելոյն Թումայի» (ձեռ. № 4868, էջ 320բ)։

*Կարծում ենք, որ Շատարևենց Աղաջանը իրավասու էր ցանկացած ձևով անօրինելու նվիրաբերվող հողամասը, որովհետև այն «քռայուտ», այսինքն՝ քարքարոտ տեղ է եղել և մշակելի դարձվելով նվիրատուի ջանքերով՝ համարվել է նրա «Հալալ մուլքն»։*

*Գյուղական համայնքի ներքին կյանքի ուսումնասիրության տեսակետից ուշագրավ է նաև նախորդ նվիրատու Ստեփանոսի «կորդած» արտի նվիրաբերման նպատակը։ Այն «ոխֆ» է արվում «Կեշայ դետի կարմընչին», պայմանով, որ այդ արտի մշակողի վրա դրված լինի կամուրջը շեն պահելու պարտականությունը. «Ով որ ցանէ՝ ղկարմունջ շէն պահէ»,—գրված է այնտեղ (Ե. Լալայան, Ցուցակ, № 262, սյուն. 629։ Հմմ. նաև «Թորոս աղբար» Բ, էջ 270, ուր մեջ է բերված 1578 թ. մի արձանագրություն, ինչ որ մեկի կողմից սուրբ Գեորգ զորավարի վանքին «ղկարմընճի արտ, ճոթով» նվիրաբերվելու մասին)։*

*Մոկրի Ողմի գյուղի տանուտերերի բարեգործությունները թվարկող ԺԷ. դարի մի արձանագրության մեջ, որ գրանցված է Մատենադարանի կողմից վերջերս ձեռք բերված մի Ավետարանի հատակոտորների վրա, խոսք կա նաև այն մասին, որ տանուտեր Մարտիրոսն ու իր Առաքել եղբայրը «Բ. (2) կճ. (կապիճ) ցորեն տուին առւին» (Մատենադարան, ձեռ. № 9660, էջ 1բ)։ Իսկ 1651 թվականից պահպանված մի արձանագրությունից տեղեկանում ենք կապիճ ու կես ցորենի մի արտի գնման մասին. գնողներն արտի արդյունքը հատկացնում են համայնքին, որպեսզի «առու խանելոյ աւրն ուտեն» (Ե. Լալայան, Ցուցակ, սյուն. 199)։*

*Արդ, երբ առանձին տանուտերեր հող էին տանում համայնքի բոլոր անդամներին շահագրգռող կամուրջը կամ առուն շեն պահելու կամ մաքրելու աշխատանքներին, ապա առանց վարանման կարելի է ենթադրել, որ այդպիսի նպատակների համար համայնքը ևս հողային իր ֆոնդից կարող էր հատկացնել առանձին վարելահողեր։*

*Խոսելով վանական կալվածատիրության մասին, բավարար փաստեր մեջ բերելով, ցույց տվեցինք, որ վանքերից շատերը իրենց պատկանող հողերի վրա ստեղծում էին սեփական տնտեսություններ։ Իսկ ունեցե՞լ են, արդյոք, այդպիսի տնտեսություններ իրենց պատկանող գյուղերում հայ և օտարազգի կալվածատերերը. այս հարցին վճռական պատասխան տալու համար անհրաժեշտ տվյալներ չկան*։ Գիտենք ստույգ, որ նրանք իրենց պատկանող գյուղերում ունենում էին զգալի քանակությամբ վարելահողեր, որոնք վարձակալման էին տրվում տվյալ կամ մերձակա գյուղերի բնակիչներին։*

*Այլ կապակցությամբ ծանոթացել ենք արդեն Բեսավենք գյուղի համայնքի սուրբ Գեորգ վանքի նկատմամբ ստանձնած պարտավորությունների մասին խոսող արձանագրության հետ. «Արարիչն աստուած,— գրված է նրա սկզբում,— զԲէխօինից տանուտէրքն աւրհնէ առհասարակ։ Արտ մի ոխւ էր տւած այս եկեղեցոյս. յետ ժամանակաց տաճիկ մի գեղի տէր էլաւ և զարտն խլեց և*

---

* *Տարսայիճ Օրբելյանի կին Մինախաթունը 1292 թ. Նորավանքին նվիրաբերել է այգիներ, այդ առթիվ փորագրել տված արձանագրության մեջ նվիրատուն անհրաժեշտ է համարել շեշտելու, որ «այս տուրքս ոչ ի դրկանաց, ոչ ի գեղէ, ոչ ի պարոնահողաց. այլ մեր հալալ դրամագին՝ ազատ յամէն հարկաց, որ ոչ ումն հաշիւ չկայ ի հետ» («Վիմական տարեգիր», էջ 135)։ Հակված ենք կարծելու, որ այստեղ գործածված «պարոնահող» տերմինի տակ պետք է հասկանալ հենց այն հողաբաժինը, որ կալվածատերերը յուրացնում էին, կտրելով գյուղական համայնքի հողային ֆոնդից։*

*արար չարեք հող՝ Աւանի ձեռօք, ստուած չողորմի իւրենց» և այլն (Մատենադարան, ձեռ. № 9223, ժէ., էջ 1ր)։ Մեզ բերված հատվածը մեկնաբանում ենք այսպես. տարիներ առաջ գյուղի տանուտերերի միաբան համաձայնությամբ մի արտ է նվիրված եղել սուրբ Գևորգի վանքին, սակայն դրությունը փոխվել է, երբ գյուղի տեր է դարձել «տաճիկ մի»։ Մահմեդական այս գյուղատերը խլել է գյուղական համայնքին պատկանող, բայց վանքին նվիրաբերված արտը և այն դարձրել «չարեք հող». այլ խոսքով նա սեփականել է այդ արտը բերքի մեկ քառորդը ստանալու պայմանով վարձակալման հանձնելու համար*։*

*Գյուղական համայնքի անդամները տարվա մեջ մի քանի օր պարտավոր են եղել ձրի աշխատել կալվածատիրոջ համար։ Այդ մասին, ինչպես վերը ասացինք, տվյալներ են պահպանվել ժէ. դարում Տաթևի վանքում, հին տրադիցիաների հիման վրա կազմված «Հուլավարն, այսինքն վանքական գիւղօրէից հողոց տասանորդքն» ուշագրավ ցուցակում (Մատենադարան, ձեռ. № 6271, էջ 678)։*

*Համայնքի անդամները կալվածատիրոջ նկատմամբ ունեցել են նաև այլ պարտավորություններ. այսպես օրինակ, անվճար խնամել են տնային թռչունները։ Այս մասին ուշադրության արժանի տվյալ է պահպանվել Գրիգոր Նարեկացու ընդարձակ վարքում, որ մուտք է գործել Գրիգոր Ծերենցի (մհ. 1425 թ.) խմբագրած Հայսմավուրքի մեջ։ Նարեկ գյուղի քուրդ տերը,— ասված է այդտեղ,—հաւ մի... յիւր շինականն ետ թուխս դնել»։ Թխսկան հավն իր ճուտերով, դժբախտ պատահարով, ընկնում է երկանաքարի տակ և սատկում. «իսկ այն կինն, որ զհաւն ի թուխս եդեալ էր, ահաբեկ եղեալ յահէ քրդոյն՝ յուսացաւ յաստուած և յաղօթս սրբոյն Գրիգորի»։ Եվ, իբր, ձագահարույց Գրիգոր Նարեկացու զորությամբ ջախջախված հավն իր ճուտերով կրկին կենդանանում է, խեղճ ու ահաբեկված շինական կնոջն ազատելով քուրդ բեկի բարկությունից (տե՛ս «Գիրք որ կոչի Այսմաւուրք», 1730, էջ 395)։*

*Այս տվյալը թույլ է տալիս կարծելու, նամանավանդ եթե նկատի առնենք նաև ժԹ. դարից հայտնի փաստերը, որ գյուղատերերը նույն սկզբունքով կարող էին իրենց շինականներին խնամելու հանձնել նաև մանր ու խոշոր եղջերավոր անասուններ։*

*Այսպիսով, որքան էլ աղքատիկ ու ակնարկային են առկա նյութերը, նրանք, այնուամենայնիվ, հնարավորություն են տալիս մասամբ որոշելու կալվածատերերի նկատմամբ համայնքի անդամների ունեցած պարտավորությունները և հիմնավորում են վերև ասածը այն մասին, որ մեզ հետաքրքրող ժամանակաշրջանում գյուղական հողատարածությունները հիմնականում բաժանվում էին հինգ խմբերի՝ ա) հողաբաժանման ենթակա համայնքապատկան*

---

** «Չարեք» տերմինը գործածական է եղել հարևան Ադրբեջանում մինչև ժԹ. դարը՝ Ադրբեջանի միջնադարյան պատմության հմուտ մասնագետ Ա. Ալի-Զադեի տվյալներով* „Чахар-иек *(—չարեկ)* платили малоземельные коестьяне, отдававшие аемлевладельцу одну четвертую часть годового дохода" *(տե՛ս* А. А. Али-Заде, Социально-экономическая и политическая история Азербайджана XIII—XIV вв. Баку, 1956, *էջ 239)։ Բերված փաստաթուղթը կարելի է մեկնաբանել նաև ուրիշ ձևով, եթե «չարեք հող» տերմինը այլ կերպ հասկացվի։ Հայտնի է, որ համփա-չարեքային հողաբաժանման սիստեմով՝ գյուղական համայնքի հողերը բաժանվում էին համփաների, չարեքների, պճեղների և այլ մասերի և հատկացվում գյուղական համայնքի գերդաստաններին, նրանց շնչաքանակի համապատասխան։ Չարեք հող (այսինքն՝ համփայի մեկ քառորդի չափով հող) ստանում էին չորս շնչից բաղկացած ընտանիքները։*

վարելահողեր, խոտհարքներ, արոտավայրեր և այլն, բ) տարբեր ճանապարհներով մասնավոր սեփականություն («հայրենիք», «մուլք») դարձած այգիներ, պարտեզներ, վարելահողեր, գ) գյուղատերերի կողմից սեփականացված վարելահողեր, որոնք տրվում էին վարձակալման, դ) վանական հաստատություններին նվիրաբերված հողակտորներ և, վերջապես, ե) անմշակ, խոպան ու ճահճոտ հողային տարածություններ։

Գյուղական համայնքը Հայաստանում ու հարևան երկրներում շերտավորման էր ենթարկված մեր հետաքրքրող ժամանակաշրջանից դարեր առաջ։ Ե. դարից արդեն տվյալ ունենք այն մասին, որ գյուղական բնակչությունը տնտեսական ու սոցիալական իր գոյավիճակով շերտավորված էր 3 խմբերի՝ թվանիկների, տառապյալների ու վար և այգի չունեցողների։ Թվանիկներից եկեղեցին գանձում էր պտուղ հարկի դիմաց՝ 4 գրիվ ցորեն, 6 գրիվ գարի և 16 փաս քաղցու, «տառապյալները» հացի կեսն էին տալիս և գինի՝ որքան կարողանային, իսկ «որոյ վար և այգի ոչ է»՝ ազատվում էին պտղի վճարելուց (տե՛ս Մովսէս Կաղանկատուացի, Պատմութիւն Աղուանից աշխարհի, Մոսկվա, 1860, էջ 66)։

ԺԵ. դարում, անշուշտ, համայնքի շերտավորման պրոցեսն ավելի խորացած էր, և բազմաթիվ տվյալներից դատելով, հարուստ ու փարթամ գերդաստանների կողքին, կային ընտանիքներ, որոնք անկարող էին սեփական միջոցներով զբաղվել վարուցանքով։

Հիշատակարանների ու կալվածքների օտարման մասին շարադրված փաստաթղթերի մեջ, երբ հարկ է լինում խոսել գյուղական որևէ համայնքի բոլոր անդամների մասին, հաճախ գտնում ենք այսպիսի արտահայտություններ՝ «թէ մեծ է և թէ փոքր, թէ հարուստ է և թէ աղքատ, թէ բնական է և թէ նորէկեց» (Մատենադարան, ձեռ. № 4883, էջ 614բ)։

Գյուղական հարուստ գերդաստանների, նրանց տնտեսական ու սոցիալական դիրքի մասին վերը բերված տվյալները համարելով բավարար, փորձենք անհամեմատ շատ ավելի սուղ ու ակնարկային տվյալներով փոքր ինչ լուսաբանել աղքատ գերդաստանների տնտեսական ու իրավական վիճակին առնչվող որոշ հարցեր։

Համայնքից ստացած վարելահողը ինքնաբավ միջոցներով մշակել անկարող գյուղական ընտանիքներից մի քանիսը միանալով կազմում էին հարակաշություններ կամ հաղկիցների ընկերություններ։ Նրանք, փոխադարձ համաձայնությամբ, երկրագործական աշխատանքների (վար, հունձ) ամիսներին միացնում էին իրեց անասուններն ու գյուղատնտեսական գործիքները և հերթով վարում ու հնձում կամավոր սկզբունքներով կազմված ժամանակավոր այդ ընկերությունների մեջ մտնող անդամների արտերը։

Հարակաշության մասին տվյալ ունի Մխիթար Գոշն իր «Դատաստանագրքի» Բ. մասի ՃԻԱ. հոդվածում, որը կրում է «Յաղագս դատաստանաց այգեգործաց, ընկերաւոր մասնաւորաց հարակշաց և վարձկանաց» խորագիրը («Դատաստանագիրք հայոց», էջ 432—433)։

Հայ ժողովրդական առակներից մեկում հարակաշներ էին դարձել աղվեսն ու խեցգետինը. «Աղուէսն ու խեչափառն բարեկամացան մէկ մէկի և եղան եղբարք և սկսան և արին ցանք ի միասին և ի ժամ հնձելոյ աշխատեցան ի մէկ, որպէս աւրէն է հողագործաց»,—ասված է առակում (Ն. Մառ, Ժողովածոյք առակաց Վարդանայ, մասն Բ, Ս. Պետերբուրգ, 1894, էջ 37)։ Ցորենի շեղջը կուտելուց հետո աղվեսը մտադրվում է նենգել իր ընկերոջն ու բերքի երկու

երրորդը վերցնել իրեն. «Շախնայն և ի դեղջիս տանուտէրքն պատեհ են տեսել, որ դու մին բաժին առնուս և ես երկուս»,—ասում է նա խեցդետնին։ Սակայն վերջինս, խորամանկությամբ, կարողանում է մեծ բաժինն ինքը ստանալ (նույն տեղ, էջ 37—38)։

Այս նույն հարցի մասին ուշագրավ տվյալի ենք հանդիպում Կոստանդին Բարձրբերդցի կաթողիկոսի 1251 թվականին շարադրված և Արևելյան Հայաստան առաքված Կանոնական խրատների մեջ։ Խրատների նախավերջին կանոնը ազգագրական մեծ հետաքրքրություն է ներկայացնում։ Այնտեղ ասված է. «Ի՝ զրկանաց և ի խաբելոյ պատրաստ կայցեն քրիստոնեայքն և ի ննդելոյ գիրեարս՝ այր և կանայք, հաղկիցք, և խապկիցք, և զինուորակիցք, և արուեստակիցք, դնաւղք և վաճառաւղք, զի որ մարմնական իրաւք զրկէ բռնութեամբ կամ խաբելով, զինքն հոգւով զրկէ և յաւիտենական կենաւքն» (տե՛ս մեր «Կոստանդին Բարձրբերդցու խրատական թուղթը, առաքված Արևելյան Հայաստան, 1251 թվականին» հոդվածը, տպագրված Մատենադարանի «Բանբերի» № 4-ում, էջ 277—278)։

Կաթողիկոսն, այսպիսով, զգուշացնում է իր հոտին, որ մեծ պատժի են արժանանալու հանդերձյալ կյանքում բոլոր նրանք, ովքեր կզրկեն, կխաբեն ու կնենգեն իրենց ընկերներին։ Արվեստակիցների, այսինքն միևնույն արհեստով զբաղվող և համքարության մեջ ընդգրկված արհեստավորների, զինվորակիցների, դնողների ու վաճառողների հետ միասին կանոնի մեջ հիշատակվում են նաև «հաղկիցք» և «խապկիցք» տերմինները։

Հայ բարբառներում պահվել է «հոխկ» բառը՝ «ընկերակից դութանավորներից ամեն մեկին ընկած վարելու հողի բաժին» իմաստով (տե՛ս Ստ. Մալխասյանց, Հայերէն բացատր. բառարան, 3, էջ 12)։ Այսպիսով պարզ է, որ «հաղկիցք» էին կոչվում ընկերակիցների այն կամավոր խմբերի անդամները, որոնք միավորվում էին, վար ու ցանքի, թերևս նաև հունձի ու կալսման աշխատանքները միասնական ուժերով, լծկան անասուններով ու գործիքներով կատարելու համար։ Հասկանալի է, որ այդ կարգի խմբերի մեջ ընդգրկվում էին միայն գյուղական այն ընտանիքները, որոնք առանձին-առանձին վերցրած անկարող էին մշակելու իրենց հողաբաժինները։

Ոչ պակաս հետաքրքրություն է ներկայացնում նույն կանոնի մեջ հիշատակված «խապկիցք» տերմինը։

Գյուղերում կային շատ ընտանիքներ, որոնք ունեին աննշան թվով կաթնատու անասուններ։ Օրվա ընթացքում ստացած չնչին քանակությամբ կաթով նրանք զրկված պետք է լինեին յուղ ու պանիր պատրաստելու հնարավորությունից։ Սակայն հայ ժողովուրդը դարերի ընթացքում իր արտադրական կենցաղում մշակել էր այդ դրությունից դուրս գալու ուշագրավ եղանակ՝ կաթ փոխ տալու միջոցով։ Նույն վիճակի մեջ գտնվող մի քանի գյուղական ընտանիքներ, փոխադարձ համաձայնության գալով, պայմանավորվում էին օրվա ընթացքում իրենց ստացած կաթը որոշ չափով-ամանով հերթով տալ այդ խմբի մեջ մտած ընտանիքներից մեկին։ Այս ճանապարհով, խմբի մեջ մտած յուրաքանչյուր ընտանիք հնարավորություն էր ձեռք բերում իր կաթից յուղ ու պանիր պատրաստելու։ Ամանը, որով փոխ էին տալիս կաթը, թուրքերեն լեզվով կոչվում էր «ղար» կամ «խաբ», «խապ» (տե՛ս Հ. Աճառյան, Արմատական բառարան, III, էջ 303—304), այստեղից էլ «խապկիցք» տերմինը, որի տակ հասկացվում էր փոխօգնության այդ խմբի մեջ մտած գյուղացիներից յուրաքանչյուրը։ Հայ

*ժողովրդական առակներից մեկում պահպանված է կարևոր վկայություն տասը այծ ունեցող մի այրի կնոջ մասին, որը հենց, լինելով «խապկից», «յամէն օր շերեփ մի ջուր լնոյր ի կաթն և ի խափ (կամ՝ խապ, խաբ) տայր»։ Իր այծարած որդու «Է՞ր առնես ղայդ վնասդ» հարցին մայրը տալիս է այսպիսի պատասխան. «Որդի, մեր կաթնս քիչ է՝ այնոր համար առնեմ, թէ քիչ մի աւելի լինի մեր կաթն, որ մեղ ձմռանս թացան լինի»։ (Ն. Մառ, նշվ. աշխ., էջ 238—239)։*

*Հաղկիցների ու խապկիցների խմբի մեջ միավորվել կարող էին այն ընտանիքները, որոնք, այնուամենայնիվ, չէին զրկվել իսպառ սեփական տնտեսությունը վարելու համար անհրաժեշտ արտադրական միջոցներից։*

*Գյուղական համայնքներում կային նաև այնպիսի ընտանիքներ, որոնք ինքնուրույն տնտեսություն չունեին բնավ, կամ էլ ունեին այնպիսի մանր տնտեսություն, որի արդյունքով անկարող էին կերակրվել։ Այդպիսի ընտանիքներից էին, հիմնականում, դուրս գալիս վարձկաններն ու մշակները, որոնք վարձվում էին հարուստ համագյուղացիների կողմից երկրագործական՝ եռուն աշխատանքների ժամանակ (վար, հունձ և այլն), ինչպես նաև դառնում էին գյուղական հովիվներ և «գործավորներ» (տնտես, մաճկալ, հովիվ, իշվար)՝ վանական հաստատություններում։*

*Մխիթար Գոշի «Դատաստանագրքի» ձեռագրերից մեկում, Բ. մասի ՃԻԱ, հոդվածի մեղ ծանոթ վերնագիրը խմբագրված է այսպես. «Վասն որ մարապան մտեն և մշակ այլ մարդոյ»։*

*«Մարապայ» տերմինը ըստ Ստ. Մալխասյանցի, նշանակում է «երկրագործ, որ նստած է կալվածատիրոջ հողի վրա ու մշակում է այդ հողը, որոշ պարտականություններ կատարելով հօգուտ կալվածատիրոջ» (Հայերէն բացատր. բառարան, III, էջ 271)։ Այս բացատրությունը ճշտման ու լրացման կարիք ունի։ Մխ. Գոշի վերոհիշյալ հոդվածի խորագրում ասված է, որ մարապան կամ մշակը վարձվում են «այլ մարդոյ» կողմից, իսկ մեզ հետաքրքրող ժամանակաշրջանում կամ Գոշի հոդվածի միջնադարյան խմբագրի ժամանակ «այլ մարդ» կարող է լինել ոչ այնքան կալվածատերը, որքան գյուղական փարթամ ու ընչեղ գերդաստանի տանուտերը։ Ավելին, եթե մշակը, ամենայն հավանականությամբ, աշխատում էր իրեն վարձողի հողի վրա, ապա հիմք չունենք պնդելու, որ նույն փոխհարաբերությունը գոյություն ուներ վարձողի ու մարապայի միջև։ Բացառված չէ, որ վերջինս կարող էր աշխատել իր հողամասի վրա, բայց ուրիշի քաշող անասուններով ու սերմացուով։ Պնդել, որ մեծատուն համագյուղացիներից տնտեսական այդպիսի կախման մեջ ընկած գյուղացիներն էին հենց, որ կոչվում էին «մարապայ» — չենք կարող, սակայն այդ կարգի հարաբերությունների գոյությունը հավաստող տվյալներ կան։*

*Այսպե՛ս, 1503 թվականին, նորընծա ոմն Հովհաննես երեց, Սթունի գյուղի բնակիչ Ճֆլայի անվամբ մեկին տալիս է երեք եզ, և նույնքան եզ էլ՝ Ծռեռի գյուղի բնակիչ Խալիֆին։ Այս երկուսը պարտավորվում են Հովհաննես երեցի տված սերմերով ցանել իրենց հողակտորները, պայմանով որ տարին 85 լիտր ձեթի գին ուղարկեն Երուսաղեմ, Հովհաննես երեցի և նրա մերձավորների հիշատակին։*

*Ստորև մեջ ենք բերում այդ պայմանագրի կարևոր մասը. «Ի թվայբերութեանս Հայոց ՋԾԲ. (1503), ես նորընծայ Յովանէս երէցս որ յիշատակ դրի իմ հոգոյս և ամենայն՝ արեան մերձաւորացն իմոց։ Տվել եմ Գ. (3) եզն ի Ճֆլա-*

յում որդին Սամղանայ, ի գեղն որ կոչի Սթունի. Գ. (3) եղն այլ որ կոչի Ճռեռի, ի խալիֆէն, որ վարեն ղդեաինըն իմ ցորենաւն ու իմ դարովն, ուսամը ու շուշմայով, ու ալ զինչ որ լինի...։ Եւ զինչ որ աստուած տայ ամէն տարի... Զե. (85) լաեր գին յուղարկեն ի սուրբ Երուսաղէմ, ու ղայլն աղքատացն և ուխտաւորացն բաժանեն...» (Օքսֆորդ, Բոդլեան գրատուն, M. March. 438, Մատենադարան, Անհատական արխիվներ, թղթ. 122, էջ 2007)։

Այսպիսի բովանդակությամբ պահպանված այս միակ պայմանագիրը դրանցվել ու հասել է մեզ, որովհետև գործարքը բարեգործական բնույթ ուներ Իրենց հողը ուրիշի լծկանով ու սերմացուով մշակող գյուղացիները, տվյալ դեպքում, պարտավորվում են ոչ թե բերքի մի մասը լծկան անասունների ու սերմացուի տիրոջը՝ Հովհաննես երեցին հանձնել, այլ վերջինիս հոգու փրկության համար լուսացուի գին են ուղարկում Երուսաղեմի եկեղեցիներին։ Սակայն պայմանագրի պատմական արժեքը սրանով բնավ չի նվազում։ Այդ փաստաթղթի հիման վրա կարելի է վստահորեն եզրակացնել, որ մեզ հետաքրքրող ժամանակաշրջանում հայկական գյուղերի ունևոր վերնախավը (տանուտերեր, քահանաներ և այլն) շահագործում էր արտադրության միջոցների մի մասից զրկված համագյուղացիներին, տալով նրանց լծկան անասուններ ու սերմացու և ստանալով նրա՛նց հողակտորների վրա, նրա՛նց ջանքերով ու քրտինքով աճեցրած բերքի զգալի մասը։

Աշխատենք պարզել ևս մի հարց. արդյո՞ք որևէ գյուղում բնակություն հաստատած բոլոր անձինք կամ ընտանիքներն էին համարվում տվյալ գյուղական համայնքի լիիրավ անդամներ, թե՞ կային այնպիսիները, որոնք չէին օգտվում համայնքի անդամների բոլոր իրավունքներից։ Սկզբնաղբյուրներում կան միայն թռուցիկ ակնարկներ գյուղական համայնքի կյանքի այս բնագավառը աղոտ կերպով լուսաբանելու համար ։

Մարմետ գյուղի մասին շարադրված մեզ ծանոթ հիշատակարանում կան այսպիսի տողեր՝ «...և այլք, որ անուանքն ի միտս չի գար, թէ մեծ է և թէ փոքր, թէ հարուստ է և թէ աղքատ, թէ բնական է և թէ նորէկից, ամէնեքեան՝ մեծ և փոքր» (Մատենադարան, ձեռ. № 4883, էջ 614ա)։

Այստեղ հակադրված են միմյանց գյուղի բնակիչներն ըստ իրենց սոցիալական (մեծ և փոքր) և տնտեսական (հարուստ և աղքատ) դրավիճակի։ Սակայն կա նաև մի այլ հատկանիշ, որով տարբերակվել են գյուղի բնակիչները։ Հիշատակագիրը տարբերակում է նաև «բնական»-ներին, այսինքն՝ գյուղի բուն բնակիչներին և «նորէկեց»-ներին, այսինքն՝ այլ վայրերից տվյալ գյուղը եկած ու բնակություն հաստատած անձանց։ Որ գյուղական բնակչության այս երկու կատեգորիաների միջև գոյություն է ունեցել իրավական ու սոցիալական ինչ-որ տարբերություն՝ այդ երևում է նաև Մատթեոս Ջուղայեցու «Վասն քարոզութեան բանի» աշխատության մի հատվածից, որտեղ հեղինակը ցանկանում է ցույց տալ, որ «բարկության դևը» մարդկանց հաճախ նետում է տարբեր որոգայթների մեջ։ Որոգայթներից մեկն էլ համարվում է հետևյալը. «Ասէ դևն (բարկութեան) մի համբերեր դոցա, զի նոքա օտար են և եկք և դու բնիկ. հայրենիքս քո է և դոքա առ քեզ են եկեալ և ոչ դու առ նոսա. և դոքա զքո ապրանքդ կուտեն ու քեզ վնաս ասեն։ Արդ, վարե՛ա զնոսա» (Մատենադարան, ձեռ. № 6607, էջ 47բ)։

Ինչքան էլ անորոշ համարվեն մեր հեղինակի խոսքերը, այնուամենայնիվ, կարծում ենք, նրանք հնարավորություն են տալիս եզրակացնելու, որ «բնիկ»

գյուղացիները, այլ խոսքով համայնքի լիիրավ անդամները, «նորէկեց»-ներին չէին համարում համահավասար իրավունքներով օժտված։ Նրանց պատկերացմամբ այդ «նորէկեց»-ները «իրենց ապրանքն են ուտում», ուստի և իրենք իրավասու են նրանց վռնդելու գյուղից («Արդ, վարե՛ա զնոսա»)։

Միջնադարյան Հայաստանի և, մանավանդ, ԺԵ. դարի գյուղական համայնքի կազմակերպության ու պաշտոնեության, հողային ֆոնդի տնօրինման, դասային կառուցվածքի, արտադրական կենցաղի և հարակից հարցերի մասին առկա տվյալները, անշուշտ, հնարավորություն չեն ընձեռում լուսաբանելու համայնքի բարդ կյանքի բոլոր կարևոր կողմերը։ Այնուամենայնիվ արդյունքը շոշափելի է և հույս է ներշնչում, որ այս ուղղությամբ աշխատանքը հնարավոր է շարունակել ձեռագրական նոր նյութեր երևան բերելով։

## Զ.

Անդրադառնանք այժմ ԺԵ. դարի երկրորդ հիսնամյակի քաղաքային կյանքի ու արհեստագործության հարցերին։

Նյութերի պակասը հնարավորություն չի տալիս հարցերի այս խումբը ևս անհրաժեշտ խորությամբ լուսաբանելու։ Հայաստանի քաղաքների, արհեստագործության ու առևտրի մասին հիշատակարանների և օժանդակ այլ աղբյուրների մեջ պատահականորեն գրանցված տվյալները խիստ աղքատիկ են։ Լրացուցիչ որոշ տվյալներ հնարավոր է լինում քաղել միայն ԺԵ.—ԺԶ. դարերում Հայաստանում և հարևան երկրներում ճամփորդած եվրոպական դիվանագետների ու առևտրականների ճանաչողական մեծ արժեք ներկայացնող ուղեգրություններից։

Հայաստանի ու հարևան երկրների միջնադարյան ծաղկուն քաղաքներին անբուժելի հարված հասցրին մոնղոլները՝ իրենց ավերիչ արշավանքներով ու երկարատև, ժողովրդի կենսական հյութերը քամող տիրապետությամբ։ Մոնղոլական ու միջինասիական քոչվոր խաշնարած ցեղերը, բնակություն հաստատելով Անդրկովկասի ու Փոքր-Ասիայի բարեբեր դաշտերի վրա, իրենց համար ամառային ու ձմեռային արոտավայրեր դարձրեցին նախկինում տեխնիկական կուլտուրաների մշակման հարուստ տրադիցիաներ ու զարգացած գյուղատնտեսություն ունեցող մի շարք շրջաններ։ Այսպիսով, Ժ.—ԺԳ. դարերում, որպես միջազգային առևտրի կարևոր հանգրվաններ ու արհեստագործության զարգացած կենտրոններ բարձրացած քաղաքներից շատերը, զրկվելով տնտեսական իրենց հիմքից՝ արագորեն անկման դիմեցին։ Քաղաքների մի մասն էլ քայքայվեց ու կազմալուծվեց միջազգային նշանակություն ունեցող կարավանային ճանապարհների փոփոխության, ինչպես նաև անընդհատ պատերազմների ու ֆեոդալական խժդժությունների հետևանքով։

ԺԴ. դարում արդեն, Հայաստանի տնտեսական կյանքում նշանակալից որևէ դեր չէին կատարում Անիի ու Կարսի նման փարթամ քաղաքները, որոնք նախկինում հայտնի էին իրենց միջազգային կապերով, «ի ծովէ և ի ցամաքէ» հարստություններ դիզած մեծատուն առևտրականներով և ճարտար ու հմուտ արհեստավորներով։

ԺԴ. դարում Արևելքի ու Արևմուտքի միջև կատարվող տրադիցիոն առևտրի ամենաբանուկ ուղին անցնում էր Ադրբեջանով ու Կասպից ծովի վրայով։ Արևելյան մետաքսն ու համեմունքները տարվում էին Աստրախան, ապա Ազով ու Ղրիմի ծովափնյա քաղաքները, իսկ այստեղից՝ նավերով՝ տեղափոխվում

*էին Իտալիա։ Միջազգային տարանցիկ առևտրի այդ հիմնական ուղեգծի բոլոր կարևոր հանգրվաններում ստեղծվել էին հայկական գաղթավայրեր. հայ առևտրականները կարևոր դեր էին կատարում այդ առևտրի մեջ։*

*Դրությունը փոխվեց, սակայն, ԺԴ. դարի կեսերից, երբ Ոսկյա-Հորդայի և Իլխանության մեջ մղվող հաճախակի արյունահեղ պատերազմների հետևանքով՝ այդ ուղեգիծը դարձավ անապահով ու վտանգավոր։ Աստրախանի վրայով կատարվող առևտրին վճռական հարված հասցվեց 1395 թվականին, երբ Լանկ-Թամուրը գրավեց ու կործանեց այդ քաղաքը։*

*ԺԵ. դարում սկսեցին ավելի աշխուժանալ Միջերկրական ծովի, հատկապես Կիլիկյան ծովեզերքի նավահանգիստները, դառնալով միջազգային առևտրի ամենակարևոր հանգրվաններ, ինչպես նաև Տրապիզոնը՝ Սև ծովի վրա։*

*ԺԵ. դարի կեսերից միջազգային առևտրի նորմալ ընթացքը խափանվեց թուրքական նվաճումներով։ 1453 թվականին նրանց ձեռքն անցավ «Արևելքի ու Արևմուտքի ոսկյա կամուրջը» հանդիսացող Կոստանդնուպոլիսը, 1461 թվականին՝ Տրապիզոնի կայսրությունը, իսկ տասը տարի հետո՝ 1471 թվականին՝ նաև Կիլիկյան ծովեզերքը՝ Ղարամանիան։*

*Եվրոպական ու Ասիական երկրների միջև, այսպիսով, խրվեց մի սեպ, որն առաջին հերթին խիստ բացասաբար անդրադարձավ միջազգային առևտրի ու ապրանքափոխանակության վրա։ Ահա այսպիսի պայմաններում էր, որ բարձրացավ մի կողմից Թավրիզի, մյուս կողմից Հալեպի ու Սիրիական նավահանգիստների առևտրական դերը։ Սրանք դարձան Արևելյան երկրների ու Եվրոպական առևտրական կապիտալի առաջամարտիկ Վենետիկի առևտրական ընկերությունների անմիջական շփման ու ապրանքափոխանակության ամենակարևոր կետեր։*

*Թավրիզից դեպի Հալեպ տանող կարավանային ուղիներն անցնում էին Հայաստանի վրայով։ Ամենակարճ ու բանուկ ուղին Թավրիզից անցնում էր Մարանդ, Խոյ, ապա՝ Բերկրի, Արճեշ, Արծկե, Խլաթ, Բաղեշ։ Բաղեշից ճանապարհը երկփեղկվում էր. դեպի Եդեսիա ու Հալեպ գնալու համար անցնում էին կամ Նփրկերտի ու Ամիդի, կամ էլ Հըսնիքեֆի ու Մերդինի վրայով։ Իր կարևոր նշանակությունը դեռևս պահպանել էր նաև Թավրիզից դեպի Կարին ու Երզնկա տանող ուղեգիծը։ Երզնկայից Հալեպ (Սեբաստիայի վրայով) ուղևորվում էին հատուկ կարավաններ, որոնցից մեկի հետ ճանապարհորդելու համար 1478 թվականին ստիպված էր մեկ ամիս Երզնկայում սպասել վենետիկյան դիվանագետ Ջոզեֆա Բարբարոն (Ուղեգրություններ, Ա, էջ 209)։*

*Վենետիկը ձգտում էր առևտրական իր գործակալների գործունեության շառավիղը տարածել դեպի արևելք ու խուսափել արևելյան առևտրականների տնտեսապես ոչ շահավետ միջնորդություններից։ Սակայն այդ բնագավառում նրանք մեծ հաջողություններ չունեին։ Մշտական բնակություն հաստատելով Հալեպում, նրանք այստեղ էին կատարում հիմնականում առևտրական իրենց գործարքները, փոխանակում իրենց մահուդը արևելյան ապրանքների՝ խամ մետաքսի, բրդի, գզթորի, ճարպի, քրքումի, կաշվի, բամբակի և համեմունքների հետ։*

*Հալեպում կատարվող միջազգային այս առևտրի ու ապրանքափոխանակության մեջ նշանակալից դեր էին կատարում հայ խոջաները։ 1478 թվականին արդեն Հալեպում կար Աստվածածնի անվամբ հայկական մի եկեղեցի, որի հովանու ներքո պարոն Ֆարաճի պատվերով մի Ավետարան ընդօրինակեց*

Մելքիսեթ գրիչը (Հշտկ. № 550, էջ 433)։ 1500 թվականին Հալեպի հայ գաղութի ռայիս Հիսայի տրամադրած միջոցներով այստեղ կառուցվեց Քառասուն մանկանց անվամբ մի սրբատեղի և հյուրատուն.

«Այլ և խըցեր հանդըստարան,
Ի գալ հիւրոցն ատարական,
Զի հանգիցեն խաղաղական,.
Հանդերձ դրաստիւքն իւրեանց որ կան։
Շինեաց դարպաս թագւորական,
Որ ժամատեղ էր ամառան,
Քահանայից տեղ հանդըստեան,
Զի վայելեն խաղաղական»
(Ա. Սիւրմէեան, Ցուցակ Հալէպի, Ա, էջ 151)։

Հալեպի երկու հայկական հնագույն գերեզմանատներում (Սալիպեի և Ազիզյեի) կան ԺԶ. դարից 14 արձանագիր տապանաքարեր, որոնցից 13-ը պատկանում են հին Ջուղայեցի «Հալապ քաղաքում ղարիպ մնացած» խոջաների (Ա. Սիւրմէեան, Պատ. Հալէպի ազգային գերեզմանատանց և արձանագիր հայերէն տապանաքարերու, Հալէպ, 1935, էջ 12—13, 25)։ Ջուղայեցիները, հիմնականում Շամախուց Հալեպ էին տանում խամ մետաքս և դրա դիմաց վենետիկցիներից գնում մեծ քանակությամբ կրսեններ ու կերպասներ։

Թավրիզից Հալեպ տանող առևտրական ուղեգծի Հայաստանից անցնող հատվածի վրա գտնվող ամրոց-քաղաքների մասին ուշագրավ տվյալներ է հաղորդում վենետիկցի անանուն մի վաճառական, որը 1511—1520 թվականներին առևտրական գործերով շրջել էր Հայաստանի ու Իրանի նշանավոր վաճառաշահ կենտրոններում։

Վանա լճի շրջակայքի մասին ստացած իր տպավորությունները նա շարադրում է այսպես. «Երկիրը բարեբեր է՝ լի գյուղերով, և գյուղացիները մեծագույն թվով հայեր են։ Այս ծովի շուրջը կան յոթը փառավոր ամրոցներ, բնակված քրդերից ու հայերից, բոլոր այս ամրոցներում ես առևտուր եմ արել, որովհետև Թավրիզից գնալիս անցա մեկ կողմից և վերադարձին՝ մյուս կողմից, այսպես ծովը գտնվում էր մեջտեղում» (Ուղեգրություններ, Ա, էջ 300)։

Նրա նշած յոթը ամրոց-քաղաքներն էին՝ Դատվանը, Ոստանը, Վանն ու Բերկրին՝ լճի արևելյան կողմում, և Արճեշը, Արծկեն (Ադիլջեվազ) Խլաթը և Դատվանը՝ հյուսիս-արևմտյան կողմում։

Այս քաղաքներից մի քանիսի մասին նույն հեղինակը, ինչպես և այլ ուղեգիրներ ու հիշատակագիրներ հաղորդում են լրացուցիչ կարևոր տեղեկություններ։

Այսպես, նկարագրելով Վանի անառիկ ամրոցը վենետիկցի ուղեգիրը հայտնում է, որ «ամրոցի ներքևում կա մի մեծ քաղաք, և բնակչության մեծ մասը հայեր են, իսկ ամրոցի ներսում բոլորը քուրդ են։ Այս վայրը մի մղոն հեռու է ծովից և լավ մատակարարված է մթերքներով» (Նույն տեղում, էջ 302)։

Վան քաղաքը ԺԵ. դարի երկրորդ հիսնամյակում շարադրված հիշատակարաններում հիշված է բազմիցս։ Այստեղ ընդօրինակված շուրջ 30 մեզ հայտնի ձեռագրերի հիշատակարանները, այս կամ այն չափով, հնարավորություն են ընձեռում ծանոթանալու քաղաքի խոջաներից շատերի, ճարտար հյուսների, ոսկերիչների և այլ արհեստավորների հետ։ Ուշագրավ է հատկապես 1476

*թվականին Վանում շարադրված այն հիշատակարանը, որտեղ խոսվում է նաև հյուսն Մլխամի մասին, որը «զսուրբ Պօղոսի և զՊետրոսի ժամատունքս ծածկեց և շատ աշխատեցաւ ի վերայ սոցա»։ Պարզվում է, որ հյուսնությունը այս Մլխամի ընտանիքի ժառանգական արհեստն է եղել. հյուսն է եղել նրա հայր Ավետիսը, ինչպես և որդի Կարապետը։ «Յիշեցէք...,— գրված է հիշատակարանում,—զխուս Մլխամն, և զծնաւղսն իւր զխուս Աւետիսն և զՄամտ-խաթունն, և զկենակիցն իւր զՇուքրանն, և զորդիքն իւր զխուս Կարապետն և զԽլղաթն, և զամենայն արեան մերձաւորսն իւրեանց» (Հշտկ. № 506, էջ 404)։*

*Այս անուղղակի վկայությամբ հավաստվում է արհեստագործության առանձին մասնաճյուղերի ժառանգականության դարավոր կիրառությամբ սրբագործված սկզբունքի կենսունակությունը հայկական քաղաքներում։*

*Վանեցի «ազատագունդ խոջաների» սոցիալական դիմապատկերը բնորոշ գծերով հնարավոր է լինում ստվերագրել 1565 թվականից մեզ հասած մի հիշատակարանի միջոցով, որը նվիրված է մելիք Ղուլիջանի բարեգործությունների դրվատմանը։ Իր միջոցներով մեծանուն այս խոջան վերանորոգում է Սալնապատի սուրբ Աստվածածնի և Վերին-Վարագի վանքերը, կառուցում է Ներքին-Վարագի պարիսպը և շինություններ ու նորոգումներ կատարում մի շարք այլ վայրերում։ Հիշյալ սրբավայրերին նա վակֆ է անում Գունենց ու Ջրվանդտնց գյուղերում ունեցած իր ջրաղացները, սալահատակել է տալիս Վանի Թավրիզի դռնից սկսվող փողոցը՝ մինչև Պողոս-Պետրոս եկեղեցին, սահմանում է, որ ամեն տարի իր ջրաղացից ու տնից 1400 հաց բաժանվի աղքատներին մեծ պասի շաբաթ և կիրակի օրերին, «դուքան մի յիւր դուքանեբացն» նվիրում է Տիրամոր եկեղեցուն, որպեսզի «էն դուքնի վարձովն իւր քառասունքն կատարեն», պատվիրում է, որ իր մահվանից հետո ամեն կիրակի իր այգիներից 5 լիտր խաղող, տանձ ու խնձոր բերեն ու բաժանեն իր գերեզմանի վրա «մինչև այգիքն վերանան» և այլն և այլն (Մատենադարան, ձեռ. № 4515, էջ 291—292)։*

*Այսպիսով, մելիք Ղուլիջանը հանդես է գալիս միաժամանակ որպես առևտրական, ջրաղացների տեր, այգետեր և դրամատեր։ Բարեգործական նպատակներով նրա կատարած մեծածախս շինարարական ու վերանորոգչական աշխատանքների համար միայն նա հսկայական դրամական միջոցներ պիտի ծախսեր, մի բան, որ ի վիճակի էր անելու, անտարակույս, մեծ հարստությունների տեր մեկը։*

*Հայ հիշատակագիրները Վանից հետո, տարբեր առիթներով, ամենից շատ խոսում են Արճեշ քաղաքի մասին, որը մեզ հետաքրքրող տասնամյակներում հայտնի էր նաև որպես գրչության աչքի ընկնող կենտրոն։ Այստեղ էր աշխատում միջնադարյան հայ ամենաբեղուն գրիչներից մեկը՝ Հովհաննես Մանդասարենցը, որն իր կյանքի ընթացքում (ապրել է 86 տարի, մահացել է 1505 թվականին) ընդօրինակել է 132 մեծ ու փոքր ձեռագիր։*

*1465 թվականին ընդօրինակված Ավետարանի հիշատակարանում Մանդասարենցը շարադրում է արճիշեցի խոջա Գրիգորի ընտանիքի սրտաճմլիկ պատմությունը, որին կանդրադառնանք քիչ հետո․ նշենք այստեղ, որ խոջաների տարաբախտ այդ ընտանիքի անդամները «ի վաճառ» էին գնում հեռավոր երկրներ ու քաղաքներ՝ Թավրիզ, Սուլթանիա, Սպահան և այլն (Հշտկ. № 287, էջ 235—236)։*

*Արծկէ քաղաքը ևս, գտնվելով կարավանային բանուկ ճանապարհի վրա,*

որոշ դեր էր կատարում որպես հանգրվան ու ապրանքափոխանակության կետ։ Այստեղից ևս մեզ հետաքրքրող տասնամյակներից հասել են մեծ քանակությամբ հիշատակարան ունեցող ձեռագրեր, որոնց մեջ տվյալներ կան նաև արճկեցի խոշոր առևտրական-խոջաների մասին։ Դրանցից էին 1466 թվականին հիշված ձեռագրի պատվիրատու Հովհաննեսն ու նրա «պարոն» որդիներ Գորգն ու Ամիրբեկը (Հշտկ. № 308, էջ 246)։ Արծկեցի էր նաև ԺԵ. դարի վերջերին ապրող նշանավոր դանձասաց Հակոբ Նետրարենցը. ազգանունից դատելով նրա հայրը կամ նախնիները եղել են նետագործ արհեստավորներ։

Ավելի մեծ նշանակություն ուներ, անշուշտ, Խլաթ քաղաքը, որը Ջոզեֆա Բարբարոյի վկայությամբ ուներ հազար տուն, ուրեմն, պետք է ենթադրել, ոչ պակաս քան հինգ հազար բնակիչ (Ուղեգրություններ, Ա, էջ 187)։ Դժբախտաբար Խլաթի նկատմամբ մեր հիշատակագիրները խիստ ժլատ են։

Գլխավոր ճանապարհի վրա հաջորդ խոշոր առևտրական կայանն ու ամրացված կետը՝ Բաղեշ (Բիթլիս) քաղաքն էր, որը միաժամանակ վարչական կենտրոնն էր Հայաստանի ամենազորեղ քրդական ամիրության։ Մեզ ծանոթ վենետիկցի վաճառականը հայտնում է, որ քրդերից բացի քաղաքում բնակվում են «նաև շատ հայ քրիստոնյաներ», և որ «շատ վաճառականներ մեկնում են այս քաղաքից առևտուր անելու Հալեպում, Թավրիզում և Բրուսայում» (նույն տեղում, էջ 298)։ Պետք չէ տարակուսել, որ այդ վաճառականները հայեր էին։ ԺԵ. դարի ընթացքում Բաղեշը զգալի դեր է կատարել նաև Հայաստանի կուլտուրական կյանքում. այստեղ է ծնվել Առաքել Բաղիշեցի նշանավոր բանաստեղծը. Բաղեշի շնորհալի գրիչների ընդօրինակությամբ ԺԵ. դարի երկրորդ հիսնամյակից հասել է մեզ 17 ձեռագիր։

Հայ հիշատակագիրներն ու եվրոպական ճանապարհորդները ակնարկներ ունեն նաև Հայաստանի մյուս քաղաքների՝ Երզնկայի, Խիզանի, Մուշի, Ոստանի, Աղթամարի, Խարբեդի, Բաբերդի, Սղերդի և ուրիշների մասին, որոնք գտնըվելով կամ գլխավոր, կամ օժանդակ առևտրական ուղեգծերի վրա, այս կամ այն չափով, մասնակցություն ունեին միջազգային տարանցիկ առևտրին։

Երզնկան ԺԵ. դարի երկրորդ կեսում երկու անգամ (1457 և 1483 թվականներին) քարուքանդ եղավ այդ քաղաքի համար սովորական երկրաշարժից։ 1457 թվականի երկրաշարժի մասին ժամանակակից մի հիշատակագիր հայտնում է հետևյալը. «Եղև ահագին շարժ յԵզնկայն և կործանեաց զքաղաքն և զբոլոր պարիսպն յատակէն տապալեց. և մեռան ի նմին ժամու ի շարժէն անձինք ԲԺ. (12) հազար» (Հշտկ. № 128, էջ 95)։

Այս ծանր աղետից 17 տարի հետո Երզնկա այցելած Բարբարոն համարում է այն «մի մեծ քաղաք, բայց մեծ մասամբ քայքայված այս միջոցին» (Ուղեգրություններ, Ա, էջ 195)։

Տասը տարի հազիվ էր անցել Բարբարոյի այցելությունից, երբ իր վերքերը դեռևս չբուժած քաղաքը, շրջակա գյուղերի հետ միասին, կրկին կործանվեց ավելի ուժգին շարժի ցնցումներից։ 1483 թվականին շարադրված հիշատակարաններից երկուսի մեջ ուշագրավ տողեր են գրանցված այդ շարժի մասին. «Եւ արդ,— կարդում ենք նրանցից մեկում,—գրեցաւ սա ի դառն և ի նեղ ժամանակիս, զի վասն ծովացեալ մեղաց իմոց Երզընկա քաղաք տապալեցաւ, և ԺԸՌ. (18.000) ոգի ի ներքև հողու մնաց, և այլ ոչ մնաց մի կենդանի» (Մատենադարան, ձեռ. № 6879, էջ 364ա)։ Մյուս հիշատակարանում տվյալներ են գրանցված ոչ միայն քաղաքում, այլև շրջակա գյուղերում զոհվածների թվի

*մասին. «Եղև շարժ և Եզընկա քաղաքն Ի. (20) գեղով ընկղմեցաւ՝ մարդով և անասնաւք, մինչև ԼՌ. (30.000) մարդ ի գիր ելաւ»։*

*Թվում է, թե քաղաքն այլևս չէր վերաշինվելու։ Սակայն, լինելով Թավրիզից դեպի Փոքր-Ասիայի կենտրոնական քաղաքները, ինչպես և Սև ու Միջերկրական ծովերի նավահանգիստները տանող ճանապարհի վրա, Երզնկան, շատ չանցած, դարձյալ վերաբնակեցվեց ու շենացավ։ ԺԶ. դարի ուղեգիրները խոսում են նրա մասին, որպես առևտրական կարևոր կետի, իսկ անգլիացի վաճառական Ջոն Նյուբերին, 1581 թվականի աշնանը լինելով Թավրիզում, հայտնում է որ այնտեղ շատ սիրված է ու լավ վաճառվում է մի տեսակ մետաքս ատլաս, որը Հայաստանի Երզնկա ու Արզրում (Կարին) քաղաքների լավ ապրանքներից է (Ուղեգրություններ, Ա, էջ 453)։*

*ԺԵ. դարի երկրորդ հիսնամյակում Երզնկան ու նրա շրջակայքի հայկական վանքերը նշանակալից դեր էին կատարում նաև Հայաստանի կուլտուրական կյանքում։ Ինչպես առիթ ունեցանք նշելու, Ավագ և Կապոսի վանքերում էր հաստատվել ժամանակի ամենահեղինակավոր վարդապետ Հովհաննես Համշենցին, իր շուրջը միշտ ունենալով Հայաստանի տարբեր շրջաններից բազմաթիվ աշակերտներ։*

*Ջոզեֆա Բարբարոն տեղեկություն է հաղորդում նաև Բաբերդ քաղաքի մասին, համարելով այն Տրապիզոնից Պարսկաստան տանող ճանապարհի նշանավոր հանգրվաններից մեկը։ «Քաղաքը պարունակում է հազար հինգ հարյուր տուն»,—գրում է նա, հնարավորություն տալով եզրակացնելու, որ ԺԵ. դարի 70-ական թվականներին Բաբերդն ունեցել է առնվազն 7000 բնակիչ։ Նույն դիվանագետ-ուղեգրի վկայությամբ «շատ լավ» բնակեցված է եղել նաև Մուշ քաղաքը (Ուղեգրություններ, Ա, էջ 195, 197) և այլն։*

*Առևտրի ու արհեստագործության զարգացման իրենց աստիճանով, անշուշտ, հետ էին մնում Վանա լճի հարավում գտնվող քաղաքներն ու քաղաքատիպ վայրերը։ Բարբարոյի ճամփորդության տարիներին Ոստանը քայքայված մի քաղաք էր և «երեք հարյուր տնից ավել չուներ»։ Չնայած դրան, նա որոշ դեր էր կատարում ներքին առևտրի մեջ՝ մատակարարելով մեծ քաղաքներին գյուղատնտեսական մթերքներ։ Հայտնի է, որ ԺԶ. դարի սկզբներին Ոստանից Թավրիզ վաճառահանում էին մեղր, օծանելիք ու պանիր։ Վենետիկցի անանուն վաճառականն այդ մասին գրում է. «Ավելի մեծ քանակությամբ մթերք կա այստեղ, քան ուրիշ որևէ տեղ, և մեծ քանակությամբ սպիտակ մեղր է շինվում այստեղ, որ ժամանակ առ ժամանակ ուղարկվում է Թավրիզ ծախվելու, օծանելիքի ու պանրի հետ միասին» (Նույն տեղում, էջ 301)։*

*Ըստ երևույթին ավելի բազմամարդ ու հայաշատ էր Խիզանը. մեզ հետաքրքրող հիսնամյակից պահպանվել են Խիզանում ընդօրինակված երկու տասնյակ ձեռագրեր։*

*Հայաստանի կուլտուրական կյանքում բացառիկ դեր էր կատարում Աղթամար կղզու վրա գտնվող գյուղաքաղաքը, որը կոչվում էր Արմենիկ։ Եվրոպական ուղեգիրների վկայությամբ գիտենք արդեն, որ միայն հայերով բնակեցված այդ գյուղաքաղաքում կար 600 տուն (ընտանիք)։ ԺԵ. դարի երկրորդ կեսին շարադրված հիշատակարաններում տվյալներ կան Աղթամարում բնակվող ու աշխատող մի շարք հյուսների, ինչպես և Մուրատշահ ոսկերչի մասին (Մատենադարան, ձեռ. № 7585, էջ 267ա)։ Աղթամարը միաժամանակ գրչության ամենախոշոր կենտրոնն էր Հայաստանում և մեծ արվեստով գրված ձեռագրեր*

էր մատակարարում նույնիսկ հեռավոր շրջանների, հրատարակվող հիշատակարաններից շուրջ 60-ը շարադրված են հենց Ազթամարում։

Քաղաքային կյանքի ու արհեստագործության մասին խոսելիս չպետք է անտեսել այն հանգամանքը, որ հայ առևտրականներից ու արհեստավորներից շատերը մեզ հետաքրքրող ժամանակաշրջանում, գաղթելով հայրենի երկրից, բնակություն էին հաստատել հարևան երկրների վաճառաշահ քաղաքներում, ինչպես նաև հայկական հեռավոր գաղթավայրերում Վոլգայի ափերին, Ղրիմում, Ուկրաինայում, Լեհաստանում, Եգիպտոսում, Թուրքիայի ծովափնյա քաղաքներում և այլ վայրերում։ Մեր նպատակից դուրս համարելով խոսել հեռավոր գաղթավայրերի մասին, փոքր ինչ անդրադառնանք պատմական Հայաստանի հարավ-արևմուտքի, Ադրբեջանի, Վրաստանի և Իրանի քաղաքների հայ գաղութների կյանքին։

Ակ-Կոյունլուների նախկին մայրաքաղաք Ամիդի հայ գաղութի պատմության սկզբնավորումը թաղված է դարերի խորքում։ 1517 թվականից հասել է մեզ ուշագրավ մի փաստաթուղթ, որն իրավունք է տալիս եզրակացնելու, թե մեզ հետաքրքրող ժամանակաշրջանում Ամիդի քաղաքային կյանքում հայ առևտրականներն ու արհեստավորները կարևոր դեր էին խաղում։

Տարոնի սուրբ Ղազարի վանքը նշված թվականին Ամիդ է ուղարկում Թադեոս եպիսկոպոսին, վանքի կարիքները հոգալու համար ժողովարարություն անելու նպատակով։ Եվ ահա, Ամիդի հայ համայնքի «քահանայքն ու խոճանայքն» որոշում են դառնալ սուրբ Ղազարի վանքի թեմ ու վիճակ և եկեղեցական տուրքերը այսուհետև վճարել այդ վանքին։ Երկուստեք համաձայնությունը հաստատվում է հատուկ արձանագրությամբ, որի տակ ստորագրում են քաղաքի նշանավոր անձինք՝ խոջաներ ու արհեստավորներ՝ «Սարխօշ Ապտլմըսեհ, Ձաւաճ, կօշկակարենց Ապաալան, սառաֆ Քարիմ, ապրցի Կիրակոս, խոճայ Ապտին, նղարաճի Այվատ, շարաֆ Յոհան, խոճայ Ռաֆ, կովոնց Սարգիս, խոճայ Սահակ, Քօսայ Մուրատ, ղազանչի Ապտին, խոճայ Տարղըվուշ, Ներսէս էրէց, Առաքել էրէց, Յոհանէս էրէց տուրբ Սարռուխն, խոճայ Լութվին, խոճա Ղլիճ, խոճայ Ապտալան Ստեփկանց, Զարքաղենց Յովանէս, Մշցի Շիրին, Ղարայսիատենց Մուրատն, Պօշկանց Ապսէիտն, ղասապ Ապտալյան, լոզն դշիբ (՞) Քօք Սաֆար, սառաֆ Եաղուպ, ներկարար Կիրակոս, կտակար Մուրատ, Մառում, կտակար Լթվին, Ասանենց Ապտլմսեհ, խոճայ Տայուտ, խաբուճայ Այսէիտ, Պահտին, խասապ Մուրատն, Դօիթ էր[է]ց, Յակոր էրէց, Պաղտասար էրէց» (Բ. Սարգիսյան, Ցուցակ, հտ. Բ, էջ 480—482)։

Նշանավոր քաղաքացիների անվանց սոսկական այս թվարկումն իսկ հնարավորություն է տալիս եզրակացնելու, որ Ամիդի հայ համայնքը իր կազմում ուներ բազմաթիվ խոշոր առևտրական-խոջաներ, լումայափոխ-վաշխառուներ (սառաֆ) և տարբեր զբաղմունքի տեր արհեստավորներ (նաղարաճի, ղազանչի, ղասապ, ներկարար, կոշկակար, գդակկար և այլն)։

Բազմաթիվ հայեր էին բնակվում նաև դեպի Սիրիական նավահանգիստները տանող կարավանային ճանապարհի Հայաստանից դուրս անցնող ուղեմասերի վրա գտնվող քաղաքներում։ Հալեպի մասին մենք արդեն առիթ ունեցանք խոսելու, նշենք, որ հոծ հայություն կար նաև Հըսնիքեյֆ վաճառաշահ քաղաքում, որտեղ կար նույնիսկ հայ եպիսկոպոսական առանձին թեմ. 1446 թվականին Հըսնիքեյֆի եպիսկոպոս էր Գրիգոր անունով մեկը (ԺԵ. դարի հշտկ., Ա, էջ 603)։ Ջոզեֆա Բարբարոյի վկայությամբ այդ քաղաքում կային

«Հյուսվածքեղենի վաճառականներ, որովհետև քաղաքը մեծ անցուդարձ ունի» (Ուղեգրություններ, Ա, էջ 182), իսկ վենետիկցի անանուն վաճառականը, Բարբարոյից 40 տարի հետո այցելելով նույն վայրը, հայտնում է, որ «այնտեղ կա բազմաթիվ բնակչություն՝ քրիստոնյա, մահմեդական և հրեա, շատ հարուստ առևտրական մի համայնք» (Նույն տեղում, էջ 294)։

Հյուսիսային Ադրբեջանի ամենանշանավոր քաղաքը ԺԵ. դարում Շամախին էր։ Բարբարոն նկարագրելով Շամախին, գրում է. «Այս շատ լավ քաղաք է, ունի չորս հազարից հինգ հազար տուն, և շինում են մետաքս, կտավ և ուրիշ բաներ իրենց եղանակով» (Նույն տեղում, էջ 199)։ Խոսելով բնակչության ազգային կազմի մասին, Բարբարոն հայտնում է, որ «բնակիչների մեծ մասը հայ են»։ Իտալացի դիվանագետի տվյալը հաստատում է անգլիացի Ջենկինսընը. մեկ դար հետո այցելելով Շամախի, նա ևս արձանագրում է, որ քաղաքը «բնակված է գլխավորապես հայերով» (Նույն տեղում, 372)։

Շամախու շրջանը միջազգային առևտրին մասնակցում էր հիմնականում խամ մետաքսով։ 1394—1427 թվականներին Եվրոպայում, Ասիայում և Աֆրիկայում ճանապարհորդած Ի. Շիլգբերգերը, խոսելով այն մասին, որ Շիրվանից արտահանում են «ամենից լավ մետաքսը», հայտնում է, որ այդ խամ մետաքսից «պատրաստում են լավ գործվածքներ Դամասկոսում, Քաշանում ինչպես և Բրուսայում։ Մասամբ այդ մետաքսն արտահանվում է նաև Վենետիկ ու Լուկկա, որտեղ նրանից պատրաստում են գերազանց որակի թավիշ»։

Ուշագրավ է նաև նույն ճանապարհորդի դիտողությունները հայերի աշխատասիրության ու արհեստագործության մեջ ունեցած հմտության մասին. նա գրում է. «Շատ հավատարիմ ազգ են հայերը, լինեն նոքա քրիստոնյաների կամ հեթանոսների հետ, միշտ նոցա հետ սիրով են և նոցա կողմն են պահում. նոքա շատ խելոք մարդիկ են և շատ աշխատասեր. գեղեցիկ կտավներ են գործում թավշից, ծիրանիից և մետաքսից, նմանապես ավելի շքեղ և թանկագին ոսկեզօծ կտավներ են գործում քան հեթանոսները» (տե՛ս Վ. Աուրենյանի «Հանս Շիլդբերգերի կյանքի և ճանապարհորդության մասին» հոդվածը, տե՛ս Հանդես գրականական և պատմական, երրորդ գիրք, Մոսկվա 1890, էջ 165)։

ԺԵ. դարի երկրորդ կեսից սկսած, ինչպես նշեցինք, մետաքսն ու արևելյան մյուս ապրանքները կարավանային ճանապարհներով տարվում էին Հալեպ և այնտեղ վաճառում վենետիկցիներին, կամ փոխանակում նրանց հետ, տեղը ստանալով մահուդ և այլ գործվածքներ։

Փոխանակային այդ առևտրի մեջ հայ վաճառականները, հատկապես հին ջուղայեցիները, նշանակալից դեր էին կատարում։ Եվ կասկածից դուրս է, որ մեծ մասամբ նրանց ձեռքով էր արտահանվում Շամախու շրջանում մշակվող մետաքսը։ 1566 թվականին անգլիացի վաճառական Արթըր Էդվըրդսը, Շամախուց Լոնդոն ուղարկած իր մի նամակում, հայտնում է, որ այդտեղից տարեկան 400—500 ջորու բեռ մետաքս են տեղափոխում Հալեպ հայկական մի գյուղի (իմա՛ Ջուղայի) վաճառականները։ Նրանք և ուրիշ հայ վաճառականներ, նույն նամակագրի վկայությամբ, Հալեպից «ամեն տարի բերում են չորս-հինգ և վեց հազար կտոր կըրսեներ և կերպասներ, բացի նրանցից որ ուրիշներն են բերում» (Ուղեգրություններ, Ա, էջ 412)։

Հայ վաճառականների կողմից արտահանվող ու ներմուծվող ապրանքների չափը, իհարկե, կարող էր նույնը չլինել մեզ հետաքրքրող հիսնամյակում, բայց որ այդ առևտուրը նույնությամբ տեղի էր ունենում Էդվըրդսից տասնամյակներ առաջ, այդ մասին կարելի է չկասկածել։

Հայկական բազմամարդ գաղութներ կային նաև հյուսիսային Ադրբեջանի այլ քաղաքներում։

ԺԵ.— ԺԶ. դարերում, որպես փոխանակային առևտրի աշխույժ կետերից մեկը զգալի դեր էր կատարում Վրաստանի սահմանագլխին գտնվող Արաշ քաղաքը։ Ջենկինսընի վկայությամբ այն «վրացիների սահմանի վրա ամենից գլխավոր ու բարգավաճ առևտրական քաղաքն է, և այնտեղ մշակվում է ամենամեծ առատությամբ մետաքս, և այնտեղ են գալիս թուրքերը, սուրիացիները և ուրիշ օտարականներ առևտուր անելու» (Ուղեգրություններ, Ա, էջ 372)։ 1490 թվականին խոջա Ղուպարի պատվերով Արաշում Աղարիա գրիչն ընդօրինակել է մի Ավետարան (Մ. Սմբատյան, Երնջակ, էջ 254—258). այս միակ փաստն իսկ բավարար է համոզվելու համար, որ Արաշում ևս հաստատվել էին զգալի քանակությամբ հայեր։

Հայկական գաղութ կար նաև Ադրբեջանի Շամբրան քաղաքում։ 1459 թվականին. Տաթևի եպիսկոպոս Շմավոնը, ըստ երևույթին քարոզչական գործերով, ճամփորդում էր Շիրվանում։ Շամրան (իմա Շամբրան) քաղաքում նրան հաջողվեց ձեռք բերել Գրիգոր Տաթևացու «Գիրք Հարցմանցի» մի ձեռագիր (հշտկ. № 161, էջ 123)։

Նույն Շմավոն եպիսկոպոսը, որը, ըստ երևույթին, գրասեր մի անձնավորություն էր, վերը նշված իր ճամփորդության ժամանակ, Շամախի քաղաքում ևս գնել էր ձեռագիր մի գիրք (Իգնատիոսի «Մեկնութիւն Ղուկասու Ավետարանին», տե՛ս հշտկ. № 160, էջ 123)։

Տվյալներ կան այն մասին, որ մեծ քանակությամբ հայեր կային նաև Դերբենդի շրջակայքում։ Այստեղ ԺԶ. դարում հայերը ունեին իրենց գերեզմանատունը, իսկ Նիզաբադի մոտ կար հայկական գյուղ։ Կասպից ծովում հայ վաճառականները պահում էին նաև առևտրական նավեր (այդպիսի մի նավ 1579 թվականին Հակոբ անունով մի հայ վաճառականից գնեցին անգլիացիները, տե՛ս «Ուղեգրություններ», Ա, էջ 442—443)։

Հայ առևտրականներն ու արհեստավորները որոշ դեր էին կատարում նաև Հարավային Ադրբեջանի բոլոր նշանավոր քաղաքներում՝ Թավրիզում, Մարաղայում, Արդաբիլում, Սուլթանիայում և այլ վայրերում։

Սերտ կապեր ունենալով իտալական քաղաքների հետ, ծանոթ լինելով եվրոպացիների վարքուբարքին և իմանալով եվրոպական լեզուներ հայ վաճառականներից ոմանք հաճախ ստանձնում էին նաև դիվանագիտական ծանրակշիռ հանձնարարություններ։ Կարա-Կոյունլու և Աղ-Կոյունլու գահակալների կողմից մեծապես հարգված այդպիսի նշանավոր մի վաճառական էր խոջա Միրաքը, որը 1486 թվականին նահատակվեց Թավրիզում։ Երեք այլ դիվանագետների ընկերակցությամբ 1469 թվականին Ուզուն-Հասանի կողմից խոջա Միրաքը ուղարկվել էր Վենետիկ, Հռոմ ու Նեապոլ՝ Թուրքիայի դեմ ռազմական դաշինք կնքելու առաջարկով։ Նրա ոճրագործ սպանության մասին, տեղեկություն ստանալով մի ջենովացուց՝ մանրամասն տվյալներ է հաղորդում Ջոզեֆա Բարբարոն, ինչպես նաև մի շարք հայ վարքագիրներ ու հիշատակագիրներ (Մատենադարան, ձեռ. № 8452, էջ 88ա—89բ, № 6273, էջ 343 և այլն)։

Հիշատակարանները հնարավորություն են ընձեռում որոշ տվյալներ քաղել նաև Վրաստանի քաղաքներում՝ Թբիլիսիում, Գորիում և Ախալցիխեում բնակություն հաստատած հայերի, մասամբ նաև նրանց զբաղմունքի ու վիճակի մասին։



94—8

*Մեծ հետաքրքրություն է ներկայացնում, հատկապես, 1462 թվականին Թբիլիսիում շարադրված մի հիշատակարան, որը դժբախտաբար, մատչելի է մեզ սխալաշատ մի ընդօրինակությամբ։ Հիշատակարանը հնարավորություն է տալիս պարզելու, որ թշնամիներին և ավազակային խմբերին հակահարված տալու և իրենց կյանքն ու գույքը պաշտպանելու համար՝ քաղաքներում գոյություն ունեին աշխարհազորային ջոկատներ։*

*1462 թվականի զատկի նախօրեին (ապրիլի 22-ին) հազար հոգուց բաղկացած թուրքական ինչ-որ հրոսախումբ հարձակվում է ու գերում Հավճալայու (իմա՝ Ավճալա, Թբիլիսիի արվարձաններից) տավարը։ Այս լուրը երբ տարածվում է քաղաքում, իսկույն ավազակներին հակահարված տալու վճռականությամբ, նրանց դեմ են ելնում 200 քաջ տղամարդիկ։ Սակայն նրանք սխալ տվյալներ ունեին թշնամու ուժի մասին, կարծում էին որ «քիչ հեծել է»։ Եվ երբ, հետապնդելով թշնամու 20 հոգուց բաղկացած խմբին, նրանք անցել էին՝ «ինչուր ի Լաւճին, ի ջրի էն գեհն. հետևակ, ղադրած, նետերն հատած, և անորոշ (՞), և անսլեհ», երկու կողմից շրջապատվում են թշնամու հիմնական ուժերի («մեծ հեծելի») կողմից, և անհավասար կռվում՝ իսպառ բնաջնջվում։ Բարբարոս ավազակներն իրենց հետ տանում են սպանվածների գլուխները, այնպես որ տարաբախտ քաղաքացիները չեն կարողանում ճանաչել իրենց հարազատների դիակները։*

*Հիշատակագիրը դառն կսկիծով շարադրելով այս տխուր եղելությունը իրավացիորեն նկատում է, որ Թբիլիսիի հայերի համար այդ տարվա զատիկը «սև զատիկ» եղավ (հշտկ. № 216, էջ 169)։*

*Բացի արժեքավոր այս հիշատակարաններից մեզ հետաքրքրող տասնամյակում Թբիլիսիում շարադրվել են հինդ այլ հիշատակարաններ ևս։ Նրանցից մեկում, ինչպես նշել ենք, տեղեկություն կա այն մասին, որ ԺԵ. դարի 50-ական թվականներին Թբիլիսիում կար Ստեփանոս րաբունու կողմից գլխավորվող վանական մի դպրոց (հշտկ. № 22, էջ 17—18)։*

*Բնակություն հաստատելով հարևան երկրներում, հայ արհեստավորներն ու վաճառականները, ստեղծարար ու տքնաջան աշխատանքով նպաստում էին քաղաքային կյանքի զարգացմանը և դրացիական ջերմ կապեր հաստատում իրենց հյուրընկալող ժողովրդների հետ։ Հայ ժողովրդի ստեղծած դարավոր կուլտուրան, կուլտուրաների շփման ու փոխազդեցության համար նպաստավոր այս պայմաններում հարստանում էր նոր արժեքներով և, իր հերթին, բարերար ազդեցություն գործում հարևան ժողովուրդների կուլտուրայի վրա։*

*Հայաստանի և հարևան երկրների հայաբնակ քաղաքների մասին մեր գիտելիքները, ինչպես տեսանք, մանրամասն չեն։ Առկա տվյալների մեծ մասը վերաբերում է միջազգային տարանցիկ առևտրի բնագավառում այդ քաղաքների խաղացած դերին։ Ներքին շուկայի, քաղաքների ու նրանց մերձակա գյուղերի տնտեսական կապերի ու փոխհարաբերության հետ առնչվող մի շարք կարևորագույն հարցեր մնում են դեռևս լուսաբանության կարոտ։*

*Մեծ հավանականությամբ պետք է ենթադրել, որ հիշատակված քաղաքներից շատերը, կարավանային ճանապարհների հանգրվան լինելուց բացի, այս կամ այն չափով պահպանել էին իրենց նշանակությունը որպես արհեստագործության կենտրոններ։ Ուստի, չնայած գյուղատնտեսության նատուրալ բնույթին, չպետք է կասկածել նաև այն բանում, որ այս կամ այն չափով ապրանքափոխանակություն էր կատարվում քաղաքների ու գյուղերի, ինչպես նաև*

Հայաստանում հաստատված խաշնարած քոչվոր ցեղերի և նստակյաց հայ երկրագործների միջև։

Գրիգոր Տաթևացին «Երգ երգոցի» իր մեկնության մեջ գրում է. «Ոչխարաբոյծք սովոր են վաճառել զմիս և զծրագու և առնուլ զհաց ոչ վասն աղքատութեան, այլ զի ոչ պարապին գործել զհաց՝ ի դարմանս խաշանց գոլով» (Մատենադարան, ձեռ. № 1264, էջ 44։ Հմմ. նաև Հովհան Կոլոտիկի «Մեկնութիւն Եսայեայ», Մատենադարան, ձեռ. № 1128, էջ 150ա)։

Միս ու ճարպ վաճառելով խաշնարածները գնում էին ոչ միայն հաց ու գյուղատնտեսական ուրիշ մթերքներ, այլև, անտարակույս, արհեստագործական արտադրանքի տարբեր տեսակներ, որոնք արտադրվում էին հայկական քաղաքներում։ Հիշատակարանները և օժանդակ այլ աղբյուրներ հնարավորություն են տալիս հավաստելու արհեստի շուրջ 30 տարբեր մասնաճյուղերի գոյությունը ԺԴ.—ԺԵ. դարերի հայկական քաղաքներում։ Ստորև, այբուբենական շարքով թվարկում ենք այդ արհեստները.

Աղեգործ (Ջուղ.)*
Աղեղզուգ (Հշտկ. № 147, էջ 111)
Անծուղագործ (Ջուղ.)
Արծաթագործ (Ջուղ.)
Բարակգործ (Հշտկ. № 189, էջ 149)
Բրուտ (ԺԵ. դարի Հշտկ., Ա, էջ 434, 457)
Գդակկար (Հշտկ. № 183, էջ 144)
Դաբաղ (Հշտկ. № 25, էջ 21)
Դանկրար կամ դանակագործ (իմա՛ սրեր ու թրեր պատրաստող արհեստավոր — ԺԴ. դարի Հշտկ., Ա, էջ 363, 366, 370)
Դարբին (ԺԵ. դարի Հշտկ. Ա, էջ 43, 193, 629, Հշտկ. № 151, էջ 114, № 180, էջ 240 և այլն)
Դերձակ (ԺԵ. դարի Հշտկ., Ա, էջ 167, 536)
Խազագ (իմա՛ մետաքս մշակող—Հշտկ. № 321 էջ 253)
Կերպասագործ (Հշտկ. № 177, էջ 135)
Կոշկակար կամ Կաւշկար Հշտկ. № 274, էջ 227, Բ. Սարգսյան, Ցուցակ, հատ. Բ, 482)
Կտաւգործ (ԺԵ. դարի Հշտկ., Ա, էջ 363, 365)
Հիւսն (Հշտկ. № 101, էջ 73, № 393, էջ 313 և այլն)
Ճարտարապետ (ձեռ. № 7274, էջ 320բ)
Ճոն (Հշտկ. № 103, էջ 75, № 320, էջ 253)
Մազման (ԺԴ. դարի Հշտկ. Ա, էջ 274)
Նալբանդ (ձեռ. № 7979, էջ 296ա)
Նաղաշ (Հշտկ. № 97, էջ 71, № 156, էջ 119 և այլն)
Նաղարանի (Հշտկ. № 357, էջ 91բ)
Նետարար (ձեռ. № 293, էջ 13ա)
Ներկարար (Հշտկ. № 214, էջ 167, № 337, էջ 265)։

---

* Յուրաքանչյուր արհեստի անունը տալուց հետո, փակագծերի մեջ տալիս ենք հիշատակարանի համարը, որի մեջ հիշված է այդ արհեստի տեր որևէ անձնավորություն, կամ այն աղբյուրը, որից քաղված է տվյալ արհեստի գոյության մասին տվյալը։ «Ջուղ.» համառոտությամբ նշում ենք մեր «Մատթեոս Ջուղայեցու կյանքն ու մատենագրությունը» հոդվածը (տե՛ս «Բանբեր Մատենադարանի», № 3, 1956 թ., էջ 78—79)։

**Ոսկերիչ** *կամ* **ոսկեգործ** *(Հշտկ. № 181, էջ 141, № 358, էջ 278 Մտնդ., ձեռ. № 9422-ի կազմը, № 7274, էջ 320բ և այլն)*

**Ոստայնանկ** *(Զուգ.)*

**Պատկերահան** *(Հշտկ. № 448, էջ 554)*

**Պարանգործ** *(Զուգ.)*

**Պղնձգործ** *(Հշտկ. № 357, էջ 277, № 544, էջ 430)*

**Ջուլհակ** *(Հշտկ. № 31, էջ 25)*

**Քարգործ** *կամ* **Քարտաշ** *(Հշտկ. № 468, էջ 371 և Եսայի Նչեցի, Մկն. Եզեկիէլի)*

**Քսակակար** *(Հայոց նոր վկաները, էջ 157)*։

*Անտարակույս մեր ցանկը խիստ թերի է. նրանից բացակայում են մի շարք արհեստներ, որոնք, անտարակույս, կային հայկական քաղաքներում սակայն չեն հիշատակվել (օրինակ՝ թամբագործ, կաշեգործ և բազմաթիվ այլ արհեստներ), սակայն նպատակահարմար գտանք թվարկել միայն այն արհեստները, որոնց մասին, ինչպես ասացինք, տվյալներ կան ԺԴ.—ԺԵ. դարերի հիշատակարաններում և, մասամբ էլ, նույն շրջանի այլ աղբյուրներում։*

*Դժվար չէ համոզվել այն բանում, որ արհեստագործության թվարկված մասնաճյուղերի արտադրանքը, ի բացառյալ մի-երկուսի, չէր կարող բնավ, կամ մեծ չափով վաճառահանվել հեռավոր շուկաներում, ուստի և, բնականաբար, սպառվում էր հիմնականում տվյալ քաղաքի շրջակայքում գտնվող գյուղերում և քոչվոր ցեղերի ամարանոցներում ու ձմերանոցներում։*

*Խիստ անբավարար ու միակողմանի են սկզբնաղբյուրներում պահված տվյալները նաև կարավանային երթևեկության ձևերի, քաղաքացիների անձի ու գույքի ապահովության, առևտրականներից ու արհեստավորներից գանձվող հարկերի և հարակից այլ հարցերի մասին։ Այնուամենայնիվ, որոշ հնարավորություն ունենք թեթևակիորեն շոշափելու նաև այդ հարցերը։*

*«Վաճառականն, որ զբեռն է բարձեալ և ունի զկնիք թագաւորին՝ խաղաղութեամբ երթայ զճանապարհն իւր»,—լավատեսորեն գրել է իր քարոզներից մեկում Գրիգոր Տաթևացին (Քարոզգիրք, ամարան հատոր, էջ 731), սակայն մեզ հետաքրքրող տասնամյակներում բոլոր ճանապարհների վրա վխտում էին ավազակային սպառազեն խմբեր, ուստի և հաճախ խաղաղությամբ չէին ավարտում իրենց ճանապարհը ոչ միայն թագավորական կնիք (թամղա) ունեցող վաճառականները, այլ նույնիսկ արքունի պաշտոնյաներն ու դեսպանները։*

*Ջոզեֆա Բարբարոն 1474 թվականի ապրիլի 3-ին, Ուզուն-Հասանի կողմից Վենետիկ ուղարկված և հայրենիք վերադարձող մի դեսպանի ընկերակցությամբ դուրս եկավ Խիզանից, բռնելով Թավրիզ տանող ճանապարհը։ Կես օրվա ճանապարհ հազիվ էին կտրել բարձրաստիճան ուղևորները, երբ մի բարձր լեռան վրա՝ հարձակում կրեցին քրդերից։ Ավազակները, ինչպես պատմում է Բարբարոն, «սպանեցին հիշյալ դեսպանին, իմ քարտուղարին և տրիշ երկուսի, և վիրավորած լինելով ինձ ու մնացյալներին, նրանք առին մեր բեռները և ուրիշ ինչ որ գտան» (Ուղեգրություններ, Ա, էջ 183)։ «Նրանք (քրդերը),— շարունակում է Բարբարոն,— ունեն շատ քաղաքներ (խոսքը անշուշտ, բերդերի ու ամրությունների մասին է—Լ. Խ.) շինված բարձր վայրերում ու եզերքներում, հսկելու համար բոլոր ճանապարհներին, որպեսզի կարողանան կողոպտել անցորդներին» (Նույն տեղում, էջ 183)։*

*Այսպիսի պայմաններում, բնականաբար, առևտրական կարավանները*

պետք է շրջեին զինված շոկատների ընկերակցությամբ և ամեն մի խոջա դրամի քսակները հաշվելու կարողությունից զատ, քաջ ծանոթ պետք է լիներ նաև զենքի գործածությանը։ Մատթեոս Ջուղայեցին իր աշխատություններից մեկում ուղղակի հայտնում է, որ առևտրականները որևէ երկիր մեկնելուց առաջ մեծ պատրաստություն պետք է տեսնեն և զենք ու հեծյալ պետք է ունենան իրենց հետ՝ ավազակների հարձակումներից ապահով լինելու համար. «Արդ,— գրում է նա,— որք կամին յերկրէ յերկիր երթալ՝ բազում ինչ խորհին և ապա ընթանան...։ Զի զէնք և հեծեալս առնուն ընդ յինքեանց (ճանապարհորդք), զի թշնամիքն յաղթեալ սատակեսցեն զնոսա» (Մատենադարան, ձեռ. № 2229, էջ 160բ)։

Թե որքան վտանգավոր ու արկածալից է եղել առևտրականի կյանքը մեզ հետաքրքրող ժամանակաշրջանում, այդ մասին պերճախոս տվյալներ է հաղորդել Հովհաննես Մանդասարենց գրիչը, 1465 թվականին, արճիշեցի տղբացյալ մայր Խալիմ-Խաթունի պատվերով ընդօրինակած Ավետարանի հիշատակարանում։ Այս Խալիմ-Խաթունի «գեղեցիկ ու քաղցրատես» Կարապետ որդին, որ առևտրական գործերով մեկնել էր Սուլթանիա՝ «ի դառնալն ի տուն մատնեցաւ ի ձեռս արեանարբու ջալատ տաճկաց, որ անմեղ նահատակեցին սրով և խանջալոյն»։ Մյուս որդին՝ խոջա Հովհաննեսը, նույնպես երիտասարդ հասակում «յԻսպահան սրով սպանաւ ի ձեռաց անաւրէն հարամկաց»։ Ավաղ եղբայրների վտանգավոր շավղով ընթացավ նաև Խալիմ-Խաթունի փոքրիկ որդի Եզդանբաշխը, «և նա տղայ հասակաւ գնաց ի վաճառ յԱրևելս»։ Սակայն դարձի ճանապարհին, Թավրիզում, ինչ-որ հիվանդությունից վախճանվեց նաև այս ընտանիքի երրորդ ներկայացուցիչը։ «Եւ ողորմելի հայր սոցա Գրիգորն,— հայտնում է Մանդասարենցը,—խոց սրտով և դառն կենաւք գնաց տարադէմ յԻսպահան վասն որդոյն Յօհանիսին, և ի դառնալն հեծեծանօք կսկծու մահ եղև ի յՍօլթանիա» (Հշտկ. № 287, էջ 235—236)։

Արճիշեցի տարաբախտ այս ընտանիքի կրած ծանր հարվածներին, այս կամ այն չափով, ենթակա էին բոլոր հայ վաճառականները, որոնք երթևեկում էին միջազգային նշանակություն ունեցող վտանգավոր ճանապարհներով։ Կարապետ գրիչը 1451 թվականին ընդօրինակած Ավետարանի հիշատակարանում տվյալներ է հաղորդում վանեցի մի կնոջ՝ Փաշայի հարազատների մասին։ Սրա Սուլթանշահ եղբայրը «ի ճանապարհ գնաց և ոչ գիտացին թէ զինչ եղև», իսկ որդին՝ Ջանիբեկը նահատակվեց Խիզանում «և զմարմինն էլ ոչ եգիտ հայր նորա, և այն խոցովն և լալովն եմուտ ի գերեզման» (Հշտկ № 5, էջ 6)։

Հարուստ ու փարթամ քաղաքացիների կյանքն ու գույքը անապահով էր ոչ միայն կարավանային ճանապարհների վրա այլև իրենց հայրենական հարկի տակ։

Երբեք բռնավոր ու ագահ տերերը միջոցի առաջ կանգ չէին առնում շորթելու համար քիչ թե շատ հարուստ իրենց հպատակների գույքը։

«Յետ մահուան հօրն բռնաւորքն շոպռեն զինչքն»,—գրում է Գրիգոր Տաթևացին («Լուծմունք Յոբայ», Մատենադարան, ձեռ. № 1115, էջ 51ա)։

«Բազում անգամ աղքատ հանգիստ ի քուն լինի, իսկ մեծատունն կալեալ կապեն և կոտեն, մինն հազար խնդրելով և մեւսն բեւր»,— լրացնում է իր ուսուցչին Մատթեոս Ջուղայեցին («Ի գլխոյն Ղուկասու հաւաքումն բանից», Մատենադարան, ձեռ. № 5232, էջ 93ա)։

Իսկ Կարապետ Բերկրեցի գրիչը 1501 թվականին շարադրած իր հիշատա-

կարանում, անշուշտ բազմաթիվ զեպքերի ականատես լինելով, հայտնում է, որ «ամէն պարոն զիւր տեղաց անուանի մարդն տաւգանէր և թալանէր» (Մատենադարան, ձեռ. № 1591, էջ 389ր)։

Այդպիսի պարոններից մեկն էր Սպատկերտի քուրդ ամիրը, որը 1432 թվականին բանտ էր նետել անմեղ մի հայ քահանայի և մի տարի պահելով բանտում՝ կողոպտել էր նրա ողջ ունեցվածքը։ Այս մասին ուշադրության արժանի տեղեկություն է պահպանվել Ամիրզա դպրի վկայաբանության մեջ։ Այս Ամիրզան «յաւուր տօնի գլխատման սուրբ Կարապետին գնաց առ ամիրայն իւր ի սալամ»։ Քուրդ ամիրի և Ամիրզա դպրի միջև տեղի է ունենում հետաքրքրական խոսակցություն։

Ամիրն ասում է. «Տանեկացիր և ես տամ քեզ զինչ և կամիս։ Եւ ասաց սուրբն (իմա՛ Ամիրզա դպրինը)՝ տուր ինձ խլայ զայն քահանայն, որ տարի մի անպարտ ի բանտին կոճեր ևս և թալաներ և զինչսն առեր» և այլն (Մատենադարան, ձեռ. № 4515, էջ 139—140)։

Այսպիսով, չնայած հայ խոջաներից ու այլ զբաղմունքի տեր քաղաքացիներից ոմանց տարբեր ճանապարհներով հաջողվում էր մեծ հարստություն կուտակել, տեր դառնալ շարժական ու անշարժ կալվածքների, այնուամենայնիվ նրանց գույքը երբեք ապահովված չէր տիրողների կողմից բռնագրավվելու վտանգից։

## է

Հայ ժողովրդի իրավական, սոցիալական ու տնտեսական վիճակը ԺԵ. դարի երկրորդ հիսնամյակում տեսանք, որ շատ ծանր էր։ Սակայն պատկերը թերի ու անավարտ կլիներ, եթե հատուկ չանդրադառնայինք Կարա-Կոյունլուների ու Աղ-Կոյունլուների հարկային քաղաքականությանը, չպարզեինք հայ ռայաթներից գանձվող հարկերի և տուրքերի տեսակներն ու չափերը։

Ջհանշահի թագավորության տարիներին Հայաստանի տարբեր շրջաններում շարադրված հիշատակարաններում բազմաթիվ վկայություններ են գրանցվել հարկային կեղեքիչ քաղաքականության մասին։ 1453 թվականից հետո, երբ Ջհանշահը սկսեց Թամուրյանների դեմ իր արշավանքները, հպատակ ժողովուրդների, որոնց թվում և հայերի հարկային լուծը առավել ծանրացավ։

1454 թվականին Բաղենից վանքում շարադրված մի հիշատակարանի մեջ ասված է, որ «յոյժ ճշդիւ հարկապահանջութեամբ տառապի ազգս Հայոց ի ձեռն չար բռնակալացն Թուրքաց» (Հշտկ. № 53, էջ 42. հմմ. նաև № 77, էջ 57)։ 1465 թվականին, Գեղարքունյաց գավառի Կած գյուղում շարադրած իր հիշատակարանի մեջ Հովհաննես անունով մի գրիչ հայտնում է, որ ձեռագիրն ընդօրինակել է «ի դառնացեալ ժամանակիս, յորում նեղիմք յանօրինաց բռնութենէ, եւս առաւել ի կրկնակի հարկապահանջութենէ» (Հշտկ. № 282, էջ 231)։

Հարկային գիշատիչ այս քաղաքականությունը կարճ ժամանակով դադար առավ Աղ-Կոյունլուների դինաստիայի հաղթանակից հետո։ Ուզուն-Հասանը, անցնելով իշխանության գլուխ, հարկահանության գործը կարգավորելու և պետական պաշտոնյաների ու ֆեոդալների անլուր չարաշահումների առաջն առնելու նպատակով, հրատարակեց օրինական հարկերի տեսակների, նրանց չափերի ու հարկահավաքման ձևերի մասին «Կանուն-նամե» կոչվող օրենքների գիրքը։ Այս միջոցառումներով Ուզուն-Հասանի թագավորության առաջին տարիներին փոքր-ինչ բարվոքվեց հպատակ ժողովուրդների տնտեսական վիճակը, սակայն շատ կարճատև ժամանակով։

Ուզուն-Հասանի թագավորության վերջին տարիներին, մանավանդ նրա անմիջական հաջորդ Յաղուբի ժամանակ, հարկահանության բնագավառում չարաշահումները մտան իրենց տրադիցիոն հունի մեջ, ոչինչ չթողնելով Ուզուն-Հասանի բարենորոգումներից։

Հպատակ ժողովրդների դրությունն ավելի ծանրացավ դարավերջին, երբ Աղ-Կոյունլուների պետությունը սկսեց հոգևարքի ցնցումներ ապրել։

1497 թվականին շարադրված մի հիշատակարանի մեջ գրանցված են այսպիսի հատկանշական տողեր. «Ի չփոթ և ի դառն ժամանակիս, յորում նեղեն և հարկապահանջեն զքրիստոնեայքս յամենայն կողմանց վասն անչափ մեղաց մերոց» (Մատենադարան, ձեռ. № 4154, էջ 221ա)։

1498 թվականին Վայոց-ձորում ասպատակում էր Յաղուբ փադիշահի որդիներից՝ դահի հավակնորդ Մուրադ-խանը. սա «տանջէր զաշխա[րհա]կանս և զկարգաւորքս և առէր. տուք դշիրղայն (իմա՝ չիզիան), թաւուժ-ի չիզրայն, թասխիր-ի թա[ա]ուժ» (Մատենադարան, ձեռ. № 960, էջ 307ա)։

Ամիրների ամիր Այբա-Սուլթանը, որ ԺԵ. դարի 90-ական թվականներին ամենաազդեցիկ դեմքն էր Աղ-Կոյունլուների փլզվող պետության մեջ, 1498 թվականին «էած աւեր աշխարհի. զերեք տարէն մալն Գ. (3) ամսումն էառ» (Մատենադարան, ձեռ. № 3629, էջ 289բ) և այլն։

Կարելի էր մեջ բերել նաև բազմաթիվ այլ վկայություններ, որոնց մեջ, նման արտահայտություններով, հիշատակագիրները անդրադառնում են հարկապահանջության հարցին և խոսում ժողովրդի տնտեսական խիստ ծանր կացության մասին, սակայն հարկի տեսակների ու չափերի որոշման գործին այդ կարգի վկայությունները քիչ են օգնում։ Շատ ավելի առատ նյութեր կան հայերեն լեզվով պահպանված նվիրաբերական ակտերի, հայ որոշ մատենագիրների աշխատությունների մեջ, ինչպես նաև Կարա-Կոյունլու և Աղ-Կոյունլու գահակալների պարսկերեն հրովարտակներում ու պաշտոնական այլ կարգի փաստաթղթերում, որոնց տվյալներն ամփոփված են Ի. Պետրուշևսկու և Հ. Փափազյանի արժեքավոր ուսումնասիրություններում (տե՛ս И. П. Петрушевский, Государства Азербайджана в XV веке. Նշվ. աշխ. էջ 190—192, և Հ. Փափազյանի «Մատենադարանի պարսկերեն հրովարտակները» աշխատության Ա պրակի ծանոթագրերը ու հարկային սոցիալական, վարչական և այլ տերմինների բառարանը, էջ 103—123)։

Անդրադառնանք այդ նյութերին, խմբավորելով դրանք հարկային հիմնական տերմինների շուրջը։

1. **Պետական ռենտա — հարկ.** Աղբյուրներում հիշատակվում է տարբեր անուններով՝ մալ կամ մալոշահաթ, բահրա կամ բահրաչե և խարաջ։

Ռենտա-հարկի հիմնական մասն էր կազմում և գանձվում էր եկամտաբեր բոլոր օբյեկտներից՝ գյուղական համայնքի օգտագործման տակ եղող վարելահողերից ու արոտավայրերից, մասնավոր սեփականություն դարձած այգիներից, արտերից և այլն։

Գանձվում էր բերքի կամ արդյունքի մեկ-հինգերորդի չափով։ Մատթեոս Ջուղայեցին իր «Մի գողանար» բնաբանով քարոզում ծածուկ գողերի շարքին դասելով իշխանին տրվելիք «հաս»-ը չվճարողներին, հայտնում է, որ «օրէն է... ի Ե. (5)-էն մին իշխանին լինել, քանզի գինք արեան նորա են։ Արդ, եթէ ոք խորէ անդի, որպէս և մեծ է իշխանն՝ նոյնպէս և մեղք նորա. պարտական լինին արեան նորա» (Մատենադարան, ձեռ. № 969, էջ 151բ)։

*Հակահաննների չարաշահումներից զերծ մնալու մտահոգությամբ գյուղական համայնքները պայքարում էին մալի որոշակի չափ սահմանելու համար. և այդ հարկը հիմնականում գանձվում էր հարկային մատյաններում դրանցված անխախտ չափերով՝ ողջ գյուղական համայնքից։*

*Թե ի՞նչ սկզբունքով էր համայնքի անդամների վրա բաշխվում ըստ հարկային ցուցակների ողջ գյուղական համայնքից գանձվելիք հարկը, հնարավոր է լինում ընդհանուր գծերով պարզաբանել շուրջ 1504 թվականին շարադրված մի հիշատակարանի տվյալներով։ Այդտեղ մանրամասնորեն նկարագրվում են Արճեշի բնակիչների կրած տառապանքները քաղաքը ղզլբաշների կողմից գրավելուց հետո։ Նոր բռնակալները քաղաքացիներից պահանջում են ահռելի քանակությամբ՝ 400 բյուր, այսինքն՝ 4 միլիոն զահեկան մալ։ Պահանջվող գումարը բաժանվում է բնակչության վրա ըստ շնչաքանակի ու գութանի. «Եւ անկան յամէն գլուխ ԴՌ. (4000) դեկան և յամէն դութան ԺՌ. (10.000) դեկան»,— դրված է հիշատակարանում։*

*Մեծ հավանականությամբ կարելի է ենթադրել, որ մալի բաշխման այս ձևը, երբ որպես հարկադրման միավոր հաշվի էին առնվում և՛ տվյալ վայրի բնակիչների շնչաքանակը, և՛ գութան (իմա գութանի սարքը, անհրաժեշտ քանակությամբ, առնվազն 3 լուծ, եզներով) ունենալու հանգամանքը, սեֆյանների նորմուծությունը չէր, այլ գալիս էր նախորդ շրջանից։*

*Եկամտաբեր այս կամ այն օբյեկտից գանձվող մալը ամբողջությամբ կամ նրա մի մասը պետության կողմից, որպես «ուլուֆե» (կեր, ռոճիկ), հաճախ, հանձնվում է զինվորական ու պետական պաշտոնյաներին։ Նրանք, ունենալով իրենց ձեռքում համապատասխան փաստաթուղթ (հավալե), ներկայանում էին անձամբ, կամ իրենց կողմից լիազորված մարդկանց միջոցով և ստանում մալի իրենց հատկացված բաժինը՝ տվյալ գյուղական համայնքի տանուտերերից։*

*Պետական ռենտա-հարկի վճարման այս ձևը արտահայտություն է գտել հայ ժողովրդական առակներից մեկում. աղվեսը, գտնելով մի թղթի կտոր, տալիս է այն գայլին ասելով. «Այս չափ ժամանակս աշխատել եմ և զմարդիկ բարեխօս եմ ձգեալ և ի պարոնէն դիր և հուքմ եմ հանեալ, որ յամէն դեղ և յամէն դեհ, ուր հանդիպիս, ոչխար մի քեզ տան և յամէն տուն հաւ մի քեզ բաժին հանեն... գնա, առ զքո ոլոֆայն»։ Առակի տարբերակներից մեկում աղվեսը բացատրում է, որ այդ թուղթը պետք է ներկայացնել «ի գեղին տանուտէրքն», այնտեղ նշված չափով «ոլոֆայ» ստանալու համար (Մ. Մառ, Ժողովածոյք առակաց Վարդանայ, մասն Բ, էջ 85—86)։*

**2. Կալվածատիրական ռենտա.** *Կոչվում է տասանորդ, մուլք, մալիքանե, բահրաշե-յե մալիքանե, ուջրաթ-ուլ մասալ։*

*Գանձվում էր բերքի կամ արդյունքի մեկ-տասներորդի չափով։*

*Այս հարկի չափի մասին կարևոր տվյալ է պահպանվել 1480-ական թվականներին Վանում գրանցված ստորև բերվող ուշագրավ փաստաթղթի մեջ. «Ո՛վ հարք և եղբարք, ընթերցողք և լսողք յիշեցէք ի սուրբ յաղօթս ձեր զՎանայ տանուտէ[ր]քն՝ զխոջայ Արապշէն, և զխոջայ Խդրշէն, և զխոջայ Մուրատշէն, և զըռէս Խումարշէն, և զտանուտէրքս՝ զմեծ և զփոքր, որ ի Սուլիման-բէկի աւուրքս բազում բարութիւնս արին, զի ջանն խափանեցին; և զդահիանզդէն վերուցին, որ զմլքանէն տասնէն մէկ առնուն, ու զքահանայքն յանօրինաց հարկապահանջութենէն ազատեցին» (Մատենադարան, ձեռ. № 5315, էջ 576ա)։*

Փաստաթղթի մեջ խոսվում է քրիստոնյաների համար վիրավորական չվան կապելու տարբերանշանի վերացման և Վանի հոգևորականությանը դահյանզդահ (բառացի՝ տասն-տասնմեկ) հարկից ազատելու մասին։ Հարկային նորալուր այս տերմինը, անտարակույս, համանիշ է մուլք, մալիքանէ և վերոհիշյալ մյուս տերմիններին, որո՛նք բոլորն էլ ունեին հողային ռենտայի կալվածատիրոջը վճարվող բաժնի իմաստը։ Պարզվում է, ուրեմն, որ կալվածատիրական ռենտան գանձվում էր բերքի մեկ-տասներորդի չափով («որ զմլքանէն տասնէն մէկ առնունս»)։

Մլքի չափի մասին հիշատակության արժանի տվյալ է պահպանվել նաև Դադի վանքի զանգակատան արձանագրության մեջ։ Դոփյան իշխանական տան մի քանի պայազատներ նվիրում են իրենց վանքին մի շարք կալվածքներ, ի ձեռն Ավագ եպիսկոպոսի։ Նրանք արձանագրում են. «տուաք Աւագ եպիսկոպոսին, որ մեր ճոճաւոր էր, քանի որ իւր պէտք է՝ վարէ, աստուծով ազատ է։ Իսկ եթէ այլ մարդ վարէ, տասանորդն առնու և տայ վանքին անպատճառ» (Մ. Բարխուդարեանց, Արցախ, Բագու, 1895, էջ 209)։

Այստեղից ևս պարզ է դառնում, որ հողատերը, տվյալ դեպքում վանքը, գանձում էր կալվածատիրական ռենտա բերքի մեկ-տասներորդի չափով («տասանորդ»)։

3. Գլխահարկ. Աղբյուրներում, կոչվում է ջիզյա, երբեմն նաև խարաջ։ Գանձվում էր, հիմնականում, ոչ մուսուլման հպատակներից՝ քրիստոնյաներից ու հրեաներից, հենց որ նրանք չափահաս էին դառնում։

Որոշակի տարիք չկար գլխահարկման համար սահմանված։ Հարկային պաշտոնյաները, որոշելու համար թե՝ այս կամ այն պատանին ենթակա է հարկման, թե ոչ, կիրառում էին այսպիսի միջոց՝ թելով չափում էին երեխայի վիզը և ստացված երկարությամբ թելի ծայրերը ատամներով բռնել տալով՝ փորձում էին՝ այդ թելի օղակը անցկացնել նրա գլխով։ Եթե թելը չէր անցնում գլխով, ապա պատանին համարվում էր չափահաս, ուստի հարկատու*։

Հարկադրման այս ձևը կիրառվում էր նաև ԺԸ. դարում։ Այդ մասին վկայում է Ստեփանոս Ջմշկածագցի բանաստեղծ-գրիչն իր ընդարձակ հիշատակարանում, որից քաղվածքներ արեցինք քաղաքական պատմությունը շարադրելիս։

Նա գրում է.

«Հարկապահանջն յամէն տեղի
Քաշէ ծեծէ զազգըս Արամի.
Խընդրէ արծաթ 'ւ ընտիր ոսկի,
Յայնմ, որ չունի փող պըղնձի։
Կապուտ նշան եդ քրիստոնեաց,
Զի բաժանին յանօրինաց.
Զմեռեալն ի ցած տանել ասաց,
Չուանով չափել զվիզս մանկանց...»

ԺԸ. դարի տարբեր տարիներից գլխահարկի չափի մասին ունենք ուշադրության ու քննության արժանի վկայություններ։

* ԺԷ. դարի նշանավոր պատմագիր Զաքարիա սարկավագը կենդանի ու ճշմարտացի գույներով նկարագրում է հարկերի վերակացու Ասլան աղայի գործունեությունը իր հայրենի Քանաքեռ գյուղում, մանրամասն բացատրելով նաև այն հնարները, որոնցով այդ խորամանկ ու արնախում պաշտոնյան «որոշում էր» երեխաների չափահասությունը (տե՛ս Զաքարիա սարկաւագի Պատմագրութիւն, Վաղարշապատ, 1870, էջ 66)։

*Այսպես, Թովմա Մեծոփեցին իր «Պատմության» մեջ խոսում է Կարա-Կոյունլուների վասալներից մեկի՝ քուրդ ամիր Փիր-Ալու կամ Փիրի-բեկի մասին, որի ձեռքում էր գտնվում 1430-ական թվականներին Ամուկ բերդը։ Սա «տէր և իշխան» կարգվելով Քաջբերունյաց շրջանին (շուրջ 1435 թ.), Մեծոփեցու խոսքերով ասած՝ «ձգեալ է զամենայն հաստատցեալս ի ներքոյ հարկապահանջութեան՝ մինչ ղի ամենայն մարդագլուխ 40 թանկայ առնուն, թող ղրահրայ եւ վշարէք՝ ի ծերոց եւ ի տղայոց, յորբոց եւ յայրեաց, յաղքատաց եւ ի տնանկաց» (Թ. Մեծոփեցի, էջ 111)։*

*Հուլավյանների ժամանակ Իրանում և Անդրկովկասում կիրառվող դրամական սիստեմի միավորը դիրհեմն կամ հայկական աղբյուրների դրամն էր, որը ԺԴ. դարի սկզբներին կշռում էր 2,15 դր արծաթ, բայց դարի վերջին, Ջելաիրյանների ժամանակ, կորցրել էր իր կշռի կեսից ավելին և բաց էր թողնվում 1,05 գր և, նույնիսկ, 0,85 գր արծաթի քաշով։ Լանկ-Թամուրի տիրապետության տարիներին (ԺԵ. դարի սկզբին) տեղի ունեցավ դրամական սիստեմի փոփոխություն և Թամուրյանների տիրույթներում գործածության մեջ դրվեց Թամուրյան թանկան, որը կշռում էր 6,2 գր մաքուր արծաթ* (Е. А. Пахомов, Манетные клады Азербайджана, Труды о-ва обследования и изучения Азербайджана, вып. 3, Баку, 1929, *էջ 29)*։*

*Այսպիսով, Թ. Մեծոփեցու հիշատակած «Մարդագլուխ 40 թանկայ» գլխահարկի տակ պետք է հասկանալ 40×6,2 այսինքն՝ 248 գրամ արծաթ։*

*1464 թվականին, Երզնկայի շրջանի Ավագ վանքում շարադրած հիշատակարանում, գլխահարկի մասին կարևոր տվյալ է հայտնում Ստեփանոս գրիչը։ Նա գրում է. «Արդ, գրեցաւ սա... ի դառն և ի դժար ժամանակի, զոր անաւրէն ազգս տաճկաց ղաւրացեալ կան ի վերայ քրիստոնէից և պահեն ի հալածանս։ Այլ և չար դարձան քան զգազան և ծարաւիք են քրիստոնէից արեան, և նոր ի նորոյ չար յայտնեն քրիստոնէից, զի զխարաճն Դ. (4) ֆլորի արարին, և կապուտ արկին ի գլուխ քրիստոնէից, և զմեռեալն ի քաշ տան տանել, և այլ չա-*

---

* *Անհրաժեշտ է նշել սակայն, որ միջնադարյան Հայաստանում գործածվող դրամական, ինչպես և չափի ու կշռի միավորների որոշման ուղղությամբ դեռևս ոչինչ չի արված, և ինչպես «թանկա» այնպես էլ «դրամ», «դահեկան» և մյուս տերմինների մասին այստեղ ասվածը ենթակա է հետագա ճշգրտման ու հիմնավորման։ Այդ հույժ կարևոր աշխատանքը կատարելիս պետք է օգտագործել ինչպես Հայաստանի Պատմական թանգարանի և այլ թանգարանների դրամական հարուստ հավաքածուների նյութերը, այնպես էլ մեր միջնադարյան մատենագրության (որոնց թվում նաև հիշատակարանների) ընձեռած տվյալները։*

*«Թանկայի» կապակցությամբ նշենք 1480 թվականին շարադրված «Առակ իմաստասիրական և բանալի մտաց մարդկան» թվաբանական խնդրի մեջ եղող տվյալը, որը թվում է, օգտակար կարող է լինել դրամագետներին. այնտեղ խոսվում է ո՛չ սովորական, այլ դրամական ավելի խոշոր միավոր հանդիսացող՝ «Թագաւորական թանկայի» մասին և ասվում, որ «այն թանկէն թագաւորական էր, որ մէկն Ե. (5) շահռօհի էր, և էր ամէն թանկայ ԻԴ. (24) դէկան, և ամէն դէկան՝ Լ. (30) պլիկ» (Տե՛ս հշտկ. № 505, էջ 444)։*

*Որոշ հետաքրքրություն է ներկայացնում նաև Երուսաղեմի ձեռագրերից մեկի 1413 թվականի հիշատակարանի ստորև բերվող հատվածը՝ ֆլորինի և դրամի հարաբերությունը պարզելու տեսակետից. «Ռ. (1000) դրամ, որ է ֆլորի ԻԲ. (22) և տվաք նոր կապել, և Թծ. (900) դրամ տվաք որ արծաթեցին, որ է ֆլորի Ի. (20), և ի Սամիսոն տվաք ոսկիջրել Գ. (3) ֆլորի, որ է ջումլայ ԽԶ. (46) ֆլորի» (Մայր ցուցակ ձեռագրաց սրբոց Յակոբեանց, երրորդ հատոր, կազմեց Նորայր եպս. Պողարեան, Երուսաղէմ, 1954, էջ 18)։*

*րիք բաղում խոկան և խրոխտան ի վերա քրիստոնէից, զոր տէր աստուած զա-ւարան ի բարին առնէ» (հշտկ. № 256, էջ 211)։*

*Ֆլորինը կշռում էր 3,5 դրամ ոսկի, ուրեմն 1464 թվականին Արևմտյան Հայաստանում, ավելի որոշակի ասած՝ Երզնկայի շրջանում, գլխահարկ էին գանձում 4×3,5 այսինքն՝ 14 գրամ ոսկի, կամ մոտավորապես 240 գրամ ար-ծաթ (եթե ոսկու և արծաթի հարաբերությունը ԺԵ. դարում համարենք 1:17)։*

*Հաջորդ տեղեկությունը, որ ունենք գլխահարկի չափի մասին, պահպան-վել է 1491 թվականին Մողնի գյուղում շարադրված հիշատակարանում։ Այդ-տեղ ասված է, որ Յաղուբ-բեկի թագավորության տարիներին «բաղում չարք յայտնեցաւ, ղի ամենայն կարգաւորէ՝ աբեղայից և յաշխարհականաց, ի միայ-նակեցիը և սարկաւագաց հարկս պահանջէին կախելով և չարչարելով Ճ. (100) թ[ան]կ[այ] աւելի և պակաս» (Մատենադարան, ձեռ. № 6293, էջ 460բ)։*

*ԺԵ. դարի վերջին թանկայի կշիռն ընկել էր ամենուրեք։ Շիրվանշահ Ֆա-ռուխ-Յասարի (1462—1500 թթ.) կարած թանկաները, օրինակ, սկզբից կշռում էին 3,0 դրամ արծաթ, իսկ վերջին տարիներին բաց էին թողնվում նույնիսկ 1,90 և 1,75 դրամ կշիռ ունեցող թանկաներ։ Այդպիսի մեծ անկում Աղ-Կոյուն-լուների կտրած թանկաների կշռի մեջ չի նկատվում, այնուամենայնիվ, 1491 թվականի թանկան լավագույն դեպքում կարող էր կշռել 4,15—4,40 գր ար-ծաթ* (Е. А. Пахомов, *նշվ. աշխ. էջ 29)։ Այսպիսով, 1491 թվականի հիշա-տակարանի մեջ նշված 100 թանկան, այն ժամանակ կիրառության մեջ եղող թանկաներով հաշված, ըստ երևույթին կշռում էր մերձավորապես 415 կամ 440 դրամ արծաթ։*

*ԺԵ. դարի տարբեր թվականներից գլխահարկի չափի մասին առկա տվյալ-ների համադրությունից ստացվում է այսպիսի պատկեր.*

*1435 թ. — 40 թանկա — 248 գրամ արծաթ*

*1464 թ. — 4 ֆլորին—14 գրամ ոսկի կամ 240 գրամ արծաթ։*

*1491 թ. — 100 թանկա — 415—440 գրամ արծաթ*։*

*Պարզ է ուրեմն, որ Ջհանշահի թագավորության տարիներին (1435 և 1464 թթ.) 240—248 գրամ արծաթով գանձվող գլխահարկը ԺԵ. դարի վերջին*

---

** 1498 թվականին, երբ շատ տեղերում, ինչպես տեսանք, երեք տարվա մալը՝ երեք ամսում հավաքեցին, միևնույն ժամանակ հսկայական չափերով ավելացրին քրիստոնյա-ներից պահանջվող գլխահարկը։ «Այլ և բազումք հարճ ձգեցին ի վերայ քրիստոնէից, որ ի գլուխն ԲՌ. (2000) դահեկան։ Եւ բազում տանջանօք չարչարէին զքրիստոնեայս՝ կա-խէին և ծեծէին և ի բանդ արկեալ պահէին յերկաթս՝ մինչև չտային հարկս», հայտնում է ժամանակակից հիշատակագիրը։*

*Դահեկան դրամական հին տերմինը ԺԵ. դարի հիշատակագիրների կողմից կիրառ-վում էր դրամական հիմնական միավորի—թանկայի փոխարեն։ 1401 թվականին մի գրիչ հայտնում է, որ «առի շուքրանա գրոցս (այսինքն՝ գրչության վարձ—Լ. Խ.) ԲՌ. (2000) դահեկան, որ առնէ կէսն Ռ. (1000) դահեկան՝ թանկա Թաբրեզի» (ԺԵ. դարի հշտկ., Ա, էջ 15), այլ խոսքով, գրիչը «թանկա Թաբրեզի» դրամական տերմինն օգտագործում է «դահեկանի» իմաստով։ Ուստի 1498 թվականին քրիստոնյաներից գանձել են 2000 դահե-կան կամ թանկա գլխահարկ։ Եթե նույնիսկ ենթադրենք, որ հարկը հավաքվում էր 1,75 դրամ արծաթի կշիռ ունեցող խիստ արժեքազրկված թանկաներով, որ կիրառության մեջ էին այդ տարիներին Շիրվանում, դարձյալ 1498 թ. գլխահարկի համար կստանանք ահ-ռելի ու անհավատալի մի գումար—3300 դրամ արծաթ։*

*Նկատի ունենալով, որ ԺԵ. դարի վերջին տարիներին, իրար հաջորդող փադիշա-հերն ու քոչվոր ցեղերի ավագանիները հարստահարում ու կողոպտում էին ժողովրդին ավազակների նման, գլխահարկի չափի մասին թվական այս տվյալը հնարավոր չենք հա-մարում օգտագործել, որպես գլխահարկի որոշյալ չափ։*

տասնամյակում փանձվում էր համարյա կրկնակի անգամ բարձրացված չափով (415—440 դրամ արծաթ)։

Թվական այս տվյալները ավելի խոսուն կլինեն, երբ մեզ հաջողվի որոշել ամենակենսական սննդամթերքի — հացի գինը ԺԵ. դարի տարբեր տասնամյակներում։ Փորձենք անել այդ՝ հիշատակարանների ընձեռած նյութերով։

Հովհաննես անունով մի դպիր 1407 թվականին Խիզանում ընդօրինակած Հայսմավուրքի վերջում թողած հիշատակագրության մեջ մանրամասն թվական տվյալներ է հաղորդում այն մասին, թե ձեռագրի ընդօրինակության համար պատվիրատուն որքան գումար է ծախսել։ Պարզվում է, որ ծախսվել է ընդամենը 3000 դրամ, ըստ որում այդ գումարի մի փոքր մասի՝ 200 դրամի դիմաց պատվիրատուն գրչին տվել է ընամթերք —6 կապիճ ցորեն (ԺԵ. դարի հշտկ., Ա, էջ 71)։

ԺԵ. դարում, թանկայի հետ մեկտեղ Հայաստանում շրջանառության մեջ էր նաև դրամական դիրհեմ (դրամ) միավորը, որը, ինչպես ասացինք, ԺԴ. դարի վերջերին կշռում էր շուրջ 1 դրամ արծաթ։ Ուրեմն, մեկ կապիճ ցորենը Խիզանում 1407 թվականին արժեցել է շուրջ 34 դրամ արծաթ։

Ցորենի գնի մասին մեր ձեռքի տակ եղած մյուս բոլոր վկայությունները, դժբախտաբար, վերաբերում են սովի ու անբերիության տարիներին։

Այսպես, 1401 թվականին նույն Խիզանում շարադրված մի հիշատակարանից տեղեկանում ենք, որ «եղև սով սաստիկ ընդ ամենայն երկիր, որ բերէր կապիճ հացն Մ. (200) դր[ամ]» (ԺԵ. դարի հշտկ., Ա, էջ 8)։

1422 թվականին, երբ Աղ-Կոյունլու Կարա-Յուլուք օսմանը պաշարել էր Երզնկա քաղաքը, այնտեղ այնպիսի սով առաջացավ, որ «մոթ հացն ԸՃ. (800) դրամ եղաւ և մոթ աղն ի ՌՄ. (1200) դրամ» (նույն տեղում, էջ 289—290)։ Հաջորդ՝ 1423 թվականին «սաստիկ սով եղև» Բաբերդի շրջանում. «մի մոթ հացն Պ. (800) դրամ եղև»,—հայտնում է մի Ճաշոցի ծորոգող Հովհաննես քահանան (նույն տեղում, էջ 307)։

1446 թվականին Բաղեշի շրջանում «եղև թանկութիւն մեծ, որ մին բեռն ցորեան եղև ի Կ. (60) թանկայ» (նույն տեղում, էջ 592)։

1468 թվականին, դարձյալ Խիզանում գրված մի հիշատակարանից տեղեկություն ենք ստանում այն մասին, որ «թանդութիւն եղև յամենայն տեղիս և զկապիճ հացն ՃԻ. (120) թանկայ գնեցաք» (հշտկ. № 345, էջ 271)։

1492 թվականին, հավանաբար Վասպուրականում գրված մի հիշատակագրության մեջ ասվում է. «Ո՜հ, ո՜հ, զայս դառն տարիս, ցորեանն ի Կ. (60) թկ. (թանկայ) ու չկա, կորեկն ու գարին ի Ծ. (50) թկ., և աղքատք ամէն խիստ տառապին և անիծեն զՍօֆին. թվ. ՋԽԱ. (1492)» (Մատենադարան, ձեռ. № 4782, էջ 220ա)*։

Բերված վկայություններից օգտվել կարողանալու համար անհրաժեշտ է պարզել՝ կապիճ, մոթ ու բեռ ընդեղենի չափերի տարողությունը։ Ցավոք, միջնադարյան Հայաստանում գործածվող չափի ու կշռի այս տերմինները, դրա-

---

* Բացի հացի գների մասին մեջ բերված վկայություններից մի հիշատակարան հնարավորություն է տալիս որոշելու կովի ու եզի շուկայական մերձավոր գինը 1413 թվականին։ Հիշատակարանը շարադրված է ոմն Աբրահամի որդի Մարտիրոսի կողմից, որը հայտնում է, թե «Աւետարանս ծախեսի Յակոբ քահանային Ո. (600) դահեկան. գնին առի մին կով ու մին եզն» (ԺԵ. դարի հշտկ., Ա, էջ 160)։ Ուրեմն, մեկ կովն ու եզը ԺԵ. դարի առաջին տասնամյակներում հնարավոր է եղել գնել 600 դահեկանով։

մական տերմինների նման, դեռևս չեն բացատրված համապատասխան մասնագետների կողմից, և միևնույն տերմինի մասին կան բազմաթիվ հակասական կարծիքներ ու ենթադրություններ։

Վերցնենք, օրինակ, կապիճ տերմինը։ Ըստ ակադ. Հ. Մանանդյանի այն կշռորդ է 1,224 կիլոգրամի կամ 979,8 գրամի (տե՛ս «Կշիռները և չափերը հնագույն հայ աղբյուրներում», Երևան, 1930, էջ 90). Ի. Ֆասսի կարծիքով — կշռորդ է 1,25 լիտրի (տե՛ս Записки коллегии востоковедов, том I, Леннград, 1925, էջ 492). Ստ. Մալխասյանցը «Հայերեն բացատրական բառարանի» 2-րդ հատորի հավելվածում հայտնում է, որ կապիճը «միջնադարյան դեղաբանության մեջ գործածվող կշիռ է, հավասար 2913, 240 գրամի», կան և ուրիշ կարծիքներ։ Դժբախտաբար այս կարծիքներից և ոչ մեկը չի կարող ճիշտ համարվել ԺԵ.—ԺԶ. դարերում Հայաստանում գործածված կապիճ չափի նկատմամբ։ Այս բանում համոզվելու համար բավական է ծանոթանալ ԺԶ. դարից պահպանված նվիրաբերական մի արձանագրության հետ, ուր խոսվում է Ապարանից սուրբ Նշան վանքին ումն մահդասի Գուլամիրի կողմից «տարին Ե. (5) կապիճ հաց» ուխտ արվելու մասին։

Արդ, եթե ընտունենք ակադ. Հ. Մանանդյանի, Ի. Ֆասսի կամ Ստ. Մալխասյանցի կարծիքները կապիճի տարողության մասին, ապա ստիպված պետք է լինենք հավատալու, որ մահդասի Գուլամիրը իրավունք է ձեռք բերել հիշատակվելու Ապարանից վանքից վեր առաքվող աղոթքներում տարին 5—6 կամ, լավագույն դեպքում, ջուրջ 15 կիլոգրամ ցորեն տալու պայմանով, մի բան, որ շատ հեռու է հավանական լինելուց։

Կարծում ենք, որ կապիճի չափը որոշելու համար կարևոր նշանակություն ունի Երեմիայի «Բառգրքի» տվյալը. այստեղ կապիճի դիմաց, որպես բացատրություն դրված են «մարզան» և «սոմար» տերմինները, որոնք, հայտնի է, նույնպես ընդեղենի չափեր են (տե՛ս Հ. Ավգերեան, Բացատրութիւն չափուց և կշռոց նախնեաց, Վենետիկ, 1821, էջ 109)։

Սոմարը տարածված չափ էր Երևանի խանության մեջ ԺԷ.—ԺԹ. դարերում և կշռորդ էր 3 փթի կամ 50 կիլոգրամի (տե՛ս օրինակ, В. М. Арутюнян, Крупное монастырское хозяйство в Армении в XVII—XVIII вв., Ереван, 1940, стр. 113)։

Մարզանը, որքան մեզ հայտնի է, կիրառման մեջ է եղել Սյունիքում և Ղարադաղում։ Այժմ էլ ղարագաղցիները գործածում են այն որպես 36 կիլոգրամի կշռորդ։ Հնարավոր է ենթադրել, որ Երեմիայի ժամանակ (ԺԷ. դարում) մարզանը ավելի մոտ է եղել սոմարին և, թերևս, նույնպես կշռորդ է եղել 3 փթի։ Այսպիսով հանգում ենք այն եզրակացության, որ կապիճը ևս կշռորդ է եղել մերձավորապես 3 փթի։

Այս եզրակացությունը հաստատվում է հայ գյուղացու տնտեսությանն ու արտադրական կենցաղին լավատեղյակ Ս. Եղիազարովի տվյալներով. իր «Исследование по истории армянского права, публичного и частного» (вып. I, Киев, 1919) ուսումնասիրության մեջ Եղիազարովը կապիճը համարել է բեռի (6—7,5 փութ) կես մասը և նույնացրել է թայի հետ. «капич,— գրում է նա,— вероятно, ранялся 3 и $3^{3}/_{4}$ пудам. что носнльщик мог иосить па спине» (Նույն տեղ, էջ 89)։

Կարծում ենք, որ ճիշտ պետք է համարել նաև մոդ կամ մոթ չափին Եղիա-

*գորովի տված բացատրությունը. ըստ նրա (Մոդը, նույնն է պարսկերեն՝ սոմարը, կշռում է 10 լիտր կամ 120 ֆունտ, այսինքն՝ 3 փութ» (նույն տեղում)։*

*Որ կապիճն ու մոդը միևնույն տարողությունն ունեցող չափի տարբեր շըրջաններում գործածվող անուններ լինելով, կշռորդ են շուրջ 3 փթի, կարելի է համոզվել նաև հետևյալ դատողություններով։ Միջնադարում ցորենն ու ալյուրը վայրից վայր էին տեղափոխվում ու վաճառահանվում շուկաներում գրաստներով (մեծ մասամբ ավանակներով), որոնց բարձում էին երկու պարկ, յուրաքանչյուրը՝ 3—3,5 փութ ծանրությամբ։ Իսկ որ մի պարկը միջնադարում կոչվում էր մոդ, այդ մասին ուշագրավ տվյալ ունենք հայկական ժողովրդական առակներից մեկում։ Ծանոթանանք այդ առակի մեջ շահագրգռող հատվածին. «Այր մի յամէն տարի հարիւր մոթ հաց վաստակէր և այնու զտունն իւր կառավարէր։ Եւ ի միում տարւոջ ի հարիւրէն քսան պակաս հաց եղև. Նա անդ սգար հոգայր և կոծէր զինքն, թէ այսչափ հացովս ի նորն զի՞րդ կարեմք ելանել։ Իսկ աստուած յանդիմանել կամեցաւ զնա. առաքեաց զհրեշտակ իւր և ասաց նմա, թէ արի,* Երկու մոթ հաց բարձիր *և տար կնոջ մի այրւոյ...։* Եւ եա բարձեալ գրաստուն՝ տարաւ առ այրի կինն» *և այլն (Ն. Մառ, Ժողովածոյք առակաց Վարդանայ, Բ, էջ 243)։*

*Պարզ է ուրեմն, որ սույն առակի տվյալներով ևս երկու մոդ ցորենը մեկ գրաստի բեռ է, այլ խոսքով մոդը, տատի և կապիճը կշռորդ է 3—3,5 փթի, իսկ բեռը 6—7 փթի։*

*Վերադառնանք այժմ հացի գների մասին վերը բերված տվյալներին. Նրանցում գործածված դրամական տերմինները մեզ արդեն ծանոթ են. չափ ու կշռի տերմինների այս բացատրությունից հետո 1401, 1422, 1423, 1446, 1468 թվականների սովի ու սղության տարիների նկատմամբ ստանում ենք հացի գնի սատանման այսպիսի պատկեր.*

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| *1401 թ.* | *3 փութ հացը* | *արժեր* | *200* | *դրամ* | *արծաթ* |
| *1422 թ.* | » | » | *800* | » | » |
| *1423 թ.* | » | » | *800* | » | » |
| *1446 թ.* | » | » | *186(˜)* | » | » |
| *1468 թ.* | » | » | *744* | » | » |

*Ոչ սովի տարվա վերաբերյալ ունեինք վկայություն միայն 1407 թվականից, երբ 200 դրամի դիմաց տրվել է 6 կապիճ հաց. կամ այլ խոսքով՝ մեկ կապիճ (3 փութ) հացն արժեցել է 34 դրամ արծաթ։ Կարծել, թե ԺԵ. դարի հաշորդ առատ տարիներին հացի գինը, փոքր շեղումներով, տատանվել է 34 դրամ արծաթի շուրջը չենք կարող, նկատի ունենալով անընդհատ պատերազմները, ասպատակությունները և քաղաքական ու բնական այլ արհավիրքներ։ Այնուամենայնիվ, եթե նույնիսկ ընդունենք, որ լավ բերքի տարիներին ցորենը վաճառվել է 1407 թվականի գնից դիցուկ մեկուկես անգամ թանկ, 50 դրամով, դարձյալ գլխահարկի չափի համար կստանանք պատկառելի թվեր։*

*1435 թվականին տեսանք, որ գանձվում էր 248 դրամ արծաթի չափով գլխահարկ. այդ դրամով կարելի էր գնել շուրջ 15 փութ ցորեն։*

*1491 թվականին, գանձվում էր գլխահարկ 415—440 դրամ արծաթի չափով. այդ գումարով կարելի էր գնել շուրջ 28 փութ ցորեն։*

*Մենք հեռու ենք այն մտքից, թե ստացված այս թվերը անվիճելի են։ Այ-*

նուամենայնիվ նրանք հնարավորություն են տալիս հաստատապես պնդելու, որ գլխահարկը հայ հպատակներից գանձվող ամենածանր հարկերից մեկը լինելով՝ ԺԵ. դարի ընթացքում շարունակ բարձրացվել է և դարի վերջում գանձվել, 1435 թվականի համեմատությամբ, շուրջ երկու անգամ ավելի։

4. Թաֆավութ-ե չիզյա. Բառացի նշանակում է «չիզյայի տարբերությունը»։ Այսպես էին կոչվում գլխահարկի վրա ժամանակի ընթացքում բարդված գումարները, որոնք հարկային մատյաններում գրանցվում և հաշվվում էին չիզյայից զատ ու դիտվում, որպես առանձին պարտավորություն (Հ. Փափազյան, Մատենադարանի պարսկերեն հրովարտակները, էջ 109)։

Վերը վկայակոչեցինք արդեն 1498 թվականի այն հիշատակարանը, ուր տվյալ կար Մուրատ-խանի մասին, որը «տանչէր զաշխա[րհա]կանս և զկարգաւորքս և ասէր. տուք դչիղրայն, թաւաութ-ի չիզբայն, թասխիր-ի թավ[ա]ութ»։

5. Չերիք (դրված՝ «չարեք» ձևով). Բառացի նշանակում է «աշխարհազոր», ըստ երևույթին գանձվում էր ոչ մուսուլման սեփականատեր հպատակներից, այն բանի համար, որ նրանք ազատված էին՝ զինվորական ծառայությունից։

Չերիք վճարելու պարտավորությունից ազատ չէին նաև հայ վանական հաստատությունները. նրանք ևս վճարում էին «ոխվերոյ չարէք»։

1476 թվականին մեզ արդեն ծանոթ հիշատակարանում Վանի «բարեպաշտ և հաւատարիմ» տանուտերերը հիշատակության արժանի են համարվում նաև այն բանի համար, որ «ամէն եկեղեցեաց ոխֆերու չարէքն բաղլեցին», այսինքն՝ վերացրին (Հշտկ. № 506, էջ 405)։

Նույնպիսի բարեգործության մասին է խոսվում նաև անթվական մի արձանագրության մեջ. «Քրիստոս աստուած,— գրված է այնտեղ,— քո սուրբ յարութեամբդ ողորմեա ամենայն հաւատացելոց, ևս առաւել Դովլաթիարին և Խոսրովին, Մկրտչին և Թումին, և ծնողաց նոցին, և ամենայն ազգականացն, որ զոխվերոյ չարէքն բաշխեցին, արարիչն աստուած զիւրեանց մեղքն թողու, ամէն։ Ընդ նոսին զԽունկանց Կարապետն, որ միջնորդ եղև այս բարի գործոյն, ամէն» (Մատենադարան, ձեռ. № 4674, էջ 512ա)։

Հիշատակության արժանացած անձինք, լինելով հարկահանության կապալառուներ կամ պաշտոնյաներ, ազատել են մեկ դեպքում Վանի եկեղեցիների, մյուս դեպքում ինչ-որ վանական հաստատության կալվածքները (ոխֆերը) չարեք (իմա՛ չերիք) հարկից, նրանց փոխարեն, ըստ երևույթին, իրենք պարտավորվելով վճարել այդ հարկը։

Շահ-Իսմայիլ Ա-ի 1505 թվականի հրովարտակում կա «չերիքի ոսկի» («զար-ե չերիք») հարկային տերմինը, որից պետք է հետևցնել, որ այդ հարկը գանձվում էր դրամով (Մատենադարանի պարսկ. հրովարտակները, էջ 55)։

6. Իխրաջաթ. Նշանակում է՝ արտակարգ ծախսեր. այս տերմինի տակ հարկային մատյաններում գրանցվում էին բոլոր այն տուրքերը, որոնք հպատակները վճարելու էին զինվորական, վարչական ու պետական պաշտոնյաներին, կամ այն պարտավորությունները, որոնք ունեին հպատակները նույն անձանց նկատմամբ։ Ըստ Ի. Պետրուշևսկու գանձում էին՝ 6 դինար եկամտի դիմաց 1,5 դինար, այսինքն եկամտի 25%-ը (И. П. Петрушевский, из истории героической борьбы азербайджаиского народа в XIII—XIV вв., Баку, 1841, էջ 47)։

Դրանց մեջ մտնում էին.

ա) Ալաֆե և ուլուֆե. Տուրք, որ հատուցում էին հպատակները երթևեկող

զինվորական ու պետական պաշտոնյաներին, որպես նրանց ու նրանց ձիերի կեր (И. Петрушевский, Вcovтренняя политика, Ахмеда Ак-Коюнлу, *նշված ժողովածու, էջ 147,* Государства Азербайджана. *նույն տեղում, էջ 191, Հ. Փափազյան, Մատենադարանի պարսկ. հրովարտակներ, էջ 103)։*

*բ)* Կոնալղա. *Զինվորականներին, արքունի սուրհանդակներին և պաշտոնական գործերով երթևեկող այլ անձանց ու նրանց թիկնապահներին հյուրընկալելու պարտավորություն* (И. Петрушевский, *նշվ. աշխ., էջ 147, 191, Հ. Փափազյան, նշվ. աշխ., էջ 111)։ Գափող ու հարստահարող այդ «հյուրերին» հայ ժողովուրդը սրամտորեն «բռնահյուր» անունն էր տալիս (տե՛ս «Բանբեր Մատենադարանի» № 3, էջ 73—74)։*

*գ)* Ուլաղ. *Զինվորականներին ու պետական պաշտոնյաներին փոխադրական միջոցներ, հիմնականում ձիեր տրամադրելու պարտավորություն։ Գրաստների հավաքագրում կատարվում էր նաև պատերազմների ու զորաշարքերի ժամանակ (*(И. Петрушевский, *նշվ. աշխ., էջ 147, 191, Հ. Փափազյան, նշվ. աշխ., էջ 121—122)։*

*7.* Շիգար *ու* Բիգար. *Այսպես էր կոչվում բերդերի, ճանապարհների ու ջրանցքների շինարարության, ինչպես և պատերազմների ժամանակ հպատակների անվճար աշխատանք կատարելու պարտավորությունը։ Հայկական աղբյուրներում հայտնի է «կոռ» անունով։*

*Մատթեոս Ջուղայեցին նկատի ունենալով այդ պարտավորության ավերիչ հետևանքները գյուղական տնտեսության համար, իրավամբ նկատում է, որ կոռից ազատվելու հույսով լինում էին ուրացության դեպքեր։ «Քանի՞ են պատճառ ուրացութեան» հարցին տված իր պատասխաններից մեկում նա ասում է. «Վասն տառապանաց, զոր կոռ ասեն, դի աղքատք լինիջին» (Մտթ. Ջուղայեցի, Քննութիւն գործոց առաքելոց, Մատենադարան, ձեռ. № 1402, էջ 140ա)։*

*Առաքել Սյունեցին իր «Ադամգիրք» մեջ, ցանկանալով փոքր-ինչ զավեշտական պատկերներով ցույց տալ, որ ժողովուրդը դժկամությամբ է հաճախում եկեղեցի և սրբավայրը դարձնում է կատակի վայր, գրում է.*

*«Ոմանք ի ժամ գան և նստին,*
*Կէսք մի ննջեն և մրափին,*
*Ոմանք կցեալ ձեռաւք կանգնին*
*Եւ խաչ չհանին ի յերեսնին...*
*Զի չեն եկեալ յուսով ի ժամ,*
*Այլ կոռ հաշւին և կամ տուգանս»*

*(Մատենադարան, ձեռ. № 7777, էջ 186բ)։*

*Բացի «բիգարից» հպատակները պարտավոր էին ձրի աշխատել նաև զանազան արտակարգ պատահարների ժամանակ («ավարիզաթ») և կամ այդ պարտավորության դիմաց վճարել դրամական տուրք (Հ. Փափազյան, նշվ. աշխ., էջ 105)։*

*8. Մուսուլմանական տոներին, ինչպես և այլ առիթներով, «նվեր» անվան տակ ֆեոդալներն ու պետական պաշտոնյաները հպատակներից գանձում էին հատուկ տուրքեր։ Դրանցից էին.*

*ա)* Փիշքաշ. *Նվերներ այլևայլ առիթներով.*

*բ)* Նովրուզի. *Նոր տարվա առաջին օրը հատուցվող նվեր-տուրք,*

*գ)* Իդի. *Մուսուլմանական տոներին հատուցվող նվեր-տուրք։*

*դ)* Սավարի. *Տուրք, որ գանձվում էր այն դեպքում, երբ տվյալ վայրից անցնում կամ այնտեղ իջևանում էր փադիշահը, ինչպես և բարձրաստիճան պետական պաշտոնյաներից որևէ մեկը։*

*ե)* Սալամի կամ սալամանէ. *Շնորհավորական տուրք, որ տրվում էր ֆեոդալին տվյալ վայրը այցելելու կապակցությամբ և այլն (սրա՜նց մասին տես՛* И. Петрушевский, *նշվ. աշխ., էջ 147, 190—191, Հ. Փափազյան, նշվ. աշխ., էջ 116, 119, 122)։*

*Այս տուրքերից մի-երկուսի մասին հայկական աղբյուրներում ևս պահպանվել են ակնարկներ։*

*Մատթեոս Ջուղայեցին, օրինակ, հայտնում է, որ «Յորժամ թագաւորի դէմ ընդառաջ գնամք՝ ընչիւք գնամք և եղն բարձրացեալ սպանանեմք ընդդէմ նորա» կամ «Յորժամ թագաւորի դէմ ընդառաջ ոչ գնան բարեաւն (իմա՝ նվերներով)՝ նոքա պատուհասեն» («Քննութիւն գործոց առաքելոց», Մատենադարան, ձեռ. № 1402, էջ 265ա—266բ)։*

*Գրիգոր Տաթևացին իր քարոզներից մեկում տվյալ է հաղորդում այն մասին, որ «մեծամեծներին» (իմա՛ ֆեոդալներին ու պետական պաշտոնյաներին) որևէ առիթով ներկայանալու կամ խնդիրք անելու դեպքում՝ նրանց «աղերս» (նվեր) են մատուցել։ Նա գրում է. «Յորժամ աղերս տանեն մեծամեծաց, և զայն ևս կաշառ է. թէ առնու զայն և զնորա խնդիրսն կատարէ, կամ փրկէ ի զրկողաց, կամ փոխարէնս կշռէ՝ այնպիսին բարի կաշառ է։ Եւ չար է յորժամ առնուն զկաշառս և զաղերս և զնորա (աղերսատուի) կամսն ոչ կատարեն» (Գիրք քարոզութեան, ամարան հատոր, Կ. Պոլիս, 1741, էջ 461)։ Հովհան Ծործորեցին ևս խոսում է այս մասին. «Որպէս ոք առ իշխան մատուցեալ՝ նախ զաղերս իւր նուիրէ, որով համարձակեալ զխնդրուածս հայցէ»,—գրում է նա (Մկն. սուրբ Աւետարանին, որ ըստ Մատթէոսի, Կ. Պոլիս, 1825, էջ 137)։*

*9.* Ռասմ կամ ռուսումաթ *(կարգ, սովորույթ)։ Այսպես էին կոչվում այն տուրքերը, որ գանձվում էին հպատակներից պետական բարձրաստիճան ու կրտսեր պաշտոնյաների օգտին, որպես հավելյալ ռոճիկ (Հ. Փափազյան, Նշվ. աշխ., էջ 119)։ Դրանցից էին.*

*ա)* Ռասմ աս-սուդուր. *Տուրք մահմեդական հոգևորականության գլխավորի — սադրի օգտին.*

*բ)* Ռասմ ալ-վիզարաթ. *Վեզիրի օգտին.*

*գ)* Ռասմ-ե դարուղեգի. *Ոստիկանապետի օգտին.*

*դ)* Ռասմ-ե ումմալ. *Ֆինանսական պաշտոնյաների օգտին։*

*1458 թվականին ընդօրինակված մի Հայսմավուրքի հիշատակարանում թվարկվում են այդ տուրքերը կամ «չար բադիաթները», լրացուցիչ հարկային տերմինների հետ միասին։ Հիշատակարանում ասված է, որ ոմն արժանվոր տանուտեր Հայրապետ «արար բարի յիշատակ հոգւոյ իւրոյ, զի խէսօք (՞) կարգաւորքն ազատ արար ի հարկէ և ի չար բադիաթէ այլազգեացն՝ ի դառուղից և ի պարնէ, ի մուխթըսիբէ և ի թամղաչոց։ Զամենայն յիւր տանէն երետ և խափանեաց» (Նոր-Ջուղա, ձեռ. № 423)։*

*Այս հիշատակարանի տվյալներով կարող ենք լրացնել վերոհիշյալ ցանկը երեք նոր «ռասմերով».*

*ե)* Պարոնի *օգտին.*

*զ)* Մուհթասիբի *օգտին (հարկերն ու տուրքերը ճշտող, շուկայի չափին ու կշռին հետևող պաշտոնյա).*

է) **Թամղաչու** օգտին (արհեստավորների ու առևտրականների արդյունքի վրա հսկող և բաժ հավաքող պաշտոնյա)։

10. **Շիլքաղաք** (արաբ. զրպարտություն) ընդհանուր անունով էին կոչվում այն բոլոր ապօրինի տուրքերն ու տուգանքները, որոնք կեղծ ու պատիր զանազան հնարների դիմելով, «զուր և բուխտան ասելով ի վերայ անպարտ արանց» (Մաթ. Ջուղայեցի «Ի գլխոյն Ղուկասու հաւաքումն բանից», ձեռ. № 5232, էջ 70բ) շորթում էին հպատակներից պետական պաշտոնյաները։

Պետք է ենթադրել, որ ապօրինի այդ տուգանքները բարդվում էին հիմնականում քրիստոնյա հպատակների վրա։ Այս ենթադրության համար բավարար հիմք է տալիս Մատթեոս Ջուղայեցին, ուրացության պատճառներից մեկն էլ համարելով տուգանքն ու ղալանը. «(Ուրացութիւն լինի) վասն տուգանաց ու ղալանի»,— գրում է նա (Մատենադարան, ձեռ. № 1402, էջ 140ա)։

Ստեփանոս գրիչը 1456 թվականին Ռշտունիքի Շատվան գյուղում ընդօրինակած Մաշտոցի հիշատակագրություններից մեկում հայտնում է, որ իր միջոցներով կառուցել է տվել ժամատուն, որի համար կողոպտվել ու քարկոծվել է և ստիպված է եղել վճարել 200 թանկա ղալան. «ՄՃ. (200) թանգ[այ] այլ ղալան առին վասն դորա»,—գրում է նա (Հշտկ. № 102, էջ 74 տողատակ)։

1488 թվականին մի Ճաշոց ընդօրինակող Հովհաննես գրիչը ի նկատի ունեը նաև անօրինակ չափերի հասած «շիլթաղաթը», երբ իր ժամանակը բնորոշում էր հետևյալ խոսքերով. «Ի գառն և ի վշտաբեր ժամանակիս, յորում կամք ի նեղութիւն և ի տառապանս ի ձեռն այլասեռից ազգաց, զի զամենասեան չարչարեն և նեղեն, տուժեն և տուգանեն, կեղեն և կեղեքեն, և այլ ազգիազգի վշտաւք տանջեն» (Մատենադարան, ձեռ. № 4805, էջ 417ա)։

11. **Թամղա.** Այսպես էր կոչվում արհեստանոցներից, հումույթի մշակման այլ օբյեկտներից, ձիթհաններից, ինչպես նաև ձկնորսարաններից գանձվող հարկը։

Թամղան գանձում էին ֆինանսական հատուկ պաշտոնյաներ—թամղաչիները, որոնք կապալով վերցնելով այդ հարկի գանձման պարտավորությունը, չարաշահելով իրենց պաշտոնը՝ մեծապես շահվում էին ղրանից։ Հայկական քաղաքներում ու քաղաքատիպ վայրերում թամղաչի էին գառնում սովորաբար հայ խոջաները։ ԺԵ. դարի հիշատակարաններում և կալվածագրերում բազմիցս խոսվում է հայ թամղաչիների մասին, որոնք խարդախ ճանապարհներով կուտակած իրենց հարստություններից փշրանքներ տալով հայ վանական հաստատություններին, «բարեգործի» համբավ էին ապահովում իրենց համար։

Ծանոթանանք բազմաթիվ հայ թամղաչիներից մի քանիսի հետ.

1476 թվականին Վանում թամղաչի էին Էդգարը, Շաղավաթը, Մուսեխը և Սմբատը։ Սրանք պարտավորվում են Վանի եկեղեցիներն ազատել ձկան և ընկույզի թամղայից՝ «ղձկան թամղէն և զընկուզի բաղլեցին»*,— գրված է բազմաթիվ նվիրատվությունների մասին տվյալներ պարունակող բովանդակալից հիշատակարանի մեջ (Հշտկ. № 506, էջ 404)։

Մերձավորապես նույն տարիներին մի այլ թամղաչի՝ Խոսրովի որդի Մուրատը զիճում է Վանի Պողոս-Պետրոս եկեղեցուց գանձվող ձկան թամղայի կեսը՝ դարձնելով այն 4 դահեկան, իսկ Քաբափոս կոչվող ձկնորսարանի թամղան՝ լրիվ վերացնում։

---

* Արաբ. «բաթել» — باطل — բառից՝ «անվավեր», «չեղյալ» նշանակությամբ։

*Այս բարեգործության մասին պահպանվել է երկու տարբեր գրանցում, մեկը Պողոս-Պետրոս եկեղեցուն պատկանող մի Հայսմավուրքի, իսկ մյուսը մի Ճառընտրի մեջ։*

*Ահա այդ գրանցումները.*

*1. «Քրիստոս աստուած ողորմեա Թամղաշի Մուրատին և ծնաւղաց նորին՝ հօրն Խօսրովին և մօրն Ամպար-Խաթունին, որ ղխէքըներուն հորահաղն վերոց և զձկան Թամղէն արար չորս դեկան, ով որ յանդգնի՝ նզոված եղիցի» (Մատենադարան, ձեռ. № 5313, էջ 224ա)։*

*2. «Դարձեալ, յիշեցէք ի Քրիստոս զԹամղաշի Մուրատն և զծնօղքն իւր զԽոսրովն և զԱմբար-Խաթուն, և միամիտ սրտիւ աստուած-ողորմի տսացէք, որ զՎանայ խէքներու խորի հաղն, զձկան կէս Թամղէն ի վեր եկեալ ու զՔարափոսայ Թամղէն խափանեց...» (Մատենադարան, ձեռ. № 1524, էջ 519ա)։*

*Այս գրանցումներում, բացի ձկան Թամղայից, հիշատակվում է ևս մի հարկ, որի գանձումը դարձյալ կատարվել է Թամղաչիների կողմից։ Մեկ դեպքում այն գրանցված է «խէքներու խորի հաղ», մյուս դեպքում՝ «խէքըներուն հորահաղն» տարբերակներով։*

*Բարբառային հնչյունափոխությամբ աղավաղված հարկային նորայուր այդ տերմինը, ըստ երևույթին, պետք է վերծանել «հեծքերի հորի հախ» ձևով, դրա տակ հասկանալով ջուլհակներից գանձվող հարկը։*

*Այսպիսի մեկնաբանության տալու համար Թերևս հիմք կարող են ծառայել նաև Ավանի եկեղեցու 1285 և 1287 ԹԹ. արձանագրությունները, որոնց մեջ կա «հորակտաւ ի ջուլհակէ» կամ «զջուլհակերոյն հորակտաւն» հարկային տերմինը, որը համեմատելի է քննության ենթակա մեր «խէքըներուն հորահաղ» տերմինի հետ (տե՛ս Կ. Ղաֆադարյան, Ավանի երկլեզվյան ծածկագիր արձանագրությունը, Երևան, 1945, էջ 18, 21)։*

*Վերոհիշյալ № 5313 Հայսմավուրքում, բացի մեջ բերված ուշագրավ գրանցումից, կան և բազմաթիվ ուրիշները, որոնցից հատուկ արժեք է ներկայացնում Եզդանբաղշ Աղթամարցու և նրա եղբայրների բարեգործությունները ղըրվատող և ստորև բերվող գրանցումը.*

*«Դարձեալ յիշեցէք ի սուրբ և ի մաքրափայլ յաղօթս ձեր զԱղթամարցոնց Եզդանբաղշն, և զեղբայրն զՄուրատն և զԽալիֆէն, և զծնաւղքն իւրեանց զՄիբանշէն, զԿիրակոսն. յիշեցէք լի բերանով և աստուած-ողորմի ասացէք. որ զաղշկան խարսնեց խաղն և զէգետներուն բաղլեց։ Քրիստոս աստուած զերկնից արքայութիւն իւրն պարգևեսցէ և իւր ծնօղացն, ամէն։*

*Դարձեալ յիշեցէք ի Քրիստոս զԱղթամարցոնց Էզդանբաղշն, որ զտախրկի դրամն ու զիգու գինին բաղլեց։ Քրիստոս աստուած զենքն ի յանարենայց աղատէ և որ յետ սորա յանդգնի և առնու՝ զմասն Յուդային առնու և զխաչահանուացն, ամէն...» (Մատենադարան, ձեռ. № 5313, էջ 588)։*

*Անտարակույս Եզգանբաղշ Աղթամարցին ևս նշանավոր մի Թամղաչի է, նրա «բաղլածը», այսինքն չեղյալ համարած հարկերը չորսն են.*

1. Խարսնեց խաղ *(ուղղելի՝ հախ)*
2. էգետներու [հախ]
3. Տախրկի դրամ
4. Իգու գինի

«Խարսնեց հախ»-ի կամ, սրբագրված ձևով «հարսանեհարկի» մասին խոսք կլինի ստորև։

«Էգետներու հախ»-ը սրբագրելի է «այգետների հախ» ձևով։ Եթե այգետուն ասելով հասկացել են այգու մեջ եղող հնձանը, ապա պետք է ենթադրել, որ հատուկ հարկ է գանձվել հնձաններից։

Դժվար բացատրելի է նաև «տախրկի դրամ» հարկային տերմինը։ Հավանաբար այստեղ գործ ունենք ճախարակ բառի բարբառային ձևերից մեկի հետ, ուստի և «տախրկի դրամը» գանձվել է ճախարակով թել մանողներից։ «Իդու, (իմա՛ այդու) դինի» տերմինը բացատրության կարոտ չէ։

Մեզ արդեն ծանոթ է Լալա-Միրանշահի 1481 թվականի հիշատակարանը, ուր խոսք կա «ձիթահացներու (իմա՛ ձիթհանների) հարճն (խարճը-հարկը) սուրբ Խաչին և այլ եկեղեցեացն ձիթագին» տալու մասին։

Պարզ է ուրեմն, որ հատուկ հարկ է գանձվել նաև ձիթհաններից։

ԺԶ. դարի անթվական մի արձանագրությունից պարզվում է, որ թամղա էին գանձում նաև այն անձնավորություններից, որոնք իրենց «տավարը» վարձու էին տալիս. «Դարձեալ յիշեցէք,— գրված է այնտեղ,— հաւատարիմ տանուտէրն Խոջայզարէն, զԹումէն և զՇաղբայդին, զինչ որ տաւար տան վարձու նայ թաղմէն (իմա՛ թամղէն) բաթալեցին» (Մատենադարան, ձեռ. № 4880, էջ 296ա)։

Այսպիսով, ԺԵ. դարի սկզբնաղբյուրները հնարավորություն են տալիս որոշելու թամղա կոչվող հարկի մի շարք տարատեսակները, որոնք գանձվում էին ձկնորսարաններից, ձիթհաններից, հնձաններից, ջուլհականոցներից, ճախարակ բանեցնողներից և այլն։

Շատ ավելի սուղ են մեր տվյալները վաճառականներից գանձվող թամղայի մասին։ Վենետիկցի անանուն վաճառականը իր ուղեգրության մեջ հայտնում է, որ Պարսկաստանում միշտ գոյություն է ունեցել այսպիսի կարգ. «յուրաքանչյուր վաճառական, որ բազարում մի խանութ ունի, վճարում է օրական կամ երկու և կամ վեց սպիտակ, կամ մինչև իսկ մի դուկատ, համապատասխան իր գործին. նույնպես յուրաքանչյուր արհեստի վարպետի վրա մի վճարում է դրվում, համաձայն իր վիճակի» (Ուղեգրություններ, Ա, էջ 314)։ Այնուհետև նույն հեղինակը հայտնում է, որ առևտրականներից գանձվում էր բաժ, վաճառվող ապրանքի հինգ տոկոսի չափով, եթե նա մուսուլման էր, և կրկնակի չափով ավելի (10 տոկոս), եթե նա քրիստոնյա էր (Նույն տեղում, էջ 315)։

12. Բացի պետական ու կալվածատիրական վերոհիշյալ հարկերից ու տուրքերից, գյուղացիությունը պարտավոր էր զանազան տուրքեր վճարել նաև գյուղական պաշտոնեությանը՝ ռեսին, գզրին և այլն։ Այդ տուրքերի մասին ունենք մի քանի կողմնակի վկայություններ ԺԴ., ԺԵ. և հետագա դարերի հիշատակարաններից։

Այսպես, 1313 թվականին Վխկայ գյուղի (Տայքո՞ւմ) տանուտեր Դավիթը պարտավորվում է գյուղից դուրս հարս տանելու դեպքում նախկինում գանձվող 12 սպիտակ դրամի դիմաց՝ վերցնել 6 սպիտակ («...հարս տանի՝ ԺԲ. ստկէն Զ. թողել է, Զ. կառնում» գրված է հիշատակագրության մեջ, տե՛ս ԺԴ. դարի հշտկ., էջ 95)։

Ամենայն հավանականությամբ այս նույն հարկն է հիշատակված նաև Բջնիի Զաքարիա իշխանի (ԺԴ. դար) փորագրել տված արձանագրության մեջ, ուր հիշատակված են ամիրահարկ, նարսանեհարկ, կովահամար, կալաթաղար,

սայլի սպն. (սպիտակն) և մահկանէ հարկային տերմինները (Ղ. Ալիշան, Այրարատ, էջ 273, Կ. Կոստանյան, Վիմական տարեգիր, էջ 226)։

ԺԵ. դարի անթվական մի արձանագրության տվյալներով Մթայ (=Մո՞վթ) գյուղի ռես Սանփանոսը հրաժարվում է գանձելուց «զաղչկան յաղկն» կոչվող տուրքը (Մատենադարան, ձեռ. № 4814, էջ 129ա)։ Ըստ երևույթին այս տերմինի տակ ևս պետք է հասկանալ գյուղից աղջիկ ամուսնացնելու ժամանակ ռեսին տրվող տուրքը, որի մասին «խարսնեց դրամ» կոչումով ակնարկ կա նաև ԺԷ. դարի անթվական մի արձանագրության մեջ։ Վերջինս պահպանվել է խիստ վնասված վիճակում (բոլոր տողերի վերջին բառերը ընկել են), բայց, այնուամենայնիվ, մեծ հետաքրքրություն է ներկայացնում (տե՛ս Մատենադարան, ձեռ. № 9660, էջ 1բ)։

Արձանագրության սկզբում փառաբանական խոսքեր են ուղղված «Ողմայ տանուտէրացն» հասցեին, «որ չար [բազ]աղաթ կայր ի վերայ գեղին՝ թողին», ապա թվարկվում են այդ «չար բադաղաթները» (նորահնար պահանջմունք, հարկ), որոնց մեծ մասը տողերի վնասված լինելու հետևանքով՝ չեն հասկացվում։ Ընթերցվող տողերից արժանի են ուշադրության հետևյալները. «աստուած ող[որ]մի Թումին, որ գլուխն ԸՋ. (՞) կորեկ եթո[ղ], զխարսնեց դրամն արար Բ. շայի»։ Ապա հիշատակված է մի այլ տանուտեր, որ «զմատղու վարձն եթող», երկրորդը՝ որ «ղսուլն արար Գ. աւթմանի»։ «Սուլ» նշանակում է ջրաղացի խողովակ, նավ, ուստի կարելի է ենթադրել, որ այստեղ խոսքը ջրաղացներից գանձվող ինչ-որ տուրքի մասին է։ Տանուտերերից մեկ ուրիշը, ասված է նույն արձանագրության մեջ, «տուն մի մանած ու գուրպէ մի եթող». պետք է ենթադրել, ուրեմն, որ յուրաքանչյուր գյուղական ընտանիք պարտավոր է եղել որոշ քանակությամբ մանած թել և գուլպա տալ տանուտերին և այլն։

1596 թվականի մի հիշատակարանից տեղեկանում ենք «ալըղան» կամ «ալեղան» կոչվող ինչ-որ տուրքի գոյության մասին։ Հիշատակարանում ասված է, որ Բասդ գյուղում «ամէն տուն չափ մի ցորեն կուտային ի յըռէսն ալեղան», բայց Կակոս անունով մեկը, դառնալով ռես և «զմտաւ ածեալ զօր մահուն և զերկիւղն աստուծոյ՝ վերուց զայն չար ղաբալն ի գեղջէն» (Ա. Սիւրմէեան, Մայր ցուցակ հայերէն ձեռագրաց Երուսաղէմի, 1948, էջ 358—359)։

Գյուղական համայնքի ներքին կյանքին վերաբերող այս մանր տուրքերի մասին մեր գիտցածը շատ քիչ է։ Առայժմ դժվար է ասել նույնիսկ որ այդ բոլոր տուրքերը յուրացնում էին տանուտերերն ու ռեսները։ Եվ շատ հնարավոր է ենթադրել, որ դրանց գոնե մի մասը, այլևայլ ճանապարհներով, դարձյալ մուտք էր գործում պետական պաշտոնյաների ու ֆեոդալ տերերի գրպանները։

**13. Եկեղեցական հարկեր ու տուրքեր.** Հայ աշխատավոր ժողովուրդը հարկվում էր նաև եկեղեցական պաշտոնեության՝ կաթողիկոսների, թեմական առաջնորդ եպիսկոպոսների, վանահայրերի և շարքային քահանաների ու երեցների կողմից։

«Տուրքն որ առ աստուած,— գրում է Մատթեոս Ջուղայեցին,— չափով և համարով է, այսինքն՝ ըստ ընչից իւրեանց, զի համարով Ժ. (10)-էն զմինն խնդրէ» («Քարոզ վասն աղօրհնութեան», Պետ. Մատենադարան. ձեռ. № 2229, էջ 179)։

Սակայն սխալ կլիներ այս տվյալից եզրակացնել, որ հայ եկեղեցին ԺԵ. դարում ժողովրդից իրոք գանձում էր հարկ արդյունքի մեկ-տասներորդի չափով։

Գրիգոր Տաթևացին իր քարոզներից մեկում հարց է առաջադրում, թե «Ո՞րն է այժմ տասնորդ մեր և երեխայրիք» և տալիս այդ հարցին պարզ ու որոշակի հետևյալ պատասխանը. «Ասեմք եթէ այն է, զոր պտուղ կոչեմք ի կալէ և հնձանէ և ի ծառոց: Եւ դարձեալ, սովոր եմք ի մուտս աշնան, յորժամ արմտիք ժողովին ի կալոյ և յայգւոյ և ի ծառոց՝ երթամք ի սուրբ տեղիս ի վանորայս, և պաշտօն առնեմք, մատաղօք զքահանայս և զաղքատս կերակրեմք. հացն ի կալոյն բաժին, և մորթեւքն յանասնոց. և ղրամն յայլ ընչից» (Քարոզգիրք, ամարան հատոր, էջ 481)։

Կալից և հնձանից վերցվող պտղի կամ երեխայրիքի, ինչպես նաև եկեղեցական մյուս տուրքերի մասին շատ ավելի մանրամասն տվյալներ են պահպանվել կաթողիկոսական հնագույն կոնդակներում։ Այդպիսիներից է Գրիգոր ԺԱ. կաթողիկոսի 1541 թվականի կոնդակը, ուղղված Ստեփանոս Նախավկայի վանքի թեմին։

Ծանոթանանք կոնդակի եկեղեցական հարկերին վերաբերող հատվածին.

«Զինչ երէց որ ի թեմս կայ, նոցա տանէն զինչ հասք որ լինի՝ մուտքն նախավկային է. տեառնական մատաղն որ լինի՝ երին, մորթին իւր աթոռոյն է, յանկարծամահ որ լինի քառասնիցն ու մատաղն եպիսկոպոսին է, և կողոպուտն՝ լաւ խալին մի կամ լաւ շուրջառ տան յաթոռն։

Զերեխայրիս կալոյ և հնձանաց. երեխայրիքն այն է՝ յեղնագլուխ կէս մարդան հաց, յամէն հնձանէ մէկ դորակ գինի տան։

Զսրբանուէրն, որ է սրբադրամ, այդ եկեղեցւոյ և խաչի լուսագին է..., որ ի շատէն շատ և ի փոքրէն փոքր, որպէս ասէ տէրն յԱւետարանն, թէ որում շատ տուաւ՝ շատ խնդրեսցի ի նմանէ, և յորում սակաւ՝ սակաւ, որ յամէն տարի Ա. անգամ սրբադրամ ժողովեն, որ սրբոցն է բաժին» (Մատենադարան, ձեռ. № 8017, էջ 4բ—5ա)։

Եպիսկոպոսներին ու թեմական առաջնորդներին բաժին ընկնող «հասք»-ի մասին արժեքավոր են նաև «Կանոնք ազգի ազգի մեղաց...» խորագրով մեզ հասած կանոնական խրատների մեջ գրանցված տվյալները.

«Առաջնորդաց հասք,— ասված է այնտեղ,— տուն քահանային և տան զերէցաւագին, գզրին, ժամկոչին*, տէրունին, աստուծոյ և խաչի և սրբոց մատաղն, սուրբ խաչի պտուղն, սրբադրամն, չհասն Ճ. (100) դրամ արծաթ**, պոռնիկն Խ. (40) դրամ, կանամբին ԺԵ. (15) դրամ, մէկ կշիռ իւղ, Ա. կշիռ պանիր, Ա. հաւ» (Մատենադարան, ձեռ. №8509, էջ 88ա—88բ)։

---

* Հմմ. Նաև Կանոնգիրք № 655, էջ 32բ, ուր եպիսկոպոսներին հարկատու սոցիալական խավերը թվարկված են այսպես. «տուն քահանայիցն ու տանուտէրացն և ազատացն»։

** Առաջնորդներն իրենք խախտում էին երբեմն չհասության համար սահմանված ազգակցության աստիճանները, նյութական փոխհատուցում ստանալով դրա դիմաց։ Այս մասին ունենք դերճախոս վկայություն «Այս է աւրէնք հայրապետաց» խորագրով, կիսագրագետ մեկի կողմից ԺԶ. դարում ընդօրինակված հոդվածում։ Այնտեղ ասված է. «Ազգականութիւն ԺԲ. (12) ճեղ է, եթէ Ա. պակաս լինի՝ Ա. եղ մի վանից աթոռին հախ է, թէ Բ. պակաս լինի՝ հրաման չկա...։ Խնամութիւն Ժ. (10) ճեղ է, թէ Ա. պակաս լինի՝ ղօչ մի վանաց աթոռին, թէ երկուքն պակաս լինի՝ մեղօք [է], չի լին[ի]։ Կնայպապութիւն Ը. [8] ճեղ է, թէ մէկ պակաս լինի՝ լիտր մի ձէթ վանիցն աթոռին հախ է, թէ Բ. պակաս լին[ի]՝ մեղօք է, հրաման չկայ։

Ով այսպէս բաներս այնէ կամ խառնվի՝ ԳՃԿԶ. հայրապետաց անիծեալ եղեցի» Մատենադարան, ձեռ. № 1634, էջ 159ա)։

Հոգևոր առաջնորդները իրենց հասանելիք տուրքերը հոգևոր իրենց հոտից հավաքելու համար, Գրիգոր Տաթևացու պատկերավոր խոսքերով արտահայտած. «միանգամ ի տարւոջն շրջեն ի վիճակն և լնուն զքսակն արծաթով, և պատառեն իբրև զգազան, և դարձեալ փախչին ի յորջս իւրեանց, և ոչ ինչ հոգան վասն ոչխարացն» (Քարոզգիրք, ամառան հատոր, էջ 288)։

Վերը հիշատակված կանոնական խրատների, ինչպես և մեզ հետաքրքրող ժամանակաշրջանին մերձավոր այլ աղբյուրների մեջ* տվյալներ կան նաև «իրիցական հասք»-ի, այսինքն երեցների ու քահանաների եկամտաբեր աղբյուրների մասին։

Կանոնական խրատների մեջ գրված է. «Իսկ իրիցական հասք — պսակին՝ Գ. դրամ, այրն Ը. դրամ, կին Բ. դրամ, հոգագրամ՝ Ա. դրամ, գերեզման օրհնելոյ Ա. դրամ, խաչի համբոյր և այլ ինչ որ սահմանեալ կայ սուրբ հայրապետաց։ Ննջեցելոց՝ բազմականն զինչ ունի անպակաս. ով տառապեալ է Ա. կտաւ, ծերոց՝ կապուտ, տղայոց՝ սպիտակ, թէ ունևոր է՝ կարպետն է, բարձն, չվանն, հագուստն անպակաս տան ի վանքն» (Մատենադարան, ձեռ. № 8509, էջ 88բ)։

Մահացածի ունեցվածքի տնօրինման մասին կանոնական այս սահմանման ամենուրեք կիրառված լինելը հաստատում է Մատթեոս Ջուղայեցին. նա գրում է. «Եւ այս է զոր կարգեալ է ի Հայաստան եկեղեցիս, զի մեռելոյն ինչքն քահանային է» («Ի զլխոյն Ղուկասու հասաքումն բանից», ձեռ. № 5232, էջ 76ա)։

Եկեղեցականները, սակայն, չէին բավարարվում «Հայաստան եկեղեցւ» կանոններով սահմանված տուրքերով. հայ հպատակները ստիպված էին վճարել նաև «խոստովանադրամ» և «հաղորդադրամ» կոչված տուրքերը, որոնք Գրիգոր Տաթևացու նման ամենագետ եկեղեցականի վկայությամբ իսկ՝ «խորթ է, յադահութեանց երիցանց սահմանեալ և ոչ ըստ կանոնաց» («Գիրք հարցմանց», էջ 684)։

Այսպիսով, հայ եկեղեցին հոգևոր իր հոտից գանձում էր հետևյալ հարկերն ու տուրքերը.

ա. Պտուղ և երեխայրիք կալոյ և հնձանաց.

բ. Տեառնական մատաղ.

գ. Կողոպուտք.

դ. Սրբանուէր կամ սրբադրամ.

ե. Խոստովանադրամ.

զ. Հաղորդադրամ.

է. Զանազան տուգանքներ (չհաս ամուսնության և այլ առիթներով) և այլն։

Սակայն հայ եկեղեցին ոչ միայն հարկահավաք, այլև հարկատու էր։ Իրենց հասույթների զգալի մի մասը թեմական առաջնորդ եպիսկոպոսներն ու վանքերի հայրապետները պարտավոր էին վճարել մահմեդական իշխողներին։

Աստվածատուր վարդապետը Մկրտիչ Նաղաշի վարքագրության մեջ (շարադրված է 1449 թ.), նկատի ունենալով Աղ-Կոյունլուների տիրապետության տակ գտնվող Արևմտյան Հայաստանի շրջանները և Միջագետքի հայաշատ վայրերը, փոքր ինչ չափազանցնելով գրում է. «Եկեղեցիք Միջագետաց ի ներ-

---

* Տե՛ս, օրինակ. Գարեգին վրդ. [Հովսեփյանի] «Քահանաների վարձատրությունը ԺԴ. (՞) դարում» հոդվածի մեջ հրատարակված «Երիցական հասն և իրաւունքն այս է» փոքրիկ բնագիրը («Արարատ», 1915 թ., էջ 217—218)։

քոյ դիմոսկան հարկի կային և եպիսկոպոսք՝ մարքսապետք, զի զամենայն զոր ինչ առնուին ի քրիստոնէից՝ ի մաքս տաին» (ԺԵ. դարի հշտկ., Ա, էջ 625—626)։

Անտարակույս նույն վիճակում էին գտնվում նաև հայկական մյուս եպիսկոպոսական թեմերը։

1530 թվականից պահպանվել է ուշագրավ մի հիշատակարան Կամախի եպիսկոպոսական «մալ»-ի չափի մասին։ Այնտեղ ասված է. «Ես՝ Մաղաքիա վարդապետս Դերջանեցի... գնացի ի յՍտանպաւլ առ մեծ աշխարհակալն սուլթան Սուլէյմանն, զի Կամխայ և Աւագ վանացն եպիսկոպոսութեան մալն ԺԲՌ. (12.000 սպիտակ) էր, և յոյժ նեղացաւ վանքն և երկիր, և այլ ոչ կարէին տալ։ Վասն այն հարկեցա ի բազմաց և գնացի ի սուլթան Սուլէյմանն ի թվին ՋՀԹ. (1530) և ի ՋՌ. (6000) իջուցի զմալն, և զարեզաից խարաճ՝ ու դիսպանճն բարձաք ի բաց, և եկեղեցեաց նորոգման հրաման առաք, եկաք դարձեալ յԱւաք վանք» (Նոր-Ջուղայի Ամենափրկիչ վանքի Մատենադարան, ձեռ. № 55, էջ 298—299 — տե՛ս Ս. Տեր-Ավետիսյանի ձեռագիր ցուցակ և «Հանդէս ամսօրեայ», 1952, № 10—12, էջ 581 — Ն. Ակինյանի «Մաղաքիա վ. Դերջանցի...» հոդվածը)։

Հարկավ շատ քչերին էր հաջողվում սուլթանների ու փադիշահերի տեսությանն արժանանալ և կիսով չափ իջեցնել «եպիսկոպոսական մալը», ուստի սխալված չենք լինի կարծելով, որ եկեղեցու կողմից գանձվող հարկերի ու տուրքերի մի զգալի մասը, դարձյալ մտնում էր մահմեդական բռնակալների գանձարանները։

* * *

Քաղաքական ու սոցիալ-տնտեսական այսպիսի ծանր պայմաններում, անընդհատ ու ավերիչ պատերազմների թոհուբոհում, քաղցի ու համաճարակային հիվանդությունների իրար հաջորդող տարիներին են ստեղծվել ԺԵ. դարի հայերեն ձեռագիր կոթողները, որոնց հիշատակարանները իրենց մեծ մասով առաջին անգամ հրատարակվում են սույն ժողովածուի էջերում։

Թե ինչ արժեք են ներկայացնում նրանք որպես պատմական սկզբնաղբյուր, երևում է հենց առաջաբանի փոխարեն գրած «Հայաստանը ԺԵ. դարի երկրորդ հիսնամյակում» խորագրով համառոտ այս ուսումնասիրությունից, որը հնարավոր էր շարադրել գերազանցապես հիշատակարանների մեջ ցրված մեծարժեք ու բազմաբովանդակ նյութերի հիման վրա։

Մեր նպատակը չի եղել բնավ սպառել հրատարակվող հիշատակարանների պարունակած բոլոր նյութերը. այդ պատմաբանների, լեզվաբանների, գրականագետների, մանկավարժության և գիտության այլ բնագավառների պատմության մասնագետների մի քանի սերունդի գործ է։

Եթե մեր ուսումնասիրությունը դույզն ինչ չափով դյուրացնի հիշատակարանների սույն ժողովածուն ուսումնասիրողների աշխատանքը, դրանով մենք հասած կլինենք մեր նպատակին։

Լ. ԽԱՉԻԿՅԱՆ

## ԺՈՂՈՎԱԾՈՒԻ ԿԱԶՄՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

*Սույն «ԺԵ. դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ» մասն Բ (1451—1480 թթ.) ժողովածուն պարունակում է 575 հիշատակարան, համարակալված 1—575 թվահամարներով*։*

*Հիշատակարաններից 251-ը քաղված են Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետին կից Պետական Ձեռագրատան (Մատենադարանի) ձեռագրական ֆոնդերից, 10-ը ձեռագրական այլ հավաքածուներից, 129-ը հիշատակարանների ձեռագիր ժողովածուներից և հայերեն ձեռագրերի անտիպ ցուցակներից, 122-ը հիշատակարանների տպագրված ժողովածուներից և ձեռագրերի տպագիր ցուցակներից, 25-ը հայագիտական տպագիր աշխատություններից և, վերջապես, 38-ը հայ պարբերական մամուլում տպագրված ձեռագրերի նկարագրություններից։*

*Ստորև, վերը թվարկված հերթականությամբ, նշում ենք ժողովածուի մեջ ընդգրկված հիշատակարանների աղբյուրները։*

### I. ՊԵՏ. ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆԻ ՁԵՌԱԳՐԵՐ

*(Սկզբից հերթական դասակարգումով արվում են ձեռագրերի, ապա նրանցից քաղված հիշատակարանների համարները)*

| Ձեռագիր №№ | Հիշատակարան №№ | Ձեռագիր №№ | Հիշատակարան №№ | Ձեռագիր №№ | Հիշատակարան №№ |
|---|---|---|---|---|---|
| 115 | 235 | 901 | 371 | 1771 | 221 |
| 185 | 281 | 905 | 55 | 2001 | 565 |
| 215 | 396 | 942 | 541 | 2014 | 237 |
| 216 | 461 | 958 | 439 | 2156 | 22 |
| 219 | 373 | 959 | 137 | 2335 | 517 |
| 221 | 475 | 982 | 177 | 2417 | 160 |
| 226 | 485 | նույնը | 292 | 2465 | 252 |
| 228 | 121 | 993 | 90 | 2522 | 114 |
| 266 | 356 | 1027 | 133 | 2542 | 503 |
| 279 | 175 | 1130 | 64 | 2549 | 260 |
| 287 | 150 | 1300 | 91 | 2631 | 429 |
| 303 | 34 | 1301 | 4 | 2632 | 411 |
| 414 | 369 | 1309 | 256 | 2634 | 474 |
| 415 | 443 | 1511 | 403 | 2678 | 518 |
| 425 | 309 | 1609 | 212 | 2687 | 513 |
| 474 | 470 | 1618 | 301 | 2711 | 566 |
| 895 | 524 | 1711 | 255 | 2781 | 501 |

**) Սխալմամբ, 131, 327, 328 թվահամարները կրկնված են և, ընդհակառակն, № 30-ի տակ հրատարակված է № 31 հիշատարանի Ղ. Փիրղալեմյանի կատարած աղճատ համառոտագրությունը, № 402-ի տակ՝ № 162 հիշատակարանը նույնությամբ և № 199-ի տակ՝ № 203 հիշատակարանի Բ. հիշատակագրության համառոտ շարադրանքը։*

| Ձեռագիր №№ | Հիշատակա-րան №№ | Ձեռագիր №№ | Հիշատակա-րան №№ | Ձեռագիր №№ | Հիշատակա-րան №№ |
|---|---|---|---|---|---|
| 2788 | 246 | 4862 | 78 | 6356 | 243 |
| 2816 | 274 | 4873 | 538 | 6359 | 412 |
| 2843 | 62 | 4876 | 495 | 6367 | 197 |
| 2816 | 405 | 4893 | 225 | 6378 | 530 |
| 3049 | 223 | 4893 | 5 | 6379 | 414 |
| 3091 | 40 | 4907 | 165 | 6383 | 473 |
| 3191 | 109 | 4970 | 387 | 6390 | 332 |
| 3223 | 114 | 4976 | 532 | 6424 | 15 |
| 3330 | 469 | 4992 | 480 | 6497 | 501 |
| 3402 | 19 | 4997 | 194 | 6509 | 54 |
| 3481 | 264 | 5001 | 46 | 6570 | 52 |
| 3494 | 181 | 5013 | 481 | 6653 | 53 |
| 3565 | 421 | 5018 | 11 | 6693 | 66 |
| 3505 | 362 | 5067 | 416 | 6767 | 407 |
| 3787 | 275 | 5207 | 102 | 6798 | 273 |
| 3701 | 115 | 5212 | 145 | 6806 | 21 |
| 3703 | 162 | 5262 | 492 | 6831 | 514 |
| 3758 | 282 | 5313 | 286 | 6858 | 223 |
| 3759 | 258 | նույնը | 493 | 6860 | 196 |
| 3771 | 24 | 5331 | 142 | 6961 | 112 |
| 3791 | 47 | 5333 | 507 | 7209 | 447 |
| 3848 | 138 | 5338 | 288 | 7275 | 116 |
| 3854 | 404 | 5376 | 310 | 7332 | 266 |
| 3894 | 211 | 5393 | 99 | 7433 | 342 |
| 3917 | 159 | 5401 | 406 | 7449 | 191 |
| 3990 | 398 | 5414 | 509 | 7539 | 437 |
| 3992 | 305 | 5417 | 166 | 7566 | 187 |
| 4020 | 152 | 5459 | 79 | 7627 | 183 |
| 4072 | 161 | 5462 | 378 | 7631 | 320 |
| 4091 | 120 | 5469 | 432 | 7632 | 226 |
| 4123 | 313 | 5470 | 184 | 7661 | 293 |
| 4162 | 329 | 5513 | 49 | 7691 | 13 |
| 4186 | 130 | 5515 | 270 | 7742 | 325 |
| 4211 | 302 | 5544 | 182 | 7742 | 573 |
| 4263 | 186 | 5553 | 337 | 7747 | 148 |
| նույնը | 227 | 5591 | 567 | 7748 | 385 |
| 4350 | 18 | 5619 | 497 | 7757 | 348 |
| 4392 | 427 | 5629 | 98 | 7760 | 147 |
| 4472 | 111 | 5658 | 430 | 7774 | 476 |
| 4515 | *) | 5660 | 516 | 7779 | 528 |
| 4519 | 94 | 5702 | 391 | 7782 | 409 |
| 4638 | 471 | 5738 | 464 | 7787 | 189 |
| 4648 | 96 | 5798 | 228 | 7831 | 108 |
| 4674 | 169 | 5910 | 425 | նույնը | 490 |
| 4690 | 486 | 5912 | 438 | 7835 | 468 |
| 4696 | 151 | 5972 | 8 | 7836 | 251 |
| 4745 | 139 | 6042 | 341 | 7846 | 203 |
| 4746 | 118 | 6076 | 110 | 7874 | 131 |
| 4755 | 119 | 6112 | 233 | 7953 | 215 |
| 4768 | 6 | 6125 | 543 | 7986 | 156 |
| 4775 | 393 | 6257 | 519 | 7991 | 459 |
| 4778 | 224 | 6260 | 132 | 8188 | 172 |
| 4779 | 463 | 6261 | 174 | 8301 | 124 |
| 4830 | 25 | 6268 | 454 | 8373 | 321 |
| 4834 | 299 | 6273 | *) | նույնը | 521 |
| 4837 | 249 | 6292 | 131ա | 8393 | 335 |
| 4849 | 208 | 6316 | 176 | 8409 | 397 |
| 4850 | 180 | 6319 | 522 | 8453 | 265 |

*) № 4515 ձեռագիրը Ղ. Փիրղալեմյանի «Նշխարք պատմութեան հայոց» խորագրով հիշատակարանների անտիպ ժողովածուի Ի հատորն է։

**) № 6273 ձեռագիրը Ղ. Փիրղալեմյանի «Նշխարք Պատմութեան հայոց» խորագրով հիշատակարանների անտիպ ժողովածուի Ա հատորն է։

| Ձեռագիր №№ | Հիշատակարան №№ | Ձեռագիր №№ | Հիշատակարան №№ | Ձեռագիր №№ | Հիշատակարան №№ |
|---|---|---|---|---|---|
| 8590 | 12 | 9222, ԽԳ | 544 | 9717 | |
| 8971 | 153 | 9223, ԺԳ | 92 | 9720 | |
| 8925 | 32 | 9223, ԺԴ | 329ա | | |
| 8928 | 386 | 9223, ԺԵ | 350 | Պատարիկ № 1449—հշակ. № 247 | |
| 8933 | 355 | 9339 | 394 | | |
| 8968 | 39 | 9274 | 56 | Հմայիլ № 1—հշտկ. № 562 | |
| 8971 | 472 | 9323 | 61 | | |
| 9093 | 465 | 4951 | 441 | Կթղկս. դիվան, № 240, վ. № 130 հշտկ. № 185 | |
| 9216 | 77 | 9493 | 190 | | |
| 9222, Է | 234 | 9538 | 559 | Նույնը—հշտկ. № 207 | |
| 9222, Գ | 334 | 9694 | 125 | | |

## II. ՁԵՌԱԳՐԱԿԱՆ ԱՅԼ ՀԱՎԱՔԱԾՈՒՆԵՐ

*ՍՍՌՄ գիտությունների Ակադեմիայի Արևելագիտության Ինստիտուտի լենինգրադյան բաժանմունքի գրադարանի հայերեն ձեռագրերից քաղված է 4 հիշատակարան։*

| Ձեռագիր №№ | Հիշատակարան №№ |
|---|---|
| A – 8 | 33 |
| B – 52 | 195 |
| B—82 | 401 |
| B – 86 | 257 |

*Վրացական ՍՍՌ Կենտրոնական Պատմական արխիվի հայերեն ձեռագրերից քաղված է 3 հիշատակարան.*

| Ֆոնդ № | Ձեռագիր № | Հիշատակարան № |
|---|---|---|
| 233 | 541 | 395 |
| » | 544 | 466 |
| » | 584 | 570 |

*Վրացական ՍՍՌ Գիտությունների Ակադեմիայի Ձեռագրերի ինստիտուտի (նախկինում՝ Պատմական թանգարանի) ձեռագրերից քաղված է ընդամենը 1 հիշատակարան.*

*Ձեռագիր № 173—հիշատակարան № 16։*

*№ 262 հիշատակարանի ընդօրինակությունը, որի բնագիրը պահվում է Աշտարակի շրջանի Ողվարդ գյուղի բնակիչներից մեկի մոտ, ստացել ենք ազգագրագետ Վ. Բդոյանից։*

*№ 23 հիշատակարանը, քաղված Փարիզի Նուպարյան Մատենադարանի № 2 ձեռագրից, ստացել ենք փարիզաբնակ հայագետ Հ. Պերպերյանից։*

## III. ՀԻՇԱՏԱԿԱՐԱՆՆԵՐԻ ՁԵՌԱԳԻՐ ՀԱՎԱՔԱԾՈՒՆԵՐ ԵՎ ՀԱՅԵՐԵՆ ՁԵՌԱԳՐԵՐԻ ԱՆՏԻՊ ՑՈՒՑԱԿՆԵՐ

*1. Ղ. Փիրղալեմյանի «Նշխարք պատմութեան հայոց» խորագրով հիշատակարանների երկհատոր ժողովածուն (պահվում է Պետ. Մատենադարանում, Ա. հատորը 6273 համարի տակ, իսկ Բ. հատորը՝ 4515)։*

*Ա. հատորից քաղված է 29 հիշատակարան. դրանք են՝ №№ 74, 154, 157, 202, 204, 232, 238, 354, 367, 382, 383, 394, 413, 436, 440, 442, 455, 456, 460, 462, 478, 482, 484, 488, 508, 555, 557, 568, 569։*

*Բ. Հատորից քաղված է 15 հիշատակարան. դրանք են՝ №№ 9, 48, 122, 123, 201, 344, 366, 385, 392, 410, 417, 418, 419, 424, 457։*

*2. Ս. Տեր-Ավետիսյանի և Մ. Տեր-Մովսիսյանի կազմած Նոր-Ջուղայի Ամենափրկիչ և այլ վանքերի ու եկեղեցիների հայերեն ձեռագրերի անտիպ ցուցակները (Պահվում են Հայկ. ՍՍՌ Գիտությունների Ակադեմիայի Պատմության ինստիտուտի արխիվում)։ Սրանք, լրացնելով և ճշտելով մեկը մյուսին, հնարավորություն են ընձեռում սակավ բացառությամբ անաղարտորեն ներկայացնելու Նոր-Ջուղայի հայերեն արժեքավոր ձեռագրերի 1451—1480 թթ. շարադրված 27 հիշատակարանները. դրանք են՝ №№ 27, 94, 97, 100, 103, 113, 144, 179, 267, 271, 304, 364, 399, 423, 428, 431, 467, 483, 498, 506, 520, 527, 533, 542, 545, 551, 554։*

*3. Մ. Տեր-Մովսիսյանի կազմած աշխարհիս հայերեն ձեռագրերի թերի ցուցակը։ Սրա մեջ նկարագրված են բազմաթիվ ձեռագրեր, որոնք կամ ոչնչացվել են առաջին համաշխարհային պատերազմի ընթացքում և հետագա դժնդակ տարիներին՝ թուրքերի կողմից բռնագրավված հայկական շրջաններում և կամ, գտնվելով Հայաստանից դուրս, մատչելի չեն եղել մեզ։ Այդ ցուցակից քաղել ենք հետևյալ 36 հիշատակարանները. №№ 29, 31, 37, 45, 65, 69, 128, 134, 155, 168, 171, 192, 216, 218, 229, 239, 259, 285, 297, 306, 338, 351, 353, 361, 363, 377, 415, 422, 433, 489, 497, 499, 526, 531, 553։*

*4. Հ. Բարաղամի Վասպուրականի ձեռագրերի անտիպ ցուցակից (միջնորդությամբ Մ. Տեր-Մովսիսյանի) քաղել ենք հետևյալ 7 հիշատակարանները. №№ 17, 324, 352, 367, 379, 408, 451, 547։*

*5. Ղ. Ալիշանի հիշատակարանների «Հայկարան» կոչվող ժողովածուից (միջնորդությամբ Մ. Տեր-Մովսիսյանի) քաղված է 4 հիշատակարան. №№ 1, 200, 294, 560։*

*6. Ե. Լալայանի «Ցուցակ հայերէն ձեռագրաց Վասպուրականի» աշխատության անտիպ մասից (դարձյալ միջնորդությամբ Մ. Տեր-Մովսիսյանի), քաղված է 4 հիշատակարան. №№ 141, 222, 230, 505։*

*7. Տիրայր վարդապետի «Մայր ցուցակ Օքսֆորդի Բոդլեյան գրատան հայերեն ձեռագրերի» անտիպ ցուցակից (տե՛ս Պետ. Մատենադարան, անհատական արխիվների ֆոնդ, թղթապանակ 119—122) քաղված է 5 հիշատակարան. №№ 42, 272, 326, 374, 380։*

*8. Ս. Տեր-Ավետիսյանի «Ձեռագիրք Նախավկայի վանուց Դարաշամբի» անտիպ ցուցակից (տե՛ս Պատմության ինստիտուտի արխիվ) քաղված է № 400 հիշատակարանը։*

*9. Զմմառի հայերեն ձեռագրերի Քեշիշյանին կազմած անտիպ ցուցակից քաղված է № 88 հիշատակարանը։*

## IV. ՀԻՇԱՏԱԿԱՐԱՆՆԵՐԻ ՏՊԱԳԻՐ ՀԱՎԱՔԱԾՈՒՆԵՐ ԵՎ ՀԱՅԵՐԵՆ ՁԵՌԱԳՐԵՐԻ ՏՊԱԳԻՐ ՑՈՒՑԱԿՆԵՐ

*1. Ղ. Փիրղալեմեան, Նօտարք հայոց, Կ. Պօլիս, 1888։ Քաղված է 50 հիշատակարան. №№ 3, 7, 26, 28, 41, 44, 51, 57, 68, 70, 71, 72, 75, 80, 83, 101, 104, 105, 106, 107, 127, 136, 158, 163, 167, 170, 173, 198, 202, 206, 209, 236, 240, 242, 248, 261, 263, 280, 284, 296, 298, 309, 311, 312, 314, 315, 327ա, 328, 330, 331։*

*2. Գ. Սրուանձտեան, Թորոս Աղբար, Հայաստանի ճամբորդ, մասն առաջին, Կ. Պօլիս, 1879։ Քաղված է 2 հիշատակարան. № № 63, 571։*

*3. Գ. Սրուանձտեան, Թորոս Աղբար, մասն Բ., Կ. Պօլիս, 1885, Քաղված է 13 հիշատակարան. № № 38, 43, 58, 76, 140, 277, 295, 316, 323, 348, 360, 390, 448։*

*4. Ե. Լալայեան, Ցուցակ հայերէն ձեռագրաց Վասպուրականի, պրակ առաջին, Թիֆլիս, 1915 (համառոտված ԼՑՎ սկզբնատառերով)։ Քաղված է 11 հիշատակարան. № № 36, 205, 213, 217, 269, 375, 449, 451, 479, 484, 546։*

*5. Բ. Սարգիսեան, Մայր ցուցակ հայերէն ձեռագրաց մատենադարանին Մխիթարեանց ի Վենետիկ, հատոր առաջին, Վենետիկ, 1914 (ՍՑՎ հտ. Ա)։ Քաղված է 10 հիշատակարան. № № 67, 84, 219, 241, 339, 376, 389, 487, 512, 535։*

*6. ՍՑՎ հտ. Բ, Վենետիկ, 1924, (Նախորդի երկրորդ հատորը)։ Քաղված է 2 հիշատակարան. № № 290, 370։*

*7. Յ. Տաշեան, Ցուցակ հայերէն ձեռագրաց մատենադարանին Մխիթարեանց ի Վիեննա, Վիեննա, 1895։ Քաղված է 5 հիշատակարան. № № 82, 87, 146, 450, 552։*

*8. Ա. Սիւրմէեան, Ցուցակ հայերէն ձեռագրաց Հալէպի ս. Քառասուն մանկունք եկեղեցւոյ և մասնաւորաց (հա. Ա), Երուսաղէմ, 1935 (ՍՑՀ հտ. Ա)։ Քաղված է 9 հիշատակարան. № № 86, 129, 149, 193, 303, 318, 420, 550, 575։*

*9. Ա. Սիւրմէեան, Ցուցակ հայերէն ձեռագրաց Հալէպի և Անթիլիասի և մասնաւորաց, Բ. հատոր, Հալէպ, 1936 (ՍՑՀ հտ. Բ)։ Քաղված է 2 հիշատակարան. № № 220, 372։*

*10. Ա. Սիւրմէեան, Մայր Ցուցակ հայերէն ձեռագրաց Եւրոպայի մասնաւոր հաւաքումներու, Փարիզ, 1950։ Քաղված է 2 հիշատակարան. № № 10, 135։*

*11. Ա Սիւրմէեան, Մայր ցուցակ հայերէն ձեռագրաց Երուսաղէմի սրբոյ Յակոբեանց վանքի, հատոր առաջին, Վենետիկ, 1948։ Քաղված է 2 հիշատակարան. № № 210, 254։*

*12. Ն. Պողարեան, Մայր ցուցակ ձեռագրաց սրբոց Յակոբեանց, երրորդ հատոր, Երուսաղէմ, 1954։ Քաղված է 4 հիշատակարան. № № 35, 278, 564, 572։*

*13. Բ. Կիւլէսէրեան, Ցուցակ հայերէն ձեռագրաց Կարմիր-վանուցն Անկիւրիոյ, [Անթիլիաս, 1956]։ Քաղված է 3 հիշատակարան. № № 276, 357, 416։*

*14. Հ. Աճառեան, Ցուցակ հայերէն ձեռագրաց Թաւրիզի, Վիեննա, 1910 (ԱՑԹ)։ Քաղված է 2 հիշատակարան. № № 143, 372։*

*15. Յ. Թօփճեան, Ցուցակ ժողովածուաց Դադեան Խաչիկ վարդապետի, մասն Բ (1878—1898), Վաղարշապատ, 1900։ Քաղված է 1 հիշատակարան. № 95։*

16. Rapport sur une mission scientifique en Belgique, Hollande, Danemark et Suède, par M. Frédéric Macler, Paris, 1924: *Քաղված է 2 հիշատակարան. №№ 59, 289։*

*17. Տ. Պալեան, Ցուցակ հայերէն ձեռագրաց ի Թուրքիա, հտ. Ա, տետր Ա (Կ. Պօլիս, 1892) և հտ. Ա, տետր Բ (Կ. Պօլիս, 1893)։ Քաղված է 2 հիշատակարան. № № 561, 574։*

## V. ՀԱՅԱԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՒԹՅՈՒՆՆԵՐ


1. Ղ. Ալիշան, Այրարատ, Բնաշխարհիկ Հայաստանեայց, Վենետիկ, 1890։ Քաղված է № 510 հիշատակարանը։

2. Ղ. Ալիշան, Կամենից, տարեգիրք հայոց Լեհաստանի և Ռումինիոյ, Վենետիկ, 1896։ Քաղված է № 14 հիշատակարանը։

3. Ղ. Ալիշան, Հայապատում, Վենետիկ, 1901 և Սիսուան, Վենետիկ, 1885։ Քաղված են № № 349, 368 հիշատակարանները։

4. Ղ. Ալիշան, Սիսական, Վենետիկ, 1893։ Քաղված են № № 283, 502 հիշատակարանները։

5. Ն. Ակինեան, Գաւազանագիրք կաթողիկոսացն Աղթամարայ, Վիեննա, 1920։ Քաղված է № 291 հիշատակարանը։

6. Մ. Աղամոնի, Միաբանք և այցելուք հայ Երուսաղէմի, Երուսաղէմ, 1929։ Քաղված են № № 279, 322, 491, 548 հիշատակարանները։

7. Բակուրան, Կիպրոս կղզի, Նիկոսիա, 1903։ Քաղված է № 340 հիշատակարանը։

8. Մ. Բարխուդարեան, Արցախ, Բագու, 1895։ Քաղված են № № 245, 250, 435 հիշատակարանները։

9. Մ. Բարխուդարեան, Աղուանից երկիր և դրացիք (Միջին Դաղստան), Թիֆլիս, 1893։ Քաղված է № 536 հիշատակարանը։

10. Բ. Կիւլէսէրեան, Պատմութիւն կաթողիկոսաց Կիլիկիոյ, Անթիլիաս— Լիբանան, 1939։ Քաղված է № 496 հիշատակարանը։

11. Ս. Հայկունի, Բագրեւանդ չրաբաշխ գաւառ, մաս Ա, Էջմիածին, 1894։ Քաղված է № 558 հիշատակարանը։

12. Պ. Նաթանեան, Արտօսր Հայաստանի, Կ. Պօլիս, [1888], քաղված է № 268 հիշատակարանը։

13. Հ. Ոսկեան. Արցախի վանքերը, Վիեննա, 1953։ Քաղված է № 346 հիշատակարանը։

14. Հ. Ոսկեան, Տարօն-Տուրուբերանի վանքերը, Վիեննա, 1953։ Քաղված են № № 188, 347 հիշատակարանները։

15. Մ. Սմբատեան, Տեղագիր Գեղարքունի ծովազարդ գաւառի, որ այժմ Նոր-Բայազիտ գաւառ, Վաղարշապատ, 1896։ Քաղված է № 231 հիշատակարանը ։

16. Ճանապարհորդութիւն Տ. Յովհաննէս քահանայի Վաղարշակերտցւոյ, Կ. Պօլիս, 1870։ Քաղված է № 2 հիշատակարանը։

17. Ամիրդովլաթ Ամասիացի, Օգուտ բժշկութեան, Երևան, 1940։ Քաղված է № 369 հիշատակարանը ։


## VI. ՊԱՐԲԵՐԱԿԱՆՆԵՐ


1. «Ազգագրական հանդէս», 1897 թ.։ Քաղված է № 307 հիշատակարանը։

2. «Արարատ», 1905, 1911 թթ.։ Քաղված են № № 300, 511, 525 հիշատակարանները։

3. «Արևելեան մամուլ», 1897 թ.։ Քաղված են № № 16, 477 հիշատակարանները։

4. «Արևելք» օրագիր, 1884 թ.։ Քաղված են № № 129, 434 հիշատակարանները։

*5. «Արձագանք», 1888, № 10 և № 12։ Քաղված են №№ 343, 540 հիշատակարանները։*

*6. «Բազմավէպ», 1886 և 1952 թթ.։ Քաղված են №№ 20, 164 հիշատակարանները։*

*7. «Երկրագունտ», 1884 թ.։ Քաղված է № 453 հիշատակարանը։*

*8. «Էջմիածին», 1950, 1951 և 1952 թթ.։ Քաղված են №№ 89, 178, 287, 317, 327, 529 հիշատակարանները։*

*9. «Լոյս», 1905 թ.։ Քաղված են №№ 126, 426, 534, 549 հիշատակարանները։*

*10. «Հանդէս Ամսօրեայ», 1891, 1895, 1903, 1923, 1925, 1926, 1940, 1942 թթ.։ Քաղված են №№ 50, 60, 81, 253, 333, 336, 358, 359, 365, 458, 515, 537, 539, 556, 563 հիշատակարանները։*

*11. «Մանզումէի էֆքեար» լրագիր, 1869 թ. № 1116։ Քաղված է № 452 հիշատակարանը։*

*12. «Սիոն» թերթ, հտ. Ա։ Քաղված է № 319 հիշատակարանը։*

*Այսպիսով պարզ է դառնում, որ ժողովածուի մեջ ընդգրկված հիշատակարանների մեծ մասը՝ 575-ից 390-ը, քաղված է բուն ձեռագրերից, կամ անտիպ աղբյուրներից։*

*Հեռու ենք այն մտքից, որ ժողովածուն անթերի է կամ ընդգրկում է 1451—1480 թթ. շարադրված բոլոր հայերեն հիշատակարաններն ու հիշատակագրությունները։*

*Հայ ձեռագրերի ուսումնասիրության արդյան վիճակը լիակատար ընդգրկման հնարավորություններ չի ընձեռում։ Համատացած ենք, որ Երուսաղեմի, Վենետիկի և Վիեննայի, ինչպես նաև հայերեն ձեռագրերով հարուստ այլ մատենադարաններում կան ԺԵ. դարում ընդօրինակված ձեռագրեր, դեռևս անհայտ, բովանդակալից հիշատակարաններով։ Դրանց հայտնաբերման ու հրատարակման գործով պետք է զբաղվեն նրանք, ովքեր ի վիճակի են այդ անելու՝ դիտակցելով այն խոշոր նպաստը, որ բերում են հայ տքնաջան գրիչների սրտաբուխ հիշատակարանները հայ ժողովրդի կյանքի ու մշակույթի պատմության դեռևս խավար էջերը լուսավորելու գործին։*



Ջ 1451

1

## Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն

*Ալիշան, Հայկարան (Արդուին)*

*գրիչ՝* Գրիգոր
*վայր՝* Երզնկայ

*Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի թուականութեան Հայոց տումարիս Ջ. (1451), ի մայրաքաղաքս* Եզնկայ, *ձեռամբ մեղսամակարդ ոգւոյ* Գրիգորի... *ի հայրապետութեան տեառն* Գրիգորի· *և յառաջնորդութեան նահանգիս մերոյ տեառն* Ներսէսի *արհիեպիսկոպոսի, և ի ղանութեան ներողութեամբն աստուծոյ արիմարբու գազանին* Ջիհանշին, *զի վասն բազում և անթիւ մեղաց մերոց ելեալ սա ի գաւառէն Արևելեան բազում զօրօք և եկն ի վերայ մեր, և բազում գաւառս և քաղաքս գերեաց և աւերեաց։ Եւ զայլ անթիւ չարիսն ո՞վ կարէ պատմել, որ զանմեղ տղայսն՝ զարու և զէգ գիշատեալ իւրով չար խառն[ակ]ութեամբն...։*

*Յիշեսջիք...* զԿարապետ *կրօնաւորն, որ ստացաւ զսա... և* զԿարապետ *աբեղայն, որ զտէր* Խաչատուր *երիցուն զխնդիրքն կատարեաց և* զԽաչատուր *երէցն, որ ստացաւ զսուրբ Աւետարանս յիշատակ իւր, և ծնողաց իւրոց՝ հօրն իւրոյ* Յովհաննիսին *և մօրն իւրոյ* Իսկոյն, *և եղբօրն իւրոյ* Աստուածատրին...:

2

## Յ Ա Յ Ս Մ Ա Ւ Ո Ւ Ր Ք

*«Ճանապարհորդութիւն Յովհ. Վաղարշակերտցւոյ», էջ 36*

*Գրեցաւ Յայսմաւուրքս Ջ. թուականութեանս Հայոց (1451), ի հայրապետութեան տէր* Գրիգոր *կաթուղիկոսի, և ի թագաւորութեան Պարսից* Ջիհանշահին, *ի դառն ժամանակի, և յաւուրս չարութեան...* Զամենայն աշխարհս ի հիւքմի կացուցանէր, բայց աւաղ, որ զամենայն քրիստոնեայս դառն չարչարէր և անհանգիստ առնէր հարկապահանջութեամբ՝ կեղեքելով զքրիստոնեայս։*

---

* *Մինչ այստեղ հիշատակարանի տվյալների հիման վրա վերապատմել է հրատարակող Հովհ. Վաղարշակերտցին:*

## 3

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Փիրղ. նոտ. 168, Վան, ս. Յակոբ եկեղեցի*

*գրիչ՝* Ստեփաննոս
*վայր՝* Ջերմաձորոյ երկիր,
Փոքր-Ակոռոյ վանք

*...Արդ, գրեցաւ սա յերկիրս* Ջերմաձորոյ, *ի վանքս* Փոքր-Ակոռոյ, *ի յառաջնորդութիւն սուրբ ուխտիս* Դաւիթ *կրօնաւորի, ձեռամբ անարհեստ և յոգնամեղ գրչի* Ստեփաննոսի *սուտանուն կրօնաւորի, ի թուաբերութեանս Հայոց Ջ. (1451), ի խնդրոյ պատուական և իմաստուն մահդասոյն* Պօղոսի, *քանզի յոյժ փափագանօք ետ դրել զսուրբ Աւետարանս յիշատակ հոգւոյ իւրոյ և ծնողացն՝ հօրն* Ստեփաննոսի, *որ կատարեցաւ յան[օրինաց]*, և մօրն* Ջուհարին, *և եղբարցն՝ Թումայ քահանային և* Աստուածատրոյն, *որ սրախողխող եղև յան[օրինաց]*, և դստեր* Գրիգորին՝ Գուհարի, *որ քարավէժ եղև ի բերդն* Ջուղայու*...։*

*Արդ, դրեցաւ սա ի հայրապետութեան* Զաքարիա Աղթամարցւոյ *և ի թագաւորութեան* Ջհանշայ *ղանին...։ Ընդ նոսին և զ*Թումայ Վարդազատու *որդին՝* զՅինենից *ռէսն և զեղբարքն՝ ռէս* Ջաֆարէն, զՄխիթարն, *և* զՇապուհն *յիշեցէք ի տէր։*

## 4

## ՔԱՂՈՒԱԾՈՅ ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՍՈՒՐԲ ԱՒԵՏԱՐԱՆԻՆ ՄԱՏԹԷՈՍԻ, ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՅ

*Երևան 1301*

*գրիչ՝* Դանիէլ
*վայր՝* Սևան կղզի

ա

271բ *...Փառք... որ արժանի արար զիս հասանել ի կատար գործոյս։*

*Ամենեցոյն ակն նայի ի քեզ՝ տէր, իմացականք և իմացաւղք, որպէս ի սնունդ և ի հաստումն. եւ երեք կարգաւք ապրին՝ որդիականաւ, կամ վարձաւորութեամբ, կամ ծառայականաւ. եւ աստուստ հեռացեալքն են ընդ մահու սահմանաւ, յորոց է աղքատ ոգի* Դանիէլ՝ *ակնկալու ողորմութեան քո և քոոցն, որ ի ձեռնտուութենէ բարեկամաց քոց՝ հնարեալ և վստահացեալ ընծայաբեր լինել քեզ ի քոոցն զայս կտակ մատենի, բռնելիք շնորհաց քոց նուէր յեկեղեցի քո սուրբ, ի յաւգուտ կարդաց որ անդ. եւ ի ձեռն նոցա ի քէն գիւտ շնորհաց տառապելոյ քո* Դանիէլիս:

272ա *Արդ, ընդ իս առեալ նպաստ զգութ քո և զարժան||աւորսն քո, հայ-*

---

** «Յանօրինաց» բառը երկու անգամ էլ տպված է թերի՝ «յան» ձևով, ամենայն հավանականությամբ հրատարակիչը ստիպված է եղել այդպես անելու թուրքական գրաքննությունից գիրքն անցկացնելու համար։*

ցեմք ի քէն՝ ամենողորմն աստուած... ընկալ զսա ի ձեռաց իմոց աղերս յեկեղեցի քո...։

Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանի քաղուածոյս Մաթէոս գլխին յեր-կիրս Գեղամայ, ի Սեվան կղզի, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս և սուրբ Առաքելոցս, սուրբ Կարապետիս և սուրբ Լուսաւորչիս, սուրբ Նշա-նացս և սուրբ վարդապետացս շիրմացս. ձեռամբ բազմամեղ և անար-ժան, տարտամ և անպիտան, փցուն և անյարմար գրչի Դանիէլի՝ անուամբ միայն աբեղայի, որ ձևով միայն է և ոչ գործով։ Ի կաթողիկոսութեանն տէր Գրիգորի՝ առաջնորդ մեծի սուրբ աթոռոյ Էջմիածնի, ի խանութեանն Ջահանշահի, որդոյ Ուսուփի, ի թվականութեան Հայոց Ջ. (1451)։

Արդ, երեսս անկեալ աղաչեմ ղամենիսեան զհանդիպողսդ սմա կար-դալով կամ տեսութեամբ կամ ուսմամբ կամ աւրինակելով յիշել յաղօթս ձեր զհայրն իմ զԿարապետ քահանայ, և զմայրն իմ Համաւռր, և զեղբարքն՝ զԳրիգորէս քահանայ, Վարդանս, Առստակէս, և զքեռին իմ Սատաղայ. և ղհոգոյ եղբարսն իմ զՏիրատուր աբեղայ և զՆերսէս, բազմերախտ իմ զՅովանէս կրօնաւոր, և զայլ ամենայն արեան մերձաւորսն և երախ-տաւորսն, զկենդանիսն և զհանգուցեալսն։ Ընդ նմին ես դառապեալս Դանիէլ յերեսս անկեալ աղաչ[եմ] յիշել ի տէր և անմեղայդիր լինել խոշորութեան և սխալանաց սորայ, զի սէրս յաղթեաց զարհեստս և ետ դրել։ Զի որք յիշեն զմեզ ի Քրիստոս՝ յիշեալ լիցին ինքեանք ի Քրիստոս յաւուր, յորում բանք սպառին և գործք թագաւորեն։ Այլ և զԱլէքսիոս աբեղայ, որ զօ[ր]ինակն շնորհեաց՝ ծնողօքն հանդերձ յիշել ի տէր, ամէն։

Բ

7բ Զաառապեալ և զմեղապարտ գրչիս զԴանիէլ աբեղա, անուամբ և ոչ գործով, աղաչեմ յիշել ի տէր, և զծնաւղսն իմ՝ զհայրն զԿարապետ քա-հանայ և զմայրն զՀամաւռր, և զեղբայրն իմ զԳրիգորիս քահանայ, որ ի հոռի ԻԸ. (28) փոխեցաւ առ Քրիստոս յերիտասարդութեան տիս և եթող սուգ մեծ սիրելեաց իւրոց, և զամենայն արեան մերձաւորսն՝ զկենդա-նիսն և զհանգուցեալսն զտէր-ողորմին ասէք բոլոր սրտիւ և աստուած զձեզ յիշէ։

5

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 4893

գրիչ՝ Կարապետ
վայր՝ Վան

264բ ․․․Յամի թուականութեանս Հայոց Ջ.-երորդի (1451) գրեցաւ սուրբ Աւետարանս, ձեռամբ յոգնամեղ և անարժան սուտանուն երիցու Կարա-պետի, ի քաղաքս որ կոչի Վան, ընդ հովանեաւ սրբազան առաքելոցս Պետրոսի և Պաւղոսի, և սրբոյն Ստեփաննոսի նախավկայի, և Սահակայ

*հայրապետի, և այլ սրբոցս. ի հայրապետութեան տեառն* Գրիգորի *և*
*տէր* Զաքարիայի, *ի թագաւորութեանն* Ջիանշայի, *ի դառնաշունչ ժամա-*
*նակիս, որ վասն ծովացեալ մեղաց մերոց բազում քրիստոնեայք ի գե-*
*րութիւն անկան ի ձեռն անօրէն ազգին թուրքաց, զոր ոչ կարեմ ընդ գրով*
*արկանել։*

265ա *Արդ, ի յայս դառնացեալ ժամանակիս ցանկացող եղև այսմ աստուա-*
*ծաշունչ բուրաստանիս և աստուածախաւս մատենիս և լուսափայլ մար-*
*գարտիս հաւատարիմ և բարեպաշտ աստուածասէր կինն* Փաշայ, *և ետ դրել*
*զսուրբ Աւետարանս ի հալալ ընչից իւրոց, յիշատակ բարի հոգւոյ իւրոյ,*
*և ծնողաց իւրոց* Ստեփանոսի *և* Մարթայի, *և որդւոյն իւրոյ* Ջանիբէկի,
*որ ի ձեռաց անաւրինաց մարտիրոսացաւ և սուգ անմխիթար եթող ծնո-*
*ղաց իւրոց, և ամուսնոյն իւրոյ՝* Հաւկիթ Ատոմին, *որ ի կսկծանաց որդ-*
*ւոյն իւրոյ խասրաթմահ եղև, և այլ ամենայն ազգականաց իւրոց՝ կեն-*
*դանեաց և հանգուցելոցն։*

*Աղաչեմք զամենեսեան, որք ընթեռնուք կամ ընդաւրինակէք զսուրբ*
*Աւետարանս յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զստացող սուրբ Աւե-*
*տարանիս զբարեպաշտ կինն* զՓաշայն, *և զամուսինն իւր* զԱտոմն, *որ*
265բ *առ աստուած փոխեցաւ, և զեղբայրն իւր զխոջա* Ֆառուխշէն, *որ զթուղթն*
*եբեր, և զմիւս եղբայրն* զՍուլտանշայ, *որ ի ճանապարհ գնաց և ոչ գի-*
*տացին թէ զինչ եղև։ Եւ դարձեալ յիշեցէք յաղաւթս ձեր զաստուածասէր*
*տանուտէրն* զՀաւկիթ Ատոմն՝ *զհանգուցեալն ի Քրիստոս, և զկենակիցն*
*իւր* զՓաշայն, *և զորդեակն իւր* զՋանիբէկն, *որ անօրէնքն գաղտագողի*
*նահատակեցին ի* Հիզան *և զմարմինն այլ ոչ եգիտ հայրն նորա, և այն*
*խոցովն և լալովն եմուտ ի գերեզման, և զմիւս որդեակն* զՄֆանդարն,
*և զդուստրն* Արուս-Խաթուն, *որ տարաժամ մահուամբ առ աստուած*
*փոխեցան։ Այլ և յիշեսջիք ի Քրիստոս զփեսայն սոցա՝ զբարեպաշտ տա-*
*նուտէրն* զԿարապետ *մանկաբաւն**, *որ շատ աշխատեցաւ և աւգնական*
*եղև, և զծնաւղքն իւր՝ զհայրն* Ստեփանոս *և զմայրն* զՋալալ-Խաթուն, *և*
*զկենակիցն իւր* զՇարա-Խաթունն, *որ և նա ևս ի յիւր աշխատանացն*
*աւգնական եղև մօրն իւրոյ, և զդեռաբուսիկ որդին իւր* զԳրիգոր, *զոր*
266ա *տէր աստուած բազմաժամանակեայ առնէ, ամէն։ Այլ և զգուա*‖*րն*
*իւր* զՀայ-Խաթուն, *և զայլ զաւակսն իւր՝* զԽուդաբաղշ *և* զՑովանէս, *որ*
*առ աստուած փոխեցան, և* զԽաթուն-Փաշէն, *և զքեռին իւր* զԱռաքել
*կրօնաւորն, և զայլ ամենայն ազգականսն՝ զկենդանիք և զհանգուցեալք*
*յիշեցէք և բոլոր սրտիւ աստուած-ողորմի ասացէք, և աստուած ձեզ ողոր-*
*մեսէ, ամէն։*

*Եւ դարձեալ, յիշեցէք* զՓաշայն, *և զքոյրն իւր* զԱզիզ-Մելէքն, *և զքե-*
*ռին՝* զԱտոմն, *և զեղբայրն՝* զԽոջայ-Ֆառուխշէն, *և զկենակիցն իւր*
զՋաւր-Խաթունն, *և ուղիղ մտաւք և լի բերանով աստուած-ողորմի ասա-*
*ցէք։*

*Եւ արդ, ես՝ յամենայնի թշուառականս և անարժան գրիչս* Կարապետ,
*յամենայն ժամ զեղկելի անձն իմ ողբամ դառնապէս, և աղաչեմ զամե-*

* *Բնագրում՝ «մանկաբօն»։*

նևսեան եղբայրական սիրով ողբալ զիմ անարժանութիւնս, և յիշել յերկ-
նագնաց յաղօթս ձեր զիս՝ զանարժանս, և զծնաւղսն իմ զՍտեփանոս
քահանայ և զՄինայ, զհօրեղբայրն իմ զՄովսէս միայնակեց, և զեղբայր-
քըն իմ զՅովանէս աբեղայ և զՄելքիսէթ սարկաւագ՝ զհանգուցեալքն ի
Քրիստոս, և զկենակիցն իմ զԽօնդ-Խաթունն, և զքաղցրիկ որդեակն իմ
266բ զԱբդըլմսեխ, որ||վասն բազում մեղաց իմոց յայսմ ամի տղայ հասակաւ
առ Քրիստոս փոխեցաւ և սուգ անմխիթար եթող եղկելոյս, և զտառապեալ
հարսնիկս իմ զԽապիպ-Խաթունն, որ աշխատեցաւ ի կոկել թղթիս, և
զայլ ամենայն արեան մերձաւորսն իմ յիշեցէք և բոլոր սրտիւ և լի բե-
րանով աստուած-ողորմի ասացէք...։

Եւ դարձեալ աղաչեմ զձեզ, ո՜վ աստուածասէր հարք և եղբարք, յիշեցէք յաղօթս ձեր զաստուածասէր և զբարեպաշտ տանուտէրն զպարոն Գուռջի-բէկն, և զգուստրն զՋօր-Խաթունն, և զտղայն՝ զգեղեցիկն զԳորգի- Միրանն, որ առ աստուած փոխեցաւ, և բոլոր սրտիւ աստուած-ողորմի ասացէք, և աստուած ձեզ ողորմեսցի, ամէն։

Այլ և աղաչեմք զսպասաւորք սուրբ Նախավկայ Ստեփանոսիդ* զտէր Ստեփանոս վարդապետ փիլիսոփայ և զիւր միաբանք՝ զԱտոմ քահանայ, և զմիւս տէր Ստեփանոսն, և Զաքարիէն**, զտէր Պարսամն**, և զԱւետիս քահանայ, և զՍտեփանոս եպիսկոպոսն*** և զՄարգարէն**** քահանայ, և զտէր Ներսէս**** կրօնաւորն**** էնց լաւ զԹադէոս քահանայ, որ լաւ խնամ տանին ի վերայ սուրբ Աւե/տարանիս*****։

## 6

## ԳԱՆՁԱՐԱՆ

**Երևան 4768**

գրիչ՝ Մարգարէ
վայր՝ յերկիրս Ռշտունեաց,
ի վանքս Բերդաձոր

Փառք... որ հասոյց և արժանաւորեաց զանարժան գրչաւորս զՄար-
350ա գարէ հասանել||ի վերջ սուրբ գրոցս, որ կոչի Գանձարան գանձուց, ի
թվականութեանս Հայոց Ջ. (1451), յիշատակ Սուֆիաս քահանային, և
ծնաւղաց իւրոց, և եղբարցն, և ամենայն արեան մերձաւորացն իւրոց,
ամէն։

---

* «Նախավկայ Ստեփանոսիդ»-ը ջնջված է և վրան հարմարեցված «ուխտիս Վզայ. (Վարագայ) սբ. Նշանսիդ»։

** Գրված է խնամքով ջնջված այլ անվան վրա։

*** «Եպիսկոպոսն» բառը գրված է ջնջված այլ բառի փոխարեն։

**** Գրված է ջնջվածի վրա։

***** Հիշատակարանի այս վերջին պարբերությունը ձևափոխել ու հարմարեցրել է իր ժամանակին և Վարագի սուրբ Նշան վանքին՝ Ստեփանոս վարդապետը, որը ըստ երևույթին ԺԵ. դարի վերջերին (կամ ԺԶ-ի սկզբին), ինչպես ինքն է գրում, «բազում աշխատանօք ազատեաց զսուրբ Աւետարանս և բերեալ ի դուռն սուրբ Նշանիս Վարագայ, անջինջ յիշատակ իւրն և ծնաւղաց իւրոց...» (էջ 83ա)։

Արդ, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք սուրբ դրոցս կարդալով կամ աւրինակելով, յիշեցէք ի Քրիստոս զստացող սուրբ դրոցս զՍուքիաս քահանայն, որ ստացաւ ըզսա ի հալալ արդեանց իւրոց յիշատակ հոգւոյ իւրոյ, և ծնաւղացն իւրոց՝ հաւրն Կիրակոսի և մաւրն Քնարին, և եղբարցըն իւրոց՝ Դաւթին և Յովսեփին, Յովանիսին և Յոհանիսին, և քըւերն իւրեանց Աւագին, և եղբաւրորդոցն՝ Հմայեակին, և Ստեփանոսին, Շուշանին, և Ջուհարին, և Վարդան սարկաւագին, և Կիրակոսին, և Գորգկէն, և Մարտկէն, և այլ ամենայն արեան մերձաւորացն իւրեանց, և եղբաւր կնոջն իւրոյ՝ Մաւեմին, որ ծնաւղաբար կու սպասաւորէ սորա, և Դաւիթ աբեղային, և Մովսէս քահանային։

Արդ, աղաչեմ զամենեսեան՝ զսուրբ ընթերցողքդ և զլըսողքդ, որք
350բ հանդիպիք սուրբ գրոցս || ասացէք բոլոր սըրտիւ, թէ Քրիստոս աստուած,
յիշեա զայս յառաջ ասացեալքս՝ զՍուքիաս քահանայն և զիւրքն ամենայն, և ողորմեա սոցա ըստ մեծի ողորմութեան քում, ամէն...*։

351բ ... Արդ, կատարեցաւ սուրբ գիրքս ի յերկիրս Ըռըշտունեաց, ի վանքս
որ Բերդաձոր կոչի, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, ի դառն և ի նեղ ժամանակիս, ի յաւուր ձմերանի. և խոշորութեանս և սխալանացս անմեղադիր լերուք, զի յիմար էի ի յարհեստ, և աչս պակաս ի տեսոյ, ով զմեզ յիշէ՝ աստուած զինքն, և քեզ՝ Քրիստոս աստուած աւրհնութիւն յամենայն արարածոց և փառք յարդար բերանոց յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Դարձեալ, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք սուրբ գրոցս, յիշեցէք ի Քրիստոս աստուած զՍարգիս՝ զպապն մեր, և զողայքն իւր, և ըզդուստրն իւր ըզՋանազանն, և զԴաւիթ կրօնաւորն, և զծնօղքն իւր, և զՀոփսեմն, և զորդին իւր զՄարտիրոս, և ասացէք, թէ Քրիստոս աստուած, տո՛ւր զքո աստուածային քաղցր տեսդ սոցա ի ճաշակումն, և ամենայն արեան մերձաւորաց իւրոց, ամէն։

Դարձեալ, աղաչեմ զսուրբ ընթերցողքդ յիշեցէք ի Քրիստոս ըզՍուքիաս քահանայն, և զեղբարց կանայքն իւր՝ զԱւագն, զՀաթունն և զՇամսմն, զՍուրաթն և զողայքն իւր՝ զԳունճիկն, զԴաւիթն և ըզՅովսէփն:

7

## ԱՒԵՏԱՐԱՆ

Փիրդ. Նոտ. 167, Վան, ի ս. Ցակոբ եկեղեցի

գրիչ՝ Միքայէլ
վայր՝ Արծկէ

... Ես՝ յետինս բանասիրաց և տրուպս կարգաւորաց Միքայէլ գրիչս սուտանուն քահանայ... աւարտեցաք զսուրբ Աւետարանս ի թուականութեանս Հայոց Ջ. (1451) ամին, ի քաղաքիս Բզնունեաց Արծկէ կոչեցեալ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի տաճարիս, և սրբոյ Ստե-

* Բաց ենք թողնում երկու էջ, որտեղ գրիչը տարտամորեն խնդրում է կրկին ու կրկին անգամ հիշել ձեռագրի ստացող Սուքիասին՝ յուրայինների հետ մեկտեղ։

փաննոսի կաթուղիկէի, և սրբոյն Գրիգորի, ի հայրապետութեան տեառն Գրիգորի ընդհանուր հայոց կաթուղիկոսի։ Յիշեցէք զստացող սուրբ Աւետարանիս զՎարդան գրակալն։

## 8

## ՅԻՍՈՒՍ ՈՐԴԻ ՆԵՐՍԻՍԻ ՇՆՈՐՀԱԼԻՈՅ

Երևան 5972

հետ ստացո՞ղ՝ Կիրակոս
վայր՝ Բաղէշ

263ա Քրիստոս աստուած ողորմեայ Կիրակոս բանասիրին և թող զ[մեղ]ք նորին՝ զմահու չափն և զներելին. բարէխօսութեամբ սուրբ աստուածածնին և կենսատու սուրբ խաչին և ամենայն սրբոց գնդին ողորմեսցիս Կիրակոսին և ամենայն արեան մերձաւորին, ամէն։

Թվ. Ջ. (1451) Բաղէշ գերեցաւ։

## 9

## ՄԱՇՏՈՑ

Երևան 4518, էջ 169 (Ղ. Փիրղ. Նշխարք պատմ. Հայոց, Բ.)

գրիչ՝ Մելքիսէթ
վայր՝ Բարիձորոյ վանք

...Արդ, գրեցաւ տառս ի թուիս Հայոց Ջ. (1451), ձեռամբ ախմար և փծուն գրչիս՝ ամենամեղ Մելքիսէթիս, ի վանքս Բարիձորոյ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, շինեալ երկին ի մէջ երկրիս, ի վայելումն այս քահանայիս՝ Ղազարիս, որ ստացող եղև գանձիս։

## 10

## ԱՒԵՏԱՐԱՆ

Եվրոպայի մասն. հաւաքումներ, էջ 9--10

գրիչ՝ Յովհաննէս
վայր՝ Հիզան

... Այլ եւ գրեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ յոգնամեղ եւ մեղսամածեալ մեղաւք Յովհաննէս վարդապետի, որ անուամբ եմ եւ ոչ գործով, ի յանապատս որ կոչի Գամաղիէլ, ի դուռն սուրբ առաքելոյս Գամաղիէլի. ի յառաջնորդութիւն վանացս Յովհաննէս վարդապետի եւ հօր վանացս Յովհաննիսի եւ յայլ միաբան եղբարցս։ Յեւ իմ անընդունակ գոլով յարուեստ գրչութեան եւ բազում մեղաց ցնորիւք պաշարեալ, այլ ըստ կարի մերում, զոր պարգեւեաց մեզ մարդասէր հոգին, բազում աշխատասիրեալ իմ ի սմայ, գրեցի անարժան ձեռօք իմովք յընդիր եւ ի ստոյգ աւրինակէ, կենաւք տառապանաւք եւ բազում պանդխտութեամբ՝

ի մեծ թուականիս, յեղանակ շրջագայութեանս արեգական ստոր իջիւք երկնաշու ճանապարհաւ յերկնից յերկիր նայելով, ըստ արարչութեանցն չափեալ յելանելոյն Ադամայ ի դրախտէն ՉՌ. եւ ՉԾ. եւ Գ՞Ա. ամ ըստ եւթանասնիցն, որում մեք վարիմք։ Եւ է ի մարդեղութենէ բանին աստուծոյ անժամանակ էին եւ փրկչին Յիսուսի Քրիստոսի ամս ՌՆԾԳ. (1453), իսկ թուոյ Խոսրովային Յաբեթեան տումարի՝ թուական Չ. (1451), ի կաթուղիկոսութեան հայկազեանս սեռի տեառն Գրիգորի էջմիածնի, եւ ի յԱղթամարայ կաթուղիկոսի տեառն Զաքարիայի, զոր տէր աստուած պահեսցէ անսասանելի զաթոռ հայրապետական եւ զթագաւորական, դի յիշել ղանուանս նոցա սասանեալ մաքրեալ ոչ եւ երեւին թշնամիք ճըշմարտութեան։

Եւ գրեցաւ Աւետարանս զայս ի գաւառիս Հիզանայ, ընդ հովանեաւ սուրբ առաքելոյս Գամաղիէլի, ի վայելումն սրբասնեալ եւ կուսակրօն կրօնաւորի Թումայի, եւ պատուական եւ հաւատարիմ տանուտրոջն Կարապետին, եւ կենակցին Մօուր-Մէլէքին, եւ ծնաւղաց նոցա։ Արդ, որ ճաշակէք յաստուածային բուրաստանէս եւ յամենալի սեղանոյս յիշեսջիք զաղաւթս ձեր զստացող սուրբ Աւետարանիս զԿարապետ, եւ զկենակիցն զՄուր-Մէլէք, եւ զծնաւղս նոցա զԽերապետ, եւ զկենակիցն իւր զԱւագ-Խաթուն, զՄինաս եւ զԱւագ-Խաթուն (կրկնվա՞ծ է), զՅովհաննէս եւ զՄուր-Մէլէք ի Քրիստոս։ Եւս առաւել յիշեցէք ի Քրիստոս կրկին անգամ ստացող սուրբ Աւետարանիս Թումա կրաւնաւորն եւ զծնողսն՝ զԱստուածատուր եւ զԹանխաթուն, եւ զԿարապետ եւ զծնողսն իւր՝ զհայր իւր Մինաս եւ զմայրն իւր զԱւագ-Խաթուն...։

Բայց աղաչեմ զձեզ զհանդիպող սուրբ Աւետարանիս, զի անմեղադիր լինիք խոշորութեան եւ սխալանացս, զի անձամբ տկար էի եւ լոյս աչիցս պակասեալ էր. հազար՝ վասն աստուծոյ, հազար՝ վասն աստուծոյ անմեղադիր լերուք, եւ բարի սրտից եւ ի բերանոց ձերոց յիշեցէք ի Քրիստոս աստուած զանարժան գրիչս զՅովհաննէս բանակխնդիրս(՞) եւ զծնողսն իմ զՎարդան եւ զԴիլշատ, եւ զհանգուցեալ եղբարսն իմ զքաղցրիկ Յովհանէսն եւ զԽերապետն, եւ աստուած-ողորմի ասացէք նոցա, եւ որ ասէ եւ իւրն աստուած ողորմեսցի, ամէն։

Բ

Յիշեցէք ի Քրիստոս զՅունան, զԿասաւն եւ զՋանօն, եւ զմայր նոցա զԱսլմէլիք, եւ լի բերանով աստուած-ողորմի ասացէք նոցա, ամեն*։

## 11

## ԱԻԵՏԱՐԱՆ

Երևան 5018

գրիչ՝ Մովսէս
վայր՝ Դերջա՞ն, Պղընծայգոյ անապատ

301ա Ի թուականութեանս Հայոց Չ. (1451) գրեցաւ տառս աստուածայինս և տիեզերաքարոզ սուրբ Աւետարանս ձեռամբ անարժան աբեղի Մովսէ-

* Գրված է Մարկոսի ավետարանի վերջում։

սի՛ փցոմ և անարհեստ գծողիս. և ես ընաւ չեմ հմուտ այսմ գործոյ, այլ փափաքեցայ ես շահիցն ցանկալի, վասն այնորիկ ձեռնամուխ եղէ գրել զսուրբ Աւետարանս ղաստուածախաւս կտակս։

Բայց գրեցաւ սա ի սուրբ և ի հռչակաւոր ուխտս ի Պխրճնձայգոյ աւագ անապատս, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, և սուրբ Կարապետիս, և սուրբ Լուսաւորչիս, և սուրբ Սարգսիս, և սուրբ Նշանացս, և սուրբ Նշխարացս, և այլ բազմահաւաք սրբոց, որ կան աստ. ի կաթողիկոսութեան Հայոց տեառն Գրիգորի և յեպիսկոպոսութեան տէր Աւետեաց՝ վերադիտողի Դերջնու և Բաբերդոյ: Յիշեցէք ի Քրիստոս զայնոսիկ, որ ի վերայ ինձ երախտիք ունին՝ զառաջնորդն զտէր Աւետիք, զհարպետն Մաքէոս աբեղայ, զՍարգիս աբեղան՝ զվանիցս վարպետն, որ խիստ ի ժամատեղն կու չարչարի ի յասելն, և զայլ աբեղայքն և զգործաւորքն, որ յանուանէ ձանձրացայ գրել։

301բ Յիշեցէք ի Քրիստոս զծնաւղսն իմ զՅովհաննէս քահանայն, և զեղբայրն իւր Շնոյֆոր պարոնն, և զմայրն իմ զԹաղտաան, և զեղբայրն իմ զՍտեփաննոս քահանայն, որ յանուն նորա գրեցի զսուրբ Աւետարանս յիշատակ ինձ, և ծնաւղաց իմոց, և ամենայն արեան մերձաւորաց իմոց, և յայնոցիկ, որ երախտիք ունին ի վերայ ինձ. և աստուած յիշողացդ և յիշելոցս ողորմեսցի, ամէն։

Եւ վասնութեան գրիս և անարհեստութեան մի մեղադրէք, զի կար իմ այս քան էր և ոչ աւելի. և թէ սղալանս տեսանէք՝ մի բարկանայք, այլ քաղցրութեամբ ուղղեցէք, զթերին լցէք և զաւելին ի բաց հանէք, և թողէք զիս ի բաց առանց բանբաս[անաց]. և Քրիստոսի փառք յաւիտեանս, ամէն։

12

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 8590

Հետ ստացող՝ Մղտեսի Տէրտէր
վայր՝ Դրի՞մ

ա

244բ ... Արդ, զվերջին ստացող այս սուրբ Աւետարանիս զմղտեսի Տէրտէրն, որ ստացաւ զսա ի հալալ արդեանց իւրոց և յիշատակ բարի նախնի ծնողաց իւրոց՝ կենդանեաց և ննջեցելոց, և հայրն իմոյ Ներսեսին, և հաւուն իմոյ Ուսէփին, և մայրն իմո Էմին-Խաթունին, և իմ մաւր հայրն Յակոբին, և մամոա Ոլճայ-Խաթունին, և քեռեացն Դաւթին, Ամիրկուլին և Կուլասլանին, և քեռորդուս Ամիր-Սարգսին, և իմ եղբարցն Մխիթարին, և իմ քրոչն Գոճար-Մելիքին, և իմ զաւակացն, և իմ եղբաւրն զաւակացն։

Արդ, որք հանդիպիք այս սուրբ Աւետարանիս կարդալով կամ աւրի-
245ա նակելով յիշեսցիք ի մաքրափայլ || աղաւթս ձեր զվերոյասացեալքս և զիս
զմըզտեսի Տէրտէրս, որ յոյժ փափաքանաւք ըստացա զսուրբ Աւետարանս յիշատակ ինձ և նախնի ծնողացն իմոց ամենի. և որ զմեզ յիշէ

*սրտի մտաւք՝ նա ինքն յիշեալ լիցի ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։*

*Ի թվին Հայոց իննհարիւրին և սեպտեմբեր ամսոյ ի Ի. (20) գնեցի զսուրբ Աւետարանս ի բարեխաւս առ Քրիստոս վասն ինձ*։*

*Դարձեալ աղաչեմ ղընթերցողք սուրբ Աւետարանիս յիշեսջիք զիս ղմղտեսի* Տէրտէրս, *և զիմ քեռին, և քղեռորդիքս՝* զԽուլին, Կուլանդէկն, *և* զԿուլասլանն, *և զիմ որդիքն՝* զԿուլամիրն, *և* զՎառզէլն, *և դուք յիշեալ լիցիք ի Քրիստոսէ աստուծոյ մերո, ամէն։*

Բ

244ա *Ես՝* Յոհանէս *աբեղայս իմ կամաւս ծախեցի զԱւետարանս մեղտեսի* Տէրտէրին, *զոր աստուած վայելել տացէ նմայ, ամէն։*

*Այս է իմ ձեռագիրս և խրէրս աստուծով հաստատուն է։*

13

**Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն**

***Երևան 7691***

*Հետ. ստացող՝* Թովմայ
*վայր՝* Ղրիմ

451ա *Ի թուականիս Հայոց Ջ. (1451)։*

*Զվերջի ստացաւղ սուրբ Աւետարանիս* զԹովմայ *քահանայն, որ ստացաւ զսա ի հալալ յարդեանց իւրոց, և ետ զսա վերստին ծաղկել և կազ-*
451բ *մել ի վայելումն անձին իւրոյ և || սրբոյն Նիկողայոսի անթիւ սքանչելագործ հայրապետին, և յիշատակ իւր, և ծնողաց իւրոց՝ հօրն իւրոյ* Սաճակին *և մօրն իւր* Քաղաֆէ, *և երկու որդոց իւր՝* Աստուածատրին *և* Գրիգորին: *Եւ որք հանդիպիք ի սմայ կարդալով և կամ օրինակելով յիշեսջիք ի Քրիստոս զվերոյգրեալն* զԹովմայ *քահանայն, և զծնողսն իւր, և զերկոսին որդիսն ընդ նմին յիշեսջիք, և զիս* զՕգսէնդ *աբեղայս՝ զսակաւ աշխատողս, որ ծաղկեցի զչորեսին խորանսն և զաւետարանիչսն, զի հատեալ էր յանօրինաց, և որ զմեզ յիշէ՝ ինքն յիշեալ լիցի ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, ամէն**։*

14

**Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն**

***Ալիշան «Կամենից», էջ 161, Ս. Քոլանջյան, Ցուցակ ձեռագրաց Բուխարեստի հայ մշակույթի տան, № 2 (անտիպ)***

*Հետ ստացող՝* Յակոբշայ
*վայր՝* Եաշ

*Արդ, յիշեցէք զվերջին ստացող սուրբ Աւետարանիս* զՅակոբշան, *և զեղբայրն իւր* զԱռիւծն, *և զծնողսն իւրեանց, որ ստացան զսայ ի հալալ*

** Այս նախադասությունը գրված է կարմիր թանաքով։*

*** Շարունակությամբ, այլ թանաքով, 5 տարի հետո լրացված է. «Այլ և յիշեսջիք ի տէր գփոխեցեալ զաւակսն իւր* զԱզիզ-խաթունն, *և* զՊաղտատ-խաթունն *եւ* զխանիմ-խաթունն, *որ առ Քրիստոս փոխեցան թվիս Ջե. (1456) ամին, յունիս ամսոյ ԻԲ. (22)»։*

*արդեանց իւրեանց և ետուն յիշատակ ի* Յասն *սուրբ Աստուածածին. և մի ոք իշխեսցէ հանել զսուրբ Աւետարանս ի սուրբ Աստուածածնէն, ո՛չ իմոց և ո՛չ օտարաց. և թէ ոք անդդնի և ընդդէմ դառնայ և հանէ՝ այնպիսիքն զմասն խաչայհանուացն ժառանգեն և զվարձքն Կորխայ և Դաղանայ առցեն։*

*Գր[եցաւ] ի թվ. Ջ. (1451)։*

## 15

## ԱՒԵՏԱՐԱՆ

**Երևան 6424**

*գրիչ՝* Յովսէփ

**ա**

210բ *Փառք... որ ետ կարողութիւն իմոյ տկարութեանս հասանել ի վերջ սուրբ Աւետարանիս։ Աստանաւր հանկ ելեալ կատարեցաւ խոշորագիծ գիրս պայծառ բանիւ՝ յոգնամեղ և փծում գրչի սուտանուն* Յովսէփի, *ի թվ. Ջ. (1451)։*

*Արդ, աղաչեմ զսուրբ, հաստատ և հստակ քահանայքդ, յիշեցէք ի Քրիստոս և աստուած զձեզ յիշէ յիւր արքայութիւնն, ամէն։*

**բ**

210ա *Ո՜հ, ո՜հ, զի մագաղատս հին է և ծիրիկ, զի վերայ մին գրին Գ. (3) անգամ գնայր գրիչն և ապա տըպաւորէր գիրն. աղաչեմ անմեղադիր լերուք**։*

## 16

## ՇԱՐԱԿՆՈՑ

**Վրաց թանգարան 173**

*հետ ստացող՝* Իգնատիոս

294ա *Զվերջին ստացաւղ սորայ* զԱռաքէլ *քահանայ, և զհայրն* զԱստուածատուր *քահանայն, և զմայրն* զՈւլուն, *և զեղբայրն* զԱտոմն *յիշեցէք յաղաւթս ձեր, որ ստացաւ զսայ յարդար վաստակոց իւրոյ և ի հալալ արդեանց. ի թվաբերութեանս Հայոց Ջ. (1451), ի խնդրոյ զաւակին իւրոյ* Իգնատիոսի, *ի վայելումն անձին իւր, և ի յիշատակ հոգւոյ իւր։*

*Արդ աղաչեմ զամենեսեան, որք աւգտիք ի սմանէ տեսանելով, կամ ուսանելով, կամ աւրինակելով, յիշեսջիք առ Քրիստոս զիս՝ զանարժան* Իգնատոս *սուտանուն մեղապարտ քահանայ, և զծնաւղսն՝* զԱռաքել *քահանայն, որ ստացաւ զսայ, և զմայրն իմ* զԳուլբահարն, *և զեղբայրն իմ* զԳուրիասն՝ *զփոխեցեալսն ի Քրիստոս, և զայլ ամենայն ազգականքն*

---

* *Ձեռագիրն ամբողջությամբ կրկնագիր է։ Նախկին գիրը խնամքով ջնջված է, բայց որոշ տեղերում ընթերցվում են բառեր և նույնիսկ նախադասություններ։ Բովանդակությամբ կրոնական է։ Ըստ հնագրական տվյալների ԺԲ դարի ձեռագիր է եղել։*

իմ՝ զկենդանիս և զհանգուցեալսն, զի և դուք յիշեալ լիցիք ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

## 17

## ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

**ԲՑՎ 310, Վարագ**

գրիչ՝ Ստեփանոս

Բարեխօսութեամբ և աղօթիւք ամենայն սրբոցն և աւուրս շնորհի սուրբ յարութեամբ Քրիստոսի մեղապարտ Ստեփանոս սուտանուն սարկաւագի ողորմեսցի, և ստացողի գրոցս՝ բարեմիտ և հաւատարիմ տանուտէրոշ ըռէս Աշխիբէկին, և իւր կանանցն՝ Մարգարտին, Լալխանին, Սիմային, ծնողացն՝ Մարգարին, Մարգարտին...և ինձ մեղօք լցեալ սուտանուն Ստեփանոսի, և կողակցոյն իմոյ Նազլիխանին, Խաղանդին, ծնողաց իմոց տէր Յովանէսին, Խանալին... Թվին Հայոց Ջ. (1451) ամին։

## 18

## ԳԱՆՁԱՐԱՆ

**Երևան 4350**

գրիչ՝ Յովանէս

233ա ...Արդ, գրեցաւ մարգարտաշար Գանձարանս ի պատիւ տօնից տէ-
րունականաց և ամենայն սրբոցն աստուծոյ... որ ցանկացօղ եղեւ այս
անանց ուրախ /// կիս բազում սիրով և փափագ[անաւք իմաս]տուն և
233բ հանճարեղ քահանայ[ն Եր]սէս աշխարհի երէցն, և ստացաւ /// և ծնո-
ղաց իւրոց Թումային և Աննային, և բարի ամուսնոյն իւրոյ Մարգար-
տին, և ծաղկեալ զաւակացն Յովանիսին, Մկրտչին և /// և հարազա-
տին իւրոյ կնքաւորին տէր Հէրապետ արհի[եպիսկոպոս]ին՝ անյաղթ փի-
լիսոփային։ Եւ հոգեւոր /// իւր և քեռոյն Կարապետին, և մեծ պապոյն/// և
Մարեմին, և աներոջն Աստուածատուն///զոքանչին Բաղդատին, և
դստերացն Խալիմ-Խաթունին, Դուրդանին և Եղիսին, և ազգականացն՝
լի բերանով աստուած ողորմի ասացէք։

Գրեցաւ Գանձարանս ի թուականիս Հայոց Ջ. /// ամին (1451)* ձեռամբ անարժանիս Յով[անէս աշ]խարհի երիցու։ Արդ, որ վայելէք [այսմ դե]ղափթիթ բուրաստանիս /// աստուած-ողորմի ասացէք ստացօղի սուրբ գրոցս Ներսէս հեզահոգի քահանային, և կող[ակցին /// Մարգարտին և ամենայն արեան մերձաւորացն, և /// անպիտան գրչի, և ծնօղաց իմոց /// Փաշայի, և ուսուցօղքն իմ Թումա///

* Ջ (900) թվից հետո մի-երկու տառի չափ տեղ պատռված է, ուստի և Ջ. (900=1451) թվականը հիշատակարանի գրության ամենավաղ հնարավոր տարեթիվն է, և հիշատակարանը գրված կարող է լինել 1451-ից հետո՝ առաջիկա տասնամյակների ընթացքում։





## 19

### ՇԱՐԱԿՆՈՑ

*Երևան 8402*

*գրիչ՝* Մաքէոս
*վայր՝* Այրիվաճf

320ա *Փառք ամենասուրբ երրորդութեանն՝ հաւր և որդւոյ և հոգւոյն սրբոյ։ Ի ծագմանէ բանին աստուծոյ լուսօրեալք և ի շնորհաբաշխ հոգւոյն սըր-րոյ մաքրազարդեալք ի մերոց պետաց, ի հոգեկիր արանց ի հայկազանց սեռից՝ յուղղափառ հայրապետաց և աստուածաբան վարդապետաց, ներ-հրմտացեալք կրթական վերածնութեամբ քաջոլորակ բաժանմամբ ձայնից երաժշտականաց շարակարգեցին զերգս շարականաց վիպասան չափա-բանութեամբ բոլոր տարոյն, ըստ հոլո[վ]ման մեծ արուսեկին, յաղագս տէրունական տօնից և ամենայն սրբոց ի պահքս ապաշխարութեան և ի հանգիստ ննջեցելոցն ի Քրիստոս. եղանակեցին երգ աւրհնութեան ի պայծառութիւն տաւնից և ի պատիւ փառացն աստուծոյ, ի համաձայ-նութիւն հրեշտակաց և ի մասնակցութիւն սրբոց և ի հրճուանս եկեղե-ցական դասուց։*

320բ *Արդ, ցանկացօղ եղև այսմ աստուածա || շունչ երգարանիս* Դաճիէլ *աբեղայ. եւ ետ գծագրել մեծաւ ծախիւք ի վայելս վայելուչ անձին իւրոյ, հաւր իւր* Դաւթի *և մօրն իւր* Կաճէfի՝ *փոխեցելոցն ի Քրիստոս, և հարա-զատ եղբաւր իւրոյ* Սամուէլ *քահանայի, հանդերձ ծաղկերանկ զաւակաւք, և զհաւրեղբայրն իւր զ*Մարտիրոս *քահանայ, որոյ յիշատակ նոցին աւրհ-նութեամբ եղիցի։*

*Արդ, եղև աւարտ գրչութեան այսմ մեծահանդէս ոսկիազարդ և հոգե-լից տառիս ի շրջագայութեան հայկազեան տումարի ՋԱ. (1452), ի դառն և ի չար ժամանակի, որով նեղիմք ի բռնութենէ անօրինաց։ Ի հայրապե-տութեան տէր* Գրիգորի՝ *յառաքելական աթոռն ի սուրբ* էջմիածինն, *որ ի* Վաղարշապատ, *ի սուրբ և ի գերահռչակ ուխտս որ կոչի* Այրիվանս, *ի սկիզբն և ի մայր ամենայն վանորայից, ընդ հովանեաւ լուսոյ մաւր սուրբ Աստուածածնիս, և արեամբ ներկեալ անմահին Քրիստոսի սուրբ գեղարդեանս, և այլ սրբոցս, որ աստ հաւաքեալ կան. ձեռամբ ամենա-մեղ և փցուն գրչի* Մաքէոսի, *որ զանունս միայն ունիմ կրօնաւորի, ի խընդ-րոյ և յարդեանցս երիցս երանեալ* Դաճիէլ *կրօնաւորի։ Վասն որոյ*

321ա յերեսս անկեալ || աղաչեմք զամենեսեան, որք լուսաւորիք սովաւ ուամամբ կամ գաղափար առնելով, յիշեցէք ի Քրիստոս ղվերոյգրեալ ստացաւղք տառիս...։ Ընդ նոսին և զիս՝ զբազմամեղ ոգի Մաքէոս, որ եղէ գրիչ և սպասաւոր այսմ իրագործութեան ի դիր, ըստ իմում կարի խլկեցի աւ-րինակաւ՝ բանիւ և եղանակաւ ստուգեալ, և եդի զսայ շաղկապ սիրոյ ի մէջ հոգևոր հարազատիս մեր Դանիէլի, որոյ տէր աստուած վայելեալ տացէ բազմամեա ժամանակաւ։ Ընդ որս և ես անկեալ աղաչեմ զամենե-սեան, որք հանդիպիք ի տեսութիւն վայելչութեան և որք աւգտիք կամ ընդաւրինակէք յիշեցէք ի Քրիստոս ղիս՝ զՄաքէոս գրիչ, և զծնօղսն իմ, և զապաշխարող քոյրսն մեր Ղառերես, որ բազում աշխատանք ումի ի վերայ մեր։ Եղիցի յիշատակ մասին ժառանգութեան ընդ սուրբս ամե-նայն, ի Քրիստոս Յիսուս ի տէր մեր, որով յիշողացդ և յիշեցելոցս առ հասարակ ողորմեսցի, և նմա փառք յաւիտեանս, ամէն, եղիցի, եղիցի։

## 20

## ԵՐԳԱՐԱՆ

ՔՑԳ «Բազմավէպ», 1886, էջ 183
Գ. Յովսէփեան, Աղիզբէկենք, էջ 196

Հետ ստացող՝ Մանուէլ եպս.
Աղիզբէկենց

Զվերջին ստացող սուրբ երգարանիս զտէր Մանուէլ եպիսկոպոս, որ-դի պարոն Աւաքին, թոռն պարոն Աղիզբէկին, որ գնեց զտետրակս ի հա-լալ յընչից իւրոց, ի թվականիս ՋԱ. (1452) յիշեցէք ի տէր։

## 21

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 6806

գրիչ՝ Յովանէս...
վայր՝ Տփխիս

ա

...Արդ, գրեցաւ լուսաւոր և կենսունակ սուրբ Աւետարանս ի թուա-կանութեանս Հայոց ՋԱ. (1452), ի մայրաքաղաքս Տփխիս, ընդ հովա-նեաւ կամակատար սուրբ Աստուածածնիս. և Գէորգեա զօրավարիս, ի լաւ և յընտիր աւրինակէ Սըսցի։

282ա Աղաչեմ զամենեսեան, որք կարդայք և լուսաւորիք յաստուածային բա-նիցս, յիշեսջիք սրտի մտաւք առաջի Քրիստոսի. զնախասացեալ բարե-պաշտուհի կինն Ջհան, և զ'ի Քրիստոս փոխեցեալ զայր զԱջիպ, և զոր-դիսն իւր զՎարդան և զՄուրատ և զՄըսըր, և զդուստր իւր զՆղիսաբէթ, և զհանգուցեալ որդին իւր զՍարգիս, և զամենայն արեան մերձաւորսն իւր՝ զկենդանիսն և զհանգուցեալսն, և որք յիշէք բարի յիշմամբ և աներկ-բայ հաւատով՝ յիշեալ լիջիք ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, որ է աւրհ-նեալ յաւիտեանս, ամէն։

*Եւ զսուրբ Աւետարանիս յիշատակարանն կարդան ի տամի զատկին,*
*և յայտնութեանն և Հանգստեան շարականն և Քրիստոս որդի աստուծոյ*
*ասեն։ Եւ Աւետարանս լաւ դաստառակով պահեն։*
*Ընդ վերագրելոցս յիշեսջիք և զիս՝ զմեղապարտ և զանարհեստ գրի-*
282բ *չըս* զՅովանէս, *և սխալանաց և խոշորութեան անմեղա||դիր լերուք, զի*
*կար մեր այս չափ էր։*

Բ

*նկարիչ՝* Մանուէլ

82բ *Զ*Մանուէլ *նկարող յիշ[եցեք] ի քրիստոս**։

## 22

## ՔԱՐՈԶԳԻՐՔ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՅ

***Երևան 2156***

*գրիչ՝* Յովանէս
*վայր՝* Տփխիս

496բ *...Արդ, գրեցաւ աստուածային մատեանս և վարդափթիթ բուրաս-*
*տանս այս, որ կոչի Քարոզգիրք, արարեալ և հաւաքեալ արի և քաջ հռե-*
*տորի և անյաղթ փիլիսոփայի* Գրիգորի Որոտնեցոյ՝ *փոխեցելոյն առ*
*Քրիստոս։ Եւ եղև գրաւ ասարտման սորա ի* Փայտակարան *մայրաքաղաքս*
*որ կոչի* Տփխիս, *ի դրան կամակատար սուրբ Աստուածածնիս և Գէորգեա*
*զօրավարիս, ի հայրապետութեան տեառն* Գրիգորի՝ Վաղարշապատու
*պատրիարգի, եւ ի վերադիտողութեան նահանգիս Վրաց տէր* Ղուկասու՝
Հաղբատայ *արքեպիսկոպոսի, եւ ի թագաւորութեան վրաց* Գէորգեայ
497ա *Բագրատունոյ, զոր պահեսցէ տէր աստուած պարագայց || ամաւք յաղ-*
*թող ի վերայ թշնամեաց խաչին Քրիստոսի։*
*Բայց ցանկացող եղեալ այսմ հոգելից և արդիւնաշահ մատենիս երիցս*
*երանեալ երջանիկ և սրբասնեալ և գերիմաստ գիտութեամբ ճոխացեալ*
*և շքեղացեալ քաջ րաբունիս* Ստեփանոս, *և իւրով ձեռամբն գրեաց մինչ*
*ի յաղուհացից երրորդ կիւրակէն, և զայլն գրել ետ ի վայելս անձին*
*իւրոյ և ի յիշատակ հոգւոյ իւրոյ և ծնաւղաց իւրոց։ Արդ, յերես անկեալ*
*աղաչեմ և հայցեմ ի ճաշակողացդ ի հոգևոր սեղանոյս և աղաչանս բա-*
*զումս մատուցանեմ սիրողացդ իմաստութեան, որք լուսաւորիք գիտու-*
*թեամբ ի սմանէ և մասին սակս հանդիպիք գաղափարելով, կամ կար-*
*դալով, կամ տեսանելով, յիշեսջիք զվերոյգրեալ զստացօղ սորա՝ զան-*
*յաղթ փիլիսոփայ և զսրբասնեալ րաբունապետս* զՍտեփաննոս, *և զհայր*
*սորին* զՎարդան, *և զմայրն* զԴէղա-խաթուն, *և զեղբարսն***, *և զամե-*
*նայն արեան մերձաւորսն՝ զկենդանիսն և զհանգուցեալսն ի Քրիստոս։*
*Այլ և զրստ հոգւոյ հարազատն ղսնընդակից եղբայր սորա* զՅովանես
*ճգնազգեաց կրօնաւոր, որ առիթ եղև սմա և օգնական ի յուսմունս*
*իմաստութեան և բազում աշխատութեամբ ծառայեաց, զոր տէր հա-*
*տուսցէ զվարձս վաստակոց սորա ընդ միոյն բիւրապատիկ ի հանդեր-*
*ձեալ կանոնս։*

* *Գրված է Մարկոս ավետարանչի նկարի ստորին լուսանցքում։*
** *Տեղ է բաց թողնված անունները գրելու համար։*

A 38

Նա զգերապատիւ և զնրբահայեաց և ղղարդարեալն իմաստութեամբ
և զբարձրացեալն աստիճանաւ կըստ հոգոյ հայր և զուսուցիչ սորա զԿա-
րապետ րաբունապետ, որ բազում աշխատութեամբ ուսոյց ղվարդապե-
տական և զբժշտական գիտութիւնս. զոր տէր աստուած պահեսցէ զնա
որպէս զչահ անշիջանելի ի պարծանս և ի պայծառութիւն կաթուղիկէ
եկեղեցոյ, եւ յետ աստեացս ըստ սրբոց վարդապետացն դասակից
և սլսակակից արասցէ։ Դարձեալ, աղաչեմ զհանդիպողսդ, զի ընդ վե-
րագրելոցս յիշման արժանի առնէք և զիս՝ զմեղուցեալ գծող սորա զՑո-
497բ վանէս անուամբ քահանայ և ոչ գործով։ Այլ և յիշեսջիք և ղեղբարքս մեր
ըստ հոգոյ, որք օգնական եղեն գրոցս, որք քարտէս կոկելով, որք խազե-
լով և որք այլ պիտոյիւք։ Եւ որք յիշէք բարի յիշմամբ և աներկբայ հաւա-
տով, յիշեալ լիցիք ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ յաւի-
տեանս, ամէն։

Բայց աւարտեցաւ սա ի թվաբերութեան Հայկազեանս տովմարի ՋԱ. (1452), մայիս ամսոյ յերեքն, ընդ վերագրելոցս յիշեսջիք և ///* իմաստուն և հանճարեղ քահանայ զկազմող սորա, հանդերձ ծնողաւք և ազգականաւք**։

## 23

## ԱՒԵՏԱՐԱՆ

Փարիզ, Նուպարյան Մատենադարան №2***,
նաև Փիրղ. Նոտ. 169—170

գրիչ՝ Գալուստ
վայր՝ Աղջոց վանք

ա

... Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի թուականիս Հայոց ՋԱ. (1452), ի հայրապետութեան Վաղարշապատու տեառն Գրիգորի, և ի ղանութեան Ջահանշահին որդոյ Ուսուֆին. գրեցաւ ձեռամբ անարուեստ գծողի Գալուտի անուամբ միայն աբեղայի և ոչ գործով, ի դառն և յանբարի ժամանակի, ի գաւառս Արարատեան, ի ձորս Քեղոյ, ի վանքն Աղջոց, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս և Հրաշափառ Կաթուղիկէիս, և սուրբ Ստեփանոս Նահատակիս, և Թրփ սուրբ նշանիս և այլ բազմահաւաք սրբոցս որ աստ կան, ի խնդրոյ սրբասէր և հոգելի միայնակեցին Դաւթի, որ է մահդասի և մըղտսի, ի յիշատակ իւր ըստ հոգւոյ. եւ մեծաւ փափագանաւք ստացաւ զսա ծնաւղացն իւր Միքելին, և մաւրն Սիրմա-խաթունին, և եղբաւրն Թանշուքին, և զաւակաց սոցին Սարգսին և Մաքէոսին, և Աստուածատուրին, և Վրթանիսին, և ամենայն արեան մերձաւորացն։ Արդ որք աւգտիք ի սմանէ կարդալով կամ աւրինակելով յիշեսջիք ի սուրբ

---

* Կազմողի անունը ջնջված է։

** Շարունակության մեջ, ոմն Կարապետ վարդապետ հայտնում է, որ «վերստին նորոգել» է տվել Քարողգիրքը և նվիրել է «ի դուռն Վարագա սուրբ Նշանիս»։

Ըստ հնագրական տվյալների Կարապետը ապրել է ԺԵ. դարի վերջին կամ ԺԶ-ի սկզբներին։

*** Շնորհակալությամբ ստացել եմ փարիզահայ բանասեր Հայկ Պերպերյանից։

*յաղաւթս ձեր զվերոյգրեալսն. աստուած յիշողացդ և մեզ յիշեցելոցս առ. Հասարակ ողորմեսցի Քրիստոս աստուած մեր, և նմա փառք յաւիտեանս, ամէն։*

*Այլ և յիշեսջիք զերկու հարազատ եղբարք՝ զկուսակրաւն քահանայքն* զՄխիթար *և* զԳալուստ՝ *գծաւղ սուրբ Աւետարանիս, ընդ սմին յիշեսջիք և* զՄխիթար *աբեղայն՝ քվերորդին* Դաւթին, *և* զՅովհաննէս *էրէց և զծնաւղ սոցա, ամէն։*

**Բ**

*Քրիստոս աստուած իւր սուրբ աւետարանչացն բարեխօսութեամբ* զԹաշ-Խաթունի *մեղքն թողու, իւր արքայութեան արժանի առնէ՝ սրբոցն դասակից. մեզ՝ մէկ մաշէագին (") արար ծառայութիւն։*

**Գ**

*նկարող և կազմող՝* Ստեփանոս

*Զմեղապարտն նկարաւղ և զկազմաւղ սուրբ Աւետարանիս՝* զՍտեփանոս *աբեղայս յիշեցէք ի սուրբ յաղաւթս ձեր, ո՜վ սուրբ ընթերցաւղք, որք կարդայք կամ աւրինակէք լիակատար սրտիւ աստուած ողորմի ասացէք. ողորմած աստուածս մեզ և ձեզ ողորմի առ հասարակ. և նմա փառք յաւիտեանս, ամէն։*

## 24

## *ՃԱՌԸՆՏԻՐ*

*Երևան 3771*

*գրիչ՝* Ներսէ՛ս
*վայր՝* Որոտնայ վա՜նք

**ա**

45բ *Զստացող սորա* զՍէրովբէ *քահանա և զկենակիցն իւր* զՀաւասարն՝ *ըղփոխեցեալսն ի Քրիստոս, և զզաւակն իւր* զՅովհաննէսն, *և* զԱստուածատուրն, *և* զՏէրտէրն *յիշեցէք ի Քրիստոս, և աստուած զյիշողսդ յիշէ յիւր արքայութիմն։*

**Բ**

62բ *Քրիստոս աստուած քո սուրբ գալստեամբդ ողորմեա* Կարապետ *քահանաի, և* Գոհար-Ազզին, *և* Սերովբէ *քահանային,* Հաւասար-Տիկնա, *և զաւակաց իւրոց, և որք ընթեռնուք յիշեցէք ի Քրիստոս և աստուած զձեզ յիշէ յիւր արքաութիւնն, բարեխաւսութեամբ սուրբ Սիմէովնի*։*

* *Գլխավոր հիշատակարանը չի պահպանվել, ուստի և ձեռագրի գրչության թվականը վերցնում ենք 620ա էջի հիշատակագրությունից, որ գրել է հավանաբար Մեսրոպ Վրդ. Սմբատյանցը. ահա այդ՝ «Թվին հայոց ՋԱ. (1452) ի վանս* Որոտնայ, *ի ձեռն* Ներսէս *վարդապետի* Ղալամեանց, *ի հայրապետութեան սուրբ Էջմիածնի տեառն* Գրիգորի, *յիշեցէք յաղաւթս»։*

*Սակայն այդ թվականն անտարակուսելի չի կարելի համարել, որովհետև 1656 թվականին «Նիկոլ Տօմաժիրսքենց»-ը, նորոգելով ձեռագիրը, թվականի մասին այլ տվյալ է հաղորդում. «Գրեցաւ սուրբ մատենիս թվ. հայոց մեծաց ՊԲ, ամսոյն ժի (15) օգոստոսի», (էջ 143բ)։ Ըստ այդմ, ձեռագիրը գրված պետք է լինի 1353 թվականին։ Ո՞րն է սրանցից ճիշտը, դժվար է որոշել։ Դնում ենք 1452 թվականի տակ կասկածանքով։*

Գ

482բ *Կարապե՛տ մեծ գալստեանն, անրարբա՛ռ սուրբ բարեխաւս Հայցեա*
*միացելոյն ի քեզ ի հոգւոյ վտանգից փրկիլ ընդրեալ քահանայիցն* Կա-
րապետ *և* Սերովբէն, *և այլ մերձակայիցն՝* Առաքելին, *և* Կոտնի-Պէկին,
*և տատային* էլխաթունին, *և ի Քրիստոս փոխեցելոյն՝* Գոհար-Ազզին, *և*
Հաւասար-խարունին, Յովաննիսին *և* Մկրտչին, *որ տղա հասակաւ առ*
*Քրիստոս փոխեցան և Քրիստոսի փառք յաւիտենս, ամէն։*

25

## ԱՒԵՏԱՐԱՆ

***Երևան 4830***

Ա

*գրիչ՝* Գրիգոր
*վայր՝* Աղթամար

313բ *... Ուստի և տեսեալ ղսորա անճառ փրկագործութեան խորհուրդ*
*աստուածասէր և հաւատարիմ կինն* Սուլթան-Մէլէք, *և ցանկացող եղեալ*
*այս աստուածախօս սուրբ Աւետարանիս և ետ գծագրել զսա ի հալալ ի*
*քրտնաջան վաստակոց իւրոց յիշատակ հոգոյ իւրոյ, և ծնօղաց իւրոց՝*
Տերունին *և* Գոհար-Մէլէքին, *և առն իւրոյ* էլէքսանին, *և տարաժամ*
*հանգուցեալ որդոցն* Սիրունին, Թումային, Խոջաբէկին, Խալիֆին, *և*
Մկրտիչ *սարկաւագին, և* Մուղալ-Խաթունին, *և եղբօրն* Վարդանին, *և*
314ա *քուերն* Մաքր-Մէլէքին* || *և այլ ամենայն արեան մերձաւորաց նորին՝*
*կենդանեաց և հանգուցելոց, և ետ ղսա ընծայ և նուէր ի դուռն սրբոյն*
*Ստեփանոսի նախավկային՝ ի մայրաքաղաքն յՈստան, յիշատակ ան-*
*ջնջելի և կտակ անդառնալի, որպէս զի հրճուեսցին սովաւ մանկունք*
*սուրբ եկեղեցոյս և լի բերանով և ուղիղ սրտիւ աստուած ողորմի ասաս-*
*ցեն* Սուլտան-Մէլէքին, *և ծնօղաց նորա, և զաւակաց՝* Սիրունբէկին *և*
*այլոցն, որ երիտասարդական կենօք փոխեցաւ ի կենցաղոյս և եթող*
*մօրն իւրոյ սուգ անմխիթար և վէրք անողջանալի, և այլոցն ամենայնի։*
*Եւ արդ, ես՝ յետինս ի գրչաց և անարժանս ի կարգաւորաց՝ սոսկա-*
*նուն քահանայ* Գրիգոր *տեսի զսէր և զփափագ սորա, զոր ունէր առ հո-*
*գևորն և իմով իսկ տկարութեամբս յանձն առի և ամենակարող զօրու-*
314բ *թեամբն աստուծոյ կատարեցի ղսա մեղսամած մատամբ||իմով յաստուա-*
*ծապահ կղզիս* Աղթամար, *ընդ հովանեաւ ամենայաղթ սուրբ Խաչիս և*
*սուրբ Նշանացս, ի հայրապետութեան տեառն* Զաքարիայի, *ի թուակա-*
*նիս մերում ի ԹՃ. և ի մէկ ամին (1452)։ Զոր և իմ անընդունակ գոլով*
*յարուեստ գրչութեան և բազում մեղացն ցնորիւք պաշարեալ, այլ ըստ*
*կարի իմում, զոր շնորհեաց ինձ մարդասէր հոգին, բազում աշխատանօք*
*գծագրեցի ղսա ի ստոյգ և յընտիր աւրինակէ՝ կենօք, տառապանօք և*
*բազում տրտմութեամբ՝ ի դառն և ի վշտալից ժամանակիս, յոր եկն*

---

* *Այլ ձեռագրով ավելացված է ու զՄանգաքաւն յիշեցէք ի Քրիստոս, որ զԱւետարանս ինք է աուրեր գրել ի խալալ վաստ[ակ]ոցն սուրբ Ստեփանոսին։*

Ջրճանշայ փաթշահն և ի յՌստան նստաւ բոլոր ձմեռ մի՝ բազում զօ-
րօք, տացէ նմա աէր կեանս խաղաղականս, ամէն։

Արդ, որք ճաշակէք յաստուածային բուրաստանէս և յամենալի սե-
ղանոյս, որք հանդիպիք սմա տեսութեամբ կամ ընթերցմամբ, յիշեցէք
յերկնագնաց սուրբ յաղօթս ձեր զյառաշ յիշեցեալ ստացող սուրբ Աւե-
տարանիս՝ զՍուլտան-Մէլէf, և զծնօղսն իւր՝ զԾէrուն և զԳոճար- Մէլէf,
315ա և || զայրն իւր զէլեfսան, և զորդիսն՝ զՍիrունբէկ, զԹումայ, զխոջաբէկ,
զխալիֆայ, և զՄկրաիչ սարկաւագ, և զՄուղալ-խաթուն, և զեղբայրն
զՎարդան, և զքոյրն զՄսըrմէլէf, այլ և զհոգևոր հայրն զՄկրտիչ, և զկե-
նակից նորին՝ ըՋմrութ, զՄարտիrոս Մոկացին, որ բազում երախտիք
ունի ի վերայ մեզ, նաև զԹումէն, որ զթուղթն եբեր, և զ* դըբաղն, որ
զԱւետարանի սեկն եառւր, և զէվաաշայ ֆռաշն, և զայլ ամենայն, որ
երախտիք ունին ի վերայ իմ և ի վերայ սուրբ Աւետարանիս, [դարձեալ
յիշեցէք ի Քրիստոս զխախաթուն, Թումա, խաւոց՝ Մկըրտչի կին, զՄան-
գաբաւի դուստրն]**. և զայլ ամենայն ազգատոհմն նորա՝ զկենդանիսն
և զննջեցեալսն յիշեցէք ի Քրիստոս և ուղիղ սրտիւ աստուած-ողորմի
ասացէք, և աստուած յիշողացդ և յիշեցելոցս ի սմա առ հասարակ ողոր-
մեսցի։

Ընդ նոսին և զամենամեղ գծագրող սորա զԳrիգոr քահանայ, և
315բ զծնօղսն իմ զխաչիկ և զԱզիզ-Մէլիf, և զեղբայրքն իմ զհռչա||կաւոր
քարտուղարն զԹումա կրօնաւոր և զՆաւասարդ, և զզաւակսն իմ զԹու-
մա սարկաւագն, որ աշխատեցաւ ի կոկել թղթիս և զՆաւասարդ սարկա-
ւագն՝ զհանգուցեալն առ Քրիստոս, և զայլ ամենայն ազգատոհ[մ]սն մեր,
և զերախտաւորսն՝ զկենդանիսն և զհանգուցեալսն, և որք զմեզ յիշէք և
ուղիղ սրտիւ աստուած-ողորմի ասէք, և աստուած զձեզ յիշէ յարհնու-
թեան պահուն, ամէն։

Եւ արդ, ես՝ Սուլտան-Մէլէfս ետու զսուրբ Աւետարանս ծովահա-
յեաց Ոստան քաղաքի սուրբ Ստեփաննոսի նախավկային՝ յիշատակ հո-
գոյ իմոյ, և որդոյն իմոյ Սիrունբէկի, որ երիտասարդ փոխեցաւ ի կեն-
ցաղոյս, և այլոցն ամենայնի։

Եւ մի ոք իշխեսցէ հեռացուցանել զսուրբ Աւետարանս ի դրանէ
սուրբ Ստեփանոսի տաճարիս կամ ծախելով, կամ գրավելով, կամ այլ
ինչ աղագաւ ոչ ի մերոց և ոչ յօտարաց, ոչ ի քահանայից և յաշխարհա-
կանաց, և եթէ ոք յանգգնի հեռացուցանէ՝ նա զանէծքն զօձին և զԿայե-
316ա նին ժառանգեսցէ և զմասն զՅուդային և զայլ ախչահանւ||ացն առցէ
ինքն և այլ կամակիցքն նորա, և ոչ եղիցի փրկութիւն հոգոյ նորա ոչ
յայժմուս և ոչ ի հանդերձելումն, հանդերձ ծնօղօք և ամենայն զարմօք,
ամէն։

Եւ ինքն Քրիստոս աստուած, որ տէրն է փառաց և տուող ողորմու-
թեանց ձեզ՝ յիշողացդ և մեզ՝ յիշեցելոցս ի սմա, առհասարակ, ողոր-
մեսցի և ինքն աւրհնեալ, գովեալ և բարեբանեալ եղիցի յաւիտեանս
յաւիտենից, ամէն։

---

* Անվան տեղը բաց է թողնված։

** Ուղղագիծ փակագծերի մեջ առնված հատվածը գրված է այլ ձեռագրով։

*Դարձեալ, աղաչեմ յիշել ի տէր զպատուական և զընտրեալ քահանայքն* Ոստան *քաղաքին՝ զսպասաւորք սուրբ Ստեփանոսի նախավկային՝ զմեծ փիլիսոփայքն* զՍտեփանոս Սադաղէն *և զորդի նորին* զԱտոմն, զՍտեփանոս Համիթենցն *և* զԱտոմ *որդի նորին*, զՍտեփանոս *և* զՄարտիրոս, զԱւետիս, զԱտոմ *և* զԹադէոս, *որ բազում աշխատութեամբ սպասաւորեն սուրբ եկեղեցոյս, տացէ նոցա տէր աստուած վարձս ըստ վաստակոց նոցա և դասաւորէ ի վերինն Երուսաղէմ ընդ սուրբս և սիրելիս անուան իւրոյ, հանդերձ ծնօղօք և ամենայն ազդականօք, ամէն, եղիցի, եղիցի։*

Բ

*դերութիւնից ազատող՝* Ուսքայ Ատոմ

316բ *Արդ, ի վերջին դարուս և յերեկոացեալ ժամանակիս ես՝ ուսթայ*
Ատոմս *թափեցի զԱւետարանս ի յանաւրինաց, զոր էր դերի բերեալ*
*զպիղծ բռնաւորն* Էզտինշէրն: *Եւ ետու վերստին ի դուռ սուրբ Ստեփա-*
*նոս նախավկային* Ոստան *քաղաքի, յիշատակ հոգոյ իմոյ, և ծնողաց*
*իմոց՝ հաւրն իմոյ* Սարգսին, *մաւրն* Սաղդար-խաթունին, *և կենակցին*
*իմոյ* Նիկար-խաթունին, *եւ զաւակաց իմոց* Սալդաթին *և* Դովլաթ-խա-
թունին, *որ երիտասարդական մահուամբ փոխեցաւ ի Քրիստոս, փեսա-*
*յին* Յովանիսին, *և իւր տղայոցն* Բուլութին, Խանումին *և* Բէկուն: *Դար-*
*ձեալ յիշեցէք ի Քրիստոս զուսթայ* Ատոմն, *և զորդիքն իւր* զԷվատշէն *և*
զԿարապետն, *և զդուստրն իւր* զԲաղտատն, *և զկենակիցն իւր* զՆկարն,
*և զծնօ[ղ]քն իւր* զԽաչիկն *և* զՈւսլուն, *և լի բերանով աստուած-ողորմի*
*ասացէք նոցա և աստուած ձեզ ողորմեսցի։ Եւ այժմու քահանայքս, որ*
*կու աշխատին ի դուռն սուրբ Ստեփանոսիս՝ զտէր* Ատոմ Համիթենցն*,
*և զմիւս տէր* Ատոմն, զԿարապետ *քահանայն*, զԹադէոս *քահանայն, և*
*զորդին իւր* զՅոհաննէս *քահանայն*, զՄելքէսէթ *քահանայն*, զՄեսրոպ
*քահանայն*, զԱւետիս *քահանայն*, զԱռաքել *քահանայն և* զԱս /// *քահա-*
*նայն յիշեցէք ի Քրիստոս և լի բերանով աստուած-ողորմի ասացէք*
*նոցա, ամէն։*

*Եւ արդ, ես՝ ուսթայ* Ատոմս՝ *վերստին ետու զսուրբ Աւետար[անս ի*
*վանս] սուրբ Ստեփանոս, զի կացցէ ընդ իշ[խանութեամբ]// և մի ոք իշ-*
*խեսցէ զսա հեռացուցանել ի դրանէ սուրբ Ստեփանոսիս, ո՛չ յիմոց*
317ա *և ո՛չ յաւտարաց, և ե[թէ] || յանդգնի՝ զմասն զՅուդայինն առցէ և զայ;*
*խաչահանուացն։ Եւ այնոքիկ, որ սրտացաւաբար խնամարկու լինին*
*սուրբ Աւետարանիս՝ նա վարձատրին ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, որ*
*է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։*

---

* *Սույն հիշատակարանի գրության մերձավոր ժամանակը որոշվում է այս Ատոմ Համիթենցի (ինչպես նաև մյուս քահանաներից մի քանիսի) հիշատակությամբ, որը նախորդ հիշատակարանում, իր հոր՝* Ստեփանոս Համիթենցի *հետ միասին, հիշատակված է որպես մեկը Ոստան քաղաքի քահանաներից։ Այսպիսով սույն հիշատակարանը գրված պետք է լինի ա. հիշատակարանից ոչ շատ հետո, ըստ երևույթին 1460-ական թվականներին։*

## 26

## ՄԱՏԵԱՆ ՈՂԲԵՐԳՈՒԹԵԱՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑԻՈՅ

*Փիրդ. Նոտ. 170, «Դիւան» Ժ., էջ 14*

*գրիչ*՝ Մինասենց Թումայ
*վայր*՝ Աղթամար

... *Արդ, եղև գրաւ գրչութեան սորա յաստուածապահ կղզիս* Աղթամար, *ընդ հովանեաւ դմբէթաձև և երկնանման ․ս․ խաչի տաճարիս․* ՋԱ. *(1452) թուականիս, ի հայրապետութեան տեառն* Զաքարիայի..., *ձեռամբ* Մինասենց Թումայ *անուամբ և եթ աբեղայի*....

## 27

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Ն. Ջուղա, Ս. Ստեփանոս եկեղեցի, Մ.Տ.Մ. և Ս. Տ. Ս..*

*գրիչ*՝ Ստեփանոս
*վայր*՝ Աղթամար

281ա—283բ *Փառք... ուստի տեսեալ զանճառ փրկագործութեան խորհուրդ բարեմիտ տանուտէրն* Մկրտիչ *և ետ գծագրել... յիշատակ հոգոյ իւրոյ, և ծնաւղաց իւրոց* Յովանիսին *և* Անձային, *և կենակցին* Թամարին, *և այլ ամենայն արեան մերձաւորաց իւրոց, և... ետ զսա ընծայ և նուէր ի դուռն սուրբ եկեղեցւոյ... Եւ արդ, ես՝ յետինս յարդարոց և առաջինս ի մեղաւորաց, անարժանս յարժանաւորաց և անարգս ի կարգաւորաց, անարհեստս ի գրչաց* Ստեփանոս *անուամբ և եթ աբեղայ... կատարեցի զսա մեղսամած մատամբս իմով յաստուածաբնակ կղզիս* Աղթամար, *ընդ հովանեաւ ամենայաղթ սուրբ խաչիս և սուրբ Նշանիս, ի հայրապետութեան տեառն* Զաքարիայիս, *ի թվականիս Հայոց* ՋԱ. *(1452), ի ստոյգ և յընտիր աւրինակէ, կենաւք, տառապանաւք...։ Յիշեսջիք յերկնագնաց յաղաւթս ձեր զստացող սուրբ Աւետարանիս* զՄկրտիչն, *և զծնօղսն իւր* զՅովճաննէս *և* զԱնձայ, *և զաւակս իւրեանց* զԴանիէլ *և* զՎարդան, զՄովսէս, զԱտոմ *և* զՆերսէս, *զհարեղբայրն* զՅովանէս, *և զկին իւր* զԳոհար, *զաներն իւր* զՄովսէս, *և զոքանչն* զՄինայ, *և զքոյրքն* զըԹագուհի *և* զՋաւհար, զՄրւաթ *և* զՄամոյ, *զփեսայն* զՍիոն, *և զծնաւղսն իւր* զՍտեփաննոս *և* զՄոչան, *և զաւակսն իւր* զՄեսրոպ *և* զԹուրուանդէն, *զմիւս փեսէն* զԿիրակոս... *և զգծող սորա,* զՍտեփանոս, *և զիմ ծնողսն* զՄկրտիչ *և* զԳոճարմէլիք, *և զեղբարքն իմ* զԴաւիթ *և* զՍուքիաս, *և զքոյրն* զՍուլթան-Մէլիք...։

28

ԱԻԵՏԱՐԱՆ

*Փիրգ. Նոտ. 168—169, Նշխարք, էջ 169—170,*
*Բաղէշ՝ ի ս. Գէորգ եկեղեցի*

*գրիչ՝* Վարդան
*վայր՝* Վան

...*Արդ կատարեցաւ սուրբ Աւետարանս ի քաղաքս որ կոչի* Վան, *ընդ հովանեաւ սրբուհւոյ Աստուածածնին, և սուրբ Վարդան քաջ զորավարին և այլ սուրբ եկեղեցեացս, ձեռամբ յոգնամեղ և անարժան սուտանուն* Վարդան *երիցու. ի թուականութեանս Հայոց ՋԱ. (1452), ի հայրապետութեան տեառն* Գրիգորի, *և մերոյ աթոռակալի սուրբ ուխտիս* Վարագայ՝ *հեղահոգի եպիսկոպոսին տէր* Յովանիսի *և* Զաքարիա *վարդապետի։*

*Յիշեցէք... զիս՝ զանարժան գծողս զ*Վարդան, *և զիմ ծնողքն՝ զհայրն իմ զ*Յովանէս *քահանայն, և զմայրն իմ* Զըմրութ, *և զեղբայրն իմ և զուսուցիչ զ*Կարապետ *քահանայն՝ զնահատակն Քրիստոսի, որ նահատակեցաւ յ*Արճէշ *քաղաքի, և այլ եղբարցն իմոց, և իմ որդւոյն* Նիկողայոսին, *որ աշխատեցաւ ի կոկել թղթին, և միւս որդոց՝* Յովանիսին *և* Գրիգորին, *...և մեր տղոց մօրն՝* Դովլաթին, *և նորին ծնողացն...։ Դարձեալ, յիշեցէք ի Քրիստոս զ*Մինաս *ծաղկողն և զ*Վարդան *վարպետ կազմողն...։ Յիշեցէք ի սուրբ յաղօթս ձեր զ*Յովանէս *[տանուտէրն և զկենակիցն] զ*Աւագունին, *որ ստացաւ զսուրբ Աւետարանս։*

29

ԱԻԵՏԱՐԱՆ

*Ախալքալաքի Ալաթուման գիւղ*
*Մ. Տ. Մ.*

*գրիչ՝* Վարդան
*վայր՝* Մոկաց Երկիր,
Սերիվանք

*Գրեցաւ յերկիրս* Մոկաց, *ի սուրբ ուխտն* Սերիվանք, *ընդ հովանեաւ սուրբ Գէորգայ և սուրբ Նշանիս, ի հայրապետութեան տեառն* Գրիգորի *և* Զաքարիայի, *ձեռամբ* Վարդանայ՝ *որդւոյ* Սամուէլի *և* Մինայի:

30

ԱԻԵՏԱՐԱՆ

*Փիրգ. Նոտ. 169*

*գրիչ՝* Վարդան

... *Այլ և գրեցաւ սուրբ Աւետարանս աստուածախօս ձեռամբ անարժան և տխմար գրչի* Վարդանի, *յընտիր և ի ստոյգ օրինակէ։ Ի մեծ թուականիս Հայոց ՋԱ. (1452), ի կաթուղիկոսութեան Հայոց* Ախթամարայ *տեառն* Զաքարիայ, *ընդ հովանեաւ սուրբ տաճարին Գէորգայ և սուրբ Նշանի։*

Քանզի ստացաւ զսա պատուական և հաւատարիմ Թովմայ և կողակիցն իր Խաթուն-Մելիքն...։

31

ԱՒԵՏԱՐԱՆ

Կոկանդ քաղաք, Մ. Տ. Մ.

գրիչ՝ Վարդան

... Այլ և արդ գրեցաւ սուրբ Աւետարանս աստուածախաւս ձեռամբ անարժան և տխմար գրչի Վարդանի... յրնաիր և ի ստոյգ արինակէ՝ կենաւք տառապանաւք և բազում պանդխտութեամբ և ազգի ազգի տրտմութեամբ։ Եւ է ի մեծ թուականիս Հայոց ՋԱ. (1452), ի կաթողիկոսութեան Հայոց Աղթամարցոյ Զաքարիայի, ընդ հովանեաւ սուրբ տաճարիս Գէորգեա և սուրբ Նշանի։

Քանզի ստացաւ զսա պատուական և հաւատարիմ ծառայս աստուծոյ Թովմայ և կողակիցն իր Խաթուն-Մէլէք... յիշեցէք և զծնաւղսն իր ըստ մարմնոյ՝ զհայրն իր զՅակոբ և զմայրն իր զՋուհար, և զեղբայրքն իր զՍտեփանոս և զՄերուն, և զեղբաւրորդին զԿիրակոս կրօնաւորն, և զքոյրն Շամամ, և զԱնտոն... և զիս՝ զփծուն գրիչ Վարդան... զհայրն իմ զՍամուէլ քահանայ, և զմայրն իմ զՄինայ, և զհոգևոր հայրն իմ և զեղբայր Մկրտիչ եպիսկոպոս, որ բազում երախտեաց ինձ...։

Եւ արդ, ես՝ Թոմայ և կենակիցն իմ Խաթուն-Մէլէք միաբանեցաք սիրովն Քրիստոսի, ետուք գրել զսուրբ Աւետարանս ի յարդար վաստակոց մերոց վասն սիրոյն Քրիստոսի և յուսոյ արքայութեան, յիշատակ մեզ, և ծնօղաց մերոց, և զաւակացն մերոց... Ընդ նոսին [յիշեցէք] զքարի կրօնաւորն զՍիոն աբեղայն և զՈհանէսս որդին՝ Թումա շուլահարկն։

32

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 8925

գրիչ՝ Վարդան

վայր՝ Արծկէ, ի վանքս Կողաց

292բ Արդ, այսմ աստուածեղէն երկնապարգև գանձիս և լուսափայլ մաքուր մարգարտիս ցանկացաւ սրբասէր և հեզահոգի երիցս երանեալ և ընտրեալ կրաւնաւորն Յակոբ՝ յիշատակ իւրն, և ծնաւղացն՝ Ներսէս քահանային և Խոնդին, և եղբարցն Կարապետին և Գրիգորին և Յոհանիսին և Սարգիս աբեղային...։

293ա ... Արդ, գրեցաւ աստուածախաւս գանձս տէրունական ձեռամբ անար-
հեստ գրչի Վարդան սուտանուն կրաւնաւորի, ի գաւառս Արծկոյ, ի վանքս
Կողաց, ընդ հովանեաւ սուրբ Լուսաւորչին, ի հայրապետութեան տեառն
292բ Զա||քարիայի, ի թուաբերութեանս Հայոց ՋԱ*. (1452)։

* Թվականի Ջ. (900) թվանշանը ջնջված է, սակայն ուշադիր զննությունից՝ հետո ապոտ կերպով նշմարվում է։

Արդ, աղաչեմք զմանկունսդ սուրբ եկեղեցոյ, որք հանդիպիք սուրբ Աւետարանիս կարդալով, աւրինակելով կամ տեսանելով՝ յիշեցէք ի սուրբ և յերկնագնաց յաղաւթս ձեր զյառաջ յիշեցեալ ստացող սուրբ Աւետարանիս զՅակոբ աբեղայն, և զծնաւղսն իւր՝ զՆերսէս քահանայն և զմայրըն իւր զԽոնդն-Մէլէք, և զեղբարքն՝ զԿարապետ և զԳրիգոր և զՅոհանէս, և զքուերքն՝ զԱյմելիքն և զՍտըլմէլիքն, և քուերդստերքն՝ զԱնէն և զՄարգարիտ և զԽոնդն-Մէլէք, և դայլ ամենայն արեան մերձաւորքն՝ զկենդանիսն և զհանգուցեալսն ի Քրիստոս։

Ընդ նոսին և ղիս՝ զբազմամեղ զծաւղս զՎարդան, և զծնաւղքն իմ՝ զՍտեփանոս և զՄելիքէն, զԿարապետն և Հոփիսիմէն, այլ և զերախտաւորն մեր զԽոնդարն, որ շատ ծառայութիւն արար մեզ, աստուած իւրն վարձահատոյց լինի, յիշեցէք ի Քրիստոս և աստուած-ողորմի ասացէք։

394ա Այլ և յիշեցէք ի Քրիստոս զմիաբանք սուրբ եկեղեցոյս՝ ղհամշիրաք եղբարքս մեր՝ զվարդապետ զտէր Յոհանէս, զտէր Դանէլն, զՍարգիս աբեղայն զտէր Յովանեսն, զքարտէզ կոկոզսն՝ զՅոհանէսն, զՆերսէս և զԱմիրշէն. յիշեցէք ի Քրիստոս և լի բերանով և ուղիղ մտաւք աստուածողորմի ասացէք և ինձ՝ բազմամեղիս Յակոբիս, որ զտետրակս գրեցի, զի և ձեզ և մեզ լսել տա զերանաւէտ բարբառն՝ Եթէ եկայք աւրհնեալք հաւր իմոյ՝ ժառանգեցէք զպատրաստեալ զարքայութիւնն, ամէն։

Աստուած վայելել տա զսուրբ Աւետա[րա]նս Յակոբ աբեղային և քուերորդոյն Սարգիս աբեղային, անփորձ կենաւք և անխռով խաղաղութեամբ մինչ ի խորին ծերութեան, ամէն։

Եւ արդ, ես՝ ոմայնս յամենայն բարէմասնութեանց Յակոբ կրօնաւորս, տուի զսուրբ Աւետարանս ի գերազարդ սուրբ առաքելադիր աթոռն Աղթամարա, ի բարձրակումբէթ սուրբ Խաչն, յիշատակ ինձ և ծնօղացն իմոց։ Եւ
394բ մանկունք աթ||ոռոյն վաելեսցեն զսայ և հանապազ յիշեսցեն յիւրեանց յերկնագնաց սուրբ յաղօթս միոյ աստուած-ողորմիւ։ Եւ լի բերանով աստուած-ողորմի ասացէք միաբան և բոլոր սրտիւ Յակոբ Արծկեցուն և իւր բարի ծնօղացն, և ինքն, որ տէրն է փառաց ձեզ՝ յիշողացդ ողորմեսցի յաւրհնութեան պահուն և մեզ՝ յիշեցելոցս, կրկին կենօք և երկու աշխարհօք յաւիտեանս յաւիտենից, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

Եւ մի ոք իշխեսցէ հեռացուցանել զսա ի սուրբ Խաչէս Աղթամարայ՝ ի սուրբ յաթոռոյս, ոչ ի մերոց և ոչ յօտարաց, այլ անջինջ յիշատակ մնա ի սուրբ յաթոռն, և թէ ով յանդրէնի և հանէ՝ պատժի յաստուծոյ, ամէն։

33

ՇԱՐԱԿՆՈՑ

ИВ АН А—8

գրիչ՝ Յակոբ
վայր՝ Մեռտի՞ն

ա

... Գրեցաւ ձայնաքաղս ի թվին Հայոց ՊՃԱ. (1452) ամի և աւարտեցաւ նոյեմբեր ամսոյ ԺԱ. (11), ձեռամբ ապիկար գրչի Յակոբ անուն աբեղի, ի խնդրոյ պատուական և սրբասէր և հեզահոգոգս կրաւ[նաւ]որա-

ցըս Մերունին և իւր եղբաւրն Աստուածատուր մալազին, քանզի ետոմ դրել զսա ի հալալ արդեանց || իւրեանց...։

Արդ ես՝ տառապեալ Յակոբս սուտ աբեղաս, որ մեղաւք եմ խըխայթեալ հոգոյ՝ ծրագրեցի զձայնաքաղս ընդ հովանեաւ ի հռչակաւոր անապատս, որ կոչի Ամենափրկիչ, և մատոււ նորին սուրբ Կարապետ, զոր յետոյ շինեցին, սուրբ խաչ և սուրբ Երրորդութիւն։

Արդ, որք հանդիպիք սմա կամ կարդալով կամ աւրինակելով՝ յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զՅակոբ աբեղաս, զծնաւղսն իմ և զեղբարքըն իմ...։

Ո՛վ սուրբ ընթերցողք, խոշորութեան և սխալանաց անմեղադիր լերուք, զի կար մեր այս չափ էր։ Նաև զպատուելի եղբարքն մեր, զարհիեպիսկոպոսքն մեր՝ զտէր Յոհանէս՝ զվերատեսուչ քաղաքիս և զտէր Տաւիլ արհին՝ առաքինասէր եպիսկոպոսն, որ է բնական ի Մերունոյ քաղաքի, և զայլ միեղէն եղբարքն, և զՂազար աբեղան, և զՄաթէոս աբեղայն, և զԱւետիք աբեղայն, և զՄկրտիչ մալազն, և զԱւետիք մալազն, և զայլ սպասաւորս սուրբ վանացս յիշեցէք...։

Բ

/// Նս՞]տել ի խրճըթիս
Ասի թէ յաւարտ հասնիմ տառիս,
Փախուստ եղև ի սոյն ժամիս
Աւագ շաբաթ սրբոյ զատկիս։
Տնկոյս թողի զեկեղեցիքս,
Իբր թէ կեանքս լաւ էր քան զհոգիս,
Պատահեցաւ ոտքս քարիս՝
Անկա ի կոր յատակ որմիս.
Թալանեցին զմարմնոյ ընչիկս,
Աստ չի կենալ միտս ի բանիս,
Ոչ յաւժանք նրբայդրիս։
Ի քէն հայցեմ տէր Ըռըստագիս,
Թէպէտ որ չէ արուեստ բանիս
Մտիկ արայ ժամանակիս,
Այս պեզծ խորհուրդս, որ կայ ի յիս
Ջիս կու մատնէ իմ ոսոխիս,
Մատնիմ յանչէջ հուր գեհենիս։
Ընկալ զմաղթանս իբրև զայրիս
Տէրն այց առնէ մեղօորիս,
Քեզ երանի, որ հանդիպիս
Լուսափըթիթ բուրաստանիս՝
Հոգիաբուխ սրբոյ տառիս,
Երբ լի սրտաց ծոմր կանգնիս
Սիրով /// հայիս
Յանժամ յիշեա դու զեղ[կելիս]*։

* Գրված է 25 հաջորդական էջերի ներքին լուսանցքների վրա, ամեն մի էջում մեկ տող։

## 34

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 303*

*գրիչ՝* Յովանէս
*վայր՝* Մրզուf գիւղ

287ա *... Եւ արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի դեօղս* Մրզուf*, *ի թվականիս
մերում Ջ. և Ա. (1452) ամի, ձեռամբ յոգնամեղ և անարժան գրչի* Յովա-
նէսի: *Եւ արդ, յերեսս անկեալ աղաչեմ զմանկունս սուրբ եկեղեցւոյ, որք
հանդիպիք սուրբ Աւետարանիս, լի բերանով և ուղիղ սրրտիւ յիշեցէք
ղըստացող սորա զ*Ղազար *քահանայ, և զորդին իւր զ*Յովանէս *քահանայ,
և զծնօղսն իւր զ*Փօլատ *և զ*Աթըլմէլիf, *և ըզկենակիցն իւր զ*Ալամ-խա-
թուն, *և ղծաղկեալ որդիքն իւր զ*Ստեփանոս, *զ*Ամիր-Մուլf *և զ*Կարապետ
*սարկաւագն, որ է ժառանգ նոցին, և աստուած-ողորմի ասացէք, և տէր
Յիսուս Քրիստոս ձեզ ողորմեսցի, ամէն։*

*Այլ և յիշեցէք ի Քրիստոս զքոյր տէր* Ղազարին՝ *զ*Խաթուն-Մելեf, *և
զհարսն՝ զ*Դուփթար, *և զ*Ըռըսաակէս *պատանեակն իւր, և զ*Թումայ *յիշեցէք
ի Քրիստոս, որ աւգնական եղեւ ի գին զրոցս. և տէր աստուած, որ առատն
287բ է ի տուրս բարեաց տա||ցէ ձեզ և մեզ զիւր երկնից արքայութիւնն, ամէն։*

*Այլ և աղաչեմ յիշել ի Քրիստոս ղանպիտան դծաւղս* Յովանէս, *և
զծնօղսն իմ զ*Յակոբ *քահանայ և զ*Սալչուկ, *և զհարազատ եղբարքն իմ
զ*Գրիգոր *սրբասնեալ կրօնաւոր և զ*Ներսէս *սարկաւագ, որ տարաժամ կե-
նօք փոխեցան և սուգ անմխիթար թողին մեզ, և Քրիստոսի փառք յաւի-
տեանս, ամէն։*

## 35

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երուսաղէմ 251,*
*Ն. Պողարյան, Մայր ցուցակ, Գ., էջ 20—31*

102ա *Թվ. ՋԱ. (1452)։*

*Զվերջին ստացօղ սուրբ Աւետարանիս զ*Սարգիս *վարդապետ* Հազա-
րենց Հերմոնավանից՝ *Արևելից, որ գնեցի զսուրբ Աւետարանս և եմիփո-
րոն մի ի գրաւէն, և եդի ինձ յիշատակ ի սուրբ Յակոբ ի* յԵրուսաղէմս: *Եւ
որ ոք յանդգնի՝ կամ գրաւ դնէ, կամ ծախէ և հանէ դըրանէ քրիստոսական
աթոռոյս, ինքն ջնջեսցի ի յիշատակութենէն Քրիստոսի աստուծոյ, և ան-
միտ գնողն, որ վասն ագահութեան գնէ կամ հանելոյ զսա ի դըրանէ սուրբ
աթոռոյս, իւր յիշատակն ջնջեսցի ի գրէն կենաց, իսկ թէ դնեսցէ և ոչ հան-
ցէ ի դըրանէ սորա՝ առցէ զպսակն կենաց, զի այն որ վասն տա-
նելոյ առնու՝ զհուրն աստուծոյ տանի ի տուն իւր, որ այրիչ է և կիզիչ։*

---

** Գ. Սրուանձտյանը տեղեկություն ունի այս նույն գյուղում («Մըզղաւք») 1452 թ. գրված մի Մաշտոցի մասին, որ պահվում էր Տիգրանակերտի ս. Սարգիս եկեղեցում (տե՛ս «Թորոս Աղբար» Բ., էջ 435)։*

## 36

## ԳԱՆՁԱՐԱՆ

*ՀՑՎ 529, ԲՑՎ 178*

Գրիչ՝ Յովանէս

*Փառք... որ ետ կարողութիւն մեղսամած անարժան գրչի* Յովանիսի *հասանել աւարտ Գանձարանիս յամի Ջ. և Ա. (1452) թըւականութեանս մերոյ, յարաց ամսոյ ի ԻԶ. (26), յաւուր երեքշաբթի, որ դրեցաւ ի խընդրոյ սրբբամիտ կրօնաւորի* Ստեփանոսի, *որ ըստացաւ զսա ի յարդար վաստակոց իւրոց, յիշատակ հոգւոյ իւրոյ և ծընողաց իւրոց...։*

## 37

## ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ ՍԱՄՈՒԷԼԻ ԱՆԵՑԻՈՅ, ԳԻՐՔ ՀԱՐՑՄԱՆՑ ԳՐԻԳՈՐ ՏԱԹԵՒԱՑԻՈՅ

*Երուսաղեմ 1198*

գրիչ՝ Դավիթ էրէց

*Առ որս աղերսեմ որ աւրինակէք դրեսջիք եւ զսակաւ յիշատակս մեր եւ դուք դրեսջիք ի դպրութիւն կենաց, ամէն։*

*Ջաւրինակի տըւաւղ զԱռաքել վարդապետն յիշեցէք ի տէր և զանպիտան գրիչս զԴաւիթ էրէցս։ Քանզի դրեցաւ սա ի թուականութեանս Հայոց՝ ի յինն հարիւր մէկն (1452), յամսեանն դեկտըմբերի ԻԹ. (29), աւուրն չորեքշաբաթի, յայտնութեան բարիկենդանն, ի դառն և ի նեղ ժամանակիս**։

* *Հիշատակարանի վերջում Դավիթ գրիչը շարադրել է 1450—1457 թթ. դեպքերի մասին շատ արժեքավոր մի ժամանակագրություն, որը հրատարակված է Վ. Հակոբյանի «Մանր ժամանակագրություններ» աշխատության 2-րդ հատորում (Երևան, 1956, էջ 210—212)։*





## 38

## ՅԱՅՍՄԱԻՈԻՐՔ

*Արղնի բերդի ս. Սարգիս եկեղեցի.*
*«Թորոս Աղբար» Բ, էջ 279—281*

*գրիչ՝* Դաւիթ եպիսկոպոս
*վայր՝* Խարբերդ

*Գրեցաւ ի թագաւորութեան եգիպտացւոց և յիշխանութեան* Սուլէյման *պակին, որ է ազգաւ Դուղատարցի։ Այս Գ. (3) տարի է, որ ի ձեռն Դուղարացուն* է բերդս և քաղաքս, և է հնազանդ Եգիպտոսի սուլդանաց և հարկատու, և ազնական միմեանց ի չարն և ի բարին։*

*Արդ, յայսմ ամի առաւ* Ստամբօլ *քաղաքն ի Հոռոմոց. գնացեալ ի վերայ թագաւորին որ կոչի Խոնդքար՝ ՇՃՌ. (500.000) ձիաւորաւք և հետևակաւք, նաւաւք. եւ Գ. (3) տարի բոլոր պատերազմեցաւ ընդ* Ըստամբօլայ: *Քանզի ֆռանկաց առաջնորդն, որ ասի Պապ թագաւոր, կոչեաց զպատրիարքն** Հոռոմոց որ ի Ստամբօլ էր և զթագաւորն Հոռոմոց որ անդ՝ վասն հաւատոյ հաստատութեան ի Հռովմ քաղաքի. եւ կեցեալ նոցա անդ տարի մի բոլոր առ թագաւորն Պապ՝ պատրիարքն և թագաւորն։*

*Իսկ յորժամ դարձեալ եկին նոքա* Ստամբալ, *իշխանացն Հոռոմոց կարծեալ էր թէ պատրիարքն և թագաւորն ի ֆռանգութիւն դարձան։ Իսկ նոքա բազում անգամ երդուեալ՝ և իշխանքն Հոռոմոց ոչ հաւատային. եւ ոխս պահեալ իշխանացն Հոռոմոց ընդ թագաւորին և պատրիարքին իւրեանց, և այլ ոչ միաբանեցան ընդ նոսա։ Որոյ ի ձեռն պատգամաբերաց և միջնորդաց իշխան մի հոռոմ* Կիտլիկէ *անուն, յղեաց առ թագաւորն Խոնդքարն ծածկաբար, թէ ես տամ զքաղաքս* Ստամբալ, *մի գնար այտի։ Եւ յաւուր միում, մինչդեռ պատերազմ խմբեալ կայր, և մեռան ի տաճկաց ՌՃ. (100.000)-էն ՇՌ. (5000) անձն ի կռիւ. իսկ ի Հոռոմոց մեռան ԺՌ. (10.000) անձինք։ Եւ իշխանն այն* Կիտլիկէ *բացեալ զմի դուռն քաղաքին... և մտեալ ազգն տաճկաց հանդերձ թագաւորաւն ի ներքս ի քաղաքն։ Իսկ պատրիարքն և թագաւորն... մտեալ ի նաւ մի մեծ, և բազում ժողովրդեամբ՝ իբրև ԻՌ. (20.000) արամբ՝ փախստական գնացին ի* Հռովմ, *և տարեալ զամենայն սրբութիւնս ի հետ իւրեանց, քանզի յառաջագոյն ամսով մի պատրաստեցան փախչիլ... Զի որպէս յաւուրս սրբոց Վարդանանց*

* *Հավանաբար ձեռագրում եղել է՝ «Դուլղատարցուն»։*
** *Տպված է, անշուշտ սխալմամբ՝ «զՊատրիարքաքան»։*

չար իշխանն Սիմեաց՝ ուրացեալն Վասակ եղև պատճառ և կորուստ աւերման աշխարհիս՝ Հայոց և ի կողմն ուրացեղոյն դարձաւ՝ նոյնպէս և պիղծն Կիւռիկէ ... հոռոմն, խոռն ի հաւատոց և անիծեալն յաստուծոյ...։

Ասասնաւոր ասացից պատմագրաբար դանցս աղետից ազգիս քրիստոնէից։ Ի թուականութեան հայոց ՊՂԹ. (1450) ելեալ սուլթանն Թաւրիզու Ջիհանշահ անուն, բազում և անթիւ զաւրաւք՝ ԿՌ. (60.000)-աւ, եկեալ էառ զՍզնկայն յազգէն Թուրքմանաց, որ էր աղգաւ Պայընաուր, և կալեալ զիշխանն Սզնկա քաղաքին, և Խ. (40) անուանի ամիրայ զհետ նորա. և տարեալ յԱրևելս կորուսին։ Եւ զԿամխայ աստուածաշէն երկիրն ևս հասարակ գերեաց՝ իբրև անձինս ԺՌ. (10.000), ընդ այր և ընդ կին, թող զայն որ մաշեցան։ Եւ զՆերֆին-Դերջանն և զՎերին-Դերջանն, զԲաբերդ, զԿեղի, զԿոհակն, և զԴայլ գետն, զՇիռեան, զՍատաղ՝ առ հասարակ գերեաց...։ Եւ գնացեալ նստան ի վերայ Ամթայ, և իվերայ Արղնու, և ի վերայ Սէրտընու, Ե. (5) տարի բոլոր։ Եւ յամեայն աւուր մարտնչէին և կռուէին ընդ նոսա։ Եւ իջեալ բնակիչքն բերդորէից՝ կոտորէին զԹշնամիս... և ինքեանք դարձեալ ի բերդն ամրանային։ Եւ հասեալ ի բարեկենդանեաց յետին շաբաթ աւրն, ի տանի սուրբ հայրապետացն, ելեալ գաղտագողի ի հեծելէն՝ որ յԱմթայ վրայ էր նստեալ, և շուրջ պատեցին զերկիրն Արղնու, մինչդեռ այգն դառաւատն չէր մերկացեալ, և Դ. (4) գեղ ի ծառայութիւն վարեցին, իբրև ՆԾ. (500) հոգիս, և սպանին անձինս Խ. (40), և դարձան ի բնակարանս իւրեանց։ Եւ դարձեալ ի ծառզարդարն հաշտեցան և արարին խաղաղութիւն ընդ միմեանս և ազատեցան գերեալքն Արղնու՝ Քրիստոսի շնորհաւք և ողորմութեամբ, և ոչինչ կարաց առնել կամ զԱրղնի, կամ զԱմիթ, կամ զՄէրաին, այլ դարձաւ յաշխարհ իւր...։

Արդ, ես՝ Դաւիթ եպիսկոպոս, աղաչեմ... յիշեսջիք... զիս...։ Ի թվին ՋԲ. (1453), գրեալ ի Խարբերդ։

39

### ՈՂԲ ՄԱՅՐԱՔԱՂԱՔԻՆ ԸՍՏԱՄԲՕԼՈՒ, ԱՌԱՔԵԼԻ ԲԱՂԻՇԵՑԻՈՅ

Նրևան 8968

Հեղինակ՝ Առաքել Բաղիշեցի

123բ Յիհն հարիւր 'ւ երկու թըւին
Հայաստանեաց մեծ տումարին (1453),
Որ զԸսպըմբօլ քաղաքն առին
Եւ զքրիստոնեայս կոտորեցին.
Ես Առաքել մեղօք իլի
Լըցեալ չարեօք աղտեղադին
Յարմարեցի զողբըս բանի
Բուզանդիոյ մեծ քաղաքին,
124ա Կոստանդինուպօլիս կոչեալ՝
Անուամբ մեծի թագաւորին,
Այն որ հրեշտակք կանկնած կային
Եւ զգուշութեամբ ծառայէին։

*Ես անարժանս ամենայնի,*
*Որ վարդապետ անունս կոչի*
*Այլ ի գործոց խիստ եմ հեռի,*
*Անմիտ, յիմար և փանաքի,*
*Յարմառեցի ղրանս ի կարգի*
*Ինձ յիշատակ ի յաշխարհի։*
*Զի որք երգոյս այս հանդիպի*
*Զիս յիշեսցէ կամօք բարի,*
*Եւ ասասցեն տէր ողորմի*
*Ինձ՝ բազմամեղ* Առաքելի,
*Որ զայս բաներս ի շար եդի՝*
*Ողբանք Կոստանդինուպօլսի։*
124բ *Այլ և ծնողաց իմոց բարի,*
Ղուքլու-Մէլիք *և* Ներսէսի,
*Որ զառածեալս մեղաց գերի*
*Ծնան զաւակ ողորմելի։*
*Եւ բարունոյն իմ* Գրիգորի,
*Որ մականուն* Ծերենց *կոչի՝*
*Նահատակին այն ցանկալի*
*Եւ քաջաբան վարդապետի,*
*Եւ զաւակին իմ բաղձալի*
*Տէր* Յովհաննէս *քահանայի,*
*Որ ի հասակ մանկագունի*
*Փոխեալ յաշխարհըն կենդանի։*
*Եւ* Յակովբա *կարգաւորին*
Նաղաշ *ոսկող քարտուղարին,*
*Որ զերգ բանիս, զոր ասացի*
*Նա գըծագրեաց ի քարտիզի։*
125ա *Եւ երգողին սիրով սրտի,*
*Եւ լսօղին կամօք բարի,*
*Եւ որ փոխէ զբանս ողբալի,*
*Եւ որ յիշէ զոր գրեցի...։*

40

## *ՈՏԱՆԱՒՈՐ Ի ՎԵՐԱՅ ԿՈՍՏԱՆԴԻՆՈՒՊԱՒԼՍԻՆ, ՅՈՐԺԱՄ ԷԱՌ ՕՍՄԱՆՑԻՆ, ՅԱԲՐԱՀԱՄԷ ԱՆԿԻՒՐԱՑՒՈՅ*

*Երևան 3081*

*...Ես* Աբրահամ *մեղաւք լըցեալ*
*Բազում ցաւաւք զողըս յաւրինեալ,*
*Քանզի զԿոնստանդինուպաւլիսն*
*Ի բարուց թեան ժամն եմ տեսեալ,*
*Երեք ամիս անդէն կացեալ*
*Եւ զսրբութիւնսն ուխտ արարեալ,*
*Ըզպատմուճանըն Քրիստոսի*

*Բազում անդամ աշաւք տեսեալ՝*
*Զձեզ աղաչեմ յոյժ աղերսեալ,*
*Որք հանդիպիք զողբս ընթերցեալ,*
*Թէ գըտանէք ի սմայ սըղալ*
*Ներումն առնել՝ ոչ մեղադրեալ**։

## 41

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Փիրդ. Նօտ. 172, Մշոյ ս. Յովհաննու վանք*

գրիչ
*վայր՝* Մո՞ւշ

*Ի թվին Հայոց ՋԲ. (1453) աւարտեցաւ սուրբ Աւետարանս ըձդ հովանեաւ սուրբ առաքելոցս Ծղիազարու վանուցս, ի հայրապետութեան տեառն* Գրիգորի *և յառաշնորդութիւն սուրբ ուխտիս տէր* Պօղոսի *և տէր* Կարապետի, *ի սովալլուկ տարին, որ սովն պատեալ էր զամենայն մարդ՝ ի մեծէ մինչև ի փոքր. որ չէ յիշելոյ զայն։*

## 42

## ԳԱՆՁԱՐԱՆ

*Բոդլեան գրատուն* Ms. Arm. E. 18 *(Մատենադարան «Անհատական արխիվներ», թղթ. 120, էջ 1188—1189)*

*գրիչ՝* Մելքիսեթ
*վայր՝* Ավան գիւղ

264ա— *... Արդ, գրեցաւ աստուածաբուխ և շնորհածաւալ Գանձարանս ի գիւղս*
265բ *որ կոչի* Ավան, *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, ձեռամբ ամենամեղ և փըծուն սուտանուն* Մելքիսեթ *գրչի, ի թվականութեանս Հայոց ՋԲ. (1453), ի հայրապետութեան տէր* Գրիգորոյ, *և ի ղանութեանն՛ տաճկաց* Ջհանշահի: *Որ յայսմ ամի մորեխ եբէկ և շատ աւերք էած ի տեղիս տեղիս. զոր և յուսամք ի տէր աստուած ամենայնի, որ ողորմի իւր արարածոց և բառնայ զամենայն պատուհաս ի յաշխարհէ։*

*Այլ ես՝ մեղուցեալ և անպիտան* Մելքիսեթ *էրէցս գրեցի զաստուածաշունչ Գանձտետրս ցաւագին անձամբ և վշտալից մարմնով ի յանցանս աշխարհի, վասն յիշատակ[ի] հոգոյ իմոյ, և ծնօղաց իմոց՝ հաւրն* Ֆախրկան *և մաւրն* Նուրջհանին, *և եղբաւրն* Յովանիսին, *և* Այաինին, *որ այս տարի փոխեցաւ առ Քրիստոս և մեք բեկեալ սրտիւ մնացաք, զոր ողորմած և մարդասէրն աստուած ողորմի և թողցէ զամենայն յանցանս նորա և արժանի արասցէ զնա երկնից արքայութեանն, ամէն, և քվերացն՝* Թուխտարին *և* Խոշաֆին, *և որդոցն* Գալուստ *քահանային, և* Ղազարին, Անդրէասին, *և նորատունկ պատանեական* Տիրագրին, *որ եաւթնամսեայ որբ մնաց ի մաւրէ, և դստերն* Անթառանին, *և որդոյ նորին՝* Նորայբող-

* *Ողբն սկսվում է «Ցինն հարիւր ՚և երկու թըւին, զառն և ի վատ ժամանակին» տողերով։*

բոջ Նէֆամայդինին, և հաւրն իւրոյ Աստուածապալին: Այլ և յիշեցէք մի-ով տէր ողորմայիւ զՄարգարայ աբեղի մայրն, որ մէկ դաստայ թուխտ գրոցս ագնութիւն էրետ։ Ի յոստ ձեր անկեալ աղաչեմ, ո՛վ սուրբ քահա-նայք, յորժամ եղանակէք կամ աւրինակէք, կամ մեղեդի և տաղ ուսանիք, յիշեցէք և ողորմի ասէք ուղիղ սրտիւ Մելքիսէդ գծողի և նորակնունք Մելքիսեթ ծաղկողի, որ է այս առաջին ծաղիկն, զի կարող է աստուած ի ձեռն այլում՝ ողորմութիւն շնորհել. և ինքն որ առատ է ի տուրս բարեաց ձեզ՝ յիշողացդ և մեզ՝ յիշատակելոցս, առ հասարակ, ողորմեսցի ի հան-դերձեալն, ամէն։

Այլ և աղաչեմ զամենեսեանդ յիշեցէք զծնաւղսն մեր և զկենակիցն՝ ըզխոնծէն, որ կարճաւրեայ հանդեաւ ի Քրիստոս և եթող մեզ խոց՝ զա-ւակաց իւրոց։

43

ԱՒԵՏԱՐԱՆ

«Թորոս Աղբար», Բ., էջ 385, Ջմշկածագ

գրիչ՝ Յովսէփ
վայր՝ Ականց գիւղաքաղաք

... Աւարտեցաւ սուրբ Աւետարանս ... թուականիս Հայոց ՋԲ. (1453) ամին, գաւառիս Քաջբերունեաց, ի գեղնաքաղաքն Ականց, որ է հիւսիսոյ կողմանէն Արճիշոյ, ընդ հովանեաւ սուրբ առաքելոյն Թադէոսի և այլ բազում եկեղեցեացս որ աստ են. ի հայրապետութեան տէր Գրիգորի, ի թագաւորութեան Ջհանշահ էմիրզին, որ զբոլոր աշխարհս ձեռբակալ ունի ի ձեռին իւրում...։ Աստուած-ողորմի ասասջէք ստացողի սուրբ Աւե-տարանիս Վալաթին, և ծնողաց նորին Դանիէլին, և մաւր նորին էվին, և գծողիս Յովսէփայ...:

44

ԱՒԵՏԱՐԱՆ

Փերգ. Նօա. 171—172 և 173, Վան, Տիրամայր եկեղեցի

գրիչ՝ Վարդան
վայր՝ Վան

ա

... Արդ այսմ գանձիս ցանկացաւ աստուածասէր կին Մելիք-խաթուն, և ետ գրել զսա յիշատակ բարի հոգւոյ իւրոյ, և ծնողաց իւրոց՝ հօրն Ստեփաննոս քահանային և մօրն Աղութ-խաթունին, և առն իւրում՝ Աղ-նաւուրին, և որդւոյն Խոջնամին...:

[Յիշեցէք] անյիշելիս ի գրչաց՝ սուտանուն քահանայ Վարդան, և ... զիմ ծնողքն՝ զհայրն իմ զՅովանէս քահանայն և զմայրն իմ զՋըմ-րութ, և զեղբայրն իմ զԿարապետ քահանայն՝ զուսուցիչն և զերախ-տաւորն մեր, որ նահատակեցին յԱրճէշ քաղաքի, և զայլ եղբայրքն իմ,

և զորդեակն իմ զՆիկողայոս սարկաւագն, որ աշխատեցաւ ի կոկել Թըղ-Թին։

Բ

... Սոտանոմ քահանայ Վարդան աշխարհի երէց... կատարեցի ի քաղաքս որ կոչի Վան, ընդ հովանեաւ սրբուհւոյ Աստուածածնին ...ի ՋԲ. (1453), ի հայրապետութեան տեառն Գրիգորի.. և ի Թագաւորութեան Ջհանշայ իմիրզին, որ յայսմ ամս գնաց ի Պարս՝ ի պատերազմ, էառ զտունն Խորասանայ, որոյ տէր աստուած իւրն հաչողութիւն տայ, ամէն։ Ի խնդրոյ Մելիք-Խաթունին:

45

ՄԱՇՏՈՑ

Երուսաղէմ 2290

գրիչ՝ Յովանէս
վայր՝ Վարագ

Գրեցաւ ի ՋԲ. Թվ. Հայոց (1453), յանապատիս որ կոչի Վարագ, ի հայրապետութեան տեառն Յովանիսի, ի յաշխարհակալութեան Ջխանշայ ղանին, նշանաւոր տարի, որ դՋաղաթի տեղիքն կալաւ՝ զՇիրազ և զԱսպահան և զայլ քաղաքնին, ձեռամբ Յովանէս վարդապետի,, որդի Սիոնի և Շնանաւորի:

46

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 5001

գրիչ՝ Վարդան
վայր՝ Վան

Արդ, զայս պատուական ակս շափիւղայ... առեալ բարեպաշտ մուղդասի Շախփաշէն և արար պաշար յաւիտենական ճանապարհին, որ տանի առ հանդերձեալ դատաստանն աստուծոյ՝ յիշատակ բարի հոգոյ
307ա իւրոյ և ծնօղ||ացն՝ հաւրն Ամիրբէկին, և մաւրն Սայմէլէքին, և եղբաւրն Թայիփայ մուղդասուն, և քուրոջն Շանոււզին, և դստերն Դանա-Խաթունին, և քեռոյորդոյ էմնադնին և Շաճրիարին, և կենակցին զէդիլ-Փաշին, և զաւակացն՝ Կարապետին, Մէլքէսէթին և Մուրադին, և միւս Կարապետին և այլ ազգայոցն, որ ետ նորոգել զսուրբ Աւետարանս. յետ գողանալյն, որոյ տէր աստուած զերկնից արքայութիւնն իւրն տացէ և իւր ն[ն]ջեցելոցն, ամէն։

Եւ արդ, ես՝ մեղապարտ գծողս Վարդան քահանայ, գրեցի զԱւետարանս ի քաղաքս որ կոչի Վան, ընդ հովանաւ սուրբ Աստուածածնին և սուրբ Վարդանա զաւրավարիս, ի Թըւականութեանս Հայոց ՋԲ. (1453), ի հայրապետութեան տեառն Գրիգորի Հայոց կաթողիկոսի, և մերոյ աթոռա-

կալի սուրբ ուխտիս Վարագայ տէր Յովանիսի, և ի թագաւորութեանն Ջհանշայ իմիրղին։

Արդ, աղաչեմ զամենեսեան որք հանդիպիք սմա՝ բոլոր հաւատով աստուած-ողորմի ասացէք մղդասի Շահ-Փաշին և իւր ննջեցելոցն, և ինձ՝ մեղապարտ գրչիս Վարդանայ, և իմ ծնողացն՝ Յովանէս քահանային և Զմրութին, և որդոյն իմոյ Նիկողաոսի, որ աշխատեցաւ ի կոկել թղթին, և միւս որդոյն Յովանիսին, և Գրիգորին, և ձեզ՝ լսողացդ և կարգացողացդ, առ հասարակ, ողորմեսցի, և նմա փառք յաւիտեանս, ամէն*։

## 47

## ՃԱՌԸՆՏԻՐ

**Երևան 3791**

կազմող՝ Վարդան
վայր՝ Սղգայոյ վանF

584բ ... Աղաչեմ զձեզ, ո՜վ սուրբ ընթերցողք, յիշել ի մաքրափայլ աղաւթս ձեր ղբարէպաշտ տանուտէր զԹումա, որ վերըստին կազմել ետուր զգիրքս յիշատակ հոգւոյ իւրոյ, և ծնողաց իւրոց՝ հաւրն իւրո Մարտիրոսին և մաւրն իւրոյ Թամթաին, և կենակ[ց]ին իւր Կուխաշին, և ամենայն արեան մերձաւորացն, և որ զամէն ասեն և նոցա ողոր[մ]ի Քրիստոս աստուած ամէն։

Ես Յովանէս, որ զԹումէն ինձ որդէգիր էրի, որ զգիրքս կազ[մ]ել ետուր, և յանձնեցի զգիրքս ի Թումէն, որ խնամք տանու և լաւ տիրութիւն առնէ, և այլ ոչ ում իշխանութիւն չկա ի վեր գրոցս՝ Թումին անցել, որ ինձ հոգւոյ որդի եմ էրել, թէ ինքն՝ Թումէն իմ գրոցն խնամք տանու՝ աստուած ւիրն ողորմի, ամէն։

Կազմեցաւ ի թվ. ՋԲ. (1453), ի վանքս Սղfաո, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, ի յառաջնորդութեան հեզահոգի կրաւնաւորին Մխիթա[րայ], զի բազում աշխատութեամբ ծառայէր մեզ ի պէտս մեր, զոր փոխարէն յաստուծոյ առնու, [ա]մէն։ Եւ ինձ մեղապարտի՝ Վարդան անուն մեղսասիրի, և ծնողացն ամենայնի, կազմողի սուրբ դրոցս Քրիստոս աստուած ողորմեսց[ի], և նմա փառք յաւիտեանս, ամէն**։

---

* Ձեռագրի մեջ կան երկու անթվական հիշատակագրություններ, որոնք ըստ հնագրական տվյալների կամ ԺԵ. դարի վերջից են, կամ ԺԶ. դարից, դրանք են.

ա՝ «Դարձեալ յիշեցէք ի մաք[ր]ափայլ աղաւթս ձեր զՔարիմն և զհայրն իւր զԱմիրխան և զմայրն իւր զԽախաթուն, զեղբայրն իւր զԿարայսեթն. որ զսուրբ Վարդանայ կառաւակն (՞) դերի տարան ի Հիզան, սայ գնաց ու ազատեց ու եբեր ի յիւր տեղիս, որոյ տէր աստուած զերկնից արքայութիւն իւր տացէ և իւր ծնաւղաց, ամէն» (էջ 305ա)։

բ) «Դարձեալ, յիշեցէք ի սուրբ և մայք[ր]այփայլ յաղօթս ձեր հաւատարիմ տանուտէրն զՄիրայիլն, և զհայրն իւր զՀայ[ր]ապետն, և զմայրն իւր զԳուխտարն և զորդին զՄուրատն, որ Վարդանայ ոխվերու հարճ[եւն] /՛/ ցոյց, տէր աստուած զերկնից արքայութիւն իւր և իւր ննջեցելոցն, ամէն» (էջ 307բ)։

** Ձեռագիրը գրված է կազմելուց շատ առաջ, հավանաբար ԺԴ. դարի վերջերին։ Գրիչը գրեթե բոլոր ճառերից հետո թողել է սեղմ հիշատակագրություններ, որոնցից մեկը տալիս ենք ստորև.

«Քրիստոս աստուած, քո սուրբ ծնօղիդ բարեխօսութեամբ ողորմեա ամենայն հաւա-

## 48

### ՔԱՐՈԶԳԻՐՔ

Երևան 4013 (Ղ. Փիրղ., Նշխարք պամ. Հայոց, Բ.)

ՋԲ. (1453)։

Գրեցաւ Վարագեցի Յովհաննէս աբեղայէ և աշակերտէ, Քրիստոս լուսաւորէ զիւր հոգին և զձերն։

## 49

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 5513

գրիչ՝ Ստեփաննոս

142բ Ո՜վ բարեսէր ընթերցողք և լսողք հանդիպեալք սմա, յիշեսջիք յերկնագնաց յաղաւթս ձեր զստացող սուրբ Աւետարանիս զԽաչատուրն, և ըզծնօղքն իւր՝ զԿիրակոս և զԽելօf, և զկենակիցն զԱրուս-խաթուն, և զորդիքն զՅովանէս և զՍադաղայ, և զդստերքն՝ զՀայ-խաթուն և զՀալիմ-խաթուն, և զեղբարքն զՄարտիրոս, և զորդին զԱբդլմսեհ, և զազգն ամենայն, և աստուած-ողորմի ասացէք ի ժամ սոսկալի և սուրբ պատարագին, զի և ձեզ լիցի թողութիւն ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

Ընդ նոսին և զմեղուցեալ Ստեփաննոս գրիչս, և զիմ ծնօղքն, և զեղբարքն յիշման արժանի արնէք միով տէր-ողորմիւ և քեզ փառք յաւիտեանս, ամէն։

ՋԲ. (1453) թվին էր դրեալ սուրբ Աւետարանս*։

## 50

### ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ

Սեբաստիա, ս. Նշան 2,
ՀԱ, 1923, սյուն. 71

կազմել տվող
վայր՝ Սեբաստիոյ գաւառ

606 Ի թուականիս Հայոց յինն հարիւր և յԲ. (1453), ի դառն և դժնեայ ժամանակիս, յորում տարաբերեալ ծփիմք պանդխտութեամբ, պատահեալ մեր ի գաւառս Սեբաստիոյ, ի սուրբ անապատս սրբոյ Հրեշտակա-

---

տացելոց քրիստոնէից, ես առաւել ստացողի սուրբ գրոցս Ցովաննիսին, և ծնողաց նորին՝ Էվատշին և Շամշա-խաթունին, և կենակցին իւրոյ Աւագուհոյն, և նորին ծնօղացն Նիկողայոսին և Շամար-խաթունին, և եղբօրն Ստեփանոսին, որ յանօրինաց մարտիրոսացաւ։ Ընդ նոսին և մեղապարտ գծողիս Կարապ[ետիս], և իմ ծնօղացն Ստեփանոս քահանային և Մինային, և կարդացողացս և լսօղացդ, ամէնչ։

* Վերջին տողը գրված է այլ՝ ԺԷ. գարի ձեռագրով, ըստ երևույթին գլխավոր հիշատակարանի հիման վրա, որից այժմ պահպանվել է մի այլ սկզբի՝ «Փառքի» մասը։ Այստեղ բերված հիշատակագրությունների նման երկու այլ հիշատակագրություններ էլ կան ձեռագրում՝ Մատթեոսի և Ղուկասի ավետարանների վերջում։

պետաց ես Նուաստ /// տեսեալ զաստուածաշունչ գիրս զայս հնացեալ /// և անփոյթ ընկեալ. եւ կազմել ետու աշակերտին իմոյ Կիւրեղ սրբազան կրօնաւորի։

Արդ, աղաչեմ պատահեալքդ յիշել /// որ և ձեզ լիցի մասն բարեաց*։

---

* Մ. Տեր-Մովսիսյանի ցուցակում տեղեկություն կա նաև Լենինականում եղած 1453 թվականի մի Շարակնոցի մասին, որը գրել է Յոհաննէս. ի Հոգեաց վանք, ստացել է Աստուածատուր քահանայ, ունի պատմական հիշատակարան Զաքարիա կաթողիկոսի և Ջանանշահի մասին, հիշվում է նաև Գէորգ կաթողիկոս Էջմիածնին։



**ՋԳ** **1454**

**51**

## *ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԿԱԹՈՂԻԿԷԻՑ ԹՂԹՈՑ*

*Փիրղ. Նոտ. 174–176, Լիմ կղզի*

*գրիչ*՝ Իգնատիոս
*վայր*՝ Սուխարայ վանք

*... Սմա ցանկացաւ այրն ոմն կուսակրօն աբեղայ և մաքրամիտ կրօնաւոր* Կիրակոս *անուն ... և ետ գրել ...* Իգնատիոսի *անարժան աբեղայի... ։*

*Եւ արդ, յանգ եղեալ կատարեցաւ սա ի թուականութեանս Հայոց ՋԳ. (1454) ամին, ի հայրապետութեան տեառն տէր* Գրիգորի *ընդհանուրի Հայոց կաթուղիկոսի և տեղապահի սրբոյն Գրիգոր մեր լուսաւորչի, և մերոյս նահանգի տեառն* Զաքարիայի *Աղթամարայ վերադիտողի, ի գաւառիս* Քաջբերունի, *ի վանս* Սուխարայ, *որ այժմ* Խառաքաստայ *վանք վերաձայնի, ընդ հովանեաւ հոյակապ բարձրաշէն և պայծառաշէն գմբեդարգ և հրաշագեղ սուրբ տաճարիս, որ յանուն ամենասուրբ Աստուածածնին կառուցեալ կայ, յառաջնորդութիւն սուրբ ուխտիս, առ ոտս երշանիկ և հեզահոգի վարդապետի՝ ամենագով և հանճարեղ, իմաստուն և արդիմաւոր* Կարապետ *րաբունապետի։*

*Արդ, գրեցաւ սա ի վերայ ասացեալ սուրբ ուխտիս, և վասն վրդովման և տատանեալ դառն ժամանակիս, ի յահէ թշնամեաց փախեան երկիր, և ոմանք ամրացան յանառիկ կղզիս* Լիմն *կոչեցեալ, և շատք ցրուեցան յերկիր* Ամկու, *և վասն ծովացեալ մեղաց մերոց անկան ի ձեռս հեծելի՝ թալանեցան, կողոպտեցան, շատ ոք սպանան... և ղանբաւ կոծս և զսուգս և զաղիողորմ շիւան լալոցն ով կարէ պատմել և կամ ընդ գրով արկանել։ Եւ որք որ մտաք ի* Լիմս՝ *բազում սովով և պանդխտութեամբ տառապեցաք։ Եւ աստ գրեցաւ կէս գրոցս, և վճարեցաւ ընդ հովանեաւ սուրբ գեղեցկաշէն և զարդարեալ բարեձևութեամբ և բարձրակառոյց շինութեամբ և հրաշագործ սուրբ տաճարիս, որ յանուն սրբոյն Գէորգայ զօրեղ վկային կառուցեալ կայ ...։*

*Յիշեցէք սրտի մտօք զվերաասացեալ ստացող լուսազարդ սուրբ գրոցս՝ զ*Կիրակոս *հեզահոգի աբեղայն, և զծնողսն և զեղբարսն իւր, որ ստացաւ ի հալալ և ի քրտնաջան վաստակոց իւրոց՝ բարի յիշատակ իւր և իւրոցն ամենայնի, և ընծայեաց* Վարագայ *սուրբ հրաշագործ և աստուածընկալ սուրբ Նշանին, ի դրունս եօթնասիւն լուսոյ, որ է հրեշտակաբնակ տեղի և աստուածունակ անապատ, որք են անդ հաւաքեալ այժմ բազմութիւն անձանց կրօնաւորաց։ Արդ, ես՝* Կիրակոս *աբեղայս՝ յերես անկեալ պա-*

ղատիմ կողկողագին և յորդաբուղխ արտասուօք, որք հանդիպիք այսմ աստուածային բուրաստանիս յիշեցէք ... ինձ և հարց և եղբարց իմոց, նաև հոգևոր հարց և եղբարց իմոց՝ Յոհաննէս եպիսկոպոսին, և Զաքարիա վարդապետին, Յոհաննէս կրօնաւորին, հերպետ Հայրապետին, Մելքիսէթ կրօնաւորին, Թադէոս ճգնաւորին, Ահարոնին, Կարապետին, միւս Կարապետին, Ատոմին, Դաւթին, Մկրտչին, միւս Մկրտչին, Գրիգորին, Կարապետին, մահտասի Յովաննէսին, Սուքիասին, Ստեփաննոսին, և միւս Ստեփաննոսին և Յակոբ միակեցին։ Զի սոքա ամենեքեան հայրախնամ գթով և հոգևոր սիրով զմեզ խրատեալ են, վարձահատոյց լիցի սոցա Քրիստոս աստուած և փրկէ յամենայն յորոգայթից հոգւոյ և մարմնոյ, և պահեսցէ զսոսա տէր աստուած բարեօք և սուրբ կենօք յայսմ աշխարհիս, և յետ աստեացս ելանելոյ զտէր Յոհաննէս եպիսկոպոսն ընդ սուրբ հայրապետացն դասեսցէ, և զԶաքարիա վարդապետն ընդ սուրբ վարդապետաց դասակից և պսակակից արասցէ, և զհերպետն՝ հանդերձ միեղէն կրօնաւորօքն իւր՝ սուրբ տեսոյն և լուսոյն արժանի արասցէ, ծնօղօք հանդերձ, ամէն, եղիցի և եղիցի։

Զանարժան գծողս Իգնատիոս աբեղայս աղաչեմ յիշել ի տէր...։

52

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 6570

գրիչ՝ Յովանէս Մանկասարենց
վայր՝ Քաջբերունոյ երկիր

ա

287ա ... Ընկալաւ զսա մեծաւ ըղձմամբ պատարագօղն Քրիստոսի, սուրբ կրաւնաւորն Վարդան* ի փրկութիւն հոգւոյ իւրոյ, ի յիշատակ իւրն, և ծնաւղաց իւրոց՝ հաւրն Էւատշին և մաւրն Այխաթունին, և եղբօրն Իստակիսին, և հաւրեղբարցն Արմանշին և Գրիգորին, և հաւրքւերն Սանդուխտին, և որդոյն Ղազարին՝ գնացելոյն առ աստուած, և հօրեղբաւրորդոցն՝ Առաքելին, Կիրակոսին և Խալիֆին, և մեծ պապերոյն՝ Ներսէս քահանային և Կիրակոսին և Գրիգոր քահանային, և երախտաւոր մարցն՝ Խութուշին և [Սա՞]լչուկին և Եղիսաբեթին, և մօրքւերն՝ Ուլունին:

287բ Արդ, ես՝ անարժանս ի գիրս գրչութեան՝ մեղաւք զառածեալս Յովանէս միայն անուամբ քահանայ և ոչ ունելով համարձակութիւն հպիլ ի սուրբ Աւետարանս, բայց ապաւինեցայ ի մարդասէրն և ի ներաւղն աստուած և վասն աղաչանաց և սիրոյ եղբաւրս մեր Վարդան կրաւնաւորի սկսայ զսուրբ աւետաբեր Աւետարանս Քրիստոսի և ողորմութեամբ նորին աւարտեցի ի մեծ թուականութեանս Հայոց ՋԳ. (1454) ամին, յառաջնորդութիւն երկրիս Քաջբերունոյ մեծ րաբունապետի և քաջ վարժապետի Կարապետ վարդապետի, և ի հայրապետութիւն մեծ ա[թո՞ռոյն] սուրբ Էջմիածնի տէր Գրիգորի, և ի զաւնութիւն արենարբու բռնաւորին Ջհանշայի, որ գնաց բռնութեամբ և էառ զՇիրազ և զԻսպահան և զայլ բազում

* Այս էջում՝ «զտէր Վարդան ստացող սուրբ Աւետարանիս» մակագրությամբ նկարված է ստացողը։

քաղաքս և զբերդորայս յաշխարհէն շաղաթային։ Բայց մեք կամք ի յահ և ի փախ, զի ղալրքն Ուզուն-Հասանի հանապազ կու գերեն զմեզ և թալանեն։ Ի յայսմ տառապանս կալով գրեցի զսուրբ Աւետարանս ի քաղաքիս Արնէշ կոչեցեալ և ի կղզիս, որ կոչի Լիմն: Վասն որոյ աղաչեմ զծառայքդ աստուծոյ, զի աստուած-ողորմի ասէք || /// գրչիս, և /// ծնաւ]-
288բ ղացն՝ հօրն Մանկասարին և մօրն Փաշայ-Մէլէքին, և ուսուցչին մեր, և խնամ տանօղացն, ամէն։

Արդ, որք վայելէք զսուրբ Աւետարանս կարդալով կամ աւրինակելով, լիակատար սրտիւ աստուած-ողորմի ասացէք Վարդան մաքուր կրամաւորին, և ծնաւղաց նորին Էւատշին և Այխաթունին, և եղբարցն Ռստակիսին և Պաւականին՝ գնացելոցն ի փառս աստուծոյ, և հօրքըւերն Սանդուխտին և Արուս-Խաթունին, և բարի կնոջն Շարաֆ-Խաթունին, և մօրքըւերն Ուսլունին, և դստերն Ալամշին, և քեռու որդոցն Կարապետին և Յովանիսին, և Շարմէլէքին, և Խաչատուն, և Մարթային, և Ստեփանոսին, և ամենայն երախտաւորացն և ուսուցչացն՝ հոգեւորացն և մարմնաւորացն, և ամենայնարեան մերձաւորացն՝ կենդանեաց և հանգուցելոց, զոր գրեցաք և զոր մնացին, լի բերանով աստուած-ողորմի ասացէք, և Քրիստոս աստուած ձեզ տացէ զիւր առատ ողորմութիւնն, ամէն։


Նկ. 1. Վարդան ստացողի պատկերը № 6570 ձեռագրի 11ր էջից
(Նկարիչ Մինաս)

Բ

224բ Աւա՜խ դառնութեան աւուրցս և վա՜յ կենաց մերոց, որ յամէն օր ժ. (10) անգամ կու մեռանիմ յահէ սպանման և դողալով կու գրեմ։

Գ

նկարիչ՝ Մինաս

13ա ԶՄինաս զեղկելի նկարողս եւ ծնողսն իմ յիշե[ցէք աղաչեմ ի] Քրիստոս///*

53
## ԱԻԾՏԱՐԱՆ
Երևան 6653

Ա

գրիչ՝ Յովանէս
վայր՝ ի վանս Բազենից

... Որոյ ցանկացող եղեալ երջանիկ և սրբասնեալ և բարեմիտ տա-
275բ նուտէրն Ստեփաննոս և ջանաց ստանալ զանառիկ փարթամութիւնս և ||

* Նկարիչ Մինասի այս հիշատակագրությունը գրված է «հոգեգալստյան» նկարի տակ։ Մինասը վարպետ նկարիչ է, հատկապես ուշագրավ է 22ա էջի աջ և ստորին լուսանցքների վրա նրա նկարած Քրիստոսի ծնունդը (տե՛ս էջ 42)։



*Նկ. [illegible]. Մի դրվագ Մոգերի երկրպագությունը պատկերող նկարից*
*(Նկարիչ Մինաս)*

*զգանձս անկողոպտելի ի վայելումն անձին իւրոյ և յիշատակ բարի Հոգւոյ իւրոյ, և ծնաւղաց իւրոց*, ևս առաւել ամուսնոյ իւրոյ* Ոսկու-Խաթունին, *և զաւակաց իւրոց՝* Յակոբին, Աբրահամուն *և* Մուրատին, *և քըւերն* Բուլղանին, *և Մուրատի կենակցին* Ասլ-Մելեքին, *յիշելով զասացեալն, թէ երանի, որ ունիցի զաւակ ի Սիոն և ընդանեակք յԵրուսաղէմ, և ստացաւ զսա ի հալալ վաստակոց իւրոց յիշատակ իւրն և ծնաւղացն և զաւակաց իւրոց վերոյ ասացելոցն։ Եւ ես՝ յետնեալս յամենայնի և զառածեալս մեղաւք* Յովանէս *սուտանուն գծաւղ տեսի զեռափափագ սէր և զջան սրբասնեալ կրաւնաւորին* Սարգսի, *զոր ունէր հետ սուրբ Աւետարանիս, և ձեռն արկեալ գրեցի զսուրբ Աւետարանս ի վանս* Բազենից, *ընդ հովանեաւ ամենամաքուր սուրբ Աստուածածնին և սուրբ էջմիածնիս, ի հայրապետութեան տեառն* Զաքարիայի, *և ի թագաւորութեան* Ջհանշա-
276ա յի՝ *որդոյ* Ղարա-Ոսուֆի: || *Ի թուականիս մերում ՋԳ. (1454) ամի յորում ժամանակի յոյժ ճշդիւ հարկապահանջութեամբ տառապի ազգս Հայոց ի ձեռն չար բռնակալացն թուրքաց։*

*Արդ,, որք հանդիպիք սուրբ Աւետարանիս յիշեցէք ի Քրիստոս ըղըտացող սուրբ Աւետարանիս* զՍտեփաննոս *բարեմիտ քրիստոնեայն, և զծնաւղսն իւր, և զզաւակսն իւր, և զամենայն արեան մերձաւորսն՝ զկենդանիս և զհանգուցեալսն և լի բերանով և ուղիղ սրտիւ աստուած-ողորմի*

** Երկու տող անգրել է թողնված, ստացողի ծնողների անունները լրացնելու համար։*

ասացէք, և աստուած յիշողացդ ողորմեսցի յիւր միւսանգամ գալուստն, ամէն"։

Բ

նկարիչ՝ Մինաս

11բ ԶՄինաս մեղաւք մեռեալ ոգին՝ զնկարողս յիշեցէք ի բարին Քրիստոս։

54

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 6509

գրիչ՝ Հէրապետ
վայր՝ Լիմն անապատ

256բ ...[Ո]ւստի և տեսեալ զսորա անճառ փրկագործութեան խորհուրդ [հաւատարիմ և երկիւղած բարեպաշտ և աստուածասէր տանուտէրն Մկրտոն և Մարտիրոս]**, և ստացաւ զսուրբ Աւետարանս յիշատակ իւր, և ծնաւղաց իւրոց՝ [հաւրն Մարգարին և մաւրն Մինա-խաթունին]**։

Եւ արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի յանապատս, որ կոչի Լիմն, ընդ հովանեաւ սուրբ Գէորգեայ զաւրավարին, ի թուականիս Հայոց ՋԳ. (1454) ամին, ձեռամբ անարժան և յոգնամեղ փծուն գրչի սուտանուն Հէրապետի: Այլ ըստ բազում հայցման և պատկառանաց [քրիստոսասէր և բարի Մարտիրոսին] ձեռն ի գործ արկի տխեղծ մատամբ և մեղաւոր անձամբ գրեցի անարժան ձեռաւք իմովք։ Արդ, որք ճաշակէք յաստուածային բուրաստանէս և յամենալի սեղանոյս ընթերցմամբ կամ գաղափար առնելով և կամ հարեւ[անցի]///***

---

* 279բ էջի վրա կա 1589 թ. մի հետաքրքրական համաձայնագիր, ահա այն. «Ես, Ղարայղաւզս իմ իզ[ր]արովս որդի արի տէր Ակոբն, Մկրտիչն՝ ախպէր, քանի Ղարայգաւզն ողջ է թէ տէր Ակոբն ի[ն]քն դուս էլնէ՝ ապրանք չտայ, թէ Ղարայգաւզն ինք տէր Ակոբն դուս գձէ՝ ապրանքն՝ մալ ու մուլ ապրանքն կէս անէ. թէ Մկրտիչն դուս էլնէ, էլի էնպէս. թէ Ղարայգաւզն մէռնի՝ կամք աստուծոյ է, Մկրտիչն ամանաթ էրէտ տէր Ակոբին տէր Ակոբն (այսպէ՛ս). Աստուած, սուրբ Աւետարան վկայ է, որ Ղարայգաւզին տղայ լինի, թէ տէր Ակոբին, թէ Մկրտիչին ախպէր չլնի՝ ախպոր որդի լինի։

Ես տէր Ովանէս գրեցի՝ աստուած վկա, Համայզասպ վկայ, Գուտզիզն վկայ, Գրիգորն վկայ, Ջանազիզն վկայ, տէր Ալէքսան այրեզէն վկայ, սարկայվարքն Տէրում վկայ, սարկայվարք Մկրտիչն վկայ.

Ի թվականիս ՌԼԸ. (1589)։ Տանուտէրն Խուն (իմա՝ Խոյն) էր, գիրն Թ. (9) էր. բաւ է։

** Փակագծի մեջ առնված հատվածները գրված են այլ ձեռագրով։

*** Հաջորդ թերթը ընկել է. 257ա էջի վրա պահպանվել է կորած թերթի բ. էջի ա. սյունակի հիշատակագրության շրջված արտատպությունը, որ հայելու միջոցով կարդացվում է այսպես. «Դարձեալ աղաչեմ յիշեցէք ի տէր և աստուած ողորմի ասացէք Վարդանին, և իւր ծաղկեալ զաւակացն պարոն Գորգին, Խուրամշին, Միրանշին, Էգդարշին և գիւրեանց քուերքն՝ Սալթանբաղքն, և Ղրզլար-խաթունն, և զԳուլամ-խաթունն, և զնանայ. Մախթում-խաթունն և այլ ամենայն արեան մերձաւորացն՝ կենդանեացն և հանգուցելոցն. եւ որ զաստուած-ողորմի ասէ՝ նա արարիչն աստուած իւրն ողորմեսցի յիւր միւսանգամ գալուստն, ամէն, եղիցի, եղիցի»։

## 55

## ՄԱՇՏՈՑ

*Երևան 903*

*գրիչ՝* Կարապետ
*վայր՝* Վան

391ա *Փառք ...որ ետ զաւրութիւն տկարութեանս իմոյ հասանել ի վերջ կատա-*
*կիս... զոր արարեալ է բազում աշխատութեամբ սուրբ հայրն մեր և լու-*
*սաւորիչն հոգւոց մերոց՝ երանաշնորհ վարդապետն Մաշթոց։ Զոր հաւա-*
*քեալ ունի յինքեան զբոլոր բովանդակութիւն եւթն խորհրդոյ եկեղեցւոյ.*
*զի սովաւ կատարի ամենայն կարգ քրիստոնէութեան կենաց և մահու ի*
*սուրբ եկեղեցի։*
391բ *Զոր տեսեալ զայս||պիսի գանձս աստուածային և պայծառ լուսով*
*երջանիկ և սրբասէր կրօնաւորն տէր* Աւետիս, *և ջերմեռանդ սիրով և մեծ*
*փափագանաւք ստացաւ զսա ի հալալ վաստակոց իւրոց, յիշատակ բարի*
*հոգւոյ իւրոյ, և ծնողաց իւրոց՝ հօրն* Թումայի *և մօրն* Իսքէրի, *և այլ ամե-*
*նայն ազգականացն։ Եւ ետ ի դուռն սրբոյն Ստեփաննոսի նախավկային,*
*որպէսզի վայելեսցեն զսա մանկունք սուրբ եկեղեցոյ և ուրախասցին սո-*
*վաւ և յիշեսցեն անմոռաց յիշմամբ յերկնագնաց յաղօթս իւրեանց զյա-*
*ռաջ յիշեցեալ ստացող սորա զաստուածահաճոյ և զսրբասնեալ կրօնաւորն*
*զտէր* Աւետիս *և զծնողքն իւր զ*Թումա *ե զ*Իսքէր, *այլ և զհիւսն* Կարապետ,
*և զքոյրն իւր զ*Մըրվաք, *և զդուստրն* Խալիմ-Հաթուն, *և զամենայն արեան*
*մերձաւորսն. մանաւանդ յիշել ե. լի բերանով աստուած-ողորմի ասել ի*
392ա *ժամ||սոսկալի սուրբ պատարագին տէր* Աւետիսին *և ծնողաց նորին,*
*ամէն։*
*Եւ գրեցաւ սա ի թվականիս Հայոց ՋԳ. (1454) ամին, ի քաղաքս որ*
*կոչի* Վան, *ընդ հովանեաւ սրբոց առաքելոցս Պետրոսի և Պօղոսի, և*
*Սահակայ հայրապետի, և այլ սրբութեանցս, ի հայրապետութեան*
*տեառն* Գրիգորի, *և ի թագաւորութեան* Ջհանշայի, *որ գնացեալ բազում*
*զօրաւք եմուտ ի* Պարսկաստան. *և մեք հանապազ փախստական։*
*Արդ, ի յայս դառն ժամանակիս ետ գրել զսուրբ գիրք տէր* Աւետիսն...
*Այլ և զ*Գորգն *և զկենակիցն իւր զ*Խաթունշէն *լի բերանով և ուղիղ*
*մտաւք աստուած-ողորմի ասացէք և Քրիստոս աստուած ձեզ ողորմեսցի,*
*ամէն։*
392բ *Եւ արդ, ես՝ անպտուղս ի բարեաց և մեղաւորս յարդարոց, անյիշելիս*
*ի գրչաց և անկարգս ի կարգաւորաց բազմամեղ* Կարապետ *սուտանուն*
*երէց, ըստ իմում տկար անձամբս յանձն առի և ամենակարող զօրու-*
*թեամբն աստուծոյ աւարտեցի զբոլոր բովանդակ Մաշթոցս ի ստոյգ և*
*յընտիր աւրինակէ։ Վասն որոյ յերեսս անկեալ աղաչեմք զսրբութիւնդ*
*ձեր, ո՜վ սուրբ քահանայք և ժողովուրդք, իմ բազում մեղացն թողութիւն*
*խնդրեցէք յաստուծոյ և ուղիղ մտաւք աստուած-ողորմի ասացէք, այլ և*
*ծնողաց մերոց՝* Ստեփանոս *քահանայի և* Մինայի, *և ամենայն արեան*
*մերձաւորաց իմոց։ Եւ Քրիստոս աստուած, որ առատն է ի տուրս բա-*

*ըեաց ձեզ՝ յիշողացդ և մեզ՝ յիշեցելոցս, առհասարակ, ողորմեսցի. և նմա փառք յափտեանս, ամէն*։*

## 56

## *ԱՒԵՏԱՐԱՆ*

*Երևան 9374*

*գրիչ՝* Գրիգոր
*վայր՝* Աղթամար

*... Եւ արդ, ես՝ յետինս ի գրչաց և անարժանս ի կարգաւորաց սուտա-*
317բ *նուն քահանայ* Գրիգոր *տեսի զսէր և ղփափագ || սորա (*Ատոմ *քահա-*
*նայի), զոր ունէր առ հոգևորն. և իմով իսկ տկարութեամբս յանձն առի...*
*և կատարեցի զսա մեղսամած մատամբս իմով յաստուածաբնակ կղզիս*
Աղթամար, *ընդ հովանեաւ ամենայաղթ սուրբ խաչիս և սուրբ Նշանացս,*
*ի հայրապետութեան տեառն* Զաքարիայի. *ի թուականիս Հայոց ի ԹԳ. և*
*երեքն (1454)...։*
*Արդ, որք ճաշակէք ... յիշեսջիք... զյառաջ յիշեցեալ ստացող սուրբ*
318ա *աւետարանիս* զԱտոմ *սրբասնեալ քահանայն, || և զծնօղսն իւր* զՍտեփա-
նոս *և* Գոհար, *և զեղբարքն* զՍահակ, զՅովանէս, զՅակոբ *և* զՆերսէս, *և*
*զհօրեղբարքն* զԿիրակոս *և* զԹորոս, *և զզաւակսն նոցա* զՄարտիրոս,
զՄերուն *և* զՄխիթար, *և զկենակիցն իւր* զՈւսլուն-Մէլիք, *և զորդին իւր*
զՍղևոն, *և զքոյրն իւր* զՍղիսաբեթ, զՇամշա-խաթուն, *և զիւր սկեսուրն, և*
*զծնօղսն նոցին, և զտէր* Կիրակոսն, *և զայլ ամենայն ազգականսն նորին՝*
*զկենդանիսն և զննջեցեալսն...։*
*Ընդ նոսին և զանպիտան* Գրիգոր *գծագրողս աղաչեմ յիշել յաղօթս*
*լի բերան ողորմիւ, և իմոց ծնողացս՝ հօր իմոյ* Աղաիանին, *մօր իմոյ*
Սագդաղենին, *և ամենայն զարմից մերոց և արեանառու մերձաւորաց։*
318բ *Այլ և յիշել մաղթեմ ||* զԹումայ *սարկաւագն, որ աշխատեցաւ ի կոկել*
*թղթիս...։*

## 57

## *ԱՒԵՏԱՐԱՆ*

*Փիրդ. Նօա. 173, Բաղէշ, ս. Գէորգ եկեղեցի*

*գրիչ՝* Կիրակոս
*վայր՝* Բաղէշ

*... Եւ արդ, ես՝... անյիշելիս ի գրչաց ...*Կիրակոս *քահանայ... գրեցի զսա ի դառն և ի նեղ ժամանակիս, յիշատակ բարի* Սարգսին, *և ծնողաց նորին* Պարոն-Լուսին *և* Քաֆուրին..., *և ինձ մեղաւոր գրչիս* Կիրակոս *քա-*

** Ձեռագրի հաջորդ՝ 393 թերթի վրա կան երկու անթվական հիշատակարաններ, առաջինը ԺԵ. դարի վերջի (կամ ԺԶ. դարի), երկրորդը՝ ԺԶ.—ԺԷ. դարի գրչությամբ։ Ստորև տալիս ենք առաջին հիշատակարանի կարևոր մասը. «...Յիշեցէք ի մաքրափայլ յաղօթս ձեր զխոջա* խաչատուրն, *և զծնօղքն իւր, և զկենակիցն* զՍօլթան-խաթունն, *և զզաւակսն իւրեանց...։ Ընդ նոսին յիշեցէք զպարոն* Թադէոսն *և* զԹումա *քահանայն...»։*

հանայիս, և իմ ծնողացն՝ Էլէճսան քահանային և Եղիսաբեթին, և կենակցին իմոյ Քնճուշ-խաթունին:

Արդ, դրեցաւ սա ի քաղաքս Բաղէշ, ընդ հովանեաւ սուրբ Կիրակոսին, ի թուականիս Հայոց ՋԳ. (1454), ի ղանութեան Ջհանշին, և ի մեր պարոնութեան միր Շամսադնին, ի հայրապետութեան տեառն Գրիգորի, և յեպիսկոպոսութեան տէր Յովանիսին...:

58

ԱՒԵՏԱՐԱՆ

«Թորոս Աղբար», Բ, էջ 445,
Տիգրանակերտ, ս. Կիրակոս եկեղեցի

գրիչ՝ Ստեփաննոս
վայր՝ Բաղէշ

Գաի ընտիր և ստոյգ աւրինակ, զոր գրեալ էր Թորոս փիլիսոփայն ի Դրազարկն և յուլարկեալ հռչակաւոր ուխտին սուրբ Առաքելոցն Տարոնոյ, որ կոչի Ղազարու վանք. եւ իմ առեալ գրեցի զսա անարժան ձեռաւք իմովք ի մեծ թուիս ի յեղանական շրջագայութեան արեգական ստորիչիւք երկնաշու ճանապարհաւ յերկնից երկիր հայելով, ըստ արարչութեանցն չափեալ յԱդամայ մինչև ցայսր ամք ՑՊԿԲ. (6862)... իսկ Հայոց թվականիս ՋԳ. (1454), ի քաղաքիս Բաղէշ, ընդ հովանեաւ սուրբ Սարգսի և սուրբ Գէորգայ և սուրբ Ստեփաննոսի, ի հայրապետութեան տեառն Գրիգորի, ի հայրապետութեան Աղաթամարայ տեառն Զաքարիայ, և ի կայսրութեան ազգին նետողաց Ջհանշահ ամիրին...:

Յիշեսջիք զստացող սորա... և զիս՝ գրիչս՝ զՍտեփաննոս քահանայ...:

59

ԱՒԵՏԱՐԱՆ

Լենինի համալսարան, Ֆ. Մակլեր, Ցուցակ,
№ 38, էջ 95—98

գրիչ՝ Կարապետ
վայր՝ Պառուազրակ վանք

ա

286ա ... Արդ, կատարեցաւ սուրբ Աւետարանս Քրիստոսի ի թվականին Հայոց ՋԳ. (1454), ի յապրիլ ամսո Ա. (1), ի վանս որ Պառուազրակ յորջորջի, ընդ հովանեաւ սքանչելագործ սուրբ Նշանիս, և սուրբ Կարապետի, և սուրբ Սարգսի մեծ զինաւորին, և այլ բազմահաւաք սրբոց, որ հաւաքեալ կան աստ, ձեռամբ յոգնամեղ և անարհեստ գրչի մեղապարտի Կարապետ հայրապետի և ամենաթշուառի և անիմաստի:

Արդ, ի սրտէ խոցեալս և մեղաւք լցեալս, ի բարեաց տարտամս և ի մեղաց փարթամս, մեղուցեալ հոգով Կարապետ հայրապետս եղկելիս, ոչ ինչ ունելով մխիթարութիւն յայսմ աշխարհիս, ո՛չ մարմնաւոր և ո՛չ բարի գործովք, այլ ապաւինելով յողորմութիւնն Քրիստոսի և յամէնատատ

գթութիւնն իւր, հնարս իմացա զսուրբ Աւետարանս ինձ ի մխիթարութիւն ի կեանս և ի հանդերձեալն, բարեխաւս առ նոյն ինքն ի Քրիստոս ի տէրն մեր՝ .յոյսն ամենեցուն։

286բ Արդ... յիշեսջիք ի սուրբ և յարժանաւ||որ յաղաւթս ձեր զմեղուցեալ գծողս զԿարապետ, և ըծնաւղսն իմ՝ զհայրն իմ զՍիմէոնն և զմայրն իմ զՄարիամն, և զեղբայրն իմ զՅովաննէս կրաւնաւորն, որ տղա հասակաւ փոխեցաւ առ Քրիստոս և բաղում կսկիծ եթող ի կեանս։ Եւ առաւել զամենայն բարեաց արժանաւորն՝ ըհաւրեղբայրքն իմ փոխեցեալքն ի Քրիստոս՝ զՕնոփրիոս հայրապետն, և զտէր Տիրատուրն, և զաշխարհական եղբայրն զԱստուածատուրն, և զամենայն արեան մերձաւորս իմ և զեբախտաւորսն մեր յիշեցէք ի բարին Քրիստոս, եւս և զմիաբանք սուրբ Կարապետիս զհամաւրէն եղբայրութիւնքս՝ զհնգետասան կրաւնաւորքս՝ զծերք, և ըտղայք, և զսարկաւագունք, և ըսպասաւորք, և զգործաւորք սուրբ անապատիս, առ հասարակ, աղաչեմ յիշել ի տէր։ Ընդ նոսին և ըեղկե[լ]ի գծողս աղաչեմ ///աղ]երսանաւք հայցեմ յիշման արժանի առնել զանա[ր]ժանս և խոշորութեանն սղա[լա]նաց անմեղադիր լինել, զի հանապազ վշտանայի ի ցաւոց և յիչռածոց, որ ի գլուխս և յերեսս, և ցաւագնեալ անձամբ և աղտեղացեալ մտօք տագնապէի միշտ, վասն որոյ վստահացա յողորմութիւնն Քրիստոսի և ջանացի և կատարեցի զսա ըստ իմում կարի, կրկնապատիկ աղաչեմ լի սրտիւ յիշել զանպիտան գծողս և զվերոյգրեալսն ի սմա և ձեզ՝ յիշող[ա]ցդ և մեզ՝ յիշեցելոցս առ հասարակ ողորմեսցի ողորմածն Քրիստոս և ինքն աւրհնեալ եղիցի յաւիտեանս, ամէն*։

Բ

87բ Փառք փրկչին և յիշատակ անպիտան և մեղուցեալ գրչիս։ Տէր աստուած ողորմեա Կարապետի գրոյս գրողի և ծնողաց իմոց և զարմից և յիշողաց զմեզ, ամէն։

Գ

136ա Տէ՛ր աստուած, ողորմեա սորին գրողի անիմաստ Կարապետին և ծնաւղին իւրոյ և զարմին, ամէն։

Դ

221բ Տէ՛ր աստուած, ողորմեա քո մեղաւոր ծառայիս Կարապետի գրոցս գրողի, և ծնողաց իմոց, և ամենայն զարմից, ամէն, և այնոցիկ որ զամէնն ասեն, ամէն։

60

ԱԻԵՏԱՐԱՆ

Կ. Պոլիս, ՀԱ, 1903, էջ 341

գրիչ՝ Մինաս

վայր՝ Տիւրիկ, Խուռնայլիայ վանք

[Գրեցաւ] ի թվականութեանս Հայոց ՋԳ. (1454) ամին, ձեռամբ... գրչի Մինաս երիցում, ի նահանգիս Տիւրըկոյ, ի վանք Խուռնայլիայ.

* Գլխավոր հիշատակարանի բովանդակությունն իր խոսքերով վերապատմել է Գ. Սրվանձտյանը իր «Թորոս աղբար» Բ. հատորում (էջ 376)։ Սրվանձտյանի ժամանակ ձեռագիրը գտնվել է Կյոքթեփե գյուղի եկեղեցում։

*ընդ հովանեաւ սուրբ Լուսաւորչի և սուրբ Աստուածածնի... ի յառաջնոր-*
*դութեան և ի վերադիտողութեան տէր* Յովհաննիսի, *և ի հայրապետու-*
*թեան տեառն* Կարապետի, *և ի միւս հայրապետութեան Արևելեան կող-*
*մանց՝ տեառն* Գրիգորի:

## 61

## *ԱՒԵՏԱՐԱՆ ԸՍՏ ՅՈՎՀԱՆՆՈՒ*

***Երևան 9323***

*գրիչ՝* Սիմէոն
*վայր՝* Երուսաղէմ

*... Գրեցաւ սուրբ և լուսայիղծ յորդավտակ Աւետարանս ի թվականի*
151ա *Հայոց ՋԳ. (1454),* || *ի սուրբ քաղաքս* Երուսաղէմ, *ընդ հովանեաւ սուրբ*
*Յակովբա, ձեռամբ տառապեալ և յոգնամեղի* Սիմէոն *բանի սպասաւորի,*
*որ մականուն* Վարդապետ *յորջորջի, ի խնդրոյ սրբութեամբ սնեալ և առա-*
*քինութեամբ վարժեալ՝ տեղեակ գոլով հին և նոր պատուիրանացն հոգևոր*
*եղբաւրս մերոյ* Յովաննէս *եպիսկոպոսին, որ մականուն* Տափլ *կոչի, որ և*
*ցանկացող եղև այսմ հոգէբուխ կտակիս՝ սուրբ Յոհան գլուխ աւետա-*
151բ *րանիս,* || *և խնդրեաց ի մէնջ, և մեք գրեցաք և տվաք ի նա ի վայելումն*
*անձին իւրոյ և յիշատակ մեզ և ծնաւղաց մերոց...:*

## 62

## *Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն*

***Երևան 2843***

*գերութիւնից ազատողներ՝* Աւետիս
*և* Մելքիսեթ

314ա *Եւ արդ, ի վերջին ժամանակիս գերեալ եղև սուրբ Աւետարանս ի*
*յանաւրինաց. եւ մեք հարազատ եղբարքս* Աւետիս *կրաւնաւոր և* Մելքի-
սեթ *աբեղայս, թոռն պարոն* Թադէոսին, *ստացաք զսուրբ Աւետարանս ի*
*հալալ ընչից մերոց, յիշատակ բարի հոգւոց մերոց, և ծնողաց մերոց՝*
Թումայի *և* Իսքերի, *և հաւրեղբաւրն մերոյ* Առաքելի, *և որդոյն* Խաչատրոյ,
*և այլ ամենայն ազգականաց մերոց:*

*Աղաչեմ զձեզ, ո՛վ սուրբ հարք և եղբարք, որք հանդիպիք սմա կարդա-*
*լով և լսելով, յիշեցէք յաղաւթս ձեր զիս՝ զ*Աւետիս *կրօնաւորս, և զեղբայրն*
*իմ զ*Մելքիսեթ *աբեղա, և զծնողքն մեր, և զամենայն արեան մերձաւորքն,*
*և ուղիղ մտաւք և լի բերանով աստուած-ողորմի ասացէք:*

*Այլ և զհամշիրաք եղբայրն մեր զ*Բարսեղ *կրօնաւորն, որ առ աստուած*
*փոխեցաւ, և զհոգևոր մայրն զ*Մըրուարն:

314բ *Այլ և զբարի շառաւիղքն պարոն* Թադէոսին՝ *զ*Աննան, *և զծնաւղքն*
*իւր՝ զ*Ասլան-Մելէքն, *և զկենակիցն իւր՝* Շամշա-Խաթունն, *զպարոն* Իս-
րայէլն՝ *զփոխեցեալն ի Քրիստոս, այլ և զպարոն* Թումէն, *և զծնողքն իւր՝*
*զ*Խալիփէն, *և զամենայն արեան մերձաւորքն՝ զառաջինքն և զվերջինքս...:*

Ընդ նոսին և զտարաժամ վախճանեալս ի Քրիստոս՝ զդեռաբոյս ծաղիկն՝ զԻօզալղօշն, և զմայրն իւր զՍօլթան-Խաթունն...։
Թվ. ՋԳ. (1454)։

## 63

## ԱԻԵՏԱՐԱՆ

«Թորոս Աղբար» Ա, էջ 329—331, Մալաթիա

Հետ. ստացող՝ Կիրակոս

... Յիշեցէք ի Քրիստոս և ի սուրբ մաքուր յաղօթս ձեր զմահդասի Կիրակոսն՝ տիաւք մանուկ և մտաւք կատարեալ, որդի մահդասի Պենճամին, որ երետ վերստին կրկին նորոգել և զարդարել զսուրբ Աւետարանս յիշատակ իւր և ծնողաց իւրոց՝ մահդասի պարոն Պենճամին, և Փաշայ-Մելիքին՝ հանգուցելոյն ի Քրիստոս, և հաւրեղբաւրն պարոն Յովանէսին, և հարազատ որդոյն պարոն Դաւթին, և քուերցն իւրոց Խուանդ-Խաթունին, Կիրայ-Խաթունին, Մանայ-Խաթունին, Սառայ-Խաթունին, և դեռաբուս զաւակին իւրոյ Մարիամին, և կողակցին իւրոյ Հռիփսիմէին, և ամենայն արեան մերձաւորացն, և մեծ հաւրն իւրոյ պարոն Կիրակոսին, և մեծ մաւրն իւրոյ Կիրայ-Խաթունին...

Եւ սա երետ զանիրաւ մանոնան, որ չէ մեր սեփական, և էր Աւետարանս այրեած. և կրկին երետ նորոգել զսուրբ Աւետարանս. նա Քրիստոս որդին աստուծոյ նորոգեսցէ զհոգիս մղտեսի Կիրակոսիս, և զննջեցելոցն սորայ՝ զկենդանեացն և զհանգուցելոցն, յիշատակացն և անյիշատակացն։

Յիշեցէք ի Քրիստոս և զմեծ հայրն իմ զՊառուականն, և զմեծ մայրն իմ զՂութլու-Մելիքն, և աստուած զձեզ յիշէ, ամէն։ Եւ մի ՛ոք իշխեսցէ զսուրբ Աւետարանս ծախել կամ աւժտել կամ ասել թէ իմ է. ես մղտեսի Կիրակոսս, որդի մղտեսի Պենճամին, վաղֆ արի իմ ամէն ազգիս վերայ, ով որ զայս պատուէրս չկատարէ՝ նա զանէծքն ի յաստուծոյ առնէ և ի սուրբ Աւետարանէ։ Ձեռազանդեալքն աւրհնին յաստուծոյ և ի սուրբ Աւետարանէս, ամէն և հազար ամէն։ Ի յոր տեղ որ կենայ, նա աւագ հինգշաբթին աւուրն զպատարագն մեր ննջեցելոցն մատուցանեն. և խնամ տանաւղքն զաւրհնութիւն ի սուրբ Աւետարանէս առնուն։

Ի թվին Հայոց ՋԳ. (1454), նոյեմբեր ԺԱ. (11), ի փառս աստուծոյ, ամէն։

Ոչ ոք չունի իշխանութիւն կամ առնուլ, կամ ծախել, կամ գրաւել, կամ սուրբ Ստեփաննոսի դրանէն հանէ. ով որ յանդգնի՝ բանիւ եղիցի։

## 64

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 1130

գրիչ՝ Պետրոս

261բ Զստացող սորա զվարդապետն Վարդան յիշեցէք ի սրբամատոյց յաղօթս ձեր, ընդ նմին զբազմայվէր ոգի զՊետրոս զփծուն գրչակս, և աս-

*տուած զձեզ յիշէ, ամէն։ Եւ մեք և դուք ի միասին փառս տացուք Հօր և որդո և սուրբ Հո[գո]յն ա[յ]ժմ և յանզրաւ յափտեանս յափտենից, ամէն։ Աստուած ողորմի Համօրէ[ն] աշխատողացն, ամէն, ամէն**։

## 65

### *ԱՒԵՏԱՐԱՆ*

*Հառիճոյ վանք Մ. Ց. Մ.*

[*Ստացող* Ստեփանոս *քահանայ*] *յիշատակ իւրն և ծնողաց իւրոց, հօրն* Աստուածատրին *և մօրն* Մամախաթունին, *և քուերցն* Խախաթունին, Մուղաֆ-Խաթունին *և* Շահ-Փաշին՝ *որք մնացելոցն ի մօրէ, և զկենակիցն իւր* զՀայխաթուն... *յիշատակ հօրն իւրոյ* Աստուածատրին, *և ծնողաց նորին* Կարապետին *և* Սաքախմէլիքին, *և եղբարցն* Խաչատրուն *և* Աւետիսին:

---

* *Մատենադարանի ցուցակում նշում կա այն մասին, որ ձեռագիրն ընդօրինակված է 1454-ին։ Ինչ ավյալ է ձեռքի տակ ունենալ տարեթվի որոշողը՝ չգիտենք։*





## 66

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 6683

գրիչ՝ Գրիգոր
վայր՝ Հաղբատ

248ա ... Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս... ձեռամբ մեղսամերկ ոգւոյ՝ փցուն և անարհեստ գրչի Գրիգորի՝ սոսկ անուամբ միայն աբեղայի, ի սուրբ և ի հռչակաւոր ուխտս ի Հաղբատ, ընդ հովանեաւ տէրունական սուրբ Նշանիս և յայլ սրբութեանցս, ի թվականութեանս Հայոց ՋԴ. (1455), ի կաթուղիկոսութեան տեառն Գրիգորի և յառաջնորդութեան տեղոյս տէր Աստուածատրոյ արքեպիսկոպոսի, ի ղանութեան տաճկաց Ջի-
248բ հանշախի, ի դառն և ի |նեղ ժամանակի, յիշխանութեան այլազգաւան սեռի, որ յահէ և յերկեղէ նոցա մաշեալք և հալածական լինէաք փախըստեայք և մոլորեալք, գերեալք և տատանեալք, ի յառաւել խստութենէ հարկապահանջութեան և ի յոլովութենէ գերելոցն և ի չքաւորութենէ ընչից ոչ կարէր օգնել եղբայր եղբօր և ոչ ողորմէր ազգս ազգիս։

Եւ այս ամենայն եկն ի վերայ մեր վասն մեղաց մերոց։ Եւ ես անարժանս և տառապեալ ծերունիս Գրիգոր երերուն և տատանեալ շր[ջէի]/// և այժմ հանդիպեցաք այս հրաշակերտ սուրբ ուխտիս Հաղբատայ, և տէր Աստուածատուր եպիսկոպոսս սիրով ընկալաւ զմեզ, զոր աստուած միայն բիւրապատիկ հատուցանէ վարձս բարեաց հանդերձ միեղէն եղբայրութեանց միաբանից սուրբ ուխտիս։ Եւ ես անարժան ձեռօք, մեղուցեալ հոգւով, խաւարեալ մտաւք, անարհեստ գրչօք, լրբենի դիմօք ձեռնարկեցի ի սուրբ Աւետարանս անարժանութեամբ։

249ա Արդ, յերեսս անգեալ աղաչեմ զսրբութիւն ձեր մի հարևանցի///* լսել և զանց առնել։

Այլ ես խոստովանիմ ի ձեռն գրոյս զբիւրս բիւրուց յանցանաց իմոց, զի անարժանութեամբ մերձեցայ ի սուրբ Աւետարանս, և դուք իշխանութեամբ սուրբ կարգի ձեր թողութիւն արարէք ամենայն մեղաց իմոց, և սղալանաց, և խոշորութեան, և անարհեստի գրիս անմեղադիր լերուք, զի կար իմ և զժամանակս զայս երեր։

Դարձեալ աղաչեմ յիշել ի տէր զուսուցիչսն և զսնուցիչսն և զծ[ն]օղսն իմ՝ զհանգուցեալսն ի Քրիստոս, և զկենդանի եղբայրս իմ ըստ հո[գւոյ]/// քաշ քարտուղարն՝ ծնօղօք և ամենայն զարմօք յիշեցէք ի Քրիստոս։

Յիշեցէք յաղաւթս և ուղիղ մտաւք աստուած-ողորմի ասացէք ստա-

* Մի տող մնացել է նորոգման ժամանակ փակցված թղթի տակ։

ցաւղի սորա ծերունի հօրն Ամիրբէկին, ծնաւղաց և ամենայն արեան մեր-ձաւորաց նորա, կենակցի նորա էլխաթունին, ծնաւղաց և նախնեաց նո-րին, և ղաւակաց սոցա Ջուլալ-խաթունին և Սադաղին, որոյ աշաւթիւք ձեր ընդ երկայն աւուր արասցէ աստուած ղսոսայ և յետ ատեացս՝ ղերկ-նից արքայութիւնն պարգևեսցէ հանդերձ [ծնաւ]ղաւք և ամենայն ազգա-
249ա կա||[նաւք]///

Եւ որք կարդայք կամ աւրինակէք սրտի մտաւք՝ յիշեցէք յաղաւթս զԱմիրբէկն և զէլխաթունն, ղի վասն փափաքանաց ողորմութեանն աս-տուծոյ փարեցան զսուրբ Աւետարանաւս, և յուսալով ի սայ աղօթիւք յիշո-ղացդ առնուցուն ի տեառնէ ղփափաքելին իւրեանց՝ զկեանսն յաւիտենա-կանս, որ է Քրիստոս, որպէս ասաց՝ Որ հաւատայ յիս, թէպէտ և մեռանի՝ կեցցէ, և նմա փառք յաւիտեանս, ամէն։

## 67

## ԱՒԵՏԱՐԱՆ

ՄՑՎ 131 (1030), հտ. Ա. 581—582

վայր՝ Մցի գյուղ (Սիւնիք)

260ա ... Որոյ ցանկացող եղեալ երջանիկ և բարեմիտ տանուտէրն Մանկ-տաւագն՝ և ստացաւ զանառիկ փարթամութիւնս և զգանձս անկողոպտելի զաստուածաբան Աւետարանս յիշատակ բարի հոգւոյ իւրոյ և բարեխօս առ Քրիստոս աստուածն իւր, և ծնօղաց իւրոց Մարտիրոսին և Գօհա-րին..., և ծաղկեալ որդւոցն իւր՝ որ տարաժամ կենօք փոխեցան ի Քրիս-տոս՝ Բերամին, Մարտիրոսին, Թումային, և միւս Մարտիրոսին, և Մու-րադին, և հարազատ եղբօրն Թումային՝ փոխեցելոյն ի Քրիստոս, լի բե-րանով աստուած-ողորմի ասացէք։ Եւ զդստերսն իւր զՋամալն և զՔա-րամ, և զՅակոբ, և զմայր աղայոցս զՂփչախ [և զմայրն իւր զՂամաքն] յիշեցէք ի Քրիստոս։ Եւ զեղբօրորդին իւր զՍտեփաննոսն՝ զփոխեցեալն ի Քրիստոս, և զկենակիցն իւր՝ զԴուխթար, որ աշխական եղև ի գին Աւե-տարանիս յիշեցէք ի Քրիստոս. և զողայօ ճոցին՝ զՍարգիս և զՍադաղայ, զԴանէլ և զՇատարև, զՍանակ և զՄարտիրոս, զՅովանէս և զմիւս Մար-տիրոս, և զՄկրտիչ. և զքորք սոցա՝ զԱղբրաց, զԱւագտիկին, զԽօնձայ, ամենեքեան սոքա տարաժամ կենօք փոխեցան ի Քրիստոս, յիշեցէք. և զեզբօր դուստր Մանկտաւագին՝ զՃայոց յիշեցէք ի Քրիստոս, և զքոյրն զԱղութ, և զԹամամ, և զՇնորհւոր, և զհօրեղբայրն՝ զՅովանէսն, և զոր-դիքն իւր զԴանէլ, զՄուսէս և զՆերսէս <և զորդիքն իւր> և զդուստրն իւր զԳոզումէտ, ու զՄելքեսէթ, և զՅովանէսն, և զՅակոբ, զՅովս[էփ], զՏիրա-տուր, և զՇատարև, և զԳօհար, և Թաջէ, և զԽանդուա, և զՎարդխաթունն յիշեցէք ի Քրիստոս, և զՄամախաթունն յիշեցէք ի Քրիստոս, և զՎարդան յիշեցէք ի Քրիստոս, և զՆազիկ յիշեցէք, և զՇահապ յիշեցէք ի Քրիստոս, և իւր արեան մերձաւորսն։

Եւ արդ գնեցաւ* սուրբ Աւետարանս յիշատակ Մանկտաւագին ի թվին Հայոց Ջ. և Դ. (1455) ամին, և ետ վկայութեամբ ի ձեռն Ղազար քահանային ի Մցի գեօղն, ի վայելումն անձին իւրոյ, զի նորընծայ էր ի յաստիճան քահանայութեան. և մի ոք իշխեսցէ հեռացուցանել զԱւետարանս ի տէր Ղազարէն: Յիշեցէք ի Քրիստոս և զհայր տէր Ղազարին՝ զընէս Մանկտաւագ։ Եւ դուք յիշողքդ և մեք յիշեցեալքս՝ մասն բարեաց ընկալցուք ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

## 68

## ԱՒԵՏԱՐԱՆ

Փիրդ. Նօտ. 179--180, Բաբերդ՝ ի գիւղն Քարավարակ

ա

գրիչ՝ Մովսէս
վայր՝ Բասենոյ գաւառ,
Սպիտակ վանք

... Գրեցաւ տառս աստուածայինս և տիեզերաքարոզ սուրբ Աւետարանս ձեռամբ անարժան աբեղայի Մովսէսի՝ փցուն և անարհեստ գրչի, ի թուականիս Հայոց ՋԴ. (1455)։ Ետ օրինակել տէր Մարտիրոսն ի յիշատակ իւր և ծնողաց իւրոց՝ հօրն Մելքիսէդին և մօրն Գուհար–խաթունին**:

Արդ, եղև գրաւ սուրբ Աւետարանիս ի գաւառս Բասենոյ, ի յերկնահանգէտ և ի գերահռչակ սուրբ ուխտս որ կոչի Սպիտակ վանք, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս և կենսատու սուրբ Նշանիս, ի կաթուղիկոսութեան Հայոց տեառն Գրիգորի, և յեպիսկոպոսութեան տէր Յուկանն, և հայրապետութիւն Մելքիսէթ քահանային...։ Այլ և կրկին աղաչեմ զձեզ մի մեղադրէք մեզ, զի ժամանակն դառն էր և ոչ եղև իմ սրտով գիր, զի ի տնտեստունն գրեցի, ի մէջ միաբանիցն. և այս է միաբանքս՝ տէր Յոհաննէս, և Բ. (2) Առաքելն, և Կիրակոս, և ԺԲ. (12) սարկաւագ և գործաւոր։ Եւ այնչափ ասել և լսել և կարդալ և պաշտել կայր, որ զամենն ոչ կարեմ գրել։

բ

Ոմն եետ. ստացող

Արդ, աղաչեմ զձեզ... յիշեսջիք ի սուրբ յաղօթս ձեր զպարոն Յակոբ մելիքս Բասենոյ գաւառիս, որ է հայր որբոց և դատաւոր այրեաց, տայ զհաց քաղցելոց և զջուր ծարաւելոց և լնու զամէնայն պէտս կարօտելոց,

* Հրատարակիչ Ի. Սարգսյանը ուղղում է «գրեցաւ»։ Այդ սրբագրության կարիքը չի զգացվում։

** Ղ. Փիրղալեմյանը ձեռագիրն անձամբ չի տեսել և հիշատակարանը մեջ է բերել Արսեն վրդ. Թոխմախյանի ընդօրինակությամբ։ Վերջինս ձեռագրերի վերծանության գործում վարժ չլինելով, այս պարբերությանը կցում է ամենայն հավանականությամբ հետսամուտ հետևյալ տողերը. «Տէր Մարգարէն որ եղեալ է ի դուռն սուրբ Ստեփաննոսին, ի դեաւղս որ կոչի Նորք»։ Փիրղալեմյանը ևս, հրատարակելով հիշատակարանը, կասկած է հայտնում այդ նախադասության հավաստիության մասին։

հոգով հեզ և բարուքն խոնարհ, ի դառն ժամանակիս պարգևեալ ի յաստուծոյ, իբրև զվարդ փթթեալ ի մէջ ձմերայնի։ Տէր աստուած պահեսցէ զսա անփորձ և անսասան յերկար ամօք, բազմաց ժամանակօք, և յետ աստեացս ելանելոյ դասակից և պսակակից արասցէ սրբոյն Աբրահամու՝ հիւրասէր և աղքատասէր ծառային աստուծոյ...։ Յիշեսջիք ի սուրբ յաղօթս ձեր զպարոն Յակոբս, և զհայր իւր զԱրև, և զմայր իւր զԹամամ-խաթուն...*:

## 69

## ԼՈՒՍՈՒՄՆ ՄՆՆԴՈՑ ԳՐՈՑ, ԳՐԻԳՈՐԻ ԽԼԱԹԵՑՒՈՅ

*Երուսաղէմ 1622*

գրիչ՝ Յակոբ

Գրիչն է Յակոբ, որ սկսել է գրել *ի վանքն Յուսկան որդւոյ, ի վանքս Արգելանաց, յորում առաջնորդ էր Ներսէս վարդապետն, որ վանքն շինեաց,* ապա շարունակել՝ *ի Կողբ ի Լուսաւորչի վանք և Սուքիասանք, որոյ առաջնորդ էր Թաթար տանուտէր և եղբայր նորա Փասիլ.* յետոյ՝ էջմիածին՝ *յաւուրս Կիրակոս կաթողիկոսի,* ապա *յԱրտազ գաւառ, ի գիւղն Մակու, ի վանքս սուրբ Աստուածածնին ՊՂԸ — ՋԴ. (1449—1455)* թվականներին...**։

## 70

## Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն

*Փիրղ. Նօտ. 182, Բաղէշ՝ Փարխանդ գիւղի եկեղեցի*

վայր՝ Խլաթ

*Գրեցաւ Աւետարանս ի* Խլաթ *քաղաքի, ընդ հովանեաւ ԺԱ. (11) խորանացն, և Գէորգայ զօրավարին, և խնդրակատար Աստուածածնի, և սուրբ Վարդանին, ՋԴ. (1455) թվ., ի հայրապետութեան տեառն* Գրիգորի *էջմիածնի կաթողիկոսի****։

## 71

## Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն

*Փիրղ. Նօտ. 177, Նշխարք, էջ 173—174, Բաղէշ՝ ի Կարմրակ եկեղեցի*

գրիչ՝ Դաւիթ
վայր՝ Արճէշ

... [*Յիշեցէք*] *սրբասնեալ քահանայն տէր* Խաչատուր *և բարեսունդ մաքրամիտ որդին իւր տէր* Դաւիթ, *որ նարընծայ էր ի յաստիճան քահա-*

---

* Արժեքավոր այս հիշատակարանի գրության ժամանակը անորոշ է։ Հրատարակիչը հայտնում է միայն, որ այն գրված է եղել «անդ, այլ որով, թիւ չունէր»։

** Ընդգծված բառերը Մ. Տեր-Մովսիսյանինն են, որը ժամանակ չունենալով լրիվ ընդօրինակելու՝ խիստ համառոտել է հիշատակարանը։

*** Փիրղալեմյանն անձամբ չի տեսել ձեռագիրը, այլ մեջ է բերել հիշատակարանի բովանդակության Արսեն վրդ. Թոխմախյանի կատարած համառոտ վերաշարադրանքը։

նայութեան, ձեռնարկեալ գրեաց զսուրբ Աւետարանս, որ և ի սոյն ամի վերափոխեալ առ Քրիստոս, և եթող զանկողոպտելի գանձս յիշատակ բարի հոգւոյ իւրոյ և բարեմիտ ծնողին իւրոյ Խաչատուր քահանային և Շամամ տիկնոջ...։

Եւ արդ, ես՝ յետինս ի կարգաւորաց ... Դաւիթ սուտանուն քահանայ՝ շնորհիւ տեառն սկսայ և ողորմութեամբ նորին կատարեցի զտէրունեան սուրբ Աւետարանս ի թուականիս Հայոց Մեծաց ՋԳ. (1455) ամին, ի քաղաքիս Արճէշ կոչեցեալ, ընդ հովանեաւ սուրբ տաճարիս Գէորգեայ զօրավարին, ի հայրապետութեան տեառն Գրիգորի մեծ աթոռոյն Էջմիածնի։

Աստուած-ողորմի ասացէք ստացողի այս մարգարտաշար կտակի Խաչատուր քահանայի, և ծնողաց իւրոց Յոհաննիսին և Ոսկոյն, այլ և հոգևոր մօրն իւրոյ Սառին, և մեծ պապերուն՝ խաւշայ Մուսեսին և պաքոն Ստեփաննոսին, և վարպետաց իւրոց՝ Մարգարայ վարդապետին և Էլթանենց տէր Վարդանին, ամէն։ Եւ ինձ՝ անարժան գրչի Դաւիթ քահանայի, և ուսուցչին իմոյ Յովանէս քահանայի, և մարմնաւոր ծնողաց իմոց՝ հօր իմոյ Խաչատուր քահանայի և մօր իմոյ Շամամին՝ գնացելոյն առ Քրիստոս...։

Եւ ես Խաչատուր քահանայ՝ ետու զսուրբ Աւետարանս յիշատակ հոգւոյ իմոյ ի դուռն սուրբ Կիրակոսի ի Բաղէշ քաղաքի, ընդ իշխանութեամբ Մարդանենց Կիրակոս քահանայի, որ հոգւոյ որդի է մեզ...։

## 72

### ԱՒԵՏԱՐԱՆ

Փիրղ. Նոտ. 182, Մուշ՝ Ղազարու վանք

գրիչ՝ Յովհաննէս
վայր՝ Արճէշ

Գրեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ Յովհաննէս քահանայի, ի ՋԳ (1455) ամին, ի հայրապետութեան տէր Գրիգորի, ի յերկիրս Քաջբերունի, ի քաղաքիս Արճէշ կոչեցեալ, ի դուռն սուրբ տաճարիս Գէորգեայ, ի թագաւորութեան Թուրքաց Ջհանշահի և քրդաց ամիր Շամշադնի*։

## 73

### ԱՒԵՏԱՐԱՆ

Փիրղ. Նոտ. 180—181, Մշոյ Խաս գիւղի եկեղեցի

վայր՝ Արճէշ

... Արդ, յանկ եղեալ Աւետարանս ի թուիս Հայոց ՋԴ. (1455), ի գաւառիս Քաջբերունոյ, ի քաղաքն որ կոչի Արճէշ, ընդ հովանեաւ սուրբ Գրիգորի։

* Փիրղալեմյանը ձեռքի տակ ունեցել է միայն հիշատակարանի բովանդակության համառոտ շարադրանքը՝ կատարված Արսեն վրդ. Թոխմախյանի կողմից։

## 74

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Փիրղ. Նշխարք, էջ 174—175, Նօտ. 177—178,*
*Բաղէշ՝ Ամրդօլու վանք*

*գրչի՝* Պօղոս
*վայր՝* Բաղէշ, Ամրդօլու վանք

... *Ուստի և տեսեալ սորա անճառ փրկագործութեան խորհուրդ ումն ի լուսածնեալ զարմից անուն պարոն* Ամիր-Դօլ: *Եւ ետ դրել զսա մեծաւ փափագմամբ և յօժար կամօք՝ հրամանաւ քաջ րաբունւոյս մերոյ* Ղազարոյ, *ի ստոյգ և յընտիր օրինակէ, յիշատակ հոգւոյ իւրոյ, և ծնողացն իւրոց՝ հօրն* Ամիր-Հասանին *և մօրն* Թավրէզ-Մելիքին, *և եղբարցն իւրոց պարոն* Թանաղնին, *պարոն* Ապտուլ-Քարամին, *պարոն* Կարապետին, *պարոն* Մկրտչին, *և քուերցն* Շիրին-խաթունին, Շադուն, Ամիրմելիքին, *և ամենայն ազգատոհմացն իւրոց...։* ԶԱմիր-Դօլն, *և զկողակիցն իւր* զՍլֆան-խաթուն, *և զծաղկեալ զաւակս իւր զպարոն* Գորգն, *և զդստերքն* զԹաւրէզ-Մելիքն *և* զԳօզալ-խաթուն... *(յիշեցէք)։*

*Եւ զանպիտան գրչակս* զՊօղոս *աբեղայ, և զհոգևոր հայր և ղուսուցիչ իմ* զՂազար *րաբունապետն, որ բաղում աշխատութեամբ և չարչարանօք սնոյց և հասոյց զմեզ ի կարգս քահանայութեան...։ Նաև զծնողքն իւր՝ զհայրն* զԱստուածատուրն *և զմայրն* զԱմէն-Տիկինն, *և զեղբարքն* զՊօղոս *և* զԲաղդասարն՝ *հանգուցեալսն ի Քրիստոս...։*

*Եւ զիս՝ զանհաւասարս ի կարգս կրօնաւորաց, ...նաև զմարմնաւոր ծնողքն իմ՝ զհայրն իմ* զՄխիթարն *և [զմայր իմ]* զՍիրմայ, *և զեղբարքն իմ* զԿիրակոս, *և* զՄարտիրոս, *և զխօճայ* Յակոբն...:

*Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի վանքս* Բաղիշոյ, *որ* Ամիրդօլ *վերաձայնի, ընդ հովանեաւ սուրբ Յովհաննու Կարապետին և սուրբ Սիոնի, ի թուականութեանս Հայոց [ՋԴ]. (1455)։*

## 75

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Փիրղ. Նօտ. 182, Մշոյ Առաքելոց վանք*

*գրիչ՝* Դաւիթ
*վայր՝* Բաղէշ

Դաւիթ *գրիչ յանձն առի գրել զսուրբ գիրքս ի դառն ժամանակիս, զոր կանք ի վշտի...։ Եւ գրեցաւ սա ընդ հովանեաւ սուրբ Կիրակոսին և սուրբ Ուղիտային, ի քաղաքս* Բաղէշ, *ի թուականիս Հայոց ՋԴ. (1455) յիշատակ* Սարգիս *կրօնաւորին**։

* *Հիշատակարանի բովանդակության համառոտ վերապատմությունը Փիրղալեմյանն առացել է Արսեն վրդ. Թոխմախյանից։*

## 76

## ԱՒԵՏԱՐԱՆ

*«Թորոս Աղբար», Բ., էջ 387—388, Արղնի բարձր. Աստուածածնի վանք, 66*

*վայր՝* Բազենից վանք

*Գրեալ ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի և նորաշէն սուրբ էջմիածնի, որ անուամբ* Բազէնից *վանք յորջորջի, ի հայրապետութեան տեառն* Գրիգորի *ընդհանուր Հայոց կաթողիկոսի, և յաթոռակալութեան մերոյս վիճակին՝ պարծանք պարծանաց կաթողիկէ եկեղեցւոյ սուրբ Խաչին Աղթամարայ տէր* Զաքարիայի *Հայոց կաթողիկոսի, ի թագաւորութեան* Ջհանշահի *որդւոյ* Ղարա-Եուսուֆի, *ի թուականիս մերում ՋԴ. (1455), յորում ժամանակի յոյժ ճշտիւ հարկապահանջութեամբ տառապի ազգս Հայոց։*

## 77

## ՄԱՍՆ ՃԱՇՈՑԻ

*Երևան 9216*

*գրիչ՝* Հայրապետ
*վայր՝* Աղթամար

12 ա *... Եւ արդ, ես անպիտանս ի բարեաց...* Հայրապետ *աբեղայ... բազում և մեծ աշխատութեամբ հասուցի զսա յաւարտումն յաստուածաբնակ կղզիս* Աղթամար, *ընդ հովանեաւ ամենայաղթ սուրբ Խաչիս և սուրբ Նշանիս, ի թուականութեանս Հայոց Ջ. ե Դ. (1455), ի հայրապետութեան տեառն* Զաքարիայի, *ի դառն և ի վըշտալից ժամանակիս, յորում խիստ ի նեղութեան և ի չար ծառայութեան կամք ազգին Նետողաց, զի յոյժ կեղեն և կեղեքեն զազգս քրիստոնէից։*

*... Քրիստոս աստուած, որ տէրն է փառաց և տուող ողորմութեանց, տացէ զիւր անըրաւ բարութիւնն և զառատ ողորմութիւնն ամենայն աշխարհի, եւ առաւել ստացողի սուրբ տառիս՝ երկու հարազատացն՝* Ստեփանոս *և* Աբրահամ *կրօնաւորացն, և ծնողաց նոցին* Դաւթին *և* Մարթային, *և եղբարցն՝* Յովսեփին *և* Հերապետին *և* Յակոբին *և* Մելքիսեդեկ *կրաւնաւորին...։*

*Դարձեալ և մեղապարտ* Հայրապետ *գծագրող սորա՝ զաղէտս տարակուսանաց իմոց առաջի մատուցեալ աղա||չեմ... յիշեսջիք ե զիմ անարժանութիւնս... նաև զընտրեալ փիլիսոփայն* զՄինասենց Թումայն՝ *զքեռին իմ, որ զգիրքս զայս ի ծննդենէն մինչ ի ծաղարդարն նա է գծագրեալ և յայսմ ամի դառն կըսկծանաւք մարմնոյն փոխեցաւ առ Քրիստոս։ Վասն որոյ յերես անգեալ աղաչեմ զսրբութիւնդ ձեր՝ բոլոր սրտիւ և ուղիղ մտօք աստուած-ողորմի ասացէք* Մինասենց Թումին, *և ծնաւղաց նորին* Սիմէոնի *և* Արղուն-Մելէքին, *և ծնաւղացն իմոց՝* Խաչատուրն *և* Ոսկիտիկնէն, *և եղբաւրն իմոյ* Յոհաննիսին, *և զաւակին իւրոյ* Մուրատ *սարկա-*

12բ

ւագին, և քեռին իմոյ Վարդ-տաքունին, և զայնոսիկ որք երախտաւորք եղեն ի պէտս մարմնաւոր և հոգևոր պիտոյից...։

## 78
## ՃԱՌԸՆՏԻՐ
Երևան 4682

գրիչ՝ Հայրապետ

26բ Սուրբ աստուածածնի բարեխաւսութեամբ Քրիստոս աստուած անճառ պարգևաց քոց արժանի արա զբարեպաշտ տանուտէրն զՅոհանէս, և զծնաւղքն իւր՝ զՖախրադին և զԱրմէլիք, և զկենակիցն իւր՝ զՄսըրմելիք, և զնորաբողբոջ զաւակսն իւր՝ զէզդինբաշխն, զԽուդաբաշխն և զԱղուպշայ, և քուերքն իւր Շանփաշայ և զԱլամշայ և զԲեկին, և զորդին իւր զՄիրանշէն, և զծնաւքն իւր*, և զամենայն արեան մերձաւորսն իւր՝ զկենդանիսն և զհանգուցեալսն։

Ընդ նոսին և ինձ ողորմեա, տէ՛ր Յիսուս, Հայրապետ** տրոհեալ մեղաւք հոգոյս, և իմ ծնաւղացն Խաչատուրն և Ոսկիտիկնէն, և հոչակաւոր և երախտաւոր քեռոյն իմոյ Մինասենց Թումայ աբեղային, և այլ ամենայն ազգականացն մերոց, կարդացողացն և լսողացդ, և քեզ փառք յաւ[իտեան]։

## 79
## ԱՒԵՏԱՐԱՆ
Երևան 5459

գրիչ՝ Իսրայէլ
վայր՝ Մոկք, Փասավանք գիւղ

349բ ... Ուստի տեսեալ զսորայս անճառ փրկագործութեան խորհուրդ ումն պատուական և հարկաւոր եղբարք Յովաննէս քահանայ և Յոհաննէս տանուտէրն՝ ի վաղուց հետէ ցանկացան այսմ աստուածախաւս սուրբ Աւետարանիս։ Եւ ետուն գրել զսայ յիշատակ հոգւոց իւրոց և ծնաւղացն, հօրն իւրեանց Մեծատրոյն, և մօրն իւրեանց Ջրճանին, և պապուն Աբրահամին, և կնոջն Արքայի, և զաւակաց նոցա Գրիգորին, և Աստուածատուրյն, և Սարգսին, և դստերացն՝ Արղունին և Բաղդատին, և սոցին պապուն՝ Գրիգորի, և կնոջն Մէլէքին, ամէն։ Եւ որք յիշեն զսոքայ լի սրտիւ և բոլոր հաւատով և աստուած յիշողացդ ողորմեսցի, ամէն։

350ա Այլ և զհարկաւոր կանայք սոցայ՝ Շաւ-Մէլէքին և Ուսլուն-Մելէքին, և զաւակաց սոցա Իսիբէկին՝ փոխեցելոյն առ Քրիստոս, և դեռաբոյս զաւակին Թովմային պահեսցէ մինչև ի խորին ծերութիւնն, Մարտիրոսին, Աբրահամին, և Սարգսին, և Վարդաշախին, Հազրավարդին, և Ալամին, և հաւրքըւերն Բաղդատին:

---

* Լրացման համար տեղ է թողնված։

** Նախորդ հիշատակարանի գրիչն է, նշանավոր գրիչ Թումա Մինասենցի քեռորդին, այդ իսկ պատճառով տեղադրում ենք նրան առընթեր՝ 1455-ի թվաշարքում։

Արդ, դրեցաւ սա յարքունական երկիրս Մոկաց, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս և սուրբ Գրիգորիս Հայոց լուսաւորչիս, որք աստ կան, և մասունք սրբոց Վարդանանցն, ի գեղս որ Փասայվանք կոչի, ձեռամբ անարհեստ /// Իսրայէլ սուտանուն քահանայի, ի թըւաբերութեանս Հայոց ՋԴ. (1455), ի խնդրոյ պատուական և իմաստուն տանուտրոջն Յոհաննի-սի և բարեսէր քահանային Յովանիսին: Քանզի յոյժ փափաքանօքետուն գրել զսուրբ Աւետարանս յիշատակ հոգւոց իւրոց և ծնողաց և ամենայն արեան մերձաւորացն, այլ և ի վայելումն անձին Յովաննէս քահանային, և դեռաբոյս զաւակին Թովմային, և եղբաւրն Յոհաննէսին, և զաւակաց նորա Մարտիրոսին, և Աբրահամին, և Սարգսին: Դարձեալ կրկին աղա-
350ր չեմ/// եկ]եղեցւոյ, [որ հանդի]պիք սմա կար[դալո]վ, կամ տեսանելով, կամ աւրինակելով յիշեսջիք ի յաղաւթս ձեր զպատուական տանուտէրն զՅոհաննէս, և զՅովաննէս քահանայն, և զծնաւղք սոցա, և զամենայն արեան մերձաւորքն, և զԴաւիթն:

Արդ, կրկին անկեալ աղաչեմ և յիշատակեմք զպարոն Յոհաննէս, և զկողակիցն իւր Շամէլէք, և զորդիքն՝ զՄարտիրոս, և զԱբրահամ, և զՍարգիս, զՅովաննէս քահանայն, և կնոջն Ուլուլյին, և տղայոցն Թով-մային /// բոյսին, և քուերն Ջուհարին և Խիբէկին, որ փոխեցաւ առ Քրիստոս։

Արդ, դրեցաւ սա ի հայրապետութեանն տէր Զաքարիայ Աղթամարցւոյ և ի թագաւորութեանն Ջըխանշայ ղանին։

Դարձեալ յիշեցէք ի Քրիստոս աստուած զԳրիկն անյիշատակ, և ըզ-կողակիցն իւր զՄարթայ, և զորդին իւր զնորշան, ամէն։ Եւ աստուած կարդացողացդ և յիշողացդ և լսողացդ ողորմեսցի, ամէն, և ինձ եղկելոյս և ծնօղաց իմոց և ամենայն երախտաւորացն, ամէն։

## 80

## ԱՒԵՏԱՐԱՆ

Փէրդ. Նոտ. 181, Վան՝ ս. Վարդան եկեղեցի

գրիչ՝ Յոհաննէս
վայր՝ Գամաղիէլի վանք

... Արդ, կատարեցաւ աստուածախօս Աւետարանս ձեռամբ Յոհան-նէս բանախնդրի, ի խնդրոյ նորաբողբոջ քահանային տէր Փիլիպպոսի, ...ի վանքս որ Գամաղիէլ կոչի, ընդ հովանեաւ առաքելոյս Գամաղիէլի և այլ սրբոցս, որ աստ կան, ի յառաջնորդութիւն վանացս Յոհաննէս վար-դապետի և Դաւիթ եպիսկոպոսի, և այլ կրօնաւորացս՝ Յոհաննէսին, և միւս Յոհաննէսին, Մխիթարին, և Յովանէսին, և մահդասու Սարգսին, և միւս Սարգսին, Ղազարին, Կարապետին, և Յոհաննէսին, որ յայսմ ամի առաջնորդ կարգեցաւ վանուցս։

Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի թուաբերութեանս Հայոց ՋԴ. (1455), ի դառն և ի նեղ ժամանակիս, ի ղանութեան ամիրղայ Ջիհանշին, և ի մեր քուրդ ամիրիս՝ ամիրզայ Ղասըմիս, զոր տէր աստուած անյաղ-թելի պահեսցէ զսա և քաղցրացուսցէ զսիրտ սորա ընդդէմ քրիստոնէիցս, ամէն։

## 81

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Սեբաստիա ս. Նշան 28. ՀԱ, 1925, սյուն. 132*

*գրիչ՝* Կարապետ
*վայր՝* Ասպաւէրուկ գիւղ

840 *... Արդ, գրեցաւ սուրբ... Աւետարանս ի թուականին ՋԴ. (1455), ձեռամբ իմով՝ անարժան և մեղսաթաւալ փանաքի և անարհեստ գրչի* Կարապետի*, որ անուն բարի ունիմ և գործ խաւարի...։*

*Արդ, յերեսս անկեալ աղաչեմ մանաւանդ ղդասս քահանայից, որք ընթեռնոյք ղսուրբ Աւետարանս, ի մեղսաքաւիչ և ի սուրբ աղաւթս ձեր (յիշեցէք) զստացող սորին՝ ղաւրհնութեանց արժանաւորն և զարժանին՝ զհաւատարիմ և զհամեստ տիկինն ղ*Դշխուն*, որ ստացաւ զսուրբ Աւետարանս ի հալալ ընչից իւրոց յիշատակ հոգւոյ իւրոյ, և առն իւրում պարոն* Պապին*, և հաւրն* Առաջ *պարոնին, և զաւակացն իւրոց՝ փոխեցելոցն ի Քրիստոս, և* Տարմանին*, և մաւրն* Շամf-խաթունին*, և հաւրն պարոն* Պապին*, և այլն ամենայն արեան մերձաւորացն՝ կենդանեացն և ննջեցելոցն։ Եւ ետ յիշատակ ի գեղս որ կոչի* Ասպաւէրուկ*, ի դուռն սուրբ եկեղեցւոյս, որ յանուն Ամենափրկչին, և սրբոյն Ստեփանոսի, և սրբոյն Սարգսի զաւրավարին, և սուրբ Յակոբին...։*

## 82

## ՄԱՇՏՈՑ ԵՒ ԳԱՆՁԱՐԱՆ

*Վիեն. 133, Տաշ. ցուց. էջ 423*

*գրիչ՝* Սարգիս
*վայր՝* Պառուագրակ

ա

270բ— *... Արդ, գրեցաւ սա ի թվականութեանս Հայոց ԲԾԴ. (1455) սուրբ*
271բ *եւ տիեզերալոյս համապիտան գրկունքս որ կոչի Մաշթոց, ի յանապատիս որ կոչի* Պառուագրակ*, ի դուռն սուրբ Կարապետիս եւ այլ բազմահաւաք սրբոցս որք աստ կան ժողովեալ։ Եւ յառաջնորդութեան անապատիս շնորհալի եւ պատուական կրաւնաւորին՝ տէր* Կարապետ *հայրապետին եւ այլ միաբան հոգեւոր եղբարց՝ տէր* Մկրտչի *եւ տէր* Ալէfսիանոսի *եւ այլոցս հաւասար՝ մեծի եւ փոքու։*

*Արդ, ստացաւ զսա բարեմիտ... տեսականաւն եւ գործականաւն [տէր* Վարդան *քահանայի, եւ հաւրն* Առաfելին*, եւ մաւրն* Խիկարին*, եւ համեստ տիկնոջն* Վարդենին *եւ ծնողացն]*։*

*Արդ, ես՝ ողորմելի, ի սատանայէ խոցած եւ մեղաւք լըցած, ազգի ազգի ապեղանացս եւ զանարժանս ի գրչաց զ*Սարգիսս *յիշեսջիք յաղաւթս ձեր։ Եմ վասն անբարի եւ գառն ժամանակիս յորում եմք՝ չէ կարողութիւն պատմել կամ ընդ գրով արկանել...։*

---

* *Փակագծերի մեջ առնված հատվածն ավելացված է հետո՝ ղատարկ թողնված տեղում։*

*Ընդ նմին յիշեսջիք եւ զանարժան գրիչս եւ զծնաւղսն մեր եւ զամենայն արեան մերձաւորս եւ մեղաց թողութիւն խնդրեցէք...։*

Բ

50բ *Ո՛վ եղբայրք, մի մեղադրէք, գիտենայք, որ այլ չի կայր ի յողբէս, վասն այնոր համար կիսակատար մնաց, եւ այլ աւրինակի ճար չկայր, քանզի յանճարակ տեղի էր։*

83

## *ԱՒԵՏԱՐԱՆ*

***Փիրղ. Նօտ. 179, Բաբերդ՝ ս. Հրեշտակապետ եկեղեցի***

*գրիչ՝* Աւետիք
*վայր՝* ի գաւառս Խախուայ և Թորթոմայ

*Գրեցաւ սուրբ Աւետարանս ի թուիս Հայոց ՋԴ. (1455), ի գաւառս* Խախուայ *և* Թորթոմայ, *ի վանս որ կոչի* Ագրգի*, *...ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս՝ լուսազարդ տաճարին, և ... ձեռամբ անարհեստ գրչի* Աւետիք *աբեղայի։*

84

## *ՍԱՂՄՈՍԱՐԱՆ*

***ՄՑՎ 27 (149), հտ. Ա. 189—190***

*գրիչ՝* Յակոբ
*վայր՝* Տրապիզոն

259ա *... Գրեցաւ Սաղմոսարանս այս ի թվին ԹՃԴ. (1455) ամի, և աւարտեցաւ փետրուարի մին, ձեռամբ ապիկար գրչի* Յակոբ *սուտանուն աբեղի։ Եւ եղի զսա ի հռչակաւոր մենաստանս* Տրապիզոնու, *որ կոչի Վերի Աստուածածին, յիշատակ ինձ և ծնաւղաց իմոց և եղբարցն իմոց, և այլ ամենայն մերձաւորաց իմոց։*

*Արդ, աղաչեմ զձեզ, ո՛վ սուրբ ընթերցողք, որք հանդիպիք սմա կարդալով և կամ աւրինակելով, յիշեցէք զգծող սորա զսուտանուն աբեղաս* զՅակոբս, *զի վասն այս յուսոյս գրեցի և եդի յիշատակ ինձ և ծնաւղաց իմոց...։*

*Ո՛վ սուրբ եղբարք, խոշորութեան և սխալանացս անմեղադրելի լերուք, ղի կար մեր այս չափ էր։ Նաև զպատուելի եղբայրն իմ՝ զվերատեսուչ քաղաքիս՝ զառաքինասէր և զճգնազգեաց զտէր* Յոհաննէս *եպիսկոպոսն, և զայլ միեղէն զսրբասնեալ կրաւնաւորքս՝* զԱռաքել *աբեղան, և* զՄարկոս *աբեղան, և* զՄերուն *աբեղան, և* զԱւետիք *աբեղան. ընդ նմին և զմանկ/// կրաւնաւորքս* զԱստուածատուր *աբեղան և* Աւետիք *աբեղան՝ զծաղկողս սորայ (յիշեցէք)։*

---

** Նղծված է եղել. «Ագրգի» ընթերցվածքը թեական է։*

## 85

### ԳԱՆՁԱՐԱՆ

Ն. Ջուղա, 313, Մ.Տ.Մ.

գրիչ՝ Խաչատուր
վայր՝ Կաֆայ

3ա Աւաղ հարիւր հազար բերան,
Զիբախն էառ զմեծըն Կաֆան
Ի՞րն հարիւր հայոց թուական
Եւ չորս թիւն է լրման///*

## 86

### ԱՒԵՏԱՐԱՆ

ՄՑՀ հա. Ա. 23, էջ 58—59

գրիչ՝ Թադէոս
վայր՝ Մեծ ի Երուսաղէմ

475 Յամի իննհարիւրերորդի և չորրորդի թուականիս հայկազեան տումարի (1455) աւարտագործեալ եղև աստուածախաւս և կենսատու սուրբ Աւետարանս...

Բայց արդ, գրեցաւ սա ձեռամբ յոգնամեղ և սուտանուն երիցուն և անարհեստ գրչի Թադէոս սուտանուն սարկաւագի, ի լաւ և ընտիր աւրինակէ, ի սահմանս սուրբ քաղաքիս Երուսաղէմի, ի հռչակաւոր անապատս՝ ի վանս սրբոյն Սաբայի, ընդ հովանեաւ և որ անդ են հանգուցեալ։

Դարձեալ, աղաչեմ զամենեսեան վասն սիրոյն Քրիստոսի, որ յանդիպիք այսմ լուսազարդ սուրբ կտակիս՝ մեղաց թողութիւն հայցեցէք ի պարգևողէն հասարակաց՝ վերագրելոցս ի սմա, և վասն խոշորութեան և կամ սղալմանց որ ի սմա չլինել մեղադիր, այլ սիրով ուղղել, քանզի կար մեր այսչափ էր։ Եւ դարձեալ, աղաչեմ զձեզ, զի յիշեսջիք զհոգևոր եղբարսն իմ զՅովհաննէսն, որ զթուղթս կոկեաց, և զՄարկոս միայնակեացն և զՍտեփաննոս, և զամենայն երախտաւորսն մեր, և զմիաբանքս սուրբ Փրկչիս...։

## 87

### ԱՒԵՏԱՐԱՆ

Վիեն. 278. Տաշ. ցուց. էջ 700

կազմող՝ Յոհաննէս

1բ Ի թվականիս Հայոց ՋԴ. (1455)** ձեռամբ Յովհաննէս դպրի մեղաւք ի լի։

---

* Գրիչ Խաչատուրը ձեռագրի ընդօրինակությունն ավարտել է տարիներ հետո՝ 1483 թվականին։ Այդ առթիվ գրած նրա հիշատակարանը տե՛ս 1483-ի թվաշարքում։

** Հրատարակիչ Տաշյանի ծանոթագրության համաձայն, որոշ կարդացվում է միայն տարեթվի «Ջ» թվանշանը. ուստի հիշատակագրության գրության ժամանակը որոշակի է միայն 1451—1551 հարյուրամյակի սահմաններում։

Արդ, աչաղեմ զամենեսեան որք կարդայք զսուրբ Աւետարանս՝ մեղաց թողութիւն հայցեցէք ի Քրիստոսէ, եւ որ զամէնն աս[է՞] Երուսաղէմացի Յովհաննէսի՝ նմայ տէր ողորմեսցի, ամէն։

88

МАШТОЦ

Քեշիշյան, Յուց. Զմմառի, 59

գրիչ՝ Մարկոս

ա

58բ Զմարկոս զմեղաւք գծողս յիշեցէք յարժանաւոր յաղաւթս ձեր։

բ

Յորժամ զվերար ղնես զմեղաւք գործով զՄարկոս յիշեայ*։

գ

93բ Գրեցաւ ի թուականութեանս Հայոց ՋԴ. (1455), ի յապրիլ ամսոյ**։

---

* Գրված է 90բ—91ա էջերի վարի լուսանցքների վրա։

** ՀԱ, 1900 թ., էջ 59-ում, հրատարակված „Tre armeniska miniatyr hanskrifter" հոդվածից տեղեկություն ենք ստանում մի Ավետարանի մասին, որն ընդօրինակված է 1455 թ. Տփխիսում, Յովհաննէս քահանայի ձեռքով, ծաղկողն է Մանուէլ քահանան։

Տեղեկություն ունենք նաև նույն թվականին, Տիվրիկում, ի դրունս սուրբ Աստուածածնի, Քրիստոսատուր գրչի կողմից ընդօրինակված մի Մաշտոցի մասին։



ՋԵ 1456

## 89

## ՔԱՐՈԶԳԻՐՔ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑԻՈՅ

*«Էջմիածին», 1952 թ. հուլիս, էջ 48--50**

*գրիչ և ծաղկող՝* Մարիամ
*վայր՝* Ջուղայ

ա

512ա *Ի թիւ Հայոց ՋԵ. (1456) գրեցաւ ի* Ջուղայ *Քարոզգիրքս* Գրիգորի Տաթևացւոյ:

բ

261 *Զբազմամեղս յամենայնի զ*Մարիամ *անուն, որ միայն զանունս [ում]իմ և ոչ զիր և զծնօղսն իմ աղաչեմ յիշեալ ի տէր բարի կամաւք։*

գ

433 *Այլև ես՝ մեղօք մածեալ և մոլորեալ ոգի* Մարիամ *սիրող բանի՝ յերեսս անկեալ աղաչեմ զհանդիպողսդ, զի և մեզ խնդրեցէք զթողութիւն ի յահեղ ատեան Քրիստոսի։*

դ

645 *Եւ զանպիտան* Մարիամ *գրիչս յիշել աղաչեմ վասն աստուծոյ ով ոք հանդիպիք։*

ե

723 *Ցիշեա Քրիստոս աստուած զանպիտան գծողս* Մարիամ *ապաշխարողս, և ծնօղս իմ զ[հ]ոգևոր և զմարմնաւորսն, և զամենայն երախտաւորսն իմ. և դուք յիշեալ լիջիք ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, և նմա փառք յաւիտեանս, ամէն։*

## 90

## Տ Օ Ն Ա Կ Ա Ն

*Երևան 993*

*գրիչ՝* Մաքէոս
*վայր՝* Վերի-Նորավանք

767ա *... Սովորութիւն է աստուածային արանց միշտ խոկալ յաստուածային պատուիրանս ի տուէ և ի գիշերի և յար և հանապազ զվերինն խորհել, ուր Քրիստոս նստի ընդ աջմէ աստուծոյ։ Եւ արդ, յաղագս բազում պատճառաց ազգ մարդկան փափագին շերմեռանդն սիրով և ըղձալի ցանկութեամբ արդիւնս բարութեան և գործս աստուածահաճոյս կատարել ի փառս աստուծոյ...**։*

---

** Ա. Երեմյանի «Տասնհինգերորդ դարի մի անհայտ նկարչուհի» հոդվածից։ Հոդվածագիրը հայտնում է, որ ձեռագիրը գտնվում է Իրանի Չարմահալ գավառի հայաբնակ Մամուռան գյուղում։*

*** Թվարկում է, մանրամասնորեն կանգ առնելով յուրաքանչյուրի վրա, «աստուածահաճոյ» գործերի 12 պատճառները (Վասն յուսոյ արքայութեան, Վասն պայծառութեան եկեղեցւոյ եւայլն, եւայլն)։*

768ա ... Սոյնպէս և ես՝ Հէքս Մաքէոս էրէց՝ ամենայն յաւժարութեամբ և ջերմ սիրով ցանկացայ այսմ աստուածատունկ բուրաստանիս...։

Հոգէլից սուրբ գիրքս այս Տօնական դրախտ է լուսեղէն և աստուածազարդ, ձեռաւքն աստուծոյ տընկեալ և վայելչացեալ, [ք]անզի կայ ի սմա տնկեալ ծառ ամէնաւրհնեալ աստուածածին կոյսն Մարիամ, որ ետ մեզ անմահութեան պտուղ զտէր մեր Յիսուս Քրիստոս՝ զորդին աստուծոյ՝ աստուածն ամենայնի։ [Եւ] կայ ի սմա տնկեալ ծառ՝ դասք առաքելոց, գունդք մարգարէից, շոմդք մարտիրոսացն, փայլմունք վարդապետացն, գումարք հայրապետացն, խումբ սուրբ կուսանացն, ջոլիրք նահատակացն, ճառք ճգնաւորաց, կըրօնք կրօնաւորացն, վարք վանականացն, հըսկմունք աղաւթականացն, պատմութիւնք թագաւորացն, զըրոյցք զօրականացն, զաւրութիւնք ղաւրավարացն, գութք ողորմածացն, արիութիւնք ողջախոհ սրբուհեաց կանանցն, ընդդէմ կարեաց բնութեան պատերազմն միանձնացելոց անձանցն ի յայրս և ի ծերպս եւ սիմակեաց միայնակեցացն։ [Ա]յլ և դլուխ ամեայնի՝ տաւնք տէրունականացն եւ այլ բազմութիւնք անհամար սրբոց, որ ոչ կարացաք յիշատակել աստ զանուանս նոցա, որք դրեալ կան ի դպրութեան յաւիտենական կենացն, վասն որոյ ըղձալի փափագմամբ հէքս Մաթէոս բազում սիրով գըծագրեցի զհրաշափառ զարմանազան և զհոգիաբուխ սուրբ Տամականս...։

768բ ... [Բ]ա՛, և յիշեցէք ի բարի զգերադրական հարազատսն իմ ըզսրբասնեալ վանականսն զԻգնատիոս՝ զանխուլ խարազն, արթնական ճգնազգեացն, եւ զԵսայիՆ՝ բանիբուն փիլիսոփայն և անհաս նըկարող, որ երփն երփն գունով ծաղկափթիթ զարդարեաց ըզհրաշափառ մեծաշուք սուրբ Տօնականս և կազմեալ ըզսա արար զձեռագործ սըտրուկ վըտիտ հէք փանաքիս Մաթէոսի՝ պատարում լիապէս կատարելումակ, զոր գըրեալ կայր սա զամս իբրև քսանից։

Զոր տէր աստուած վայելել տացէ սոցա ըզհրաշափառ Տամականս մեծաշուք՝ ընդ երկայն ժամանակաւ, եղբարբն իւրեանց Թադէոս քահանայիւ և Ստեփանոս, եւ նոցին հարազատաւքն՝ Ռըստակիսիւն և Յուսկանաւն. այլ և ըզկուսութեամբ ճըգնեալ եւ ըզըրմաւին պահող քոյր սոցին և սաղմոսող աւրհնութեան արժանի արարէք, որ բազում աշխատութեամբ սպասաւորեաց մեզ, նաև զմայր սոցա, որ զամս Լ. (30) մեծաւ ճըգնութեամբ, պահաւք և աղաւթիւք, ապաշխարութեամբ կեցեալ՝ փոխեցաւ առ Քրիստոս։

Այլ և զհայրն իմ ըզմեծն Սուլդան և զեղբայրն իւր զԻկիթ աղայն և զՔոչբեկ, և զմայրն իմ զպարոն Թուխթէնի և ըզԹուխծամ, որք բազում երախտիք ունին ի վերայ իմ թշուառացելոյս, և զեղբարսն իմ զՓառուխշահն և ըզՍալուճշահն յիշեցէք առ Քրիստոս։

Դարձեալ, ես անարժան գծագրող հրաշափառ Տօնականիս, որ և մոխիր և մոծիր եմ եղեալ բաղանեաց, մրճոտեալ, աղտեղեալ դոմով զազրութեան իբր ըզպաշտօնատար մեհենեաց։ Վասն զի հատեալ է ի մէնչ ճարն առ ի գործո զբարին և ապաշխարելոյ, զի ճանաչեմ զլոյսն և ընթանամ առ խաւարն, վասն որոյ աւաղ և եղուկ է ինձ՝ մահապարտ կործանեցելոյս։ Սակայն ակմկալութիւն մեր և յոյս Քրիստոս է և գութ սիրոյդ

ձերոյ, որ յամենայն ամի՝ յաւուր ճրագալուցի աստուածայայտութեանն ըզսակաւ յիշատակիկս մեր կարգայք ի լուր ամենայն հասարակ ժողովըրդեանն և մին հանգստեան աւետարան կարդայք, սաղմոս՝ Երանեալ են ամբիծք և Քրիստոս որդի աստուծոյ. եւ ամենեքեան ասիցեն Քրիստոս աստուած թողու զամենայն մեղս գրողին քոյ։

Գրեցաւ հրաշափառ Տօնականս ի Վերի-Նորավանս, թվին ՋԵ. (1456), ի փառս հաւր և որդոյ և ամենասուրբ հոգւոյն աստուծոյ։

## 91

## ՔԱՂՈՒԱԾՈՑ ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԱՒԵՏԱՐԱՆԱՑՆ ՄԱՏԹԷՈՍԻ ԵՒ ՅՈՎՀԱՆՆՈՒ, ԱՐԱՐԵԱԼ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՑ

Երևան 1300

գրիչ՝ Մաքէոս

210բ ... Վասն որոյ ես՝ Մաքէոս աղշամուղջ մեղօք խաւարեալս հոգով՝ վացսնամեայ գոլով ցանկացող եղէ այսմ կեցուցիչ, անմահացուցիչ, աստուածային, լուսափայլ, շափիւղաշար հրամանացս սակս ընկղմելոյս ի խորս խաւարին, սատար լինել կործանեցելոյս առ ի պատճառս վերաբերութեան և կրկին նորոգման։

Արդ, գրեցաւ ծաղկաքէտ, անուշահոտ բուրաստան անմահութեամբ առլցեալ մարգարտաշար քաղուածոյքս սուրբ Աւետարանին Մաթէոսի և Յոհաննու ձեռամբ նոյն վերասացեալ ամենապատիժ Մաքէոսի կործանեցելոյս, առ ի վայելումն հարազատին իմոյ Իգնատիոս աբեղային, թվիս ՋԵ. (1456)։

## 92

## ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ ԱՒԵՏԱՐԱՆԻ

Երևան 9223,ժգ

ստացող՝ Վրթանէս
վայր՝ Աղուանք, Գետամիջոյ վանք

2ա ... Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ մտերիմ և անընդաբոյս և ամենայն առաքինութեամբ զարդարեալ՝ տեսականաւն և գործնականաւն՝ Թովմայի կուսակրաւն աբեղայի, ի թ[վ]ականութեանս հայկազեան տումարի ՋԵ. (1456), ի հայրապետութեան Աղուանից նահանգի տեառն Յոհանիսի՝ որդոյ մեծի իշխանին Հայոց պարոն Ջալալին, և յաշխարհակալութեանն արեանարբու բռնաւորին Ջհանշայի, ի սուրբ և ի հռչակաւոր վանքս Գետամիջոյ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, և Մարդաղօնեաց սուրբ Ստեփանոսիս, և այլ բազմութեան սրբոց։

Արդ, ես՝ Վրթանէս քահանայ, մեծաւ փափագանաւք ըստացայ զսուրբ Աւետարանս ի հալալ արդեանց իմոց, ի վայելումն անձին իմոյ և յիշատակ հոգոց մերոց՝ հաւրն իմոյ Մուրատ աղին, և մաւրն իմոյ Սա-

ռային, և ամուսնոյն իմ պարոն Կուլփաշին, և եղբարց իմոց՝ Պաշատադին, և Նատիրին, և Լիկին, և Սիրանին, և Շահումին, և ամենայն արեան մերձաւորաց՝ կենդանեաց և հանգուցելոց...։

## 93

## ՃԱՇՈՑ

Երեւան 4519

վայր՝ Բասեն

107բ Ո՛վ լոյսերամից դասք քահանայից՝ որդիք վերինն Երուսաղէմի, որք հանդիպմամբ պատահիք այսմ լուսանկար շաւղի և հոգէլից պողոտայի ընթերցմամբ կամ գաղափարաւ, յիշեսջիք ի մաքրափայլ յաղօթս ձեր ստացաւղ սուրբ կտակիս զամենայն բարեաց պատճառ զպարոն Կիրակոսն, և զկենակիցն իւր զԽոյանտն, և զաւակն իւրեանց զԹուրվանդան և զՀասրաթն։ Եւ եդիր ի դուռս սուրբ ուխտիս ի վանս որ կոչի Սպիտակ վանք, յիշատակ իւր, և հաւր իւրոյ Թաւաֆալին, և մաւր իւրոյ Եղիսայբերին, և եղբարց իւրոց Խոցադեղին և Յովանիսին, և որդոց նոցին Սատաղին և Թաքարին, Հայտարին և Պատրսղին, Շնոփորին, և ամենայն արեան մերձաւորաց պարոն Կիրակոսին։ Եւ սոքա դրին զգիրքս ի դուռս սուրբ Աստուածածնիս, ի հայրապետութիւն արհեպիսկոպոսիս տէր Յուսկանս և տեսուչ Բասենու գաւառիս և Ախտեացն գաւառին, և վկայութեամբ սորա, և տէր Մխիթար եպիսկոպոսիս, և ռռայիս Մարտիրոսիս, որ գնեցին ԲՌ. (2000) նաղտ սպիտակ ռռայիս Կիրակոսին յարդար վաստակոց, և եդիր յիշատակ ի սուրբ Աստուածածնիս դուռն ի Սպիտակ վանքս, անջինջ յիշատակ իւր և ծնաւղաց իւրոց։ Եւ այլ ով ոք ոչ ունի իշխանութիւն ի Կիրակոսիս ազգականացն, և ի վանիցս առաջնորդաց, կամ եպիսկոպոս, կամ հարպետ, կամ աբեղայ, կամ աշխարհական, կամ ով ոք իցէ. և ով որ խնամով պահէ՝ զպարգեւքն ի սուրբ Աստուածածնէս առնու, և ով որ սուտ տէր կանգնի կամ ծախելոյ կամ խորելոյ կամ պակասութիւն ենելոյ՝ զպատիժն ի սուրբ Աստուածածնէն առնու։ Եւ պատճառ բարեաց սուրբ գրոցս արհեպիսկոպոս տէր Յուսիկս եղաւ, որ յորդորեաց զպարոն Կիրակոսս ի գնել զգիրքս, շատ պարգեւք կայ յորդորողին, և աստուած զամէն հաւասար արքայութեան արժանի առնէ, ամէն։

Գրեցաւ ՋԵ. (1456)։

## 94

## ԱՒԵՏԱՐԱՆ

Նոր Ջուղա, Ս. Տեր-Ավետիսյան, Ցուցակ, էջ 142

կազմող՝ Սառանենց

վայր՝ Սալմա՞ստ

431ա Սուրբ Աւետարանս գերի էր անկեալ ի ձեռն այլազգաց Թարվէզ, և ես՝ տէր Ղազարս, և եղբայրն իմ Բլէլն, և զհայրն մեզ Իսաքն, և զմայր մեր Խամուշն հանդիպեցանք՝ գնեցինք յիշատակ մեր, և որդոցն մերոց՝

Ազարիային, Ջաֆարիային, Անան[ի]ային, Իսաքին, Ալէքսանին, Իսրայէլին, Սարգսին, Գիւարկզին, Մինասին, *և զհոգևոր եղբայրն* ///

*... Դարձեալ, ո՛վ եղբայր, այն ժամանակ կազմեցաւ սուրբ Աւետարանս, որ* Սալմաստայ *քաղաքի ժողովուրդն* Անարայ *բերին ի յիւրեանց տեղն։ Կազմեցի ես՝* Սառանենցըս *զԱւետարանս ի թւին Հայոց ՋԵ. (1456), ի փառս Քրիստոսի աստուծոյ մերոյ։*

## 95

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Սալմաստի Սավրա գյուղ, Ցուցակ Ն. Գաղեանի Բ., էջ 55*

*գրիչ՝* Յովսէփ
*վայր՝* Քաջբերունիք, Յականց գիւղ

*Գրեալ ի գեաւղս* Յականց, *յերկիրս* Քաջբերունի, *ընդ հովանեաւ սուրբ Թադէոսի առաքելոյս, ձեռամբ* Յովսէփ *երիցու։*

## 96

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 4646*

*գրիչ՝* Ստեփանոս
*վայր՝* Բաղէշ

ա

281ա *... Եւ արդ, ես՝ կրսերս յորդիս եկեղեցւոյ և անպիտանս ի քահանայս* Ստեփանոս, *ցանկացող եղէ աստուածախաւս և աւետաբեր սուրբ Աւետարանիս և գտի ստոյգ և ընտիր աւրինակ, զոր գրեալ էր* Թորոս *փիլիսոփայն ի* Դրազարկն *և յուղարկեալ հռչակաւոր ուխտին սուրբ Առաքելոցն* Տարոնւոյ, *որ կոչի Ղազարու վանք, և զնա աւրինակեալ* Յովանէս *գրիչ* Աղեքընին: *Եւ իմ առեալ գրեցի զսա անարժան ձեռաւք իմովք ի թվականիս Հայոց Ջ. և Ե. (1456) ամի, ի քաղաքս* Բաղէշ, *ընդ հովանեաւ սուրբ Սարգսին, և ի հայրապետութեան տեառն* Գրիգորի՝ Վաղարշապատոյ էջմիածնի, *և ի խանութիւնն* Ջըճանշայ *ամիրզի, ի չար ժամանակի յորմէ արդարութեան կողմն նուազեալ և անիրաւութիւն յամենայն կողմանց զաւրացեալ։ Եւ կատարեցաւ բան մարգարէին, որ ասէ, թէ՝ Գոյ ժամանակ, որ ասիցեն լերանց թէ անկերուք ի վերայ մեր։*

*Արդ, որք ընթեռնուք զսա կամ աւրինակէք յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զստացւող սորա* զՀուփսիմէ *մահդասին, և զծնաւղսն, և զամենայն ազգականսն, և սիրոն [դուստ]րն* զՂըփչախ, *[այլ] և զպատուական րաբունին և զքաջ նահատակն* զԳրիգոր*, *որ ի բազում տեղիս չարչարեալ և զանձն ի մահ տուեալ վասն սիրոյն Քրիստոսի, և դեռևս*

---

** Ձեռագրի ծբ էջի «Համբարձման» նկարի աջ մասում, կանգնած դիրքով, նկարված է այս Գրիգոր վարդապետը, ձախ մասում Հռիփսիմէն՝ «Մաղդասին է» մակագրությամբ։ Նկարի ձախ լուսանցքում ծաղկազարդ աղոթում են՝ Ուսլումէլիքը և Ցուսէփը։*

Նկ. 8. Գրիգոր բարունու, ձեռագրի ստացող Հռիփսիմէ մահդասու,
Նրա եղբոր կնոջ՝ Ռուսլումէլիքի ու եղբորորդու՝ Յուսէփի պատկերները

սիրտն ի նահատակութիւն է։ Յիշեցէք ի սուրբ յաղաւթս ձեր և լի սրտով
282ա աստուած-ողորմի ասացէք իւրն և ծնաւղացն իւրոց, որ միջնորդ եղև||
սուրբ [Աւետարանիս և]* մեք զհրամանս նորա կատարեցաք, թերևս աղաւթիւք նորա կեցցուք։

Ընդ նոսին և զանարհեստ գրիչս զՍտեփանոս և զմեր ծնաւղսն յիշեցէք ի Քրիստոս։ Եւ ա[ղա]չեմ չխնել մեզ մեղադիր խոշորութեան և սխալանաց, զի խոշորութեան գրոյն՝ ողորդութեան բանին ծածկէ, զի ըստ կարի մերում յոյժ աշխատեցաք ի սմա և զինչ աւրինակն էր՝ դրեցաք ստուգութեամբ։ Եւ որ զմեզ յիշէ՝ զվերագրեալքս ի սմա, և դուք յիշեալ լիջիք յողորմութիւնն աստուծոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

Դարձեալ յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զստացաւղ սորա զՀռփսիմէ մահդասին, և զեղբայրն իւր զխուճ Մարզարէն, և զկողակիցն իւր զՈւսլումելիքն, և զաւակն իւրեանց զՈւսէփն, և զամենայն արեան մերձաւորս իւրեանց, ամէն։

Աղաչեմ զձեզ՝ զմանկունքդ եկեղեցոյ՝ յիշեսջիք զսուտանուն Մինաս
282բ քահանայ, որ զսակաւ դիրս գրեցի. զհամաքարբառն և|| զչորս գլուխ Աւետարանին առաջքն դրեցաք և ծաղկեցաք։ Յիշեսջիք և զուսուցիչն մեր՝ ըզտէր Գորգն և զՄկրտիչ խերպետն և զծնաւղսն մեր, և աստուած ըզձեզ յիշէ յիւր յարքայութիւն, ամէն։

Բ

Դարձեալ, կրկին անկամ աղաչեմ յիշման արժանի առնել յերկնաքացիկ յաղաւթս ձեր զվերոյասացեալ Հռիփսիմէն՝ զտէր Աւետարանիս, որ ստացաւ զսա ի հալալ արդեանց իւրոց, և ետ զսա ի ձեռս տէր Ստեփանոս քահանայի և ի վայելումն որդոց նորին՝ տէր Գրիգորին, և եղբօր նորին Միխայելին, և տէր Գրիգորու որդւոցն՝ տէր Հէրպետ կրօնաւորին, յորոյ անուն Աւետարանս է, և եղբարց նորին՝ Աբրահամին, Սահակին և Յովսեփին, և Միխայելի որդւոցն՝ Շէկուն և Գաւրգուն, և թոռանց տէր Գրիգորուն՝ Յակոբին և Ամիրբէկին, և քեռցն տէր Գրիգորուն՝ Մուղալին,
283ա Մէն||րուքանին, Խանր-Ազրզին և Նարգզին, և այլ ամենայն արեան մերձաւորաց նոցին՝ կենդանեաց և հանգուցելոցն։

Եւ դարձեալ, կրկին անգամ աղաչեմք ըզձեզ, ո՜վ դասք սուրբ քահանայից, յորժամ հանդիպիք սուրբ Աւետարանիս կարդալով կամ աւրինակելով, յերես անկեալ աղաչեմ զձեզ, կրկին յիշման արժանի առնել զ[հ]եզահոդի մամն՝ զՀռիփսիմէն, որ ետ զսուրբ Աւետարանս անջինջ յիշատակ տէր Ստեփանոս քահանային, և որդոց նորին Գրիգոր քահանային, և որդւոց նորին՝ տէր Հէրապետ կրօնաւորին, և այլ եղբարց նորին, զոր տէր աստուած վայելել տացէ նոցին ի յերկար ժամանակի՝ մինչ ի խորին ծերութիւնն ամէն...**։

---

* 282ա էջի առաջին սյունակի առաջին տողի վրա կարդացվում է միայն սր. (սուրբ) բառը՝ Հաջորդ տառերը հիմնավորապես ջնջված են։ Փակագծերի մեջ տվել ենք ըստ իմաստի ամենահավանական ընթերցվածքը։

** Բ. հիշատակարանը գրված է այլ ձեռագրով։

## 97

### ԱՒԵՏԱՐԱՆ

Ն. Ջուղա, 341, Մ. Տ. Մ.

գրիչ՝ Ստեփանոս
վայր՝ Բաղէշ

... Ստեփանոս... *գափ ստոյգ և ընտիր աւրինակ, զոր գրեալ էր* Թո-րոս *փիլիսոփայն ի* Դրազարկն *և յուղարկեալ հռչակաւոր ուխտին սուրբ Առաքելոցն* Տարաւնոյ, *որ կոչի* Ղազարու վանf. *և իմ առեալ գրեցի զսա անարժան ձեռաւք իմովք ի մերո Հայոց թուականիս* ՋԵ. *(1456), ի քաղաքիս* Բաղիշոյ, *ընդ հովանեաւ սուրբ Սարգսի, և Գէորգեա զաւրավարի, և սուրբ Ստեփանոս Նախավկայիս, ի հայրապետութեան տեառն* Գրիգորի *և ի խանութեանն* Ջհանշայ *ամիրզին, ի նուրբ և ի չար ժամանակիս...։* [*Աղաչեմ*] *յիշել... զծնողսն մեր* զՀայրապետ *քահանայ և* զՆազխաթուն՝ *զհանգուցեալսն ի Քրիստոս..., զորբասէր քահանայս* զՄխիթար, *և* զԿարապետ Նաղաշ, *որ զաւրինակն շնորհեաց...։*

## 98

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 5629

գրիչ՝ Յովանէս Մանգասարենց

ա

335բ ... *Գրեցաւ աւետարեր սուրբ Աւետարանս ի մեծ թուականիս Հայոց*
ՋԵ. *(1456) ամին։ Որ և մեծաւ փափագանաւք ցանկացաւղ եղեւ այս*
*մարգարտաշար Աւետարանիս երանաշնորհ և հեզահոգի կրաւնաւորն*
Վարդան *հէրպետն. և ետ գրել զսա ի յիշատակ հոգւոյ իւրոյ, բարի ծը-*
*նաւղացն՝ հաւրն* Ղազարին *և մօրն* Մարեմին, *և եղբարցն՝* Աբդլմըսեհին *և*
336ա Առաfելին.|| *հաստատուն պահեսցէ զնա մինչ ի խորին ծերութիւն զին-*
*քըն և զիւր հրեշտակակրօն միաբանքն՝ զսուրբ կրօնաւորքն՝ զտէր* Ոսաա-
կէսն, *զտէր* Մկրտիչն, *զտէր* Գալուստն, *զտէր* Ղազարն, *զտէր* Առաfելն,
*զտէր* Ծերունն, *զտէր* Մեսրոպն, *զտէր* Ստեփանոսն, *զտէր* Յոհանէս *եկե-*
*ղեցպանն, զմիւս տէր* Յոհանէս, *զերեք տէր* Կարապետն, *զերկու տէր*
Հէրապետն, *զտէր* Մովսէսն, *զտէր* Միfայէլն, *զԲ. (2) տէր* Յակոբն, *զտէր*
Յովանէսն, զԳրիգոր *միակեցն, զտնտես* Ստեփանոսն, *զհայր* Մարգա-
րէն, *զմաճկալ* Յուսէփն, *և զհանգուցեալն ի Քրիստոս* զՇահիկն, զՆեր-
սէս սարկաւագն, *և* զՅովանէս *սարկաւագն։*

336բ *Զմեղապարտ գրիչս* Յով[անէս] Մարգասարենց, *և զերախտաւոր ուսուցիչն իմ* զԹումա *րաբունի, և զծնաւղսն իմ յիշեցէք ի Քրիստոս։*

բ

33բ *Տէր* Վարդան *սուրբ հայր, անհնար է ի կապած գիրք համաբարբառ գրել, բայց տէր սրբութեան քո ետ գրել զայս, զի իմ մահու աւուրն կանգնիս։*

Գ

*Ո՛վ սուրբ մանգոմք նոր Սիոնի զՄինաս նկարողս յիշման արէք գիս արժանի*։*



*Նկ. 4. Նմուշ Մինաս նկարչի գործերից*

99

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 5383*

*գրիչ՝* Մինաս
*վայր՝* Արճէշ, Գայթիս գիւղ

*... Արդ, յանկ ելեալ աւարտեցաւ աստուածախաւս և աւետաբեր սուրբ*
*Աւետարանս ի թուիս Հայոց* ՋԵ. *(1456), ի գաւառիս* Քաջբերունոյ, *որ*
270ա *կոչի* Արճէշ, *ի գեղս* Գայթիս, *ընդ հովանեաւ|| սուրբ Աստուածածնինն և*
*սուրբ Երրորդութենին և սուրբ Ուռընկարու սուրբ Նշանինն:*

*Այլ և արդ, գրեցաւ սա ձեռամբ* Մինասի *մեղսամակարթ գրչի, ի խնդրոյ* Ամիրբէկի, *որ ստացաւ զսա ոչ ի յավելորդաց և կամ ի փարթամութենէ, այլ բազում տվայտութեամբ յախթահարեալ ի սիրոյ սուրբ Աւետարանիս, ըստ գրեցելոյն, թէ՝ Սէր կատարեալ ի բաց մերժէ զերկիւղ, նա գանձս յերկինս և բարեխաւս առ տէր աստուածն Յիսուս Քրիստոս։ Եւ ստացաւ զսա յիշատակ իւր և ծնաւղաց իւրոց։ Արդ, որք կարդայք և կամ*

** Այս հիշատակագրությունը գրված է 263ր էջի ստորին լուսանցքի վրա՝ Հովհան ավետարանչի նկարից ներքև։ Ձեռագրում պահպանվել են Մինաս նկարչից 13 նկար, 3 ավետարանիչներ, 10 խորան, 4 կիսախորան և բազմաթիվ լուսանցազարդեր։ Դրանք վկայում են Մինաս նկարչի հմտության ու ճաշակի մասին (տե՛ս նկ. 4)։*

ավրինակէք յիշեսջ[իք] ի սուրբ յաղաւթս ձեր զԱմբիրբէկն, և զկողակիցն իւր զՍւլու-Մելիքն, և զհարազատ եղբայրն իւր զՄխիթարն, և զծընաւղսն իւրեանց զպարոն Աւագն, և զկողակիցն իւր զԴունիայ-Խաթուն, և զայլ ամենայն արեան մերձաւորսն՝ զկենդանիսն և զհանգուցեալսն. և Քրիստոս աստուած զձեզ յիշէ յիւր անհատ ողորմութիւն, ամէն։

## 100

## ԱԻԵՏԱՐԱՆ

Ն. Ջուղա 446, Մ.Տ.Մ.

գրիչ՝ Մարգարէ
վայր՝ Ոշտունիք, Բերդաձոր վանք

Փառք ... ուստի և տեսեալ զսորայս անճառ փրկագործութեան խորհուրդ ոմն պատուական տանուտէր Ջեալ և կինն իւր՝ ի վաղուց հետէ ցանկացան այսմ աստուածախաւս սուրբ Աւետարանիս յորդեռանդ սիրով, և ետուն գրել զսա յիշատակ հոգւոց իւրոց, և ծնողացն իւրոց՝ հաւրն Մինասին և մաւրն Թամամին, և եղբայրն Ագիզբէկին, և քրոջն Խաթուն- Մէլէքին, և որդոյն Կարապետին և Հայրապետին, և դստերն Հալիմ-Խաթունին և Գուլ-Փաշային, և եղբորորդւոյ Մկրտչին, և կնոջն իւրոյ Մուղալ-Խաթունին, և հաւրն նորա Նէքամատին, և մաւրն Շնաճւորին:

Արդ, որք հանդիպիք սուրբ Աւետարանիս կարդալով կամ աւրինակելով յիշեցէք ի Քրիստոս Ջիալն և զկինն իւր զՇաքար-Խաթունն՝ զստացողք Աւետարանիս...։

Արդ, աւարտեցաւ սուրբ Աւետարանս ի թվին Հայոց Ջ. և Ե. (1456) ի յերկիրս Ըռշտունեաց, ի վանքս որ Բերդաձոր կոչի, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, ձեռամբ բազմամեղ գրչիս Մարգարէի... [Յիշեցէք] զծնողսն իմ զՅոհանէսն և զՈսկին, և զեղբարսն իմ զՅոհանէսն և զՄխիթարն, զՋիալի եղբաւրորդին զՄկրտիչ, և զծնողսն իւր՝ զհայրն զԱզ[իզ]բէկն և զմայրն զԱմբար-Խաթունն, և զկին իւր զՄոսլալ-Խաթունն, և զզաւակն իւրեանց՝ զԿարապետն, զԱզբէկն և զԽասբէկն, և զդստերքն՝ զՍուլթանն և զԹաքարն:

## 101

## ԱԻԵՏԱՐԱՆ

Փիրգ. Նոտ. 184, Բերդակ՝ ի ս. Յոհաննէս եկեղեցի

գրիչ՝ Մարգարայ
վայր՝ Ըռշտունեաց երկիր

... Արդ, աւարտեցաւ սուրբ Աւետարանս յարքունական երկիրս Ըռշտունեաց, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, ի թուականիս Հայոց ՋԵ. (1456), ձեռամբ Մարգարայ յոգնամեղ գրչի, ի խնդրոյ պատուական և հարկաւոր տանուտրոջս Ատոմի հիւսան Բերդակեցւոյ, որ ստացաւ ի հալալ ընչից և ետ Բերդակոյ եկեղեցւոյ սուրբ Յոհաննիսի անջինջ յիշատակ։

## 102

## ՄԱՇՏՈՑ

**Երևան 5207**

**ա**

*գրիչ՝* Ստեփանոս
*վայր՝* Ռշտունիք, Շատվան գիւղ

136ա *Փառք ամենասուրբ երրորդութիւն յափտեանս յափտենից ամէն, որ*
*ետ կարողութիւն հասանել ի վերջ կտակիս, որ կոչի Մաշթոց, ընդ հովա-*
*նեաւ սուրբ Աստուածածնիս ե սուրբ Գէորգայ պարավարիս և սուրբ Ոս-*
*կանցս և սուրբ Ստեփանոս նախավկայիս, որ է ծառայ դորա՝ սուտա-*
*նուն* Ստեփանոս *գրիչս. բայց զանունս ունիմ և զգործս ոչ։ Ո՜վ սուրբ*
*մանկունք եկեղեցոյ, յորժամ կարդայք կամ աւրինակէք յիշեցէք ի մաք-*
*րայփայլ յաղաւթս ձեր զմեղապարտ գրիչս՝ սուտանուն քահանայ, և*
*զծնաւղս իմ* զՄարգարտ *և* զՄարթա, *և զաւակն իմ* զԿիրակոյս, *և զփոխե-*
*ցեալն՝* զՄկրտիչ *և* զՅովանէս, *որ առ աստուած գնացին, և զամենայն*
*մերձաւորս՝ զկենդանիս և հանգուցեալն, և զեղբայրն իմ* զԹումա: *Յերես*
*անգեալ աղաչեմ զձեզ, յորժամ հանդիպիք սմայ լի բերանով աստուած-*
*ողորմի ասացէք, զի և դուք ողորմութիւն գտջիք յողորմածէն աստուծոյ,*
*ամէն։*

*Արդ, գրեցաւ ի յերկիրս* Ըռըշտունեաց *ի գեաւղս* Շատվան, *ընդ հո-*
*վանեաւ սուրբ աստուած[ածն]ին և սուրբ Ստեփանոսիս և այլ սրբոցս,*
*ամէն։ Ի հայրապետութիւն տէր* Զաքարին, *ի թվականիս ՋՃԶ. (1457)։*

*Եւ արդ, անարժանս և <ես> անպտուղս ի գործոց բարեաց, մեղաւոր*
*և անարժան ծառա ծառայիցդ աստուծոյ* Սարգիսդ *յիշատակ իւր, որ ստա-*
*ցա զՄաշթոցս ի հալալ արդ[ե]անց իմոց և ետու զսա յիշատակ ինձ և*
*անջնջելի արձան ի մխիթարութիւն հոգոյ իմոյ և յոյս փրկութեան...։*

**Բ**

134բ *Եւ ապա զանարժան ապտակած գրիչս զսուտանուն* Սաեփանոսս *ի*
*մէջ հրէից յիշեցէք ըստ արժանաց նոցա, զի վասն մեղաց և յանցանաց*
*մերոց եկն ի վերայ մեր՝ անաւրինեցաքն և ոչ պահեցաք, զի բարիս գրտ-*
*ցուք մեք ի քէն։ Ի ձեռն թագաւորի անաւրինի մատնէր զմեզ ի սպառ.*
*վասն գթոյ ողորմութեան քո, որ գթացար ի կինն Քանանացին, գթայ ի մե-*
135ա *ղուցեալ ծառայս քո|| Քրիստոս աստուած մեր՝ ինձ բազմամեղիս՝ զսուտա-*
*նուն* Ստեփանոսիս, *բայց զանուն ունիմ և զգործ ոչ։ Նա ես ոչ կարէի սա-*
*տանական փորձութեանց թէ համբերել, թէ՝ ժամայտուն չինեց*, զդա*
*քարկոծել արժան է, մշակն վարձու, թէ ոչ զմերն ոչ կամէր, և ուրենց ոչ*

---

* *Լուսանցքում, նույն ձեռագրով, բայց մանր գրերով, տողերի խառնաշփոթ դա-*
*սավորությամբ, գրված են հետևյալ նախադասությունները.*

*1) «Թէ եկեղեցի կուզէ չինէ, նայ մենք ոչ կամինք, որ դայն բարի գործն գայ կա-*

էր ի պտուղ եկեալ, և սատանին ընկեր էին՝ քարկոծեցին զմեզ Գ. (3) անդամ...։

## 103

## ԱՒԵՏԱՐԱՆ

Ն. Ջուղա 28, Մ.Տ.Ա. և Մ.Տ.Մ.

գրիչ՝ Իսրայէլ
վայր՝ Մոկք, Փասավաճք գիւղ

311բ— 313բ ... Ոմն պատուական և հոգևոր տանուտէր Աստուածատուր և կինն իւր Եղիսաբեթ* զրկեալ յաշխարհէս և ոչ ունէին զաւակ արու, որ մխիթարէին յայսմ աշխարհիս, և կային հանապազ տրտում։ Եւ ապա եւտուն գրել զայս աստուածային բարբառս, որ Աւետարան կոչի՝ յիշատակ իւրեանց և ծնաւղացն և մխիթարութիւն սրտի իւրեանց։ Ո՛վ կարդացողք և լսողք, յիշեցէք ի Քրիստոս աստուած զԱստուածատուրն, և զկողակիցն իւր զԵղիսաբեդն, և զդըստերքըն զՍալչուկն և զՓաշէն, և որդոցն՝ Ստեփաննոսին և Յոճանիսին, Թումային և Մուրադին և Հազարբէկին, և հօրն Յակոբոսին, և մօրն Դովլաթին, և եղբարցն Բարսղին և Մարտիրոսին, և որդոցն Պետրոսին, Աւետիսին, Բոսկէն (՞) և Մկրտչին։ Դարձեալ, յիշման արժանի արասջիք Եղիսաբէթին, և մօրն Շնօհորին, և հօրն Թադանին, և որդոցն Յովճանիսին և Մաւսիսին և Թումային, ամէն։

Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի յերկիրս Մոկաց, ի յանապատիս որ Փասայվաճք կոչի, ձեռամբ մեղապարտի և բազմավէր ոգի Իսրայէլ գրչի, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս և այլ սրբոցս, որ աստ կան հաւաքեալ, ի թուականիս ՋԵ. (1456)*։

Արդ, յիշեցէք ի Քրիստոս աստուած ըստացող սուրբ Աւետարանիս զԱստուածատուր ալեաւք ծաղկեալ ծերունին, և զԵղիսաբեթ կողակից նորին, և զիւրեանց ննջեցեալքն՝ զնորն և զհինն...։

Յիշեցէք ի Քրիստոս զՀութլուշայ ճոնն, որ Աւետարանիս թուղթն պակսեց և մնացի շիւար, նա ետ դ.** և գինն ոչ էառ։

---

տարէ, ելա ես ժամատուն չինեցի կամաւն աստուծոյ զնախայվկինս։ 2) «Դճ. (400) — Բճ. (200) քար ու խիճ բերի», 3) «Բճ.(200) թանգ[այ] այլ զալան առին վասն դորա», 4) «Եւ յետո թալանել տուին զիս. ի Շատվանկ քարկոծել։ Աւաքերէցն <էցն>և պիրկաչին(՞) զայն արարին հետ մեր», 5) «և ես անարժան Ստեփանոս, որ փափաքս իմ կատարէի, բաւ է»։

Վերոբերյալ 5 նախադասությունների մեր առաջարկած դասավորությունը պայմանական է, սակայն, իմաստից դատելով, մեզ թվում է հնարավոր դասավորություններից ամենից հավանականը։ 3-րդ նախադասության ձախ կողմում կա մի բառ («բախիլ»), որի տեղը մեզ չհաջողվեց որոշել։

Պարզ է, որ ըստ իմաստի այս լուսանցագրությունները վերաբերում են հիշատակարանի այն հատվածին, ուր ակնարկություն կա ինչ որ ժամատան կառուցման մասին։

Պետք է նշել, որ Ստեփանոս գրչի հիշատակարանները շարադրված են շատ անկանոն։ Չափազանց դժվար է լինում ըմբռնել նրանց իմաստը։

* Մ.Տ.Մ. թվականը կարդում է ՋԷ, այսինքն՝ 1458 թ.։

** Մ.Տ.Մ. ունի «դոէմի» (՞), Մ.Տ.Ա. գրում է՝ «դ» և մի տառ ջնջված։

Ո՜վ մանկունք եկեղեցոյ, յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զեղկելի Մսրայէլ մեղապարտ գրիչ, և զծնաւղքն իմ զԱմի[ր]շաին և զՇ[ն]օֆտրն, և զեղբարքն իմ զՍաճակն ե զՅունանն, և զայլ ամենայն երախտաւորքն մեր, և զՄարգարայ ե զՎարդան վարպետքն* իմ, որ գդիրս ուսուցին, և զօրինակի տուողն Զաքարայ յիշեցէք ի Քրիստոս, և զեզբա․ր դուստրն իւր զԹագուն, որ բզթուղթս կոկեց, և զկանայք եղբարց իմոց՝ զՀարունշէն և զՓաշէն, և զաւակաց մերոց՝ զՄխիթարն և զԿարապետն, զՄարգարիան և զԳոյլստանն, և ով որ զմեզ յիշէ աստուած՝ զինքն յիշէ, ամէն, ամէն։

## 104

### ԱՒԵՏԱՐԱՆ

**Փէրզ. Նոտ. 184, Կառուց անապատ**

գրիչ՝ Մկրտիչ
վայր՝ Խիզան

... Այլ և գրեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ Մկրտիչ քահանայի՝ սուտանուն և ախմար գրչի ե անարժանի... յրնտիր և ի ստոյգ օրինակէ, կենօք տառապանօք և բազում պանդխտութեամբ, ի դառն և ի նեղութեան ժամանակի յոյժ յոյժ...։ Ի թուին ՋԵ. (1456), ի կաթողիկոսութեան հայկազեան սեռի տեառն Գրիգորի՝ էջմիածնի սուրբ աթոռոյն, և տէր Զաքարիայի Աղթամարեցւոյ, և ի թագաւորութեան այլասեռից Ջհանշի, և ի քաղաքի մերոյ պարոնութեանս Ամիր-Սուլէյմանայ... ի քաղաքիս, որ կոչի Խիզան**, ընդ հովանեաւ սրբուհւոյ Աստուածածնին, և սրբոյն Սարգսի զօրավարին, և նորաբողբոջ սուրբ Յարութեան Քրիստոսի..., և սրբոյն Գէորգայ զօրավարին, որ է սակաւ մի հեռի ի քաղաքէն, ի վայելումն անձին Վարդան կրօնաւորին...։

## 105

### ԱՒԵՏԱՐԱՆ

**Փէրզ. Նոտ. 183, Վան**

գրիչ՝ Մկրտիչ
վայր՝ Հիզան

... Աստանօր յանգ ելեալ կատարեցաւ սուրբ Աւետարանս ի քաղաքիս Հիզան*** կոչեցեալ, ձեռամբ անարժան քահանայիս Մկրտչի, ի թուականիս Հայոց ՋԵ. (1456), ի կաթուղիկոսութեան տէր Գրիգորի և ի ղանութեան Ջհանշային:

---

* Մ.Տ.Մ. ունի «վարգապետին»։
** Տպված է՝ «Խազան»։
*** Տպված է՝ «Հազան»։

## 106
## ԱՒԵՏԱՐԱՆ

***Փիրգ. Նոտ. 183, Զմիւռնիոյ ս. Ստեփաննոս եկեղեցի***

*գրիչ՝* Յովհաննէս
*վայր՝* Բաբերդ

*... Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի Թուականիս Հայոց* [ՋԵ.] *(1456),* ի քաղաքիս* Բաբերդ, *ընդ հովանեաւ սուրբ Հրեշտակապետացս և սրբոյն Սարգսի զօրավարին և սրբոյն Մինասայ... Եւ ես անարհեստ դրիչս* Յովհաննէս...:

## 107
## ԱՒԵՏԱՐԱՆ

***Փիրգ. Նոտ. 163, Դերզին գյուղ***

*գրիչ՝* Ոնոփրիոս
*վայր՝* Կեղոյ երկիր, Խլպաշի վանք

*... Արդ, գրեցաւ Աւետարանս յերկիրն* Կեղոյ, *ի վանքն որ կոչի* Խլպաշի, *ընդ հովանեաւ սուրբ Կարապետին, ձեռամբ...* Ոնոփրիոս *կրօնաւորի... Թվ. Հայոց ՋԵ. (1456)։*

## 108
## ԱՒԵՏԱՐԱՆ

***Երևան 7831***

*հետ. ստացող* Աւետիք
*վայր՝* Կաֆայ

294ա *... Արդ, ցանկացող եղեալ յայսմ տիեզերայլոււ սուրբ Աւետարանիս պարոն* Աւետիքն. *և ստացօ զսա ի հալալ ինչիցն իւրոց զբուրաստ[անս] ծաղկաւէտ և գանձս աստուածային..., ի հայրապետութեան տեառն տէր* Գրի[գորի] *ամենայն Հայոց և եպիսկոպոսութեան տէր* Մաղաքիայի *արքեպիսկոպոսի ամենայն հիւսիւսական կողմանց։ Ստացաւ զսայ պարոն* Աւետիքն *յիշատակ անջնջելի և բարեխաւս անմիջելի, և եդ զսայ ի ժառանգութիւն սուրբ* Ստեփանոսին, *որ է շինեալ* Խաչատուր *քահանայն որդոյ պարոն* Գրիգորիսին, *ի մայրայքաղաքս* Կաֆայս...:

294բ *Արդ, գրեցաւ սայ ի թվականութեան Հայոց ՋԵ. (1456), ի մարտի Ի. (20), որ աւրն էր ծաղկազարդ։ Արդ, մի ոք իշխեսցէ հանել զսայ յեկեղեցոյս սուրբ Ստեփանոսէս* Կաֆայիս, *և ոչ ոք տէր կամ ստացող գրոցս և ասող թէ իմ է, այլ տէր և ժառանգ սուրբ Ստեփանոսն է. և մի ոք իշխեսցէ զսայ հանել, կամ գրաւել, կամ ծախել, կամ յայլ եկեղեցի տալ և քահանայք որ կարդան զԱւետարան<ան>ս՝ պատրաստաբար և զգուշութեամբ պահեսցին ի մոմէ, ի ձիթոյ և ամենայն աղտոյ։ Ամենայն ժամ յիշեսց<եսց>են յաղաւթս և ի պատարագս իւրեանց զպարոն* Աւետիքն, *և*

---

** Տարեթիվը չի տպագրված, բայց հիշատակարանը հրատարակված է 1456-ի թվաշարքում, ուստի գրված պետք է լինի այդ թվին։*

*զուգակից իւր* զՄանանայ-խաթունն, *և զնորայբոյս զաւակս իւր զհայր*
Անդոնն, *և ղքաղցրիկ որդին* զՅովանէսն, *և զթոռն իւր սրրայսնունդ* Խաչ-
Կարապետն: *Այլ և յիշեցէք ի մաքրայփայլ սուրբ աղաւթս ձեր զծնաւղն*
295ա *իմ||* զՀերապետն *և զմայր իմ* զՄելիք-խաթուն, *ես առաւել յիշեսցիք ի
սուրբ աղաւթս ձեր վիմ եղբայրն՝* զԱստուածատուր *քահանայն, որ փո-
խեալ է առ Քրիստոս, յիշեսցիք* զՏիրապետն, *ե* զԹորոսն, *և զամենայն
ազգայինս՝ զկենդանիս և զհանգուցեալսն. և Քրիստոս որ առատն է ի
տուրս բարեաց՝ յիշողացդ և յիշելոցդ առհասարակ ողորմեսցի, և նմայ
փառք յաւիտեանս յաւիտենից, ամէն։*

*Ի յայսմ ամի եկաւ* Մահմութագ *սուլթանն և փախոյց* զՋահնի-Կիրե *խան, և քաղաքս խիստ ուրախ է. աստուած զվերջն ի բարի անէ։*

*Ամէն տարի ծաղկայզարդին աւրն կար[դ]ցվի այս յիշատակարանս. բայց վերին պետականին հրամանէն բանադրած լինի մարդն այն՝ թէ քահանայ, թէ այլ մեծ և թէ աշխարհական, և յանզգնի ոք՝ նայ ի յայս եկեղեցոյս պատարագին շնորհացն անմասն ելնէ և անիծեալ լիցի ամենայն սրբոց, ամէն։*

## 109

## ՔԱՐՈԶԳԻՐՔ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑԻՈՅ

**Երևան 3191**

*գնող՝* Գրիգոր եպիսկոպոս

306ր *Զվերջին ըստացող Քարոզգրոցս՝ ըզ*Գրիգոր *եպիսկոպոս, որ գնեցի զայս Քարոզգիրքս ի տէր* Աւագիրիցու *դստերէն՝ ի յ*Աննայ-խաթունէն, *ի Ճ. (100) դրամ,* Ղազար *նվիրակին միջնորդութեամբն։ Աստուած շնահավոր առնէ զայս Քարոզագիրքս տէր* Գրիգոր *եպիսկոպոս[ին], աստուած ողորմի առաջնոց և վերջնոցն։ Թվ. ԹՃԵ. (1456), մայիս Բ. (2) գնեցի*։*

## 110

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

**Երևան 6076**

*գրիչ՝* Մարաիրոս

178ր *Թվին ՋԵ. (1456) գրեցաւ Կանոնագիրքս և այլ բազում բանս խրատականս հոգոյ և մարմնոյ, և առ աստուծոյ սքանչելեացն և զօրութեանն և դաւանութեանն՝* Ներսէս *հայրապետի օրինակէն, իմաստնոց բաւ է։*

*Գիրս գրող* Մարտիրոս *վարդապետս առ աստուած յիշեցէք և թողութիւն խնդրեցէք մեղաց իմոց ողորմիս տալով։ Յիշօղքդ յիշեալ լիջիք յաստուծոյ, ամէն***։*

---

* Ձեռագիրը գրվել է 1456 թվականից մի քանի տասնամյակ առաջ։ Հիշատակարանում հիշվող տեր Աւագերեցը՝ ձեռագրի վաճառող Աննայ-Խաթունի հայրը՝ ձեռագրի մեծ մասի գրիչն է և ստացողը. նա թողել է մի շարք միանման բովանդակության հիշատակագրություններ, որոնցից մեկը տալիս ենք ստորև.

«Զնվաստ գրիչս՝ զանարժան էրէցս զտէր Աւաքս, և զծնողն իմ զԻգնատիոս քահանայն յիշեսջիք ի մաքրափայլ յաղօթս ձեր, և ձեզ՝ յիշողացդ ողորմեսցի մարդասէրն աստուած, ամէն» (էջ 306ր)։

** Հիշատակարանը հասել է ԺԷ. դարի ընդօրինակությամբ։

ՋԶ 1457

111

ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

Երևան 4472

ա

գրիչ՝ Ղազար
վայր՝ Լիմ-Սուխարայ վանք—Արգելան

632ա … Եւ արդ, գրեցաւ, սա յանառիկ ամուրն Լիմն, ընդ հովանեաւ սրբոյն
Գէորգեա և այլ սրբութեանցս, որ աստ կան հաւաքեալ, եւ այլն գրեցաւ
յերկիրն Քաշբերունի, ի վանս Սուխարայ, ընդ հովանեաւ սուրբ Աստուա-
ծածնին և ամենայն սրբութեանցն, եւ այլն գրեցաւ ի վանս Արգելան, ընդ
հովանեաւ սուրբ Աստուածածնիս, և սուրբ Կարապետի, և սուրբ Յարու-
թեանս, և սուրբ Ստեփաննոսիս՝ տէր Յուսկան որդոյ սուրբ գերեզմանիս,
վասն խռովութեան աշխարհիս Հայոց, վասն զի Ջհանշէն, որդի Ղարա-
Եւսուփին գնացեալ էր յաշխարհն Նետողաց և առեալ զամենայն ամուրս
նոցա՝ զՀամադան, զՍաւայ, զԱսպահան, զՌէ, և զՂազւին, զԳելան, և
զՔաշան, զՇիրազ, և զՔրման, և զԽորասան և զքաղաքս անթիւս, եւ կամի
երթալ ի Հրէ: Եւ ի ներքին կողմանէս թոռն Ղարայ-Օթմանին զաշխարհս
Հայոց ի տատանման պահէր՝ Հասան-բակն:

Արդ, ըստացաւ զսա պատուական մահդասին Ստեփաննոսն՝ յիշատակ
իւրն և ծնաւղաց իւրոց և ազգականացն և ամենայն արեան մերձաւո-
րացն, հաւրն Աստուածատուրն, և մօրն Խաթուն-Մելիքին, և հարազատ
եղբօրն Խդըրշին, և Խուդաբաղշ սարկաւագին, և հանգուցելոյն ի Քրիստոս
Ազատշային, եւ երախտաւոր և մեծ պապերուն Մարտիրոսին և*, և մեծ
մամերուն Աննայ-Խաթունին և Սառայ-Խաթունին, և մաւրքւերն Գոճար-
Մելէքին, և իւր որդոցն Փալօշին և Ջաֆարին՝ սպանելոյն յընկերոյն իւրմէ.
վասն զի սուտ քրիստոնեայ ընկերն իւր խաբեաց զնա, ասելով թէ գնանք
632բ գինի ճմենք, և ածեալ|| զնա ի տուն, յարձակեցաւ ի վերայ նորա և սպան
զնա երկրորդ Կայենն, որ եսպան զեղբայրն իւր զԱբէլ. Քրիստոս աս-
տուած, որ հանգիստն է ամենայն հաւատացելոց, հանգչի ի Ջաֆարի հո-
գին և սրբոյն Աբելայ դասակից և պսակակից արասցէ, ամէն:

Արդ, աղաչեմ զձեզ զամենեսեան կողկողագին պաղատանաւք, ով ոք որ հանդիպիք սմա աւրինակելով կամ ընթեռնըլով և կամ ինչ իւիք տեսութեամբ, յիշեցէք ի Քրիստոս զպատուական մահդասին՝ զՍտեփաննոսն, և զծնաւղսն իւր զԱստուածատուրն և զԽաթուն-Մելիք, և զեղբարսն զԽդըրշէն, զԽուդաբաղշ, և զհանգուցեալն ի Քրիստոս զԱզատշէն, և զմեծ պապքն զՄարտիրոս, և զմեծ մամերն զԱննա-Խաթունն և զՍառայ-Խաթունն, և զմօրքուրն զԳոճար-Մելիքն, և զիւր որդիքն՝ զՓալօշ և զՋաֆա-

* Մյուս պապի անվան լրացման համար տեղ է բաց թողնված։

րայ, և ղեղրաւրորդին զԱստուածատուրն, և զԳուէֆան-Խաթունն, և զՄամֆանն, և զհարսն զԱզիզ-Մելիքն, և ղմաւրքոյրն զՆիդար-Փաշէն, և իւր որդոյն Խուդաբաղշին, հաւրեղրաւրն իմոյ Սարգսին, և իւր որդոյն մղդասի Առաքելին, և դստերն Սառային, և վարդպետացն հոգևորաց և մարմնաւորաց, և զսանահայրն զպարոն Վարդ, և զմաւրքեւրորդին Թումայ հովին, զհոգևոր հայրն՝ զԹադոս կրաւնաւոր Կաֆայեցին, որ ի գնալն յԵրուսաղէմ՝ ի ծովումն ընկղմեցաւ, և զԿարապետ սարկաւագն. յիշեցէք ի Քրիստոս զվերոյգրեալքս ի սմա և լի բերանով աստուած-ողորմի ասել, և աստուած, որ առատն է ի տուրս բարեաց, յիշողացդ և յիշեցելոցս առհասարակ ողորմեսցի։

Դարձեալ, աղաչեմ զձեզ, մանկունք սուրբ եկեղեցւոյ, յիշել ի տէր զանարժան գրիչս Ղազար, և անմեղադիր լինել խոշորութեան և սխալանաց, զի կար մեր այս էր։

Եւ գիտելի է զի զսա սկսաք ՋԱ. Թվականիս Հայոց (1452), և աւարտեցաք ՋԶ. (1457), վասն դառնութեան և խռովութեան ժամանակիս. և զյիշատակարանի զհետ կարգի ոչ գնալոյն անմեղադիր լերուք. երբ սիրտն մաշխուվ լինի՝ աչքն .լուս պակաս կու հայի. մարդ զմարդոյ ցաւ չգիտէ՝ կէս գիշերին ժամ կու ձենէ։

Եւ արդ գրեցաւ սա ի կաթողիկոսութեան տեառն տէր Գրիգորի, որ նստեալ է ի Վաղարշապատ քաղաքի, և Քրիստոսի յուսոյն մերոյ փառք յաւիտեանս, ամէն։

Բ

· մի մասի գրիչ՝ Յովանէս

667ա Ներաւղ Քրիստոս, ողորմեա ստացողի գրոցս մահդաս[ի] Ստեփանոսին, և ծնաւղաց նորին Աստուածատրուն և Խաթուն-Մէլէքին, և եղբարցն Խդրշին և Խուդայբաշխին, և ամենայն արեան մերձաւորաց նորին, և ինձ անարժանիս՝ սակաւ աշխատողիս Յովանէս քահանայի, որ վասն սիրոյ եղբօրս մեր մահդասի Սաեփանոսի գրեցի զայս Գ. (3) սխրալի ճառս։ Բայց անմեղադիր լինի, զի մեծ ահիւ և դողով գրեցի ի դառն աւուրս, որ Հասանն զՄշոյ դաշտն գերեաց զանմեղ քրիստոնեայս և մեք յուսահատեալ եմք ի կենաց մերոց և ի տղայոց, թէ այսօր կամ վաղիւն առ մեզ հասանի։ Ցայս զառն աւուրս գրեցի և ոչ թողի անփոյթ վասն սիրոյ մահդասուն, որ ամենայն ոք զնա սիրէ և մեծարէ վասն հեզ բարուցն և հաստատ հաւատոյն և զի զամենայն գործս և զվաստակս ձեռաց իւրոց բաշխեաց առաջին մեր ի գինս գերեացն, զորս ազատեաց յանօրինաց, և զայլն և գինս գրոց պատուականաց և յայլ սպասս եկեղեցեաց, ընկալցի զփոխարէնն յամէնառատ բարոյն աստուծոյ, ամէն։

112

Մ Ա Շ Տ Ո Ց

Երևան 6861

գրիչ՝ Յոճանէս

վայր՝ Ցիպնայ վանք

285ա Փառք... որ ետ կարողութիւն տկար ոգւոյ Յոճանէս վարդապետի հասանել յաւարտ Մաշթ[ոց]իս։ Գրեցաւ Մաշթոցս ի վանգս Ցիպնայ, ընդ

Յովանեաւ Վասիլ Թագաւորի սուրբ նշանիս և սուրբ Աստուածածնիս, ի հերպետութիւն Առաքելի, ի պարոնութիւնն <ե> Ադիբեկի, ի ղանութիւնն Ջիհանշայ ղանի։

Յայսմ ամի Ջըհանշայ ղան էառ զԲաղդատ և Կ. (60) պարոնութիւն կալան, և ԿՌ. (60.000) ոգի ի սուրն քաշեցին, և ԼՌ. (30.000) ջորէրեոն մալ ի Ղափանն տարան։

Եւ դարձեալ, ի մեր մեղացն Մուրատ բէկ անաւրէնն էառ զԸսպընդայ զԿոստանդնուպաւլիս, և Խ. (40) բեռն խաչ և աւետարան, նշ[խ]արք և
285բ պատկեր հայրապետա||ց առին։

Եւ դարձեալ, արբանեակն սատանայի* Ջիհանշայ ղանն եհեկ ի վերայ Բաղըշու*, Մշու և Կլաթայ, առ՛ւ աւար արար և տարաւ ՌՇ. (1500) գերի՝ կին և տղայ և սարկաւագ. և ղամէն գերի Շ. (500) թամուրի կու ծախին։

Գիրգս յիմ ձեռնէս ոչ ելնէր, բայց ագահութեան պատճառի առի՝ դրեցի յընդիր աւրինակէ, և ումի յինքն զձեռաց Մաշթոցն և զբոլոր Մաշթոցն և զաւծումն աւելի։ Բայց խոշորութեան գրոյս և սխալմանց անպարտ թողէք, զի ձեռս կու դողէր։

Բայց գրեցաւ Մաշթոցս ի թվականիս Հայոց տումարի ՋԶ. (1457), ի վանգս Ցիպնա։ Որք հանդիպիք յիշեցէք զստացող գրոցս զՅովանէս, և զԳաւճարն, և զեղբայրն Ստեփանոս երէցն, և զՅովանէսի հայրն՝ Մկրտիչ,** և զմայրն Շամխաթուն, և զորդին Յոհանէս և Մկրտիչ, և զդուստրն Խութլու, Հէրխաթուն, Մարեմ, և զեղբայրն, և զորդիքն Նորատունկ, Մկրտիչ, Գրիգոր և Հէրապետ, և զամենայն արեան մերձաւորսն***։

284բ Այլ և զփըծումս ի գրչաց զմատնադեգև զանարժանս ի քահանայից, որ չեմ արժանի, թէ կոչեցայց կարգաւոր՝ զՅոհանէս մականուն վարդապետ, այլ և զիմ ծնաւղսն՝ զՅովանէս և զՍառայ, և զվարդապետն Կորեով, և զՂազար սարկաւագն՝ քարտիս կոկաւղն։ Այլ և զպատուական կարգաւորն և զտանուտէրն՝ զԵրկայն Աւետիսն և զկողակիցն իւր, այլ և զհեզահոգի զՅոհանէս երէցն և զիւրքն, այլ և զգեղի տանուտէրքդ, առ հասարակ, այր և կին, ծեր և տղայ առ հասարակ, յիշեալ լիցին առաջի աստուծոյ ի բարին, և որ զաստուած-ողորմին ասէ լի բերանով ստացողին և վերայգրելոցդ և աստուած իւրն ողորմի և իւրոցն ի միւսանգամ գալըստեանն ամէն, եղիցի...։

284ա Ո՜վ լուսազարդ դասք քահանայից, որք հանդիպիք այս լուսազարդ պատուական Մաշթոցիս կարդալով կամ աւրինակելով, պատուական քահանայք և հեզահոգի սարկաւագունք, և իմաստուն ընթերցաւղք՝ յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զըստացաւղ գրոցս՝ զպատուական տանուտէրն և հաւատարիմ զՋանիկ-Յովանէսն, և զկինն զԳաւհար-Մելիքն,

* «Սատանայի» և «Բաղըշու» բառերի վրա նորոգման ժամանակ թուղթ են փակցրել։ Լույսի դիմաց պահելով այդ բառերը աղոտ կերպով նշմարվում են։

** Այս և սույն պարբերության մյուս անունները գրված են այլ ձեռագրով։

*** Հիշատակարանի շարունակությունը գրված է 284բ ապա՝ 284ա էջի վրա։ Հիշատակագիր Եոհանէս վարդապետն ինքը՝ 285ա էջի վերին լուսանցքում գրում է՝ «Հէւանդ եմ և խելքս ոչ բերէ. այս (իմա՛ հիշատակարանի «Փառք»-ով սկսվող մասը՝ 285ա—285բ էջերի վրա) յառջև պէտ :էր»

և զորդիքն [Մկրտիչն և զՅոհանէսն]*, և զդստերքն [զԽութլու և զՄարեմ, և զքուրն Հէրխաթուն և էլխաթուն], որ ստացան զսա ի հալալ արդեանց իւրեանց բարի յիշատակ իւրեանց և իւր ննջեցելոցն, այլ և զեղբարսն [զՆորտով[ն]կն, և զկին Սանդուխտ], և զեղբաւրորդիսն [Մկրտիչ, Հէրապետ և Գրիգոր], այլ և Ստեփանոս երէցն, [զհայրն Խաչտուր, և Խութլու, և զԱստուածատուրն, Թանկ-Մելիքն]**

## 113

### ՃԱՇՈՑ

Ն. Ջուղա 163, Ս.Տ.Ա. և Մ.Տ.Մ.

ա

գրիչ՝ Խաչատուր
վայր՝ Արարատեան գաւառ, Ուրծ գիւղ

525բ Վասն զի ոչ ունելով յիշատակ ըստ մարմնոյ ես մահդասի Շեխս և ամուսին իմ Շաֆար ստացաք զսա ի յարդար վաստակոց մերոց, յիշատակ մեզ, և ծնողաց մերոց Ալղուփն, Մարիանին, Ամիր-Սարգսին, Բաղտատին, և ի Քրիստոս հանգուցեալ զաւակաց մերոց Մելիֆզատին, Շանգատին, և քեռն իմոյ Նիկարին...:

... Ցիշման արժանի առնէք զարհիեպիսկոպոսն զտէր Զաֆարէն և զԽսայի կրաւնաւորն՝ հեզահոգի և ամենայն շնորհաւք զարգարեալ, զոր տէր աստուած պահեսցէ ընդ երկայն աւուրս։

Արդ, ես՝ անպիտան և անիմաստ գրիչս Խաչատուր, ողորմութեամբ տեառն սկսա և նախախնամութեամբ նորին կատարեցի... ծաղկաւէտ բուրաստանս ի գաւառս Արարատեան, ի հոյակապ և ի նշանաւոր գեւղս որ կոչի Ուրծ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին և սուրբ Ստեփանոսի նախավկային, ի թվին ՋԶ. (1457), ի հայրապետութեան տեառն Գրիգորի, և արհեպիսկոպոսութեան տէր Ոլստակիսի, և յաշխարհակալութեան մեծ և յաղթող ախոանի Ջիհանշաին, ի դառն և ի նուրբ ժամանակիս. վիշտըս վտանգի և աղէտս տարակուսանաց, զոր կրեմք յանաւրինաց և յանիրաւ պահանջողաց, և եւթնապատիկ հատուսցէ տէր զչարիս նոցա ի ծոցս նոցա...։

[Ազաչեմ] զգծագրողս Խաչատուր յիշել ի սուրբ յաղաւթս ձեր, զծնողսն իմ՝ զհայրն իմ զՎարդան և զմայրն իմ զԱղուբ,... և ուսուցիչն իմ զԳրիգոր րաբունին, և զՅոհաննէս հեզահոգի կրաւնաւորն, նաև զհոգևոր մայրն իմ զՓաշէն և զՆորազիղն՝ հանդերձ ծնաւղաւք իւրեանց յիշեսջիք ի սուրբ յաղօթս ձեր, զի յոյժ աշխատութեամբ ծառայեցին մեզ։

Այլ և զեղբայրն իմ ըստ հոգոյ զԱլէքսանոս կուսակրաւն աբեղայն, որ զթուղտն կոկեաց յիշեսցի ի տէր հանդերձ ծնողաւք իւրովք, ամէն։

* Փակագծերի մեջ առնված այս և հաջորդ անունները գրված են այլ ձեռագրով։
** Հենց այստեղ կիսատ էլ ավարտվում է հիշատակարանը։

Բ

*ծաղկող՝* Գրիգոր
*վայր՝* Մալըզկերոյ անապատ

*Ընդ որս և ես երես անկեալ աղաչեմ զմանկունսդ սուրբ եկեղեցո յիշել ի տէր ղիս ղմեղսամած և զբազմամեղ և պանարժան և զանարհեստ նկարող սորին զ*Գրիգոր *սուտանուն աբեղէս, որ անուամբս եմ միայն և ոչ գործովս, և զծնաւղսն և զամենայն արեան մերձաւորսն իմ՝ զկենդանի և զհանգուցեալսն, որ ծաղկեցաւ սա ի սուրբ անապատս* Մալըզկերո, *և զամենայն աշխատաւոր սորին յիշեցէք ի Քրիստոս, և աստուած զձեզ յիշէ իւր արքայութեանն մէջ։*

## 114

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՍԱՂՄՈՍԱՑ ՎԱՐԴԱՆԱՑ ԱՐԵՒԵԼՑԻՈՅ

**Երևան 2322**

ա

*գրիչ՝* Մաքէոս

336բ *... Ընդ որս երևեալ ազքանազան ազգիս ի տանէ Թորգոմա փառք և պարծանք* Այրարատեան *գաւառիս և իբրև զարեգակն փայլէր յաշխարհի սքանչելի այրն աստուծոյ և մեծանուն հռետորն* Վարդան *վարդապետն՝ վարժելով զբազումս ի կրթասիրաց ի գիտութիւն աստուածաշունչ կտակարանաց երևելին ի գիտնականս։ Այլ և՛ յոյժ ըղձալի փափագմամբ մեկնեալ զսաղմոսս աստուածահօրն Դաւթի՝ թողու գանձ անհամեմատ սուրբ եկեղեցոյ և ինքն առ անծկալին Յիսուս վերափոխի, որոյ յիշատակն աւրհնութեամբ լիցի. և աղօթք նորա և սերմն խրատու անպակաս ի սուրբ եկեղեցւոյ, մինչև ի կատարած աշխարհի...*

*Զանարժանս յիշատակի*
*Սուտակասպաս մեռեալ ոգի*
*Զմեղաւք լցեալս յամենայնի՝*
*Նաև ժառանգ սատանայի.*
*Ո՜վ, ընթերցողք այսմ տառի,*
*Վերաբերողք ի սմայն գանձի*
*Զգրիչ* Մաքէոս *փանաք ոգի*
*Յիշել յաղօթս ձեր բարի։*
*Թվ. ՋԶ. (1457)։*

Բ

*սկզբի մասի գրիչ՝* Առաքել Սիւնեցի

50ա *Զգծող գրոցս զնուաստ ոգի տէր* Առաքելս Սիւնեաց *յիշեցէք ի Քրիստոս**։

---

* *Առաքել Սիւնեցին ընդօրինակել է ձեռագրի սկզբի մասը, 1457-ից տարիներ առաջ։*

## 115

### ԱԻԵՏԱՐԱՆ

*Երևան 3703*

*գրիչ՝* Մաթէոս
*վայր՝* Սուրբ Մամաս անապատ

310բ *... Արդ, գրեցաւ աստուածային գանձարանս որ կոչի Աւետարան, ի յանապատիս որ կոչի սուրբ* Մամաս, *ձեռամբ* Մաթէոս *աբեղայի, ի թվիս Հայ տոհմիս տումարի ՋԶ. (1457)։*

*Այլ և ստացեալ եղև զսա ոմն աստուածասէր և հաւատարիմ և բարեպաշտ և մեծազգի* Միրզա *անուն, ի վայելս անձանց իւրեանց և զաւակաց, և յիշատակ հոգոց իւրեանց՝ ի պահպանութիւն և ի փրկութիւն։*

*Արդ, որք հանդիպիք սմա կարդալով կամ յաւրինակելով կամ մի անգամ տեսանելով՝ յիշեսջիք ի մաքրափայլ և լուսաբորբոք յաղաւթս ձեր զիս՝ զ*Միրզայ*, որ առի զսա ի հալալ ընչից իմոց, և զամուսինն իմ զ*Խոնտ-Խաթունն*, և զծնաւղսն իմ ի Քրիստոս հանգուցեալսն՝ զ*Մէլիք *հայրըն իմ և զմայրն իմ զ*Գուլ-Մէլիք*, և զհարազատ եղբարն իմ զ*Բէրամն*, և զամուսինն իւր զ*Կտիշն*, և զնորաբոյս զաւակսն մեր, զոր վայելել տացէ զսա ընդ երկայն աւուրս, ամէն։*

## 116

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՊԱՏԱՐԱԳԻ

*Երևան 7273*

*գրիչ՝* Մաթէոս

331բ *... Յայս ամէնառատ գթութիւնս աստուծոյ հայեցեալ ես՝ ամենաթշուառ երիցս ատելիս* Մաթէոս *յոգնամեղ ծառայս աստուծոյ, սոսկ անուամբ քահանայ ի կրօնաւորական ձևի, քան զի տեսեալ զիս ի բարձրագոյն առաքինութեանցն շաւղաց զարտուղի գնացեալ, մանաւանդ յաղթեալ ի ծանրութենէ կաւեղէն յարկիս, ոչ ունելով տեսակ ինչ բարեաց*
332ա *մասն փրկութեան։ || Վասն որոյ ձեռնամուխ եղէ ի գրութիւն աստուածահաճոյ տիրապէս աղօթնոյս՝ մեղսաքաւիչ հաշտարար սուրբ պատարագին, և էր ընդ եղբարսն Յովհաննու աղօթիցն, զոր մեկնեալ էին սուրբ հարքն մեր՝ մեծն* Խոսրով *և տէր* Ներսէսն *և այլ սուրբ հարքն, զոր և հողս անարգութեան* Մաթէոս *խղխայթեալ տառապանօք դլխաւորեալ յանկ հանի ցայգացանկ աշխատութեամբ շնորհօքն աստուծոյ, ի յիշատակ բարւոյ մեզ և մերոց ծնօղացն, որ եմ առ Քրիստոս։*

*Նա և տիրապէս բարւոյ յիշատակ է սա մեծին և աստուածասիրին, որ քաղցր բարուք զօրինակն շնորհեաց, այսինքն տեառն* Գրիգորի *կաթողիկոսի ամենայն Հայոց ի* Վաղարշապատու, *խարազն ճգնաւորի, որ և առլցեալ շնորհօքն Յիսուսի, նաև զէ. (7)-արփեանն առեալ, ըստ գրեցելոյն Եսայեա, գերազանց սրբազնամաքուրն իւր հոգի, որով սնուցանէ զմանկունս սուրբ եկեղեցւոյ կրկին և երեքին ուսմամբ ըստ հաճոյսն աստուծոյ տիրապէս։ Հանուր հայկազնի ազգաւս հայցեմք հառաչմամբ բոլոր հա-*

ւատով յուսով և սիրով յամենագութ բարերարէն տեառն և աստուծոյ՝ պահել զնա սուրբ և անարատ ընդ երկայն աւուրս, առողջ հոգով և մարմնով, ուղիղ վարդապետութեամբն, ձեռասուն հոգևոր որդեկամ իւրով, և յետ ատեացս ելանելոյ կարգեսցի շնորհօքն աստուծոյ ի շարս առաջին սուրբ հայրապետացն։

Գրեցաւ սուրբ գիրքս թվիս ՋԶ. (1457), ի փառս Քրիստոսի աւրհնելոյն յաւիտեանս։

Բ

290բ Սկսաւ մեկնիչս այս Խոսրովին*
Յաւուրս պահոց Լուսաւորչին,
Ձեռամբ հիքոյ Մաքէոսին,
Եղև զըրաւ փոխման տօնին.
Ջի ի վաղուց ժամանակին
Եղէ փափագ սակս սորին,
Յետ կատարման վաթսուն ամին
Փափագ լցաւ փանաք գրչին։

117

ԱՒԵՏԱՐԱՆ

Շուշի Մ.Տ.Մ.

գրիչ՝ Յակոբ
վայր՝ Հերմոնի

277ա ... Արդ, աւարտեցաւ Աւետարանս այս ի հռչակաւոր անապատս Հերմոնի վանք, ընդ հովանեաւ սուրբ Լուսաւորչիս և սուրբ Յակոբիս և այլոց սրբոց, որ աստ կան, ձեռամբ մեղաւոր Յակոբի, ի թուիս Հայոց ՋԶ. (1457), ի թագաւորութեան Ջհանշայի, որդոյ Ուսուֆի, ի հայրապետութեան տեառն Գրիգորի Մակուեցոյ, և հոգևոր հաւր իմոյ Աստուածատուր անտեսին, և ծնաւղաց իմոց՝ մարմնաւոր հաւրն իմոյ Դաւիթին, և մաւրն իմոյ Մելիքին, և Խարխաթունին, նաև աշակերտացն իմոց...։

Յիշեսջիք... և կուսակրաւն քահանայն զՍիմէոն, որ սկսաւ զԱւետարանս և ոչ կարաց աւարտել... Ողորմեսցի Քրիստոս աստուած առհասարակ ում աշխատ կայ ի սմայ՝ թխտի տուողացն և որք ձեռնտու են եղել...։

118

ՃԱՇՈՑ

Երևան 4746

գրիչ՝ Յոհանէս Մանգասարենց
վայր՝ Արճէշ

ա

445բ ... Աւարտեցաւ քրիստոսահիմն և առաքելաշէն, մարգարէախաւս այս կտակ յամի իննհարեւրերորդի և վեցերորդի թուականութեանս հայկա-

* Խոսքը Խոսրով Անձևացու «Պատարագի մեկնության» մասին է։

զեան տոհմիս տումարի (1457), ձեռամբ անարժան դրչի Յովանէս սուտանուն քահանայի, ի խնդրոյ հեզահոգի և պատուական կրաւնաւորի՝ սուրբ և մաքուր աբեղայի Մխիթարայ...:

416ա ... Եւ ստացաւ զմարգարտաշար և զանառիկ փարթամութիւնս՝ զպայծառութիւնս մանկանց եկեղեցւոյ, ի վայելումն մանկանց եկեղեցւոյ և յետ ստեացս՝ յիշատակ անջինջ ի մէջ սուրբ եկեղեցւոյ։

Քանզի ումն սա զբոլոր մասունս տաւնից տէրունականաց ...զոր մեծաջան և ծանր աշխատութեամբ հաւաքեալ եղեւ ի սրրոց վարդապետացն, զոր և Տիրացու քահանայն Մշոյ յետոյ ի մի դիրս ժողովեաց, որոյ յիշատակն աւրհնութեամր եղիցի։

Արդ, աղաչեմք զամենեսեան, որք հանդիպիք սմա ընթերցմամբ, ուսմամբ, աւրինակաւ և կամ սակս մասին պատահմամբ՝ յիշեսջիք զստացող սստուածային կտակիս զՄխիթար կրաւնաւորն, և զբարեպաշտ ծնօղսն իւր զՎարդաշահն և զԴաւլաթն, և զհարազատ եղբայրքն իւր՝ զհանգուցեալն ի Քրիստոս զՄկրտիչն, և զնորին ղաւակսն զՅոհանէսն և զէմիեն, և զքոյրն իւր զԽութլուն, այլ և զՄարտիրոսն, և զկենակիցն իւր զՍիրամարգն, այլ և զԱննայն՝ զգնացեալն ի փառս աստուծոյ։ Դարձեալ, յիշեցէք զիմաստուն և զերախտաւոր ուսուցիչն իւր զվարպետ Վարդանն, և զծնաւղսն իւր, և զամենայն արեան մերձաւորսն...։

Այլ և զիս՝ զանարժան և զանպիտան գրիչս զՅովանէս՝ անուամբ քահանայ և ոչ գործով, և զերախտաւոր ուսուցիչն իմ զսուրբ վարդապետն Թումա մեծ րաբունին, և զմարմնաւոր ծնաւղսն իմ՝ զհայրն իմ զՄանդասար և զմայրն իմ զՓաշամէլիf, և զամենայն երախտաւորսն մեր, և որք սպասաւորեն մեզ ի չարաչարանս մեր և յաշխատութիւնս, այլ և զննջեցեալսն մեր՝ զհինքն և զնորքն, և ուղիղ սրտիւ աստուած-ողորմի ասացէք և աստուած ձեզ և մեզ ողորմի, ամէն։

Արդ, գրեցաւ աստուածաշունչ տառս յերկիրս Քաջբէրունի, ի քաղաքիս Արճէս կոչեցեալ, ի դուռն սուրբ տաճարիս Գէորգեայ զաւրավարիս. յառաջնորդութեան մեծ աթոռոյն Էջմիածնի ի հայրապետութիւն տեառն Գրիգորի կաթուղիկոսի, զոր տէր աստուած հաստատուն պահեսցէ զնա իւրովքն, ամէն։ Ի ղանութեան անաւրէն իշխանին Ջհանշայի, որ կալաւ զաշխարհն Արեւելից՝ զԱսպահան և զՀամադան, զՇիրազ և զՔրման, զէզդ և զԴաղման, և զբոլոր աշխարհն Իրաղաց, և կայ աներկիւղ և անահ յումեքէ։ Արդ, յայսմ ամի գրեցաւ աստուածային մարգարտաշար կտակս, յիշատակ Մխիթար կրօնաւորին...։

Բ

447ա Եւ արդ, ես Մխիթար կրօնաւորս ստացա զսուրբ գիրքս զայս ի հալալ և յարդար վաստակոց իմոց, և ետու զսա յիշատակ և նըւէր ի դուռն սուրբ և գերահըռչակ, ի խոյակապ և յերկնանման, զըմբէթայարկ և աստուածազարդ կաթուղիկէ սուրբ տաճարացս՝ Սայլաւանապատս սուրբ Աստուածածնին և սուրբ Կարապետին. յիշատակ բարի հոգոյ իմոյ և ծնօղաց իմոց, զոր յառաջն յիշեցաք՝ Վարդաշահին և Գովլաթին, և այլոցըն, գի յամէն տարի մին ժամ առնեն և զ[յ]իշատակարանս կարդան և խնամով պահեն. և կրաւնաւորքն և առաջնորդն Գօզալ եպիսկոպոսն և

դասավարն և փակակալն յանձն առին որ կատարեն, որքան որ խաղաղութիւն լինի. և ով որ հակառակէ՝ պատժի յաստուծոյ, ամէն։

Եւ արդ, մի ոք իշխեսցէ հեռացուցանել զսուրբ դիրքս զայս ի դրանէ սուրբ տաճարացս, ո՛չ ի մերոցն, և ո՛չ յաւտարաց ոք, ո՛չ յառաջնորդաց, և ո՛չ ի վարդապետաց, և ո՛չ յեպիսկոպոսաց, և թէ ոք յանդըդնի

447բ ե արասցէ կամ ծախէ կամ գրաւէ՝ զմասն զՈւդային առցէ և զանէծքն դաւձին, և զր||պատիժն Գոզալ եպիսկոպոսին և այլոց առաջնորդացն, որ գան զկնի և այնոցիկ, որ լի բերանով աստուած ողորմի ասեն, ամէն։

Դարձեալ, աղաչեմ յիշել ի տէր զքըւերորդին իմ զՄարգարայ սրբասէր կրօնաւորն, որ շատ է ծառայութիւն արարեր առաջի իմ։

գ

Աստուած ողորմի Բէլւեցում,
Որ հաց երեր վեց ժամում
Որ էր լօշ, մանդրամես, պանիր և ձկում,
Հրամէնց եղաւ չուխտակ պարընտիրում,
Եկին՝ իստակ ժտին իւրեանց գրում.
Գիրքս յիշատակ եղօ Ղարիպջանի հոգում.
Հայր մեր ասէք աստուծոյ սիրում*։

## 119

### ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

Երեւան 1755

ա

գրիչ՝ Յովանէս Մանգասարենց

325բ Տէր աստուած Յիսուս Քրիստոս, որ արարէր սքանչելիս ի ձեռն սրբոց քոց՝ նոյն մարդասէր կամաւքդ ողորմեա ստացաւղի սուրբ գրոցս՝ աստուածասէր և բարեպաշտ խաւջին Խաչատուրն, և հարազատին իւրոյ Աւետիս աբեղային՝ սուրբ և մաքուր կրաւնաւորին, և ամենայն ազգականացն՝ կենդանեաց և մեռելոց, և ձեզ լսողացդ և կարդացողացդ առ հասարակ ողորմի Քրիստոս։ Եւ ինձ՝ անարժան գրչիս Յովանէս քահանայի, և ուսուցչին իմոյ՝ աշխարհալոյս վարդապետին Թումայի, և ծնաւղացն իմոց Մանկասարի և Փաշա-Մէլէքի, և սպասաւորիս Շուքրան-Խաթունի, և ամենայն աշխատողացս, ամէն, եղիցի։

գրիչ՝ Կարապետ

բ

541բ ... Ողորմի Քրիստոս աստուած խոջա Խաչատուրն և ծնաւղաց նորին, ևս առաւել տէր Աւէտիսին, որ ի յայսմ ամի փոխեցաւ առ Քրիստոս, և Կարապետ գրչին, և կարդացողացդ և լսօղացդ, ամէն։

գ

639բ ... Արդ, այս Տաւնացոյց կարգեալ բաւանդակ տարոյ աշխատութեամբ կարգեալ տէր Իսրայէլի Խաչենեցւոյ եպիսկոպոսի, ի խնդրոյ

* Գրված է 447բ էջի ստորին լուսանցքում, հավանաբար նույն Յովանէս Մանգասարենցի ձեռագրով։

Ջալալ-Դօլի՝ տեառն Խաչենւոյ և տէր Գրիգորի եպիսկոպոսի։ Որք աղաչեցին զտէր Իւրայէլ եպիսկոպոսն, հայեցեալ ի կորովութիւն մտաց նորա և ի ժուժկալութիւն բարուցն. եւ նա յանձին կալեալ և շան եդ գտանել զօր նահատակութեան սրբոց, որ գրեալ կայ ի լիակատար պատմութիւնն, համառօտելով նմա զսքանչելի կատարումն սրբոցն և եդ ընդ այլ կարգեալ Յայսմաւուրսն, զոր կարդ ամսոցն հայիւ և հոռոմիւ միաշունչ եղեալ անսղալ զտարին կատարեն։ Բայց ոմանք յանգէտս եղեալ հակառակեն այսպիսի գեղեցիկ ընթերցուածոց, որ աւր ըստ աւրէ զլսելիս մեր զարհուրեցուցանէ. և դողումն ցաւագին տա անձանց մերոց։

Եւ արդ, եթէ այնպիսեացն է արքայութիւն երկնից, ապա զի՞նչ լիցի ծուլից և հեղգացելոց, այլ միայն յայս ապաւինեալ յառաջ ընթանալ յաւժար սրտիւ և տանել զյիշատակ սրբոցն և բարեխաւս առնել առ աստուած, զի հաշտեսցի ընդ մեզ, և բարձցէ յաշխարհէ զպատուհաս մեղաց մերոց, և արժանի արասցէ սրբոցն փառաց հասանել ի Քրիստոս Յիսուս ի տէր մեր, որում փառք յաւիտեանս, ամէն։

Արդ, ի յայսմ ղառնացեալ ժամանակիս եղև ցանկացող աստուածային սուրբ կտակիս, որ ունի հաւաքեալ յինքեան զտաւն սուրբ Աստուածածնին, [և սուրբ] կարապետին և մրտչին Յովաննու, և զսուրբ Ստեփանոսի նախավկային, առաքելոց և զմարգարէիցն, զհայրապետացն և զեպիսկոպոսացն, զճգնաւորացն և զկուսանաց՝ միայնդամայն զամենայն վկայիցն արեամբ ներկեալ մարտիրոսաց։

Զոր տեսեալ զայսպիսի գանձս աստուածային և պայծառ լուսով լցեալ հեզահոգի և բարեմի<մի>տ խոջա Խաչատուրն, և ետ դրել զսայ յիշատակ հոգոյ իւրոյ, և ծնողաց՝ հօրն Առաքելին և մօրն՝ Մըրուաթին, և կեն[ա]կցին Սալթան-Խաթունին և հարազատ եղբօրն տէր Աւետիսին, ամէն*։

## 120

## ԳԱՆՁԱՐԱՆ

Երևան 4091

գրիչ՝ Կարապետ
վայր՝ Ոստան

258ա ... Եւ արդ, գրեցաւ սա ի մայրաքաղաքս յՈստան, ի դուռն Քարի սուրբ Աստուածածնին, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս և սուրբ

* Սույն հիշատակարանը հասել է մեզ ոչ թե իր նախնական բնագրով, այլ ԺԶ. դարի ընդօրինակությամբ, որը կատարել է ձեռագրի նորոգող Նեկեզոսը։ Նա ընդօրինակելով ձեռագրի գլխավոր հիշատակարանի իրեն հետաքրքրող մասերը, վերջում իր կողմից ավելացրել է հետևյալը. «Արդ, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք սմա կարդալով կամ աւրինակելով՝ ուղիղ սրտիւ և լի բերանով աստուած-ողորմի ասացէք վերջին ստացօղի գրոցս ըռէս Արիջանին, հօրն Ղուլիջանին, մօրն Սադդաթին, և կողակցին Հոռոմսիմին, և ուրեանց զաւակացն՝ Բաբջանին, և կողակցին Նաէֆին, և պարոն Վարդին, կողակցին Անին, որդոյն Էլէքսանին, կողակցին Զմրութին, որդոյն Ղուլիջանին և Գազպարին, դստերացն Մարգարտին, Երեմսիմին, Թամասիին և ///»։

Համանման բովանդակությամբ հիշատակագրություններ նորոգող Նեկեզոսը թողել է ձեռագրի բազմաթիվ էջերի լուսանցքներում։ Իր մասին նորոգողը տեղեկություն է տալիս 639ա էջի հիշատակագրության մեջ («...և ինձ մեղուցեալ Նեկեղոս վերըստին նորոգողիս, և հօրն և մօրն իմոյ»)։

Ստեփաննոսի նախավկային, ի Թուականիս Հայոց ՋԶ. (1457), ի հայրա-
պետութեանն տէր Զաքարիայի, զոր տէր աստուած ընդ երկայն աւուրս
արասցէ զնա և պահեսցէ յամենայն չարէ։

Արդ, և ես՝ Կարապետ գծագրող սորին, յերես ի գետին դնելով աղա-
258բ չեմք զձեզ առ հասարակ զամենեսեան զմեծ և զփոքր, որ և զիս||յիշման
արժանի առնէք՝ ողորմայնացեալս ի բարեաց գործոց՝ զմեղաւորս յարդա-
րոց ... զԿարապետ գրիչս, և զմեծ պապն իմ զՅոհանէս քահանայ, և
զհայրն իմ զՍտեփանոս քահանայ, և զեղբայրն իմ զՅովանէս քահանայ,
և զմայրն իմ զՓաշա-Մելէք, և զքոյրն իմ զԱրման, և զամենայն ազգա-
կիցսն իմ. եղբայրական սիրով և հայրական գթով յիշեցէք զմեզ ի սուրբ
յաղօթս ձեր և ուղիղ սրտով մեզ աստուած-ողորմի ասացէք և մեր մե-
ղացն թողութիւն խնդրեցէք յաստուծոյ և աստուած յիշողացդ ողորմեսցի,
ամէն։

Դարձեալ, ես՝ Կարապետ քահանայ, ծառայս ծառայիցդ աստուծոյ,
ստացայ զԳանձարանս զայս ի հալալ յինչից իմոց՝ յիշատակ հոգոյ իմոյ,
և ամուսնոյն իմոյ Շարմելէքի՝ հանգուցելոյն ի Քրիստոս, և բարի ծնո-
ղացն իմոյ՝ խօջայ Ստեփանոսին և Ջամելէքին, և պապին իմոյ Աւետի-
սին, և հոգևոր հարց իմոց տէր Յովանիսին և Մկրտիչ կրօնաւորին, և հարա-
զատ եղբօրն իմոյ Աւետիսի, և ամուսնոյն իւրոյ Էլխաթունի, և քուերցն իմոյ
259ա Դիլշատ-Խաթունի և Ուլու-|| Խաթունի, և զաւակաց իմոց՝ Յովանիսի, և
կենակցին իւրոյ Խոնձին, և Հէրապետ սարկաւագին, և դստերացն իմոյ՝
Դիլշատ-Խաթունի և կենակցին իւր Սֆանդարին, Ջամելէքին և տանու-
տրոջըն իւր խօջայ Աբդլ-Մըսէհին, Սուլտանին և իւր կենակցին Մալուխին,
և փոքր դստերն՝ որբ մնացելոյն ի մօրէ Խոնձայի, և այլ ամենայն ազգա-
կանացն՝ կենդանեացն և հանգուցելոցն...։

Ընդ նոսին և զառաջին քահանայքն, որ յայս սուրբ եկեղեցոյ դրանէս
յաստուած փոխեցան՝ զտէր Յովանէս փիլիսոփայն, և զՅովանէս, և
զՍտեփանոս, զՅոհանէս, և զՊօղոս, զԱւետիս, և զՅոհանէս Խլենեցն,
զՍտեփանոս Գոռեխն, և զՍտեփանոս մանկագոյն քահանայ, որ փոխե-
ցաւ ի Քրիստոս, և այլոցն ամենեցուն, զոր և ճշմարիտ քահանայապետն
Յիսուս Քրիստոս ողորմեսցի նոցա և դասակից և պսակակից արասցէ
զնոսա ամենայն սրբոց և սիրողաց անուան իւրոյ, ամէն։

259բ Եւ զայժմու քահանայքս, որ||կան ի սպասաւորութիւն սուրբ Աստուա-
ծածնիս՝ զտէր Կարապետ՝ ստացող տառիս, և զմիւսն՝ զԿարապետ քա-
հանայն, զՄիրաքն, և զտէր Սադաղայ, որ և Քրիստոս աստուած պահես-
ցէ զսոքա չահ անչիչանելի ի մէջ եկեղեցոյ...։

Դարձեալ, ես՝ Կարապետ քահանայս, խօջայ Ստեփանոսի որդիս, ի
յՈստանայ ի Նոր-Քաղաքէս՝ ստացայ զսա ի վաստակոց իմոց և եդի
զԳանձարանս ի դուռն գերամաքուր և փառաւորեալ սուրբ Աստուածած-
նին Նոր քաղաքի, որպէս զի վայելեսցին զսա մանկունք սուրբ եկեղեցոյ
և ուրախասցին սովաւ հանապազ ընթերցմամբ...։

Եւ արդ, ես՝ Կարապետ քահանայ և կենակիցն իմ Շարմելէք ետուք
260ա գրել զայս Գանձարանս և || եդաք զսա յիշատակ մեզ ի դրանս Նոր-Քա-

*զաքի սուրբ Աստուածածնին, որ կացցէ սա ի սուրբ եկեղեցիս, յիշատակ բարի մեզ և նախնեացն մերոց։ Եւ մի ոք հեռացուցանել ջանայ զսա ի դրանէ սուրբ տիրամօր Աստուածածնիս, ո՛չ ի մերոց յազգականացն, և ո՛չ յօտարաց, և ո՛չ ի քահանայից, և ո՛չ յաշխարհականաց, ո՛չ հեռացուցանելով, և ո՛չ ծախելով, և ո՛չ ի յայլ տեղիս տանելով։ Եւ ով ոք լրբանայ և յանդգնի և հեռացուցանել ջանա զսա ի դրանէ սուրբ Աստուածածնիս ծախելով կամ հեռացուցանելով՝ այնպիսին հեռասցի յողորմութենէն աստուծոյ և զանէծքն զօձին առցէ և զպատուհասն զԿայենին ժառանգեսցէ. իսկ խնամ տարօղքն և կարդացօղքն սորին ափհնին յաստուծոյ և յամենայն սրբոց, ամէն։*

*Յառաջն, որ ես տղայ եղայ,*
*Նա բարի գործոց ցանկացայ,*
*Ի գիր և ի կարդալ մտայ,*
*Թէ տի լինիմ ես քահանայ։*
*Իմ վարպետն էր խիստ բարի,*
*'Ի իւր բարեացն ես չհետևեցայ,*
*Զամէն ի հետ մեղաց կացի,*
*Բարի գործոց ես չցանկացայ։*
*Զօրն կացի ես անուղայ*
*Եւ ի յաղօթրս ծուլացայ,*
*Ես՝ անարժանս ի կարգ մըտայ,*
*'Ի կարգաւորաց կորանք եղայ։*
*Զամէն մեղաց դարան եղայ*
*Ես կեղծաւորս և անյիմայ,*
*Լըմնեցաւ ինձ հիսուն տարին,*
*Իմ մեղքն եղև ինձ փաթաւայ,*
*Ցիմիկ կամ ես տարակուսեալ*
*Ի յիմ չար գործոցս ի վերայ։*
260բ *Աստուածածին իմ || յոյս դու,*
*Քանց ըզքեզ էլ ինձ ճար չկայ,*
*Զի ես քո ծառայն եմ անպիտան,*
*Ընկա՛լ զնուէրս և զաղաչանս,*
*Որպէս զայրի կնոջն լոմայն,*
*Եւ զիս քո տեսուդ արայ արժան։*
*Մի՛ յիմ մեղացն ինձ բարկանար,*
*Քո ծառայիս, զի եմ անյար,*
*Եւ Քրիստոսի մարդասիրին*
*Փառըս տաւուք այժմ [և] յաւիտեանս։*

*Դարձեալ, յիշեցէք ի Քրիստոս զԽաչատուր սարկաւագն և զմայրն իւր զՇարմելէֆն, և աստուած-ողորմի ասացէք նոցա, որ աշխատեցաւ ի թուղթ կոկելն։*

## 121

### ԺՈՂՈՎԱԾՈՒ ԿԱՆՈՆԱՑ ԵՒ ԽՐԱՏՈՒՑ

*Երևան 228*

գրիչ՝ Սիմէոն
վայր՝ Դերձկոյ վանք

243ա *Փառք... որ ետ զաւրութիւն իմոյ տկարութեանս յանկ հանել զսուրբ կանոնքս հոգէշահ, և ամենայն քահանայից և քրիստոնէից խրատք հոգոյ և մարմնոյ ի սուրբ առաքելոցն և ի սուրբ հայրապետացն և ի սուրբ Լուսաւորչէն, կանոնք հաստատեաց ամենայն եպիսկոպոսաց՝ պարտ է ամենայն եպիսկոպոսաց զմահ ի յանձն առնուլ և ոչ թողուլ յօրինաց և ի*
243բ *կանոնաց բան մի անցանել, զոր հրամայէ ‖ տէրն մեր Յիսուս Քրիստոս, թէ՝ Երկինք և երկիր անցանեն և բան մի յաւրինաց և ի մարգարէից ոչ անցանեն։*

*Ջոր եղև գրաւ գրչութեան սորա ի թուականիս Հայոց ՋԶ. (1457), ի սուրբ անապատիս* Դերձկոյ, *ընդ հովանեաւ սուրբ Թորոսու, ձեռամբ* Սիմէոն *անարժան կրաւնորի, ի խնդրոյ վերոյգրեալ* պատուելի եպիսկոպոսին տէր* Յակոբին, *զորոյ վայելել տացէ տէր աստուած պարագայց ամաւք մարմնով։*

*Արդ, աղաչեմ զամենեսեան, որք աւգտիք ի սմանէ կամ աւրինակէք, յիշեսջիք ի սուրբ յաղօթս ձեր զ*Սիմէոն *գրչակս և դուք յիշեսջիք ի Քրիստոս։*

*Ո՜վ հոգևոր եղբայր տէր* Յակոբ, *յորժամ ընթեռնուս զհոգէշահ խրատքըս և զկանոնքս՝ լի սրտիւ յիշեայ զանարժան գրիչ յաղաւթս քո։*

## 122

### ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՄՈՎՍԻՍԻ ԽՈՐԵՆԱՑՒՈՅ

*Երևան 4515, էջ 178 (Ղ. Փիրղ. Նշխարք պամ. Հայոց, Բ.)*

*Ի թուոյ Հայոց ՋԶ. (1457), որ և ես անպիտան ծառայս՝ սպասաւոր սրբոյն Թովմայի առաքելոյ սքանչելագործ գերեզմանին տէր* Աբրահամ *վարդապետ, որ ի յ*Աղբամար *սուրբ խաչին առնէի, վասն մեր սուրբ աջին առնէի չորս գոմէշ և չորս եղ, և աջի համբուրից փարէն մեր վանիցն է։ Ով որ յանդքնի՝ սուրբ Առաքելոյ անէծքն ի վերայ իւր եղիցի, ամէն։*

*Վկայ* Աւետիս *եպիսկոպոս և այլ միաբան սուրբ վանիցս։*

* *Չնայած «վերոյգրեալ» բառին, տեր Ցակոբի անունը գրիչը մինչ այս չի հիշատակել։*

## 123

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Փիրդ. Նշխարք, էջ 176, Նօա. 185, Հոգւոյ վանք*

*գրիչ՝* Ներսէս
*վայր՝* Աղթամար

*... Արդ, կատարեցաւ աստուածախօս գանձս..., ձեռամբ* Ներսէս *խաբեղայի... յաստուածաբնակ յաթոռս* Ախթամար, *ընդ հովանեաւ սուրբ խաչիս. ի թուաբերութիւն հայկազեան տումարի ՋԶ. (1457), ի դառն և ի նեղ ժամանակիս, որ խիստ ի տառապանս կամք ընդ հարկի անօրինաց...։*

## 124

## ՄԵՍՐՈՊԱՅ ՎԱՅՈՑՁՈՐԵՑԻՈՅ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՍՐԲՈՅՆ ՆԵՐՍԻՍԻ

*Երևան 8301*

*գրիչ՝* Մովսէս
*վայր՝* յԵրկիրն Բարմ

48ա *Փառք... որ ետ կարողութիւն տկարութեանս մերո՝ պիտակ անուն և*
*բանի խնդրող* Մովսիսի *հասանել ի վերջ գրիս։ Արդ, դծագրեցաւ Պատմութիւնս երիցս երանեալ սուրբ և երջանիկ հայրապետին մեծին Ներսեսի և թագաւորացն Հայոց ի թվականի Հայոց ի ՋԶ. (1457), ի երկիրն որ կոչի* Բարմ, *ընդ հովանեաւ սուրբ առաքելո Գերեզմանիս և սուրբ Գէորգեա տաճարացս, Բարթողիմէոսի և այլ սրբոց որ աստ կան, ի յառաջնորդութեանն երջան[իկ] և ընդրեալ տէր* Հայրապետ *եպիսկոպոսի, որ հայրախնամ սիրով գթա և խնամէ զմեզ. զոր և տէր աստուած հաստատուն և անփորձ և անսասան կեն[աւք] պահեսցէ ընդ երկայն աւուրս՝ յամերամս ժամանակաց, և յետ սատեացս ելանելոյ ընդ երջանիկ հայրապետացն դասեսցէ, ամէն։*
*Արդ, յերես անկեալ աղաչեմ զձեզ, ո՛վ սուրբ հայրօ և եղբայրք, որք հանդիպիք սուրբ և երանեալ հայրապետի պատմութեանս, յիշեսջիք ի սրբամաքուր յաղօթս ձեր* զՄովսէս *սիրող բանի և զգծագրողս, նաև*
48բ *զտէր* Յակոբ *[ծ]եր կրօնաւոր, և* զՅովճանէս *փակակալ, որ աւգ||նական*
*եղեն գրիս, որով աւգնական և փրկիչն մեր Քրիստոս աւգնեսցէ նոցա յաւուր նեղութեան և փրկեսցէ յամենայն վտանգից և փորձանաց և զերկնից արքաութիւն տացէ նոցա հանդերձ ծնողօք իւրեանց, ամէն...։*

## 125

## ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹԻՒՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹԵԱՆ ՆՈՐ ԾՆԵԱԼ ՄԱՆԿԱՆՑ, ԱՌԱՔԵԼԻ ՍԻՒՆԵՑԻՈՅ ԵՒ ՄԱՇՏՈՑ

*Երևան 9694*

ա

*գրիչ՝* Մարգարէ
*վայր՝* Բալու

*... Գրեցաւ սա ի թվ ՋԶ. (1457) ի գուռն սուրբ Գէորգա վանիցս ի* Բալու:

Աղաչեմք ղձեզ ով ոք հանդիպիք սմա ձեռնադրել քահանայ, կամ կարդայք, կամ աւրինակէք յիշեցէք յաղաւթս զմեզաւք լցեալ սուտանուն Մարգարէ աբեղայս և զծնաւղքն իմ, և աստուած, որ առատն է՝ մեզ և ձեզ առ հասարակ ողորմեսցի։ Եւ սղալանաց և խոշորութեան գրոյս մի մեղադրէք, զի կար մեր այնչափ էր։

Աստուած վայելել տայ ղերից տեարս տէր Աւետեցն, ամէն։

Բ

գրիչ՝ Գրիգոր

Ո՛վ մանկունք սուրբ Սիովնի,
Ձձեզ աղաչեմ արտասուալի,
Որք հանդիպիք յայսմ տառի
Յիշման առնէք դուք արժանի՝
Զտէր Աւետիս յոյժ գովելի,
Անձն տկար և քաջ յոգի,
Որ ետ գրել զբանս ի կարգի
Ի յիշատակ անշնջելի։
Եւ դուք յիշաւղքդ յիշեալ լիջիք
Ի յարարչէն ամենայնի
Այժմ և յաւուրն ապագայի,
Ամէն, կրկին և եղիցի

Զսակաւ գծողս մեղաւք լցեալ Գրիգոր յիշեայ, ո՛վ տէր իմ։

Գ

Գնեցի ի Խարբերք, ԺԴ. (14) ֆլ[որին] խոճայ Ասլին, ձեռաւք խոճայ Իճուին (՞), ձեռաւք Սարու Ստեփանոսին, ձեռաւքն Մուրենկայ, ի թվ. ՋԶ. (1457)։

Ճանիպէկն առաւ*

126

ԱՒԵՏԱՐԱՆ

«Լոյս», 1905 թ., էջ 287—288

գրիչ՝ Մկրտիչ
վայր՝ Հիզան

... Արդ, կատարեցաւ աստուածախաւս և տիեզերաքարոզ Աւետարանըս ի խնդրոյ պատուական և հաւատարիմ մահդասի Յովհաննէսին, վասըն որոյ վառեալ հաւատով և սիրով որ ի Քրիստոս Յիսուս՝ ետ գրել սուրբ Աւետարանս յիշատակ հոգւոյ իւր, և ծնաւղացն իւրոց՝ հօրն Խասանին և մաւրն Մամոցին, ի վայելումն իւր զաւակին Խաչատուր քահանային...։

Եւ արդ, ես՝ ունայնս ի բարեաց գործոց սուտանուն գրչակս Մկրտիչ,

* Ըստ երևույթին շարունակությունը եղել է հաջորդ թերթի վրա, որը չի պահպանվել։

որ անուամբ եմ և եթ և ոչ արդեամբք և երկաւք, որ ձայնիւ բարձրացեալ և հոգւով կորացեալ ըստ իմում տկարութեանս, դրեցի զայս աւետարանս ի քաղաքիս որ կոչի Հիզան, ընդ հովանեաւ ամենասրբուհւոյ Աստուածածնիս, երկնից կամիթեալ (˜) խորանիս, և նորաբողբոջ սուրբ Յարութեանս, և սուրբ Սարդսի զաւրավարին և որդւոյն իւրոյ Մարտիրոսին, և սուրբ Գէորգայ զաւրավարին, որ սակաւ մի հեռի է. եւ արդ, յայսքան և յայսպիսի բարեվայելուչ և մեծափառ սրբոցս գումար՝ բարեխաւս աշխարհի և ապաւէն ապաստանի քաւութեան մեղուցելոց, զոր դիմեալ մեծաւ յուսով բարի արմատոյ շառաւիղն, կատարեալն հաւատով և գործով բարեաց Յովանէս մահղասին, կամեցաւ ըստանալ զաստուածախաւս սուրբ Աւետարանս, զոր ի վաղուց հետէ փափաքեալ ցանկայր այսմ լուսահըրկան* և հոգիաբուխ մատենիս...։

Արդ, յիշեցէք ի Քրիստոս զստացաւղս սուրբ Աւետարանիս զմահդասի Յովանէսն, և զիւր ծնաւղքն՝ զհայրն զԽասան և զմայրն զՄամոցն, և զեղբարքն՝ զՅովսէփ քահանայն և զԱբրէհամն, և աստուած-ողորմի ասացէք սոցա, ամէն։ Յիշեցէք ի Քրիստոս զորդիք մահդասուն՝ զԽաչատուր քահանայն և զԳուլամերն, և զԱլամն՝ զդուստրն իւր, և աստուածողորմի ասացէք։

Դարձեալ, կրկին աղաչեմ զձեզ՝ յիշեցէք ի Քրիստոս զՅովանէս մահդասին, և զիւր եղբարքն զՅովսէփ քահանայն և զԱբրահամն, զԽաթուն-Մէլէքն, և զՓաշա-Մէլէքն, զՇարմէլէքն, զ///, զՇահումբէկն, զ///, զՓաշամէլէքն, և զԱլամն, և զՄարուզէկն և զամենայն արեան մերձաւորսն...։

Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի թուականութեանս ՋԶ. (1457)... ի հայրապետութեան տէր Գրիգորի: Արդ, որք հանդիպիք սմա կարդալով կամ աւրինակելով, անմեղադիր լերուք խոշորութեան գրոյս և սղալանացս, զի կայր մեր այս է։ Յիշեցէք ի Քրիստոս զանարժան գրիչս և զծնօղսն իմ զԱվրանն, և զԱղուբն, և աստուած-ողորմի ասացէք, ամէն...։

## 127

## ՄԱՇՏՈՑ

*Փիրդ. Նոա. 187, Երզնկա, ի ս. Կիրակոսի վանք*

գրիչ՝ Աստուածատուր
վայր՝ յերկիրն Կամխայ

... Արդ, գրեցաւ սա ի թվին Հայոց ՋԶ. (1457), ձեռամբ Աստուածատուր սարկաւագի և վարդապետիս իմ Գրիգոր եպիսկոպոսիս...։ Գրեցաւ Մաշտոցս յերկիրն Կամխայ, ի գաւառն սուրբ Լուսաւորչին, ի դրունս սուրբ Լուսաւորչին, և սուրբ Կարապետին, և սուրբ Տիկնի, և սուրբ Աստուածածնի։

---

* Թերևս ձեռագրում եղել է՝ «լուսալըրական»։

## 128

## ԱՌԵՏԱՐԱՆ

*Երուսաղէմ 1490*

*վայր՝* Երզնկայ

*Եւ դարձեալ ի սոյն աւուրս եղև ահագին շարժ յ*Երզնկայն, *և կործանեաց զքաղաքն, և զբոլոր պարիսպն յատակէն տապալեց, և մեռան ի նմին ժամու ի շարժէն անձինք ԲԺ. (12) հազար՝ հաւատացեալ և անհաւատ, այր և կին, ծեր և տղայ և սրբասնեալ քահանայք, զոր ոչ կարեմք զաղէտս և զկսկիծ և զկոծ և զհառաչ նոցա թուել, զի ականատես եղաք ահագին պատուհասին, զոր արարիչն աստուած մի ցուցցէ ծառայից իւրոց այնպիսի փորձութիւն և վիշտ։ Եւ այս ամենայն եկն ի վերայ մեր վասն մեղաց մերոց ըստ մարգարէին։ Եւ յայսմ ամի էր թվական Ջ. և Զ. (1457) ապրիլ ամսոյ ԻԳ. (23), յաւուր շաբաթու կրկնազատկին, ի չորրորդ ժամու ցերեկին**։

## 129

## ԳԱՆՁԱՐԱՆ

*ՄՑՀ հտ. Ա, 83, էջ 165—166*

*գրիչ՝* Սարգիս
*վայր՝* Երուսաղէմ

701 *Փառք... որ ետ կարողութիւն տրկար անձին* Սարգսի *հասանել յաւարտ սորին յամի Ջ. և Զ. թուականիս մերում (1457), ի նոյեմբեր ամսոյ ի ԻԵ. (25)...։*

*Եւ արդ, գրեցաւ սա ի սուրբ մայրաքաղաքս* Երուսաղէմս, *ընդ հովանեաւ սուրբ եկեղեցոյս, որ է հանգստարան սուրբ գլխոյն Յակոբայ որդոյն Զեբեթեա։*

---

* *Հավանաբար այս երկրաշարժի մասին է տաղասաց Թորոս Մշեցին գրել.*

*«...Ի յանդընդոց գերկիր շարժեց,*
*Շատ շինութիւն արար օվէր (իմա՛ աւեր).*
*Հանց մեծամեծ ցասումն եցոյց,*
*Դեռ ի մեղաց չեմք վախենար։*
*Այն Եղընկան ամուր քաղաքն*
*Իսկի չունէր առնելու ճար,*
*Զբոլոր պարիսպն ի շուրջածեց,*
*Զգլուխն տարաւ ի հիմն ի վայր.*
*Հանցեղ քակեց և աւերեց,*
*Երիս անցուց ղքաղաքն ի վար.*
*Անասելի մարդ կոտորեց*
*Ներս, որ թուաւ տասն հազար...*
*Շատ մի սպաննեց մեծ խոճանին...*
*Շատ հիւնէրպանա փէշաքերներ,*
*Կտրըճվորաք՝ մտօք ճարտար,*
*Շատ մի սպաննեց կին գեղեցիկ,*
*Ծոհեբ ոսկուն են պարապար.*
*Զամէնն յիւր տունըն խափանեց...*
*Իսկի չեղաւ փախչելու ճար...» (Ձեռ. № 9271, էջ 107բ—109ա)։*

*Արդ, աղաչեմ զամենեսեան որք հանդիպիք սմա տեսութեամբ կամ աւրինակաւ և կամ այլ ինչ աւգտութեամբ իւիք՝ յիշեցէք ի միտս բարիս զեղբարս մեր* զԳրիգոր *գրոց աշակերտ, որ ձեռնտու և աւգնական եղև մեզ։ Այլ և զերիցս երանեալ զճգնազգեաց զերջանիկ րաբունապետս մեր* զԿարապետ *զհոգևոր հայրս մեր, որ զտիւ և զգիշեր ի խորս աստուածային տառից դեգերելով վասն մեր՝ հայրական գթով խրատելով և ուսուցանելով զմեզ, որոյ ոչ գոյ տրիտուր փոխարինի ի մէնջ, ... այլ և զբազմերախտ հայրն մեր և զուսուցիչն* Զաքարիա *աբեղայն և զծնաւղքն իւր յիշեցէք ի Քրիստոս, ամէն։*

*Դարձեալ, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք սմա յիշեցէք ի մաքրափայլ յազաւթս ձեր զփրծում գրիչս* զՍարգիսս, *և զհայրն իմ* զՅովանէս, *և զմայրն իմ* զՄինա-խաթուն, *և զեղբարքն իմ* զԽաչատուր *և* զՍատաղա, *և զքոյրն իմ* զԱրուս-խաթունն, *և զկենդանիքն և զհանդուցեալքն ի Քրիստոս։*

## 130

### *ԱՒԵՏԱՐԱՆ*

***Երևան 4186***

*ստացող՝* Ջանջան

*253ա* *Կամաւ ամենակալ արարչին աստուծոյ... մեք մեղուցեալ և անարժանք աղախին և ծառայք սուրբ Աստուածածնին՝ ապաշխարողքս՝* Ջանջան *և* Մանան, *ոչ ունելով զաւակ և յիշատակ յերկրի, մեծ յուսով ստացաք զսուրբ Աւետարանս ի փրկութիւն և ի յիշատակ հոգոց մերոց։ Վասն որոյ ի ծունկս անկեալ ողորմելի անձամբ խնդրեմք ի սուրբ քահանայիցդ, որք կարդայք և լուսաւորիք սովաւ, յիշեցէք զիս՝ զտառապեալ և զմեղաւոր ծառայս՝* զՋանջանս, *և զհայրն իմ* զՎարծէլ, *և զմայրն՝* Թամթայ-խաթուն, *և զորդին իմ* զՄարտիրոս *քահանայ, որ ի յանաւրինաց սրով կատարեցաւ, և զհարազատ եղբայրն իմ* զՄելքսեդ *քահանայ՝ զվայելաւղ սուրբ Աւետարանիս, և զնորաբողբոջ որդին՝* զՈհանէս, *և զայլ եղբարսն իմ, ասելով ի խորոց սրտէ, թէ՝ տէր աստուած ողորմեայ նոցա...։*

*Գրեցաւ վերջին յիշատակարանս ի թվիս Հայոց ՋԶ. (1457)։*

## 131

### *ԱՒԵՏԱՐԱՆ*

***Երևան 7874***

*գնող՝* Աստուածատուր

*126բ* *Արդ, ես պարոն* Աստուածատուրս, *որ ցանկացող եղէ այսմ Աւետարանիս, և գնեցի զսա ի հալալ յընչից իմոց, յիշատակ ինձ, և ծնաւղաց իմոց պարոն* Միրաքին *և* Զինան-Մելիքին, *և կենակցին իմոյ* Խաս-Մէլիքին, *և ամենայն արեան մերձաւորացն։Եւ յիշեցի զբան մարգարէին որ ասէ, թէ՝ Երանի որ ունիցի զաւակ ի Սիոն և ընտանի յԵրուսաղէմ, և եդի*

*զսա յիշատակ ի սուրբ եկեղեցիս ի սուրբ Կոստընդինն, և ի սուրբ Սարգիսն՝ յիշատակ ինձ և ծնաւղաց իմոց...։*

*Գրեցաւ յիշատակարանս ի թվ. Հայոց ՋԶ. (1457), ի յօգոստոսի ամսոյ ի Ե. (5) աւրն, ի փառս աւրհնելոյն, ամէն։*

## 131

## ԱՒԵՏԱՐԱՆ

**Երևան 6292**

*Նորոգող՝* Յովանէս

219ա *Ես՝* Յովանէս *քահանայ՝ տուի նորոգել զսուրբ Աւետարանս յիշատակ ինձ, և ծնաւղաց իմոց, և ամուսին իմոյ* Խոյմէլէf, *և զաւակաց մերոց՝* Ստեփանոսի *և* Ջանբաշայի: *Այլ և աղաչեմ սուրբ ընթերցողք, յորժամ ընթեռնուք յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զ*Յովանէս *և զազգն ամենայն՝ զհանգուցեալսն և զկենդանիքն ամէն։ Եւ ինքն Քրիստոս աստուած՝ յիշողացդ զանճառ և զանիմանալի հանգիստն պարգևէ։*

*Այլ և աղաչեմ յիշման արժանի առնել ի բարին Քրիստոս* զէմիշ *և* զԴիլշատ՝ *զհոգևոր մայրքս մեր, որ բազում երախտիս ունին ի վերայ մեր, աստուած իւրեանց վարձահատոյց լինի, ամէն։*

*Թվ. ԹՃԶ. (1457)։*





132

## ՃԱՇՈՑ

**Երևան 6260**

ա

*գրիչ՝* Յոհանէս
*վայր՝* Հախպատ

563ա *... Արդ, եղև գրաւ գրչութեան սորա ի շրջագայութեան հայկազեան*
*տումարի Ջ. և է. (1458), ի հայրապետութեան տեառն* Գրիգորի *ի* Վա-
ղարշապատ *արքայանիստ քաղաքի՝ ի բուն քահանայապետական յաթոռ,*
*որ է իջումն միածնի աստուծոյ բանին, և յաշխարհակալութեան տանս*
*Հայոց* Ջհանշահի՝ *թուրքմանի և արեանարբու գազանի, յաստուածապահ*
*գաւառս* Լաւռոյ, *ի յերկնահանգէտ մեծարգոյ և ի գերահռչակ ուխտի*
Հախպատ *վերաձայնելոյ, ի դրան մաւրս լուսոյ սուրբ Սիովնի և հրաշա-*
*փառ Կաթուղիկէ սուրբ տաճարիս և արեամբ ներկեալ աստուածընկալ*
*սուրբ Նշանիս։ Եւ յառաջնորդութեան սորա տէր* Աստուածատրոյ, *որ ի*
*յաւուրս և ի ժամանակս յայս կան բազում կրաւնաւորք և աղաւթարարք՝*
563բ *տէր* Ղու||կաս, *տէր* Աստուածատուր *փակակալ,* Տիրատուր, Գրիգոր,
Պետրոս, Գաւրգի, Յովանէս, Մխիթար, Ներսէս, Յովանէս, Ոհանէս,
Վարդան, Հայրապետ, Դաւիթ, Աբրահամ, Արթուխ, *զոր տէր աստու-*
*ած ընդ երկայն աւուրս արասցէ զնոսա և յետ աստեացս զերկնից ար-*
*քայութիւնն պարգևեսցէ սոցա։*

*Արդ, յերես անկեալ մայրամած դիմաւք աղաչեմ զգումարքդ խմբից եկեղեցական դասուց ի պետականէն գլխոյ մինչ ի վերջինսն՝ ըստ իւրաքանչիւր աստիճանի, որք այժմ և որք յետոյ, որք վայելէք և լուսաւորիք կարդալով կամ գաղափար առնելով յիշել ի տէր զտէր* Յովհանէս *վարպետն, որ զաւրինակն շնորհեաց, ...* նաև *զեղբայրն իմ ըստ հոգւոյ* զԳրիգոր *կրաւ[նա]ւորն, և զստացաւղ գրոցս* զՋանագիզ *վարդպետն, զկենակիցն իւր* զՄինա-խաթուն, *և զհանգուցեալ որդիքն իւր՝* զՄկրտիչն *և* զԱստուածատուր. *և զայլ ամենայն արեան մերձաւորսն յիշեցէք...։*

*Ընդ նոսին և զիս...* Յոհանէս *անարժան գրիչս յիշման արժանի առնել, և զծնողսն մեր և զերախտաւորսն և զուսուցիչսն։ Եւ խոշորութեան և սղալանաց սորա անմեղադիր լինել, զի ծեր եմ և ծանրացեալ, աչքս ի լուսոյ է պակասել և դողդոջ մատունս ի դրելոյ։*

*Դարձեալ, ցաւագին անձամբ ի ծունկս անկեալ սուրբ գարշապարացդ ձեր՝ ընթերցողացդ և վայելողացդ այս կտակի, զի ի յաւարտման գրոցս ամ յամէ՝ ի մեծի աստուածայայտնութեան ճրագալուցի առաւաւտուն՝ զյիշատակարանս անխափան կարդայք և զսովորական պարտսն հատուցանէք...։*

Բ

*նկարող՝* Մանուէլ

198ա *ԶՄանուէլ նրկարող յիշեա յաղօթս, աղաչեմ։*

Գ

*վերջին մասի գրիչ՝* Դանիէլ

569ա *Զսակաւ աշխատաւղս և զԴանիէլ գրիչ յիշեցէք ի Քրիստոս և աստուած զձեզ յիշէ, ամէն։*

## 133

### ՄԱՇՏՈՑ

*Երևան 1027*

*գրիչ՝* Յոհանէս
*վայր՝* Այրիվանք

173բ *Փառք... որ ետ կարողութիւն անարհեստ և փցուն գրչի հասանել ի վերջին գիծ աստուածաբողբոջ տառիս, որ կոչի յանուն սուրբ հայրապետին Մաշտոցի. ի թուաբերութեանս հայկազեան տամարիս ՋԷ. (1457), ձեռամբ յոգնամեղ և փցուն գրչի* Յոհանէս *սուտանուն աբեղայի,*
174ա *|| որ զանունս միայն ունիմ և ոչ զգործս, ի վանքս որ կոչի* Յայրիվանս, *ընդ հովանեաւ ամէնաւրհնեալ լուսոյ մաւր սուրբ Աստուածածնիս, և սուրբ տիգիս՝ աստուածամուխ սուրբ Գեղարդեանս, և այլ բազմագումար սրբոցս, որ աստ կան հաւաքեալ, ի վախճանի անձին* Յակովբ *քահանայի և զաւակա՛ց իւրոց և յիշատակ ծնողաց իւրոց։ Արդ, յերես անկեալ աղաչեմ զձեզ ես՝ անարժան գծողս* Յոհանէս, *որ հողս եմ և փոշի ոտից ձերոց, որք հանդիպիք սմայ տեսանելով, կամ կարդալով, կամ աւրինակելով՝ յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զիս՝ զանպիտանս* Յովհանէս, *և զծնողսն իմ ըստ մարմնոյ, և զհոգևոր մայրն իմ* զԱնպար, *որ բազում երախտիք ունի ի վերայ իմ, աստուած-ողորմի նմայ ասացէք, ամէն։ Ընդ նմին և զայլ եղբարքս յիշեցէք։*

## 134

### ՇԱՐԱԿՆՈՑ

*Երուսաղէմ 1635*

*գրիչ՝* Ստեփանոս
*վայր՝* Հայոց-թառ

*... Գրեցաւ ի ՋԷ. (1458), ի հայրապետութեան տեառն* Գրիգորի, *և սուրբ և ի գերահռչակ ուխտս, որ կոչի* Հայոց-թառ, *ընդ հովանեաւ սուրբ Ամենափրկչի, և երկնանման սուրբ* Խորանաց, *և հրաշափառ սուրբ Կաթողիկէիս, և լուսոյ մաւր սուրբ Աստուածածնի, և սուրբ աշոյն Թադէոսի առաքելոյ և սուրբ Յակոբ Նշանին, ձեռամբ փծուն գրչի* Ստեփանոս *կրաւնաւորի, ի խնդրոյ և յարդեանց* Յովհաննէս *կրօնաւորի։*

## 135

## ՍԱՂՄՈՍԱՐԱՆ, ՊԱՏԱՐԱԳԱՄԱՏՈՅՑ, ԱՂՕԹԱՄԱՏԵԱՆ

Եվրոպայի մասնավոր հավաքումներ, № 1, էջ 2—3

գրիչ՝ Իգնատիոս կրօնաւոր
վայր՝ Խառաբաստայ վանք

ա

Փառք... որ ետ կարողութիւն եւ զաւրութիւն տկար եւ տարտամ անձանց մերոց՝ Իգնատիոսի գրչի եւ Մինասի նկարողի սուրբ գրոցս Սաղմոսարանի և Աղաւթամատոյցի։ Ի թուականութեանս մերում ի ՋԷ. (1458) ամի, ի խանութեան Ջհանշայի եւ ի հայրապետութեան տեառն Գրիգորի սուրբ էջմիածնի, ի յերկիրս Քաչբերունի, ի սուրբ ուխտս Խառաբաստայ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի՝ խոյակապ եւ հռչակաւոր գեղեցկաշէն տաճարի, վասն յիշատակի Զաքարէ վարդապետի եւ իւրոցն ամենայնի։

Արդ, ես՝ նուաստ եւ ներգեւեալ ոգի՝ պիտականուն Զաքարէ վարդապետ, ետու դրել եւ ոսկեղած ծաղկազարդ նկարել զՍաղմոսարանս, զՊատարագամատոյցս եւ զԱղաւթամատոյցս ի վայելումն անձին իմոյ, եւ եղբաւրորդւոյն իմոյ Մկրտիչ սարկաւագի, եւ մօրն Գաւհդիշի. եւ յիշատակ բարի հոգոյ իմոյ, եւ ծնաւղաց իմոց Յովանիսին եւ Մարեմին, եւ հաւրեղբարցն իմոց Գրիգոր եպիսկոպոսի եւ Կիրակոսի, եւ որդոյն Մելքեսեթի՝ հանգուցելոյն ի Քրիստոս, եւ եղբարցն իմոց Աւետիսի, եւ որդոյն Յովանիսի, եւ մաւրն իւրոյ Դաւհդիշի, եւ միւս եղբաւրն իմոյ Կարապետին, եւ կողակցին իւրոյ Խումար-խաթունին, և զաւակին իւրոյ Սիրունբէկին, եւ միւս եղբաւրն իմոյ Մարգարին՝ հանգուցելոյն ի Քրիստոս, եւ զաւակաց իւրոց, եւ քուերց իմոց Մարթայի, եւ որդոյն Մարտիրոսի, եւ դստերն Խալիմ-խաթունի, եւ Հռիփսիմի՝ հանգուցելոյն ի Քրիստոս, եւ ամենայն արեան մերձաւորաց իմոց՝ կենդանեաց եւ հանգուցելոց։

Արդ, հանդիպողք սմա եւ վայելողք ուսմամբ կամ աւրինակելով, արժանաւոր բերանով աստուած-ողորմի ասացէք ստացողացս, գրողացս եւ ծաղկողաց եւ ամենայն աշխատաւորաց սորա...։

բ

Փառք... որ ետ կարողութիւն եւ զաւրութիւն տկար եւ տարտամ անձին իմոյ գրել եւ կատարել զգիրս ...ի վշտաշատ եւ դառնաշունչ ժամանակիս յ[որ]ում կամք ի ծառայութիւն այլազգեաց. ի թուականութեանս մերում ի ՋԷ. (1458), ի խանութեան Ջհանշայ իմիրզին, որ եկեալ զաշխարհս Հայոց եւ զտունն Խորասանայ մեծաւ յաղթութեամբ, ի կաթողիկոսութեան տեառն Գրիգորի Վաղարշապատու սուրբ էջմիածնի։

Արգ, գրեցաւ սա յերկիրս Քաչբերունի, ի վանքս Խառաբաստայ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի՝ խոյակապ և գեղեցկաշէն տաճարի, յառաջնորդութեան տեղոյս Կարապետ վարդապետի, ձեռամբ յոգնամեղ եւ ապիկար գրչի Իգնատիոսի, յիշատակ բարի եւ անջնջելի ստացողի սորա՝ Զաքարէ պիտակ անուն վարդապետի...։

Գ

Զսակաւ գծողս զԱզարեայ դպրիկս յիշեցէք ի Քրիստոս։
Ո՛հ, զեղկելի Կարապետս աղաչեմ յիշել ի տէր։
ՁՄինաս ծաղկողս յիշեցէք ի Քրիստոս*։

## 136

## ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

Փիրգ. Նոտ. 190, Հզու. ավանի եկեղեցի

վայր՝ Բաղէշ

... Եւ գրեցաւ սա ընդ հովանեաւ տիրամօր Աստուածածնի և Գէորգայ զօրավարին, ի քաղաքս Բաղէշ, ի հայրապետութեան Յովհաննէս եպիսկոպոսի, և յամիրութեան քաղաքիս Մելիք-Շարաֆին, և ի դանութեան Մելիք-Ջհանշային. որ յայսմ ամի Հասան-Ալի ամիրղէն ելաւ ի զընտանէն և էառ զԹավրէզ. և վասն ծովացեալ մեղաց մերոց եկն յայսմ ամի մահ և կոտորեաց զբազումս, ի թուականիս մեր ՋԷ. (1458)։

## 137

## ՄԱՇՏՈՑ

Երևան 959

գրիչ՝ Յակոբ
վայր՝ Աղթամար

ա

303բ Փառք... որ ետ կարողութիւն տկար անձին || իմոյ և տարտամ ոգոյ
Յակոբի հասանել ի վերջին գիծ աստուածաշունչ տառիս, որ է հիմն հաւատոյ քրիստոնէից և հաստատութիւն կարգաց եկեղեցւոյ։ Սա է լուսաւորիչ հոգոց մարդկան, սա է ուրախութիւն և ցնծութիւն կենաց մարդկան, սա է զարդարիչ աւուր մահուան և յոյս ննջեցելոց և մխիթարիչ սգաւորաց, սովաւ ուղաւորին ամենայն կարգք եկեղեցոյ և աւրհնին և սրբին ամենայն ինչ ի պէտս մեր, սովաւ քահանայք զուարճանան ի գործս իւրեանց և որոշեալ ազգս մարդկան յորգէգրութիւն կոչեն աստուծոյ հաւր, և առանց սորա ոչ մահ կատարի և ոչ կեանք։
Զոր տեսեալ զսորայս մեծութիւն երջանիկ ումն և աստուծային ձրիւքն բարգաւաճեալ մեծ և երևելի տանուտէրն Աւետիսն՝ ըստ նախնեացն Ֆիլ
307ա կոչեցեալ, և ստացաւ զսա ի յարդար վաստակոց իւրոց, || յիշատակ իւրն, և ծնաւղացն իւրոց, և կենակցին իւրոյ Սառային:
Եւ արդ, ես՝ ամենամեղս և անարժանս ի մէջ կարգաւորաց Յակոբ անպիտան և մեղուցեալ կրաւնաւոր, ըստ իմում տկարութեանս յանձն առի և ամենակարող զաւրութեամբն Քրիստոսի կատարեցի մեղսամած մատամբ իմով յաստուածապահ և յանառիկ կղզիս Աղթամար, ընդ հովա-

* Այս մանր հիշատակագրությունները, ինչպես հայանում է հրատարակիչը, գրված են «զանազան էջերի վերին կամ ստորին լուսանցքների վրա»։

նեաւ սուրբ Խաչիս և սուրբ Գեղարդեանս, ի Հայրապետութեան տեառն Զաքարիայի և ի թուականիս Հայոց ՋԷ. (1457)։

Եւ արդ, աղաչեմ զդասս լուսերամիցդ, որք հանդիպիք սմա տեսութեամբ, կամ կարդալով, կամ աւրինակելով յիշեցէք ի սուրբ և յարժանաւոր յաղաւթս ձեր զԱւետիսն և զՍառայ, և զիւր դուստրն՝ զԱղիզն, և զիւր որդին՝ զՍադաղէն, Շահստանն, Ֆառուխշէն, զԱտոմն, և զորդի նորա զՄուղալն, և զՎարոցն, և զհայրս իւրեանց՝ զՅովանէսն և զՄելէք-խաթուն։

307բ Դարձեալ, աղաչեմ յիշել ի տէր զպարոն Ատոմն, որ կանկնեցաւ և ետ դրել զՄաշթոցս յիշատակ բարի հոգոց իւրեանց և ետ զսա յաստուածաբնակ տաճարն՝ ի Բերդակոյ սուրբ Յովանէսն, և մի ոք իշխեսցէ հեռացուցանել զսա ի դրանէ սուրբ Յովաննիսի տաճարէս...։

Եւ ընդ արժանաւորացն զանարժան գծողս զՅակոբ աղաչեմ յիշել ի սուրբ և յընդունակ յաղաւթս ձեր, և զծնաւղսն իմ զՅովսէփ և զՓաշա-Մելիք, և զերեցտաւոր եղբայրն իմ զՍիքիաս, և զայլ ամենայն երեցտաւորքն իմ, և զուսուցիչն իմ՝ զմեծ և ընտրեալ փիլիսոփայն զՀայրապետ կրաւնաւորն, ամէն։

Յիշեցէք ի Քրիստոս զՍարգիսն և զը||հայրն իւր՝ զՍտեփանոս քահանայն, որ միշնորդ եղեն...։

Բ

308ա Տէր աստուած Յիսուս Քրիստոս ողորմեայ ստացողի սուրբ գրոցս Սառայ խաթունին, և որդոյն Խուդայբաղշին և Կարապետին, Թաղիղուլին և Մկրտչին, և զմայրն զԱզիզ-խաթուն, և զհայրն զՄովսէս, զՄուրատենց Յովանէսն, զկողակիցն զՂպչաքն, զորդին զՄուրատն, զԲաւզիկն, զԿիրակոյս աբեղայն և զմայրն զԹամար-խաթուն...։

308բ ... Աստուած-ողորմի ասացէք Յովանէսին, որ նախատակեցաւ ի Շաշմուտի բերդն, աստուած զիւր մեղքն թողու, ամէն*։

## 138

## ԱԻԵՏԱՐԱՆ

**Երևան 3848**

գրիչ՝ Ներսէս
վայր՝ Աղթամար

ա

283բ ... Եւ չերմեռանդ սրտիւ եռուն գծագրել զսա զանձ անկողոպտելի և կտակ անդառնալի... յիշատակ իւրն, և ծնաւղացն՝ հաւրն Աստուածայտրուն և մաւրն Մամայ-խաթունին, և քուերոն Խախաթունին, Մուղալխաթունին և Շահփաշին՝ որք մնացելոյն ի հաւրէն, և զկենակիցն իւր զՀայ-խաթուն, որ և յուսամք յամենապարգև հոգին աստուած պահեսցէ զտէր Ստեփանոս քահանայն յերկար ամաւք, մինչ ի խորին ծերութեանն, որ ետ գծագրել զսա յիշատակ հաւրն իւրոյ Աստուածատրուն, և ծնաւղաց

* Այս հիշատակարանը գրված պետք է լինի ձեռագրի գրությունից, այսինքն 1458 թվականից ոչ շատ հետո, հավանաբար մինչև 1490-ական թվերը։

նորին՝ Կարապետին և Սաքախ-Մէլէքին, և եղբարցն՝ Խաչատուն և Աւետիսին, և զաւակաց նոցին։ Այլ և հանգուցիչն ամենայն ննջեցելոցն՝ Քրիստոս աստուած յանուանէ կոչէ զսոսա ի յաւր հրապարակին և դասեսցէ ի յարդարոց դասն, ամէն։ Այլ և զծնաւղսն Մամայ-Խաթունին՝
266ա զՍտեփանոս քահանայն|| և զՇամշա-Խաթուն, և այլ ամենայն արեան մերձաւորաց իւրեանց...։

Եւ ետուն զսա ընծայ և նուէր ի դուռն Նոր-Քաղքա ամենաւրհնեալ սուրբ Աստուածածնին, յիշատակ անջընջելի և կտակ անդառնալի...։

Այլ և յիշեցէք ի Քրիստոս զհոգևոր հայրն և զերախտաւոր վարպետն Ստեփանոս քահանային՝ զԽամիթենց տէր Ստեփանոսն, և զաւրհնեալ բարի զաւակն իւր՝ զտէր Ատոմ սրբասնեալ քահանայն պահեսցէ Քրիստոս աստուած ընդ երկայն աւուրս, և զմայրն իւր զՆաւռուզ-Խաթուն՝ զփոխեցեալն ի Քրիստոս։ /

Եւ արդ, ես՝ յետինս ի գրչաց և անարժանս ի կրաւնաւորաց՝ սուտ
266բ անուն կրաւնաւոր Ներսէս խարողս ...||... աւարտեցի զսա մեղսալմած մատամբս իմով, յաստուածաբնակ [կ]ղզիս Աղթամար, ընդ հովանեաւ ամենայաղթ սուրբ Խաչիս և սուրբ Նշանիս, ի հայրապետութեան տեառն Զաքարիայի, և ի թուականիս Հայոց ՋԷ. (1458)...։

267ա Արդ, որք ճաշակէք յաստուածային բուրաստանս||էս ...յիշեսջիք յերկնադնաց յաղօթս ձեր զառաջ յիշեցեալսն՝ զստացող սուրբ Աւետարանիս...։ Ընդ նոսին և զամենամեղ Ներսէս գրիչ, և զծնաւղսն իմ զԳուշիբէկ և զէմնա-Խաթուն, և զհարազատ եղբայրն իմ՝ զսրբասն[եալ] կրոնաւորն զտէր Ստեփանոսն, զոր և տէր աստուած պահեսց[է] զնա ընդ երկայն աւուրս, ամէն։

Այլ և զամենայն արեան մերձաւորսն մեր՝ զկենդանիս և զհանգու-
267բ ցեալսն՝ զՊաակ, և զՄարտիրոս, զԱւթայ||-Խաթուն, զԱսլան, և Հասան. ե զՋանիբէկ, և զՀալիֆայ, և զՊաակ, և սերտ սրտիւ և ուղիղ մտաւք աստուած ողորմի ասացէք մեզ ամենեցուն և աստուած ձեզ ողորմեսցի և ստացողին, ամէն...։

268ա ... Եւ արդ, յիշեցէք ի Քրիստոս զսպասաւորք սուրբ Աստուածածնին (Նոր-Քաղաքի)՝ զԿարապետ քահանայն, և զմիւս Կարապետն՝ մազգաւոին, և զՍտեփանոս՝ ստացաւղ սուրբ Աւետարանիս, որ և պահեսցէ տէր աստուած ընդ երկայն աւուրս։ Այլ և զհանգուցեալ քահանայքն զՅովանէս՝ զմեծն և զպատուական, և զմիւսն Յովանէսն, և զԱւետիսն, և զՍտեփաննոս, և զՅովանէս, և զՊաւղոսն, և զմիւսն Յովանէսն, և զՅոհանէսն, և զՍտեփանոսն, և զմիւս Ստեփանոսն, ամէն։

Բ

Դարձեալ, յիշեցէք... զվերջին ստացող սուրբ Աւետարանիս զԱբդուլբէկն՝ զհօրեղբօրորդի տէր Ստեփանոսին, և զծնօղսն իւր զԿարապետ և զԽուրովիդուխտն, և զկենակիցն իւր զՇախնիգարն, և զզաւակս իւրեանց
268բ || զԱւետիսն և զԵզդանբախշն, և զգուստրն իւր զՍալի-Խաթուն, և զայլ ամենայն արեան մերձաւորքն...։

Յիշեցէք և ի Քրիստոս զԹումայ քահանայն, որ սպասաւոր է սուրբ

*Աւետարանիս, որոյ տէր աստուած զերկնիցն արքայութիւն նմա պարգևէ, ամէն**։

### 139

### ՃԱՇՈՑ

**Երևան 4745**

*գրիչ՝* Վարդան
*վայր՝* Վան

*... Զայս ամենայն հաւաքեալ և ի մի վայր ժողովեալ դծագրեցաւ կար-*
*գաւորաբար սկսեալ ի յիշատակի աւուր ծննդեան փրկչին և միոյ նշանով*
503բ *առանց մոլորու||թեան աւարտեալ մինչև ի տօն սուրբ հայրապետին Բարսե-*
*ղի Կեսարու, ի ստոյգ և յընտիր աւրինակէ, բազում աշխատանօք և քըր-*
*տամրք, հոգոյն սրբոյ աւժընդակութեամբ, յաստուածապահ քաղաքս* Վան
*կոչեցեալ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին և սուրբ Վարդանայ քաջ*
*զօրավարիս, ի հայրապետութեան տեառն* Գրիգորի *և տէր* Զաքարիայի,
*և ի թուաբերութեանս Հայոց ՋԷ. (1458), ի խնդրոյ հեզահոգի և քաջ*
*հեռետորի* Ներսէս *վարդապետին, զոր ստացաւ զսուրբ գիրքս զայս ի*
*հալալ արդեանց իւրոց՝ յիշատակ բարի հոգոյ իւրոյ, և ծնողաց իւրոց*
Ղազարին *և* Թաջ-Մէլէքին, *և զեղբայրն իմ* զՅովանէսն, *և զայլ եղբարքն*
*իմ զհանգուցեալքն ի Քրիստոս՝* զՍտեփանոսն *և* զԽօսրովն *և զմիւս*
Ստեփանոս *սարկաւագն, որ տարաժամ մահուամբ փոխեցաւ ի Քրիս-*
*տոս...։*

*Իսկ ես՝ ամենամեղս և անյիշելիս ի գրչաց* Վարդան *սուտանուն էրէց,*
*տեսի զսէր և զփափաք երիցս երանեալ րաբունի* Ներսէս *վարդապետին,*
*զոր ունէր առ հոգևորս, և ըստ իմում տկար անձամբս սկսայ և ողոր-*
504ա *մութեամբն աստուծոյ կատարեցի || մեղսամած մատամբ իմով...։*

*... Եւ զիս՝ զբազմամեղ գրիչս, և զմեր ծնողքն՝* զՅովանէս *քահանայն*
*և* զՄութն, *և զեղբայրն իմ և զուսուցիչն* զԿարապետ *քահանայն, և զոր-*
*դին իմ* զՆիկողայոս *քահանայն, և* զՅովանէսն, *և* զԳրիգորն, *և զայլ*
*ամենայն արեան մերձաւորքն մեր իւր ողորմութեանն և տեսլեանն ար-*
*ժանի առնէ Քրիստոս աստուած...***։

---

* *Առաջին ստացող տեր Ստեփանոսի հորեղբորորդի Աբգուլբեկի այս անթվական հիշատակարանը ըստ հնագրական տվյալների գրված է ձեռագրի գրչությունից ոչ շատ հետո, հավանաբար 1460–70-ական թվերին։*

** *Ձեռագրի 501ա–502բ էջերում կա եղբայրներ Ստեփանոս և Մկրտիչ քահանաների անթվական ընդարձակ հիշատակարանը ձեռագրի ստացման մասին։ Հնագրական տվյալներով այն հավանաբար գրված պետք է լինի ԺԵ.-ի վերջերին, կամ, որ ավելի հավանական է, ԺԶ. դարում։ Այդ հիշատակարանը պատմական արժեք չի ներկայացնում։*

## 140

## ՄԱՇՏՈՑ

«Թորոս Աղբար», Բ., էջ 479,
Չնքուշի սիրահայեաց ս. Աստուածածնի վանք

գրիչ՝ Կարապետ
վայր՝ Վան

... Գրեալ ի թուա[կանին] Հայոց ՋԷ. (1458), ի քաղաքն Վան, ընդ հովանեաւ սուրբ Ստեփաննոս նախավկային և սրբոյն Սահակայ հայրապետին, ի հայրապետութեան սուրբ ուխտիս Կարագայ տէր Յովսէփ եպիսկոպոսի և Զաքարիա վարդապետի։ Ցանկացող... տառիս կրաւնաւորն Մելքիսեդ ... գրիչ... Կարապետ երէց... ի ստոյգ և յընտիր աւրինակէ, զոր դրեալ էր մեծ վարդապետն Սարգիս, որոյ յիշատակն աւրհնութեամբ եղիցի...։

## 141

## ԳԱՆՁԱՐԱՆ

ԼՑՎ (անտիպ) № 330, Փիրղ. Նոտ. 189,
Կապուտկողի ս. Յակոբի վանք

գրիչ՝ Մելքիսէդ
վայր՝ Շատւան

... Արդ*, գրեցաւ գիրքս ի գեօղս որ կոչի Շատւան, ընդ հովանեաւ սրբուհոյ Աստուածածնին, և սրբոյն Ստեփաննոսի նախավկային, և սրբոյն Գէորգայ** զաւրավարին, ի թուականութեան Հայոց ՋԷ. (1458), ձեռամբ յոգնամեղ և անարժանի Մելքիսէդ*** քահանայի...։

Արդ, յիշեցէք զԹումայ կրաւնաւորն, որ ստացաւ գիրքս ի հալալ արդեանց և ետ նըւէր սրբոյն Յակոբայ և այլ սրբոցն****։

## 142

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 5331

գրչի ուսուցիչ՝ Յովաննէս Կռնաւոր
վայր՝ Կեցնայ-ձոր, Սորավանք գիւղ

ա

303ա ... Այլ և գրեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ Յովաննէս քահանայիս, անիմաստ և ախմար գրչի, անընդունակ գոլով յարուեստ գրչութեան և

* Փիրղ. «Այլ և»։
** ԼՑՎ «Գէորգիա»։
*** ԼՑՎ «Մելքիսէթ»։
**** Այս վերջին պարբերությունը Փիրղալեմյանի մոտ շարադրված է Թումայ կրոնավորի կողմից՝ առաջին դեմքով, այսպես. «Այլ և ես Թումայ կրօնաւորս ստացայ զԳանձարանս զայս... և ետու նուէր ի դուռն սրբոյն Յակոբայ և այլ սրբոցն»։

*բազում մեղաց ցնորիւք պաշարեալ. այլ ես ըստ կարի իմում, զոր պար-*
*գևեաց ինձ մարդասէր Հոգին, բազում աշխատասիրեալ իմ ի սմա՝ գրեցի*
*անարժան ձեռաւք իմովք յընտիր և ի ստոյՒ աւրինակէ, կենաւք տառա-*
*պանաւք և բազում պանդխտութեամբ և անհանգիստ և դժուարին և տար-*
*տամելի աւուրքս։ Զի ի սոյն աւուրս՝ ի տամնի մեծի հրեշտակապետացն՝*
*եհաս մեզ պատուհաս ի մեղաց մերոց, զի եթող զգրելն և գնաց փայտ*
*բերել շինութեան տան, և ճանապարհն դժուարին և քար, և գլորեաց տէր*
Յովանէսն *զիւր փայտն և եկ զհետ փայտին և իւր քեռին և միւս ընկերն*
303բ *գլորեցին զիւրեանց* || *փայտն. ի գալն փայտին ոստեաւ փոքր քար մի ի*
*փայտէն. և նոքայ աղաղակեցին՝ տէր* Յովանէս՝ *փախիր. և նա պահեաց*
*զինքն ի փայտէն և քարն եհար զգլուխ տէր* Յովանին, *և նա խելագարեալ*
*անկաւ ի քարն ի վայր, զի տեղին դժուարին էր և հեղաւ արիւնն ի բերանն*
*ի վայր և յականջն և ի քիթն. և յայն գիշերն մեռաւ և եթող սուգ անմխի-*
*թար ծնօղին և եղբարցն։*

*Ի մեծ թուականիս Հայոց ՋԷ. (1458), ի կաթողիկոսութեանս Հայկա-*
*զեան սեռի տեառն* Զաքարիայի Ախթամարեցոյ, *և ի թագաւորութեանս*
*թուրքման ազգին* Ջհանշին, *որ գնաց ի* Պարս *և մնաց անդ։ Զոր տէր աս-*
*տուած Իսրայէլի պահեսցէ անսասան զաթոռ հայրապետական և թագա-*
*ւորական քրիստոսայդաւան, ամէն։*

*Եւ արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի ձորս* Կեցանայ, *ի գեաւղս որ*
*կոչի* Սորավանք, *ընդ հովանեաւ սուրբ Փրկչին, և Գէորգայ զաւրավարին,*
*և Աստուածածնին, և այլ սրբոցս, որ աստ հանգուցեալ կան։ Ի յիշատակ*
*հոգւոյն* Ստեփաննոսին *և կենակցին իւրոյ* Փաշայ-Մէլէքին, *որ և բազում*
304ա *աշխատութեամբ և տառապանօք և դա||ռն կսկծանաւք և ումայն ձեռաւք*
*սկսաւ, թէ յիշատակ պիտի* Ստեփաննոսին *և որդոյն* Յովաննիսին, *որ*
*տարաժամ հասակաւ փոխեցաւ առ Քրիստոս և սուգ անմխիթար եթող*
*ծնօղին, և զոր ինչ ունէր ի մահուանն խաչ աւրհնեցին։*

*Եւ նա դառն սրտիւ և ումայն ձեռօք սկսաւ զուգել զԱւետարանս ի յի-*
*շատակ իւրն, և առն իւրում* Սաեփանոսին, *և որդոյն* Յովանիսին:

*Եւ դարձեալ, կրկին մաղթանօք աղաչեմ զձեզ զամենեսեան, որք ճա-*
*շակէք յաստուածային բուրաստանէս և յամենայլի սեղանոյս՝ յիշեցէք ի*
*Քրիստոս աստուած* զՍտեփանոսն, *և զկենակիցն իւր* զՓաշայ-Մէլէքն, *և*
*զորդին* զՅովաննէսն *և զկենակիցն իւր* զԱզիզ, *և զպապն* զԱշեր, *և զկե-*
*նակիցն* զՏիկին-Մէլէք, *և* զՀալիմ-խաթուն, *և* զԱրուս-խաթուն, *և* զԱրմէ-
լէք, զԹումէն, *և զկենակիցն* զՇնօխվորն, *և զորդին* զԿիրակոսն, *և զա-*
*մենայն արեան մերձաւորքն՝ զկենդանիսն և զհանգուցեալսն ի Քրիս-*
*տոս...։*

304բ ... *Այլ և զիս՝ զանարժանս ի կարգս քահանայից և զվերջինս ի դասս*
*կարգաւորաց* զՅովաննէս *գրիչս, որ յերիտասարդ հասակի եհաս ինձ որո-*
*գայթ, որպէս հրամէ Դաւիթ՝ Պահեայ զիս յորոգայթէ, որ թաքուցաւ ինձ,*
*և քարիւ եղև կատարումն իմ, և մնաց Աւետարանս կիսատ, և ես*
*կամ ի նեղ տապանիս, և երես ի ձեզ արարեալ խնդրեմ ի ձէնջ զողորմու-*
*թիւն, ո՞վ աստուածայսէր քահանայք և ժողովուրդք, որ միամիտ սրտիւ*
*և բոլոր հաւատով ասէք, թէ Քրիստոս աստուած ջնջեայ զիւր մարդկօրէն*



Նկ. 5. «Քրիստոսի ծնունդը». Նկարիչ Ատոմ

յանցանսն. և այս է **Ննգիրք** իմ ի ձէնջ, զի դուք ինձ ողորմիք և աստուած ձեզ։ Յիշեցէք և զհայրն իմ զ**Թաւաքալն**, և զմայրն իմ զ**Մարթայ-Խաթունն**, որ կայ գառն սրտիւ և լալագին արտասուօք, և զեղբարքն իմ զ**Կարապետն*** և զ**Սուլտանշէն**, և զայլ ամենայն մերձօորքն մեր՝ զկենդանիսըն և զհանգուցեալքն ի Քրիստոս...։

305ա Ընդ յիշեցելոցս ի սմա աղաչեմ յիշել զտանուտէրքն **Եղեգեցն** առհասարակ զմեծն և զփոքրն՝ զ**Ջաֆարէն**, և զ**Թումէն**, և զմիւս **Թումէն**՝ զըռայսն, և զայլ ամենայն մերձաւորքն, որ կամակից և կարեկից եղեն սուրբ Աւետարանիս՝ թէ տալով և թէ կամեցողութեամբ։ Տացէ և նոցա Քրիստոս ողորմութիւն յարդար և յահեղ դատաստանին։

Դարձեալ, կրկին մաղթանաւք աղաչեմ յիշել ի բարին զանարժանս ի դասս կրամատրաց և զհեռացեալս ի կարգէ քահանայութեան զ**Յովաննէս** կրօնաւոր՝ զուսուցիչ տէր **Յովաննէս** քահանային, զի նա էր մեր հոգևոր որդի և հանգուցիչ և մխիթարիչ ծերութեան մերոյ, զի յասդմանէ չարին և ի թոյլ տալոյ արարչին եհաս որոգայթն այն ի վերայ մեր, և ես ծերացեալ և տկար անձամբս գրեցի զպակասութիւն Աւետարանիս՝ հեծեծանաւք և դառն սրտիւ, զի աչքս ի լուսոյ էր պակասեալ և կարողութիւնս խափանեալ. և ես լալագին աչաւք զայս չափս յանկամայ արարի, և դուք անմեղադիր լերուք խոշորութեան և սխալանաց գրիս, զի կարն մեր այս էր...։

---

* Տողամիջում, այլ ձեռագրով ավելացված է՝ «զկին՝ զ**Խանդքարն**»։

*Եւ կացցէ Աւետարանս յ*Եղէգիս*, ի դրան սուրբ Աստուածածնին և այլ սրբոց, որ անդ հանգուցեալ են, և մի ոք ի մարդկանէ կամ ազգական կամ օտար իշխեսցէ սմայ, ապա թէ ոք յանգգնի կամ ծախելով, կամ դրաւ գնելով՝ զանէծքն Յուդայի առցէ և ընդ խաչահանողքն դատի։*

Ր

*նկարող՝* Ատոմ

280բ *Սուրբ աստուծոյ, բարեխօսեցէք վասն անարհեստ* Ատոմի՝ *նկարողի ձեռոյ, ի միւսանգամ գալըստեան որդւոյն աստուծոյ*։*



*Նկ. 6. «Գալուստն յԵրուսաղէմ». Նկարիչ Ատոմ*

## 143

## ԱՒԵՏԱՐԱՆ

***Թավրիզ, Լիլավա, ս. Սարգիս եկեղեցի № 5, ԱՑԹ, էջ 68—69***

*հետ. ստացող՝* Յոհանէս
*վայր՝* Ախբակը Եահանգ

*...Ի թվականիս Հայոց ՋԷ. (1458)։*

*Արդ, ես* Յոհանէս *կրանաւոր ստացա զսուրբ Աւետարանս ի հալալ արդեանց իմոց յիշատակ ինձ, և ծնողաց իմոց, և ամենայն արեան մերձաւորաց իմոց. հօրն իմո պարոն* Թումաին, *և մօրն իմո* Բաղդատին, *և քեռն իմո* Սուլտանին, *և զաւակացն իւրոց* Մեսրոպի *և* Ալամշի *և* Գուլխա-

** Գրված է հովհան ավետարանչի նկարի ստորին լուսանցքում։ Նման հիշատակագրություն Ատոմ նկարիչը թողել է նաև ձեռագրի 4ա էջում։*

թունի, և փեսաին իմո Յակոբշի, և մօր իւրոյ Սաղաթի, և հօգևոր մօրն իմո Գունաշի, և դստերն իւրո Մարթաի, և կենակցին իւրո Ջանգիշին, և Մաղթումին, որ*

Յամս աստուածապատում վերադիտողի Ախթակո** նախանգի երկոտասան գաւազանացս աթոռո Բարդուղիմէոսի առաքելոյս՝ տեառն Հայրապետի արհեպիսկոպոսի և ստացողի սորա Յոհանէս կրօնաւորի, որո յիշատակ սոցա աւրհնութեամբ եղիցի։

Ո՜վ դասք լուսերամսից, յորժամ հանդիպիք սուրբ Աւետարանիս յիշեցէք ի սուրբ յաղօթս ձեր զվերոգրեալ անունքս ի սմա և աստուած ողորմի ասացէք բոլորով սրտիւ և լի հաւատով, և աստուած ձեզ ողորմեսցի, ամէն։ Եւ որ աստուած-ողորմի ասէ՝ Ճ. (100)-ապատիկ առցէ յաստուծոյ։

Ես Յոհանէս աբեղայս ստացա զսուրբ Աւետարանս յիշատակ ինձ և ծնօղաց իմոց, և եւոու ի դուռն սուրբ Յարութեանն՝ ի գեաւղն Ասփսթան կոչեցեալ։ Մի ոք իշխեսցէ հեռացուցանել. և որ խնամ տարցէ՝ աւրհնի յաստուծոյ, ամէն***։

## 144
## ՇԱՐԱԿՆՈՑ
### Երևան 3223

գրիչ՝ Աւետիք
վայր՝ Ագըրկի վանք

326բ ... Արդ, գրեցաւ Շարակնոցս ի թվ. հայոց ՋԷ. (1458), ձեռամբ անարժանի և անիմա գրչի Աւետիք աբեղի, ի գաւառիս Խախուա և Թորթոմայ, ի վանս որ կոչի Ագըրկի, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի և այլ խորանացս, որ աստ կան կառ[ուցեալ]։

Աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք այս երգարանիս ուսմամբ կամ տեսանելով, անմեղադիր լերուք ամենայն ինչ որ ի սմա սղալանք թուի ձեզ, զի առաջի դիր էր Շարակնոցի և մակպաղս, որ գրեցի, և ես պան-
327ա դուխտ յատար || յերկրի։ Եւ ես անարժանս աղաչեմ զամենեսեան, որք ի ձեռս առեալ տես[անէ]ք՝ յիշեսջիք յաղաւթս ձեր զամենայն արեան մերձաւորսն իմ և զծնաւղսն իմ և զուսուցիչքն իմ, և զուք յիշեալ լիջիք ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ****։

## 145
## ԱՂՕԹԱՄԱՏՈՅՑ ԹՈՎՄԱՅԻ ՄԵԾՈՓԵՑԻՈՅ
### Երևան 5212

գրիչ՝ Յոհանէս
վայր՝ Խնդրակատար Աստուածածնի անապատ

432ա Արդ, գրեցաւ սա ի ՋԷ. (1458) թվականիս, ի լուսազարդ անապատիս Աստուածածնի Տիրամաւր տաճարիս, որ այժմ Խնդրակատար վերակոչի,

* Երկու տող ջնջված է թողնված։
** Ցպված է «Ախրակս»։
*** Ձեռագիրն այժմ գտնվում է Վիեննայի Մխիթարյանների գրատանը (տե՛ս ՀԱ, 1942, սյուն. 188—189)։
**** Շարունակությունը, 3 տող, ջնջված է։

յիշատակ ինձ, և ծնաւղաց իմոց՝ հօրն իմ Մուրադին և մօրն իմ Մարգարտին, և հայրեղբաւրն իմ էվադին, և տէր Աստուածատուր սրբքալոյս քահանային։ Արդ, աղաչեմ զմանկունս սուրբ եկեղեցւոյ, որք կարդայք կամ աւրինակէք յիշեցէք ի բարին Քրիստոս զՅոհանէս սուտանուն քահանայ և աստուած զձեզ յիշէ, ամէն։

Արդ, խոշորութեան անմեղադիր լերուք, զի կար մեր այս է, և Քրիստոսի փառք յաւիտեանս, ամէն։ Վա՛յ ի դառն և ի նախանձոտ ընկերացս, զի բազում աշխատեցաք. և ըղվարդապետս իմ յիշեցէք ի Քրիստոս՝ զԳրիգոր աբեղա։

Բ

301բ Ո՛վ Տիրամայր Աստուածածին
Լեր բարեխաւս քո միածնին...
Ողորմեա Յոհանիսին՝
Սուտանուն քահանային,
Որ թաւալեալ կայ ի տըղմին,
՚Ի իւր ծընաւղացըն՝ Մուրադին
Եւ ով որ ասէ զաստուած ողորմին՝
Նա իւր խասիր յաւրն ատենին,
Ընդ նմին և անարժան Յոհանիսին՝
Սուտանուն և փցուն գրչին,
Բիւր քանքարոյ պարտապանին,
Հեղգ և ծոյլ կրաւնաւորին,
Զի յաւուր դատաստանին
Յանդիման թագաւորին
Քև փրկեցայց յաւրըն վերջին...*։

## 146

## ՄԽԿՆՈՒԹԻՒՆ ԿԱԹՈՒՂԻԿԵԱՅՑ ԹՂԹՈՑ, ՍԱՐԳՍԻ ՇՆՈՐՀԱԼՒՈՑ

Վիեն. 315. Տաշ. ցուց. էջ 753

վայր՝ Երզնկա՞յ

ա

215բ ԶՅովաննէս սրբազան բաբունին՝ զստացող գրոցս՝ ծնողիւք իւրովք յիշեսջիք ի տէր, ընդ նմին եւ զանարժանս յերեսս անկեալ աղաչեմ թողութեան արժանի արարէք, զի խիստ եմ մեղուցեալ ընդդէմ աստուծոյ...։ Եւ զՔահանայ անուն դպիրս եւ զԱստուածատուր դպիրս յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր, որ աշխատեցան եւ թուղթ կոկեցին եւ կու կոկեն։

Բ

212բ Զստացող սորա զՅովաննէս րաբունապետն ծնաւղաւք ազգականաւք յիշեսջիք ի տէր։ Եւ առաւել զտառապեալ ախմար եւ փցուն եւ զանարժան գրչակս ծնաւղիւք յիշեսջիք ի տէր...։ Եւ խոշորութեան կամ սխալանաց անմեղադիր լերուք, զի խիստ դառն եւ անբարի ժամանակ է, խիստ

* Այս հիշատակարանի ժամանակը հայտնի չէ, սակայն, անտարակույս, գրված է մերձավորապես 1458 թ. (տե՛ս ա. հիշատակարանը) կամ նրանից մի երկու տարի հետո։

հոգւոյ եւ խիստ տառապանաւք էաք, զի այսմ ամի շարժն զԵզընկայն ընկղմեց*։

## 147

## ՍԱՂՄՈՍ

Երևան 7766

գրիչ՝ Մարտիրոս
վայր՝ Կաֆայ

146ա ... Գրեցաւ երգարանս Դաւթի ի լաւ և ընտիր աւրինակէ սուրբ հօրն
Յոհաննէս Գառնեցո, ի թվ. Հայոց ՋԷ. (1458)**, ի հայրապետութեան տե-
առն տէր Գրիգորի սուրբ էջմիածնի և եպիսկոպոսութեան տէր Մաղա-
քիաս արհիեպիսկոպոսի. առ գուրս երաշխաւոր Աստուածածնի մակա-
նուն խոճայ Ազիզի, ձեռամբ մեղապարտ և անարհեստ գրչի Մարտիրոս
աբ[եղայի], ի խնդրոյ պարոն Ազիզպէին, յիշատակ իւր և ծնողացն՝
Զրքին խաչատրին՝ աղեղզուգին, և մաւրն Շիրի–Մելիքին, և եղբօրն
պարոն Ետիլպէյին, և միւս եղբօրն պարոն Թումանպէյին՝ փոխեցալն
ի Քրիստոս. և զդստերն Հեղինէ, և փեսին Սարգսին, և թոռին Խա-
չատրին, յիշատակ առ դուրս սուրբ Աստուածածնին՝ խոճ[այ Ազիզի]։
Ոչ ոք չոմի իշխանութիւն ծախելոյ կամ գրօելոյ, ով ոք՝ թէ յազգէ լինայ,
թէ այլ ոք, թէ ծախէ կամ գրաւէ՝ նայ պատժի յաստուծոյ և այս եկեղե-
ցոյս։

Արդ, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք այս սուրբ բուրաս-
տանիս կարդալով կամ աւրինակելով, յիշեսջիք միով ողորմիսիւ զվերոյ-
դրեալսն պարոն Ազիզպէյն, և զհայրն խաչատուրն, և զՇիր[ի]–Մէլիքն,
և զԵտիլպէյն, և զԹումանպէյն, և զՀեղինէն, և զՍարգիսն, և զԽաչա-
146բ տուրն, || և զիս՝ զանարժանս զՄարտիրոս գիրիչս, և զքեռն իմ զտէր
Սահակ գրոց աշակերտ, և որ զմեզ յիշէ ինքն յիշեալ լիցի առաջի Քրիս-
տոսի, ամէն, հազար ամէն***։

## 148

## ՍԱՂՄՈՍ

Երևան 7747

գրիչ՝ Մարտիրոս
վայր՝ Ղրի՞մ

ա

173բ ... ՅԱզգանաղեանս մեծ տոմարի
Հայոց Մեծաց ի թուականին

* Հրատարակիչն ենթադրում է, թե խոսքը Երզնկայի 1458 թ. երկրաշարժի մասին է, սակայն չի հիմնավորում իր ենթադրությունը։

** Գրչի ինքնագիր հիշատակարանը մեզ չի հասել. պահպանվել է նրա ընդօրինակությունը, կատարված 1566 թվին, ձեռագրի նորոգող Խաչատուր սարկավագի կողմից։

*** Գրչության վայրի մասին հիշատակարանում որոշակի տվյալ չկա, սակայն այն անկասկած գրված է Կաֆայում, որովհետև այդտեղ է գտնվում խոճա Ազիզի անվան երաշխավոր Աստվածածնի եկեղեցին։ Գրչության վայրի որոշման համար կարևոր է նաև 148բ էջի վրա գտնվող հետևյալ հիշատակագրությունը. «Թվին ՌԶԸ. (1539)-ին Խաչատուր վարդապետ Կաֆայ եկաւ»։

Ի՛նն հարիւր և եւթ թվին (1458)
Աւարտ եղև այսմ տառի։

Արդ, գրեցաւ երգարանս Դաւթի ի լաւ և ընտիր յաւրինակէ սուրբ հաւրն Յովաննէս Գառնեցոյ։ Ի հայրապետութեան տեառն տէր Գրիգորի սուրբ էջմիածնի, և եպիսկոպոսութեան տէր Մաղաքիաս արհիեպիսկոպոսի, և նուիրակութեանն տէր Ղազարի և տէր Մաքէոսի. առ դուռս երաշխաւոր Աստուածածնի նորաշինի, ձեռամբ մեղապարտ գրչի Մարտիրոս աբեղայի։

Արդ, աղաչեմ ղամենեսեան, որք հանդիպիք այս սուրբ բուրաստանիս կարդալով կամ աւրինակելով յիշեցէք յաղաւթս ձեր ստացաւղ գրոցս՝ զգինէծախ Աւղուլն և զկողակիցն զԱմէն-Տիկինն, որ ստացան զսայ հալալ արդեանց իւրեանց և դրին յիշատակ անջնջելի առ դուռս սուրբ Գէորգեա զաւրավարի Քաշաւտի, ի տեղս Լովիչի*, ոչ ոք չունի իշխանու-
174ա թիւն || ծախելով կամ գրաւելով, եթէ ոք յանդգնի, նա պատժի յաստուծոյ և ի սուրբ Գէորգ զաւրավարէն։

Յիշեսջիք յաղաւթս ձեր զհայրն իմ զՏօնականն, և զմայրն իմ զԱնսանն, և զպապն մեր զՍարգիսն, և զմամն իմ զՄեծ-խաթունն, և զմաւրպապն իմ զկոշկար Յակոբն, և զմաւրաքոյրն՝ զՁումլայ-խաթունն, և զհաւրաքուրքն մեր՝ զՄարթայն և զԳարիանէն, և զորդին զՄարտիրոսն, և զթոռն զԳրիգոր, և զիս՝ զանարժան գրիչս զՄարտիրոս աբեղայս, և զհոգևոր ծնօղն զերախտաւոր և զվարդապետն իմ զտէր Սանակ գրոց աշակերտն, և զմարմնաւոր ծնաւղքն իմ զԱնանն և զէմին-Մէլիքն, և զտէր Ստեփաննոսն, որ աշխատեցաւ ի թղթիս կոկելն։ Եւ տէր Գրիգոր եպիսկոպոս Նորճառենց, և զեկեղեցոյս քահանայքն՝ զտէր Մխիթարն, զտէր Ղազարն, զտէր Գէորգն, և զտէր Հարապետն, և զտէր Պետրոսն, և զտէր Աւագն, և որ զմեզ յիշէ Հայր մեր յերկինս ասելով, կամ միով ողորմիսիւ, նա ինքն, որ առատն է, մեզ և ձեզ առհասարակ ողորմեսցի, ամէն, հազար ամէն։

Բ

62ա Ով, մանկունք սուրբ Սիովնի
Յիշման արէք զիս արժանի,
ԶՄարտիրոսս մեղօք իլի,
Զի տէրն ձեզ ողորմեսցի
Այժմ և յաւուրն աներեկի.
Ամէն, հազար ամէն։

149

ՇԱՐԱԿՆՈՑ

ՄՑՀ հա. Ա, 9, էջ 27

ստացող՝ Զաքար

150 Կամաւն աստուծոյ ես Զաքար աբեղայ գնեցի զՇարակնոցս ի հալալ ընչից իմոց և եդի յիշատակ ինձ, և ծնաւղաց իմոց՝ հաւրն իմ Էրկիլին

* «Ի տեղս Լովիչի» բառերից ոչինչ դուրս չի գալիս: Ընդգծված՝ ա և չ տառերի ընթերցումը երկբայական է:

և մաւրն իմ Կուլփաշին, և եղբարցն իմ հարազատ՝ Նատիրին, Սուրղանին, և Թէփշին, և Ստեփանոսին, և քվերացն՝ Ծամին, Շանանգուխտին, Թանգուճարին, Ոստիանին, և այլ ամենայն արեանառու մերձաւորացն։ Ընդ նմին փեսայն իմ զՄուրատ, որ պատճառ եղև գնելոյն։ Եւ զՇարակնոցիս գրօղս՝ զՅակոբ աբեղայն, որ հոգւոյն համար գեր այգին* էր տվել ումեք ~ այն գերոյ տիգէն (˚) առաջ զՍարգսէն: Ընդ նմին զվարպետն իմ զտէր Ծառուէղ, որ բազում աշխատեցաւ ընդ մեզ և հաւրեղբարքն իմ, որ ի Քրիստոս են փոխեալ՝ Ջաֆարայ և Շան, և որդիք նորին Էտիլ, Ջարման, Մարգարայ, և քեռն իմոյ, և մաւրքվերն իմ Կուլշայ, և որդոյ Սուլթանշին, և որ յիշէ յիշեալ լիցի առաջի Քրիստոսի. Թվ. ՋԷ. (1458). շահս է Ջհանշէն**, որ գնաց ի Խորասան և Թաղթս եթող անտէր։

## 150

## ՄԱՍՈՒՆՔ ԱՍՏՈՒԱԾԱՇՆՉԻ

Երևան 287

Հետ. ստացող՝ Մարտիրոս

63բ Թվ. ՋԷ. (1458), ի մարտի ամսոյ ի ԺԴ. (14)։ Զվերջին ստացաւղ սուրբ գրոցս զՄարտիրոս*** անարժան եպիսկոպոս, և զծնօղսն իմ, և զամենայն արեան մերձօորսն՝ զհանգուցեալսն առ Քրիստոս աստուած, և Քրիստոս աստուած ձեզ՝ յիշողացդ և մեզ՝ յիշեցելոցս առհասարակ ողորմեսցի, և որ զամէնն ասէ, ամէն։ Եւ զԹաթէոս Կիպօսցին, որ զգիրքս հարկօք ծախեց մեզ, և զհանգուցեալ եղբայրն զԿոստընտին սարկաւագն յիշեցէք ի մեղաց թողութիւն. և զնոյն ձեզ շնորհէ Քրիստոս աստուածն մեր, ամէն, և բիւր հազար ամէն։

## 151

## ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

Երևան 4696

գրիչ՝ Յոհանէս

ա

392բ Յապրէլ ԻԹ. (29) մեռաւ եղբայրն իմ Իսրայէլ և մեծ սուգ և տրտմութիւն հասին մեզ, վա՜յ հազար բերան, թէ յորպիսի դառն ժամանակ հասաք և եմք տարակուսեալ։

բ

442բ ... Մանաւանդ ստացողի գրոցս Գրիգոր քահանային, և ծնողացն՝ Խութլուշին և Այմելիքին, և ամուսնոյն Մարիամին, և ծաղկեալ զաւակացն տէր Յովանիսին և Ասանեթին, և անիմաստ գրագրին, և ծնողաց նորին՝ Կարապետ քահանային և տիրուհի Մելիքին, և ամուսնոյն Թանսուխին, և դեռաբուսիկ զաւակին իմոյ Պաղտասարին, որ յայսմ ամի ՋԷ. (1458) մահն գերեց զմայրն որդովն։

* Հավանաբար ձեռագրում եղել է «դերոյ գինը»։
** Տպված է «շահսէ զհանշէն» (*)։
*** Անունը քերված է, հնարավոր եղավ վերծանել մեծ դժվարությամբ։

Գ

477ա … Որոց աղաւթիւք ողորմի Քրիստոս աստուած ստացողի գրոցս տէր Գրիգորին, և ծնօղաց նորին Խուբլուշին և Այմելիքին, և ամուսնոյն Մարիամին, և ծաղկեալ զաւակացն՝ տէր Յովանիսին և Ասանեթին և Աստուածատրին, նա և մեղաւք ի լի գրագրին, և ծնողացն Կարապետ քահանային և տիրուհի Մելիքին, և եղբարցն Ղազարին և Իսրայէլին, և ամուսնոյն Թանսուխին, և զաւակին Պաղտասարին, որ յայսմ ամի ի մեծ մահտարաժամիս փոխեցան ի Քրիստոս մայրն որդովն և թողին զմեզ անմխիթար սգով մինչև ի մահն մեր։

Արդ, աղաչեմ զձեզ ընթերցողք և աստուածասէր ժողովուրդք, ի մի բերան ասացէք, թէ աստուած ողորմի Յոճանէս գրագրի հոգոյն և որ ղամէնն ասէ, ամէն*։

Դ

287բ Այս թուղթս ու մէկ այլն աննշայ է, զինչ օգուտ է գրելն։ Ջոր ոմանք անգիտաբար ասեն, թէ թանաքն է վատ, ո՛չ, այլ թուղթն։

Ե

մի մասի գրիչ՝ Աւագտէր

110բ …Ընդ նմին և ինձ՝ մեղաւոր գրչիս Աւագտէր կրաւնաւորի, որ անուամբս եմ և ոչ գործով, և ծնողացն իմոց Յովանիսին և Մարթին, և այլ ամենայն արեան մերձաւորացն, ողորմեա տէր կարդացողաց և լսողացն, ամէն։

Զ

268ա Դարձեալ յիշեսջիք ի Քրիստոս զգարբին Շատիպէկն, և զեղբայրն իւր զԿուռեին, և զծնաւղսն նոցա զՍպանդիարն և զԵրան-Մելիքն, աստուած ողորմի ասացէք նոցա բոլորով սրտիւ**։

## 152

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 4020

268բ Աւարտեցաւ սուրբ Աւետարանս թվականիս Հայոց ՋԷ. (1458)։ Յիշեցէք և աստուած-ողորմի ասացէք ըստացողի սուրբ Աւետարանիս տէր Յովանիսին և կողակցում Խան-Սուլթանին, և ծաղկեալ որդոյն՝ տէր Զաքարիային, և Առաքելին, և Աւետիսին, տէր Քոչին աստուած-ողորմի ասացէք ամէնքդ, ամէն։

---

* Յոհանէս գրիչը նման և ավելի համառոտ հիշատակագրություններ է թողել գրեթե բոլոր վարքագրություններից հետո։

** Ըստ հնագրական տվյալների այս վերջին հիշատակագրությունը գրված պետք է լինի կա՛մ ԺԵ. դարի վերջին, կամ ԺԶ-ի ընթացքում։





## 153

### ՈՍՈՒՄՆ ԲԺՇԿՈՒԹԵԱՆ ԱՄԻՐԴՈՎԼԱԹԻ ԱՄԱՍԻԱՑՒՈՅ

Երևան 8871

Հեղինակ և գրիչ՝ Ամիրդովլաթ Ամասիացի
վայր՝ Կոստանտինուպաւլ

ա

182ա Փառք մարդասիրին Քրիստոսի, որ աւրհնեալ է յաւիտեանս, ամէն։

Գրեցաւ թադօորական բժշկարանս ի թվականութեանն Հայոց ՋԸ. (1459) ամին և ի նոյեմբերի ամսում ի Գ. (3), օրն շաբաթ, և ի քաղաքին Կոստընդինոյպաւլի, և ի յառ ոտն վանիցն սուրբ Ստեփանոսու, և ի կաթաղիկոսութեանն Հայոց տէր Գրիգորայ, և ի հայրապետութեանն տէր Մարտիրոսին Կոստանտինոյպաւլու վիճակին, և ի պարոնութեանն Մունամատ խանին, և ի վայելումն պարոն Շատիպեկին՝ որդոյն պարոն Վարդին, զի յոյժ փափաքութեամբ եւ ուղիղ սրտիւ խնդրեց, որ գրուվեցաւ դիրքս այս ի յարապի լեզուէ և ի պարսի լիզուէ ի հայ բառս մեր. և ոչ գտայ ի բառս Հայոց այս ձևովս բժշկարան. և արդ, որ կարդայք ի սմանէ և կամ աւրինակէք և աւքտիք բան ի սոցանէ՝ յիշեցէք ի տէր աստուած զանպիտան և զանարժան գծողս զԱմիրտովլայ բժ[ի]շկն Ամասիու, և աստուած յիշէ զձեզ ի միուսանկամ գալուստ, և թէ ով ղմիտաւ ածէ զսայ գողանալով և կտրելով մէկ թուղթ ի սմանէ՝ նայ չառնու մասն և բաժին ի Քրիստոսէ, և անմեղայդիր լերուք սղալանացն դրոցն պակասութեան նորայ, զի ի պարսի և ի յարապի գրոց է գրած և չէ փոխած ի այլ գիր, թէ չէ կու ըղորդէր, փառք աստուծոյ, ամէն։

բ

18ա Ցանկ է գրոցս Ախրապատնին, որ առի ես՝ անպիտան և անարժան ծառայս՝ ի յարապ գրոց և ի մինհաճի տուքանէն, որ ժողովել է զինքս Մուսի պին-Մայմունն, և ես յիշեմ զիրենն խաւքն և գրեմ ի հայ լեզու։ Բայց ի այս արապ գիրքս, որ Մուսի պին-Մայմոնն է շինել եբրայեցոցն, նայ զդեղերուն զաւրութիւնն չէր գրել կատարելութեամբ և ոչ զբնութիւնն և ոչ զգոր[ծ]քն, նայ ես տեսայ, որ ի Ախրապատին առանց մուֆատաթի չի լինար, որ է մէկ-մէկ դեղերն, նայ շինեցի ղխարապատինն լման և զմֆուրատաթն այլ ի լման, և զանուանքն դրի ի կարգին՝ հինկ լեզուով՝ յառաջն հայրէն, և յունէրէն, և դահմատէրէն, և արապկերէն, և պարսկերէն, և զբնութիւնն և զաղէկն և զառնելիքն և զփոխանն, և զաւգտութիւնն ամենայն անձինն, և շինեցի զգիրս զայս հանց գիր, որ ով որ յատար լինի և կամ յաշեապ լինի նայ իրենն այս գիրքս հերիք է, և ով զինքս կարդայ և ուսնի զամենայն գործն բժշկութեանն և զմուֆրատաթ առնուլն՝

նայ լինի կատարելութեամբ գէտ այս արուեստիս, և զայն այնէ զինչպէս
48ր որ գրած է՝ նայ իր բանն կատարի անսղ||ալ, և ղանաղան Թարքիպնին
տեսնուս և զարմանաս ղդեղերուն զգործն աստուծոյ ողորմութեամբն։
Բայց որ ի սոցանէ բան օգտի՝ նայ գիտենայ, Թէ ինչպէս է շինել անար-
ժան ծառան աստուծոյ Ամիրտովլաթ բժիշկն և տեսնու Թէ ինչպէս է յա-
ւելցուցել զգիրքս և ինչպէս է ձևէլ զդեղերուն զաւրութիւն և զայլն որ ի
կարգին է, որ պէտք է մեզ*։

Նկ. 7. Ամիրդովլաթի «Ուսումն բժշկութեանն» աշխատության ինքնագիր օրինակի հիշատակարանը։

* Երևանի № 8871 ձեռագիրը Ամիրդովլաթի ինքնագիրն է։

## 154
## ՃԱՇՈՑ

*Ղ. Փիրղալեմյան «Նշխարք պատմութեան հայոց» (ձեռ. № 6273), էջ 166ա—167ա, նաև «Նոտարք հայոց», էջ 193—195, Ռշտունեաց գաւառ, ի գիւղն Բէլու*

*հետ. ստացող՝* Աբդըլ-Ազիզ
*վայր՝* Ոստան

*... Արդ, ցանկացող եղև... սուրբ դրոցս իմաստուն և աստուածասէր բարեպաշտ տանուտէրն խօջայ* Աբդըլ-Ազիզն, *որ ի քաղաքիս* Ոստան, *և վերստին ստացաւ զսա ի հալալ վաստակոց իւրոց՝ յիշատակ հոգւոյ իւրոյ և ծնողացն իւր՝ հօրն պարոն* Ջաֆարուն *և մօրն* Շնաճվոր-Խաթունին, *և եղբարցն՝ խօջայ* Սֆանտարին *և ուսթայ* Աբդուլին, *...և լի բերանով աստուած-ողորմի ասացէք* Աբդըլ-Ազիզին, *որ եկեղեցի շինեաց, և բազում արդիւնս արար սուրբ եկեղեցեաց, և է սա ողորմած և առատաձեռն աղքատաց և կարգաւորաց, որ և ազատեաց զսուրբ գիրքս ի յանօրինացն։*

*Եւ դարձեալ, ծանուցանեմք ձեզ զաւեր աշխարհիս մերոյ, որ վասն մեր մեղաց հաս||**Մակու, *և յազդմանէ չարին և վասն ծովացեալ մեղաց մերոց արձակեցաւ ի յերկաթոյն (որդի Ջհանշահի՝* Հասան-Ալի) *և բազում աւեր արար քաղաքաց և զինչ բռնած կայր հօրն՝ ազատեաց ի կապանացն՝ զ*Դլին-Ասլանն *և զորդին իւր, զ*Առապշէն *և զորդին նորա. և ժողովեաց առ ինքն, և արար իւր բազում հեծելս։ Եւ յետոյ առաքեաց զ*Դլին-Ասլանն *ի վերայ* Վանայ *բերդին, զի առցէ զնա, և ոչ կարաց։ Եւ ապա խորհուրդ չար արար վասն երկրիս մերոյ, և արար շատ աւեր և թա[լան], և գնաց ամօթով ի յետս, և մնաց երկիրս աւերեալ. բայց մնաց փոքր ի շատէ երկիրն* Գաւաշից *ի դադարանք իսկ յետոյ եկեալ պիղծ և անիծեալ ազգին* Ռօշկանից՝ *անիծեալ ի յաստուծոյ* Սէտալին *(իմա՝ Սէիդ-Ալի) ի յաւուրս տեառնընդառաջին և թալանեաց զ*Գաւաշից *երկիրն և զքրիստոնեայս կողոպտեաց ի յրնչիցն, և նստաւ ԺԲ. (12) օր ի գեօղն յ*Ախավանց, *և յօղարկեալ երեր երկու փուռ (լաստ) ի գեղջէն* Աղունայ *և կամէր մտանել ի յանառիկն յ*Աղթամար, *և ասէր թէ զամենեսեան ի սուր սուսերի մաշեցից, և զարիւնս նոցա ի ծովն հասուցից, և զսուրբ զեկեղեցիս քակեցից, և զսրբութիւնս գերի վարեցից։ Իսկ ի զօրութենէ սուրբ խաչին յաղթահարեցաւ և ամօթալից կորեաւ պիղծն և անիծեալ* Սէտալին, *և գործ իւր խափանեցաւ կամաւն աստուծոյ. և զայս տեսեալ պատուական և ընտրեալն յազգաց տէր* Զաքարիա *կաթողիկոսն, և իբրև քաջ զօրական եղեալ և արիացեալ ի շնորհացն աստուծոյ և զօրութեամբ սուրբ խաչին ելեալ գնաց ընդդէմ անօրինացն ի պատերազմ, և առեալ զերկու փուռն և կալեալ եբեր յ*Աղթամար, *և փրկեցան քրիստոնեայքն ի յանօրինաց. և ամօթալից եղեալ գնացին ի տեղիս իւրեանց. և մնաց ի խաղաղութեան* Աղթամար *զօրութեամբ սուրբ խաչին և արիութեամբ տէր* Զաքարիայի *կաթողիկոսին***։

---

* «Մկունք զթուղթն վնասեալ էին երեք տողի չափ», տեղեկացնում է հրատարակիչ Ղ. Փիրղալեմյանը։

** Այս պարբերությունը, ուր շարադրված է ռոժիկ քրդերի Աղթամարը գրավելու անհաջող փորձի ուշագրավ պատմությունը, Ղ. Փիրղալեմյանը չի հրատարակել «Նոտարք Հայոց»-ում։

Ի սմին աւուրս գնաց (կաթուղիկոսն Զաքարիա) մնչիւք մօտ մրզայ Ջհանշէն, (և ծանոյց նմա) զաւերումն աշխարհիս. և ելեալ (Ջհանշէն) ի քաղաքէն Խօյու բազում զօրօք, և եկեալ վրէժխնդիր վասն աւերման աշխարհիս՝ և վասն տառապեալ ազգիս քրիստոնէից, զոր յուսամք յաստուած, որ զմրզայ Ջհանշէն ընդ երկայն աւուրս արասցէ և զթշնամիս նորա անզնդասուզ արասցէ, զի թէ չէր եկեալ՝ ազգս քրիստոնէից կորուսեալ էր... Զոր տէր աստուած օգնական լինի նմա ի յամենայն պատերազմունս իւր, և թշնամիք նորա հալածեալ եղիցին զօրութեամբ աստուծոյ մերոյ, ամէն։

Եւ այս եղև ի թուականիս Հայոց ՋԸ. (1459). և բերաւ գիրքս ի քաղաքիս Ոստան...:

(Եւ ստացաւ խոջայ Աբդլ-Ազիզն)... և ետուր ի դուռն սուրբ Ստեփաննոսի նախավկային։ Աստուած-ողորմի ասացէք խոջայ Աբդլ-Ազիզին...: Ընդ նոսին (յիշեցէք) և զիս՝ ղանպիտանս յամենայնի զմեղսաթաւալ Կարապետ գրիչս...։

## 155

## ԱՒԵՏԱՐԱՆ

Իրան, Ջարմահալի Սիրաք գիւղ, Մ.Տ.Մ.

գրիչ՝ Մկրտիչ
վայր՝ Հիզան

...Գրեցի զսուրբ Աւետարանս ի քաղաքս Հիզան, ընդ հովանեաւ սրբուհոյ Աստուածածնի, և նորաբողբոջ Յարութեան, և սուրբ Սարգսի զօրավարին, որ սակաւ հեռի է ի քաղաքէն...։

Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի թվին Հայոց ՋԸ. (1459), ի դառն և ի նեղ ժամանակիս, ի ղանութեան Ջհանշի թուրքի, և ի մեր ամիրայիս Սուլէյմանայ, և ի հայրապետութեան հայկազեան սեռի էջմիածնայ սուրբ աթոռոյն տէր Գրիգորի և Աղթամարայ աթոռոյն՝ տէր Զաքարիայի, զոր տէր աստուած անսասանելի և հաստատուն պահեսցէ զաթոռ հայրապետական մերոյ ազին, ամէն։

Դարձեալ յիշեցէք... (ստացողի սուրբ աւետարանիս) Սարգիս քահանայն, և զծնաւղսն իւր զԹումէն և զԽարմէլիքն, և զեղբարսն իւր զՍտեփանոսն և զՊետրոսն...:

Այլ և ես՝ անարժան գրչակս Մկրտիչ, գրեցի սուրբ Աւետարանս պանդուխտ կենօք... յիշեցէք զծնողսն իմ զԱվրամն և զԱդուբն...:

## 156

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 7988

գրիչ՝ Գրիգոր Անգեղակութեցի
վայր՝ Կիկէք

ա

387ա ... Այսմ աստուածախաւս և աստուածաբան սուրբ Աւետարանի ցանկացայ փափաքմամբ հոգևոր սիրով Գրիգոր Անգեղակոյդեցի՝ ծիր և ծե-

րացեալ, ղոչ ով չումելով յիշատակ հոգոյ իմոյ, անարժանս՝ ձեռս ի գրիչըս՝ գրեցի զաստուածաշումչ կտակս, աստուածաբան երգս, քառաբուղխ
387բ աղբերս և գանձ անկողոպ|տելի ի տան աստուծոյ...։

Գրեցաւ ի Կիկէթ, ի դուռն նորակնումք սուրբ Աստուածածնիս, ի թուականիս մեծ Հայոց ՋԸ. (1459), ձեռամբ փցում և ծիւրեալ ծերոյ Գրիգոր գրչի, յիշատակ վերափոխեալ ծնողացն իմոյ՝ Թէոյդորոսի, և մաւրն իմոյ Սիմիկին, և եղբաւրն իմ Շաչիկին, խեղծ որդոյ նորա Աւանիսին, և քուրոչ
388ա իմ Կուլիկին, և փոխեցելոցն կենակցին, || և զաւակացն իմ Ըրստակիսի, Վրթանիսի, Ուսկանիսի, Ոհանիսի, որ ի Ճաւախէդ ի Քրիստոս փոխեցան։ Եւ յետ նոցա չար Ջահանշէն դիմեց ի վերա երկրին և զբազումս գերեց և կոտորեց, և զմայրն իմ իբրև զԱկովբիկ հատեցին զԲ. (2) ձեռն, և զգլուխն ի արիւն թաւլեցուցին, ի տանին սրբոյն Գէորգայ զհատեալ մարմին ի գերեզման թաղեցի։

Եւ արդ, ես արտասուալիր դիմաւք աղերսեմ յիշել ի սուրբ աղաւթս ձեր զվերագրեալ ծնողսն իմ։ Եւ ես զբազմերախտ սամամէրն իմ՝ զԹէնիկն, որ բազում աշխատանք կայ ի վերա իմ. Քրիստոս աստուած ողորմի նմա։

Բ

102բ ... Զոր և սոցին յորդառատ քաղցրահոս մշտաւէտ վտակաւքն արբուս[ց]է տէր Յիսուս աստուածն իմ զպասքեալ և զտոչորեալ հոգի ազգի յազգի վիրաւք լցուած մեղաւք անարհեստ գրչի Գրիգոր Անկեղակութեցի. աղաչեմ զձեզ աւժանդակութեամբ աղաւթից կայծակնամաքուր, աստուածոմնակ և աստուածարեալ ընթերցողացդ, զոր ձեզ արժանապէս ըստ գործոց և ինձ՝ մեղուցելոյս վասն ձերոյ գթութեան, զոր յուսամ ողորմեսցի Յիսուս աստուած իմ, և նմա փառք յափտեանս։

ծաղկող՝ Նաղաշ Մանուէլ

Գ

11բ—12ա Անմեղայդիր լեր տէր Գրիգոր,
Քո մագաղատս է խիստ խոշոր.
ԶՄանուէլ նկարող յիշ[եա] յաղօթս,
Աղաչեմ, ո՛վ սուրբ ընթերձող։

Դ

122բ—123ա Ո՛վ ընթերձող սուրբ և բարի,
Յիշման առնես զիս արժանի
ԶՆաղաշ Մանուէլ մեղաւք ելի։

Ե

302բ—303ա Ո՛վ ընթերձող սուրբ քահանայք,
ԶՄանուէլ Նաղաշ մի մոռանայք
Ձեր յիշելոյս ենք մեք փափաք։

Զ

կազմող՝ Բոննաւչ

388ա Բոննաւչ կազմող յաղաւթս յիշեցէք և աստուած զձեզ յիշէ, ամէն։

## 157

### ԾԱՇՈՑ

**Երևան 6272**

**ա**

*գրիչ՝* **Մատթէոս**
*վայր՝* **Այրիվանք**

*... Եւ պատուականս այս* Աստուածատուր *և մահդասի քահանայս այս, ըստ այսմ յուսոյ և պայմանի, ի հալալ ընչից իւրոց ստացաւ զսա և ետ*
552բ *գրել իմոյս տը||կարութեան, յիշատակ հոգւոյ, ի մխիթարութիւն և ի սըփոփանս ցաւալից կենաց, և ի բժշկութիւն ախտալից մտաց և խորհրդոց հոգւոց և մարմնոց՝ ի կեանս և ի մահ, և պաշար անդառնալի ճանապարհին, և յետ մահու մասնակից լինելով համայնքն ամենայն սրբոցն, որ ի սմա։*

*Արդ, եղև գրաւ գրչութեան այսմ աստուածաշունչ մատենի ի թվականութեան հայկազեան տումարի ի ՋԸ. (1459) թվի. և ի վշտաշատ ժամանակի, յորում նեղիմք յանաւրինաց և յանիրաւ պահանջողաց, ի թագաւորութեանն Վրաց* Գաւրկոյ՝ *որդւոյ* Ալեքսանդրէ, *և ի հայրապետութեան Հայոց տեառն* Գրիգորի՝ *յաթոռ սուրբ* Էջմիածնին, *ի ղանութեան* Ջահանշահի՝ *որդւոյ* Ղարա-Ուսուփին:

*Արդ, գրեցաւ սա ի յերկնահանգէտ և ի գերահռչակ սուրբ ուխտս* Այրիվանս *վերաձայնելոյ, ընդ հովանեաւ մաւրս լուսոյ սուրբ Աստուածածնիս, և հրաշափառ և երկնանման Կաթուղիկէիս, և աստուածընկալ սուրբ Նշանացս, և արեամբ ներկեալ անմահին Յիսուսի սուրբ Գեղարդեանս, և սուրբ աջերոյս՝ Յովհաննու Մկրտչին՝ ձեռնադրողին Քրիստոսի և սուրբ աջոյն Բարդողիմէոսի առաքելոյն, և համայնքն ամենայն սրբոցըս, որ աստ կան հաւաքեալ ամա[նդա]կութեամբ հոգւոյն սրբոյ և կամակցութեամբ սուրբ եղբարցս և բազմերախտ ըստ հոգւոյ հաւր մեր և վարժապետացն՝ տէր* Ներսէսի *և ամենայն սրբութեանց վարպետի՝ տէր* Յոհանէս *ծաղկողի, որ բազում երախտիք ունին ի վերայ մեր և միաբան ամենայն հաւատացելոց քրիստոնէից։ Ձեռամբ ամենամեղ, փցուն և անարհեստ գրչի* Մաթէոս *անարժան աբեղայի...։*
553ա *... Այլ և վայելողք սուրբ գրոցս և հանդիպողք սորա տեսանելով կամ աւրինակելով, որք աւգտիք ի սմանէ յիշեսջիք զմեզ և զվերոյգրեալսդ* զԱստուածատուր *քահանայ, և ղծնաւղսն իւր, և զամենայն արեան մերձաւորսն։*

*Նաև զիս՝ զմեղապարտս նկարաւղս* Ստեփաննոս՝ *ըստ հոգոյ հարազատ եղբայր սորայ, որ վասն ջերմեռանդ սիրոյ նորա ծաղկեցի և նկարեցի և կազմեցի, որ է մեր հոգւոյս անջինջ յիշատակ և դուռն կենաց և բանալի սուրբ արքայութեանն. և Քրիստոս աստուած ձեզ՝ յիշողացդ և մեզ՝ յիշեցելոցս առհասարակ ողորմեսցի և նմա փառք յաւիտեան։*

*Աստուծոյ սիրուն համար ի մոմէ և ի ձիթէ պատրաստ պահէք և սպիտակ լաթով բռնէք, աղաչեմք։*



Նկ. 8. Մի նմուշ Ստեփանոս նկարչի լուսանցազարդերից

Բ

ստացող՝ Աստուածատուր
վայր՝ Հռոոմոսի վանք

553ա *Արդ, ես՝* Աստուածատուր *եպիսկոպոս, ստացաւղ և վայելաւղ սուրբ գրոց, ստացա զայս սուրբ բուրաստանս ի հալալ և յարդար վաստակոց իմոց և բարեխաւս առ ամենակալն աստուած... Թողութիւն շնորհեսցէ իմ բազում մեղացն և ողորմեսցի իմ ծնաւղացն՝ հաւրն իմոյ* Խոցադեղին *և*

մաւրն իմոյ Հռիփսիմէին, հաւրեղբաւրն Յովանիսին, և եղբաւրն Պռաշին, մաւրքըւերն Խութլու-խաթունին, և քըւերն իմոյ Մարգարտին և Նարինին, և հանգուցեալ քերցն իմոց՝ Թանսուխին, Խութլու-խաթունին և Մարբային, և եղբարցն իմոց Մարտիրոսին և աշակերտի, և Պետրոսին, և Սարգսին և ամենայն արեան մերձաւոր||ացն մերոց՝ կենդանեացն և հանգուցելոցն. և Քրիստոս աստուած, որ առատն է ի տուրս բարեաց՝ տացէ վիւր ողորմութիւնն և զարքայութիւնն Աստուածատուր եպիսկոպոսին և ծնաւղաց նորին և երանաւետ ձայնին արժանի արասցէ Քրիստոս աստուած հանդերձ ծնօղաւքն և ազգականօքն ամենայնի, ամէն։

553բ

Արդ, ես Աստուածատուր եպիսկոպոս շնորհեցի զսուրբ գիրքս Հոռոմոսի վանից դրանն սրբոյ Յովանիսին և սուրբ Աստուածածնին դրանցն, յիշատակ ինձ և ծնօղացն իմոց Խոցդեղին և Հռիփսիմին, և մի իշխեսցէ հեռացուցանել ի դրանէ սուրբ ուխտին գողանալով կամ ծախելով կամ գրաւելով, և որ յանդգնի և զայն արասցէ՝ զաւծի անէծքն, զՅուդային և զխաչահանուացն ընկալցի և զպատիժն նոցին կրեսցէ ի յաւր դատաստանին։

Եւ դուք կարդացողքդ և լսողքդ աւրհնեալ լիջիք յամենասուրբ երրորդութենէն, ամէն։

## 158

### ԱՒԵՏԱՐԱՆ

Փիրզ. Նօտ. 192, Հայկավանք՝ ի ս. Աստուածածին եկեղեցին

գրիչ՝ Դաւիթ
վայր՝ Սրկղունք գիւղ

... Արդ, գրեցաւ սա ի գեաւղս որ կոչի Սրկղունս, ընդ հովանեաւ սուրբ Գէորգիս և սուրբ Յակոբիս, ձեռամբ սուտանուն Դաւիթ իրէցի, և առ ոտս երջանիկ և սրբասէր տէր Սրեմիա արեղիս... ի թուականութեանս Հայոց ՋԸ. (1459) եղև գրաւ սորա՝ ի ղանութեան Ջհանշին:

## 159

### ՔԵՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ ԳՐԻԳՈՐԻ ՄԱԳԻՍՏՐՈՍԻ

Երևան 3917

հետ. ստացող՝ Շմաւոն վարդապետ

181բ Շմաւոն վարդապետս յիշեցէք, որ զքերական գիրքս ի [Ս]արկաւագանց վանիցն բերաք ի վանս Եւստաթէի [սուր]բ առաքելոյս։ Գիրքս այլ ի Տաթև վանիցս է եղել, [մե]ծ վարդապետն Գրիգոր՝ Յովաննէս վարդապետին էր տուեալ՝ մականուն Կարմիր. մեք այլ վերըստին բերաք ի վանքս։ Յիշեցէք սրտի մտաւք զմեղաւք զառածեալս զՇմաւոն վարդապետս, և աստուած զյիշողքդ յիշէ ի կեանս, ամէն։.

Ի թվ. ՋԸ. (1459) էր երբ բերաք զգիրքս։

## 160

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՂՈՒԿԱՍՈՒ ԱՒԵՏԱՐԱՆԻՆ, ԶՈՐ ԱՐԱՐԵԱԼ Է ԻԳՆԱՏԻՈՍԻ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ

**Երևան 2517**

*Հետ. ստացող՝* Շմաւոն վարդապետ
*վայր՝* Տաթև՝

227ա *Եւ ես՝ նուաստս ի վարդապետաց* Շմաւոն, *որ առաք զմեկնիչ Աւետարանիս Ղուկայ ի* Շամբախի *և բերաք ի վանքս* Եւստաթէի, *վասն յիշատակի իմոյ և ծնաւղաց իմոց, և ի վայելումն <որդոյ> եղբաւրնորդոյն իմ* Ստեփաննոս *արհեպիսկոպոսին* Եւստաթէի *սուրբ առաքելոյս. և դուք՝ տեսանաւղք կամ ընթերցաւղք՝ յիշ[եց]էք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զյետնեալս յամենայնի զ*Շմաւոն *պիտակ անուն, և աստուած զձեզ յիշէ ի աւրն ատենի, ամէն, և եղիցի։*

*Ի թվ. ՋԸ. (1459) դրեցաւ սակաւ գիծս**։

## 161

## ՀԱՐՑՄԱՆՑ ԳԻՐՔ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՅ

**Երևան 4072**

*Հետ. ստացող՝* Շմաւոն վարդապետ
*վայր՝* Տաթև

149ա *Զվերջին ստացաւղ Հարցմանցս զ*Շմաւոն *մեղսամակարդ անձն և սիրող բանի, որ առի զսա ի* Շամրան *քաղաքի, ի հալալ ընչից իմոց, զի աւրինակ էր տուել մեծ հռետորն* Գրիգոր *և մնացել էր անտ, և տիրեալ էին այնտեղացն քահանայքն, և ես չանիւ առի։ Ու բերաք ի վանքս* Եւստաթէի *սուրբ առաքելոյս յիշատակ մեզ, և ծնաւղաց մերոց՝ հաւրն իմ* Խաչատրին *և մաւրն իմ* Աղուտին, *և եղբարց իմոց, և քեռց իմոց, և ի վայելումն եղբաւրորդուն իմոյ* Ստեփաննոս *արհեպիսկոպոսի՝ առաջնոր[դի] սուրբ առաքելոյս, և միւս եղբաւրորդոյն իմոյ* Սարգիս *դպրի. և դուք՝ աստուածասէրք՝ տեսանաւղք կամ կարդացաւղ կամ աւրինակաւղք՝ յիշեցէք միով աստուած-ողորմա[ի]ւ սրտի մտաւք ի հառաչանս ձեր զ*Շմաւոն *վարդապետ՝ մեռեալ անձն, որ անուա[մբ]ս եմ և ոչ գործով. և դուք յիշողքդ յիշեալ լիցիք....։*

*Վերջին յիշատակարանս գրեցաւ ի թվ. ՋԸ. (1459)։*

---

* Ձեռագիրը, այսպիսով, գրված է 1459-ից առաջ։ Վերջում եղող մագաղաթյա պահպանակի վրա կա մի հիշատակագրություն 1396 թվից («գրեցաւ ձեռամբ մեղաւորիս Ատոմի բանի սպասաւորի, ի թվականի հայոց ՊԽԵ. (1396), յիշել ի Քրիստոս աղաչեմ»). Թվում է, թե ձեռագիրը մերձավորապես գրված է հենց այդ ժամանակ, Տաթևի վանքում։

## 162

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 3736*

161 *Ո՛վ սուրբ ընթերցողք և լսաւղք սուրբ Աւետարանիս, յիշեցէք զՇմաւոն բարունապետն և զտէր* Ստեփանոս *արհեպիսկոպոս* Սիւնեաց *նահանգէ, որ ետ զսուրբ Աւետարանս ի գեղաքաղաքն* Անկեղակոթ, *ի սուրբ եկեղեցին՝ Սարգիս նահատակն։ Արդ, եթէ ոք հանել ջանայ զսուրբ Աւետարանս ի դրանէ սուրբ եկեղեցոյս ի մերոց կամ յաւտարաց, հանէ զնա Քրիստոս աստուած ի խաւարն արտաքին և մասն և բաժին զնոցայն առնու, որ զտէրն ի խաչ հանին, և ընդ նոսա դասակցի, ամէն, եղիցի և եղիցի**։*

## 163

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Փիրղ. Նօտ. 192—193, Մանազկերտ*
*ի ս. Սարգիս եկեղեցի*

*գրիչ՝* Յովհաննէս
*վայր՝* Արծկէ

... *Եւ ես՝ անպիտանս յամենայնի՝ մեղուցեալ գրիչս* Յովհաննէս, *գրեցի զսուրբ Աւետարանս ի քաղաքս* Արծկէ, *ընդ հովանեաւ ամենամաքուր սուրբ Աստուածածնի տաճարիս, և սուրբ Ստեփաննոսի նախավկայիս, և ամենազօր սուրբ Նշանիս Պատերազմի, ի հայրապետութեան տեառն* Գրիգորի՝ *ընդհանուր Հայոց կաթուղիկոսի, իսկ ի յաշխարհակալութիւն* Ջհանշայի՝ *որդւոյ* Ղարայ-Իւսուփի, *ի թուականիս մերում ՋԸ. (1459) ամի...։*

*Եւ զիս՝ զանարժան գրիչս, և զծնողսն իմ* Յակոբ *սրբասնեալ քահանայ և* զՍալչուկ-Խաթունն, ... *այլ և զտիեզերալոյս բաբունապետն* զԹումայ Մեծոփայ *վանաց՝ յիշեցէք ի Քրիստոս, որ բազում աշխատանօք ուսուցեալ է մեզ զարուեստ գրչութեան...։*

*Աստուած-ողորմի ասացէք* Թուրվանդա *խաթունին՝* Բաղիշեցի *խոճայ* Ֆանրադի *մօրն, որ ետ զսկիհս ի սուրբ Աստուածածնի տաճարս* Արծկէ *քաղաքիս։*

## 164

## ԱՒԵՏԱՐԱՆ

*«Բազմավէպ», 1952, էջ 243 - 245, Ա. Երեմյանի «ԺԵ. դարու մի նոր ձեռագիր աւետարան» հոդվածից***

*գրիչ՝* Մելքեսէթ
*վայր՝* յերկիրս Ըռըշտօնեաց, ի գեօղս Շատուան

...*Եւ ես յոգնամեղս և փծունս ի գրչաց, սոսկ անուն քահանայ* Մելքեսէթ ... *ըստ իմում կարի յանձն առեալ կատարեցի զսուրբ Աւետարանս*

* *Հիշատակարանն անթվական է, տեղադրում ենք 1459-ի թվաշարքում, Շմավոն բաբունապետի թվակիր հիշատակարանների առընթեր։*

** *Ձեռագիրը այժմ գտնվում է Թեհրանում, մասնավոր անձի մոտ։*

զայս ի Թըւականութեան Հայկազեան տումարիս ի յինն հարիւր և ի յութն (1459), յերկիրս Ըռբշտօնեաց, ի դեօղս որ կոչի Շատուան, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին, և սրբոյն Ստեփաննոսի նախավկային, և Գէորգեայ զօրավարին, և սուրբ Ոսկեանց քահանայիցն, որ աստ կան կառուցեալ։

Արդ, յերես անկեալ աղաչեմ զձեզ, ո՜վ մանկունք սուրբ եկեղեցոյ, յիշեցէք ի Քրիստոս զստացող սուրբ Աւետարանիս և աստուած-ողորմի ասացէք Մկրտչին, և ծնօղաց նորին՝ հաւրն Յոհանիսին և մաւրն Շնօհտրին, և եղբօրն Թումային, և կողակցին իւրոյ Ջանմէլէքին, և որդոյն իւրոյ Գէորգի մէլէքին, և մեծ պապուն Աստուածատրուն, և քեռացն Ատոմին, Կիրակոսին և Վարդանին, և ամենայն արեան մերձաւորացն աստուած ողորմի ասացէք, ամէն։

Դարձեալ յիշեցէք ի Քրիստոս ծնօղսն Ջանմէլէքին՝ զԳուլամիրն և Վսիգարն, և զեղբարքն՝ զԲախշային և զԱշային, և զդուստր Ջանմէլէքին՝ զՇադիփաշէն, և զփեսայն զՅովաննէսն, և զորդիսն իւրոց՝ զԲարդոսլիմոս, զԽոցղեղ, զԹոմայ, զԸռբստակէս, զԳուլազիզ, զՆադրմէկ, զՄսրիմէլէք և Թանսուխ, և զայրն զՄարոյն՝ զՎարդ-Մանուկ, և զորդիքն իւրոց՝ զԲարսեղ, զՅակոբ, զԽալիֆայ և զԳուլփսյ՝ զփոխեցեալքն ի Քրիստոս, և զդեռաբոյս տղայքն իւրոց՝ զՆերսէս և զՄուրատ: Ընդ նոսին և զիս՝ զՄելքեսէթ անարժան քահանայ՝ գրող սորա, և զծնօղսն իմ զՍտեփան և զԽոսղեղն, և զորդին իւր զԱւետիսն, որ է ժառանգ սուրբ Աւետարանիս, և զքորն նոսայ <ա> զԳօհար, և զեղբայրն իմ զՍիրուն սարկաւագն, և զքոյրքն իմ զԴօվլաթ և զՀռիփսիմայ, և զտղայքն իմ՝ զՍիրուն, զԳորգ և զԽալինար, և զուտարեան մերձաւորսն իմ յիշեցէք ի Քրիստոս և աստուած ողորմի ասացէք, աղաչեմ ձեզ։

Դարձեալ կրկին աղաչեմ զամենեսեան սիրովն Քրիստոսի, աստուած ողորմի ասացէք ստացողի սուրբ Աւետարանիս՝ աստուածասէր և բարեմիտ տանուտրոջն Մկրտչին, և ծնօղաց նորին Յոհանիսին և Շնօհւորին, և եղբօրն Թոմային, և կողակցին Ջանմէլէքին, և որդոյն իւրոց Գորգի մէլէքին, և մեծ պապուն Աստուածատրուն և որդոցն նորա Ատոմին, Աւետիսին, զՆոյնոյֆարն, և զկողակիցն Աւետիսին զԽալինարն///

## 165

## Յ Ա Յ Ս Մ Ա Ւ Ո Ւ Ր Ք

Երևան 4907

գրիչ՝ Յովանէս
վայր՝ Բաղէ՞շ

ա

... Զոր տեսեալ զայս աստուածային գանձս հոգեւոր և զանառիկ մե-
383ա ծութիւնս աստուածասէր և բարե||միտ մեծա/// խօ]ջայ Ասլան... ետ գրել զսա ստացեալ ի հալալ ընչից և յարդար վաստակոց իւրոց, յիշատակ բարի և բարեխօս առ Քրիստոս զբազմութիւն աստուածարեալ և զանազան սրբոցս որ աստ, վասն հոգւոյ իւրոյ, և ծնաւղաց իւրոց պարոն Հասանին

և Թանկ-խաթունին, այլ և հարազատ եղբարց իւրոց Մկրտչին և Յունանին: Որ և ես՝ ամենամեղ և անարժան ծառայս աստուծոյ Յովանէս՝ տեսի զփափագ և զսէր, զոր ունէր առ հոգևոր գանձս մեծութեան աստուածասէրն խօջայ Ասլան, և ըստ իմում ախմարութեան համարձակեալ ձեռնարկի ի գործս անտանելի... և կարողութեամբն աստուծոյ յանկ հանեալ կատարեցի ի թըւականիս մերոյ Ջ. և Ը. (1459) ամի, ի հայրապետութեան տեառն Գրիգորի ընդհանիւր Հայոց կաթողիկոսի Վաղարշապատու, առ դրան էջմիածնին, և ի թագաւորութեան Թաղթին Ջհանշայի, ի քաղ*[աքըս Բաղէշ (և իշխանութեան ա)միր Շարաֆի]**։

Դարձեալ, յերես անկեալ աղաչեմ զձեզ, հարք և եղբարք, յիշել առ Քրիստոս և լի սրտիւ ողորմի ասացէք հոգևոր հայրն խօջայ Ասլանին՝ Յովանէս սրբասնեալ կրօնաւորին Կուրցոյն, վասն զի անմոռանալի երախտիք ունի ի վերայ նորա ծնօղապէս և այլ աւելի։

585բ ...///  դարձեալ աղա]չեմ յիշել ի Քրիստոս միով աստուած-ողորմիւ, որ բազում աշխատութեամբ և պանտխտութեամբ յօտարութեան, վշտալի կենօք ի ներքին և յարտաքին թշնամեաց՝ գրեցի զսուրբ տառս։ Նաև զծնօղսն իմ զՅակոբ սրբասնեալ քահանայ և զՍալչուկ-Խաթուն յիշեցէք ի Քրիստոս, և զհարազատ եղբարքն իմ՝ զտարաժամ փոխեցեալքն ի Քրիստոս զԳրիգոր սրբասնեալ կրօնաւոր, և զՅոհաննէս, և զՆերսէս լիակատար շնորհածասլ սարկաւագունքն տեառն աստուծոյ սիրունք։ Այլ և զդեռաբոյս պատանեակն իմ զՅակոբ դպիր, և զմայր նորին, որ բազում աշխատեցան ի կոկել թղթիս՝ լի բերանով աստուած-ողորմի ասացէք...։ Նաև զտիեզերալոյս րաբունապետն զԹումայ Մեծոփայ վանաց մեծ վարդապետն, որ բազում աշխատանօք ուսուցեալ է մեզ զարւեստ գրչութեանս, տացէ նմա տէր Քրիստոս ընդ սրբոց աստուածաբան վարդապետացն դասաւորիլ և պսակիլ, ամէն։

Բ

254ա Յիսուս որդի հաւր միածին...***
Խօջայ Ասլան՝ ստացող սորին
Միշտ եղիցի քեզ ի յանձին։
Մաղթանք սըրբոցս, որ աստ տօնին
Տեառն Յիսուսի յականչ լսին,
Փառաց պատւոյն սըրբոց դասին,
Զխօջայ Ասլան դասէ ի նմին

* Փիրղալեմյանը սույն ձեռագիրը տեսել և օգտագործել է 1881 թ., երբ չնայած ձեռագրի «Թուղթն փտրեալ էր ի հնութենէն», բայց դեռ հնարավոր է եղել կարդալ փակագծի մեջ բերվածը։

** 585ա էջի երկրորդ սյունակի և նրա հակառակ էջի համապատասխան սյունակի (էջ 585բ, առաջին սյունակ) մեծ մասը պատռված է։ Պահպանվածից հետաքրքիր են միայն Յովանէս կրոնավորի մասին եղած տողերը, որ մեջ ենք բերում։ 585բ էջից տալիս ենք միայն 2-րդ սյունակում եղած հատվածը։

*** Դուրս ենք թողնում 15 անհետաքրքիր տող։

Նաև եղբօր հարազատին,
Որ համանուն է Մկրտչին,
Լրսել տացէ զձայնն վերին
Յաւուր մեծի հրապարակին
Թ՚ եկայք աւրհնեալք հաւրէն վերին
Ժառանգեցէք զփառս երկնային,
Նաև հոգիք ծնօղաց սոցին,
Դասին յաջմէ հաւր միածնին,
Եւ որ զամէնն ասէ՝ ընդ նմին
Երանութեան մասին հասնին։
Եւ զանարժան գծող սորին,
Որ Յովանէս վերակոչիմ
Զմեզ առ Քրիստոս յիշմամբ բանին
Ասցէք զամէնն և զողորմին*։

## 166

## ԱՒԵՏԱՐԱՆ

**Երևան 5417**

գրիչ՝ Հայրապետ
վայր՝ Աղթամար

ա

... Եւ արդ, ես՝ ունայնս և թափուրս յամենայն հոգևոր բարեմասնութեանց՝ ... ամենամեղ և անարժան սուտանուն աբեղայս Հայրապետ,
298ա ...ամենակարող զաւրութեամբն աստուծոյ կատարեցի զսուրբ Աւետարանս զայս յաստուածախնամ կղզիս Աղթամար, ընդ հովանեաւ սուրբ Խաչի և սուրբ Սարգսիս, ի հայրապետութեան տեառն Զաքարիայի, և ի թվաբերութեան Հայկազեանս տումարի ՋԸ. (1459), ի դառն և ի նեղ ժամանակի, որ երկիր ամենայն երերեալ կայ և տատանեալ ի ձեռաց անաւրէն ազգին նետողաց։

Արդ, աղաչեմ զամենեսեան զմանկունսդ սուրբ եկեղեցոյ, որք հանդիպիք այսմ աստուածախաւս կտակիս տեսութեամբ, կամ ընթերցմամբ և կամ գաղափարելով՝ լի բերանով և ուղիղ մտօք աստուած-ողորմի ասասջիք ստացողի սուրբ Աւետարանիս [Գուլբահարին, և ծնաւղացն նոցին Բաղ[դ]ասարին, և մաւրն Հոռոբսիմին, և զաւակացըն նորայ՝ Մխիթարին, և քուերցըն Մինային և Ազիզին, և այլ ամենայն մերձաւորացն՝ կենդանեացն և հանգուցելոցն, ամէն...]։**

299բ ... Վասն որոյ յերես անկեալ աղաչեմ զսրբութիւնդ ձեր յիշել ի տէր

---

* Նույն այս էջում կա անթվական մի հիշատակարան (ԺԶ. դա՞ր), ուր ասված է, «Դարձեալ յիշեցէք ի Քրիստոս զԱւետիք վարդապետն և զտանուտէր Միրզէն, որ կամակից եղան միմեանց ի գնել զսուրբ լուսաւոր գիրքս...» և այլն։

** Փակագծի մեջ առնված հատվածը և, ընդհանրապես, ձեռագրի ստացողի մասին բոլոր հատվածները գրված են այլ ձեռագրով։ Պարզ է, որ գրիչն սկսել ու ավարտել է ընդօրինակությունը ստացած չլինելով պատվեր։ Հետագայում ձեռագրի գնորդները գրել են տվել գրչի կողմից զատարկ թողնված պատշաճ տեղերում իրենց անունները։

սրտի մտաւք զմեղաւոր դծողս զՀայրապետ, և զծնաւղսն իմ զԽաչատուր և զՈսկիտիկին, և զեղբայրն իմ զՅոհանէս, և զկենակիցն իւր զՇարմէլիք, և զաւակն իւրեանց զՄուրատ սարկաւագ, և զքոյրն իմ զՎարդ-Խաթուն, և զՄիրան սարկաւագն, որ աւգնական եղև մեզ ի կոկել թղթիս, և երախտաւոր քեռոյն իմոյ՝ պատուական կրօնաւորին Մինասենց Թումին, և ծնօղաց նորին, և ամենայն արեան մերձաւորացն մերոց...։

## Բ

Արդ, տուաք ըզսուրբ Աւետարանս զսուրբ Գէորքայ զաւրավարին, ի գ[ե]աւղս որ կոչի Արբենց...:

300ա Արդ, յիշեցէք ի Քրիստոս զպատուական քահանայն ըզԱտոմ, որ հանապազ ի գո[ւ]ռն եկեղեցոյս կու աշխատի։ Արզ, յիշեցէք ի Քրիստոս ըզՎազարըն, և զորդին իւր ըզԱռաքելն, և ըզտանուտէրքըդ ըզՄէհրաւն, և զՆաւրն, և զՇիրին, և զայլոյքդ զամենեսեան առհասարակ, ամէն։ Եւ տուաք զսայ ի դ[ու]ռըն սուրբ եկեղեցոյս, որք յանդրք[ն]իք [հանել] զսայ կամ ծախելով կամ գրաւելով՝ զանէծըս զաւձուն առու և զմասըն զՈւդային և զայ[լ] խաչայհանուածոց առցէ, ամէն։

ԸզԿիրակոսն յիշեցէք [ի] Քրիստոս՝ զտէքր իմ*։

## 167

## ԱՒԵՏԱՐԱՆ

Փիրդ. Նոտ. 193, Մշոյ ս. Սարգիս եկեղեցի

գրիչ՝ Հայրապետ
վայր՝ Աղթամար

Գրեցաւ ծաղիկ Աւետարանս ձեռամբ Հայրապետ աբեղայի, յԱղթամար, ի թվ. ՋԸ. (1459), ի դառն և ի նեղ ժամանակի, որ երկիր ամենայն երերեալ կայ...։

## 168

## ԱՒԵՏԱՐԱՆ

Մ.Տ.Մ.

գրիչ՝ Յովհաննէս
վայր՝ Երզնկայ, Պոաստինէ գիւղ

Գրիչ Յովհաննէս միականի ծերուկ, ստացող Ալիք, յԵզնկա. ի գեղս Պոաստինէ, ի հայրապետութեան տէր Ներսէսի արհիեպիսկոպոսի։

## 169

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԹՂԹՈՑՆ ԿԱԹՈՂԻԿԷԻՑ ՍԱՐԳՍԻ ՇՆՈՐՀԱԼՒՈՅ

Երևան 4674

ստացող՝ Խոջա Խուրով

513ա ... Արդ, ի վերջին դարիս և յերեկոացեալ ժամանակիս ցանկացող եղև այսմ աստուածեղէն և փարթամ գանձուցս բարեպաշտ և աստուածա-

* Այս հիշատակարանը գրված է նույն այն ձեռագրով, որով գրված են Ա. հիշատակարանի ստացողի մասին եղած հատվածները։

սէր տանուտէրն Խոջա Խոսրովն, և բտրիարմատ շառաւիղն և քրիստոսասէրն Ս.գրէկն։ Եւ ստացան զսա յիշատակ բարի հոգւոց իւրեանց, և ծնողաց իւրեանց, և ամենայն ազգականաց և եդին ի բնական տեղի իւր՝ ի գուռն նախավկային Քրիստոսի սրբոյն Ստեփաննոսի և սրբոյն Սահակայ հայրապետի, ի թուականիս Հայոց ՋԸ. (1459)։

Արդ, աղաչեմք զամենեսեան զհամաւրէն մանկունսդ եկեղեցւոյ, որք լուսաւորիք սովաւ աստուածային գիտութեամբ կարդալով կամ լսելով կամ աւրինակելով՝ յիշեցէք ի սուրբ և յերկնագնաց յաղաւթս ձեր զյառաջ յիշեցեալ ստացողք սորա...

## 170

### ՃԱՇՈՑ

Փիրգ. Նօտ. 192, Բաղէշ, ս. Սարգիս եկեղեցի

գրիչ՝ Յովհաննէս

... Աւարտեցաւ... այս կտակ յամի ՋԸ. (1459), ի խնդրոյ հեզահոգի և տառապեալ այրի քահանային Խաչատրոյ, ձեռամբ ամենամեղ և անարժան գրչի Յովհաննէս քահանայի՝ նորին հարազատի։

ՋԹ 1460

# 171

## Ա Ս Տ Ո Ւ Ա Ծ Ա Շ Ո Ւ Ն Չ

*Տեղն անհայտ, Մ.Տ.Մ.*

*Նորոգող՝* Յոհանէս
*վայր՝* Սանահին

… Արդ ի յոգունց նազելի գերամաքուր և սրբասէր այրն հոգելից, որ ի տիս համբակաց սնեալ և վարժեալ առ ոտս երջանիկ րաբունեաց, մինչև ի հասակ ծերութեան կրթեալ ի մամուլս աստուածաշունչ գրոց և յերկիւղն աստուծոյ վարդապետն Ստեփանոս, յԱրարադեան գաւառէ, ի յականաւոր և յանմատոյց դղեկէն Անբերդոյ, բնակեալ յանապատի Նորին որ կոչի Աղաւնոյ այր, առաքինասէր վարուք։ Եւ անտի ուշ եղեալ ի սուրբ քաղաքն Երուսաղէմ, և նաւեալ ի Պոնտոս, և հռչակաւորն ի Կոստանդնուպաւլիս, ի մեծն յԱսիայ և յԱտտալիայ, ի Կիպրոս և յԱղեքսանդրիայ, ի յԵգիպտոս, և ի վայրաբնակ անապատաւոր սուրբ հարսն, որ ի նմա։ Եւ դիմեալ գայ յԵրուսաղէմ՝ յերկրպագութիւն աստուածընկալ սուրբ գերեզմանին Քրիստոսի և ամենայն տնաւրինականացն, որ ի նմա և որ զնովաւ։ Եւ անտի հասեալ յառաքելական յաթոռն Հայոց ի մայրաքաղաքն Սիս, ի յողջոյն սուրբ կաթուղիկոսին Հայոց տեառն Պաւղոսի, ի յերկրպագութիւն շնորհաբաշխ աջոյն մեր սուրբ լուսաւորչին Գրիգորի։ Ապա ի խոյզ և ի խնդիր եղեալ վասն յիշատակի ստացական աստուածաշունչ գրոց, հանդիպի սուրբ Աւետարանիս. եւ տեսանէ խախտեալ ի կազմէ և պակասեալ ի կարգէ, ստանա զսա ի հալալ ընչից իւրոց և բերէ յաշխարհս մեր, և հասանէ ի գերահռչակ ուխտս, որ կոչի Սանահին: Եւ ետ կրկին նորոգել ձեռամբ մեղապարտ Յոհաննիսի, զպակասն գրել և զթերին լնուլ և կազմել, յիշատակ հոգւոյ իւրոյ և ծնողաց իւրոց…։

Արդ, ես՝ անարժանս ի կարգաւորաց Յոհանէս՝ փակակալ և սպասաւոր սուրբ Աստուածածնիս Սանահնու, որ ի յայն ժամանակէն մինչև ի յայս ժամանակս, որ ծերացեալ եմ ու ի դուռն գերեզմանին հասեալ, վկայ եմ Աւետարանիս, որ հրամանաւ Ստեփանոս վարդապետին զպակասութիւն Աւետարանիս գրել եմ ու կազմել։ Միրանշէն ի մեր վանիցս, որ էր սան և յորդեգիր յաւազանէն. Վարդապետն ու Սարգիս աբեղայն թողին Աւետարանս մաւտ ի Միրանշէն և ի սանամայրն իւրեանց, և ինքեանք գնացին յայլ և յայլ տեղիս՝ վախճանեցան…։ Արդ, ես՝ Միրանշէս՝ ծառայ սուրբ Աստուածածնիս և իմ մայրն Ոսկեհատ ընծայեցաք զսուրբ Աւետարանս սուրբ Աստուածածնիս և իւր միաբանիցս, զի և մեզ եղիցի մասն յիշատակի ի փրկութիւն հոգւոց մերոց և թողութիւն մեղաց, և պապուն իմոյ Կիրակոսի,* և հաւրն իմոյ Դաւթին…։ Եւ էր թուականս Հայոց ՋԹ. (1460)։

* Մ.Տ.Մ.-ի մոտ մեքենագրված է «Կիրաէորի» (՞)։

## 172

### ԳԱՆՁԱՐԱՆ

*Երևան 8188*

*հետ. ստացող՝* Սիմէոն
*վայր՝* Բջնի

388ա ... *Գրեցաւ յիշատա[կա]րան եղանակաւոր տառիս, որ կոչի Գանձարան, ի թվականիս Հայոց ՋԹ. (1460), ի հայրապետութեան տեառն* Գրիգորի՝ *ի* Վաղարշապատ *քաղաքի, և յեպիսկոպոսութեանն տէր* Ըռստակիսի, *և ի ղանութեանն* Ջհանշահի, *որդւոյ* Յուսուֆի, *որ նա տիրեաց բազում գաւառի, և* Սիմէոն *քահանայ յարհիական յաթոռն* Բջնոյ, *[և յառաջնորդութեան պարոն* Սարգսին]*. *գնեցի զսուրբ Գանձարանս ի հալալ արդեանց իմոց, յիշատակ [ինձ] և ծնողաց իմոց, հաւրն իմոյ՝ ///*** և մաւրն իմոյ՝* Նրջիսին *և ամ[ուս]նոյն՝* Շահանդուխտին *և /// զաւակացն* Սամուէլին *և ///* Ազիզբէկին, *և զփոխեց[ելո՞ցն]։ Եւ զհարազատ եղբ[աւր ///****

## 173

### ՃԱՇՈՑ ՏԱՐԱՆ

*Փիրդ. Նաս. 193, Բաբերդ*

*գրիչ՝* Վարդան
*վայր՝* Աղջոց վանք

... *Որում ցանկացող եղև աստուածասէր և հոգևոր այրն* Ստեփաննոս ... *որ ստացաւ ի հալալ գանձուց և յարդար վաստակոց իւրոց զսուրբ և զաստուածաշունչ Աւետարանս և ետ զսա ի գեղաքաղաքն* Գառնի, *ի դուռն սուրբ Կաթուղիկէ եկեղեցւոյ, անջինջ յիշատակ իւրն և ամենայն արեանառու մերձաւորացն...։*

*Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի թուականութեանս Հայոց ՋԹ. (1460), ի հայրապետութեան տեառն տէր* Գրիգորի, *ի յաթոռ սուրբ Էջմիածնի, և ի ղանութեան* Ջահանշահի՝ *որդոյ* Յուսուֆի, *որ գնաց ի* Հրէ *երկու հարիւր հազար հեծելով. և եօթն տարի անդ կացեալ, և ի դուրս եկեալ բազում աւարաւ։ Գրեալ ձեռամբ յոգնամեղ և անարհեստ գրչի* Վարդան *աբեղայի, այլ խաբեբայ և ոչ աբեղայ, ի գառն և ի նեղութեան ժամանակի, որ երբեռն և տատանեալ ազգս Հայոց ի ձեռն այլազգեաց անօրինաց և յանիրաւ պահանջողաց. ի վանքս* Աղջոց, *ընդ հովանեաւ սուրբ Ստեփանոս նահատակիս, և հրաշափառ սուրբ Կաթուղիկէ եկեղեցւոյս, և սուրբ Աստուածածնիս, և ամենայն սրբոցս, որ աստ հաւաքեալ կան։*

---

* *Փակագծի մեջ առնված նախադասությունը գրված է ներքին լուսանցքում, հատուկ նշանով ցույց է տրված նրա տեղը «Բջնոյ» բառից հետո։*

** *Այս տողից սկսած էջի աջ եզրը մաշվել և պատռվել է, որոշ բառեր մնում են անվերծանելի։*

*** *Հաջորդ՝ 388բ էջը մաշված ու խունացած է ավելի քան 388ա-ն, կարդացվում են ստացողի բազմաթիվ ազգականների անունները, սակայն բառերի մի զգալի մասը մնում է անվերծանելի, ուստի և չենք հրատարակում։*

## 174

### ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

*Երևան 6261*

ա

*գրիչ՝* Խաչատուր
*վայր՝* Արարատեան գաւառ, Ուրծ գիւղ

635ա ... *Արդ, գրեցաւ ձեռամբ մեղապարտ և անիմաստ փծուն գրչի* Խաչա-
տուր *բազմամեղ քահանայի, ի թվաբերութեանս հայկազեան տումարի*
*Ջ. և Թ. (1460), ի գաւառս* Արարադեան, *ի գեաւղս* Ուրծ *կոչեցեալ, ընդ*
*հովանեաւ սուրբ Աստուածածնին, ի հայրապետութեան տեառն* Գրիգորի
*զարդարեալ ամենայն առաքինութեամբ և իմաստութեամբ՝ ի յաթոռ սուրբ*
Էջմիածնի, *և յաշխարհակալութեանն* Ջահանշանի, *որ տիրեաց բազում*
*աշխարհի և գաւառի՝ բռնութեամբ և իւրովի կամաւք, մինչև ի* Խորասան,
*բազում աւար, ի տառապանս, ի սուր և ի գերութիւն մաշեաց։ Ի խնդրոյ*
635բ *սրբասէր և իմաս||տուն կրաւնաւորի* Մելքիսեթի, *զի ստացաւ զսա առ ի*
*վայելումն անձին և յիշատակ հոգոյ իւրոյ, և ծնաւղաց իւրոց* Դուգորին *և*
Սիրմին, *և քուերցն* Թանկսուդին *և* Թամիկին: *Արդ, աղաչեմ զամենե-*
*սեան, որք պատահիք յիշեսջիք ջերմեռանդ սրտիւք և քաղցրագութ կա-*
*մաւքս, անմոռաց մտաւք, և աստուածահաշտ աղաւթիւք, և արտասուա-*
*գոչ հայցմամբ ի հեշտալուր և անոխակալ և անյիշաչար տեառնէն, զի*
*ողորմեսցի և գթասցի և թողցէ զամենայն յանցանս նոցա, ամէն։*
*Այլ և աղաչեմ զձեզ յիշել ի սուրբ յաղաւթս ձեր* զԽաչատուր *անպի-*
*տան գրիչս և զծնաւղսն իմ՝ զհայրն իմ* Յորդանան *և զմայրն իմ* Աղութ:
*Եւ ինքն, որ ողորմածն է և առատ ի շնորհս պարգևաց առհասարակ ողոր-*
*մեսցի ձեզ՝ յիշողացդ և մեզ՝ յիշեցելոցս, ամէն։*

բ

*ստացող՝* Մելքիսէթ

635բ *Դարձեալ, ես՝* Մելքիսէթ *սոսկ աբեղայս թափուրս յամենայնի՝ կրկին*
*անգամ պաղատիմ և յոգնաթախանձ հառաչմամբ աղաչանաւք աղերսեմ*
*զհանդիպողսդ այսմ սուրբ տառիս լսել աղաչանաց մերոց։ Զի բազում*
*տառապանաւք և չարչարանաւք աշխատեցայ ի շինումն սուրբ վանիցս*
Էրէրան, *և յաւժարութեամբ ոգւոյ և միամտութեամբ սրտի շինեցի զժա-*
*մատունս, և զկրկին գաւիթս, և զերկու տնտեսատունս՝ ամառան և ձմեռան,*
*և այլ բազում հոգաբարձութեամբ աշխատեցայ ի տուն և ի դուռն, ի յան-*
*դաստան և ի վախմըն. ըստ կարողութեան անձին մերում նորոգեցաք*
*զվանքս և շնորհազարդ զարդարեցաք զեկեղեցիս սգեստիւք պատարա-*
*գաց, նաև մանկամբք սուրբ Սիոնի, զոր տէր աստուած ի կամս իւր պա-*
*հեսցէ, ամէն։ Նայ և ի բազում ամաց փափագեալ կայի վասն սուրբ տա-*
*ռիս այսորիկ, որ կոչի Այսմաւուրք։ Եւ ետու ծրագրել զամենայն աւուր*
*պատշաճ զտաւնից տէրունականաց նաև զպահոց և զուտեաց, և ղամե-*
636ա *նայն սուրբ և բազմաչարչար արեամբ ներկեալ || սրբոց առաքելոց, մար-*
*գարէից, վարդապետաց, հայրապետաց, մարտիրոսաց, ճգնաւորաց, կու-*

սանաց, միանձանց և զամենայն սրբոց՝ երկնաւորաց և երկրաւորաց՝ առ ի բարեխաւսութիւն անձանց և ի փրկութիւն հոգոց մերոց։ Եւ մատուցի ղփափագելի աղերսս զայսոսիկ և ետու ընծայ սեփհական ի սուրբ վանքս էրէրան կոչեցեալ, ի դուռն սուրբ Աստուածածնիս, և սուրբ Գէորգիս, և այլ բաղում սուրբ նշանացս և սբբոցս, որ աստ կան, յիշատակ ինձ, և ծնաւղաց իմոց՝ հաւրն իմոյ Գուգորին և մաւրն իմոյ Միրմին, և վարպետին իմոյ տէր Սարգսին՝ մեր երախտաւորին, եղբաւրն իմոյ Տիրացուին, և քվերցն իմոց Թանկսուդին և Թամիկին, և ամենայն արեան մերձաւորաց իմոց՝ կենդանեացն և մեռելոց։

Եւ յընթեռնուլն զգիրս ի պատշաճ աւուրն՝ ի բարեխաւս առ աստուած, առ ի փրկութիւն յուսողացս։ Զգուշութեամբ պահեսցեն զգիրքս և զամենայն անաւթք եկեղեցոյս. և միոյն հազարապատիկ յաստուծոյ առցեն զվարձս։ Եւ ի յետ մեր, թէ ոք ի մերոց կամ յաւտարաց, ի կարգաւորաց, կամ յաշխարհականաց, կամ յիշխանաց հակառակի կամ հանել շանայ զսուրբ տառս զայս ի դրանէ սուրբ Աստուածածնիս և սուրբ Գէորգիս նոցա ղանիմ եղիցին ամենայն սուրբքս, որ ի սմա յիշատակեալ են, և սուրբ աստուածածինն և որդին իւր միածին, և մասն և բաժին զխաչահանուացն առցեն։ Եւ միամիտ ծառայողքն սուրբ եկեղեցոյս և հաւատարիմ պահողքն սուրբ գրոցս և ամենայն ընչից եկեղեցոյս՝ ողորմութիւն յաստուծոյ պարգևեսցի նոցա ամենայն սրբոց բարեխաւսութեամբ, որ ի սուրբ տառս յիշատակեալ են, ամէն։

Այլ և հառաչմամբ մաղթեմ զընթերցողսդ սուրբ տառիս, զի յամենայն ամի յաւարտման սուրբ գրոցս ըստ պատշաճի ասել անբիծք՝ Երանի որում թողութիւն եղև մեղաց, Աւետարան և Քրիստոս որդի աստուծոյ, և մեր մեղացն թողութիւն հայցել ի յաստուծոյ, ամէն...։

|!|| : ;||| ||| |||| !|| :||| ' ; | : ||| | |||| : || || : |||| |||| | : ' · ||

բա'''գմճ'' մծ''ճծ ծ''ճծե''ղ|բր' ||' արց

Ամէ՜ն, տէր աստուած օ[գնեա՛].
վ շ ա դ պ մ բ չ ի դ է ի բ ա ա (ա դ գ ս)։*

## 175

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 279

գրիչ՝ Զաքարայ
վայր՝ Հերմոնի վանք

335բ ... Եւ արդ, գրեցաւ սա ի թուաբերութեանս Հայոց Ջ. հարիւր և Թ. (1460) ամի, ձեռամբ սուտանուն Զաքարի, ի թագաւորութեան Ջըհանշա–

* Ծածկագիր այս գրությունը, որի վերջին տողը գրված է կարմիր թանաքով, մեզ չհաջողվեց վերծանել։

Վերջին տողի փակագծի մեջ առած տառերի վերծանումը կասկածելի է։

յիս, ի հայրապետութեան տէր Գրիգորի, ի սուրբ մենաստանս Հերմոնի վանք, ի առաջնորդութեան Սարգիս վարդապետի, ընդ հովանեաւ Լուսաւորչիս մերոյ, և սուրբ Յակովբիս՝ կենաց բար[ե]խաւսի, և սուրբ Ստեփանոսիս, և սուրբ Յովաննիսիս, և այլ սուրբ նշանացս, և նշխարացս սուրբ Հերմոն ճգնաւորի, և սուրբ վարդապետացս, որք աստ հանգուցեալ կան. առ Քրիստոս բարեխաւս ունիմք փրկել ի փորձութենէ սատանայի։

333ա Այլ և ստացաւղ եղեալ սուրբ Աւետարանիս բարեսէր կինն* վասն հոգւոյ իւրոյ և առն Մխիթա[րա]յ ժամկոչի, ի յալալ յընչից իւրոց ետ, և ետ զսա ի Մելքիսէթ քահանայն վասն իւրոյ յիշատակի աստ և ի հանդերձելումն։

Եւ Աւետարանիս թու[ղ]թն Սամուէլին էր, վասն յիշատակի հոգւոյ նորա գրեցաք զսուրբ Աւետարանս. ով որ կարդայք կամ տեսանէք՝ աստուած ողորմի [աս]ացէք Սամուէլ մահդասին, յիշատակ բարի առաջի աստուծոյ յետ աստի կենացս՝ յաւուրն համառաւտի ի տիեզերաժողով ատենին։

Արդ, որք ընթեռնուք և կամ աւրինակէք յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զստացող սուրբ Աւետարանիս, և զաշխատող սորա, և զհամշիրակ եղբարքս մեր։ Այլ և յիշեցէք ի Քրիստոս Յիսուս զմեղուցեալ ոգի
336բ գրիչ Զաքարայ և զծնաւղսն իմ և թողութիւն մեղ||աց շնորհեցէք։

Եւ Քրիստոս աստուած ձեզ թողցէ զանցանս ձեր՝ զընթերցողացդ և զլսողացդ, ամէն։

Այլ և խոշորանաց և սղալանաց անմեղադիր լերուք վասն սղալութեան մտաց և տկարութեան մարմնոյս. շնարհաւք տեառն սկսաք և ողորմութեամբն նորին աւարտեցաք զամենայն ցանկն և զհամբարբառքն լիով անուամբն տեառն աստուծոյ մերոյ։

## 176

## ԱՒԵՏԱՐԱՆ

**Երևան 6316**

**ա**

գրիչ՝ Մաթէոս
վայր՝ Եղեգեաց Երկիր, Եղուձոր

189ա ... Կամաւ բարերարին աստուծոյ և ողորմութեամբ նորին կատարեցաւ համազաւր տառս աստուածային սուրբ ծաղկազարդ Աւետարանս ձեռամբ մեղապարտ և անպիտան գրչի Մաթէոս կոչեցեալ քահանայի, ի յերկիրս Եղեգեց, ի գեղս Եղուձոր, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին, ի թվականութիւնս Հայոց ՋԹ. (1460), ի հայրապետութիւն տեառն Գրիգորի, ի խանութիւն Ջհանշին:

Ո՜, դասք լուսերամից և առաջնորդք բանաւոր հաւտի, աղերսաւք աղաչեմ զձեզ, յիշեսջիք ի մաքրափայլ և ի մեղսաքաւիչ աղաւթս ձեր զգրողս սուրբ Աւետարանիս՝ զՄաթէոս Շրվանեցիս, և զհայրն իմ զՄարգարէ

* Երկու տող դատարկ է թողնված ստացողի անունը լրացնելու համար։

քահանայ, և զմայրն իմ Ազիզն, և յիշողքդ յիշեալ լիջիք ի Քրիստոս աստուած, ամէն։

Որք աստուածային սիրոյն փափագողք եղեն, նոյնպէս ի սէր սուրբ հոգոյն բորբոքեալ ցանկան ի տուէ և ի գիշերի, որ և ցանկացող եղև այս սուրբ Աւետարանիս երջանիկ և պատուական քահանայ տէր Զաքարայ՝
189բ և ետ || գրել զսայ բազում փափա[գա]նաւք ի հալալ ընչից իւրոց յիշատակ իւր և ծնաւղաց իւրոց, զի աստուած վայելել տացէ, ամէն։

## Բ

ծաղկող՝ Յակոբ

... Ընդ նմին և զիս՝ զսակաւ աշխատողս զՅակոբս, որ անուամ[բ]ս միայն եմ արեղա և ոչ գործով, զոր [ըստ] կար[ի] իմում նկարեցի և կազմեցի՝ յիշեցէք ի մաքրայփայլ և ի մեղսաքաւիչ յաղաւթս ձեր...։

## 177

## ՃԱՇՈՑ

Երևան 982

գրիչ՝ Յովանէս
վայր՝ Արծկէ քաղաք

531ա ... Եւ արդ, գրեցաւ սա ի քաղաքս Արծկէ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի տաճարիս և սուրբ Ստեփանոսի, ձեռամբ անարժան և մեղսամած գրչի Յովանէսի, ի թվականիս մերում Ջ. և Թ. (1460) ամի, ի թագաւորութեան Ջհանշայի, որդւոյ Ղարայ-Իւսուֆի, և ի հայրապետութեան տեառն Զաքարիայի*, ընդհանիւր Հայոց կաթողիկոսի և պատրիարգ Վաղարշապատու էջմիածնի՝ աթոռակալի սուրբ լուսաւորչին մերոյ Գրիգորի, ի վշտաշատ ժաման<ան>ակիս, յորում շարժեալ են ի վերայ քրիստոնէից անհնարին վիշտ և տառապանք յազգաց անաւրինաց՝ հարկապահանջութիւնք, և ես՝ անպիտան գծաւղս Յովանէս, տեսի զփափագ Ստեփանոս մուղդասուն, զոր ունէր հետ սուրբ գրոցս, սկիզբն արարի և շնորհաւքն Քրիստոսի աւարտեցի։

Եւ արդ, կրկին անգամ աղաչեմ յիշեցէք ի Քրիստոս զստացող գրոցս զՍտեփանոս և զծնաւղսն իւր, և զհոգևոր հայր իւր զտէր Թադէոս Կաֆացին, որ ի գնալն յԵրուսաղէմ || ի ծովու ընկղմեցաւ։ Եւ աղաչեմ յիշել ի
531բ տէր աստուած զանյազթ նկարող սորա զտէր Մինաս սրբասնեալ կրօնաւորն՝ զքաղցրատեսն և զհեզահոգին, զողորմածն և զաղքատասէրն և զամենայն առաքինութեամբ զարդարեալն, որ յար և նման է Աղդէ կերպասագործին, որ և Դ. (4) տարի եղբայրական սիրով նախախնամեաց զմեզ ի յԱղթամար կղզիս։ Եւ զիս զանպիտան գրիչս Յովանէս յիշեցէք ի Քրիստոս, և զծնօղսն իմ զՅակոբ քահանայն և զՍալչուկ-Խաթունն, և զհարազատ եղբարքն իմ զԳրիգոր սրբասնեալ կրօնաւոր և զՅոհանէս և զՆէր-

* «Զաքարիա» անունը գրված է կարմիր թանաքով։

ուէս՝ լի շնորհաւք սարկաւագունք, որ տարաժամ կենաւք փոխեցան յաշխարհէս և սուգ անմխիթար թողին ծնօղաց մերոց։ Այլ և զՅակոբ պատանեակն իմ, որ աշխատեցաւ ի կոկել թղթիս...։

532բ Եւ արդ, ես՝ ունայնս և թափուրս յամենայն բարեմասնութեան և տարագրեալս յարդարութենէ, ծառայս ծառայից աստուծոյ սուտանուն Ղարիպշայ մաղդասի*,

Որ ղձեւ ունիմ միակեցի
Եւ ի գործոցն եմ խիստ հեռի,
Զսրբութիւնն ես ատեցի,
Զաղտեղութիւնըն սիրեցի,
Ի յաղօթից ես ծոյլ կացի
Եւ քնով մեղացն դանդաղեցի,
Զպահքն և ղաղաւթքն ես ատեցի,
Զամէն զմարմինս պարարեցի,
Զպատուիրան տեառն չըպահեցի
Եւ յանօրէն գործի կացի,
Զարութեամբ տուն շինեցի
Տանէն աստուծոյ ի զատ կացի,
Մարմնովս ի չարն թաղծեալ էի
Եւ զհոգիս սևացուցի,
Աւր մի չկացի ի պատուիրանի
Եւ ի չարն փոյթ էի,
Մեղա չասցի տեառն արա[ր]չի՝
Ըզսատանի կամքն արի,
Անթիւ չարիս ես գործեցի,
Որ անհամար 'ւ անասելի։
Ինձ վայ 'ւ եղուկ հազար բերան,
Որ գործ բարի ես չունէի,
Ի՞նչ տի լինիմ յաներեկի,
Որ տէրն գայ ամենայնի.
Փողն գոչէ Գաբրիէլի
Եւ փտեալ մարմինքըն նորոգի,
Երթան, ժողվին կալն Ուռնայի,
Որ մին չմնայ ի յայլ տեղի։
Յայնժամ արդար կշիռ դրնի,
Որ մին զմին ոչ կաշառի,
Տէրն բազմի ամբաւք յերկնի
Հանց, որ երկինք թափուր լինի։
Տէրն ձայնէ արդար հոգոցն՝
Ե՛կ բարեկամք և սիրելի,

* Ստացող Ստեփանոսի աշխարհական անունն է։ Այս Ղարիպշան, մի քանի տարի հետո (Աղթամարի Ստեփանոս կաթողիկոսի աթոռակալության սկզբին), ձեռագիրը նվիրում է Աղթամարի վանքին։ Նվիրաբերական այդ հիշատակարանը տե՛ս 1465 թ. տակ։

*Սրբոցն հրեղէն կառք պատրաստի*
*Եւ լուսեղէն թագ ի գլխի,*
*Հրեշտակք ամէն ապշեալ մնան*
*Ընդ յարդարոց փառքն, որ տըւան։*
*Երանի արդար հոգոցն,*
*Որ արարչին են սիրական.*
*Մեք ի լուսոյ հրեշտակ ստեղծան*
*Այլ և ծառայ անւանեցան*
*Նոքա հողոյ դարձեալ ստեղծան,*
*Այլ և որդիք անւանեցան,*
*Նոցա երանի հազար բերան։*
*Որք ընթեռնուք ըզսա յարկի*
*Եւ ի յանկիւն սուրբ տաճարի՝*
*Ասցէք միով տէր ողորմի,*
*Եթէ աստուած իւրն ողորմի*
*Եւ ծընաւլացն ամենայնի,*
*Որ են գնացեալ առ Քրիստոսի*
*Եւ կենդանեացն, որ են յերկրի,*
*Անփորձ մնան ի յաշխարհի։*

532բ *Յերես անկեալ աղաչեմք զսրբութիւնդ ձեր, ո՜վ լուսերամ կուսից և քահանայից, որ անտես չառնէք զյիշատակս իմ, որ յամէն տարի զյիշատակարանս կարդաք և զամբիծքն ասէք, ու թէ չըմեղանաք նայ ի տարին ինձ պատարագ մի առնէք...**։

*Եւ որք հանդիպիք այսմ լուսազարդ և վարդափթիթ բուրաստանիս կարդալով և կամ աւրինակելով լի բերանով և ուղիղ մտաւք աստուած-ողորմի ասացէք* Ղարիպշայ, *որ է* Սաեփաեոս *մաղդասուն, և բարի ծնաւղացն, որպէս ծառայ բարի պտուղ բարի առնէ, և եղբարցն, և մօրքըւերն* Գօճար-Մէլէքին *և* Նիգար-Փաշին, *և Բ. (2) որդոցն՝* Փալօշին, *որ յայսմ ամի փոխեցաւ առ աստուած, և* Ջաfարին, *որ Զ. (6) ամաւ յառաջ սպանաւ ի յընկերէ իւրմէ, որպէս զԱբել ի Կայենէ, և թողին զսուք անմխիթար ծերացեալ ծնօղին և մեզ՝ ազգայկանացս։ Եւ դարձեալ, աղաչեմ յիշել ի տէր զհարազատ եղբայրն իմ* զԽըդըրշէն, *և զկենակիցն իւր* զԱզիզ-Մէլէf, *և զդեռաբոյս որդիքն իւր՝* զԱստուածատուր *և* զՅովանէս , *և զդստերքն* Գուլfան-Խաթուն *և* զՄամա-Խաթուն, *և զփեսայն իմ* զԱստուածատուր, *և*
533ա *զծաղկեալ որդին իւր* զԽուդաքախշ, *յիշե||ցէք և աստուած-ողորմի ասացէք։ Եւ աղաչեմ յիշել ի տէր զսանահայրն մեր* զԳոլով Կարապետն, *և զկենակիցն իւր* զԳօճար-Մէլիf, *և զԲ. (2) բարի զաւակ որդիքն՝* զՅովանէս *և* զՄլեամ *յիշեցէք և աստուած-ողորմի ասացէք, որ Դ. (4) տարի նախախնամեաց զմեզ յաստուածապահ կղզիս* Աղթամար։ *Եւ ինքն որ տէրն է բարեաց ձեզ՝ յիշողացդ ողորմեսցի և մեզ՝ յիշեցելոցս ի սմա, կրկին կենօք և Բ. (2) աշխարհօք, և դուք յիշեալ լիջիք յարհնութեան պահոյն, ամէն։*

* *Յիշատակարանի այս ընգարձակ հատվածը (ոտանավորի հետ միասին), ստացող Ղարիպշայ-Ստեփանոսի անունից գրել է նույն Յովանէս գրիչը։*

## 178

### *ՈՍԿԵՓՈՐԻԿ*

***Մ. Աթոռ 68, «Էջմիածին», 1951 թ. սեպտեմբեր—հոկտեմբեր, էջ 83 - 84***

*գրիչ*՝ Ատոմ
*վայր*՝ Արծկէ

ա

368բ *Փառք... որ [ետ] կարողութիւն հասանել [յ]աւար[տ] գիծ Ոսկէփոր տառիս, ի քաղաքս որ կոչի* Արծկէ, *ըն[դ] հովանեաւ սուրբ Աստուածածնին և Պատերազմի սուրբ Նշանին, նա[խա]վկայ սուրբ Ստեփանոսին և ա[մենա]հրաշ սուրբ Սքանչելագործին, յառաջնորդութիւն երջան[իկ կաթողիկոսին՞] Հայոց տէր* Գրիգորի *և* Զաք[ա]րիայի, *յաշխարհակալութ[իւն] և ի տիրութիւն Թաղթին ի* Ջըհ[անշ]աշա *իմիրղին, ի խնդրոյ պատուական* Ատոմ *քահանային, և ծնո[ղ]ացն՝* Ստեփանոսին *և* Գաւհարին, *և եղբարցն* Յովանիսին *և* Սանակին, Ուսլումելիքին, *և ծնողացն՝* Իկդիշին *և* Կիրակոսի[ն], *և* Յովսէփին... *որ ետ մեծաւ փափագանաւք և տարփալի ցանկութեամբ գրել զսա յիշատակ իւր և ծնողաց [իւ]րոց։ Եւ ես՝ ամենամեղ և սխալամիտ գծողս* Ատոմ *սո[սո անուն] քահանայ տեսի զփափագս [նորա, և] տկար անձամբ ի գրել սկ[սայ], և ըստ իմում կարի յանկ [համի] և ի յաւարտ ածի շնորհաւք ո[զոր]մութեան Քրիստոսի։*

*Եւ արդ, գրե[ցաւ] սա ձեռամբ նոյն ախմա[ր և փ]ծուն գրչի* Ատոմի, *Ջ.* և Թ. Թըւականիս [Հայոց] տոմարի (1460)։*

Բ

368բ *... Յիշեցէք ի միտս բարիս ... ստացող Ոսկեփոր տառիս [*Ա*]*տոմ *քահանայն, և զկողակիցն զ*Ուս[լո]ւն, *և զորդին իւրեանց զ*Եղև *///, որ տարաժամ մահուամբ փոխեցաւ ի Քրիստոս...։*

*Եւ արդ, ես՝ տրուպս ի կարգաւորաց և յետինս ի գրչաց անուամբս* Ատոմ *կոչիմ և Թըմբրեալս ի մեղաց և անընդոստ մրափած, մեծաւ յաւժարութեամբ գրեցի զսա յիշատակ* Ատոմ *քահանային, և կողակցին* Ուսլումելիքին, *և ծնողացն* Ստեփանոսին *և* Գաւհարին, *և զաւակացն* Յովանիսին *և* Սանակին, *և հաւրեղբարցն* Կիրակոսին *և* Թորոսին, *և որդոցն* Մարտիրոսին *և* Մխիթար *քահանային,, և ծերունին մեծ մայրն՝ զ*Շնոհւորն, *և զպապիկն՝ զ*Սուլտան:

*Դարձեալ աղաչեմ յիշել ի տէր զեղբայրն իմ զ*Ներսէս *և զ*Յակոբ, *և զքոյրն զ*Եղիսաբէդ, *որ տարաժամ մահւամբ փոխեցեալ են ի Քրիստոս...։*

*Արդ, աղաչեմ զձեզ սուրբ մանկունք եկեղեցւոյ, յիշեցէք յաղաւթս ձեր զբազմամեղ և զփծուն գրիչս զ*Ատոմ, *և զծնաւղսն իմ զ*Մկրտիչ *և զ*Խաթունբեկ, *և զհոգևոր հայրն իմ զ*Կարապետ *կրաւնաւորն, և զմահդասի* Թումայ *քահանայն, և զծնաւղսն նոցին՝ զ*Խաչատուր *և զ*Աղբրաց, *և զեղբայրսն իմ զ*Քարամ *և զ*Տիրացու *և զ*Մուսէս*՝ փոխեցեալն ի Քրիստոս, և*

* *Տպված է «Ջ»։*

զկողակիցն իմ զՇիրին, և զդեռաբոյս պատանեակն իմ զՅակոբ, և զԹուրւանդա քուրն իմ, և ղուսուցողս և զխրատիչս մե[ր] յիշեցէք ի Քրիստոս և լի բերանով աստուած-ո[ղ]որմի ասացէք, և աստուած ձեզ ողորմ[ի] յաւուրն ահ[եղ դատաստանին///*

## 179

## ԱՐԻԵՏԱՐԱՆ

**Ն. Ջուղա, 529, Ս.Տ.Ա. և Մ.Տ.Մ.**

գրիչ՝ Դանիէլ
վայր՝ Արծկէ

312 Փառք... որոյ ցանկացող եղեալ բարեմիտ և ողջախոհ քահանէն Սարգիս և ստացաւ զսա ի վայելումն անձին իւրոյ... յիշատակ իւրն, և բարի ծնաւղաց իւրոց Յովանիսին և Մարիանին, և մեծ մաւրն Թամարին, որ բազում աշխատութեամբ սնոյց զնոսա, և քւերն Դոնդիշին։ Եւ արդ, գրեցաւ սա ի քաղաքս Արծկէ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին և սրբոյն Ստեփաննոսի Նախավկային, ձեռամբ յոգնամեղ և անիմաստ գրչի Դանիէլ պիտակ անուն քահանայի, որ վեց գրիւ անունս կոչի՝ Դան առաջին և Լուն վերջի։ Յամի Չ. և Թ. (1460) թըսական[ի], ի պատրիարգութեան Վաղարշապատու տեառն Զաքարիայի, և ի հայրապետութեան մերոյս նահանգիս տէր Մինաս արհիեպիսկոպոսի, զոր աստուած պահէ անփորձ։ Եւ ի ղանութեանն Ջըհանշանի՝ որդոյ Ղարա-Ուսուփի, որում ամի ցանկացող եղեալ... քահանէն Սարգիս... յիշատակ ծնողաց իւրոց Յովանիսին և Մարիանին, և մօրն Թամարին, և քըւերն ապաշխարող Դոնդիշին, և զաւակացն Մանուէլին և Դանիէլին...։ Զմեղապարտ Դանիէլ գծողս յիշեցէք ի Քրիստոս և զորդի իմ զՄովսէս դպիր։

## 180

## ԱՐԻԵՏԱՐԱՆ

**Երևան 4850**

ա

գրիչ՝ Միքայէլ
վայր՝ Արծկէ

290ա ... Եւ արդ, գրեցաւ սա ի քաղաքս Արծկէ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի տաճարին, և Նախավկայ սուրբ Ստեփանոսի, և Գէորգա զաւրավարին, ձեռամբ յոգնամեղ և փծուն գրչի Միքայէլ սուտանուն քահանայի, ի թուականութեանս Հայոց ի Չ. և ինն (1460) ամի, ի հայրապետութեանն տեառն Գրիգորի և յառաջնորդութիւն սուրբ ուխտիս սքանչելագործի Մինաս արքեպիսկոպոսի։ Եւ որք հանդիպիք սմա կարդալով կամ աւրինակ դնելով յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զստացող սուրբ Աւետարանիս զՍտեփանոս միակեցն, և զծնաւղսն իւր, և զամենայն

* Բացի դրանցից ձեռագրում կան մի շարք մանր հիշատակագրություններ, որոնցում գրիչը խնդրում է հիշել ստացողին և իրեն։

ազգականս իւր. և լի բերանով աստուած-ողորմի ասացէք և մեղաց թողութիւն խնդրեցէք Ստեփանոսին, և աստուած ձեզ ողորմի, ամէն։

Եւ զբազմամեղ գրիչս յիշեցէք ի Քրիստոս, և զծնաւղսն իմ զՅոհանէս քահանայն, և զմայրն իմ զԱզիզ-Մէլիքն, և զքորքն իմ, և զերկու որդիսն իմ՝ զՅովանէսն և զՅովհանէսն՝ փոխեցեալ ի Քրիստոս, և զամենայն արեան մերձաւորսն իմ, և լի բերանով աստուած-ողորմի ասացէք, ամէն։

Դարձեալ, յիշեցէք ի Քրիստոս աստուած զհոգեւոր հայր մեր և զուսուցիչն զՍտեփանոս վարդապետն և զեղբարսն իւր և զծնաւղսն իւր. և աստուած-ողորմի ասացէք նացա ամէնքդ։

Եւ զԴանիէլ քահանայն յիշեցէք ի Քրիստոս, և զծնօղսն իւր, և զեղբարսն իւր, և լի բերանով աստուած-ողորմի ասացէք, որ զօրինակն շնորհեց, և զչաղցրպան Աղուպն յիշեցէք ի Քրիստոս աստուած, որ զթանաքի գղթորն կու տէր, որ մենք կու գրէաք. աստուած զիւր մեղքն թողու, ամէն։

Աստուած-ողորմի թղթի կոկողին ասացէք, որ աշխատեցաւ ու զթուղթն կոկեց։

290ր Դարձեալ, յիշեցէք ի Քրիստոս զՄկրտիչ քահանայն, որ կամակից եղեւ սուրբ Աւետարանիս և յորդորեց զմիակեցն Ստեփանոս, և աստուած ողորմի ասացէք նոցա։

Բ

ստացող՝ Ստեփանոս

290բ Եւ արդ, ես ամենամեղ և յանցաւոր ծառայս աստուծոյ Ստեփանոսս ետու գծագրել զսուրբ Աւետարանս ի խոնջացեալ քրտանց և ի հալալ արդեանց իմոց. և ետու զսա նուէր և ընձայ Հաւատուորի և անապատին սուրբ Գէորգեա երկնանման տաճարիս, ի յառաջնորդութիւն սուրբ ուխտին Մարուգէ ճգնաւորին, որ շատ չարչարեցաւ և շինեաց զսուրբ ուխտս ի կորդէ և զսուրբ Գէորգ զաւրավարս. տացէ տէր աստուած զանձեռագործ խորանն և զերկնից արքայութիւնն իւրն, և ծնաւղացն իւրոց, և Ստեփանոս միակեցին, որ ստացաւղն է սուրբ Աւետարանիս, ամէն։

Եւ ես՝ Ստեփանոս ետու զսուրբ Աւետարանս Հաւատուորի վանաց դռան սուրբ Գէորգեա զաւրավարին, ի հայրապետութեան տեառն Զաքարիայի, որ յայսմ ամի տիրեաց Էջմիածնին և Լուսաւորչի սուրբ աջոյն։

Եւ մի ոք իշխեսցէ հեռացուցանել զսուրբ Աւետարանս ի սուրբ Գէորգեա դրանէն ծախելով կամ գրաւելով, գողանալով և կամ յափշտակելով։ Եւ ով ոք յանդըգնի և հանէ և կամ զյիշատակարանս կտրէ՝ զաւձի անէծքն և զԿայենին ժառանգէ և մասն և բաժին նորա ընդ Յուդայի և ընդ խաչահանուացն լիցի և ընդ սատանայի տանջի ի հուր գեհենին յաւր դատաստանին, ամէն և եղիցի։

Դարձեալ, յիշեցէք ի Քրիստոս զծաղկող սուրբ Աւետարանիս զՄուրատ սարկաւագ և զուսուցիչքն նորա և աստուած ձեզ ողորմեսցի յիւր միւսանգամ գալուստն, ամէն։

## 181

## ԱԻԵՏԱՐԱՆ

*Երևան 3494*

*գրիչ՝* Ստեփանոս
*վայր՝* Բաղէշ

248բ ... *Շնորհիւ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի սկսայ և ողորմութեամբ
նորին կատարեցի զսուրբ Աւետարանս, որ է բանն աստուածային և ամե-
նայն տնաւրէնութիւնն Քրիստոսի։ Եւ իմով տկարացեալ անձամբս՝ բազ-
մամեղ և սուտանուն քահանայ* Ստեփանոս *անմար գրիչ յանկ և յաւարտ
հանեալ զարդարեցի զսա գրով և ծաղկովն և կազմելով ի յայս գառն և ի
չար ժամանակիս, զոր անաւրէն ազգքն Իսմայէլի զաւրացեալ են ի վերայ
մեր, վասն ծովացեալ մեղաց մերոց, և բազում չարչարանաւք և նախա-
տանաւք նեղեն զտառապեալ ազգս քրիստոնէից, զոր տէր աստուած
հատուցէ նոցա։ Եւ արդ, դրեցաւ սա ի թվականիս Հայոց ՋԹ. (1460),
ի հայրապետութեան տեառն* Զաքարիայի, *և յեպիսկոպոսութիւն տէր* Յո-
վանէսի, *ի քաղաքս* Բաղէշ, *ընդ հովանեաւ սուրբ Սարգսի, և Գէորգեա զօ-
249ա րավարի, և Ստեփաննոս նախավկայի։ Ի խանու||թիւնն* Ջհանշա *ամիրզին
աւարտեցաւ սուրբ Աւետարանս...։*

249բ *...Զոր տեսեալ զգանձս աստուածային, որ է բանն աստուծոյ և խորհուրդ
մարդեղութեանն Քրիստոսի բարէպաշտ և հարկաւոր տանտիկինն* Ըղբիարն*,
և ետ գրել զսա յիշատակ բարի հոգւոյ իւրոյ և ամենայն ազգականաց իւ-
րոց՝ կենդանեաց և հանգուցելոց։*

*Արդ, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք սուրբ Աւետարանիս կար-
դալով, կամ տեսանելով, կամ աւրինակ դնելով՝ յիշեսջիք ի սուրբ և ի
մաքրափայլ յաղաւթս ձեր* զԸղբիարն, *և լիակատար բերանով աստուած-
ողորմի ասացէք* Ըղբիարին, *և ծնաւղաց նորին* Կիրակոսին *մականուն*
Փոլի, *և մաւրն* Սուլտան-Մելէքին, *և որդւոց նորին* Եգիհնբաղշին *և* Խուդա-
բաղշին *և* Աստուածատրուն*, *և կողակցին,* Քարիմադին *ոսկերչին և
ամենայն արեան ազգականաց, որք են կենդանի և որք առ աստուած
գնացին։*

250ա *Դարձեալ, աղաչեմ զհան||դիպողքդ, զի ուղիղ սրտիւ ի ժամ աղաւթից
լի բերանով աստուած-ողորմի ասէք* Ըղբիարին, *զի ոչ թէ յաւելածոյ ըն-
չից իւրոց գնեաց* զԱւետարանս, *այլ զկեանս իւր վաճառեաց, որպէս կինն
այրի, որ գնեաց զՔրիստոս, լինել բարեխաւս ահեղ դատաստանին և յա-
ւուր ոգէվարին, միթէ ողորմածն աստուած քաղցր ակնամբ հայի ի մեղա-
պարտ ծառայս՝* յԸղբիարս:

*Դարձեալ, աղաչեմ զամենեսեան յիշիսջիք ի Քրիստոս զանարժան
գրիչ* զՍտեփանոս *քահանայ և զմեր ծնողքն, և դուք յիշեալ լիջիք ի Քրիս-
տոս աստուած, և անմեղադիր լինել սխալանաց, զի այս էր կար մեր,
բայց ողորդաբանութիւնս ծածկէ զխոշորութիւն գրիս։*

*Գրեցաւ սա ի թվիս Հայոց ՋԹ. (1460), ի խանութիւն* Ջհանշին, *և ի*

---

* *Աստուածատուր անունը գրված է տողամիջում, այլ ձեռագրով։*

Հայրապետութիւն տէր Զաքարիայի Ախթամարցոյ, ի բարկութեան ժամանակիս, որ ի վեր քան զչափ նեղէին զքրիստոնեայսն։

Այլ և մնացէ սա ի դուռն սուրբ Կիրակոսին և մի ոք իշխեսցէ գրաւել և ծախել կամ գողանալ, և որ յանդգնի և ծախէ՝ զպատիժ զՈւդային առցէ և զԿայենի, բայց կացցէ ընդ իշխանութեամբ քահանայից՝ անչինչ յիշատակ։

## 182

## ԱՒԵՏԱՐԱՆ

**Երևան 5544**

գրիչ՝ Ներսէս
վայր՝ Աղթամար

... Եւ արդ, ես՝ յետինս ի գրչաց և անարժանս կրօնաւորաց՝ սուտանուն կրօնաւոր Ներսէս խաբեղայ... կատարեցի զսա մեղսամած մատամբս յաստուածաբնակ յաթոռս յԱղթամաւր, ընդ հովանեաւ ամենա-
318բ յաղթ || սուրբ Խաչիս և սուրբ աջերոյս, ի հայրապետութեան տեառն Զաքարիայի, ի թուականիս Հայոց ՋԹ. և Թ. (1460)։ Զոր և իմ անընդունակ գոլով յարուեստ գրչութեան... գծագրեցի զսա ի ստոյգ և յընտիր աւրինակէ կենաւք տառապանաւք և բազում տրտմութեամբ, ի դառն և ի վշտալից ժամանակիս, յորում կամք ընդ հարկի անօրինաց։

Արդ, որք ճաշակէք յաստուածային բուրաստանէս և յամենալի սեղանոյս, որք հանդիպիք սմա ընթերցմամբ կամ տեսութեամբ, յիշեսջիք յերկնագնաց յաղօթս ձեր զառաջի յիշեցեալսն [զստացողսն] սուրբ Աւետարանիս՝ զԹումէն, և զկողակիցն իւր զՆշխուն, և զաւակն իւրեանց զՍարգիս, և զՅուսէփ, զԿարապետ, և զդուստրն Հալիմ, և զաւակն զՍտեփանոսն, և
319ա զՄարտիրոսն, և զեղբայր Թումին՝ զՅովանէս, և զկողա||կիցն իւր, և զամենայն արեան մերձաւորսն նոցա, և լի բերանով աստուած-ողորմի ասացէք նոցա, ամէն։

Ընդ նոսին մեղաւորիս և ծնօղաց իմոց աստուած-ողորմի ասաըէք՝ հայրն իմոյ Գուոջիբէկին, և Էմնա-Խաթունին, և հարազատ եղբօրն իմոյ տէր Ստեփանոս սրբասնեալ կրօնաւորին, և ազգայնոցն մերոց ամենայնի՝ կենդանեացն և հանգուցելոցն առ Քրիստոս...։

Աղաչեմ յիշել ի Քրիստոս զհոգևոր մայրն իմ զՓայշայ-Խաթուն, և զծնօղսն իւր...։ Եւ յիշել ի տէր զէզդանըախշ սարկաւագն՝ զազգականն մեր՝ զկոկօղ թղթիս։

Բ

319բ Յերես անկեալ աղաչեմք զձեզ յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զտէր Խէրապետ քահանայն և զծնաւղսն իւր, ամէն, և զփեսայն իւր զՍադաղէն, և զտէր Յոհանէս կրաւնաւորն, որ կամակից եղան սուրբ Աւետարանիս՝ ընծայ ի դուռս սուրբ Վարդանայ, ձեռամբ Ստեփանոս եպիսկոպոսին, և Թումայ եպիսկոպոսին, և Կարապետ վարդապետին, և Թադէոս հէրպետին, և Ստեփանոս աբեղային, ըռէս Մուղբլին, և Թումային, և Միրիջանին՝ մեծի և փոքու, ամէն։ Սոցայ վկայութեամբ ետուն սուրբ Աւե-

տարանս ընծայ սուրբ Վարդանայ։ Եւ մի ոք յիշխեսցէ հեռացուցանել զսայ
ի դրանէ սուրբ Վարդանայ. ոյք յանդդնի՝ դրաւի կամ ծախի՝ նայ մասն
զՅուդային առցէ և զխաչհանողացն...*։

183

## ԱՒԵՏԱՐԱՆ

**Երևան 7627**

գրիչ՝ Յակոբ
վայր՝ Աղթամար

333ա … Ուստի և տեսեալ զսորա անճառ փրկագործութեան խորհուրդ ոմն
ի լուսակրաւմ զարմից բարի կին մի Խանծա, և ետ գծագրել զսուրբ Աւե-
տարանս ի հալալ և յարդար վաստակոց իւրոց յիշատակ հոգոյ իւրոյ, և
ծնաւղացն իւրոց՝ Մկր[տ]չին և Ոսկի-Խաթունին, և կողակցին իւրոյ Յո-
վանէսին, և որդոյն իւրոյ Բաւրիօքին, և դստերն իւրոյ Մամխաթունին, և
հոգևոր որդոյն իւրոյ Թանդնին, և իւր զաւակացն Դէզաքին և Քուրդամի-
րին, և միւս որդոցն Յոհանէսին և Միփարին, և այլ ամենայն արեան
333բ մերձաւո||րաց իւրոց՝ կենդանեացն և հանգուցելոցն։ Եւ ետ զսայ ընծայ և
նուէր ի դուռն սուրբ Աստուածածնին Արբերդու վանացն, յիշատակ ան-
ջնջելի և կտակ անդառնալի, որպէսզի հրճուեսցին սովաւ մանկունք
սուրբ եկեղեցւոյ, և լի բերանով և ուղիղ սրտիւ աստուած-ողորմի ասաս-
ցեն Խանծին և ծնաւղաց նորին։ Եւ արդ, մի ոք իշխեսցէ հեռացուցանել
զսա ի դրանէ սուրբ Աստուածածնիս ծախելով կամ գրաւելով, ո՛չ ի մերոց
և ո՛չ յաւտարաց։ Եւ թէ ոք յանդդնի՝ զանէծքն զաւծին և զհայրէնին ժա-
ռանգեսցէ, և զմասն Յուդային և զայլ խաչահանուացն առցէ, ամէն։
Եւ արդ, ես՝ յետինս ի դրչաց և անարժանս ի կրաւնաւորաց սուտանուն
Յակոբ, տեսի զսէր և զփափագ սորայ, զոր ունէր առ հոգևորսն, և իմով
իսկ տկարութեամբ յանձն առի և ամենակարող զաւրութեամբն աստուծոյ
կատարեցի զսայ մեղսամած մատամբս իմով յաստուածաբնակ կղզիս
334ա յԱղթամար, ընդ հովանեաւ ամենայաղթ սուրբ Խաչիս և սուրբ Նշա||նիս, ի
հայրապետութեանն տեառն Զաքարիայի, որ տիրեաց Էջմիածնի սուրբ
աթոռոյն, և սուրբ աջոյն Լուսաւորչին, և ամենայն ազգիս Հայոց։ Զոր տէր
աստուած պահեսցէ զսա անսասանելի մինչև ի խորին ծերութիւնն, ամէն։
Եւ արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի թուականութեանս Հայոց ՋԹ.
(1460), զոր և իմ անընդունակ գոլով յարուեստ գրչութեան և բազում մե-
ղացն ցնորիւք պաշարեալ, այլ ըստ կարի իմում, զոր պարգևեաց ինձ
մարդասէր հոգին՝ բազում աշխատանաւք գծագրեցի զսա ի ստոյգ և ի
յընտիր աւրինակէ, կենաւք տառապանօք։
Արդ, որք ճաշակէք յաստուածային բուրաստանէս և յամենալի սեղա-
նոյս, որք պատահիք սմա տեսութեամբ կամ ընթերցմամբ՝ յիշեսջիք
յերկնագնաց յաղաւթս ձեր զյառաջ յիշեցեալ ստացող սուրբ Աւետարանիս

* Այս Բ. հիշատակարանը, անշուշտ, գրված է 1460-ից հետո, հավանաբար ԺԵ. դարի վերջերին։

զԽոնձէն, և զծնաւղքն զՄկրտիչն և զՈսկին, և զկողակիցն զՅովանէսն, և
զորդին զԲարիոքն, որ դառն ցաւ և անբուժելի ախտ հանդիպաւ և ի յի-
334բ սանէ || հեռացաւ, և ի տանէ և ի յընդանեաց բաժանեցաւ, և ի յաշխարհէս
վայելմանց անողորմ երես դարձուցեր և ի յաւտար երկիր է մեռեր, և ինձ
էնց սուգ ահեղ տուեր, որ կսկիծն ի սիրտս է հասեր և զիմ աչերս է լալոտ
պահեր, գիշեր ու ցերեկ լացեր, և արև ի յիմ սիրտս չէ դիպեր, ոչ անձինս
մխիթար գտեր և ոչ լեզուս յորդոր զրուցեր, ղրան արարչին լսեր և ան-
ձինս ումեկ զսուրբ Աւետարանս ստացեր, և իմ զաւակին փոխան եմ
եդեր...։
Յիշեցէք ի Քրիստոս զԲաղդասարենց զՀերապէտն, և զԲարիոքի կինն
զԱլամշէն, զգդակարի որդին՝ զՅովանէսն, և զՄարին, որ շատ երախտիք
ունի ի վերայ Բարիոքին...։
Յիշեցէք ի Քրիստոս զսկէսրէրն, և զսկիսուրն իմ զՄրուքն: Յիշեցէք ի
335ա Քրիստոս զԽալ-||խաթունն, և զծնօղքն իւր զՍարգիսն և զՄարգարիտն [և
զկենակիցն իւր զՍարգիսն]...*։
Դարձեալ, կրկին անգամ աղաչեմ զձեզ յիշեցէք ի սուրբ աղաւթս ձեր
զանարժան գրիչս, և զծնօղքն իմ զՅովսէփ և զՓաշէն, և զեղբայրն իմ
զՍուֆիասն, և զամենայն երախտաւորսն իմ՝ զհոգևորսն և զմարմնա-
ւորսն, և աստուած-ողորմի ասացէք սոցայ լի բերանով և բոլոր հաւատով,
և ինքն աստուած ողորմի ձեզ, ամէն։
Յիշեցէք ի Քրիստոս զՇախպարոնն և զՈւսուփն և աստուած ող[որմի
ասացէք]։
Դարձեալ, աղաչեմ յիշել ի տէր և զԿիրակոս վարդապետն, որ միջնորդ
եղև սուրբ Աւետարանիս և ետ գծագրել զսա յիշատակ սոցա և իւրն, և ի
վայելումն իւրն և իւր միաբանացն՝ սուրբ և ընդիր կրաւնաւորացն՝ տէր
Կարապետին, և տէր Մկրտչին, և տէր Խաչատրուն, և տէր Ներսէսին, և
միւս տէր Մկր[տ]չին: Արդ, որք հանդիպիք սմա աստուած-ողորմի ասա-
ցէք սոցա, ամէն։
Աստուած ուրհնէ զԱլթ և զիւր տանուտրէքն զմեծ և զփոքր՝ զՎարդանն
և զՆւադշէն, զԹաւաֆալն և զՋանիբէկն, զՔաչիկն և զԿիրակոսն,
335բ զՎարդ<արդ>ան և զՍտեփանոսն, || զԲաղդասարն և զՍարգիս մաղդա-
սին, յիշեցէք ի Քրիստոս և աստուած-ողորմի ասացէք, զի կամակից
եղեն սուրբ Աւետարանիս...։
Ու յայսմ ամի շինեցին զսուրբ Գէորգ և աշխատեցան, զոր տէր աստու-
ած հատուցէ վարձս ըստ վաստակոց իւրոց, ամէն։
Թվ. ՋԺ. (1461)։
Ու** արդ, աղաչեմ զձեզ, ո՜վ մանկունք, յիշեցէք ի սուրբ յաղաւթս
զԲարիոյքն, որ զԱւետարանս եաուր Աղբայ սուրբ Աստուածածնին յիշա-
տակ անջնջելի, և արդ մի ոք իշխեսցէ հեռացուցանել զսայ ի դրանէ սուրբ
Աստուածածնիս ծախելով կամ գրաւելով, ո՛չ ի մերոց և ո՛չ յաւտարաց,
եթէ ոյք անանգնի զանէծսն Յուդի առցէ և զայլ խաչահանուացս, ամէն։

* Փակագծերի մեջ բերվածն ավելացված է լուսանցքում։
** Շարունակությունը գրված է մեկ ուրիշի կողմից, խոշոր ձեռագրով։

*Եւ արդ, անիծեալ եղիցի մարդն այն ի սուրբ Աւետարանէս, որ զսա ի* խռնծի *կամացն հանէ, զի այլ մարդոյ մէկ մազ երախտիք չկա ի վերայ Աւետարանիս։*

Բ

8բ Զ**Մուրատ** *սարկօաքս, որ բազում աշխատեցօ ի վերայ ծաղկելոյս յիշեցէք ի Քրիստոս։*

*Զտէր* **Մինաս** *ուսուցիչըն իմ յիշեցէք ի Քրիստոս, ամէն։*

184

*ՄԱՇՏՈՑ*

*Երեւան 5470*

*գրիչ՝* Մկրտիչ
*վայր՝* Աղթամար

ա

141բ *...Զոր տեսեալ զսորայս մեծութիւն երջանիկ ոմն և աստուածաին ձրիւքն բարդաւաճեալ* Վարդան *պատուական տանուտէրն, և ստացաւ զսա ի յարդար վաստակոց իւրոց ի վաելումն անձին իւրոյ, և յետ աստի կենացն յիշատակ հոգոյ իւրոյ և ծնաւղաց իւրոց...։*

*Եւ արդ, ես՝ ամենամեղս և անարժանս ի մէջ [կա]րգաւորաց* Մկրտիչ *անպիտան և մեղուցեալ կրաւնաւոր, ըստ իմում տկարութեամբ յանձն*

142ա *առի և ամենայն կարող զաւրու||թեամբն Քրիստոսի կատարեցի մեղա-[ւած ձեռա]մբ իմով յաստուածապահ և յանառ[իկ կղզիս]* Աղթամար, *ընդ հովանեաւ սուրբ Խաչիս և սուրբ Գեղարդեանս, ի հայրապետութեան տեառն* Զաքարայի *և ի թվականիս Հայոց ՋԹ. (1460)։*

*Եւ արդ, աղաչեմ զդասս լուսերամիցդ, որ հանդիպիք սմա տեսութեամբ, կամ կարդալով, կամ աւրինակելով՝ յիշեցէք ի սուրբ և յարժանաւոր յաղաւթս ձեր* զՎարդան, *և զծնաւղսն իւր՝ զհայրն* զԹումէն *և* զՇնաւճտրն*, *և զեղբայրն* զՍիւէմոն, *և զորդին* զԹումէն, *և զեղբաւրորդիքն* զՄարտիրոսն, *և* զՍարգիսն, *և* զՅովաննէս *սարկաւագն, և* զՍտեփաննոսն, *և զքոյրն ըզ*Սառէն, *և այլոցն ամենայնի։*

*Եւ ընդ յարժանաւորացն զանարժան գծողս* զՄկրտիչ *մաղթեմ յիշել ի սուրբ և յընդունակ յաղաւթս ձեր, և զծնաւղսն մեր և զեղբարքն մեր...։*

Բ

143բ *Դարձեալ աղաչեմ... յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր* զԱղթայ *տանուտէրքն և զամենայն ար[ե]այն մերձաւորք նոցա, ամէն, եղիցի։*

Գ

143բ *ԶՈվանէնս գառնարած, որ սրայխոխ մահուամբ աւանդեաց զհոգին առ աստուած, և զայլ ամենայն մերձաւորքն իւր <ամենայն>* զԴովլաթն *յիշեցէք ի Քրիստոս և աստուած ողորմի ասացէք, ամէն։*

---

**Շնորհավոր անվան այս ձևը գրված է հիշատակարանի սկզբի՝ մեր կողմից բաց թողնված մասում, իսկ այստեղ այդ անունը գրված է «զՇօհֆորն» ձևով։*

## 185

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Գեա. Մատենադարան, կաթողիկոսական դիվան,*
*թղթ. № 240, վավ. 130, հմմ. «Արցախ», էջ 139*

*գրիչ՝* Վարդան
*վայր՝* Վան

*Արդ, այսմ աստուածային և երկնապարգև տառիս և լուսափայլ մարգարտիս ցանկացան աստուածատէր և բարեպաշտ կանայք՝* Աղուբ-խաթունն *և* Շատիշէն*, *ետուն գրել զսա յիշատակ իւրեանցն և իւրեանց բարի ծնողացն.* Աղուբ-խաթունի *ծնողացն՝ հօրն* Սաւրգսին *և մօրն* Ջանխաթունին, *և եղբարցն* Նաւասարդին, Ասաթին, Ամիրդատին, Կիրակոսին, *և քուերցն* Մարեմին, Շարխաթունին *և* Բաղդատ-խաթունին, *և* Շատիշի *ծնողացն՝ հօրն* Կարապետին *և մօրն* Շահրիմանին, *և եղբօրն* Ջանիբէկին *և քուէրն* Խաթունշին, *և որդոյն* Ամիր-Ազիզին՝ *փոխեցելոյն ի Քրիստոս, և միւս որդոյն* Աւետիսին, *և* Շահրիմանին, *և* Գանջխաթունին, *և [սոցա՞] հօրն* Սուլթանշին, *և մեծ մօրն* Մամախաթունին *և այլ ամենայն մերձաւորաց սոցին՝ կենդանեաց և ննջեցելոց....*

*Արդ, յանկ եղեալ կատարեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ յոգնամեղ և անարժան գրչի և սուտանուն երիցու* Վարդանայ, *որ զանուն ունիմ և զգործս չունիմ. ի քաղաքս որ կոչի* Վան, *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին և սուրբ Վարդանայ զօրավարին, ի թուականութեանս Հայոց ՋԹ. (1460), ի հայրապետութեան տեառն Գրիգորի և մերոց աթոռակալացն սուրբ ուխտիս* Վարագայ՝ *հեզահոգի և մաքրամիտ եպիսկոպոսացն* Յակոբ ///

## 186

### ՄԱՇՏՈՑ

*Երևան 4263*

*գրիչ՝* Իսրայէլ
*վայր՝* Մոկք, Փասայ գեղավանք

ա

284բ *Փառք... որ ետ կարողութիւն տկար ձեռինս և մեղապարտ* Իսրայէլ *գրչիս։*

*Արդ, գրեցաւ սա ի յերկիրս* Մոկաց, *ի գեղվանքս* Փասա, *ընդ հ[ով]անեաւ սուրբ Աստուածածնիս, և Գրիգորի Լուսաւորչիս, և այլ սրբոցս որ աստ կան հաւաքեալ, ի թուականիս Հայոց ՋԹ. (1460)։*

բ

300բ *Վա՜յ ինձ՝ մեղապարտ գրչիս՝*
Իսրայէլ *սուտ քահանայիս,*
*Ով դուք՝ կարդացողք գըրիս*
*Յիշեց[էք] ըզմեզ ի հողիս։*

* *«Արցախ»-ում՝ Շահդիշէն։*



*Նկ. 9. Ձեռագրի ստացողներ Վարդան քահանան և Ամիրբեկ սարկավագը*

## 187

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 7566

գրիչ՝ Յովանէս
վայր՝ Խիզան

293բ Այլ և գրեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ Յովանէս քահանայի... ի մեծ թուիս ըստ արարչութեանցն չափեալ յելանելոյն Ադամայ ի դրախտէն ՇՌԴՃ. և ԻԲ. (5422) ամ, ըստ եւթանասնիցն, որում մեք վարիմք, իսկ ըստ թուոյ խոսրովային յաբեթական տումարիս՝ ՋԹ. (1460), և էր մեծ շրջանին։ Ի կաթողիկոսութեան Հայկազեան սեռի տեառն Զաքարիայի և տէր Գրիգորի, և ի թագաւորութեան այլասեռից՝ պարոն Ջըհանշի, զոր տէր աստուածն Իսրայէլի պահեսցէ անսասան զաթոռ հայրապետական և զթագաւորական մերոյ ազին։

Եւ արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի քաղաքիս որ կոչի Խազան, ընդ
294ա հովանեաւ սը||բբուհոյ Աստուածածնի, և սրբոյն Սարդսի զաւրավարի, և սուրբ Յարութեանն, և սուրբ Գէորգայ, որ է հեռի։ Ի վայելումն անձին Վարդան* քահանային, և որդւոյ իւրոյ Ամիրբէկ նորաբողբոջ սարկաւագի, և կողակցին իւրոյ Թաջմէլէքին, և եղբարցն Գրիգորուն, Աբրահամուն և Դաւթին, և քուերցն Եղիսին և Ջըմրութին, զոր տէր աստուած վայելել տացէ զսա սոցայ ընդ երկայն աւուրբք, ամէն...։
294բ ... Եւ կացցէ սայ ի դուռն սուրբ Գէորգեայ զաւրավարին և սուրբ գերեզմանին Թառնաբայ, ի գեաւղս որ կոչի Արամուս, և որ եւտ գրել զսուրբ Աւետարանս յիշատակ, վասն որոյ գրեսցին նոքա ի դպրութիւն կենաց յերկինս և առցեն զփոխարէնն ի Քրիստոսէ, ամէն։

Ընդ սոցին և զիս՝ զանարժան գրիչս զՅովանէս սուտանուն քահանայ, և զհայրն իմ զՄկրաիչ քահանայ, որ բաղում աշխատութեամբ ուսոյց զիս, և զմայրն իմ զԽաթ-Մելէքն, և զհաւրեղբայրն իմ զԿարապետն, և զպապիկն իմ զԶաքարիայ քահանայն, և զամենայն արեան մերձաւորսն մեր առհասարակ յիշեսջիք ի Քրիստոս, և այնոցիկ, որ ի վերայ մեր երախտիք ունին, և լի բերանով աստուած-ողորմի ասացէք, և աստուած, որ առատն է ի տուրս բարեաց, ձեզ և մեզ առհասարակ ողորմեսցի, ամէն։

Անմեղադիր լերուք խոշորութեան գրիս, զի կայր մեր այս էր։

## 288

## ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

Հ. Ոսկեան, Տարօն-Տուրուբերանի վանքերը, Վիեննա, 1953, էջ 118—119

վայր՝ Եղրդուտ վանք
(Մուշի մոտ)

Գրեցաւ Յայսմաւուրքս ի թվին Հայոց ՋԹ. (1460), ի մենաստանս սուրբ Յովաննէս Եղրդուտ կոչեցեալ... ի հայրապետութեան տէր Գրի-

* Ցա էջի վրա նկարված են Վարդան քահանան ու Ամիրբէկ սարկավագը՝ կանգնած աջ կողմում. նրանք ձեռքերը պարզել են դեպի ձախ, ուր մանուկ հիսուսը գրկին կանգնած է Աստվածածինը (տե՛ս նկ. 9)։

գոր[ի], եւ յառաջնորդութեան սուրբ ուխտին տէր Յովհաննէս արքեպիսկոպոսին, եւ ի բռնակալութեան աշխարհիս Հայոց չար Ջհանշահին՝ աշխարհակործան և աւերող ամենայն գաւառաց, եւ մեր ամիրային ամիր Շարաֆին:

Արդ ի սորայ գրել շատ վիշտ եւ նեղութիւն կրեցաք, տարով հիւանդ կացաք։ Եւ յետ նորա Հասան-պէկն երեկ զղաշտս աւերեց եւ երեց։ Եւ յետ այնոր Բ. ամսոց, աւելի կամ պակաս, մահ տարաժամ անկաւ, շատ որդի ի հաւրէ բաժանեց եւ դուստր ի մաւրէ, քուր յեղբաւրէ եւ կին ի յառնէ. ո՞վ կարէ պատմել զկսկիծ աղետից նոցա...։

Աղաչեմ յիշել ի տէր զմիաբանք սուրբ ուխտիս սուրբ Յովհաննէսին՝ զհեզահոգի եւ զսրբասնեալ եպիսկոպոսն զտէր Ներսէս եւ զհոգեւոր եղբայրն իւր զտէր Յովհաննէսն:

## 189

## ՍԱՂՄՈՍ

*Երևան 7787*

*գրիչ՝* Մարտիրոս
*վայր՝* Ղրիմ

241ր ...Յազգեանազեանս մեծ տոմարին՝ Հայոց Մեծաց ի թուականին ինն հարիւր և ինն թվին (1460) ատարտ եղև այսմ տառի, առ դուռս երաշխաւոր Աստուածածնի մականուն խոճա Յաղիքի, ի հայրապետութեան տեառն տէր Գրիգորի սուրբ էջմիածնի, և եպիսկոպոսութեան տէր Մաղաքիաս արհիեպիսկոպոսի։

Արդ, ստացաւ զսայ Խաչատուրն հալալ ընչից իւրոց, յիշատակ իւր, և կենակցին Հռիփսիմէ, և զաւակացն՝ Լուսաբիկնայ, և Տիրացուին, և Շնոֆորին, և ծնողացն Սիմէոնին և Մարթանէ, Եղիզրայ և էմին-Մելիքին, և ամենայն արեան մերձաւորացն։

Եւ եղ յիշատակ անջնջելի առ դուռս սուրբ Սիմէոնի Սալայնուխի: Ազատ է, աղատ է. ոչ ոք չունի իշխանութիւն դրաւելոյ կամ ծախելոյ, թէ ազդէ, թէ ի տակէ։ Թէ՛ ոք յանդըգնի և ձեռնամուխ լինի՝ նայ պատժի աստուծոյ, ամէն։

Արդ, աղաչեմք զամենեսեան, ո՞վ սուրբ եղբարք, որք հանդիպիք այս սուրբ գրոցս յիշեսջիք միով ողորմիսիւ զվերոյգրեալսն, և զիս՝ զմեղապարտ գրիչս զՄարտիրոս, և զքեռն իմ զտէր Սանակ գրոց աշակերտն, և զբարակգործ պարոն Խաչիպէկն, որ զթուղթն երեր։ Եւ ինքն, որ առատն է՝ մեզ և ձեզ առհասարակ ողորմեսցի, ի վայելումն Երանոս քահանայի և Սարգիս քահանայի։

190

ՃԱՇՈՑ

Երևան 9185

գրիչ՝ Նիկողայոս եպիսկոպոս
վայր՝ Աղքերման

ա

261ա Յայս Հրաշափառ մեծի սաւնիս,
Քեզ երանի՝ որ հանդիպիս,
Լուսափրթիթ բուրաստանիս
Հոգիաբուխ սրբոյ տառիս,
Յորժամ ի ծումբ խոնարհիս,
Սիրով հոգւոյ յաստուած հպիս,
Յայնժամ յիշեա դու զեղկելիս
Զայս անպիտան Աղքերմանցիս,
Զմեղաւք ծածկեալս ի մէջ տղմիս՝
Նիկողայոս եպիսկոպոսիս,
Յինն հարիւր և ութ (1459) թվիս։

բ

483ա ...Որով և ես՝ ամենանուաստ անձն և տկար ոգի Նիկոլայոս եպիսկոպոս՝ յորդիս եկեղեցւոյ՝ մեծատենչ փափագմամբ գրեցի զսա թէպէտ փոքր դրաւք յարմարեցի, այլ զօրութիւն մեծի գոյ ի սմա և լիակատար՝ յուրախութիւն ընթերցողաց և ի քաւութիւն յանցանաց իմոց։ Որով և դուք, բարի ընթերցողք, որք վայելէք զայս հոգևոր գանձս ասացէք թէ՝ Տէր ողորմեա Նիկոլաոս եպիսկոպոսին, որ զգիրքս գրեաց, զի և դուք գրեսջիք ի գիրն կենաց, ամէն։

Յիշեսջիք և զծնողսն մեր՝ զհայրն իմ զՍիմէոն էրեց, և զպապն իմ Խստազէս էրեց, ամենայն ազգականաւք՝ ղարմաւք և զաւակաւք և ասացէք աստուած-ողորմի։

Յիշեսջիք և զեղբարսն իմ զԲարքողիմէոս քահանայ, որ ի մարմնի բարւոք քաղաքավարեալ և զընթացսն նահատակութեամբ կատարեաց, ասացէք աստուած-ողորմի։

Յիշեսջիք և զայլ աշխատողսն՝ զՅակոբ աբեղան, որ զթուղթս կոկեց, զՅակոբ էրէց, որ զտողն քաշեց, զՍտեփաննոս աբեղան, որ ծաղկելուն ընկերեց և այլ ձեռնատուացն, և ասացէք աստուած-ողորմի։ Յիշեսջիք և զերկու եղբարսն՝ զՊետրոս և զՊաւղոս՝ իւրեանց ընտանեաւք, որ կերակրաւք և ընբելեաւք սպասաւորեցին և ասացէք աստուած-ողորմի...։

Արդ, ես գործով կրսեր յետին
Եւ վերջացեալ առ ի բարին,
Ըզգիրքս ետու Աստուածածնին
Գեղաքաղաքս որ Աս կոչին,
Նիկողայոս գրիչ սորին։
Եւ գրեցի բաղձմամբ սրտին,

Տարտամ գրչաւ ի քարտիսին
Եւ անտեղեակ ի յարհեստին
Անզարդ տպաւ է գեղ սորին
Եւ փոփոխմամբ ձեռաց գրչին։
Արդ, աղաչեմ զամենեսին
Ես որ մեղաւքս եմ ցաւագին՝
Յիշել զծնողսն իմ բարին
Յաղօթելոյ ժամանակին,
ԶՍիմէոն հայրն իմ գովելին,
Որ վաղչանեաց զկեանս երկնային,
Նայ և զմայրն իմ պանծալին,
Զմեզ բարւոք սնուցողին։
Եւ զհարազատքն իմ երկոքին
Առհասարակ ի միասին՝
Զնոր նահատակ Բարթողիմին,
Որ ի մարմնի էր անմարմին,
Եւ զգնացեալն ի մէնջ յերկին,
ԶՕնոփրիոսին զերկոսին,
Որք ի ժողովն են երկնային,
Եւ հանգուցեալ առ Քրիստոսին
Զքեռորդին իմ բաղձալին՝
ԶՅոհաննէս կարթող չարին,
Որ է հմուտ նա յոյժ գրրին
Եւ կրաւնաւոր յաստիճանին։
Դարձեալ կրկին յաղերս բանին
Ես աղաչեմ զամենեսին
Յիշել զմերսն առ ի բարին
Ի յընթերցման ժամանակին։
Եւ որ զմեւք նենգել խորհին՝
Մեղաց նոցա գիր ջնջեսցին,
Իսկ բարերարքն և սիրելին՝
Հանդիպեսցին սիրոյ փրկչին,
Երախտաւորքն իմոյս անձին
Ի Քրիստոսէ առցեն զբարին
Ի ներկայիս և յապառնին,
Ի յանդերձեալն և յանթուելին.
Որոց և մեզ լիցի բաժին
Ի յանվաղջեան տեառն բարին
Եւ որ զամէնն ասէ ի սմին՝
Պարտիք մեղացն քաւեսցին։
Իսկ աւարտումն եղև սըմին
Առ ի կողմանս հիւսիւսային,
Յերկիր Ստեփան վոյվոտային

Եւ յԱխճերման քաղաք նորին։
Իսկ ի տումար Մեծաց Հային՝
Իննհարիւր ինն* թվին,
Եւ ի յամսեանն յունվարի
Յերկուսն եղև աւարտ սորին...։

Արդ, այսմ աստուածային գանձիս... ցանդացաւ բարեպաշտ տանուտէրն և բարի արմատոց պտուղն Կիւրեղն...։ Եւ ստացաւ զսայ ի հալալ ընչից և յարդար վաստակոց իւրոց՝ յիշատակ հոգոյ իւրոյ, և ծնո-
484բ ղացն իւրոյ՝ իւր պապուն Նիկողայոս քահանային, || և իւր մամուն իրիցկնոջն, իւր հաւրն Աստուածատրին, և մաւրն Մուղալ-խաթունին, իւր կողակցին Ազիզին, և ծնողաց իւրոց, և աստուածապարգև զաւակաց իւրոց Աստուածատրին, և Նիկողոսին, և Լուսիկին, և դստերն Վառվառին, և այլ ամենայն զաւակաց նոցա։ Ստացաւ զսայ յիշատակ անջինջ վերոյդրելոցդ և եդ ի սուրբ Աստուածածին եկեղեցիս ի յԱսիս-Պազարն։ Եւ ոչ ոք իշխեսցէ տիրել սըմա կամ հանել ի սուրբ տաճարէս, որ ի յԱսսէ, վասն զի սուրբ Աստուածածնին է. ո՛չ ես, ո՛չ իմ որդիքն՝ յո[ր]դոց որդիս, և ազդէ յազդ։ Ազատ է գիրքս, ազատ է, ազատ է։ Ես Կիւրեղըս և այս իմ ղրէրս է։ Ով՛ որ հակառակի կամ տաւի անէ, թէ որդոց կամ թէ դստերաց, նա ելցէ ի յիշատակութենէ գրոյս, որ աստ գրեցաւ, և սուտ լիցի ի յամէն դատաստան։**

## 191

### ՃԱՇՈՑ

Երևան 7449

գրիչ՝ Թորոս
վայր՝ Ղրիմ

497բ Եւ այլ յիշեսջիք Ստեփաննոսս՝ զորդի Տէրուն քահանային, ի թվականիս Հայոց ՋԹ. (1460), ի հայրապետութեան տեառն Գրիգորի, և արհիեպիսկոպոսութեանն տէր Մաղաքիային, որ կուտամ զճաշոցս սուրբ Թորոս յեկեղեցին յիշատակ անջնջելի, ազատ, ոչ ոք չունի իշխանութիւն սուրբ գրոցս որ ի սուրբ Թորոսու հանէ, յափտեանս նա յիշատակ կենա մեզ և մեր ննջեցելոցն՝ պապուն իմոյ Եբրանոսին, և հաւրն իմոյ Տէրուն քահանային, և մաւրն իմոյ Գարիանէ իրից[կնոջ], և ինձ Ստեփանոսիս, և կենակցին իմոյ Շիրինին, և զաւակացն իմոց Թագուհէ, և իրիցկնոջ Խաթունին։ Ես Ստեփանոսս*** այս գիրքս իմ հրամանքս էր մինչև ցայսաւր, հիմա այս աւուրս ի վեր՝ տէր և յիշատակ սուրբ Թորոս եկեղեցին է, ոչ ոք

* Բնագրում՝ թվանշաններով՝ ՋԹ. (909=1460)։

** Ձեռագիրը ստացվել է Բուխարեստի հայ մշակույթի տան Մատենադարանից, 1954 թվականին։ Հիշատակարանը հրատարակված է F. Macler-ի կողմից „Revue des Etudes Arméniennes" t. X. f. 1, Paris, 1930, հանդեսի մեջ տպագրված „Rapport sur une mission scientifique en Romanie" հոդվածում, էջ 60—65։

*** Մի բառի տեղ դատարկ է թողնված։

*չունի իշխանութիւն գրաւելոյ կամ ծախելոյ, թէ յազգէ, թէ ի տակէ, թէ ի քահանայից. և թէ ոք յանդգնի և ձեռնամուխ լինի՝ նա պատժի աստուծոյ և ի սուրբ Թորոսէ, և ԳՃԺԸ (318) հայրապետաց անէծքն առնու, ամէն։*

*Վկայ* Յովաննէս *քահանայն և ընթերցաւղ սուրբ գրոցս, և այլ ի տանուտրացն վկայք՝* Մկրտիչն, *պարոն* Գորգն, Պաւղոսն, Յակովբն, Ղազարն. *ձեռամբ* Թորոս *անիմաստ գրչի։*

## 192

## *ԱՒԵՏԱՐԱՆ*

***Խնձորեսկ գիւղ, Մ.Տ.Մ.***

*գրիչ՝* Ստեփանոս

*...Ձեռամբ* Ստեփանոս *քահանայի... գրեցաւ ի թվիս Հայոց ՋԹ. (1460), ի խանութեան* Ջհանշին, *և ի հայրապետութեան տէր* Զաքարիայի Աղթամարեցւոյ... *Այլ և մնացէ սա ի գուռն սուրբ Կիրակոսին։*

## 193

## *ԱՒԵՏԱՐԱՆ*

*ՄՑՀ հտ. Ա. 44, էջ 90*

619 *Եւ զբազմամեղ գրիչս և զծնաւղսն իմ յիշեցէք ի Քրիստոս և լի բերանով աստուած-ողորմի ասացէք և խոշորութեան և սղալանացս անմեղադիր լերուք, բայց զերկու գլուխ ու կէսն ես գրեցի և զայլն գրած էր. ի թվականութեանս Հայոց Ջ. և յիններորդի (1460)։*



Ջժ 1461

## 194

### ՄԱՇՏՈՑ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ ԵՒ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ ՁԵՌՆԱԴՐՈՒԹԵԱՆ ԵՒ ԹԱԳԱՒՈՐԻ ՕԾՄԱՆ

Երևան 4 Գ.

գրիչ՝ Ստեփանոս
վայր՝ Էջմիածին

133բ Փառք... [որ] ետ զաւրութիւն տկարութեանս իմոյ հասանել ի յեզր
շնորհաբաշխ և իշխանատու աստուածաշունչ տառիս. զի սա է ճանա-
պարհն կենաց և դուռն արքայութեան, սա է հաստատութիւն մարգարէիցն
134ա և զարդ մարտիրոսացն, սովաւ լինի շնորհաբաշ||խութիւն աստուածային
իշխանութեամբ. և տուաւ սուրբ հայրապետաց, քահանայից և թագաւորաց։
Սովաւ ածանին ամենայն հաւատացեալ քրիստոնեայք սուրբ աւազանաւն
Քրիստոսի, սովաւ յուսադրեցան նախապետքն, սովաւ բացաւ ծածկեալ
գանձն աստուածային իմաստութեանն աստուծոյ և տուաւ ազգի մարդկան։
Սա է դարձուցանող կորուսելոց և բարձրացուցանող խոնարհաց և լոյս
խաւարելոց. սա է արդարոցն գովութիւն և մեղաւորաց խրատ ապաշխա-
րութեան։ Սա զթշնամին յանդիմանէ և զըմբռնեալսն ի նմանէ առ Քրիս-
134բ տոս կացուցանէ, սա զնաւագնացսն ի զճանապարհ||որդսն յուղղաւորէ
յարքայութիւնն աստուծոյ, նաև զվտանգեալսն հասուցանէ ի խաղաղ և
յանփոյթ նաւահանգիստն։ Սա զգլորեալսն կանգնէ և զցրուեալս ժողովէ։
Սայ ղանաւրէնսն աւրինաց գիտողս վերակարգէ և զաւրինաւորսն անսայ-
թաք և անմոլարս պահէ։ Սա զվկայս յորդորէ ի յաղթութիւն անաւրէն բռնա-
ւորին և զանապատաբնակքն աղաւթողքն՝ կրանաւորեալ պահպանէ։ Սա է
սգաստութիւն ծերոց, և պարկեշտութիւն սուրբ կուսանաց, և կարգաւորօղ
քահանայից և եկեղեցականաց։ Սա է վէմ հաւատոյ ի հիմունս սուրբ եկե-
ղեցւոյ։
135ա Այլ և այսու ամենայնիւ լցեալ զառ ի յաստուծոյ պատուեալ երջանիկս
արիացեալ հաւր զաւրութեամբ հովանաւորեալ բնութեամբ որդոյն յար-
դեալ, հոգւոյն սրբոյ շնորհօք զարդարեալ ի հոգի, ի մարմին և ի միտս,
նաև ի բարի յարմատոց շառաւիղ ընդրեալ շնորհաւքն Քրիստոսի յազգէ
թագաւորին Գագկայ՝ Հայոց Մեծաց Տէր Զաքարիայի կաթողիկոս և պատ-
րիարք Վաղարշապատու մեծ քաղաքի*, եկն ի յերկնահանգէտ և ի հոյա-
կապ և ի հռչակաւոր ահեղ և զարմանալի կամարակապ կըմբէթայարկ
135բ սրովբէագումար և երկնանման և հաստակառոյց || վիմաւք զարդարեալ

---

* Շեղագիր տպվածը ձեռագրում գրված է կարմիր թանաքով։



*Նկ. 10. Նպիսկոպոսի ձեռնադրության նկարը № 4997 Մաշտոցից։ Կաթողիկոսական համազգեստ հագած արարողապետը՝ հավանաբար Զաքարիա կաթողիկոսն է*

հրաշափառ սուրբ աթոռոյ և սքանչելագործ և կենսատու սուրբ Նշանէն՝
Աղթամարայ սուրբ աթոռոյն։
Այլ և կարողութեամբ սուրբ Հոգւոյն և ողորմութեամբն Քրիստոսի և
միջնորդութեամբ սուրբ Աստուածածնին և աղաւթիւք սուրբ լուսաւորչին
Գրիգորի՝ տիրեաց սուրբ Էջմիածնիս և աստուածադիր սուրբ աթոռոյս
Վաղարշապատու և ամենայն հայկազեան սեռի, և վերստին հաստա-
տեաց, շինեաց և զարդարեաց զքրիստոսահիմն և երկնանման շնորհա-
բաշխ և սրովբէագումար զսուրբ կաթուղիկէ եկեղեցիս, որ և տարածեցաւ
համբաւ սորա ընդ ամենայն ծագս տիեզերաց։ Զժամատեղս պայծառա-
136ա ցոյց և աներկիւղ պահեաց ի մէշ || այլազգեաց սեռից, և զհի[ւ]րատունս
յորդորեաց և լիացոյց առատաձիր պարգևաւք։ Եւ է սայ ողորմած տնան-
կաց և կարաւտելոց և ազնական ամենայն տարակուսելոց, և խնամածու
ուսումնասիրաց և կրաւնաւորաց։ Զոր և տէր աստուած պահեսցէ զսա ընդ
ամրածածուկ աջովն իւրով. թշնամիք սորա ընդ մի ճանապարհս գայցեն
և ընդ հազարսն փախստական եղիցին։ Այլ և գասեսցէ Քրիստոս աս-
տուած զհոգի սորա ընդ սրբոց հայրապետացն Բարսղի, Գրիգորի Աս-
տուածաբանի և ամենայն սրբոց հայրապետացն, վարդապետաց և կրաւ-
նաւորացն դասակից և պսակակից արասցէ և ընդ հարիւրաւորսն կացուսցէ,
136բ և ի գոգն Աբրահամու հանգուսցէ և ինքնացեալ || պաշտեսցէ, ամէն։
Վասն զի սա եռափափագ սիրով և բազմադիմի յաւժար կամաւք
ցանկացող եղեալ այսմ հոգիաբուխ բուրաստանիս, որ կոչի ձեռնադրու-
թիւն կաթողիկոս աւրհնել, մեռոն աւրհնել, եպիսկոպոս աւրհնել և թագա-
ւոր աւրհնել։*
Եւ ես՝ տկարս և տառապեալ ոգի և թափուր ի բարի գործոց Ստեփանոս
սուտանուն կրաւնաւոր ընկալա և կատարեցի մեծաւ յուսով և եռափափագ
սիրով ի սուրբ Էջմիածինս, առ ոտս տէր Զաքարիայի և կաթողիկոսի
ամենայն Հայոց, ի խանութեան Ջահանշահ փաթշահի, և ի թվականիս
ՋԺ. (1461)։ Արդ, որք հանդիպիք սմա կարդալով կամ աւրինակելով յի-
137ա շեցէք ի մաքրափայլ և յերկնաթռիչ յաղաւթս ձեր || զվերոյ յիշատակեալ
պատրիարգն տէր Զաքարիայ կաթողիկոս՝ զստացաւղ սուրբ աստուածա-
շունչ տառիս, հանդերձ ծնաւղաւք և ամենայն թաքազարմ նախնեաւքն և
պայազատ իշխանաւքն։ Եւ ինքն, որ առատն է ի տուրս պարգևաց ձեզ՝
յիշողացդ և մեզ՝ յիշեցելոցս, առհասարակ, ողորմեսցի և տացէ զերկ-
նից արքայութիւնն, ամէն։

## 195

### ՔԱՐՈԶԳԻՐՔ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՅ

ИВ АН В—52

(Տե՛ս նաև ՀԱ, 1892, էջ 83)

գնող՝ Դանիէլ Սեվանեցի

444բ Ի թվականին Հայոց ՋԺ. (1461) ես Դանիէլ պիտակ անուն վարդա-
պետ, ի տանէն Գեղամայ, ի Սեւանայ կղզոյն, որդի Կարապետ քահանայի

* Ձեռագրի մեջ պահվել են վարպետությամբ կատարված և կենդաղային ու ազգագրական մանրամասնություններով ուշագրավ նկարներ, որոնք պատկերում են եպիսկոպոսի (էջ 11բ), կաթողիկոսի (էջ 50բ), մեռոնի (էջ 75բ) և թագավորի օրհնությունն ու օծումը։

գնեցի սգիրքս յԱռաքել աբեղայէն ի Ճ. (100) թանկայ։ Որք լուսաւորիք Հոգով ի լուսաւոր բանից սորայ՝ յիշեցէք յաղօթս ձեր և աստուած զձեզ յիշէ, ամէն*։

## 196

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 6860

գրիչ՝ Դաւիթ
վայր՝ Սրկղունք

ա

Փառք... որ ետ կարողութիւն անարհեստ և ախմար և սղալամիտ գրչի
284ա հասանել ի վերջ աստուածազարդ || նորաբողբոջ բուրաստանիս, որ կոչի
Աւետարան և աւետէ մեզ զարքայութիւնն աստուծոյ. և է զարդարիչ ամենայն Հայկազեան ազգի։

Գրեցաւ սայ ի գեաւղս որ կոչի Սրկղունս, ընդ հովանեաւ սուրբ Գէորգիս, և սուրբ Յակոբի, և այլ ամենայն սուրբ նշանացս, որ աստ կան հաւաքեալ, առ ոտս երջանիկ, արի[ա]ջան և սրբազան Երեմիայ կուսակրաւն աբեղայի, և վարդապետիս իմոյ Աւագաէր կուսակրաւն ճգնաւորի, որ բազում երախտիք և աշխատանք ունի ի վերայ իմ, և այլ եղբարցս՝ Վարդան աբեղայի և Եզեկիէլի՝ ընկերակցի իմոյ, և այլ ամենայն եղբարցս։

Արդ, գրեցաւ սայ ձեռամբ Դաւիթ սուտ անուամբ իրիցի, որ եմ յետնեալս ամենայնի, ի թուաբերութեանս Հայոց տաւմարի ՋԺ. (1461), ի դիտապետութեան տէր Զաքարիայ կաթողիկոսի, իշխանութեամբ պարոն Ջումին և պարոն Ինանիկին:

284բ Յիշեցէք ի մաքրափայլ և մեղաքաւիչ յաղաւթս ձեր զստացող սորա զՄկրտիչ քահանայ և զծնաւղսն իւր զՋէսար և զԴիլշատ, զԱղբատխերն, և զկենակիցն իւր զՈւմբրիշատ, և զաստուածապարգև զաւակսն զ||ալայ** և զԻբրիանոս, զոր տէր աստուած ընդ երկայն աւուրս պահեսցէ անփորձ ի դիւաց փորձանաց և ի մարդոց չարեաց, ամէն...։

Կրկին անգամ աղաչեմ յիշել ի տէր աստուած զվերագրեալքս ի սմա՝ զստացաւղսն և զաշխատաւորսն, և զմարմնաւոր ծնաւղսն իմ՝ զհայրն իմ զՏէրտէր և զմայրն իմ զԴոնցա, և զհարազատ եղբարսն իմ զՄարգարայ, և Զաքարա դպիր, և զՅակոբ. և զԱբրահամ, և զամենայն արեան մերձաւորսն իմ։ Ու ձեզ՝ յիշողացդ և մեզ՝ յիշեցելոցս, առհասարակ, ողորմեսցի Քրիստոս աստուած, և նմա փառք յաւիտեանս, ամէն և եղիցի։

* Դանիել Սևանեցու ձեռագիրն անվարժ է։ Մեկ ուրիշը, փոքր-ինչ խմբագրության ու լրացման ենթարկելով, ընդօրինակել է նրա հիշատակարանը, ավելացնելով հետևյալ տողերը. «Յիշեցէք... զհայրն իմ զԿարապետ քահանայ, և զմայրն իմ զՀամաւոր, և զեղբարսն իմ, և զամենայն երախտաւորսն»։

** Անվան առաջին չորս տառերը մաշվել ու դարձել են անընթեռնելի. Նրանց հետքերը հնարավորություն են տալիս մեծ կասկածանքով անունը կարդալ այսպես՝ «զՍոսո ադայ»։

ծաղկող

Բ

133ա Ո՛վ եղբարք, մեղադիր մի լինէք փոքր ծաղկիս, զի ի վարդապետէ չի ուսել և արճիճ չկայր*։

197

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 6367

ա

գրիչ՝ Խաչատուր
վայր՝ Ուրծ

269ա ... Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ մեղապարտ և փծուն գրչի Խաչատուր անպիտան քահանայի, ի թվականութեանս Հայկազեան տումարի Ջ. և Ժ. (1461), ի հայրապետութեան տեառն Գրիգորի: Եւ յաշխարհակալութեանն Ջահանշաի, որ տիրեաց բազում աշխարհի և գաւառի բռնութեամբ, և իւրովին կամաւք մինչև ի Խորասան տիրեալ. ի դեսղաքաղաքս որ կոչի Ուրծ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին և սուրբ Ստեփանոս նախավկային։

Արդ, ես՝ Ներսէս քահանայ մեծաւ փափագանաւք ըստացայ զսուրբ Աւետարանս ի հալալ արդեանց իմոց, ի վայելումն անձին իմոյ և յիշատակ հոգւոց մերոց՝ հաւրն իմոյ Հէրատունին, և մաւրն իմ Լի-Տիկնայ, և ամուսնոյն Մսըր-Մէլիքայ, և նորաբողբոջ զաւակաց մերոց՝ Ըռըստակիսին, Գրիգորիսի և զհանգուցեալն ի Քրիստոս Թադէոսի, և հաւրեղբարցն իմ Աւրանին, Տիրատրին, Յոհանփին և Յոհանէս քահանային, և քեռն իմ Արզուին և Գոհարին, նաև բազմերախտ զոքանչին իմոյ Շահ-Մէլիքին, և ծնաւղաց իւրոց՝ Հաւրաքին և Գուլ-Մէլիքին, և զաւակին իւրոյ Ամիր-Սարգսին, և կենակցին իւր՝ Նարինին, և զաւակացն Դանիէլին և Տիրաւաֆին**։

Այլ և աղաչեմ յիշել ի տէր զբազմերախտ ուսուցիչն իմ զարհիեպիսկոպոսն զտէր Ազարիայն՝ հանդերձ ծնաւղաւք, նաև զհամշիրաք եղբայրն իմ ըստ հոգոյ զՄանուէլ սրբասնեալ քահանայ և զորդին իւր բարեմիտ Ստեփաննոս քահանայ։

Արդ, յերես անգեալ աղաչեմ զամենեսեան զսուրբ հանդիպողսդ, որք պատահիք տեսութեամբ, կարդալով կամ աւրինակելով՝ յիշեսջիք ի Քրիստոս ջերմեռանդ սրտիւ և քաղցրագութ կամաւք, անմոռաց մտաւք և աստուածահաճոյ աղաւթիւք՝ զբազմամեղ գրիչս Խաչատուր, և զծնաւղսն իմ

* Համանման բովանդակությամբ հիշատակագրություն ծաղկողը թողել է նաև 133ր էջում՝ Ղուկաս ավետարանչի նկարի ներքին լուսանցքում։ Անանուն այս ծաղկողի նկարները, անտարակույս պրիմիտիվ են ու անարվեստ, բայց իրենց ինքնատիպությամբ որոշ հետաքրքրություն են ներկայացնում։

** Դանիէլն ու Տիրաւագը նկարված են 2ա էջի վրա։ Կենտրոնում՝ մեծ դիրքով Քրիստոսն է, աջ կողմում ծալապատիկ նստած է Դանիէլը՝ ձեռքերը ուղղած դեպի Քրիստոսը, ձախ կողմում, հակառակ դիրքով, նստած է Տիրաւագը։

զՅորդանան և զԱղուբն: Այլ և սղալմանց և խոշորութեան գրոյս անմեղադիր լերուք, զի կար մեր այս է։ Եւ ինքն, որ ողորմածն է և առատ ի շնորհըս պարգևաց, առհասարակ, ողորմեսցի ձեզ՝ յիշողացդ և մեզ՝ յիշեցելոցս, ամէն։

ծաղկող՝ Գրիգոր Ծարեցի
վայր՝ Մալեգկերոյ անապատ

Բ

11բ Ծաղկեալ եղև անարժանէ
Ի Ծարեցի Գրիգորէ,
Տեառն Յիսուսի ձեր ծառայէ,
Զողորմութիւն ի ձէնջ հայցէ։
Ով զայս նկարս տեսանէ
Ի մի բերան զաղքատս յիշէ,
Եւ որ յիշէ ուղիղ սրտէ՝
Ինքն զԵկայք ձայնըն լսէ,
Նմա Քրիստոս բարի տացէ
Զողորմութիւնն, որ ի յերկնէ,
Յաջակողմեանն դասեսցէ
Եւ ընդ արդարսն պսակէ։

Գ

213բ Անպէտ Գրիգոր ծոյլ մարմնով,
Որ վարանեալ կամ խորհրդով,
Անուսումբ ի կարգ հրաւիրելով·
Եւ ի գործոց դատարկ գոլով,
Զձեզ աղաչեմ արտասուելով
Յիշել ի տէր ուղիղ սրտով։
Զի ծաղկեցաւ սա ի սուրբ անապատս Մալեգկերոյ:

## 198

## ՊԱՏԱՐԱԳԱՄԱՏՈՅՑ

Փիրղ. Նոտ. 205, Վան՝ Կարմրաւոր Աստուածածնի վանք

գրիչ՝ Յովսէփ
վայր՝ Շահապունք, Կուգոյ վանք

... Արդ, գրեցաւ փրկական խորհուրդ պատարագի ի թուականիս մեր Հայոց ՋԺ. (1461) ամի, ի ձորս Շահապունից, և վանքս Կուգոյ, ընդ հովանեաւ սուրբ խաչիս որ կոչի Հազարաբուրք, և կաթուղիկէ սուրբ Ստեփաննոսի, և սուրբ Աստուածածնին, և սուրբ Նշան սրբոց Քառասնից. ձեռամբ յոգնամեղ և փծուն գրչի և պիտակ անուն Յովսէփ յետին եպիսկոպոսի։

## 199

### ՄԱՇՏՈՑ

*ՀԱ, 1940, այուն. 22*

*ստացող՝* Խաչատուր Շատաւանցի

*Եւ արդ, ես* Խաչատուր Շատաւանցիս *ետու գծագրել զսուրբ գիրքս, որ կոչի Մաշտոց... և ետու զսա ընծայ և նուէր ի սուրբ և ի հռչակաւոր ուխտն ի դուռն Նկարենայ սուրբ Յարութեան, յառաջնորդութեան տէր* Մխիթար *սրբազան եպիսկոպոսին, ի վայելումն հրեշտակակրօն սուրբ կրօնաւորացն և մեր հոգևոր որդոցն՝* Դաւիթենց Ստեփանոս *կրօնաւորին,* Աբրահամ *մահղասում և* Մէլքիսէթ *սրբասնեալ կրօնաւորին, զի նախախնամութեամբ և սրտացաւաբար պահեսցին զսուրբ գիրքս...։ Եւ արդ, մի ոք իշխեսցէ հեռացուցանել զսուրբ Մաշտոցս ի դրանէ Նկարենայ սուրբ Յարութեան, ո՛չ յեպիսկոպոսաց, և ո՛չ ի հէրպէտաց, ո՛չ ի կարգաւորաց, և ո՛չ յաշխարհականաց։*

## 200

### ՃԱՇՈՑ

*Ալիշան, Հայկաբան,*
*Զարպաղ գիւղ Ումիոյ*

*գրիչ՝* Յովհաննէս
*վայր՝* Արճէշ

*Ստացող՝ աթոռակալ սուրբ Բարդուղիմէոսի* Հայրապետ *եպիսկոպոս, որդի* Ստեփանոս *քահանայի և* Զուլալ-Խաթունի, *գրիչ՝* Յովհաննէս *քահանայ, գրակազմ՝* Վարդան, *յերկիրն* Քաջբերունի, *ի յ*Արճէշ *քաղաքի, ընդ հովանեաւ սուրբ տաճարին Գէորգեայ զօրավարին, ի հայրապետութեան* Զաքարիայի, *ի փաթշահութեան* Ջհանշահի:

## 201

### ՃԱՇՈՑ

*Ղ. Փիրղ. Նշխարք պամ. հայոց. Բ*
*Երևան 4515, էջ 183*

*Ես՝* Պօղոս *վարդապետ ծառայ աստուծոյ և* Ղազար *Վարդապետին, վկայութեամբն աստուծոյ և սուրբ Յովանիսին և արհիեպիսկոպոսին* Բաղիշու *տէր* Յովանիսին, *և* Մկրտիչ *վարդապետին* Արծկոյ *Սքանչելագործին, և խոջայ* Կարապետին, *և ուսթայ* Յակոբին, *և խօջայ* Մկրտչին, *և* Մկրտիչ *վանից հօրն, և* Յովանէս *եկեղեցբանին վկայութեամբ, և* Գրիգոր *աբեղային, և խօջայ* Ամիր-Եսայուն, *և իմ ազբօրն* Աղուպշային: *Ես* Պօղոս *վարդապետս և* Յովանէս *աբեղայն գնացաք ի ժողովք և եկաք ի վանքս. և տուի զիմ երեք սուրբ Նշանն, զերեք. և չորս մասն տուի ի ժողովոց տեղն ,ի Ռ. ու ՋԾ. (1600) թանգի տեղն զիմ հալալ ապրանքն։ Եւ վկայութեամբ*

Բաղիշու աւադ երիցանումն՝ տէր Մխիթարին և տէր Մելքիսեդին, և առի ղՇարակնոցն և զձին եարաղովն. ոչ ոք չիշխէ հեռացնել ի սուրբ Յովանիսի դրանէն։

Ի թվ. Հայոց ՋԺ. (1461), աւագ պահոց հինգշաբթի օրն, առաջին շաբթումն, հռովմայեցւոց ի փետրվար ԺԹ. (19)։ Ով ի յայս ղավլէս ի դուրս ելանէ՝ Ռ. (1000) թանդայ տուգանք տայ ամիրին։

## 202

## ԱՒԵՏԱՐԱՆ

Փիրղ. Նշխարք, էջ 181—182, Նօա. 198, «Թորոս աղբար», Բ, էջ 265, Բաղէշ՝ ի Կարմրակ եկեղեցի

գրիչ՝ Վարդան
վայր՝ Կողուց վանք

Փառք... որ ետուր կարողութիւն մեղսամակարդ գծողի Վարդանի բանի խնդրողի հասանել յաւարտս այսմ աստուածախօս տառի, որ շարագրեցաւ ի խնդրոյ աստուածասէր և երկիւղած Սիոն միակեցին։ Եւ ես՝ յոգնամեղս և փցունս ի գրչաց Վարդան աբեղայ՝ կատարեցի ըստ իմում կարի զխնդիր սորա շնորհօք և ողորմութեամբն աստուծոյ, ի թուականիս Հայոց ՋԺ. (1461) ամի, յամսեանն մեհեկի։

Արդ, եղև սկիզբն սորա ի վանքս որ կոչի Կողուց, ընդ հովանեաւ սուրբ Լուսաւորչի և կարմիրակն սուրբ Նշանի, որոց խնամօքն աւարտեցի։ Յիշատակ բարի իւրն (Սիոն միակեցին), և ծնողաց իւրոց՝ Քուրդեայշին [և] Շուխուրին..., գրչիս Վարդանի, և իմ ծնողացն Ստեփաննոսի և Մելիքի...: Աբեղայն զՍարգիս՝ կոկող քարտիս յիշեցէք ի յաղօթս ձեր։ Ի ժամանակս, որ զաջն (Լուսաւորչի) ի Սսոյ բերին ի յէջմիածինն, ի հայրապետութիւն տէր Գրիգորի, ի թագաւորութիւն Ջհանշի, որ ազգս քրիստոնէից ի հալածական կայր ի մէջ անօրինաց։

## 203

## ՄԱՇՏՈՑ

Երևան 7846

ա

գրիչ՝ Գրիգոր
վայր՝ Աղթամար

... Եւ արդ, ես՝ ամենամեղս և անարժանս ի մէջ կարգաւորաց Գրիգոր անպիտան և մեղուցեալ քահանայ՝ ըստ իմում տկարութեանս յանձն առի և ամենակարող զօրութեամբն Քրիստոսի կատարեցի մեղսամած մատամբ
397բ իմով յաստուածապահ || կղզիս Աղթամար, ընդ հովանեաւ ամենայաղթ սուրբ Խաչիս և սուրբ Նշանացս, ի Հայրապետութեան տեառն Զաքարիայ պատրիարգի ամենայն քրիստոնէից, ի թուականութեանս Հայոց յինն հարիւր և Ժ. (1461)։



11—94

*Եւ արդ, աղաչեմ... յիշեցէք ի սուրբ յաղօթս ձեր [զստացող սորա]*
*զ*Խաչատուր Շատւանցին *և զծնողսն իւր զ*Խաչեր *և զ*Խաթուն-Մէլէք, *և*
*զկենակիցքն իւր զ*Արղուն *և զ*Շաքար, *և զզաւակսն իւր զ*Յովանէս *տարա-*
*ժամ հանգուցեալն և զ*Դովլաթ, *զքոյրն իւր զ*Թանկ-Խաթուն, *և զդուստր*
*նորին զ*Փաշայ, *զ*Պապիկն, *զ*Պարոնշան, *և զորդի նորին զ*Թումայ, *զմոր-*
*քոյրն զ*Աւագտիկին, *և զորդին զ*Թումայ, *զեղբայրն* Յովանէս, *զ*Մկրտիչ
*կրօնաւորն, զ*Ստեփանոս, *և զդուստրն իւր զ*Մարգարիտ, *և զայլ ամենայն*
*ազգատոհմքն նորա և զարեան մերձաւորքն՝ զկենդանիսն և զհանգու-*
338ա *ցեալսն յիշեցէք ի Քրիստոս, և լի բերա||նով աստուած-ողորմի ասացէք...։*

*Ընդ նոսին և զբազմամեղ ոգի* Գրիգոր *գծագրող սորա աղաչեմ յիշել ի տէր ... նաև զծնօղքն մեր՝ զ*Խաչիկ *և զ*Ազիզ-Մէլիք, *և զեղբայրն իմ՝ զհռչակաւոր քարտուղարն զ*Թումայ *կրօնաւորն, որ ուստից զարուեստ դըր-չութեանս, և զորդին իմ զ*Թումայ՝ *այն որ զքահանայաթաղն, [զկ՞]նով[ն]քն և զպսակն գրեաց և աշխատեցաւ ի կոկել թղթին, և զայլ ամենայն ազգատոհմն մեր և զերախտաւորքն, և զայնոսիկ, որք երախտաւորք եղեն մեզ ի պէտս հոգոյ և մարմնոյ...։*

Բ

*ստացող՝* Խաչատուր Շատւանցի

338բ *Արդ, ես՝* Խաչատուր Շատւանցիս *ետու գծագրել զսուրբ գիրքս, որ կոչի Մաշթոց, յիշատակ հոգոյ իմոյ, և ծնօղաց իմոց, և որդոյն իմոյ* Յո-վանիսի՝ *տարաժամ փոխեցելոյն ի Քրիստոս, և ետու զսա ընծայ և նուէր ի սուրբ և ի հռչակաւոր ուխտն ի գուռն Նկարինայ սուրբ Յարութեանն, յառաջնորդութեանն տէր* Մխիթար *սրբազան եպիսկոպոսին, ի վայելումն հրեշտակակրօն սուրբ կրօնաւորացն և մեր հոգևոր որդոցն* Դաւթենց Ստե-փանոս *կրօնաւորին,* Աբրահամ *մահղասուն,* Մէլքէսէթ *սրբասնեալ կրօ-նաւորին, զի նախախնամութեամբ և սրտացաւաբար պահեսցեն զսուրբ գիրքս և լի բերանով աստուած-ողորմի ասասցեն։*

*Եւ արդ, մի ոք իշխեսցէ հեռացուցանել զսուրբ Մաշթոցս ի դրանէ* Նկարինայ *սուրբ Յարութենին, ո՛չ յեպիսկոպոսաց և ո՛չ ի հէրպետաց, ո՛չ ի կարգաւորաց և ո՛չ աշխարհականաց, ո՛չ մերոց և ո՛չ յատարաց. և եթէ ոք յանդգնի և հեռացուցանէ զսա ի դրանէ Նկարինայ սուրբ Յարու-թենին ծախելով կամ գրաւելով կամ այլ ինչ աղագաւ՝ գատապար[տի յաստուծոյ]//***

* *Ձեռագրի 344ա—344բ էջերում պահպանվել է հետագա ստացող «սրբասնեալ ճըգ-նաւոր տէր Ստեփաննոսի» անթվական հիշատակարանը, որը հնագրական տվյալներով, ըստ երևույթին, գրված պետք է լինի ԺԵ. դարի վերջին կամ ԺԶ. դարում։ Այդ հիշատա-կարանում թվարկված են սուրբ Ցարութեան ժամանակակից միաբանները։ Այդ հատվածը մեջ ենք բերում ամբողջությամբ. «Նաև աստուած-ողորմի ասացէք Ցարութենի միաբա-նեացն. նախ՝ տէր* Դաւիթ *արհեպիսկոպոսին, տէր* Ստեփաննոս *արքեպիսկոպոսին, տէր* Ներսէս *արքեպիսկոպոսին, տէր* Գրիգոր *եպիսկոպոսին, տէր* Թումայ *եպիսկոպոսին, մահ-դասի տէր* Մելքէսէթին, *մահդասի տէր* Կարապետին, *մահդասի տէր* Հէրապետին, *մահդասի տէր* Սահակին, *մահդասի տէր* Շառուին, *տէր* Մկրտչին, *տէր* Դաւթին, *տէր* Ցովանիսին, *և միւս տէր* Ցովանիսին, *ամէն...»։*

## 204

### ՃԱՌԸՆՏԻՐ

*Փիրգ. Նշխարք, էջ 184, Նօա. 199—200,*
*Ուշտունիք՝ Ընձաք գիւղ*

*գրիչ՝* Գրիգոր
*վայր՝* Աղթամար

*... Անպտուղս ի բարեաց... անյիշելիս ի գրչաց... սուկանում քաւեալ* Գրիգոր, *որ դձև ունիմ քահանայի... կատարեցի զսա... յաստուածաբնակ կղզիս* Աղթամար*... ի հայրապետութեան տեառն* Զաքարիայի, *որ յայսմ ամի եղև պատրիարք։ Զոր տեսեալ զայսպիսի գանձս աստուածային պատուական և ընտրեալ, երիցս երանեալ առաջնորդ և հերպետ սուրբ ուխտին երաշխաւոր սուրբ Աստուածածնին* Ատոմ *կրօնաւորն, մականուն* Շահմէլիքենց *կոչեցեալ, և ցանկացող եղեալ այսմ տառի... [վասն հոգւոյ իւրոյ], և ծնողաց իւրոց* Շահմէլիքին *և* Եղիսաբեդին...:

*Արդ, ես* Ատոմ՝ *հերպետ սուրբ երաշխաւոր Աստուածածնիս՝ սիրող եղէ այս աստուածային տառիս...։*

## 205

### ԱՒԵՏԱՐԱՆ

*ԼՑՎ 184, սյուն. 436—438, Աղթամար 52*

*գրիչ՝* Ներսէս
*վայր՝* Աղթամար

*... Եւ արդ, ես՝ մեղուցեալ ոգիս, սուտանուն, անարժան և փծուն* Ներսէս *անարհեստ դրիչս, իմով իսկ մեղուցեալ և մեղսամած [մատամբ] գծագրեցի և ողորմութեամբն աստուծոյ աւարտեցի ի յանառիկ կղզիս* Աղթամար, *ընդ հովանեաւ երկնանման եկեղեցւոյս սուրբ Խաչիս, և սուրբ աջերոյս՝* Գէորգայ *և սուրբ Լուսաւորչի աջոյս, որ բերաւ յ*էջմիածնէն *ի տեղս և բազում ողորմութիւն և ուրախութիւն եղև Հայոց ազգիս. ի հայրապետութեան տեառն* Զաքարիայի, *և ի ղանութեան* Ջիհանշայ *պարնի, ի թվականութեան ՋԺ. (1461)։*

*Ցերես անկեալ աղաչեմ զձեզ՝ լի բերանով աստուած-ողորմի ասացէք ինձ, և զծնօղաց իմոց՝ հօրն* Կուլջիբեկին *և* էմնա-Խաթունի, *հարազատ եղբօրն իմոյ տէր* Ստեփանոսին, *և հօրեղբաւրն իմոյ* Ջանբէկին, *և* Հասանին, *և* Ասլանին, *և ամենայն արեան մերձաւորացն մերոց՝ կենդանեացն և հանգուցելոցն առ աստուած։ Ընդ որս և ողորմածն աստուած յիշողացդ և յիշեցելոցս ողորմեսցի առատապէս՝ կրկին կենաւք և երկու աշխարհաւք, որ է արհնեալ, գովեալ և փառաւորեալ յամենայն արարածոց և բնաւին եղականացս և յաւիտեանս յաւիտենից, ամէն։*

*Զմիջնորդ սուրբ Աւետարանիս* զԽաչատուր *և զծնողսն իւր յիշեցէք ի Քրիստոս։ Աղաչեմ յիշել ի տէր աստուած զհոգևոր մայրն իմ* զՓաշայ-Խաթուն *և զծնողսն իւր, և աստուած ողորմի ասացէք։*

## 206

### ԱՒԵՏԱՐԱՆ

Փիրղ. Նոտ. 205, Վան՝ Ցայնկուոնքրի եկեղեցի

գրիչ՝ Կարապետ
վայր՝ Ոստան

... Աստանօր յանկ ելեալ աւարտեցաւ քառաբուխ և քառավտակ աստուածախօս սուրբ Աւետարանս այս, ի Թուաբերութեան հայկազեան տումարիս ՋԺ. (1461), յաստուածախնամ քաղաքս Ոստան, ընդ հովանեաւ Բարի սուրբ Աստուածածնին և սուրբ Ստեփաննոս Նախավկային, ի հայրապետութեան տեառն Զաքարիայի, որ և յայս ամի բերաւ աջ սուրբ Լուսաւորչին ի յԱղթամար՝ ի գուռն սուրբ Խաչին. ի դառն և ի վշտալից ժամանակիս, յորում ի խիստ նեղութեան և ի չար ծառայութեան կամք... ազգս քրիստոնէից։

Իսկ ես՝ ունայնս և թափուրս յամենայն հոգևոր բարեմասնութեանց Կարապետ քահանայ, լուայ զփափագ և զսէր հաւատարիմ Գուհարին, որ առ սուրբ Աւետարանս, և գծագրեցի զսա անարժան ձեռօք իմովք յիշատակ բարի իւրն և ծնողաց...։

## 207

### ԱՒԵՏԱՐԱՆ

Գեա. Մատենադարան, կաթողիկոսական դիվան, թղթ. № 240, վավ. 130, նաև «Արցախ», էջ 139

գրիչ՝ Վարդան
վայր՝ Վան

... Արդ, այսմ աստուածեղէն և երկնապարգև գանձիս և լուսափայլ մարգարտիս <ցանկացող> ցանկացաւ աստուածասէր կինն Մուղալ-Խաթուն և քոյրն իւր Շամշիղամարն, և ետուն դրել զսա յիշատակ բարի հոգւոց իւրեանց և ծնողաց իւրեանց՝ հօր Բաղդասարին և մօրն Սուլտան-Մէլիքին, և Մկրտիչ քահանային և նորին ծնողացն...։ Եւ արդ, ես... սուտանուն քահանայ Վարդան... յանձն առի զԱւետարանս և ողորմութեամբն աստուծոյ կատարեցի ի քաղաքս որ կոչի Վան, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին և սուրբ Վարդան քաջ զօրավարին, ի թուականութեանս Հայոց ՋԺ. (1461), ի հայրապետութեան տեառն Զաքարիայի, որ մին ամ է, որ նստաւ յաթոռ սուրբ Լուսաւորչին ի յէջմիածին, որոյ տէր աստուած ընդ երկայն աւուրս առնէ և մերոյ եպիսկոպոսացս՝ տէր Յովհանիսեանց՝ մեծին և փոքուն...*։

---

* Ձեռագրի նկարագրողը (Մ. Բարխուդարյան*) հայտնում է, որ սույն Ավետարանի առաջին երեսի վրա գրված են եղել սորա բերվող ուշագրավ տողերը. «Գիտի որ Քրիստոնէն կամ հաւատացեալն ի Քրիստոս, որ մեռանի, աշխարհէս գնայ՝ նրայ անման մին խաչ շինեն, մկրտեն, տան եկեղեցին, անուն գրեն. Դ. (4) մսխալ արծաթ լինի կամ Դ. (4) գանկ՝ տան եկեղեցին...»։

## 208

## ԳԱՆՁԱՐԱՆ

*Երևան 4849*

### ա

*գրիչ*՝ Մելքիսէթ
*վայր*՝ Շատուան գիւղ

298բ *... Քրիստոսասէր և հաւատարիմ ծառայն աստուծոյ* Յովաննէս *սրբա-
կրաւն աբեղայն... մեծաւ փափագմամբ ետ գծագրել զսա ի հալալ վաս-
տակոց իւրոց, յիշատակ հոգոյ իւրոյ, ծնաւղաց իւրոց* Բաղդասարին *և*
Շնոհուրին, *և եղբարցն իւրոց* Թումային, *որ յազգմանէ չարին ի երկիրն*
Կեցնա *ուսինն տարաւ և եթող սուգ անմխիթար ծնաւղացն, և* Յովանէս
*կրօնաւորին, և այլ եղբարցն Յոհանիսին*՝ Ստեփանոսին *և միւս* Յովանի-
սին, *որ տարաժամ հասակաւ փոխեցաւ առ Քրիստոս, և քըւերցն* Խալի-
299ա մին *ե.* Շամամին, *և Բ. (2)* Սաեփանոսին՝ *զաւակաց նոցին, և հաւր* ||
*քւերն* Փաշա-Մէլէքին, *և մեծ պապոյն* Աւետիսին, *և* Թանկ-Խաթունին, *և
հոգևոր մաւրն իմոյ* Փաշին, *և երախտաւոր վարդապետին*՝ Մկրտիչ *մուղ-
դասոյն, և ամենայն արեան մերձաւորացն* Յովանիսին՝ *կենդանեացն և
հանգուցելոցն ողորմի Քրիստոս, ամէն։*

*Եւ ես՝ յոդնամեղս և փըծունս ի գրչաց սուտանուն քահանայս* Մելքի-
սէթ, *տեսի զփափագ և զսէր սորա, զոր ունէր առ հոգևորսն, և
ըստ իմում կարի յանձն առեալ կատարեցի շնորհօք և ողորմութեամբն
Քրիստոսի աստուծոյ մերոյ, ի թուականութեան հայկազեան տումարիս
ՋԺ. (1461), ի գեօղս որ կոչի* Շատուան:

*Արդ, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք սմա, լի բերանով աս-
299բ տուած-ողորմի ասացէք* Յովանէս *կրօնաւորին, և ծնօղացն իւրոց... ||...և
ինձ* Մելքիսէթ *սուտանուն քահանայի, և ծնօղացն իմոց* Ստեփանոսի *և*
Գաւհարի, *և զաւակացն իմոց* Սիրունին, Գորգուն *և* Խալինարին, *և եղ-
բարցն և քւերցն և ամենայն արեան մերձաւորացն իմոց ողորմի Քրիստոս
աստուած, ամէն։*

### բ

*ստացող*՝ Յովաննէս Բըծոնց

*Եւ արդ, ես* Յովաննէս *աբեղայս ի գեղէն* Գաւաշից, *ըստ նախնեացն*
Բըծոնց *կոչեցեալ, ետու գիրքս զայս ընծայ և նըւէր ի դուռն սրբոյն Վար-
դանայ զաւրավարին, յառաջնորդութիւն սուրբ ուխտին* Մէրուն *սրբակրաւն
աբեղային, և հեզահոգի* Ատոմ *կրօնաւորին, և* Յոհանէս *կրօնաւորին՝ ազ-
դականացն իմոց, և այլ կրօնաւո[րաց]///*

## 209

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Փիրդ. Նոտ. 206, Կարին՝ Աստուածածնի եկեղեցի*

*գրիչ՝* Կարապետ
*վայր՝* Խաղտեաց գաւառ, Պալախորու վանք

*... Արդ, դրեցաւ սուրբ Աւետարանս ի թուականութեանս Հայոց ՋԺ. (1461), ի գաւառս* Խաղտեաց, *ի սուրբ անապատս որ սուրբ Գէորգ կոչի, որ* Պալախորու *վանք ասի... զսուտանուն գրչաւորս* Կարապետս *և զուսուցիչն իմ...։*

*Եւ վասն անբարի և դառն ժամանակիս յորում եմք՝ չէ բնաւ կարողութիւն պատմել կամ ընդ գրով արկանել, յորում ժամանակի նեղին ազգն քրիստոնէից երեքալեան թշուառութեամբ՝ սովով... և այլ ազգի ազգի վշտօք և նեղութեամբ։ Վա՜յ մեզ, և դարձեալ վա՜յ. զի կատարեցաւ մարգարէութիւն Հոգելից առն աստուծոյ սրբոյն Ներսէսի, որ վասն քրիստոնէից, թէ յամենայն կողմանց նեղին և փոփոխին տեղւոջէ ի տեղիս, և հանգիստ ոչ գտանեն...։ Ահա կատարեցաւ ամենայն, զի ասեմք լերանց, թէ անկերուք ի վերայ մեր և բլրոց, թէ՝ ծածկեցէք զմեզ վասն սաստիկ նեղութեանս. և վասն կարի <և> անբարի ժամանակիս այս բաւական լիցի, եղբարք։*

## 210

### ՃԱՇՈՑ

*Երուսաղէմ 12*
*Ա. Սիւրմէեան, Մայր ցուցակ, Ա, էջ 100*

*գրիչ՝* Սիմէոն քահանայ
*վայր՝* Երուսաղէմ

897բ *Դարձեա՛լ աղաչեմ զձեզ յիշեցէք ի Քրիստոս զտէր* Սարգիս *եպիսկոպոսի մայրն՝ զ*Փաշա-Մելիքն Եզընկայցի, *որ եկի յ*Երուսաղէմս *և բերի արծաթի սկիհ մի և եդի ի սուրբ Յակոբս յիշատակ ինձ և որդոցն իմոց* Ըստակիսի, *և* Խաւճին, *և* Ըղզլու-Մելիքին: *Եւ եթէ ոք յանդդնի, կամ ծախէ, կամ գրաւնէ, կամ հանէ, նա զպատիժն ղՅուդային առցէ և զԿայենին։ Գրեցաւ ի թվ. ՋԺ. (1461), ի հայրապետութեան տէր* Կարապետին *և յեպիսկոպոսութեան տէր* Պետրոսի, *և Քրիստոսի աստուծոյ մերոյ փառք յափտեանս, ամէն։*

## 211

### ՎԻՃԱԿԱՑՈՅՑ

*Երևան 3884*

*գրիչ՝* Ստեփանոս

221բ *... Գրեցաւ գիրքս ռուամի ձեռամբ անարհեստ և փըծուն գրչի* Ստեփանոս *անմիտ աբեղայի, որ հոգիս կու այրի ի բոց հնոցի, վայ զիս ի յա-*

*տւրն դատաստանի, թէ զին՞չ տի լինիմ ի յահեղ ձայնէն Յիսուսի, թէ երթեայք ի հուրն յաւիտենից (՞), աստուած ողորմի այն մարդւոյն, որ մեզ ասէ ողորմի, թէ մեզ ասէ ողորմի՝ նայ իւր մեղքն եւս ոչ յիշեսցի, ամէն։*

*Գրեցաւ ի թիւս Հայոց ՋԺ. (1461)։ Լաւ պահօզն ուրհնի յաստուծոյ, ամէն։ Ապա շահ չեմ տեսել իսկի*։*

## 212

### ՇԱՐԱԿՆՈՑ

***Երևան 1608***

*գրիչ՝* Յոհանէս

319ա *Արդ, գրեցաւ սակաւ գիրս ձեռամբ* Յոհանէս *աբեղի, ի վայելումն տէր* Սարգիս *կրաւնաւորի, զոր տէր աստուած վայելել տացէ նմայ, ամէն։*

*Թվ. ՋԺ. (1461), հոկ[տեմբերի] ԻԲ. (22)։*

## 213

### ԱԻՕՏԱՐԱՆ

***ԼՑՎ. 106, սյուն. 22, Վան՝ Ցայնկոյսների եկեղեցի***

*հետ. ստացող՝* Յովանէս

156բ *Ձվերջին ստացաւղ այսմ լուսազարդ և կենսաբեր սուրբ Աւետարանիս զաստուածապաշտ և զհաւատարիմ տանուտէրն* զՅովանէսն *և զքեռին իւր* զՍիմեոնն*, որ ստացան զսա ի հալալ ընչից իւրեանց, յիշատակ բարի հոգոց իւրեանց, և ծնաւղաց իւրեանց՝ հաւրն* Գրիգորին *և մաւրն* Շնաւճւորին, *և որդոյն* Աստուածատրուն, *և կենակցին իւրոյ* Թագուհոյն, *և զեղբաւրորդոյն իւրոյ* Թումային*...։*

*Ի թվ. ՋԺ. (1461)։*

## 214

### ԱԻԵՏԱՐԱՆ

***Երևան 9717***

*գրիչ՝* Ստեփանոս

ա

*Ի թվականիս Ջ. և ի Ժ. (1461)**։*

*... Արդ, այսմ անմահական ըմբելոյ և անգին մարգարտիս և ամենա-*

284ա *գով գան||ձիս փափաքաւղ եղեալ աստուածասէր և հաւատարիմ տանուտէր ներկարար* Քարիմադինն *և կողակիցն իւր* Շաեզադէն. *և ետ գրել*

** Ձեռագրի ընդօրինակությունը և զանազան նոր նյութերով լրացումը տևել է երկար տարիներ. 76ա էջի մի հիշատակագրության մեջ գրիչը հայտնում է, որ «Գրեցաւ տետրիկս ՋԻԷ. (1478) թվին, ձեռամբ անարհեստ և փծուն գրչի* Ստեփանոս *խաբեղի և ոչ աբեղայի»։*

*** Թվականի մասին ավյալը գրված է 283բ—284ա էջերի ստորին լուսանցքում։*

զաստուածային խաւս՝ զսուրբ Աւետարանս յիշատակ անջինջ և բարեխաւս առ միածին որդին աստուծոյ և բարէխաւս յաւուրն ահեղ դատաստանին և ազնական յամենայն ատենի՝ տանն և ընդանեացն, և ազատել յամենայն որոգայթէ և յաւուր ոգեվարի։

Արդ, աղաչեմք զհաղիպողքդ, որ կարդաք և աւրինակէք յիշեցէք ի սուրբ յազաւթս ձեր ստացող սուրբ Աւետարանիս և զծնողսն նոցա զՎարդանէսն և զԽաթուն-Մելիք՝ զփոխեցեալսն առ Քրիստոս, և զՇահզադէն, և զծնողսն իւր զՅովսէփն և զՄըսըր-Մելիքն, այլ և զորդիսն իւրեանց՝ զծաղկեալ զաւակսն զԹաժդին և զՆասրադին, և զեղբայրքն, որ նահատակեցան՝ զԱմնադին և զՏոդատ, այլ և զամենայն ազգականս իւրեանց՝ զկենդանիս և զհանգուցեալսն։ Եւ լի բերանով աստուած-ողորմի ասացէք և Քրիստոս աստուած զձեզ յիշէ, և զՍտեփանոս գրիչ, և զծնողսն մեր։

ծաղկող՝ Մարտիրոս

Բ

2ա Ո՜վ սուրբ կոյս տիրածին յիշեայ զքո անարժան ծառայս... զՄարտիրոս Պո. (՞), այլ և զամենայն դաւանողս քո, ամէն*։

Գ

15բ Որք համդիպիք յիշեցէք զստացող սուրբ Աւետարանիս ի Քրիստոս**։

Դ

23բ-- Ո՜վ հանդիպողք, յիշեցէք զմեզ ի բարին Քրիստոս || զտէր՝ Ստեփա-
24ա նոս պատուական քահանայ և զՄարտիրոս անարժան ծառայ Պո. (՞)***։

## 215

### ԱՒԵՏԱՐԱՆԻ ՀԱՄԱԲԱՐԲԱՌ

Երևան 7953

հետ. ստացող՝ Ստեփանոս

1բ ... Արդ, աղաչեմ զձեզ, եղ[բ]արք, զիս՝ զանարժան քահանայս զՍտեփանոսս, որ եմ անուամբս և չեմ գործովս յիշեցէք...։

Գրեցի զայս չափ բանս ի թվ. Հայոց ՋԺԺ. (1461), ի պարնութիւն Ջանանշայի, կաթողիկ[ոս]ութիւն տէր Գրիգորի...:

---

* Գրված է «Ծնունդն փրկչին» նկարի տորին լուսանցքում։

** Գրված է խաչափայտի նկարի ստորին լուսանցքում։ Խաչի ցածում, ձախ կողմը, նկարված են՝ «աւետար[անի] ստացող[քն]», իսկ աջ կողմում, «պսակեալքն» մակագրությամբ, հավանորեն ստացողների նահատակված Ամնադին և Տոդատ դավակները։

*** Գրված է Մատթեոս ավետարանչի նկարի և առաջին էջի ստորին լուսանցքում։



*ՋԺԱ* **1462**

**216**

*Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն*

*Բոմբեյ. ս. Գէորգ եկեղեցի, Մ.Տ.Մ.*

*գրիչ՝* Դաւիթ
*վայր՝* Տփխիս

ա

318 *Զստացող սուրբ Աւետարանիս* Վարդան *քահանայս, և ծնաւղքն մեր՝ զհայրն մեր* Յովաննէս *և զմայրս մեր* Հաւաս-խաթուն, *և զկողակիցն իմ* զՄարքայ-խաթուն, *և զաւակսն իմ* զԴիրսամ, *և* զԱլէքսանոս, *և* զՇոստակէս, *և զեղբայրն իմ* զՄարշէն *և* զՄկրտիչ, *և զննջեցեալքն մեր* զԱղուտ, Մրվան, Բաղշիկ, Ստեփանոս, *և զփոխեցեալն ի Քրիստոս* զՄկրտիչ *աբեղայն, որ Աւետարանիս համար կանգնեցաւ Ծ. (50) թանկով... և զփըցում գրիչս զսուտանուն* Դաւիթ *աբեղայս,* Փայտակարան, Տփխիս *յիշեցէք(՞)։*

Բ

676—68[illegible] *||| Ոմն* Դաւիթ *քահանայ, և էր ի յարքայանիստ* Տփխիս, *ընդ հովանեաւ հրաշափառ կաթուղիկէ Միրանօր սուրբ Աստուածածնիս և բազմայհաւաք սրբոց, ի հայրապետութեան տեառն* Զաքարիայ *կաթողիկոսի, և յառաջնորդութեան տէր* Ղուկաս Հաղբատայ *արհեպիսկոպոսի, և ի թագաւորութեան Վրաց* Գիաւրգու, *ի թվ. Հայոց ՋԺԱ. (1462) և ի քրամիկոնն ՃԾ. (150), ապրիլի ԻԲ. (22), զատկի շաբթին, որ զսեւ զատիկ արարաք։ Հինգշաբաթ աւրն Ռ. (1000) թուրք մարդ էր եկել ի* Լաւերն՝ *ի ջրի տարին յետև թափել. Ի. (20) ձիաւոր էր եկել թաբով զգյդան (՞)* զՀաւնալայու *տաւարն տարել։ Եւ ձէն ընգաւ քաղաքս, թէ քիչ հեծել է. ի քաղաքէս ԲՃ. (200) լաւ տղամարդիկ ի դուրս ելան յետնէ՝ ինչուր ի* Լաւերն՝ *ի ջրի էն դէհն գնացին հետևակ, դադրած, նետերն հատած և անաբող (՞) և անսլեհ*, անկասկածի իմ մեղացն և իմ չար գործոցն։ Եւ մեծ հեծելն ի դուս էին եկել, և երկու դիմաց բոլորել, և զամէն կոտորել և ի սուր քաշել, և զամենոց գլուխն տարել։ Վա՜յ ինձ զէն աւուրս սուքն, զլացն ով կարէ բերան պատմել, որ զէն տղամարդիկն անգլուխ և մերկ բերէին դասու ի դաս, հէնց որ ոչ ով զիւր մեռելն չկարէր ճանաչել։ Եւ զայն աւուր լացն, զողբն ոչ ով չի կարել պատմել, վայ ինձ Ռ. (1000) բերան։ Քրիստոս որդին աստուծոյ սուրբ Աւետարանիս բարեխաւսութեամբ զիւրեանց հոգին՝ էն սուրբ նահատակաց ու արեամբ ներկեալ մարտիրոսացն դասակից ու պսակակից արասցէ, ամէն։*

*Ես զսուտանուն* Դաւիթ *քահանայս, որ* զԱւետարանս *գրեցի, մի բերան աստուած-ողորմի հրամայեցէք, ...ի դառն և ի դժար մահտարաժամիս և կոտորումն զատկի հինգշաբթիս։ Ախ վա՜յ, ախ վա՜յ, ի՞նչ անեմ գերիս։*

* *Մ.Տ.Մ.-ի մոտ «անսլեհ»։*

## 217

### ԱՒԵՏԱՐԱՆ

*ԼԹՎ 87, այուն. 172, Վարագ 100*

*Հետ ստացող՝* Գրիգոր Գաւեցի

*Ի թվականութեանս Հայոց ՋԺԱ. (1462) ես՝* Գրիգոր *երէց* Գաւեցի *տեսի զսուրբ Աւետարանս և փափաքող եղէ սմա, որպէս մնեղջեր ի յաղբերս ջուրց. և ստացա զսուրբ Աւետարանս ի հալալ արդեանց իմոց յիշատակ ինձ, և ծնաւղաց իմոց՝ հաւրն իմոյ* Գաւզալբէկին *և մաւրն իմոյ* Տուրփին, *և եղբարցն իմ* Գուլամբէկին *և* Աստուածատրին, *և կենակցին իմոյ* Աւխայ-խաթունին, *և ի վայելումն անձին իմոյ՝ մեղաւոր* Գրիգոր *երիցուս։ Արդ, որք հանդիպիք այս աստուածաշունչ Աւետարանիս կարդալով կամ աւրինակելով յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զվերոյգրեալսդ և միով բերանով աստուած-ողորմի ասացէք։*

## 218

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Գանձակ, Ս. Յովհաննէս եկեղեցի № 5, Մ.Տ.Մ.*

*գրիչ՝* Տիրատուր
*վայր՝* Տեպուր գիւղ *(Լոռի՞)*

ա

*... Գրեցաւ սուրբ Աւետարանս ի թվ. Հայոց ՋԺԱ. (1462)։ Ես՝ տէր* Յոհանէս *երիցոյն, որ ի* Շամշուլղէ *նահատակեցին՝ նորա կողակիցս* Նրշ///ս *ստացայ զսուրբ Աւետարանս յիշատակ որդոյ իմոյ՝ տէր* Ստեփանոսին, *և* Յովսէփին, *և* Ոսկէվանին, *և* Սադաղին, *և* Ռոստէվանին, *և* Թումին, *և քվերն իմ* Դէղայխաթունին *և* Բէկիխաթունին, *որ ի աստուած փոխեցաւ, և* Խաթունին, Մամախաթունին, Ջամէլիֆին *և* Խանմէլիֆին, Ղըզլայրբէկին, Շանզատին, Զինարին, Սադաղին, Անայխաթունին, *ծնողացն մեր* Զէրին*, Աւաքտիրին, Տէրտէրին *և իւրեանց ննջեցելոցն, ամէն,* Գուլիստանին։

բ

*... Յորժամ մեծ թուականն Հայոց ՋԺԱ. (1462), ի թագաւորութեան Հայոց**, և ի խանութեան* Ջահանշի, *և հայրապետութեան հայոց տէր* Գրիգորի *գրեցավ սուրբ Աւետարանս ի հուչակաւոր ի գեաւղս* Տեպուրս, *վասն սուրբ Աստուածածնիս... յիշատակ* Տիրատուր *աբեղայի...****։

---

* *Թերևս կարդալու է՝ «ծնողացն Մերչերին»։*

** *Տեղ է բաց թողնված։*

*** *Գրիչ Տիրատուր աբեղան մի այլ հիշատակագրության մեջ իրեն կոչում է «Աստ-*
*վածատուր»։*

Գ

... Գրեցաւ սուրբ Աւետարանս ի խանութեամբ Ջանայնշային: Արդ, ես՝ անպիտանս յամենայնի և վերջինս ի ծնունդս եկեղեցոյ Տիրատուր աբեղայս, աղաչեմ ղսպասաւորք սուրբ սպր (՞) նշանին Հախբաայ... յիշեցէք և զվարպետն մեր Դանիէլ վարդապետ և Յովանէս Սանահնեցի վարդապետ մեր///

Դ

Տէր աստուած ողորմի պարոն Թամար դէփալին և Ալէքսանդրէ թգօ-րին, ամէն։

Ե

Աստուած ողորմի Որդու-խաթունին, աստուած ողորմի Ագալ-Մուսուն, ամէն, Նստուխին:

Զ

Տէր աստուած ողորմի Շանրիարի դստերն Ջինան-խաթունին, որ Աւետարանիս մեղար երետ։ Աստուած վիպ մեղքն թողու, ամէն*։

## 219

## ՍԱՂՄՈՍԱՐԱՆ

ՄՑՎ 37 (625), հա. Ա, 216

գրիչ՝ Գաբրիէլ
վայր՝ Յովհաննավանք

... Ի յետն[ե]ալ գարու թուայբերութեանս խոսրովայեան տոմարիս ՋԺ[Ա] (1462) եղև գրաւ գրչութեան աստուածաճեմ բուրաստանիս, ձեռամբ յոգնամեղ և բազմադէմ խոցիւ խոցեալ սատանուն Գաբրիէլ աբեղայ[ի], վա՜յ ինձ, որ անուամբս միայն եմ աբեղայ և ոչ գործով։ Գրեցաւ ի վանքս Յովհաննու, ի դրան շնորհաբար սուրբ Կ[ի]պրիա[նոսի]///

## 220

## ՇԱՐԱԿՆՈՑ

ՄՑՀ հա. Բ, 11, էջ 51, «Սիոական», էջ 487

գրիչ՝ Յուսէփ
վայր՝ Շահապունից ձոր, Գուգոյ վանք

305 ...Արդ, դրեցօ սա ի թվականիս Հայոց ՋԺԱ. (1462), ձեռամբ անարհեստ և փցուն գրչի Յուսէփ յետին եպիսկոպոսի, ի ձորս Շահապունից, ի վանքս Գուգոյ, ընդ հովանեօ սուրբ Խաչիս որ կոչի Հազարաբուրք, և Կաթուղիկէ սուրբ Ստեփանոս[ի], և սուրբ Աստուածածնի, և սուրբ Նշանիս Քառասնից, և նշխարաց սուրբ Վարդանանց։ Անմեղադիր լերուք խոշորութեան և սխալանաց սորա, զի դառն սրտիւ գրեցի, զի վշտացած ի սուտ եղբարց և սուտ ընկերաց, և չիւարաց երկու դիմաց՝ ի հոգոյ և մարմնոյ, և ճար չունիմ քան զՔրիստոս, նորին յօդնականութեամբ և աղօթիւք ամենայն սրբոց նորա։

* Ձեռագրում եղել են նաև մի քանի տող վրացերեն հիշատակագրություններ։

## 221

## ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

*Երևան 1771**

*Ա. Դավրիժեցի, Պատմութիւն, 1884, էջ 324—329*

*Բ. Կիւլէսերեան, Ցուցակ Անկիւրիոյ, № 160, սյուն. 797—800 (թերի)*

*ստացող՝* Թումաշայ
*վայր՝* Արճէշ

307ա *... Արդ, զայս ամենայն բարութիւնս տեսեալ, զոր աստ հաւաքեալ*
*կան, բարէսէր մահդասին խոճայ* Թումաշէն *և ցանկացաւ այսմ երանա-*
*ւէտ մեծութեանս և փարթամութեանս... ետ գրել զայս աստուածաշունչ*
*արանց պատմութիւնս ի հալալ արդեանց ե քրտնավաստակ աշխատու-*
*թեանց իւրոց՝ յիշատակ իւրն, և ծնօղաց իւրոց* Սուլթանշին *և* Խոնդ-
ֆարին, *և եղբարցն* Ամիր-Մէլիք *մահդասոյն,* Նուրադնին *և* Պաղտա-
307բ սարին, *և քուերցն* Սալչուկ-Խոնդին *և* Խոնծին, *և || ամենայն արեան մեր-*
*ձաւորաց նորին՝ կենդանեաց և հանգուցելոց***։*

*Արդ, գրեցաւ սուրբ դիրքս յամի թուականութեանս Հայոց ի յիննհարիւր և ի Ժ. (1461) ամին, յերկիրս* Քաջբերունոյ, *ի քաղաքս յ*Արճէշ *ընդ հովանեաւ ամէնաւրհնեալ սուրբ Աստուածածնի տաճարիս. ի հայրապետութեան տեառն* Զաքարիայ *կաթողիկոսի ամենայն Հայոց, և ի բռնակալութեան ազգին նետողաց* Ջըհանշահ *փաթշահին, որ էլ բազում հեծելք և անթիւ զօրաւք, և գնացեալ եմուտ ի տունն* Իրաղայ, *և զամենեսեան գրաւեաց ընդ ձեռամբ իւրով, և հասեալ ի մեծ քաղաքն* Ասպահան, *որ է* Շօշ *քաղաք, յոր մարգարէն Դանիէլ զտեսիլն ետես, որ էր ամուր և բազմամարդ։ Որոց ընդդիմացեալ նմա պատերազմեցան, և յաղթեալ նոցա՝ առ զքաղաքն, և զամենայն զօրսն սրոյ ճարակ տուեալ և ի սուրբ սուսերի մաշեալ՝ քանդեալ և աւերեալ, և զջուր գետոյն կապեալ ի վերայ քաղաքին, զի որք ի նըղմունս և ի ներքնատունս և ի դարանս մտեալ էին և թաքուցեալ՝ ամենեքեան ջրասոյզ հեղձամղձուկ եղեալ սատակեցան։ Որ ե քաղաքն ամենայն տապալեցաւ ի վերայ նոցա, զի հողաշէն էր։ Եւ անդի գնացեալ եմուտ ի* Հէրէ *և ի* Խորասան, *ե. զամենայն տունն թաթարաց նուաճեաց ընդ ձեռամբ իւրով, և դարձեալ եկն ի թախթն իւր՝ ի քաղաքն շահաստան, որ է* Թաւրէզ:

*Որոյ ընդ յառաջ գնացեալ մեծ հայրապետն տէր* Զաքարիայն՝ *աթոռակալ սուրբ խաչին* Աղթամարայ, *որ էր թագաւորազն՝ ի թոռանց և ի շառաւեղէ արքային* Գագկայ՝ *բազում ընծայիւք և պատարագաւք։ Զոր յոյժ սիրով ընկալաւ զնա արքայն արքայից* Ջըհանշահ *փաթշահն և դըշխոյն* Բէկում-Խաթունն, *և պատուեալ մեծարեցին զնա և ետուն նմա խըլայ և պարգև զաչ սուրբ Լուսաւորչին մերոյ՝ զսրբոյն Գրիգորի և զպատիւ պատրիարգութեանն։ Որոյ՝ առաջնորդութեամբն աստուծոյ և կամաւ*

---

** Ձեռագիրը 1051 թվականին ընդօրինակված պատմական, քարոզչական և այլ արժեքավոր նյութերի ժողովածու է, որի 307ա—312բ էջերում ընդօրինակված են մի քանի հիշատակարաններ Լուսավորչի աջը Սսից գողացվելու, Էջմիածին տարվելու և հարակից դեպքերի մասին։*

*** Ա. Դավրիժեցու Պատմությունից այս հատվածը բացակայում է։*

308ա սուրբ Լուսաւորչին և հրամանաւ փաթշահին՝ եկեալ յաստուածարեալ և || յաստուածանկար սուրբ Գրիգորաշէն և երկնահանգէտ կաթուղիկէ սուրբ Էջմիածինն՝ յառաքելաշնորհ աթոռ սրբոյն Գրիգորի, և նստաւ ինքնակալ պատրիարդ ընդհանուր ամենայն քրիստոնէական ազգի, որք են ընդ ամենայն ոլորտս տիեզերաց, և արարեալ զաշխարհս ամենայն լինել մի հօտ և մի հովիւ՝ ըստ բանին տեառն. և հովուէր զամենեսեան ի հաւատ ուղղափառ Նիկիական սուրբ դաւանութեանն*։

* Երևանի № 4779 ձեռագրի մեջ, որպես սպրդանակ (տե՛ս էջ 348—349), օգտագործված է Զաքարիա կաթողիկոսի կոնդակը, ուղղված հոգևոր թեմերից մեկի ժողովրդին, տէր Կիրակոսին և Աբրահամ մուղդասուն նվիրակության ուղարկելու կապակցությամբ։ Կոնդակի մեջ Զաքարիան պատմում է Էջմիածնի գահին տիրելու և երկու աթոռների միացման պատմությունը։ Նկատի ունենալով վերոհիշյալը և այն, որ կոնդակը մեզ հասած նման կարգի վավերագրերի շարքում հնագույններից մեկն է, ստորև մեջ ենք բերում նրա ամբողջական ընդօրինակությունը։ Կոնդակը բավականին տուժել ու խուզվել է պահպանակ դարձվելու ժամանակ։ Պահպանվածը այս է.

«(էջ 349ա) /// անդ պարին ի փառս ամենասուրբ երրորդութեանն։

Այլ և ամենայն աւրհնութեան աղբիւրն աւրհնեսցէ զձեզ յայս աշխարհիս՝ տամբ և տեղօք, զարմօք և զաւակօք, դաշտաւք և խոստակօք և ամենայն գոյիւք, ամէն։ Այլ և աւրհնեսցէ զձեզ աստուած ի հոգի և ի մարմին, ի բանս և ի գործս, ի կեանս և ի մահ՝ աստ և ի հանդերձեալն։ Եւ բառնա ի ձէնջ աէր աստուած զամենայն պատուհաս յանցանաց՝ զսով, զսուր, զգերութիւն, զմահտարաժամ, զթըթու ր, զղալուկ, զժանգ, զմարախ զջրբե[ակ], զկայծակն, զկարկուտ և զամենայն պատուհաս, որ զ[ալ]ոց է ի վերայ աշխարհի վասն մեղաց մերոց։ Եւ յետ [աս]ածացս ելանելոյ լսել տայ ձեզ զեւթնալիր զբրա[ն]աւէտ բարբառն, որ ասէ՝ Եկայք աւրհնեալք հաւր իմ[ոյ և] ժառանգեցէք զանսպառ ուրախութիւնն, զի քաղցեա և ետուք ինձ ուտել, ծարաւեցի և արբուցէք ինձ, աւտար էի և ժողովեցէք զիս, մերկ էի [և] զգեցուցէք զիս, հիւանդ էի և տեսէք զիս, ի բան[դի] էի և եկիք առ իս։ Եւ թէ՝ Ազնիւ ծառայք՝ բարիք և հաւատարիմք՝ եկայք, մտէք յուրախութեան ձերու[մ°[, որով արժանի արասցէ ձեզ, և զամենայն եկեղեցիս ուղափառաց տեսանել զարարիչն ամենայնի, որ քաղցր է և [ող]որմած ամենայն քրիստոնէից ազգաց, մանաւանդ տառապեալ ազգիս հայկազեան հրեշտակական պարա[կ]ցութեան և անդրանիկ հոգոյն ցնծութեամբ և միութեան երկնաւոր թագաւորին և փեսային Յիսուսի Քրիստոսի աստուծոյն մերոյ, ամէն։

Գիտութիւն լինի ձեզ ամենեցուն՝ մեր ի Քրիստոս աստուած հաւատ[ոյ] իմ յոյժ սիրեցեալ ըստ հոգոյ որդիք՝ բազմաչարչար երկամբք ծնունդ աւետարանաւն ի Քրիստոս սրբոյն Գրիգորի Լուսաւորչին մերոյ՝ գերապատիւ և գերա ||| եպիսկոպոսք, վարդապետք և քահանայք, ռայիսք, տանուտէրք, արուեստաւորք և հողագործք՝ մեծ և փոքր։ [Որ]դին միածին Յիսուս Քրիստոս տէրն մեր առաջնորդեաց մեզ և շնորհաց արժանի կացոյց շնորհօք սուրբ Լուսա[ւորչին/// (այս էջի շարունակությունից պահպանվել են միայն մի տողի վերին տառամասերը, կարծում ենք, թե այնտեղ հիշատակված է Ջհանշահի անունը—Լ. Խ.)։

(348բ) /// և կամէին սպանանել զինքն և զիւր մարդիքն։ Մեք էլ ի մէջ մտաք և ի մեզանէ ՌՃՌ. (200.000) դեկան ելաւ՝ խլըսեցի զիւրեանքն ի մահուանէ։ Փատշահն [որ] տեսաւ ասաց՝ Երբ դու էնց լաւ մարդ ես՝ Էջմիածին [և] աջն քեզ. մեք էլ յանձն առաք Էջմիածնի սիրոյն հա[մար]։ Ու ասաց փաթշահն՝ Զինչ հասըլ կայ առ քեզ, որ զինչ աւէր կայ շինես, էս քանի տարի զ[աշ]խարհս կերան ու աւէր պահեցին։

Մեք էլ եկա[ք], շատ վարպետ բռնեցաք, որ զպակասութիւն և զթեր[ութի°ւն] լընունք ի յԱյրարատեան գաւառս։ Զինչ պատ[ուա]կան եպիսկոպոսք և վարդապետք, ազատորդիք և երևելի տան[ու]տէրք՝ ամենեքեան ի յաթոռս ժողովեցան և մեծ սիրով ընկալան զմեզ և հնազանդեցան. և մեք [թ]ողութեամբն աստուծոյ մեծաւ հանդիսիւ հսկումն արարաք եւ մեռոն աւրհնեցաք և Գ. (3) եպիսկոպոս, և շնորհաբաշխու[թիւն] կատարեցաք։

Ընդ այնմ ժամանակին եղև ցասնուլ փաթշահին ի վերայ ամիրային Բաղիշու, և բարկութեամբ առաքեաց Դ. (4)* զաւրագլուխս երկոտասան հազար հեծելազօրօք ի վերայ քաղաքին Խըլաթա. և գնացեալ՝ աւերեալ** քանդեցին զնա և բազում աւար ի մի ժողովեալ՝ նստան ի վերայ բերդին, և նեղէին առնել զնա, և զնոյն հանդերձեալ էին առնել ի Բաղէշ և ի Մուշ, ի Խութ և ի Սասունք և յամենայն գաւառսն նոցա։

Զոր տեսեալ նորընծայ պատրիարգն տէր Զաքարիայն զտարակուսանս աշխարհին այնորիկ՝ զգերի վարիլն և ղմատնիլ ի ձեռն անաւրինաց, զաւերիլն և զքանդիլն, զխախտումն եկեղեցեացն և զտապալումն սուրբ սեղանեացն, զգերեվարիլն սրբութեանցն, զխափանումն փառաբանութեանցն աստուծոյ, և զտարաշխարհիկ լինելն ամենայն խառնիճաղանճ ժողովրդեանն՝ զգերիլն և զտատանիլն։ Զայս ամենայն ղմտաւ ածեալ մեծ հայրապետն տէր Զաքարիայն, և ի միտս իւր բերեալ զբանն տէրունական, որ ասէ, թէ՝ Ես եմ հովիւն քաջ, հովիւ քաջ զանձն իւր դնէ ի վերայ ոչխարաց. և կատարեալ գործով զբանն՝ եդ զանձն իւր ի վերայ բանաւոր հօտին Քրիստոսի՝ ի վերայ ամենայն ժողովրդեանն Բաղիշու: Եւ զօրացեալ ի հոգոյն սրբոյ, և արարեալ զսիրտ իւր իբրև զկարծր վէմ, և մտեալ առաջի թագաւորին՝ ետ զանձն իւր փրկանս փոխանակ բազմաց, տուեալ ձեռագիր և մտեալ դաման առնուլ հարկս յամիրայէն Բաղիշու և տալ կայսերն, առ ի մնալ երկրին ի խաղաղութիւն, և առնել աղօթս վասն կենաց թագաւո-
308բ րին|| և որդւոց նորա։ Որոց հաւանեալ արքայն և դշխոյն ետուն նմայ նշանագիր և հրաման առնել զինչ և կամեսցի։

Եւ նորա ելեալ յերեսաց նոցա վաղվաղակի ձիընթաց արշաւմամբ գնացեալ եհաս ի քաղաքն Բաղէշ:

Որոյ ընդ առաջ ելեալ նորա ամիրայն, հանդերձ ամենայն մեծամեծաւք իւրովք, և մեծարեալ փառաւք տարաւ զնա ի գլուխ բերդին. և խոստացան առնել զկամս նորա և տալ զինչ և խնդրեսցէ, բայց միայն՝ զի յետս դարձուսցէ զամենայն հեծելաղաւրսն ի բերդէն Խըլաթայ։

Եւ նա առեալ զվկայութիւն ի բերանոց նոցա՝ գնաց ի Խըլաթ, և ետ զօրագլխոցն կրկին ձեռագիրս, և ցուցեալ նոցա զնշանագիր փաթշահին,

---

Վասն որոյ աւրհնութիւն, գոհութիւն, փառք տւողին բարեաց և մեծի պարգևացս, որ այդ ար]ար], և զազմուկ և դշիւաբանք երարձ ի սուրբ եկեղեցոյ, և [եր]կու աթոռն մի հաստատեաց, և կացոյց ի վերայ առաք[ելա]կան վիմի՝ ի փառս և ի գովեստ անուան իւրոյ. Ի տեառնէ եղև այս և է սքանչելի յաչս մեր։ Այսաւր է զո[ր] արար տէր, եկայք ցնծասցուք և ուրախասցուք ի ս[մա"], զի այսաւր մեր հայրապետաց աւրհնութիւնն կատարեցա[ւ], զի բուն աթոռս ի մեզ յանձնեցաւ և բոլոր ազգս մի[ա]բանեցան և եղեն մի հաւտ և մի հովիւ։

Վասն ո[րոյ] առաքեցաք ձեզ նուիրակ զսիրելի և գհաւատա[րիմ] որդիքդ մեր՝ զտէր Կիրակոս և զԱբրահամ մու[ղ]գասիդ՝ աւետաբեր աւրհնութեամբ և սրբալոյս մեռոնաւ երեսփոխան, հրամանաւ և իշխանութեամբ ի մեր ան[ը] տեղ՝ կապել և արձակել, իբաւունս և զաաասա[անս[ առնել։

Եւ դուք իբրև դհրեշտակ աստուծոյ և զառաքե[ալ] Քրիստոսի մեծաւ պատուով ընդունիցիք, եւ զամենայն հա[ս] և զիրաւունս տուք ի ձեռս դոցա անպատճառ, որ բե[րեն] ի սուրբ աթոռս, զի յամենայն ամի ձեր սովորութիւն է, որ զողորմութիւնն և զհողոյ բաժին եղել է։ Որով աւրհնիք յ[աստուծոյ] և յամենայն սրբոց և ի մէնջ, ամէն և եղիցի»։

* № 1771 ձեռագրում՝ «Գ.» (3)։

** Ա. Գավրիժեցի՝ «աւարեալ»։

և համոզեաց զնոսա, որ խաղաղութեամբ գնացին ի տեղիս իւրեանց։ Եւ ինքն դարձաւ ի Բաղէշ, և նստաւ ամիսս երիս, և առեալ զխոստացեալ հարկն կայսերական, և տարեալ մատոյց առաջի փաթշահին, և արար խաղաղութիւն ի մէջ նոցա, և ազատեաց զամենայն խառնիճաղանճ ժողովուրդն՝ զհայ և զտաճիկ՝ ի ձեռաց անաւրինաց և ի դառն գերութենէ,. զոր տէր աստուած ազատեսցէ զնա յամենայն փորձութենէ հոգոյ և մարմնոյ, ամէն*։

Եւ նորա դարձեալ ի փաթշահէն՝ նստաւ յաթոռն իւր ի սուրբ էջմիածինն, և մեծարանաւք խրլայեալ եղև երկուց գոռոզաց այլասեռից՝ ի թուրքման փաթշահէն և ի քուրթ ամիրայէն, որպէս Զօրաբաբէլ ի Դարեհէ առ ի հովուէլ զհաւատացեալ զժողովուրդս իւր։

* Եւ եղև կրկին անգամ գնալ Ջհանշայ փաթշահին ի տունն Իրաղայ, ի Շիրազ և ի Քրման: Եւ էր նորա որդի մի Հասան-Ալի անուն, որ շրջէր թափառական զվերին կողմամբ գաւառին Արարատեան. և նա նենգութեամբ չարախօսաց ոմանց կամեցաւ ըմբռնել զմեծ պատրիարքն զտէր Զաքարիայն, և պահանջել ի նմանէ գանձս և ինչս։ Զոր իմացեալ մեծ հայրապետն զնենգութիւն նորա, և առեալ ղաջն սուրբ Լուսաւորչին՝ հանդերձ այլ սպասիւք յաւուրս ձմերայնոյ, և գնացեալ մինչ ի Բագուան, և անտի եկեալ ի բերդն Բայազիտի, և անտի իջեալ ի սուրբ ուխտն Արգիլան, ուր հանգուցեալ կայ պատուական նշխար սուրբ վարդապետին Ստեփաննոսի տէր Յուսկայ որդւոյն։ Եւ անդ հասեալ յայտնեաց զգանձն աստուածային և ղաջն սուրբ Լուսաւորչին մերոյ՝ զսրբոյն Գրիգորի,. հանդերձ խաչալամովն, որ նկարեալ կայր ի մի կողմն պատկերն տէրունական, և ի միւս կողմն՝ Լուսաւորչին մերոյ՝ սրբոյն Գրիգորի և թագաւորին Տրդատայ և չքնաղագեղ կուսին՝ սրբոյն Հռիփսիմեայ, այլ և ոսկեթել յօրինուածով և ազդի ազգի դունով՝ երանգ երանգ զարգարեալ սուրբ ուրարովն, որ զարմանալի է տեսողացն։ Եւ դէմ եդեալ գալ ի հայրենի աթոռն իւր՝ ի գեղեցկայարմար գմբէթայարկ սուրբ Խաչն Աղթամարայ։

Եւ ել համբաւ գալոյ նորա՝ հանդերձ սուրբ աջովն և խաչալամովն, որ բարձրացեալ կայր ի ծայրս ձողոյ և խաչ ոսկի կառուցեալ ի գլուխ նորա. ընդ որ գրոհ տուեալ ամենայն բնակչաց գաւառացն ընդ որ գայր հայրապետն. և ամենեքեան ընդ յառաջ ընթանային խնկօք և մոմեղինօք և զենմամբ խոյոց և զուարակաց, և երկրպագութիւն մատուցանէին սրբոյ աջոյն և հայրապետին, և համբուրէին զնա մեծաւ փափագանօք, մինչև եկեալ եհաս ի գաւառն Տոսպոյ, և մտեալ ի քաղաքն Վան՝ բազում եպիսկոպոսօք և վարդապետօք, քահանայիւք և բազմամբոխ ժողովրդօք, ձիօք և ձիաւորօք, և խաչալամն առաջի, և քահանայք յառաջ և յետոյ երգէին քաղցր եղանակօք, և այնպէս պերճ և փառաւոր եմուտ ի քաղաքն Վան:

Իսկ պարոնն այն, որ նստէր յամուրն Շամիրամայ՝ ի բերդն Վանայ՝ Սահմուտ-բէկ կոչեցեալ, որ էր կաթնեղբայր Ջհանշահ փատշահին, ետես զպայծառութիւն քրիստոնէիցն և ցանկացաւ տեսութեան սուրբ աջոյն, և յղեալ տարաւ ի գլուխ բերդին. և եղև ընդ մտանել մեծի հայրապետին

* Անկյուրիայի ձեռագրաց ցուցակում հիշատակարանն ավարտվում է այսքանով. շարունակությունը «ինկած թուղթերու հետ կորսուած է»։

սուրբ աջովն ընդ դուռն վերին բերդին՝ ընդ առաջ էլ դոռողն Մահմուտ-բէկ ամենայն մեծամեծօք իւրովք՝ տամբ և ամիրզայ որդւովքն և ամենայն ընտանեօքն, և երկրպագութիւն մատուցանէին սրբոյ աջոյն և համբուրէին, և զաղերս պատարագաց նուիրէին, և մեծարեալ խիլայեաց զհայրապետն և դարձոյց յօթևանս իւր։ Զոր տեսեալ բազմութեան քաղաքիս ե դասուրին՝ օր ըստ օրէ դայիմ յերկրպագութիւն սրբոյ աջոյն և յողջոյն մեծ հայրապետին բազում ընծայիւք և պատարագօք։ Եւ յետ աւուրց ինչ առեալ հրաման ի պարոնէն գնալ ի հայրենի աթոռն իւր յԱղթամար, իբրև ել ի քաղաքէն՝ ելին ընդ նմա բազմութիւնք եպիսկոպոսաց, վարդապետաց և քահանայից և ամենայն ազատագունդ խօջայքն Վանայ՝ ձիօք և ձիաւորօք սպառազինեալք. և եկեալ հասին մերձ ծովահայեաց քաղաքին Ոստանայ, որում ընդ առաջ ելին ամենայն բնակիչք քաղաքին՝ քահանայիւք և բազմամբոխ ժողովրդօք՝ ի մեծամեծաց մինչև ցփոքունս՝ խնկօք և մոմեղինօք և բարձրաձայն եղանակօք՝ մինչև գրեթէ քան զհազար մարդ աւելի կայր յառաջ և յետոյ մեծ հայրապետին. և խաչալամն առաջի գնայր, ունելով ի գլուխն խաչ ոսկի փայլեալ լուսոյ նման, և այնպէս շքեղ փառօք եմուտ ի քաղաքն Ոստան: Իբրև տեսին այլասեռ բնակիչքն՝ որ յՈստան, զխրախութիւնն զայն՝ ի խոր խոցեցան ընդ պայծառութիւն և ընդ համարձակութիւն հայրապետին, որ ի գաւառէն Տարբերունոյ մինչ ի քաղաքն յՈստան խաչալամով էր եկեալ՝ եպիսկոպոսօք և վարդապետօք և բազում կարգաւորօք և ժողովրդօք, վասն որոյ ժողովեցան ի միասին առ իշխան քաղաքին, որ էր ազգաւ քուրդ՝ ժանտ և անագորոյն, ամենևին թշնամի քրիստոնէից և խորհեցան խորհուրդ չար, զի գաղտագողի նենգեսցեն հովուապետին։ Զոր իմացեալ զչարութիւն նոցա քաջ դիտապետն, և ընդ լուսանալ առաւօտուն՝ առեալ զսուրբ աջն գնալ ի յեզր ծովուն, ուր նաւահանգիստն լինէր. զոր իմացեալ ամենից եկելոցն ընդ նմա, որք ի Վանայ և որք յայլ գաւառացն՝ ելին զհետ նորա և եկին հանդէպ աստուածապահ կղզւոյն Աղթամարայ, մեծ բերդին Մանաճիհրի, որ է քարադաշտ։

Եւ անդ զտեղի առեալ օրհնեաց զամենեսեան շնորհաբաշխ սուրբ աջովն, և համբուրեալ զամենեսան ի համբոյր սրբութեան, և արձակեաց զնոսա խաղաղութեամբ և օրհնութեամբ գնալ ի յարկս իւրեանց։ Եւ ինքն էառ զսուրբ աջն Լուսաւորչին և եմուտ ի նաւն, և գնաց յաստուածաբնակ կղզին յԱղթամար, ի հայրենի ժառանգութիւն իւր, որ իբրև ելին ի ցամաք՝ ընդ առաջ ելին նմա ամենայն բնակիչք տեղւոյն յեզր ծովուն՝ խնկօք և մոմեղինօք և քահանայիւք՝ քաղցրաձայն եղանակօք, և առեալ տարան զսուրբ աջն, և եդին ի գեղեցկայարմար սուրբ Խաչն Աղթամարայ, և երկիրպագութիւն մատուցանէին սուրբ աջոյն և հայրապետին, և օրհնութիւն և փառաբանութիւն վեր առաքէին հրաշագործողին Աստուծոյ, որ արժանի արար զամենեսեան տեսութեան ջնորհաբաշխ սուրբ աջոյն Լուսաւորչի։ Եմուտ ի յամուր կղզին Աղթամար և հանգեաւ ի գմբէթայարկ սուրբ աջն՝ ի բուն տեղիսն իւր, ի թըւականութեանս մերում ՋԺԱ. (1462) ամին, ի սկիզբն տարւոյն, որ էր նաւասարդի ամսոյ ԺԶ. (16), յաւուր ուրբաթի, սուրբ Յակոբայ պահոցն*. եմուտ սուրբ Խաչն յԱղթամար, ի պահպանու-

* 1461 թ. դեկտեմբերի 11-ին։

*թիւն մեզ՝ ամենայն հաւատացելոց, որոց եղև ուրախութիւն ամենեցուն ոչ սակաւ։*

*Եւ ղայս լուեալ ամենայն բնակչաց գաւառացն՝ օր ըստ օրէ գային յերկրպագութիւն սուրբ աջոյն և յողջոյն մեծ հայրապետին՝ բազում ընծայիւք և պատարագօք և օրհնութեամբ, մեծաւ ուրախութեամբ դառնային յարկս իւրեանց՝ փառաւորելով զամենասուրբ զերրորդութիւնն՝ զհայր և զորդի և զսուրբ հոգին այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն*։*

*Արդ, ես՝ Թումաշ մահդասիս սիրող եղէ այսմ աստուածային տառիս և ետու գծագրել զսա ի վերծանութիւն սքանչելեաց ամենայն արեամբ
ներկեալ մարտիրոսացն, յոր և յիշատակ և գերահրաշ տօնք տէրունականք և առաքելականք և մարգարէականք և երկնագումար արեամբ թաթաւեալ սրբոց մարտիրոսացն և վկայիցն, որ օր ըստ աւուր սըրսըռեցու-
309ա ցանէ ղոսկերս լսողացն, այլև նահա||տակացն և ճգնաւորացն, սուրբ կրօ-
նաւորացն և սրբոց կուսանացն, և ամենայն երկնային զաւրացն և ամենայն, որ ի սմայ հաւաքեալ կան, արանց և կանանց, ծերոց և տղայոց, և բոլոր շրջանակ տարոյն՝ ի պայծառութիւն մանկանց սուրբ եկեղեցւոյ և ի զարդ և ի դաստիարակութիւն քահանայից՝ բաշխողաց մարմնոյ և արեան կենարարի որդւոյն աստուծոյ։ Է և սա յիշատակ ննջեցելոց և զուարճութիւն տօնողաց, որք սովաւ հրճուին ի կեանս ի լուսատարմիկ վկայեցելոց անձանց սրբոց, զի տօնասիրացն պարտ է զուարճանալ ի կեանս իւրեանց, մինչև յաւիտեանս յաւիտենից։*

*Այլ և աղաչեմք զամենեսեան ես՝ Թումաշ մահդասիս՝ հողս և փոշիս՝ յիշել զիս սրտի մտօք յաղաւթս ձեր և Քրիստոս աստուած յիշէ զձեզ յիւր փառսն և ի պատիւն, ամէն։*

## 222

### ՃԱՌԸՆՏԻՐ

*ԼՑՎ 710, Մ.Տ.Մ., թղթ. 24, էջ 186*

*... Արդ, կատարեցաւ սա ի յերկիրս* Վասպուրականի *և ի լեռնադիտակ և գեղեցիկ անապատի, որ յառաջն Եկեղեց չէն անուանի և յետոյ՝* Տէրպետի *վանք, վասն արի և յաղթ նետաձգութեան իւրոյ, և սա շինեաց անապատս, որ վաղուց յետէ աւերեալ կայր՝ հովանաւոր տաճարս սուրբ Աստուածածինս, որ եղև պատճառք և առիթք երկաքանչ կրաւնաւորք՝* Տէրպետ *և* Սաճակ, *զի բազում փորձ առին ի սայ։*

*Արդ, գրեցաւ և յաւրինեցաւ Տաւնականս ի հայրապետական յաթոռակալութեանս ամենայն հայաստանեայց տեառն* Զաքարիաս, *ըստ անուան իւրոյ, յիշատակ տեառն և բնակարան հոգւոյն սրբոյ, զի և միաւորեալ է շնորհացն որով առաքեալքն արբեցան և խաւսէին, զոր ոչ կամէին։ Նոյնպէս և սա ի բարի տեսն և իմաստական հանճարեղութիւնն ըստ Պաւղո-*

---

* Այս ընդարձակ հատվածը («Եւ եղև կրկին անգամ գնալ...»-ից սկսած՝ մինչև այստեղ) պահպանվել է միայն Ա. Դավրիժեցու մոտ։ Եվ ընդհակառակն, շարունակությունը՝ ձեռագրի պատվիրատու խոճա Թումաշահին վերաբերող մասը, բացակայում է Դավրիժեցու «Պատմությունն»-ից և գտնվում է միայն № 1771 ձեռագրում։

սեան ընդ ամենայն ի շահելն։ Եհաս համբաւ դառնաշունչ յազգէն նետողաց դալ հասանել երկիրն Ըօշտունեաց և փութանակի դեսպան առաքեալ առ հայրապետն Զաքարիաս, և սա յոժարութեամբ սրտի եկեալ առ բարեմիտ ամն, որ է երկրորդ նորա զաւրադլխին, և ծանոց զսպառնալիսն, որ ասէին թէ՝ զհայրապետն ըռնեցէք և զժողովուրդս քրիստոնէից կոտորեցէք և զեկեղեցիքն քակեցէք։ Բարի ամն երրնչին (՟) մտեալ առ մեծ զաւրադլուխն և հաւանեցոյց ըստ կամաց իւրոց, եթէ մի ձեռնամուխ լիցի ոք ի քրիստոնեայսն։ Ո՜վ եղբարք, բարեմիտ հայրապետն Զաքարիաս յոյս առ միածինն եդեալ, և մեր տեսեալ ի մէջ գիշերի ի տեսք, որ ելեալ գայր վրան մի կարմիր ի վերայ ծովուն՝ ի հիւսիսային կողմանէ իբրև ի վերայ ցամաքի, և իմ միտ արարեալ տեսի ղկումբեթ եկեղեցւոյ սրբոյ Գէորգայ, զի մերձ էր ի յանկանել, և այր մի սպիտակ հանդերձիւք ելեալ ի վրանէն և եկ մերձ եկեղեցին, և ձգեաց զձեռն ի կումբեթին՝ նոյն տեղ հաստատեաց։ Եւ իմ ծունր եդեալ նմա ասէի, ով է///*

## 223

### ԱԻԵՏԱՐԱՆ

Երևան 3049

գրիչ՝ Միքայէլ
վայր՝ յերկիրս Քաջբերունի, ի գեաւղս Ունձք

279ա … Արդ, գրեցաւ սա ի թուականութեանս Հայոց ի Ջ. ու ԺԱ. (1462) ամի, ի յերկիրս Քաջբերունի, ի գեաւղս որ կոչի Ունձք, ընդ հովանեաւ սուրբ Սարգսի զաւրավարի և Ստեփանոսի նախավկայի, ի հայրապետութեանն Զաքարիայի, ի յառաջնորդութիւն սուրբ ուխտիս Մեծոփայ Ստեփանոս վարդապետի, յուսամք յաստուած, որ պահէ զնա անփորձ կենաւք մինչև ի խորին ծերութիւն, ամէն, և յետ աստեացս ելանելոյ ընդ սուրբ վարդապետացն դասակից առնէ, ամէն։

Արդ, աղաչեմ զամենսեան սիրովն Քրիստոսի՝ զընթերցողսդ և զլսողսդ՝ յիշման արժանի առնել զվերոյիշեալ ստացող սուրբ Աւետարանիս՝ զՄըսըր-Մէլիքն, և զծնաւղսն իւր՝ զՅակովբն, և զմայրն իւր զՄինա-խաթունն, և զառն իւր զՍտեփանոս, և զաւակսն իւրեանց՝ զԱսըլ-Մէլիքն, և զՍալթանշէն, զՄխիթարն, զԿարապետն, զՅոհանէսն, և զՇախպուտախն, և զթոռն իւր զՅովհանէս, և զՅոհանէսն՝ զփոխեցեալքն ի Քրիստոս, և լի <նի> բերանով աստուած-ողորմի ասացէք նոցա, ևս առաւել ի ժամ
279բ սուրբ պատարագին, զի արժանի լիցին ողորմութեան ի Քրիստոսէ || աստուծոյ մերոյ։

Յիշել աղաչեմ և զիս՝ զանարժանս և զամենամեղս և զփծունս ի գըրչաց՝ զՄիքայէլ, և զծնաւղսն իմ՝ զհայրն իմ զՅովանէս քահանայ և զմայրն իմ զԱզիզ-Մէլիքն, և զքուերսն իմ զՅուստիանէն և զՔիչի-խաթունն, և զՍուլթան-խաթուն, և զամենայն արեան մերձաւորսն իմ, և զհո-

* Ժամանակն անորոշ է, ամենայն հավանականությամբ գրված է Զաքարիա կաթողիկոսի Էջմիածնից փախուստ տալուց (1461 թ. ուշ աշուն) հետո։

գեոր հայրն իմ և ուսուցիչն՝ զՍտեփանոս վարդապետն, և զեղբարսն իւր
զԱլեՖսան կրաւն[աւոր], և զծնաւղսն իւրեանց, և զամենայն ազգականսն,
և պայնուսիկ, որք յանձնեցին զինքեանս ի մեզ յիշել ի տէր...։

Եւ արդ, ես՝ յևախնս ի յազգականանց, ստացայ զսուրբ Աւետարանս
ի հալալ վաստակոց իմոց յիշատակ ինձ, և ծնաւղացն իմոց Յակոբին և
Մինա-խաթունին, և զաւակացն իմոց Ասըլ-Մէլեքին և Մխիթարին, Կա-
րապետին և Յովհանիսին, և ամենայն արեան մերձաւորաց... ևս առաւել
280ա յիշեցէք ի Քրիստոս ղուաթայ Ալեքսան, և զկողակիցն || իւր զԼտիւ-խա-
թուն, և ղաւակսն իւրեանց զԽաչշամատն, զՅակոբն, զՄսըրմէլիքն, զԻ-
միր-Մէլիքն, զԽաթուն-Մէլիքն, զՇախփաշէն: Եւս առաւել յիշեցէք ի Քրիս-
տոս աստուած զՍտեփանոսն, և զծնաւղսն իւր՝ զԱմիր-Սարգիսն և զԽա-
թուն-Մէլիքն, և լի բերանով աստուած-ողորմի ասացէք, և ինձ՝ մեղա-
պարտ դրչիս տէրն ողորմի, և սխալութեան դրիս անմեղադիր լերուք,
դի կար մեր այս էր։ Եւ որք հանդիպիք սմա կարդալով, կամ աւրինակ
դնելով, կամ տեսանելով՝ մին աստուած-ողորմայիւ արժանի արարէք
զստացող սորա*։

## 224

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 4778

գրիչ՝ Յովան
վայր՝ Արճէշ

283ա ...Արդ, որք հանդիպիք և վայելէք յաստուածային բուրաստանէս և յա-
մենալի սեղանոյս ուղիղ սրտիւ և լի բերանով աստուած-ողորմի ասա-
ցէք ստացաւղի սուրբ և մարգարտաշար տէրունեան Աւետարանիս՝ աս-
տուածասէր և պատուական խօջին Խաչատուրն, և ծնաւղաց նորին՝ հաւրն
Առաքելին և մաւրն Մրուաթին, [և եղբաւրն Թումային, և որդւոյն իւրոյ՝
սուրբ և մաքուր և հեզահոգի կրօնաւորին տէր Աւետիսին]**, և կողակցին
Սոլթան-խաթունին, և զաւակացն Գօզալ-ղօշին և Ջօր-խաթունին և Գանջ-
խաթունին և Բէկի-խաթունին:

Եւ արգ, ես՝ յետինս ի կարգաւորաց և անարժանս ի մանկունս եկե-
ղեցւոյ, և անիմաստ ի գիրս գրչութեան՝ ոչ ունելով իշխանութիւն հպիլ
ի սուրբ Աւետարանս, բայց յիշելով զներողութիւն և զմարդասիրութիւն
աստուծոյ՝ ահիւ մեծաւ սկսայ և ողորմութեամբ նորին կատարեցի յամի
յորում էր թուականն Հայոց ՋԺԱ. (1462), յերկիրս Քաջբերունի, ի քաղա-
283բ քիս Արճէշ կոչեցեալ, ընդ հովանեաւ սուրբ տաճա||րիս Գէորգեայ զաւրա-
վարիս, յաշխարհակալութեան մեծ ղանին Ջհանշա փաթշահին, որ մե-
ծաւ քաջութեամբ տիրեաց աշխարհին Իրաղա, և ի կաթուղիկոսութեան
մեծ իմաստասիրին քաջ և արի հայրապետին տեառն Զաքարիայի, որ

* Ձեռագրում կան հետագա ստացողների անթվական 6 հիշատակարաններ՝ սակավ-
արժեք բովանդակությամբ։

** Փակագծերի մեջ առած հատվածը մեջ ենք բերել հիշատակարանի նախորդ պար-
բերությունից, ուր նույնությամբ կրկնված են ստացողի ազգականների անունները։

և նա աստուածատուր զօրութեամբն տիրեաց երկու աթոռոյն՝ Էջմիածնի և Աղթամարայ, զոր տէր աստուած հաստատուն պահեսցէ զսա, ամէն։

Արդ, յայսմ ամի գրեցաւ սէրունեան սուրբ Աւետարանս ձեռամբ անարժան քահանայի Յովաննու, վասն որոյ երես ի գետին դնելով աղաչեմ զվայելողք սուրբ Աւետարանիս՝ ուղիղ սրտիւ աստուած-ողորմի ասել անարժան գրչիս Յովաննու, և իմ ծնաւղացն՝ Մանգասարին և Փաշա-Մէլէքին, և ամենայն արեան մերձաւորաց իմոց, և ուսուցչին իմոյ՝ տիեզերալոյս վարդապետին Թումայի...։

Դարձեալ, կրկին յիշեցէք ի Քրիստոս զաստուածասէր խօջայն զԽաչատուրն, և զքեռին իւր զհիւան Կարապետն, և զՆիզարն, և զԽալիմ-Խաթունն, և զկենակիցն՝ զՍօլթան-Խաթունն, և զմայրն զՌստիանէն, և զամենայն արեան մերձաւորսն, և Քրիստոսի աստուծոյ մերոյ փառք յաւիտեանս, ամէն։

Բ

ծաղկող՝ Կարապետ

223բ ԶԿարապետ ծաղկաւղս յիշեցէք ի Քրիստոս եւ աստուած ըզ[ձեզ յիշէ]։



Նկ. 11. Մատթէոսի ավետարանի սկիզբը (նկարիչ՝ Կարապետ)

225

ՅԱՅՍՄԱԻՈԻՐՔ

Երևան 1883

գրիչ՝ Խաչատուր

վայր՝ Կտուց անապատ

613ա Փառք... որ ետ կարողութիւն սըխալամիտ և մատնագէտ և մեղսամած գրչի՝ սուտանուն Խաչատուր քահանայի, որ զանունս ունիմ և զգործս

ոչ՝ յանկ հանել զաստուածախաւս կտակարանս ամբողջակութեամբ սուրբ Աստուածածնին՝ ամենաւրհնեալ և գերագով կուսին Մարիամու՝ զնա կալեալ բարեխաւս առ միածինն որդին իւր՝ աստուածն իմ Յիսուս Քրիստոս։

Աւարտեցաւ քրիստոսահիմն և քաջ նահատակաց և մարտիրոսաց հոգիաբուխ սուրբ տառս ի յամի ՋԺԱ. (1462), ի վանքս որ կոչի Կտուց, ընդ հովանեաւ սուրբ Խաչիս և սուրբ Նշխարաց ճառագայթի ճըրագ ճըշտութեան սուրբ Կարապետիս, որ յայսմ ամի նորոգեցաւ մոլայիւ, ձեռամբ Ստեփաննոս վարդապետի, որ մականունն Ֆ[ալաք], և Գրիգոր եպիսկոպոսի, որ էր առաջնորդ սուրբ ուխտիս, և այլ միեղէն եղբարցս, որ չարչարեցան և աշխատեցան ի սուրբ եկեղեցիս՝ Խաչատուր գծողս, և Յակոբ կրօնաւորն, և Սարգիս կրօնաւորն, և Ստեփաննոս կրօնաւորն, և Յովանէս կրօնաւորն, և Մկրտիչ կրօնաւորն, և Յովանէս կրօնաւորն, և Կարապետ կրօնաւորն, և Ներսէս կրօնաւորն, և Յոհանէս ճգնաւորն, և Կարապետ կրօնաւորն, և Աստուածատուր կրօնաւորն, և Կարապետ կրօնաւորն, և Մխիթար կրօնաւորն, և Խաչատուր կրօնաւորն և այլ ամենայն աշխատաւորք, որք կամակից եղեն բանիս և մասնակից՝ զվարցս վաստակոց իւրեանց ի Քրիստոսէ առցեն ի միւս անգամ գալուստն։ Ի կաթողիկոսութեանն Հայոցս տեառն Զաքարիայի, որ տիրեաց Բ. (2) աթոռոյն ոչ ղաբալով, այլ բաշխելով և շնորհելով Ջըհանշայ ղանին։ Որ գնաց տէր Զաքարիայ կաթողիկոսն, նստաւ ի յէջմիածինն, և եբեր իւր կամաւն զսուրբ աջն Լուսաւորչին ի յերկիրս Վասպուրական, ի գեաւղ և ի քաղաք ջուրջ ածելով՝ ի տեսութիւն ողջիտցեալ քրիստոնէիցս, քանզի ուրախացեալ բերկրեցան ի աստուածատուր պարգևացն և շնորհացն, որ տըւաւ ի սուրբ յաջէն Լուսաւորչին։ Եւ ամենայն ոք աւրհնէր զարարիչն աստուած և զտէր Զաքարիայ կաթողիկոսն, որ արժանացոյց տեսլեան սուրբ աջոյ Լուսաւորչին։ Եւ ապա տարեալ ի յաստուածապահ կղզին յԱղթամար: Եւ դըղըրդեալ Աղթամար ելին ընդ առաջ սուրբ աջին և թագաւորական զարմին տէր Զաքարիայ կաթողիկոսին, որ էր ի յազգէն Գագիկ թագաւորին. և բերեալ պաշտելով և ուրախութեամբ ի յերկնանման և ի լուսեղէն կըմբէ-
61աբ ||դայարկ և կամարաձև սուրբ Խաչն. անդ էր տեսանել զուրախութիւն և զցնծութիւն վարդապետաց և եպիսկոպոսաց, քահանայից և կրօնաւորաց. քանզի դրոհ տուեալ էր յամենայն տեղաց քահանայից և ժողովրդոց, եկեալ էին ի տեսանել զսուրբ աջն Լուսաւորչին. և եդեալ ի սուրբ եկեղեցինն, ընդ այլ սուրբ աջերոյն, որ անդ կային։ Եւ ինքն դարձեալ գնաց ի յաթոռն իւր յէջմիածինն. և կացեալ յոլով ժամանակս, և տիրէր Բ. աթոռոյն։ Ի թըւականիս ՋԺ. (1461), ի թագաւորութեանն Ջըհանշայ ղանին, որ ելեալ ի Թաւրիզոյ և գնացեալ ի Հրէ. և էառ զամենայն աշխարհն Խորասանայ. և ԺԵ. (15) ամ թագաւորեաց ի Պարսկաստան և հարկատու արար զամենայն Չաղաթայսն, և դարձեալ եբեկ նստաւ ի Թաւրէզ. և որդիքն թագաւորեալ նստան ի Շիրազ, և յԱսպահան, և ի Քրման. և ամենայն աշխարհս ի խաղաղութիւն էր։

Եւ արդ, գրեցաւ սուրբ տառըս յիշատակ սրբոցն աստուծոյ, որ աւրքստաւրէ սոսկացընէ զոսկերս ամէնի, պատմութիւն կարծրագոյն տանջանաց սուրբ վկայիցըն Քրիստոսի և սքանչելի վարուց չնաշխարհիկ սըր-

բոցն արանց որ աստ հաւաքեալ կան, որոց սիրատարփ տենչմամբ և եռափափագ ըղձմամբ սրտի ցանկալի և ամենապով պատուական կրօնաւորքն և բարեսէր աբեղայքն՝ Ստեփանոս և Խաչատուր, սիրով ցանկացան այսմ աստուածարեալ ղանձիս, և ստացան զսա յիշատակ բարի իւրեանց և ծնաւղացն՝ մեծ պապուն ախի* Կարապետին, և Անղալատին, և հաւրն Յովանիսին, և մաւրն Ասըլ-Մնլիքին, և եղբարցն Եւատշին, և կողակցին Խուլ-Մելիքին, և զաւակաց նոցա Ստեփանոս աբեղային, և Սուլթանշին, և կողակցին Խոնդքարին, և Խալիֆին, և Մեյիրզատին, Մուրատշին, և կողակցին Բաղդատին, և զաւակաց նոցին Ախիջանին և Խուդաբաղշին, Կարապետին և կողակցին, և զաւակաց նոցին Յովանիսին և Մկրտչին և Միքայէլին, և քըւերն Խաթուշին, և զաւակաց նորա Մկրտիչ աբեղային և Կարապետին, և դստերացն՝ Փաշին և Շաղփաշին և Սալթան-Խաթունին, և Խօվլատշին, և հաւրքըւերց իմոց՝ Սուլտանին և Շնախտրին և Սիրին, և ամենայն արեան մերձաւորաց իմոց՝ կենդանեաց և հանգուցելոց, մեծի և փոքու։

Այլ և յիշեցէք յաղաւթս ձեր զՄինաս ծաղկաւղն, որ յար և նման է Բերսելիէլի՝ զարդարաւղին տապանակին, և կուսութեամբն՝ Յեսուայ որդոյ Նաւեայ, և իմաստութեամբն՝ Սօղոմոնին, և զծնաւղսն իւր՝ զՄաղթում և զՄսըր-Մելիքն, և զքոյրն զԽութլուն, և զԱկոբ քահանայն, և զամենայն արեան մեր||ձաւորքն իւր՝ զկենդան[իսն] և զհանգուցեալսն ի
614ա Քրիստոս, ամեն։

Այլ և զառաջնորդ սուրբ ուխտիս զտէր Գրիգոր եպիսկոպոսն, և զծնաւղսն իւր զԽըբչաղ, և զԿիրակոս, զԴովլատշէն և զՆարին, ամէն։ ԶՍարգիս քահանայն, և զպապն զԿարապետն, և զՄարտիրոսն, և զՄխիթարն, և զԳաւրգին, ամէն։ ԶՅակոբ քահանայն, և զծնաւղն զԽութլուն, և զԱստուածատուրն, և զԼուսաւագն, ամէն։

Արդ, գրեցաւ սա ի խնդրոյ աբեղայիցն Խաչատրու և Ստեփանոսին, քանզի ընթերցեալ էր նոցա զբանն առաքելոյն, որ ասէ՝ Որանի որ ունիցի զաւակ ի Սիովն և ընդանեակք յԵրուսաղէմ։ Եւ նոքա եռահիւսակ և ըղձափափագ սիրով ստացան զծածկեալ գանձս և զանգին մարգարիտս իւրեանց հոգւոյ զաւակ և ծնաւղաց իւրեանց յիշատակ՝ հաւրն Յովանիսին և Ասլմելիքին, և եղբարցն Եւատշին, և Մուրատշին, և Կարապետին, և Սալթանշին, և Խալիֆին, և Մէլիքզատին և քըւերն Խաթուշին, և քահանային Մկրտչին, և Կարապետին, և ամենայն ազգականաց՝ կենդանեաց և մեռելոց, ամեն։

Այլ և յիշեցէք յաղաւթս ձեր զՍտեփանոս վարդապետն, որ է հոգևոր հայր մեր և խրատիչ ամենայն բարութեանց, որ և ղաւգուտն քարոզեաց ի գիշերի և ցերեկի մեզ, և է փիլիսոփայ երիցական արհեստի և ծաղիկ ժամատեղաց և է գիտակ ամենայն հին և նոր կտակարանաց աստուածային գրոց գիտութեան, որ յար և նման է վարժապետին իւրոյ՝ Թումայ վարդապետին, որոյ տէր աստուած զվարձս բարեաց վաստակոց իւրոց տացէ նմա ի գալստեանն, ամէն։

Այլ և ես՝ անկար ի կարեաց, և անպիտանս ի պիտանաց, և անիմաստս ի յիմաստնոց, և անկարգս ի կարգաւորաց Խաչատուր սուտանուն

* «Ախի» բառի սկզբից մի տառ քերված է, կարծում ենք, որ գրիչն ինքն է քերել։

աբեղայ, որ և զանունս ունիմ և զգործս ոչ, ստացայ զսա ի հալալ
վաստակոց մերոց և գծադրեցաք բազում աշխատութեամբ զմնա-
ցեալսն ի յեղբաւրէ մերմէ Յովանէ քահանայէ Արծկեցոյ, զի նա ևս բա-
զում աշխատեցաւ ի դիրքս, որոյ տէր աստուած տացէ նմա վարձս բա-
րեաց վաստակոց իւրոց, ամէն։ Եւ տըւաք զսա ի յաստուածապահ գեաւ-
ղաքաղաքն Մարմետ, ի դուռն սուրբ Ստեփանոսի նախավկայի, որ է
նախածաղիկ ամենայն սրբոցն աստուծոյ՝ հընոցն և նորոցն, և է բարէ-
խաւս առ տէր վասն մեղաւորացս՝ վկայութեամբ Ստեփանոս վարդապե-
տին և Գրիգոր եպիսկոպոսին, որ է տեսուչ և հովիչ ժողովրդեանս, և բարի
և հարկևոր քահանայիցս, որ են քահանայ և սպասաւոր սուրբ Ստեփա-
նոս նախավկայիս՝ Յովանէս քահանայն, և Յոհանէս քահանայն, և Ստե-
փանոս քահանայն, և Մելքիսէդ փոքր քահանայն, [Կիրակոս քահանայ,
614բ Ղազար քահանայ, Մկրտիչ քահանա, որ է փեսայ ///* և տանուտէրք, որ
այսմ ժամանակիս վարեն և ուղղեն խաղաղութեամբ զգեաւղս և պահեն ի
յաւել առ ու պահանջողաց զաղքատորն՝ պարոն Սադաղէն՝ Վարդանայ
որդին, պարոն Էգկարշէն՝ Խաչտարու որդին, պարոն Դովլաթշէն՝ Մաղ-
թումի որդին, պարոն Գուտջիբէկն՝ Թաթարի որդին, պարոն Սարգիսն՝
Բիագաի որդին, պարոն Մկրտիչն՝ Սաղաթիլայ որդին, պարոն Յովանէսն՝
Սանակի որդին, պարոն Միքայէլն՝ Կարապետի որդին, պարոն Սադաղէն՝
Մովսեսի որդին, պարոն Կարապետն՝ իրիցու որդին, պարոն Գուլազիզն՝
խուսան որդին, պարոն Մխիթարն՝ Սարգըսի որդին, պարոն Ալթունն, պա-
րոն Ագբէկն, պարոն Կարապետն, պարոն Յոհանէսն, պարոն Ստեփա-
նոսն, պարոն Նաւասարդն, պարոն Կարապետն, պարոն Թումէն, պարոն
Յորդանան, պարոն Յակոբն, պարոն Խալիֆէն, պարոն Յովանէսն, պա-
րոն Գրիգորն, պարոն Շէրուանն, պարոն Թաթարն, պարոն Խէրապետն,
պարոն Քրմանն, պարոն Մուրատն և այլք, որ անուանքն ի միտս չի գար,
թէ մեծ է և թէ փոքր, թէ խարուստ է և թէ աղքատ, թէ բնական է և թէ նոր
էկեց, ամենեքեան՝ մեծ և փոքր, որ յիշեցաք և որք մնացին, և որք այս-
աւր լսեն և զաստուած-ողորմին ասեն։ Եւ տղայք սոցա, որ մեծանան և
ի չափ հասակի հասանեն և զտունս հաւր իւրեանց և զդեաւղս ի շէն պահեն
և զդուռըս սուրբ Ստեփանոսի նախավկայիս զարդարեն և պայծառացը-
նեն քահանայիւք և ժամանատեղաւք, լուցեալ կանթեղօք և ընթերցմամբ
գրոց։ Եւ ամենեքեան որք կամակից լինին այս բանիս՝ զքահանայսն ընդու-
նեն և սիրեն և զժամատեղն յորդորեն տրաւք ընչից, և մեծն և զփոքրն
յորդորէ և խրատէ՝ աչն հայրական աւրհնեսցէ զամենեսեան առհասարակ
զձեզ, ինն դասք հրեշտակքն աւրհնեն զձեզ, երկոտասան առաքեալքն
աւրհնեն զձեզ, ԻԴ. (24) մարգարէքն աւրհնեն զձեզ, վեշտասան հայրա-
պետքն աւրհնեն զձեզ, դասք մարտիրոսացն աւրհնեն զձեզ, խում[բ]ք
նահատակացն աւրհնեն զձեզ, հոյլք ճըգնաւորացն աւրհնեն զձեզ, հար-
սունք Քրիստոսի՝ սուրբ կուսանքն աւրհնեն զձեզ։ Այլ և սուրբ Աստուա-
ծածնի բարեխաւսութեամբն և Յովանու կարապետի և սրբոյն Ստեփանոսի
նախավկային, միածին որդին՝ տէր մեր Յիսուս Քրիստոս՝ աւրհնեսցէ
զձեզ և զորդիս ձեր, հոգով և մարմնով, տանամբ և տեղաւք, դարմաւք և
զաւա[կաւք]///

* Ուղղագիծ փակագծերի մեջ առնված անունները գրված են ներքին լուսանցքում։

Բ

612բ *Ձեռքըս փտի և հող դառնայ՝*
*Մոխիր, փոշի գազախանայ,*
*Գիրս յիշատակ առ ձեզ մնայ.*
*Թէպէտ խոշոր է գիր սորա,*
*Այլ դիւր՝ ընթերցով գիտենայ,*
*Երբ սովորի և հըմտանայ։*
*Որք ընթեռնուք 'ւ ագտիք ի սմա,*
*Յիշէք առ տէր ղդծաւղ սորայ*
*Եւ Քրիստոսի աստուծոյ մերոյ*
*Փառք յաւիտեանս, ամէն։*

## 226

## *ԱԻԵՏԱՐԱՆ*

*Երևան 1632*

*գրիչ՝* Գրիգոր
*վայր՝* Աղթամար

318բ *... Ուստի և տեսեալ զսորա անճառ փրկագործութեան խորհուրդ աստուածասէր և հաւատարիմ հարազատ եղբարքն* Սարգիս, *և* Խաչատուր, *տէր* Աւագ, *և եղբօրորդիք նոցին՝* Ստեփանոս *և* Յովանէս, *և ցանկացողք եղեն այս աստուածաբան սուրբ Աւետարանիս՝ վարդափթիթ բուրաստանիս և անուշահոտ մանուշակիս, և ետուն գծագրել զսա ի հալալ և ի քըրտնաջան աշխատութեամբ իւրեանց յիշատակ հոգոց իւրեանց, և ծնօղաց նոցա* Գիշուկին *և* Շամշային, *և եղբօրն* Բուտքէլին, *և որդոյ նորին* Կիրակոսին, *որ ի տիս երիտասարդական հասակի փոխեցաւ առ Քրիստոս դառն և ափսոսալի մահուամբ՝ կեցեալ ի ղարիպութեանն անարժան կե-*
319ա *նօք, և յետոյ առեալ ցաւ անողջանալի և վէրք || անբժշկելի և կըսկծելի մահւամբ փոխեցաւ յանանց կեանսն և եթող սուգ դառնացեալ մօրն իւրոյ և այլ ամենայն ընտանեաց, զոր և աստուած մխիթարեսցէ զնոսա, և միւս եղբօրն* Գրիգորին, *և այլ ամենայն արեան մերձաւորաց իւրեանց՝ կենդանեաց և հանգուցելոց։ Եւ ետուն զսա ընծա և նուէր ի դուռն* յաստուածապահ գեօղս* Մընչկանց, *յիշատակ անջնջելի և կտակ անդառնալի, որպէս զի հրճւեսցին սովաւ մանկունք սուրբ եկեղեցոյ...։*

319բ *Եւ արդ, ես՝ յետինս ի գրչաց և անարժանս ի կարգաւորաց սուտանուն քահանայ* Գրիգոր, *տեսի զսէր և զփափաք սոցա, զոր ունէին առ հոգևորսն և իմով իսկ տկարութեամբս յանձն առի և ամենակարող զօրութեամբն աստուծոյ կատարեցի զսա մեղսամած մատամբ իմով յաստուածապահ կղզիս* Աղթամար, *ընդ հովանեաւ ամենայաղթ սուրբ Խաչիս և Նշանացս, ի հայրապետութեան տեառն* Զաքարիայ *կաթողիկոսի ամենայն Հայոց** և պատրիարգ* Վաղարշապատու *և* Աղթամարայ *շնորհալից*

* Երկու տող դատարկ է թողնված եկեղեցու անվան լրացման համար։ Հետագայում, հավանորեն ԺԸ դարում, այդ տողերի վրա անվարժ ձեռագրով գրված է «սուրբ Սարգիս զաւրայվարին»։

** «Ամենայն Հայոց» բառերն ավելացված են մանր տառերով՝ լուսանցքի վրա։

*աթոռոյս, որ և յայսմ ամի եղեւ տէր* Զաքարայ *կաթողիկոսն զաջ սուրբ*
*Լուսաւորչին ի յ*Աղթամար, *ի թուականիս Հայոց ԹԺ. և ԺԱ. (1462)։ Զոր*
*և իմ անընդունակ գոլով յարիստ գրչութեան և բազում մեղացն ցնորիւք*
*պաշարեալ, այլ ըստ կարի իմում, զոր շնորհեաց ինձ մարդասէր սուրբ*
*հոգին, բազում աշխատանօք գծագրեցի զսա ի ստոյգ և ընտիր աւրինակէ՝*
*կենօք տառապանօք, ի դառն և ի վշտալից ժամանակիս, յորում կամք*
*ընդ հարկի անօրինաց։*
320ա *Արդ, որ ճաշակէք յաստուածային բուրաստանէս... յիշեսջիք... ստա-*
*ցողք սուրբ Աւետարանիս՝ զհարազատ եղբարքն* զՍարգիս, զԽաչատուր,
*և զտէր* Աւագ, *և* զՍտեփանոս, *և* զՅովանէս, *և զծնողքն սոցա՝* զՓիշուկ
*և* Շամշայ, *և զզաւակսն նոցա՝ զ*Թումայ, զՍտեփանոս, *և* զՄազբումշայ,
զԲուրթել, *և զկենակիցն իւր* զՀոռոփսեմ, *և զորդին իւր* զԿիրակոս,
*որ տարաժամ մահուամբ փոխեցաւ յաշխարհէս ողորմելի կենօք*
*ի ղարիպութեն և եթող սուգ անմխիթար ամենայն ընտանեաց*
*իւրոց, նաև* զՋանիբէկ, *և* զԱռաքէլ, զՍադաղայ, *և* զԿարապետ, զՄկըր-
տիչ, *և* զՅովանէս, զԽաթուն-Մէլէք, *և* զԵղիսաբէթ, զՇանբինբաթ,
*և* զԳուլիմսրի, *և* զՀալխաթուն, զՅակոբ, զՄեճրոբան, *և* զՍուլտան,
զԳրիգոր, *և զկենակիցն իւր* զՄարթայ, *և զորդիքն* զՍտեփա-
նոս, զՅովանէս, զԿարապետ, *և* զՅոճանէս, զՀալիմ, *և* զԳօճաւր, զԽոնձայ,
*և* զԹումայ, *և* զՍտեփանոսի *տղայքն* զԱբդլ-Ազիզ, *և* զԳրիգոր, զԱւետիս,
զՀազրէվարդ, *և* զՌստան-Մէլէք, *և* զՋանիբէկ: *Նաև* զՍարգիս, *և զկենա-*
*կիցն իւր* զԽաթունշայ, *և զորդին իւր, և զնորին կենակիցն* զԳուլմէլէք,
զՄիրանշայ, *և* զԹումայ, զՍադաղայ, *և* զՄաւրտիրոս, զԲախրիկ, զԱզիզ,
*և* զՇայինար: *Այլ և* զԽաչատուր, *և զկենակիցն իւր* զՀամօշխաթուն, *և*
*զզաւակսն իւր* զՄխիթար, զԴովլաթշայ, *և* զԽոցդեղ, զՅովսէփ, *և* զԱզիզ-
բէկ, զԱւետիս *և* զՄկրտիչ, զՄաղթումշա, *և* զԹուրւանդայ, զԽուշիկ, *և*
321ա զՄրուաթ: *Զտէր* Աւագ||, *և զկենակիցն իւր* զՀոռոփսէմ, *և ըզաւակսն իւր*
զԴալօբէկն, *և* զՄուրատ, *և* զԹումայ, զՄեճրօ, *և* զԽուդաբաշխ, զԹումայ,
զՄլխամ, *և* զՍուլտան, *և զմաւրքոյր սոցա* զՆշխուն, *և զորդին իւր* զՅովա-
նէս, *և զկինն իւր* զՇամշայ, *և զեղբայրն* զՅոճանէս, *և* զՂըլին, *զտէր* Աւա-
գի *անեկրն* զԶաքարայ, *և զկինն իւր* զԵղիսաբէթ, *և զորդին* զՎարդան, *և*
զԱստուածատուր, *և* զՍտեփանոս* *և զայլ ամենայն ազգատոհմքն նոցա*
*և զարեան մերձաւորքն յիշեցէք ի Քրիստոս...։*
*Այլ և յիշեցէք ի Քրիստոս* զԱտոմ *հեզահոգի հերպետն* զՇաճմէլէքենց
*և* զԱրմանշէն, *որ յորդորիչ և միջնորդ եղեն այսմ բարի գործոյս, և աս-*
321բ *տուած || ողորմի ասացէք նոցա, և տացէ նոցա տէր աստուած վարձս բա-*
*զում յարքայութեանն երկնից, ամէն։*
*Ընդ նոսին և զամենամեղ* Գրիգոր *գծագրող սորա աղաչեմ յիշել ի*
*տէր և լի բերանով աստուած-ողորմի ասել, նաև զծնողքն մեր* զԽաչիկ *և*
զԱզիզ-Մէլիք, *և զեղբայրն իմ՝ զհոչակաւոր քարտուղարն* զԹումայ *կրօ-*
*նաւորն, որ ուսոյց մեզ զարուեստ գրչութեանս, և զմիւս եղբայրն՝* զՆաւա-
սարդ, *և զորդին իմ* զԹումայ *քահանայ, որ աւգնական եղև մեզ և զերկու*

---

* *Չորս տող դատարկ է թողնված այլ ազգականների անունները լրացնելու համար։*

դլովն նա զրեաց և աշխատեցաւ ի կոկել Թղթիս, և զայլ ամենայն աղդատոհմք մեր և զարեան մերձաւորքն և զեբախտաւորքն՝ զկենդանիսն և զհանգուցեալսն, և զայնոսիկ, որք հանձնեցին զինքեանս ի մեզ և կարեկից եղեն մեզ ի պէաս ամենայն պիտոյից հոգոյ և մարմնոյ։ Եւ որք զմեզ
322ա յիշէք և ուղիղ սրտիւ աստուած-ողորմի առէք, և դուք || յիշեալ լիջիք ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ յայտնութեան պահուն...*։

## 227

### ՄԱՇՏՈՑ

Երևան 4263

285ա Արդ, ստացաւ զսուրբ տառս պատուական քահանայն Թումա՝ յիշատակ իւր և ծնողաց իւրոց...։

Արդ, գրեցաւ յիշատակարան սուրբ դրոյս ի Թիւս Հայոց տոմարիս ՋԺԱ. (1462), յամին յորում եկն դարձեալ աջն սրբո Լուսաւորչին յէջմիածնէն յԱղթամար, յառաջնորդութիւն տեառն Զաքարիա տիէզերալոյս կաթողիկոսին Հայոց։

285բ Արդ, որք հանդիպիք սմա... յիշեսջիք ի մաքրափայլ յաղօթս ձեր զստացող սուրբ տառիս զԹումա քահանայն, և զծնօղս իւր՝ զհայրն համաճուն զԹումա սարկաւաքն՝ զփոխեցեալն ի Քրիստոս, և զպապն իւր զԿիրակոս Լրէցն, և զմայր իւր զՇաֆար, և զամենայն արեան մերձաւորս իւր, ամէն, և զդեռաքոս որդին զՍտեփանոս: Այլ և զկին զՄոջան, և զծնօղսն նորա զԿիրակոսն ե զՀաթուն, այլ և զՍարգիսն, որ զկէս գնոյն երետ, և զծնօղսն նորին՝ զհայրն զԱնդրիասն և զմայրն Եկդիշն, և զհօրեղբայրն
286ա զԱկոբ, և զամենայն արեան մերձաւորս իւր յիշման արժ||անի արարէք ի Քրիստոս, և աստուած զձեզ յիշէ, ամէն։

Եւ զՆազ-Հաթուն յիշեցէք ի Քրիստոս։ Այլ և զմեղապարտ գցող սակաւ գրիս յիշեցէք յաղօթս ձեր և լի բեր[ան]ով աստուած-ողորմի ասացէք...։

## 228

### ԳԱՆՁԱՐԱՆ

Երևան 5798

գրիչ՝ Կարապետ
վայր՝ Վան

317բ ... Գրեցաւ սուրբ Գանձարանս ի Վան քաղաք, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս և Նախավկայ սուրբ Ստեփանոսիս և սուրբ Սահակ հայրապետիս, ի ՋԺԱ. (1462) Թուականիս մերում. ի հայրապետութեան տեառն Զաքարիայ* և մերոյ եպիսկոպոսի տէր Յովանիսի, ձեռամբ յոգ-

---

* 96ա և 249բ—250ա էջերի հիշատակագրություններում նույնպես հիշատակված են ձեռագրի հիմնական ստացողները։

** «Զաքարիայ» անունը խնամքով քերված է, սակայն տառերի հետքերը հնարավորություն են տալիս առանց երկրայության վերծանելու այն։

նամեղ և անարհեստ դրչի Կարապետի, որ մեծաւ աշխատութեամբ գրեցի
զսա ի խնդրոյ երջանիկ և սրբասնեալ կրամաւորի Ատոմ կոչեցեալ, որ
316ա ստացաւ զսա ի հալալ արդեանց իւրոց՝ յիշա|| տակ բարի հոգւոյ իւրոյ, և
ծնաւղաց իւրոց Հէրապեաի և Մարգարտի, և ամենայն ազգականացն։

Արդ, աղաչեմք զմանկունսդ սուրբ եկեղեցւոյ, որք հանդիպիք սմա և
աւգտիք ի սմանէ եղանակելով կամ աւրինակելով, յիշեցէք առաջի անմահ
դառինն Յիսուսի Քրիստոսի և լիակատար բերանով աստուած-ողորմի
ասացէք ստացողի սորա Ատոմ կրամաւորին, և ծնաւղաց նորին Հէրապե-
տին և Մարգարտին, եղբաւրն Մարգարոն, հաւրեղբաւրն Մկրտչին, որդ-
ւոյն Անարոնին, հաւրքըւերն Շուշանին, և հոգեւոր եղբաւրն Ստեփանոս
աբեղային, և ամենայն արեան մերձաւորաց իւրոց։ Մանաւանդ յիշեցէք
...Ատոմ կրամաւորին և ամենայն ազգականացն, զորս յիշեցաք. և
դուք յիշեալ լիցիք ի Քրիստոսէ, ամէն։

Ընդ նոսին յիշման արժանի արարէք և զիս՝ ղանպիտան գծողս զԿա-
րապետ, և զիմ ծնօղքն զՍտեփանոս քահանայ և զՄին, և զորդեակս իմ
զՍտեփանոս սարկաւագ, որ աշխատեցաւ ի կոկել թղթիս, և բոլոր սրտիւ
աստուած-ողորմի ասացէք. և Քրիստոս աստուած ձեզ յիշողացդ և մեզ
յիշեցելոցս առհասարակ ողորմեսցի, ամէն։

318բ Դարձեալ աղաչեմ || զձեզ յիշեցէք ի Քրիստոս զՍտեփանոս պատուա-
կան քահանայն և զծնօղքն իւր, որ զաւրինակն շնորհեաց, և աստուած
ողորմի ասացէք, և Քրիստոս աստուած ձեզ ողորմեսցի, ամէն։

229

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Աստրպատական, Բահվա գյուղ Մ.Տ.Մ.*

գրիչ՝ Կարապետ
վայր՝ Վան

Գրեցաւ յամի ՋԺԱ. թվ. Հայոց տոմարի (1462), ձեռամբ Կարապետ
անարժան երիցու, ի քաղաքիս որ կոչի Վան, ընդ հովանեաւ Աստուածած-
նի տաճարի, և սուրբ Ստեփանոսի նախավկայի, և Սահակայ հայրապե-
տի, և սուրբ առաքելոցն Պետրոսի և Պօղոսի, և Վարդանայ զօրավարի, ի
հայրապետութեան տեառն Զաքարիայի, և մերում առաջնորդի սուրբ ուխ-
տի Վարագայ տէր Յովհաննէսի եպիսկոպոսի, և ի թագաւորութեան
Ջհանշայի՝ որդոյ Ղարա-Իւսուֆի, ի խնդրոյ քահանայասէր և բարեպաշտ
տանուտրոջն Մելքիսէթի..., յիշատակ... հաւրն Էվատշին, և մաւրն Շնա-
հատրին, և կենակցին Շաքար-Խաթունին..., և զորդին իւր զԻրաքն և
զՊետրոսն, որք տարաժամ մահուամբ ի Քրիստոս փոխեցան, այլ և զդե-
ռաբուսիկ ծաղկեալ որդեակն իւր զԱւէտ, և զդստերքն՝ Նիգար-Փաշէն, և
Գաւհարն, և զԱյզանն, և հաւրքրոջն Մրվաթին, և որդւոցն Թաղայիշին, և
քեռցն Կիրակոսին, և քեռորդոյն Կարապետին, հաւրքըւերդստերն Արաս-
Խաթունին...:

## 230

### ԱԻԵՏԱՐԱՆ

*Լալայանի ձեռագիր ցուցակ № 7, Մ. Տ. Մ.*

*գրիչ՝* Ջ.ուրվար Երէց
*վայր՝* Տիւրի[կ]

*Յորժամ եկն* Ճիհանշահ *և աւար էառ գաւառք մերոյ* Կամխայ, *և արար բազում աւար և գերի, բայց ղաւրութեամբն աստուծոյ զերծաք ի յայն պատուհասէն և եկաք ի քաղաքս* Տիւրի[կ]:

## 231

### ԱԻԵՏԱՐԱՆ

*«Դեզարքունիք», էջ 51, Նոր-Բայազետ*

*գրիչ՝* Զաքարիա
*վայր՝* Տիւրիկ

*Գրված* Տիւրիկ *քաղաքում, սուրբ Սարգիս եկեղեցւոյ դրանը,* Զաքարիա *քահանայէն, ի վայելումն տէր* Ներսէս *եպիսկոպոսի, ի յիշատակ իւր և ծնողաց իւրոց* Ստեփաննոս *քահանային և* Խութլուբէկին, *ի թագաւորութեան* Ջիհանշահին, *յամի ազգական ՋԺԱ. (1462)*:*

## 232

### ԱԻԵՏԱՐԱՆ

*Փիրղ. Նշխարք, 184, Նոտ. 207, Բաղէշ*

*գրիչ՝* Մկրտիչ

*... Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս այս ձեռամբ սուտանուն* Մկրտչի *[քահանայի]... կենօք տառապանօք և բազում պանդխտութեամբ, նեղեալ յերևելի և յաներևոյթ թշնամեաց, ըստ նմանութեան կամ ծովու, որ յալեաց տատանեալ: Իսկ գրեցաւ սուրբ Աւետարանս ի մեծ թուականութեան Հայոց ՋԺԱ. (1462), ի կաթողիկոս[ութեան]//*

## 233

### ՄԱՇՏՈՑ

*Երևան 6112*

*174ա* *Գրեցաւ և կազմեցաւ Մաշթ[ո]ցս [ի] թվականին ՌՃԱ. (1652): Հին թիւն** այս է՝ ՋԺԱ. (1462):*

---

* Այս և նախորդ համարների տակ բերված են միայն հիշատակարանների բովանդակության հապճեպ ու համառոտ կատարված գրանցումներ:

** Այսինքն՝ գրչության տարեթիվը:

## 234

### ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ ԱՒԵՏԱՐԱՆԻ

Երևան 9222, է

գրիչ՝ Մելքիսէթ

*Տէր աստուած ողորմեցաւ անարժան ծառայիս, որ անուամբս կոչուիմ* Մելքիսէք *քահանայ և գործովս խաբիբայ։ Յայս թվականիս Հայոց ՋԺԱ* (1462) գրեցաւ սուրբ Աւետարանս, և նորընծա պատրաստեց աստուած* զԱլեքսանոս *մանուկ տղայ. ի կաթողիկոսութեան սուրբ էջմիածնին տէր* Գրիգորին, *ի փաշշահութեան* Ջահանշին:

---

* *Տարեթվի վերջին («Ա») թվանշանը գրված է այնպես, որ ավելի նմանվում է «Ը»-ի. սակայն «Ը» (8) կարդալու դեպքում հիշատակարանի գրության տարեթիվը պետք է համարենք 1469-ը, որը անկարելի է հաշտեցնել Գրիգոր Ջալալբեկյանի կաթողիկոսության (1443—1465) և Ջհանշահի փադիշահության (1437—1467) տարեթվերի հետ։*



ՋԺԲ 1463

## 235

### «ԱՌ ՈՐՍ» ՃԱՌՔ ԳՐԻԳՈՐԻ ԱՍՏՈՒԱԾԱԲԱՆԻ

Երևան 115

գրիչ՝ Ստեփանոս
վայր՝ Դարանաղեաց գաւառ, Աւագ վանք
ա

173ա Փառք... որ ետ կարողութիւն իմոյ տկար և տարտամ անձինս հասանել խաղաղութեամբ յաւարտ հոգէլից և աստուածային գանձիս Առ Որսիս, որ յորդառատ շնորհիւ և աստուածային լցեալ հոգովն Աստուածաբանն Գրիգորիոս արարեալ աստուածաբանութիւն և ուղղափառ դաւանութիւն և ընդդիմադրութիւն ընդդէմ հերետիկոսացն, ընդդէմ Նոմիոսի և Ատիկոսի, ընդդէմ Արիոսի և Մակեդոնի և այլ ամենայն համախոհացն նոցա։ Եւ ճշմարիտ և հաստատուն դաւանութիւն է մերոյ Հայաստանեաց եկեղեցոյս. և ամրացեալ կայ մերս եկեղեցի ի վերայ սորին դաւանութեանն։

Որ և իմ թշուառելոյս տեսեալ զսա և ցանկացող եղէ աստուածային գանձիս. և զամենայն տկարութիւնս և զախմարութիւն գրչիս և զխալումն
մեղկի մտացս ի բաց թողլով, այլ ջերմեռանդ սիրով և բորբոքեալ հոգւով և
յաւժարեալ կամաւք յաստուած ապաւինելով գծագրեցի զսա յիշատակ
քաջ վարդապետին իմոյ երանելոյն՝ յորջորջեալ անուամբ Ամլորդոյն
(Յովհաննէս), և ինձ՝ եղկելոյս՝ սորին անարժան աշակերտիս Ստեփանո-
173բ սիս, || այլ և համայրէն եղբարցս մերոց սրբազանեց, որք հաւաքեալ կան
յայսմ համալսարանիս՝ ի վանքս Աւաf, առ ոտս առատաշնորհ երջանիկ
րաբունապետիս և երկուս դասագլխացս՝ տէր Աբրահամիս, և տէր Մար-
գարէիս, և վանաց հայրպետիս՝ տէր Յովսէփիս, որ բազում աշխատանք
ունի, զի բազումք են միաբանքս, դի Լ. (30) անձն աբեղայ է, թո՛ղ զսար-
կաւագն և զգործաւորքն, զոր աղաչեմք զՔրիստոս, որ ի սոյն պահեսցէ
մինչև ի գալուստն իւր։ Այլ և յիշատակ է մարմնաւոր ծնաւղացս՝ հաւրս
Կաւրելին և մօրս Ազմելիքին, և եղբաւրս Պարսամին, և որդոց նորին, և
միւս որդոյն Յոհաննէս սարկաւագին, որ աշխատեցաւ ի կոկել թղթիս, և
ամենայն երախտաւորացն մերոց՝ որք հոգևոր և որք մարմնաւոր, որք
սիրելի են մեզ և որք ատեն զմեզ վասն յանդգնութեան մերոյ։ Աղաչեմ
զձեզ սրբասնեալ մանկունք եկեղեցոյ, որք հանդիպիք սմա կարդալով,
կամ աւրինակելով, կամ պատահմամբ դիպելով՝ յիշեցէք սրտի մտաւք
զվերոյգրեալսն՝ զերջանիկ վարդապետս, և զհամայրէն եղբարքս, և զա-
նարժան գրչակս, և մեղաց թողութիւն հայցեցէք ի Քրիստոսէ, զի այլ բա-
րութիւն յիշատակ չունիմ, միայն ի Քրիստոս եմ ապաւինեալ և ի ձեր

Նկ. 12. Մի էջ Ստեփանոս գրչի հիշատակարանից

սուրբ աղաւթմս։ Եւ աստուած զձեզ յիշէ առաջի ահաւոր ատենին, ասե-լով՝ Եկայք աւրհնեալք հաւր իմոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

Գրեցաւ գիրս ի թվիս ՋԺԲ. (1463) ի վանքս Աւագ։

Բ

55բ Ո՛վ խոհեմք և իմաստունք, յիշեցէք ի Քրիստոս զհոգևոր ծնօղսն և զբազմերախտ հայրս մեր՝ զքաջ հռետորս և բանիբուն տելետիմն՝ Զայն յորջորջեալ անուամբ (Յովնաննէս), և զսորին անարժան ծառայս և զարուպս աշակերտացն՝ զՍտեփանոս մեղօք լցեալ գրիչս, և զայլ սրբա-զան եղբայրսն, որք կան յայսմ լսարանիս՝ ի վանքս Աւագ կոչեցեալ, ի Դարանաղեաց գաւառիս, և աստուած զձեզ յիշեսցէ, ամէն։

Գ

9ա *Զքաջ հռետորս՝ զերջանիկս և զարժանաւորս՝ Զայն կոչեցեալ անուամբ աղաչեմ յիշել ի տէր, ընդ նմին և զանյաղթ փիլիսոփայս՝ զտէր* Աբրահամս, *որ սկիզբն և պատճառ է դասատանս յիշեցէք ի տէր։*

Դ

48բ—49ա *Սրտիւս ունիմ փափաք բանիս,*
*Գործիւ հմուտ չեմ արուեստիս,*
*Բայց աղաչեմ, որ հանդիպիս՝*
*Սրտիւ արայ տէր ողորմիս*
*Ջեղբօր իմոյ* Կարապետիս,
*Որ կամաւոր է սա գործիս.*
*Տուր տէր սորա զկամս սրտիս*
*՚Ի առաջնորդեայ զինքն ի բարիս։*

Ե

59բ *Ո՜հ անօգուտ զրուց, որ ղրկէ զմարդ ի բարեաց բիւրոց։*
*Միտ արա նշանիդ, եղբայր,*
*Երկու տողիւ կարդա ի վայր*
*Եւ գնա զայլն ի կարգին ճարտար։*

Զ

94բ—95ա *Փցուն գրչիս ինչ բան ասեմ*
*Կամ հարկ դնեմ թէ յիշեցէք,*
*Միայն ի ձեզ եմ ապաստան*
*Զողորմութիւն ձրի շնորհէք։*
*Նա, որ առատն է պարգևօք*
*Ձեզ պարգևէ զոր ինչ խնդրէք*
*Զփափաք սրտիս ձեր կատարէ*
*Որպէս գուք զմերս կատարէք։*

Է

107բ *Ոհ, տկարութիւն, որ տարաւ զկարողութիւնս. և ձեռս կու դողայ։*

Ը

158բ—159ա *Գիրս է խորին ծովու նման,*
*Ծածկեալ ի սա գանձ պատուական,*
*Լաւղորդ պիտի ճարտարաբան՝*
*Արտաքս բերէ զգանձս, որ աստ կան։*
*Մի լինիցիս յանձդ ապաստան՝*
*Կարծեալ գիտուն զքեզ ճարտասան,*
*Այլ յուսացիր յաստուածն բան՝*
*Յայն, որ աղբիւրն է գիտութեան,*
*Կրթեա եղբայր մինչ ի վախճան,*
*Մաքրեայ զքո միտըդ և զգայարան*

Եւ լեր Հոգոյն սուրբ բնակարան,
Որ հասանիս իմաստութեանն։
Այս բանս լիցի քեղ բաւական,
Վա՜յ եղկ[ել]ոյս հազար բերան։

## 236

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Փիրգ. Նոտ. 215, Վան, Արարք՝ ի ս. Աստուածածին եկեղեցի*

*գրիչ՝* Ստեփաննոս
*վայր՝* Տարօն, Եղրդտ մենաստան

### ա

... *Գրեցաւ աստուածախօս և աւետաբեր սուրբ Աւետարանս ի թուիս Հայոց ՋԺԲ. (1463), ձեռամբ անարժան և մեղսաթաւալ գրչի՝ սուտանուն* Ստեփաննոսի, *և ի կաթողիկոսութիւն տէր* Զաքարիայի, *և յառաջնորդութեան սուրբ ուխտիս տէր* Յովհաննէս *արհիեպիսկոպոսին, ի գաւառն* Տարօնոյ, *յերկնահանկէտ սուրբ ուխտիս և ի հրեշտակացոյց մենաստանիս* Եղրդտ *կոչեցեալ. ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին, և Յովհաննու Մկրտչին, և սուրբ Ստեփաննոսի նախավկային, և սուրբ Գրիգորի Լուսաւորչին, և օրհնաբուղխ սուրբ իւղոյս, ի դառն և ի չար ժամանակիս, յորում է արդարութեան կողմն նուաղեալ և անիրաւութիւն յամենայն կողմանց զօրացեալ։*

... *Յիշեցէք ի մեղսաքաւիչ յաղօթս ձեր զընտրեալ և զարժանաւոր, զպատուական և զկուսակրօն աբեղայն* զՅովհաննէս, *որ ետ գրել զսուրբ Աւետարանս...։ Արդ, ես՝ կրտսերս յորդիս եկեղեցւոյ և անպիտանս ի կրօնաւորաց...* Ստեփաննոս... *աղաչեմ զձեզ, որ միոյ ողորմու արժան առնէք զչարեօք լցեալս։ Ընդ նմին և զծնողսն մեր՝ զհայրն իմ* զՅովաննէս *և զմայրն իմ* զՀիրիֆայ, *և զեղբայրն իմ* զՍահակ: *Դարձեալ, աղաչեմ զձեզ յիշեցէք ի Քրիստոս զաշակերտքն մեր՝ զկուսակրօն աբեղայքն՝* զՅովանէսն, զԿիրակոսն, *և* զՊետրոսն, *և զայնոսիկ որ ի հետ մեզ են աշխատեր...։*

### բ

*Յայսմ աւուր անտանելի սուգ հասաւ մեզ՝* Մշոյ *երկրիս, զի կալան զառաջնորդն սուրբ ուխտին սուրբ Կարապետին՝ զտէր* Յոհաննէս *եպիսկոպոսն՝ տարան ի* Բաղէշ *և չարաչար նահատակեցին. յիշատակ նորին օրհնութեամբ եղիցի։ Այս գործեցաւ ի ՋԺԲ. (1463) թուին, ի յերկրորդ չորեքշաբթի յինանցն, ի քաղոց ամսոյ ԻԶ. (26), այս ամենայն եկն ի վե-*

րայ մեր վասն մեղաց մերոց*։ Ո՞վ կարէ պատմել զաղէտն և զկսկիծն որ գործեցաւ։

Ցայսմ ամի մորեխն երեկ և զաշխարհս ապականեաց։

237

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՏՈՒՄԱՐԻ ՅԱԿՈԲԱՅ ՂՐԻՄԵՑԻՈՅ

Երևան 2014

գրիչ՝ Յովսէփ
վայր՝ Բաղէշ

186բ Գրեցաւ Տումարատետրս այս ձեռամբ Յովսէփ քահանայիս, ի Բաղէշ քաղաքի, ընդ հովանեաւ սուրբ Սարգիս զօրավարիս, ի հայրապետութեանն տէր Յովանէսի, ի դանութեանս Ամիր-Շարաֆին, ի թվականիս Հայոց ՋԺԲ. (1463), ի յամս, զոր աստուած ի մեր մեղացն բարկացաւ և առաքեաց ի վերայ մեր մորեխ վնասակար, զոր ի տեղիս-տեղիս կերաւ զվաստակն և դարձեալ ողորմութեամբն աստուծոյ վերացաւ և ամէն ի ծովն հեղձան, զոր աստուած այլ ոչ տայ տեսանել քրիստոնէից, քանզի իւրն գինք արեան եմք։

Դարձեալ, աղաչեմ զամենեսեան, որք կարդայք զՏումարտետրս կամ օրինակէք յիշեցէք ի տէր զստացող սորայ զԽաչատուր քահանայ, և զծնօղսն իւր զԽղղաբն, և զմայրն զՀռիփսիմէն, և զկրկնորդ հայրն իմ զՍարգիս: Եւ զերախտաւոր վարպետն իմ զՅակոբ արեղայն Մշեցին յիշեցէք ի տէր, և զիմ արեան մերձաւորս, ամէն։

Դարձեալ, աղաչեմ զձեզ յիշեցէք ի տէր զԿիրակոս էրէցն՝ զհօրքուրոջ որդին իմ և զհայրն///

238

## ԱԻԵՏԱՐԱՆ

Փիրղ. Նշխարք. 185—186, Նօա. 214—215, Բաղէշ

գրիչ՝ Կիրակոս
վայր՝ Բաղէ՞շ

... Սուտանուն քահանայ Կիրակոս անմար գրիչ յանկ և յաւարտ հանեալ... ի յայս դառն և չար ժամանակիս, զոր անօրէն ազգն Իսմայէլի զօրացեալ են՛ ի վերայ մեր վասն մեղաց մերոց. և բազում չարչարանօք և նախատանօք նեղեն զնսեմացեալ ազգս քրիստոնէից, զոր տէր աստուած հատուցէ նոցա զփոխարէնն ըստ գործոց իւրեանց։

* Հովհաննես եպիսկոպոսի նահատակության պատմությունը գրել են ժամանակակից մի քանի հեղինակներ (տե՛ս Փիրղ. Նօա. էջ 210—214, «Հայոց նոր վկաները», էջ 299—304)։ Ըստ որոշ տեղեկության նրան քսությամբ մատնել են Բաղեշի ամիրապետ Մելիք-Շարաֆի ձեռքը իր միաբաններից ոմանք («ի յիւր միաբանէն և յընկերացն»), չարախոսելով նրա մասին, թե իբր նա քանդել է մահմեդականներին պատկանող ինչ-որ շինություն և նրա քարերով նորոգել Մշոյ ս. Կարապետի վանքը։

Արդ, գրեցաւ սա ի դառն ժամանակիս ի թուականիս Հայոց ՋԺԲ. (1463), ձեռամբ անարժան գրչիս Կիրակոսիս, ի հայրապետութեան տեառն Զաքարիայի, և յեպիսկոպոսութեան (Բաղիշոյ՝ Թամուրենց) տէր Յովանէսի, ի ղանութիւն Ջհանշայ միրզին, և մեր ամիրութեանս Մէլէֆ-Շարաֆին... որ նեղացեալ կանք ի ձեռս այլազգեաց, զոր տէր աստուած հատուսցէ նոցա զփոխարէնն:

Արդ, կրկին յիշեցէք ի Քրիստոս զմղտեսի Զարմանդուխան, որ ստացաւ զսուրբ Աւետարանս, և ետ յիշատակ ի գումն սուրբ Գէորգայ ի ձեռն սրբասնեալ փոքր քահանայիցն, Թադէոսի և Առաքէլի, Կիրակոսի և Գրիգորի, և այլ փոքր քահանայից, որ տիրութիւն առնեն...:

Աստուած-ողորմի ասէք մեղաւոր գրչիս Կիրակոս քահանայիս և ծնողաց իմոց՝ Էլէֆսան քահանային և Եղիսաբեդին...:

## 239

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Իրան, Փերյա գավառ, Սվարանց գյուղ, Մ.Տ.Մ.*

գրիչ՝ Մկրտիչ
վայր՝ Տփխիս

... Ստացող Ամիր, յիշատակ հօրն իւրոյ Հասանին, և մօրն իւրոյ Աղա-Մէլիքին, և կենակցին իւրոյ Աղջին, և Խոնդիկին, և որդոց իւրոց Քուրդամիրին, որ նահատակեցաւ ի յանօրինաց, և միւս որդուն Մուրադին, և դստերաց իւրոց՝ Սադեկին և Թազուխին, և թոռին իւրոյ՝ Քուրդամիրի դստերն Աղուլին...:

Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի թվ. ՋԺԲ. (1463), ի մայրաքաղաքս Տփխիս, ընդ հովանեաւ կամակատար սուրբ Աստուածածնիս և Գէորգեայ զաւրավարիս, ձեռամբ մեղապարտ և փծուն գրչի Մկրտիչ սուտանուն քահանայի: Գրեցաւ ի ժամանակս աստուածասէր թագաւորաց թագաւորի Գորգու, զոր տէր աստուած պահեսցէ զնա պարագայց ամօք յաղթող ի վերայ թշնամեաց խաչին Քրիստոսի, ի հայրապետութեան տեառն Զաքարիայի, ի վերադիտողութեան տեղոյս տէր Ղուկաս արհեպիսկոպոսի Հաղբատայ...:

Ես մեղապարտ Ամիրս, որ գնեցի սուրբ Աւետարանս, և իմ աղբէրքն՝ Քուրդամիրն, և միջնէկն Շահումիրն, և փոքր Աղազարն, և իմ Գ. (3) դստերքս՝ մեծն Սաքի, և միջնէկն Թամսուխ*, և փոքր Մանիշակ, որ տարաժամ փոխեցան:

## 240

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Փիրգ. նոտ. 217, Սալմաստ, Կըլլջայ գյուղ*

գրիչ
վայր՝ Ցախաց-քար

Աւետարան գրեալ ի վանս Ցաղեաց-Քար՝ ի Վայոց-ձոր գաւառի, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին և սուրբ Կարապետիս եկնման կա-

* Հավանաբար Թանգուխ անունն է, աղավաղված գրչի կամ ընդօրինակողի կողմից:

թուղիկէի. ի թուին Հայկազեան տոմարի ՋԺԲ. (1463), ի կաթուղիկոսութեան տէր Զաքարիայի՝ Բ. (2) ամ, ի ղանութեան Ջհանշահին՝ ԻԴ. (24) ամ։

## 241

### ԱՒԵՏԱՐԱՆ

ՄՑԿ 143 (1041), հտ. Ա., 620 - 621

գրիչ՝ Յովհանէս
վայր՝ Արծկէ

273բ ...Աւարտեցաւ եռահրաշ և հոգիազարդ Աւետարանս, որ է շաղկապեալ երանեալ աւետարանչացն՝ ըստ բազմերանգ դունոց ի մի ոստայն անկելով հանճար...։ Որոյ ցանկացող եղեալ սուրբ Աւետարանիս պատուական և աստուածասէր տանուտէրն Էգիլշայն և կենակիցն իւր Խոնձայն, որ ծերացեալ էին ժամանակաւ և հասեալ ի վերջք աւուրց. վառեալք ի սէր սուրբ Աւետարանիս ստացան զգանձս աստուածային՝ զանգին մարգարիտս, զվարդափթիթ անուշահոտ բուրաստանս, զաստուածաբան Աւետարանս յիշատակ բարի և բարեխաւս առ Քրիստոս հոգւոյ իւրեանց, և ծնաւղաց իւրեանց՝ Ստեփանոսին և Աննային, այլ և խոնձի ծնողացն՝ Ստեփանոսին և Խութլուին: Եւ ես՝ անպիտանս ի կարգաւորաց Յովանէս գրիչ, տեսի զսէր և զփափագ աստուածասէր տանուտրոջ Էգիլշին, և զբարեմիտ կենակցին իւրոյ զԽոնձային, ձեռն արկեալ գրեցի զսուրբ Աւետարանս ի քաղաքիս Արծկէ, ընդ հովանեաւ սուրբ Սքանչելագործիս և սուրբ Ստեփանոսի։ Ի թվականիս մերոյ ՋԺԲ. (1463) ամի, ի հայրապետութեան տեառն Զաքարիայի՝ ընդհանիւր Հայոց կաթողիկոսի, և յաշխարհակալութեանն Ջհանշային: (Խնդրում է յիշել ստացողների բազմաթիւ ազգականներին. և ապա կրկին աղաչում) յիշել ի մաքրափայլ յաղաւթս ձեր՝ զպարոն Նորտունկն որ աւգնական եղև ի գին Աւետարանիս, և... զպարոն Կիրակոս Սարփեցին, որ միջնորդ եղև ի ստանալ սուրբ Աւետարանիս...։ Եւ զիս զանարժան գծողս զՅովանէս և զծնօղսն իմ՝ զՅակոբ քահանայ և զՍալչուկ-Խաթունն, և զեղբարքն իմ զԳրիգոր սրբասնեալ կրօնաւոր և զՆերսէս լի շնորհօք սարկաւագ, և զՅակոբ որդեակն իմ, որ աշխատեցաւ ընդ իս և լի բերանով աստուած-ողորմի ասացէք։

## 242

### ԱՒԵՏԱՐԱՆ

Փիրղ. Նօտ. 216—217, Բերկրի՝ ի վանս տէր Ցուսկայ որդւոյն

գրիչ՝ Յովհաննէս Մանգասարենց
վայր՝ Արճէշ

...Եւ արդ, ես՝ յետինս ի կարգաւորաց [Յովհաննէս]... կատարեցի յամի, յորում էր թուականն Հայոց ՋԺԲ. (1463), յերկիրս Քաջբերունի, ի քա-

*ղաքիս* Արճէշ *կոչեցեալ, ընդ հովանեաւ սուրբ Տաճարիս Գէորգեայ զօրավարին... ժամանակիս՝ յորում է* Ջհանշա *փաթշահն յաշխարհն* Իրաղաց *և է իշխան երկրիս նորին որդին՝* Հասան-Ալին:

*Արդ, յայսմ ամի գրեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ անարժան քահանայի* Յովհաննու: *Աստուած-ողորմի ասացէք անարժան գրչիս, և ծնողաց իմոց* Մանզասարին *և* Փաշա-Մէլիքին, *և ուսուցչին իմոյ՝ քաջ րաբունապետին* Թումայի:

243

ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 6356*

*գրիչ՝* Խաչատուր
*վայր՝* Կտուց

264ա ... *Արդ, այսմ աստուածեղէն և երկնապարգև գանձիս և լուսափայլ և մաքուր մարգարտիս ցանկացող եղև երջանիկ և հարկեոր տանուտէրն* Հալիփէն*, *քանզի մեծաւ փափաքանաւք և սիրով հոգոյն ետ գրել զայս սուրբ Աւետարանս յիշատակ իւր, և ծնաւղաց իւրոց՝ հաւրն* Մելիքին, Դաւ-
265ա թին, Ստեփաննոսին ///** Մելիքին, *և կողակցին* Խաթիբին, *և հաւրն* Խէրապետին, *և մաւրն* Բաղտադին, *և եղբարցն* Կարապետին *և* Յովանիսին, *և քևերցն* Աւագուխոյն *և* Շնախտուրին, *և զաւակացն* Դադիանին, *և* Ղազարին, Թուրուանդին, *և* Մրուաթին, *և* Մուղալին, *և* Սաղաթին, *և* Գուլին, *և* Նաէֆին, *և* Նահապետ *քահանային, և ամենայն արեան մերձաւորաց իւրոց՝ կենդանեաց և հանգուցելոց...:*

265բ ... *Արդ, յանկ ելեալ կատարեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ անարժան և սուտ աբեղայի* Խաչատրու, *ի յերկիրըս* Վասպուրականի, *ի յանապատիս որ կոչի* Կտուց, *ընդ հովանեաւ սուրբ Ճառագայթին Ճրագ Ճշմարտութեան Լուսաւորչաչէն սուրբ Կարապետիս, և սուրբ* Խաչիս, *և սուրբ Աստուածածնիս, և սուրբ Ստեփանոս Նախավկայիս, և սրբոց Հռիփսիմեանցս, որ աստ կան հաւաքեալ. ի թուականիս Հայոց մեր ՋԺԲ. (1463), ի հայրապետութեան տեառն տէր* Զաքարիա *կաթու[ղիկոսին], և յաշխ[արհակա]լութեան* Ջհ[անշահ փ]աթշային, *ի դառն ժամ[անակիս], որ ոչ գիտեմ [թէ] ինչ լինի ///*

244

ԱՒԵՏԱՐԱՆ

*Ն. Ջուղա, 380, Մ.Տ.Մ.*

*գրիչ՝* Ազարիայ
*վայր՝* Վան

288ա—290ա ... *Եւ ստացաւ զսա (քահանայն* Աստուածատուր) *անջընջելի յիշատակ իւրն, և ծընողացն իւրոց* Թումին *և* Խաթուն-Մելէքին, *և կենակցին իւրոյ* Ջահանին, *և նորին ծնօղացն* Գուռջիբէկին *և* Նօնաւֆարին:

* *10բ էջի վրա նկարված է մի մեծ խաչ, որի ներքևում՝ աջ կողմից կանգնած է* Խալիփեն. *ձախ կողմից՝ նրա կին* Խաթիբը:
** *4 տող մաշված ու անընթեռնելի:*

*... Եւ արդ, ես՝ յետինս ի գրչաց, անարժանս ի կարգաւորաց* Ազարիայ *սուտանուն քահանայ... դրեցի... (յիշատակ) ծնօղաց իմոց և ուսուցչի՝* Կարապետ *քահանայի, որ յաղդմանէ չարին նահատակեցաւ ի յ*Արճէշ *քաղաքի, ի ձեռս անւրինաց, և մօրն իմոյ* Սաղդաթի*...: Եւ արդ, գրեցաւ սա ի թվականիս Հայոց ՋԺԲ. (1463), ի յաստուածապահ քաղաքս* Վան, *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, ի հայրապետութեան տեառն* Գրիգորի, *և ի թագաւորութեան* Ջհանշայի, *ձեռամբ անարժան իրիցու* Ազարիայի*... յիշեցէք ղհամշիրաք եղբայրն մեր՝ զբարեմիտ կրանաւորն* զԱռումն, *որ կամակից եղև անդին մարգարտիս...։*

245

*Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն*

*«Արցախ», էջ 267*

*գրիչ՝* Նիկողայոս
*վայր՝* Վան

*... Եւ արդ, ես մեղապարտ գծողս* Նիկողայոս*... գրեցի զԱւետարանս ի քաղաքս որ կոչի* Վան, *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին և սուրբ Վարդան ղաւրավարիս, ի թուականութեանս Հայոց ՋԺԲ. (1463), ի հայրապետութեան տեառն* Զաքարիայի *Հայոց կաթուղիկոսի, և մերոյ աթոռակալի սուրբ ուխտիս* Վարակայ *տէր* Յովհանիսի, *և ի թագաւորութեան* Ջհանշահ *իմիրզին։*

246

*Մ Ա Շ Տ Ո Ց*

*Երևան 2788*

*գրիչ՝* Գրիգոր
*վայր՝* Աղթամար

*... Եւ արդ, ես՝ անպտուղս ի բարեաց, ամենամեղս և անարժանս ի մէջ կարգաւորաց* Գրիգոր *սոսկ անուն քահանայ, տեսի զսէր և զփափաք սորա* (Մարտիրոսի), *զոր ունէր առ հոգևորսն և իմով իսկ տկարութեամբս*
374ա *յանձն առի || և ամենակարող զօրութեամբն աստուծոյ կատարեցի ղսա մեղսամած մատամբ իմով յաստուածունակ կղզիս* Աղթամար, *ընդ հովանեաւ ամենայաղթ զմբեթարկ սուրբ Խաչիս և շնորհաբաշխ աջի սուրբ Լուսաւորչին, ի հայրապետութեան տեառն* Զաքարիայի, *որ եղև պատրիարգ ընթհանրական ամենայն Հայկազեան տոհմիս։ Ի թուականիս Հայոց յինհարիւր և ի ԺԲ. (1463), ի գառն և ի վշտալից ժամանակիս, որ կամք ըմդ հարկի ազգին նետողաց։*

*Եւ արդ, աղաչեմք զդասդ լուսերամից, որք հանդիպիք սմա տեսութեամբ կամ կարդալով կամ աւրինակելով՝ յիշեցէք ի սուրբ և յերկնագնաց յաղօթս ձեր զյառաջ յիշեցեալ ստացող սուրբ գրոցս* զՄարտիրոս, *և զծնօղսն իւր* զԱստուածատուր *և* զՄրուաթ, *և զկենակիցքն իւր* զՀալիմ *և* զՋոհար, *և զորդիսն իւր* զԿարապետ *և* զԱռաքել, *և զդուստրն իւր* զՄլքան,

և զեղբարքն իւր զՍահակ և զՇիրինշահ, և զխորթն իւր զՅակոբ, և զկե-
374բ նակիցն նորա զԽութլու, և զզաւակսն նորա* || և զայլ ամենայն ազգա-
տոհմքն նորա՝ զկենդանիսն և զննջեցեալսն, մանաւանդ յիշեցէք և լիա-
կատար սրտիւ և բոլորախօս լեզուաւ և լի բերանով աստուած-ողորմի
ասացէք Մարտիրոսին և նախնեաց նորին, զի և դուք ողորմութիւն դտջիք
ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ յաւրհնութեան պահուն, ամէն։
Եւ արդ, ես՝ Մարտիրոս անարժան ծառայս աստուծոյ, ստացայ
զմայրս հաւատոյ զսուրբ գիրքս զայս, որ կոչի Մաշթոց… և ետու զսա
ընծայ և նուէր ի դուռն ամէնաւրհնեալ սուրբ Աստուածածնին՝ յաստուա-
ծապահ և յանուանի դեօղն ի Հօրգոմ…։
Դարձեալ, ես՝ Մարտիրոս տուի և նուիրեցի զսուրբ դիրքս զայս Հօր-
գոմու սուրբ Աստուածածնին յիշատակ ինձ և ծնողաց իմոց, և մի ոք իշ-
375ա խեսցէ հեռացուցանել զսա ի դրանէ Հօրգոմու սուրբ Աստուած||ածնին, ոչ
ի կարդաւորաց և ոչ յաշխարհականաց, ոչ ի մերոց և ոչ յատարաց. և
եթէ ոք յանդդնի և հեռացուցանէ, կամ գողանալով, կամ ծախելով, կամ
գրաւելով՝ դատապարտեսցի յաստուծոյ և յամենասուրբ Աստուածած-
նէն…։
Այլ և յիշեցէք ի Քրիստոս զպատուական և ընտրեալ հեզահոգի քահա-
նայն՝ զԱռաքել Աղթամարցին, որ հորդորիչ և միջնորդ եղև այսմ բարի
գործոյս…։
Նաև զծնօղսն մեր՝ զԽաչիկ և զԱզիզ-Մէլէք, և զեղբայրն իմ զհոչակա-
375բ ւոր քարտուղարն զԹումայ կրօնաւորն, || որ ուսոյց մեզ զարուեստ դրչու-
թեանս, և զորդին իմ զԹումայ քահանայն, որ աշխատեցաւ ի կոկել թղթիս
և մինչ ի յոտնալուայն նա գրեաց…։

## 247

## ԿՈՆԴԱԿ

Երևան, պտտտսիկ 1449

Աւարտեցաւ Կոնդակս ձեռամբ մեղուցեալ և անարժան Ներսեսի ի սուրբ աթոռս Աղթամար, ի թվականութեան Հայոց ՋԺԲ. (1463), և ի հռոմի ամաց՝ մարտի յԹ. (9), աւրն չորեքշաբթի. Որք ընդթեռնուք յիշեցէք ի Քրիստոս զեղբայրն իմ Ստեփաննոս կրօնաւորն, և զծնաւղսն իմ, և զանյիշելիս, և տ[էրն մե՞ր]զձեզ յիշէ, ամէն։

## 248

## ՄԱՅՐ ՄԱՇՏՈՑ

Փիրդ. Նոտ. 216, Վան, Աւարք՝ ի ս. Աստուածածին եկեղեցի

գրիչ՝ Թումայ
վայր՝ Աղթամար

…Եւ արդ ես՝ ամենամեղս և անարժանս ի մէջ կարգաւորաց Թումայ անպիտան քահանայ, տեսի զսէր և զփափագ առ հոգևորն (տանուտէր

* Գրչի կողմից դատարկ թողնված 8 տողերի վրա այլ ձեռագրով գրված է. «և զՄուրատն և զՍտեփանոս և զ'Լեւոնիս և զԱտոմ և զԹարբիփշայ և զԹանգ-Հաթուն, որ տաքաժամ փոխեցան ի Քրիստոս աստուած»։

Աւիտոնին). և իմով իսկ տկարութեամբ յանձն առի և ամենակարող զօրութեամբն աստուծոյ կատարեցի զսա յաստուածաբնակ կղզիս Աղթամար, ընդ հովանեաւ ամենայաղթ սուրբ Խաչիս և շնորհաբաշխ սուրբ Լուսաւորչի աջիս, ի պատրիարքութեան տեառն Զաքարիայի Հայոց վերադիտողի, ի թուականութեանս Հայոց ՋԺԲ. (1463), ի դառն և ի վշտալից ժամանակիս...։

## 249

## ԱՒԵՏԱՐԱՆ

**Երևան 4837**

գրիչ՝ Մարգարէ
վայր՝ Ռշտունիք, Բերդածոր վանք

ա

... Ումն պատուական տանուտէր Աստուածատուր կոչեցեալ ի վաղուց հետէ ցանկալ այսմ աստուածախաւս սուրբ Աւետարանիս և ետ գրել զսա
358ա ի հալալ արդեանց իւրոց յիշատակ հոգւոյ իւրոյ, || և ծնաւղացն՝ հաւրն Անդրէասին և մաւրն Թուղթանկին, և եղբարցն իւրոց Ղազարին, Դանիէլին և Վարդանին, և հաւրեղբաւրն Յակոբին, և կենակցին իւրոյ Բաղդատին, և զաւակացն իւրոց Ստեփանոսին՝ փոխեցելոյն առ Քրիստոս, և Թումային, և Մանկտևագին, և միւս Ստեփանոսին, և դստերացն Խէրմէլէքին և Շամամին և Մարթային, և կնոջ եղբաւր Մարեմին, և ամենայն արեան մերձաւորաց իւրեանց՝ կենդանեաց և հանգուցելոց, ամէն։
Արդ, աղաչեմ զամենեսեանդ, որք հանդիպիք սուրբ Աւետարանիս կարդալով, կամ լսելով, կամ աւրինակելով յիշեցէք ի Քրիստոս զստացողք սուրբ Աւետարանիս...։
359բ ... Ընդ նոսին և անյիշելույս Մարգարէի գրչի, և ծնողացն իմոց Յոհանիսին և Ոսկոյն, և եղբարցն իմոց Յովանիսին և Մխիթարին, և զաւակաց նորին...։ Քրիստոս աստուած զՎարդան քահանայն, և զծնաւղքն իւր, և զհաւրեղբարքն իւր, և զողայքն իւր, և զամենայն արեան մերձաւորքն իւր դասակից արա ընդ քսանուչորս քահանայիցն...։
360ա ... Աւարտեցաւ սուրբ Աւետարանս ի յերկիրս Ռըշտունեաց, ի վանքս Բերդածոր կոչեցեալ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս և այլ սրբոցս, որ աստ կան հաստատեալ, ի թվականիս Հայոց Ջ. և ԺԲ. (1463), ձեռամբ մեղաւոր գրչի Մարգարէի, և խոշորութեանս և սխալութեանս անմեղադիր լերուք, զի աչքս ի լուսոյ էր պակասեր և ձեռս ի շաւշափելոյ և միտքս ի տեսանելոյ, և Քրիստոսի թագաւորին փառք յաւիտեանս, ամէն...։

ծաղկող՝ Կար[ապե՞]տ

բ

15բ Աւգնեա տէր Յիսուս տկար մատինս և յաջողեա զգործս մեղաւորիս, ամէն։

գ

1բ ԶԿար[ապե՞]տ նկարող և զծնաւղքն և զուսուցիչ [յիշեցէք]։



Նկ. 13. Ձեռագրի ստացող տանուտեր Աստուածատուրը իր մերձավորների հետ

250

ԱԻԵՏԱՐԱՆ

«Արցախ», էջ 274

գրիչ՝ Իսրայէլ
վայր՝ Մոկք, Փասավանք

Շնորհիւ տեառն սկսայ և ողորմութեամբ նորին կատարեցի. զմեղուցեալ գրիչս Իսրայէլ յիշեցէք...։ Արդ, գրեցաւ սա յարքունական երկիրս

Մոկաց, ի տեղիս անապատ, որ Փասավանք կոչի, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս… ձեռամբ յոգնամեղ և անարուեստ դրչի Իսրայէլ[ի]… ի թուականիս Հայոց ՋԺԲ. (1463) ամին, ի խնդրոյ… մահդասի Պաւղոսի, յիշատակ հոգւոյն իւրոյ։

## 251

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 7836

գրիչ՝ Մաղագիայ
վայր՝ Երերան

… Արդ, գրեցաւ նամակս աստուածային… ի թուականութեանս Հայոց ՋԺԲ. (1463), ի վանքս Երերան, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս և սուրբ Գէորգայ զաւրավարի, ի թագաւորութիւնն Ջահանշահին, ի հայ-
289բ րապետութեանն || տեառն Գրիգորի, ըստ խնդրոյ և փափաքանաց հաւատարիմ և ուղղափառ պատուական առքաւուն Սաքի…:

Արդ, ո՞վ մանգունք սուրբ եկեղեցո, որք համդիպիք այսմ հոգիոմակ տառի կարդալով կամ աւրինակելով յիշեսջիք ի սուրբ և յերկնաթռիչ յա-
290ա ղաւթս ձեր զՍաքի, և զծնաւղսն իւր՝ զը||հայր նորա զՌաճմանշէն և զմայր նորա Գոճար, որ փոխեալ է ի Քրիստոս, և զկենակիցն իւր զԲէկին, և զաւակ նոցա զՋճանշէն և զԱսպաճանշէն, և զամենայն զննջեցեալսն իւր՝ զհին և զնոր, առհասարակ…։

Յիշեսջիք զխաւարեալս հոգով և զաղքատս ի բարեգործոց՝ զփծուն և տխմար և զյիմար գրիչ զՄաղագիայ սուտանուն կրամաւոր՝ զպարտականս բիւր քանքարոյ…։

## 252

### ՇԱՐԱԿՆՈՑ

Երևան 2465

գրիչ՝ Սարգիս
վայր՝ Արմիզաւնք գիւղ

294բ … Ի թվն. Հայոց ի ՋԺԲ. (1463) գրեցաւ տառս այս ձեռամբ բազմամեղի Սարգիս քահանայի, ի գեաւղն Արմիզաւնք, ընդ հովանեաւ սուրբ Սարգսի զօրավարի և ի թագաւորութեանն Ջհանշային:

Գրեցաւ սա [ի լա]ւ և յընտիր աւրինակէ, որք աւգտիք կամ օրինակէք՝ յիշեցէք յառատ ողորմութիւնն աստուծոյ զգրող սորա և զծնողսն իմ ի տէր, որ յիշէ ըզմեզ՝ յիշեալ լիցի ի նոյն ողորմածն աստուած, որ տացէ հարիւրապատիկ աստ և ի հանդերձեալն աւրհնեալ յափտեանս, ամէն։
295ա Արդ, գրեցաւ սա ի վաելումն անձ[ին] իւրոյ* և յիշատակ հոգւոյ իւրոյ, և ծնողաց իւրոց Ջանիբէկին, Աառմին, և կենակցին իւրոյ

* Կես տողի չափ տեղ անգրել է թողնված։

Դանայ-Խաթունին, և Ալամշին: Եւ դուք ամենեքեան, որք պատահիք այսմ
տառիս՝ ուսմամբ կամ գաղափար առնելով՝ յիշեսջիք ի մաքուր յաղօթս
ձեր զՋանիբէկն և զԱտոմն և զԴանայ-Խաթունն զի նա եւ զգրողչէն
դրոցս, որ և զնա աղաչեմ յիշել յաղօթս. և Քրիստոս, որ առատն է ի
տուրս պարգևաց, առհասարակ, ամենեցուն ձեզ և մեզ ողորմեսցի, և
նմա փառք յաւիտեանս, ամէն։

## 253

## ԱՒԵՏԱՐԱՆ

Սեբաստիա, ս. Նշան, Հ9. ՀԱ, 1925, սյուն. 132—133

գրիչ՝ Անդրէաս
վայր՝ Եւդոկիա

562 ... Արդ, եղև գրաւ սորա ձեռամբ անարհեստ գրչի Անդրէաս երիցու՝
մեղապարտ և անարժան հոգւոյ, որ միայն անուամբ եմ քահանայ և գոր-
ծովս ոչ։ Ի թուականութեանս Հայոց ՋԺԲ. (1463), ի քաղաքս Եւդոկիա,
զոր այլք Թաւղաթ կոչեն, ընդ հովանեաւ սրբոյն Ստեփաննոսի նախավ-
կային և սրբոյն Յովհաննու Մկրտչին և սրբոյն Սիմէոնի։ Արդ, աղաչեմ
զամենեսեան, որք հանդիպիք սուրբ Աւետարանիս կարդալով, կամ աւրի-
նակելով, կամ տեսանելով յիշեսջիք ի սուրբ աղաւթս ձեր զանարժան
գրիչս զԱնդրէաս և զերկու հարազատ եղբարքս իմ՝ զԳրիգոր քահանայն
զարագ նկարողն և զԱռաքել սարկաւագն։

Արդ, յերեսս անկեալ աղաչեմ զամենեսեան կրկին յիշեսջիք ի սուրբ
աղաւթս ձեր զմարմնաւոր եղբայրն իմ և զհոգևոր հայրն զԳրիգոր քահա-
նայն զարագանկար...։

Այլ և յիշեսջիք յաղօթս ձեր զհաւրեղբայրն իմ զՊաւղոս կրօնաւորն՝
զհանգուցեալն առ Քրիստոս, զի շատ և բազում աշխատանք ունի առ մեզ,
որոյ տէր աստուած ողորմի... և զքուերորդին իմ զՅովհաննէս երանա-
ւորն, որ և նա բազում աշխատանք ունի առ մեզ. այլ և յիշեսջիք յաղօթս
ձեր զհայրն իմ զՇնորհաւոր պարոնն, և զմայրն իմ զՎայր-Տիկինն, և
զծնողսն նոցա և զամենայն արեան մերձաւորսն իմ...։

Արդ, փափաքող եղև սուրբ Աւետարանիս աստուածասէր և հաւատա-
րիմ ծառայն Քրիստոսի պարոն Կոստանդն, և ստացաւ զսա ի հալալ ընչից
իւրոց՝ յիշատակ զաւակին իւրոյ Եղիսաբէթին...: Յիշեսջիք ի սուրբ աղաւթս
ձեր զպարոն Կոստանդն, և զծնողսն իւր՝ զհայրն իւր զԿիրակոսն և զմայրն
իւր, և զկենակիցն իւր զՇահարն, և զպատկոն իւր զՍահարպէկն, և զԱս-
տուածատուրն, և զՄանուայն, և զեղբարսն իւր զՍարգիսն և զՇահմէլիքն,
և լիառատ սրտիւ աստուած-ողորմի ասացէք։

## 254

## ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

Երուսաղէմ 27

Ա. Սիւրմէեան, Մայր ցուցակ, Ա, 134—135

1215ա ... Զոր յետոյ մեծ վարդապետն մեր քաջ եկլեսիաստէն Հայոց Գրի-
գոր Տերենց՝ մեծափափաք յաւժարութեամբ և ճշգրտիւ ժողովեաց յամե-

ճայն պատմութեանց իբր զժրաշան մեղու՝ որ ժողովէ զամենայն ծաղիկս ի բուրաստանեաց։ Ըստ այսմ աւրինակի ժողովեաց զամենայն հռչակաւոր պատմութիւնքս՝ զարմանալի և հիանալի լսողաց, և զարդարեաց զլուսափթիթ բուրաստանս. որ դրեաց և հրաման ետ ամենեցուն նոյնպէս դրել։ Որոյ ես անմիտ և անիմաստ ծառայս աստուծոյ Մարգարէ սուտանուն աբեղայ, դրեցի ըստ կարի իմոյ, աւգնականութեամբն աստուծոյ կատարեցի։ Յիշեցէք ի Քրիստոս և զհոգևոր եղբայրն իմ զԱռաքել կրոնաւորն, որ շատ աշխատեցաւ ի կոկել թղթիս։

Արդ, եղև զըրաւ գրչութեան այսմ աստուածաշունչ մատենի ի թըւականութեան Հայկազան տումարի ի ՋԺԲ. (1463) թվին, ի հայրապետութեան Հայոց տեառն Կարապետի, ի յերկնահանգէտ և ի հռչակաւոր սուրբ մայրաքաղաքս Երուսաղէմ, ընդ հովանեաւ հրաշափառ ամենափրկիչ սուրբ Կաթուղիկէիս, վերածայնելոյ սուրբ Փրկիչ, որ է վէմ կափարիչ սուրբ գերեզմանին Քրիստոսի, և այլ սուրբ տնօրինականացս աստուծոյն մերոյ Յիսուսի, աւժանդակութեամբ հոգւոյն սրբոյ աւարտեցաւ։

Յիշեցէք ի Քրիստոս զարհեպիսկոպոսս Երուսաղէմայ զտէր Պետրոսն, զՓրկչիս փափակալն զՅակոբ կրօնաւորն, և զծեր Աստուածատուր կրօնաւորն, և զՅովանէս կրօնաւորն, և զՀայրապետ հեզահոգի աբեղայն, և զՆերսէս աբեղայն, և զՅովանէս աբեղայն, և զԹադէոս հայր ճգնաւորն, և զԱռաքել կրօնաւորն, և զԱբրահամ միակեցն, և զԳրիգոր միակեցն, և զփծուն գրչակս, ամէն։ Այլ և զհոգևոր հայրս մեր՝ զտէր Յովանէս եպիսկոպոսս, մականուն Տաւիլ, և զիւր հոգևոր որդիքն՝ զտէր Տաւճական կրօնաւորն և զԱստուածատուր կրօնաւորն, և զտէր Մարտիրոս եպիսկոպոսն Պուրսացի, որ աշխատեցաւ և ծաղկեց զգիրքս, և յայսմ ամի եկին ի Սինէական անապատէն և ի Պըռի վաներուն և բերին զսուրբ հարանց աւրհնութիւն յԵրուսաղէմս՝ մեզ։

Դարձեալ յիշեցէք ի տէր զվերակացու և զհրամանատար սուրբ Յակոբայ վանիցս զպարոն Մղատում Սմաճ, և տէր Պետրոս եպիսկոպոսն, և զԳրիգոր ըռայիսն, և զԱստուածատուր հայրապետն, և զայլ սպասաւորս եկեղեցեացն, ամէն։

Դարձեալ յիշեցէք ի Քրիստոս աստուած զստացող սուրբ գրոցս զԱբրահամ կրօնաւորն, և զծնօղքն իւր զՄկրտիչն և զՀապիպ-Մելիքն, և զհանգուցեալ եղբայրն իւր զԱռաքելն, և զքոյրն իւր Խութլուն, և զայլ արեան մերձաւորքն, ամէն։ Այլ և զԱռաքել ճգնաղդեաց կրաւնաւորն, և զծնողքն իւր զԱստուածատուրն և զՈսկիհատն, և զեղբայրն իւր զՎարդաճ, և զայլ արեան մերձաւորսն, ամէն։ Այլ և յիշեցէք ի տէր զՄարգարէ սուտանուն աբեղայս, որ ես տկար անձամբս և անարհեստ գրչութեամբս յանձն առի և աստուծոյ կարողութեամբն յանկ հանի և կատարեցի։ Աղաչեմ զձեզ եղբայրք, զի խոշորութեան և սղալանցս անմեղադիր լինիք, զի կար մեր այս չափ էր։ Այլ զաստուած-ողորմին մի մոռանայք ինձ, և ծնողաց իմոց Ներսէսին և Խաթունին, և հաւրեղբաւրն իմ Ղազար քահանային, և երկու քըւերցն իմ Մարիամին և Աննային, և այլ արեան մերձաւորացն, ամէն։

Դարձեալ գիտասջիք, ո՞վ մանկունք եկեղեցւոյ, որ եղաք զԱյսմաւուր-

քըս ի սուրբ քաղաքս Երուսաղէմ, ի վանքս սուրբ Փրկչիս, ընդ հովանեաւ սուրբ կափարիչ վիմիս. և չունի իշխանութիւն և հրաման ո՛չ առաջնորդ և ո՛չ գործաւորք հանել ի դրանէ եկեղեցոյս, ո՛չ ծախել և ո՛չ գրաւել. և եթէ ոչ լսէ՝ գնաւղն և ծախաւղն պատժի ի սուրբ Փրկչէն։ Աղաչեմք զձեզ, ո՜վ սուրբ կրաւնաւորք, ով ոք կարդայք, կամ աւրինակէք, կամ տեսանէք՝ աստուած-ողորմի ասացէք լի բերանով և թողութիւն խնդրեցէք յաստուծոյ, և խնամ տարէք և շրրով բռնեցէք...*։

## 255

## ՌԱՄԳԻՐՔ

Երևան 1711

99ա Ո՜վ դասք լուսերամ քահանայից, որ կայք ի դրանս սուրբ եկեղեցւոյ, աղաչեմք զձեզ յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զկուսակրաւն աբեղայն զԴաւիթ: Եւ որ յիշէ՝ յիշեալ լիցի ի միւսանգամ գալուստն Քրիստոսի, ամէն**։

Յիշեցէք ի Քրիստոս զԴաւիթ կրաւնաւորն, որ ստացաւ զայս Ռամգիրքս յիշատակ իւր, և ծնաւղաց իւրոց՝ հաւրն Ապաըլմըսեճին և մաւրն Շամամին, և եղբաւրն Յովանիսին, և իւր որդւոցն Մարտիրոսին և Ջաfարին. և որ յիշէ զմեզ՝ յիշեալ լիցի ինքն առաջի Քրիստոսի, ամէն։

Ի թվիս Հայոց ՋԺԲ. (1463)։

---

* Հիշատակարանը, համարյա ամբողջությամբ, հրատարակված է նաև Աղավնունու «Միաբանք և այցելուք հայ Երուսաղէմի» աշխատության մեջ, էջ 253—254։

** Տող ու կես քերված է, դժվարությամբ հնարավոր է լինում կարդալ հետևյալը՝ «Որ է այս Դաւիթ քահանայս ի /// գաւառէն, ի /// սուրբ Աստուածածնէ»։





## 256

### ԳՐՈՒԹԻՒՆՔ ԴԻՈՆԻՍԵԱՑ ԱՐԻՈՊԱԳԱՑԻՈՅ

Երևան 1309

գրիչ՝ Ստեփաննոս
վայր՝ Դարանաղեաց գաւառ, Աւագ վանք

258ա Փառըք հաւրն էականի...
Որ ետ անձինս իմ տկարի
Կարողութիւն իմ ըստ կարի,
Եւ ի յաւարտ այսմ տառի
Ետ ժամանել տէրն բարի։
Զի սայ է գանձ անդրժելի
Դիոնիսի սրբոյն մեծի,
Որ զամենայն իմաստ բանի
Սա ամբարեալ ի յինքն ունի...։
258բ ... Եւ իմ տեսեալ զայս տրփալի
Փափաք եղեալ ստորագրեցի,
Ի յիջատակ քաջ տելետի
Եւ իմաստուն Ղաբանոսի՝
Հաւրս մերոյ սրբազանի,
Որում անուամբ Զայն յորջորջի*
Անուանակցին համազուգի,
Սուրբ և մաքուր 'ւ առաքինի,
Հոգոյն սրբոյ տուն և տեղի
Իմաստութեան բուն բարելի,
Աստուածաբան ներհմտալի,
Ներգահ դասուց հանգամակի,
Որ ի տուէ հանգիստ չունի
'Ի ի գիշերի աններհելի՝
Մտեալ ի յերկ և աշխատի
Յաստուածատունկ բուրաստանի
Հաւաքելով զծաղիկ ծայրի
Յերբնագունից ներգունակի,
Եւ կազմելով ռետին բարի
Առ ի յարբումն առողջալի.

* Ակնարկում է Ավագ վանքի համալսարանի գլխավոր վարդապետ Յովհան Համշենցուն։

Զոր տէր աստուածն ամենայնի
Պահէ անփորձ ամաւք ի լի,
Եւ յետ աստեացս այս զգալի՝
Տա զհանգիստն յաւիտենի։
259ա Այլ և եղբարցս ամենայնի,
Որ կան ի յայս լսարանի
Սայ յիշատակ ի մէնջ լիցի
Զեզ յիշողաց զմեզ ի բարի,
Թ՚է դէպ լիցի կամ պատահի,
Որ հանդիպիք այսմ տառի՝
Յիշէք զեղբայրքս այս նազելի,
Զոր յիշեսցուք այժմ ի կարգի։
Նախ զգլուխն ամենայնի,
Զոր յիշեցաք նախ կրկնակի,
Զքաջ րաբունին մեր բաղձալի,
Որ Ամլորդոյն անուամբ կոչի
Եւ ընդ սմին հանգամնակի՝
Զտէր Յովանէս քաջ րաբունի,
Որ գաւառաւ Համշինացի,
Պետ և գլուխ, պարոնորդի.
Եւ զվարդապետն գովելի՝
ԶԱստուածատուրն Ջերմացի,
Որ ջերմեռանդ սիրով վառի
Ի շինութիւն այս սուրբ ուխտի։
Զեպիսկոպոսս մեր արհի՝
Զտէր Սարգիսն ցանկալի՝
Վերադիտող Եզընկայի
Եւ Եկեղեացն գաւառի։
Եւ ընդ նմին համակարգի՝
Զտէր Գրիգորս բաղձալի՝
Ըզառաջնորդ սրբոյ ուխտի
Հաւրըն մեծի Լուսաւորչի։
Այլ և զհայրքըս մեր բարի
Զզերկու վարպետըս նազելի՝
Զտէր Աբրահամ հեզ և բարի,
Զտէր Մարգարէն առաքինի։
Եւ զփակակալս առաքինի՝
Ըզտէր Յակոբ քաջ և արի,
Որ ի տըւընջեան ՚ւ ի գիշերի
Կա անհանգիստ անլռելի։
Եւ զերկու հայրըս ծերունի
Հանգոյն մեծին Եղիայի՝
Զտէր Առաքել Եզընկացի
Եւ զտէր Ներսէս Բաղիշեցի։

Այլ և զմանկունքս առագաստի
Սուրբ և մաքուրք և սիրալի
Ոմանք ի սպաս սրբոյ բանի
'Ի այլք ի վարումն երաժշտի,
Զոր յիշեսցուք ի մի կարգի
Ի յառաջնոց մինչ ի վերջի.
Եւ ձանձրութիւն ձեզ մի լիցի,
Այլ հայցեցէք մասն բարի՝
259ր Նախ զԳրիգոր Կաֆայեցի՝
Զսպասաւոր տեառն բանի,
Այլ և զծաղկող այս մատենի,
Տէրն տացէ իւր վարձ բարի։
Այլ և զեղբայրս իմ ցանկալի
Զաէր Կարապետ սիրող բանի
Ի Տիւրիկոյ քաղաքացի
Մեզ աւգտակար և կարելի։
Զմիւս եղբայրս այլ բաղձալի
Զտէր Յովանէս հոգով բարի,
Ի գաւառէս Դարանաղի՝
Դարան եղեալ մեզ և տեղի։
Զտէր Մաթէոս Սեբաստացի՝
Վարս ստացեալ երկնաւորի,
Աւգուտ եղբարց և սիրելի՝
Կապող, կազմող այսմ տառի։
Այլ և զՆերսէսն Հաղբատացի,
ԶՆիկողայոսն Պոնտացի՝
Թողեալք զտունս հայրենի
Ըստ հրամանի տեառն Յիսուսի։
Այս աշակերտքն են ի կարգի
Ծառայք շրոյն կենաց տըւողի
Եղեալք յազգերն իմանալի
Զոր արբուսցէ տէրն բարի։
Այլ և զհայրս անապատի
Սրբոյ ուղտիս հռչակելի՝
Ըզտէր Յովսէփս, որ աշխատի
Ի Քրիստոսէ զվարձս ընդունի։
ԶԵզէկիէլն շնորհալի
Եւ զՅօհանէսըն ցանկալի,
ԸզԱւետիքն հեզահոգի՝
Վարուք մաքուրք և գովելի,
Այլ և զՊետրոս Մարընդունի,
Եւ զՊաւղոս՝ նոր ադամի,
Եւ զԱնդրիէասն Պոնտացի,
Եւ զԽաչատուր Եզընկացի,

Զփոքրիկ Ներ[ս]էս Տիւրիկեցի,
Եւ զՅոհանէս նոյն գաւառի,
Զսարկաւագունքս հրաշալի՝
ԸզՄկրտիչն և զԳորգն արի։
Այլ զգործաւորքն, որ կան աստի,
Եւ ըղտնտեսն ծերունի,
Զսարկաւագունքս ի մի կարգի,
Մինչ ի յետինքն յիշեալ լիցի,
Զորոց ղանուանս գրեցի
Եւ զորրս գըրել ոչ կարացի։
Եւ դուք, որ գայք զմեր կնի
Գրեսչիք ի գիրն կենդանի,
Որք որ յիշէք զմեզ ի բարի
260ա- Եւ որք|| չյիշէք փութանակի՝
Յիշեալ լիջիք ի յատենի
Ամենասուրբ թագաւորի։
Ի սոցանէ, որ թուեցի
Ոմանք արեք են և արփի,
Ոմանք լուսինք, պարք աստեղի,
Աստղըն քան զաստղըն է աւելի,
Ոմանք խոյանք քաչախոյի
Եւ այլք ոչխարք մաքուր հատի,
Ոմանք գառինք են ցանկալի
Կան ի գաւիթըս Քրիստոսի։
Այլ և ծաղկունք են հրաշալի՝
Ոմանք շուշան անապատի
Եւ այլք ծաղիկ բուրաստանի,
Իբրև ըղջահ անշիջելի
Կան զումարեալ ի լապտերի,
Ծագեն զլոյս ամենայնի
Ի տուընջեան 'ւ ի գիշերի,
Իբրև զակունքն են ի կարգի,
Որ ի վակաս պատմուճանի
Եւ գաւազանն Ահարոնի,
Ծաղկեալ սիրովըն Քրիստոսի։
Իբրև զաղբիւրք են տենչալի,
Իբրև զպարտէզըս ջրալի,
Իբրև զայգի են պտղալի,
Տան ըզպտուղ միշտ ի ժամի։
Այլ ամենայն բարեաւք ի լի
Բարգաւաճեալ են ի յոգի
Իբրև զգանձն ագարակի
Ծածկեալ ումին զվարըս բարի։
Փոքր ի շատէ զայս գըրեցի

Զնզ աւրինակ, որ զմեր կնի,
Այլ ի պատճառ յիշատակի
Զեզ յիշողաց՝ մասրն բարի։
Զմիւս եղբայրրս հրաշալի,
Զոր ի վերոյ զանց արարի՝
Զտէր Գրիգոր Մաւրոկացի
Յիշման առէք զսա արժանի։
Այլ և զյետնեալս յամենայնի,
Որ ախտացեալ եմ ի յոգի
ԶՍտեփանոսս անարժանի
Մեղաւք լցեալ և եղկելի,
Յիշման առէք զիս արժանի՝
Մանկումք լուսոյ առագաստի,
Զձեզ աղաչեմ ես ի յոգի
Ինձ ողորմած լերուք ձրի.
Զեղբաւրորդիս իմ սիրելի,
Որ Յոհանէս անուն կոչի,
Նոր ընծայեալ տեառն Յիսուսի՝
Յիշման առէք զիս արժանի՝
260բ Այլ և զհայրն իմ ասորի,
Որ ուղղափառ գործով բարի
Զփոխեալն ի տէրն ամէնի՝
Կաւէլ անուամբըն յորջորջի,
Զոր նայ եղև պատճառ բարի
Այս ուղղափառ սուրբ կրանի,
Ետ զիս յուսումն այս ցանկալի,
Զեր աղաւթիւք տէրն ողորմի։
Այլ և զմայրն իմ հայազգի,
Եւ զեղբայրս բաբաւք բարի,
Եւ զամենայն արեանառի՝
Յիշեալ լիցին ի ձէնչ բարի։
Այլ զուսուցիչն իմ ի կարգի
Ի յառաջին այբուբենի,
Մինչ ի վերջինն, որ վախճանի՝
Յիշեալ լիցին յաւրն ատենի։
Այլ և բոլոր ազգըս բարի
Քրիստոնէից ուղղափառի,
Որ երախտիք առ մեզ ունի
՚Ի որք որ չունին՝ թող յիշեսցի։
Եւ որք աւրհնեն զմեզ աւրհնեսցի
՚Ի որք որ չաւրհնեն՝ թող աւրհնեսցի,
Ամենեցուն մասն բարի
Ի Քրիստոսէ պարգևեսցի։
Աւրհնեալ է հայրն, աւրհնեալ որդի,

*Աւրհնեալ հոգին սուրբ և բարի*
*Ի յէակացս ամենայնի*
*Միշտ աւրհնութիւն անլռելի։*

*Արդ, գրեցաւ սա ձեռամբ անարժանիս՝ ստրուկ տրուպ հիքիս և թրշ-*
*ուառիս, զոր ի վերոյ ասացաք, ի սուրբ ուխտս ի յԱւաՅ վանքս, ընդ հովա-*
*նեաւ սուրբ Աստուածածնիս և սուրբ Կարապետիս և սուրբ Առաքելոցն*
*և այլ բազմահաւաք սուրբ Նշանացս, առ ոտս սուրբ և հրաշալի վարդապե-*
*տիս, ի յիշատակ վարդապետիս և մեր թշուառ անձինս. ի թուականիս*
*ՋԺԳ. (1464), յունիս ամիս ԺԴ. (14), ի յաւր հինգշաբաթի, ի դառն և*
*ի դժար ժամանակի, զ՚աւր անաւրէն ազգս տաճկաց զաւրացեալ կան ի*
*վերայ քրիստոնէից և պահեն ի հալածանս։ Այլ և չար դարձան քան զգա-*
261ա *զան և ծարաւիք են քրիստոնէից արեան || և նոր ի նորոյ չար յայտնեն*
*քրիստոնէից, զի զխարաճն Դ. (4) ֆլորի արարին, և կապուտ արկին ի*
*գլուխ քրիստոնէից, և զմեռեալն ի քաշ տան տանել, և այլ չարիք բազում*
*խոկան և խորհտան ի վերա քրիստոնէից, զոր տէր աստուած զաւարտն*
*ի բարին առնէ։*

*Այլ և բազում արհաւիրք եղեն ի մերում ժամանակիս, զի առաւ* Ստըմպալ *քաղաք և ի սուր սուսերի մաշեցաւ բնակիչքն նորա, և գերի վարեցաւ անթիւ, և անհամար նշխար սրբոցն առ ոտս անաւրինաց կոխան եղև, և եկեղեցիքն՝ անաւրինաց եղեն բնակութիւն, և այլ բազում արհաւիրք եղեն, որ ո՞վ կարէ ընդ գրով արկանել։ Եւ յետ Ժ. (10) ամաց, աւելի կամ պակաս, առաւ* Պոնտոս, *որ է* Տրապիզոն, *և այնչափովն վնաս ի նոյն գործեցաւ, զի բաժանէին զորդիսն և զդստերս ի մարց և ի հարց, և զեղբայր յեղբարց, և աղիողորմ էր լացն և աղաղակն, զոր ոչ կարեմ ընդ գրով արկանել, և զեկեղեցեացն և զսրբութեանցն զվնասն որ եղեն ո՞վ կարէ թուել։*

*Այլ յառաջ քան զայս Ժ. (10) ամաւ գերեցաւ գաւառս* Դարանաղեաց, *որ է* Կամախ, *որ ով կարէ պատմել զաւէրն և զպակասն, որ եղեն քրիստոնէից և վանորէից և սրբութեանցն։ Այլ և յետ սորին Ե. (5) ամաւ եկաւ ահագին շարժ և աւերեաց զբոլոր մայրաքաղաքն* զԵզընկայ, *և երկոտասան հազար այր և ընդ կին ի ներքոյ հողին մնացին։*

*Եւ այլ բազում աւէրք և վնասք, որ եղեն ի* Վրացտուն *ի յարեւելք և ի բոլոր գաւառս ով կարէ պատմել կամ ընդ գրով արկանել։ Այլ այս գրեցաւ ձեզ ի խրատ և ի յաւգուտ, զի վասն մեղաց եղեն այս ամենայն, զոր տէր աստուած փրկեսցէ զձեզ ի յամենայն փորձութեանց, ամէն։*

*Եւ որ զմեզ յիշէք յիշեալ լինիք ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, ամէն։*

Բ

221բ *Ո՞վ ընթերցողք սրբազան տառիս, աղաչեմ զձեզ ի սէրն Քրիստոսի,*
*յիշեցէք ի Քրիստոս զերանեալ աստուածաբան արփիաւորիչս մեր՝ Ամլոր-*
*դոյն անուամբն յորջորջեալ, որ բորբոքեալ կա սիրովն աստուածային,*
*ի տուէ և ի գիշերի անհանգիստ երկամբք մտանէ ի բուրաստանս աս-*
*տուածային, և ժողովէ զռետինս քաղցրութեան, և տա ի յարբումն մերոց*
*պասքեալ ոգոցս։ Զոր զտրիտուրն ոչ առնու ի մէնջ՝ այլ յաստուծոյ, որ*

ամենառատն է ի սուրս բարեաց, առցէ միոյն հազարապատիկ ընդ սըր-բոց աստուածաբանիցն, ամէն։

Այլ և զհամշիրակ եղբայրքս մեր ե զհոգևոր հարքս, որ հաւաքեալ կան յայս լսարանիս ի վանքս Աւագ, ի գաւառս Դարանաղեաց, անձինք Լ. (30), արք պարկեշտք և զովելիք յիշեցէք ի Քրիստոս։ Ընդ նոսին և զյետնեալս, յամենեցունց զանարժան գծողակս զՍտեփանոս և զեղբաւր-որդին իմ զՅոհանէս Մալազիկն՝ մերայաւքն հանդերձ՝ յիշեցէք ի Քրիս-տոս, և աստուած զձեզ յիշէ, ամէն։

Գ

41ա Ո՛վ եղբայր, Թուի Թէ կարմիր դրին վերոյ ի մին մեկնիչն պակաս կայ, զտեղն ի բաց Թողի, Թէ աւրինակ հանդիպի՝ նա դրէ։

Դ

42ա Ջերջանիկ րաբունապետս մեր զՅովանէս, և զմեղօք գծողակս դՍտե-փանոս, և զհամօրէն եղբարքս աղաչեմ յիշել ի՛ տէր։

Ե

101ա Նրազ տեսի յոյժ սարսական,
Որ նեղուԹեան է սա նշան.
Տէր իմ Յիսուս, լե՛ր օգնական,
Պահեա՛ հոգով ի փորձուԹեան,
Թ՛էպէտ մարմնով լինիմ արժան։

Զ

123ա Ո՛հ, որ ցաւի մէջքս և ատամունքս, մանաւանդ Թէ բոլոր անձս, և յոյս միայն զաստուած ունիմ։

Է

227բ Զմեղաւք Թաւալեալ դերիս,
Թ՛ուլացեալս ի սէր աշխարհիս,
Թ՛աղծեալ աղաչեմ ըստ իս՝
Թ՛ափուր մի Թողուր դու զիս.
Յորժամ հանդիպիս գրիս
Եւ այս անարուեստ ծրիս՝
Մին բերան յիշէ զգերիս,
Եւ հան զիմ փափաք սրտիս.
Ջի դու յիշեալ լիցիս,
Ի տեառնէ, զոր միշտ պաղատիս։

257

ԺՈՂՈՎԱԾՈՒ

ИВ АН В—86 (Նաև ՀԱ, 1892, էջ 115—116)

գրիչ՝ Ստեփաննոս Զմըշկածակցի
վայր՝ Եկեղեաց գաւառ, Աւագ վանք

286ա Եւ արդ, ես յետնեալս և անարգս ի կարգաւորաց և համբակս ի ծա-նօԹս բանից, մեղօք մեռեալս, ոգով եղկելիս և Թշուառականս Ստեփան-

Ծոս Զմրշկածակցի փափաքանօք զսա դրեցի, թէպէտ գիրս է սխալ և անարուեստ, որպէս և ձեզ իսկ երևի, յիշատակ անձինս իմոյ բազմամեղի և համայն ցեղիցն մերոց և ամենայն զարմի։ Այլ և երջանիկ րաբունապետին մերոյ Յովանէս քաշ հռետորի, և այլ ամենայն եղբարցս, որ կան այսմ համալսարանի։ Վասն որոյ աղաչեմ զձեզ, որք հանդիպիք սմա ընթեռնլով, կամ գրելով, կամ հարևանցի տեսանելով, սրտի մտաւք զմեզ մերայովն յիշելով, և ձեզ ձերայոցն լիցի մասն և բաժին հոգով ի յարարչէն՝ զհազարապատիկն ընդունելով։

Զի ես չունիմ մասն բարի,
Որ յետ իմոյ յիշատակի,
Այլ զայս սակաւ գիրս որ ծրեցի՝
Ինձ յիշատակ ձեզ մատ[ո]ւցի։
Եւ կայ այլոց յայս գիրքս գրած,
Որում անունն չէր գրած,
Նաև դրեսցի ի գիր կենաց
Եւ յիշեսցին ի ձէնշ բարեաց։

Եւ եղև զրաւ սորա ի թվ. ՋԺԳ. (1464), ի յունիս ամսոյ ի Ժ. (10), ի վանքս Աւագ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին և սուրբ Կարապետին և սուրբ Առաքելոցն, ի փառս արարչին, ամէն։

Բ

139բ Յոյժ անհմուտ և անտեղի,
Քան զկարս ի վեր ես ձեռնարկի,
Զի չեմ գիտակ այսմ արհեստի,
Այլ յոյժ փափաքն և իղձ սրտիս՝
Յաւժարեցոյց ղիս ի գործիս։
Զոր տէր աստուած նայի ի յիս
Եւ ի յաւարտ հանցէ զգերիս։

Գ

211ա Վայ անիրաւ մարդոյն հազար,
Թէ որպիսի կամօք են չար,
Հանց բան խօսին, որ անյարմար,
Իւրեանց կորուստ է և խաւար։

Դ

219ա Զմեզօք գերիս,
ԶՍտեփանոս եղկելիս,
Յիշէ եղբայր, որ սէր ունիս,
Ի յաստուծոյ թող դու օրհնիս*։

* Մանր և նոր ոչինչ պարունակող հիշատակագրություններ կան նաև ձեռագրի 2բ, 12ա, 17ա, 24ա, 28ա, 226ա, 246բ-247բ, 276բ էջերի լուսանցքներում։

## 258

## *ՃԱՇՈՑ*

***Երևան 3759***

*գրիչ՝* Ստեփանոս
*վայր՝* Հայոց-Թառ

940 ... *Արդ, այսքան և այսու ամենայնիւ լցեալ ի բարի յարմարաց յա-
ռաջ եկեալ սուրբ վարդապետն* Դանիէլ *եկն ի սուրբ ուխտս* Հայոց-Թառ
*և միաբան եղև սուրբ Ամենափրկչիս և այլ սրբութեանցս։ Եւ մեծաւ յու-
սով և փափաքմամբ սիրով ձեռն էարկ զսուրբ և երկնանման և փառաւոր
կաթուղիկէ եկեղեցիս. և վերստին կրկին զարդարեաց և սալեց և նո-
րոգեաց* ///*

941 ... *Արդ, և ես՝ անարժան և սնտանուն աբեղայ* Ստեփաննոս, *որ ի
վաղ ժամանակաց կայր բնական գութ և սէր և եղբայրութիւն, որ և մի
վարպետի աշակերտեալ էաք ի տղայութենէ հասակից և ի պնակիտս, և
սա խնդրեաց զսուրբ տառս և զգանձս աստուածային. և ես՝ անարժանս՝
հարկեցայ և գրեցի զսուրբ գիրքս՝ զգանձս աստուածային վասն սիրոյ
նորա տկար անձամբ իմով ի գառն և ի դժուար ժամանակի, որ ի մեղաց՝
եկն ի վերայ մեր ի յանաւրինաց և յայլակրանից և ի չար բռնաւորաց. ի
խանութեան* Ջահանշահին՝ *որդոյ* Ուսուփին, *որ մտաւ ի* Խորասան, *և է.
(7) տարի զաշխարհս սահուն և երերուն պահեաց՝ ի հարկապահանջու-
թիւն, ի տառապանս և ի չարչարանս; այնպէս և հայր զորդիս ուրանա-
յին. ի հայրապետութեան տեառն* Գրիգորի, *որ նորոգեաց զսուրբ* Էջմիա-
ծինն, *և բազում և մեծաւ ջանիւ զարդարեաց և նորոգեաց և հաստա-
տեաց զհաւատս քրիստոնէութեան և պայծառացոյց և լուսաւորեաց զսուրբ
զեկեղեցիս, զի սա է մայր ամենայն եկեղեցեաց և դաւանութիւն ուղղափառ
հաւատոց, ի թվիս Հայոց ՋԺԳ. (1464), ի սուրբ յաթոռս Ամենափրկչիս,
ի սուրբ ուխտս* Հայոց-Թառս: *Գրեցաւ սուրբ տառս ձեռամբ* Ստեփանոս
*անարժան աբեղայի, ի սէր* Դանիէլ *վարդապետի։ Արդ, որք աւգտիք ի
սմանէ կարդալով կամ աւրինակելով յիշեսջիք զստացող սորայ զվարդա-
պետն, և զծնաւղսն իւր՝ զհայրն տէր* Կարապետ *քահանայ և զմայրն
զ*Համաւոր, *և զտէր* Ներսէս *աբեղա, և զեղբայրսն զ*Ոստակէս, *զ*Վրդա-
նէս, *զ*Յուսիկ, *և զ*Գրիգորէս, *և զ*Սահակ, *զ*Դանիէլ, *և զամենայն արեա-
նառու մերձաւորսն, և զիս՝ զփծուն գրիչս և զծնօղսն մեր յիշեսջիք ի
942 *սուրբ յաղաւթս ձեր, աղաչեմ* || ...*և զմիեղէն սուրբ եղբարքս՝ զմիաբանքս
սուրբ Ամենափրկիչս՝ զտէր* Սարգիս *փակակալ, զտէր* Յակոբ, *զտէր* Մա-
քէոս, *և զսիրասնունդ որդիքս մեր և հոգելից աշակերտքս՝ կուսակրաւն
սուրբ քահանայքս, զկազմաւղ սորա զտէր* Յով[անէս] *և զտէր* Յոհաննէս,
*որ բազում երախտիք ունիմք սիրով և հնազանդութեամբ, զտէր* Անդոն,
*զտէր* Աւետիք, *զտէր* Դաւիթ, *զտէր* Ղազար, *զտէր* Ղուկաս, *զտէր* Մանուէլ,
*զտէր* Աբրահամ, *և զամենայն առհասարակ՝ զմեծ և զփոքր, և զերախտա-
ւոր հայրն իմ զփոխեցեալն առ Քրիստոս, որ բազում աշխատութեամբ*

* *Ձեռագրից թերթ է ընկել։*

ղԹուխտըս կոկեաց վասն յիշելոյ աղաւԹից. աստուած ողորմի իւրեն և մաւրն իմոյ Էմինին, որ բաղում չարչարանաւք յուսով և սիրով և անչափ տառապանաւք ծառայեաց ինձ, Քրիստոս աստուած միոյն հարիւրապատիկ հատուցանէ իւրենն և ընդ կանանցն իւղաբերիցն դասակից և պսակ[ակ]ից առնէ, և ձեզ յիշողացդ և մեզ յիշեցելոց ողորմեսցի Քրիստոս աստուած, ամէն, եղիցի։

Աղաչեմ զձեզ եղբարք, որ անձանձիր և անխափան զյիշատակս սուրբ գրոցս կատարէք ճրագալուցին կամ Յովհաննու տաւնին, Ամբիծք շարական, Աստուած անեղ և Աւետարան կարդան, և լի բերանով աստուածողորմի ասցէք և խնամով պահէք և ջուղտ մեզարով ի ձէԹէ և ի տինէ պատրաստ պահէ[ք]։

259

МАШТОЦ

Վենետիկ 187, Մ.Տ.Մ.

գրիչ՝ Մաքէոս
վայր՝ Եղիվարդ

Արդ, ես վերջինս ի բանասիրաց Սիմէոն վարդապետ շրջեցայ ի բազում տեղիս և ի գրեանս և ժողովեցի զբանք սուրբ լուսապայծառ Մաշտոցիս, նախ վասն ստուգուԹեան և ճշմարիտ օրինակի, երկրորդ վասն կարօտուԹեան և պիտանուԹեան սորա մեզ՝ ի կեանս և ի մահոջ, երրորդ վասն լուսաւորուԹեան և օգտուԹեան նորոգ մանկանց եկեղեցոյ, չորրորդ վասն յիշատակուԹեան մեզ յետ մահու առաջի անմահ Թագաւորին և բարեխաւս առ աստուած, հինգերորդ, զի ամենայն շնորհաց սորա որով արժանաւորին մարդիկ մասնակցեսցէ. զմեզ Քրիստոս՝ յոյժ սրբոց իւրոց։

Արդ, գրեցաւ սա ի գաւառիս Արարադեա, ի գեղաքաղաքիս Եղիվարդ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, և սուրբ Յակոբիս, և նշխարաց սուրբ կուսանաց, և կենսունակ լուսատու սուրբ Նշանիս, յառաջնորդուԹեան տեղւոյս տէր Մանուէլի արհեպիսկոպոսի*, որդի պարոն Աւագի և Թոռ պարոն Ազիզբեկին, որ կամակից և ձեռնտու եղև, զաւրինակս շնորհեաց, փոխարէն ի Քրիստոսէ առցէ և ի սրբոց նորա։

Գրեցաւ ձեռամբ անարհեստ և փծուն գրչի Մաքէոսի, ի ԹուականուԹեան մեր ՋԺԳ. (1464), ի կաԹուղիկոսուԹեան տէր Զաքարին, ի յաԹոռ սուրբ Էջմիածնին Վաղարշապատու։

* Այս նույն Մանուել եպիսկոպոսը 1471-ին, ամենայն հավանականությամբ նույն այս ձեռագրի մեջ, գրանցել է իր կողմից Հովհաննավանքին արված նվիրաբերությունների մասին արձանագրություն, ուր ասված է. «Ես Մանուէլ եպիսկոպոս, որդի պարոն Աւագին, Թոռն պարոն Ազ[իզ]բէկի ետու զիմ այգին յԱշտարակ, որ է Աղիզեան, և ջաղաց իմ, որ է տեղն բնական վանիցս, և հաստատեցի սուրբ Աստուածածնիս։ Ով որ [խափանէ] յիմոց կամ աւտարաց ի ԾԺԸ. հայրապետաց անիծած եղիցի. Թվ. ՋԻ. (1471)» («Այրարատ», էջ 198)։

Նույն այս արձանագրությունը, աննշան տարբերություններով, փորագրված է Եղվարդի ս. Հակոբի եկեղեցու երկրորդ հարկի արևմտյան դրան աջ կողմը (Գ. Հովսեփյան, Աղբբեկենք, էջ 197)։

Արդ, ցանկացող եղև այսմ սուրբ գրոցս՝ Մաշտոցիս Սամուէլ մահդասիս, և ետ գրել իմոյ ոգւոյ և ի յիշատակ իւր, և բարի ծնօղաց իւրոց՝ հաւրն Վարհամշկան և մաւրն Ասխաթունին, և կենակցին Փաշկան, և զաւակաց իւրեանց, և շատ գրեանս դրել էրետ և շնորհեաց եկեղեցւոյ։ Եւ զՄաշտոցս զայս ետ ի դուռն սուրբ Կարապետին Յոհաննու վանից*։ Եւ վայելողք սորա տէր Կարապետ, տէր Ստեփան, տէր Մկրտիչ, տէր Յովհաննէս, տէր Գաբրիէլ, տէր Մելքիսեդ, և տէր Գալուստ, Կարապետ, և Խաչատուր, և Սարգիս, որ կամակից էք սուրբ գրոցս լաւ շաղաւաթով պահէք...։

## 260

### ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 2519

255ա Ի թվականիս Հայոց ՋԺԳ. (1464) ապրիլ ամսոյ ԻԲ. (22) եղև վերափոխումն տէր Ներսէս եպիսկոպոսին Անկուրիոյ, էր սա յերկրէն Ղրիմոյ, աշակերտ Սարգիս վարդապետի, որ [որպէս] արեգակն փայլէր յերկրին Հ[ո]ոմանց, բազումք երկրորդ տէր Ներսէս կոչէին. էր աղքատասէր, ճգնազգեստ, ըստ տեառն բանին՝ զինչս իւր ձրի առնուր և ձրի տայր, ի բաղանիս ոչ մտանէր, ամենևին ի կին մարդ չհայէր և շնորհաւք սուրբ հոգոյն անդադար քարոզէր Հայոց և Ֆռանկաց, Հոռոմոց, և բազումք ի մեծամեծաց Տաճկաց լսէին զբանն կենաց և հաւատաին ի Քրիստոս։

Իսկ անաւրէն արքայն Տաճկաց ժողովեաց զքրիստոնէից մանկունսն և եբեր Ըստըմպօլ. իսկ եպիսկոպոսն եկեալ ի հետ մանկանցն և եբեր զթուղթ ազատութեան Հայոց, իսկ անօրէն արքայն ոչինչ համբերեաց զթուղթն։ Բայց զԱնկուրիոյ քրիստոնէքն շնորհեց նմա. և յետ. Զ. (6) տարոյ տարան զծնաւղք մանկանց ի Ըստըմպօլ և գնացեալ սրբոյն զհետ նոցա ի Ղալաթան. ոչ իւր վիճակին միայն, այլ ամենայն քրիստոնէից էր սուրբ եպիսկոպոս տէր Ներսէս. ԽԵ. (45) ամաց գերեզման եղև ի Ղալաթան, փոխեցաւ բարի մահուամբ ի Քրիստոս։

## 261

### ԱԻԵՏԱՐԱՆ

Փիրղ. Նոտ. 218-219, Բաղէշ՝ ս. Գէորգ եկեղեցի

գրիչ՝ Յակոբ (Նեարարենց)

վայր՝ Արծկէ

... Եւ ես՝ անպիտանս յամենայնի Յակոբ գծող մարդս եղկելի տեսի զփափաքն Գուլշատին... [և գրեցի] ի քաղաքիս Արծկէ, ընդ հովանեաւ սուրբ տաճարի մօրս լուսոյ Աստուածածնի, և սուրբ Ստեփաննոսի Նախավկայի, և մերոյս մենաստանի՝ սքանչելագործ սուրբ Նշանի, ի հայրա-

* «Արդ գրեցաւ սա ի գաւառիս Արարադեա» բառերով սկսվող պարբերությունից մինչև այստեղ հիշատակարանի նմանահանությունը հրատարակված է Ալիշանի «Այրարատ»-ում (էջ 198)։

պետութեան տեառն Զաքարիայի Աղթամարցւոյ, ի ղանութեան Ջհանշայի՝ [որդւոյ] Կարայ-Եուսուֆի, և ի թուականիս մերում ՋԺԳ. (1464)։

Արդ, որք հանդիպիք սուրբ Աւետարանիս յիշեսջիք ի մաքրափայլ յաղօթս ձեր զստացող սուրբ Աւետարանիս զԳուլշատ-խաթուն, և զծնողսն իւր՝ զՍիրունն և զԴովլաթն, և զեղբայրսն իւր զՇահըրմանն և զՄկըրտիչն...։

Յիշեսջիք ի յերկնաբացիկ յաղօթս ձեր զախմար գրիչս Յակոբ, և զծնողսն իմ՝ զՆերսէս քահանայն՝ զփոխեցեալն առ Քրիստոս, և զԽաթուն-Մէլիք, և զեղբայրն իմ՝ զշնորհալից քահանայն Ղազար, և զամուսին իմ զՄեհրուբանն՝ զփոխեցեալն ի Քրիստոս, և լի բերանով և ուղիղ սրտիւ աստուած-ողորմի ասացէք և աստուած ձեզ ողորմեսցի, ամէն։

Եւ դարձեալ, յիշեցէք զՄինաս եպիսկոպոսն՝ զփոխեցեալն ի Քրիստոս և զԱստուածատուրն...։

## 262

## ԱՒԵՏԱՐԱՆ

Եղվարդ*

Վայր՝ Արճկէ

... Գրեցաւ սա ի քաղաքն Արճկէ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի և սուրբ Ստեփաննոսի նախավկայի /// ի կաթողիկոսութեան Վաղարշապատու տեառն Արիստակիսի և յաշխարհակալութիւն Ջհանշահի, որ գնաց ի վերայ Բաղդատայ և մռնչաց իբրև զառիւծ...

## 263

## ԱՒԵՏԱՐԱՆ

Փիրղ. Նօա., 219, Վան՝ Տիրամայր եկեղեցի

գրիչ՝ Յոհաննէս
վայր՝ Արճկէ

... Եւ ես՝ անպիտանս յամենայնի՝ մեղուցեալ գրիչս Յոհաննէս ձեռնարկեալ գրեցի զսուրբ Աւետարանս ի քաղաքիս Արճկէ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի տաճարիս և սուրբ Ստեփաննոսի. ի հայրապետութեան տեառն Զաքարիայի, և ի թագաւորութեան թաղթին Ջհանշայի, ի թուականիս Հայոց ՋԺԳ. (1464) ամին։

[Յիշեցէք] ստացողի սորա տէր Մարտիրոսին և ծնողաց իւրոց տէր Յոհաննէսին և Հռիփսիմին...։ Գրիչս՝ Յովհաննէս յիշման արժանի արարէք, և զծնողսն իմ՝ զՅակոբ քահանայ և զՍալչուկ-խաթուն, այլ և զՅակոբ՝ որդեակն իմ, որ աշխատեցաւ ընդ իս ի գրել սուրբ Աւետարանիս։

---

* Ձեռագիրը, որ կոչվում է Կարմիր ավետարան, պահվում է Եղվարդ գյուղի բնակիչ Սմբատ Հարությունյանի տանը։ Հիշատակարանից մեջ բերված հատվածը, ինչպես նաև Ալեքսան Մուրադխանյանին պատկանող 1602 թ. ավետարանի հիշատակարանը ընդօրինակել է ազգագրագետ Վ. Բդոյանը։

## 264

## ՇԱՐԱԿՆՈՑ

**Երևան 3481**

**ա**

*գրիչ՝* Ղազար
*վայր՝* Տարբերունոյ երկիր, Արգելան մենաստան

32ա *Զյետինս ի գրչաց և զառաջինս ի մեղաւորաց, զանարժանս ի կարգա-*
*ւորաց զ*Ղազար *սուտանուն կրաւնաւորս, և զքարտեսիս կոկոզս զքեռորդիս իմ զ*Միֆայէլ *սարկաւագս աղաչեմ յիշել ի տէր միով տէր ողորմայիւ և աստուած զձեզ յիշէ, ամէն։*

**Բ**

*հիշատակարանի գրիչ՝* Ազարիա

355ա *... Արդ, գրեցաւ սա ի յերկիրս* Տարբերունոյ, *ի սուրբ մենաստանիս,*
*որ կոչի* Արգելան, *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, և սուրբ Կարա-*
*պետիս, և սուրբ Յարութեան, և սուրբ Վարդապետի գերեզմանիս, և սուրբ*
*Նշանիս, և սուրբ Սեղանիս, զոր է ածեալ սուրբ վարդապետն տէր* Յուս-
կան որդին, *և այլ սրբութեանցս, որ աստ կան հաւաքեալ. ի կաթողիկո-*
*սութեանն տէր* Զաքարիայի, *որ նստեալ է ի* Վաղարշապատ *քաղաքի, և ի*
*թագաւորութեանն* Ջհանշային, *որ բաղում զաւրաւք պաշարեաց զքաղաքն*
Բաբելոն:
*Արդ, գրեցաւ սա ի յառաջնորդութիւն սուրբ ուխտիս* Յովանէսի *և*
Մկըրտիչ *մեծ րաբունապետի։ Գրեցաւ սա ի թուականիս մերոյ ՋԺԳ.*
*(1464), ձեռամբ բարեմիտ և հեզահոգի* Ղազար *կրաւնաւորի, որ ոչ ժա-*
*մանեաց ի յաւարտ Շարակնոցիս, այլ տարաժամ մահուամբ փոխեցաւ*
*ի Քրիստոս։ Արդ, խնդրող եղև սմա սրբասէր և հեզահոգի կրաւնաւորն*
Վարդան՝ *հայր վանացն* Մեծոփա *հրաշափառ ուխտին, ի յառաջնորդու-*
*թեանն քաջ րաբունապետին* Ստեփանոսի, *որ հայրախնամ սիրով խնամս*
355բ *տանին ի վերայ միաբան եղբարցն,* || *յիշատակ հոգոյ իւրոյ, և ծնաւղաց*
*իւրոց՝ հաւրն* Ղազարին *և մաւրն* Մարեմին, *և եղբարցն* Մուսեփին *և* Առա-
ֆելին, *որ փոխեցեալ է ի Քրիստոս, և* Յակոբին. *ի վայելումն* Յովանէս
*կրաւնաւորի, եղբաւրորդոյն իւրոյ, որ ոչ ետես և ոչ վայելեաց զԾրգա-*
*րանս, այլ ի յազգմանէ չարին նահատակեցաւ ի սուրբ ուխտն* Մեծոփայ,
*ի տեղին, որ կոչի* Ովիտ, *ի ձեռաց անաւրինաց, տղայ և վայելուչ հասա-*
*կաւ, և զքեռորդին իւր* զՍտեփանոս *կրաւնաւորն։*

*Արդ, աղաչեմ զձեզ հայրք և եղբարք, յիշեցէք ի սուրբ և ի մաքրափայլ յաղաւթս ձեր զքաջայաղթ փիլիսոփայն* զՎարդան *կրաւնաւորն՝ զստացող սորա, և զքարի նահատակն* զՅովաննէս *հոգևոր որդին իւր, և լի բերանով աստուած-ողորմի ասացէք և աստուած ձեզ ողորմեսցի, ամէն։*

*Արդ, յերես անկեալ աղաչեմ զձեզ, որք հանդիպիք սմա կարդալով կամ աւրինակելով, լի բերանով աստուած-ողորմի ասացէք* Վարդան *կրաւնաւորին, և ծնաւղաց նորին՝* Ղազարին *և* Մարեմին, *և եղբարցն, և այլ ամենայն արեան մերձաւորաց նոցին՝ կենդանեաց և հանգուցելոցն. և աստուած զձեզ յիշէ յիւր միւսանգամ գալուստն, ամէն։*

Դարձեալ, աղաչեմ ղձեզ սուրբ հայրք և եղբարք՝ զսուտանուն երէց
336ա զԱզարիա, որ զՇարակնոցս || խազեցի և զսակաւ յիշատակարանս գրեցի,
և զՄկրտիչ կրանաւորն, և զծաղկող վարպետն զՄինաս կրանաւորն, և
զՅակոբ կրանաւորն, որք աշխատեցան ի տոմ տալ խազին [յիշեցէք] և
լի բերանով աստուած-ողորմի ասացէք, և աստուած յիշողաց և լսողացդ
ողորմեսցի, ամէն։

## 265

## ՄԱՇՏՈՑ

**Երևան 8453**

գրիչ՝ Անտոն
վայր՝ Մալէզկերոյ վանք

... Արդ, գրեցաւ սուրբ տառս որ կոչի Մաշտոց, ի թվականութեանս
Հայոց ՋԺԳ. (1464), ի դառն և ի չար և ի վշտաշատ ժամանակի, որով նե-
200բ ղիմք անաւրինաց և անիրաւ պահանջողաց, ի հայր||ապետութեան տեառն
Զաքարիա Աղվանից կաթողիկոսի և եպիսկոպոսութեան տեզոյս տէր Գրի-
գորիսի և տէր Սարգըսի, ձեռամբ տրուպ և զետնեալ [յ]ամենայն կրանա-
ւորաց և կարգաւորաց, որ զանունս քահանայութեան ունիմ և գործս քա-
հանայութեան բնաւ չունիմ՝ Անտոնի։

Արդ, գրեցաւ ի վանքս Մալէզկերոյ, ընդ հովանեաւ սուրբ Աստուա-
ծածնիս, ի խնդրոյ և ի արդեանց ումեմն սրբասէր և հաւատարիմ կնոջ
միոյ՝ Մէհրիշատին, որ ըստացաւ զսա ի հալալ ընչից յիշատակ իւր և ի
201ա Քրիստոս փոխեցեալ եղբաւր իւրում՝ Էսկարին, որ տղայ հա||սակաւ գնաց
ի Քրիստոս, ի վայելումն անձին սրբասէր և հեզահոգի Ովանէս նորաբոխ-
բոջ սարկաւագի, և ծնաւղաց իւրոյ՝ հաւրն իւր Սարգիս ազին և մաւրն իւր
Նուկպարին, և եղբարձ իւր Թայիփշին և Շալուին, Հասանին և Մկրտչին
և ի Քրիստոս փոխեցելոյն Քէրիմշային, զի աստուած ընդ երկայն աւուրս
առնէ, աղաչեմ յիշել՝ ասելով ի խորոց սրտէ, թէ տէր աստուած ողորմեա
նոցա...։

## 266

## ԱՒԵՏԱՐԱՆ

**Երևան 7332**

**ա**

գրիչ՝ Մաթէոս Շրվանեցի
վայր՝ Երկիրս Այլախ, ի գեղս Խորոթանց

... Արդ, աղաչեմ զսրբասէր ընթերցողսդ, որք կարդայք կամ աւրինա-
կէք զաստուածային քնարս զսուրբ Աւետարանս զպատուական և սրբասէր
քահանայ զՄելքիսէթ ստացող և զխնդրող աստուածային կտակիս յիշեցէք
ի սուրբ և ի մաքուր աղաւթս ձեր, [և] զհայրն իւր զՇղիայ, և
234ա զմայրն իւր Գուլփաշա, և զեղբարքն իւր Յովա||ննէս և Յոհաննէս, Ազա-
րիայ, Շահնատարն, Անանիայ, Սահարբէկ և զամենայն յազգատոհմն

իւր, զկենդանիս և զհանգուցեալսն, յիշեցէք ի Քրիստոս Յիսուս և ի սուրբ աղաւթս ձեր, և աստուած-ողորմի արձակեցէք ի վերայ նոցայ, և աստուած զձեզ յիշէ իւր արքայութեանն, ամէն։

Այլ և Եղ[ի]այ եղեալ ի խնդիր աստուածային սառիս և եկն առ մեզ մեծ յուսով և ջերմեռանդ փափաքանաւք... և ետ դրել զսուրբ Աւետարանս ի վայելումն անձին իւրոյ և յիշատակ հոգոյ իւրոյ և ծնողաց իւրոց՝ հաւրն իւրոյ Եաղուբին և մաւրն իւրոյ Բաղտաւոին, Թանիկին, և ամենայն արեան մերձաւորաց իւրոց և ազգականաց իւրոց։

Եւ արդ, ես՝ յետին կարգաւորաց և առաջինս մեղաւորաց, անպիտան և անարհեստ գրչաւորաց, մեղսամակարթ սուտանուն քահանայ, որ անուամբ քահանայ և գործովք ոչ, այլ մոլորեալ ի գործովս աշխարհիս Մաքէոս Տրվանեցի գրեցի զԱւետարանս ի վայելուչ և գեղեցիկ երկիրս Այլախ կոչի, ի գեղս Խորտքանց, ընդ հովանեաւ սրբոյն Գրիգորի Լուսաւորչին, ի արհիական պետութեանն տէր Գրիգորի, և մերոյ արհեպիսկոպոսին տէր Ստեփաննոսին, և բարեմասպետին Շմաւոնի՝ աթոռակալ Թաղէի առաքելոյն, ի ղանութեանն Ջհանշայի, ի թվիսն ՋԺԳ. (1464), արեգ ամսոյ ի հինկն եղև կատարումն Աւետարանիս։ Աղաչեմ զձեզ, ո՛վ ընթերձողք սուրբ Աւետարանիս, յիշեցէք ի սուրբ աղաւթս ձեր զՄաքէոս գրիչս և աստուած ձեզ ողորմեսցի։

Այլ և անմեղադիր լերուք սղալանաց և խոշորութեան դրիս, որ գիր չեմ հանել ոչ շար գիր (՛), և աստուած զձեր մեղքն ոչ յիշէ, ամէն։

Այլ և յիշեցէք ի սուրբ աղաւթս ձեր զԱբրահամ էրէցն, որ զաւրինակն մեզ շնորհեաց. ընդիր, պատուական աւրինակ. և աստուած զձեզ յիշէ, ամէն։

Բ

ծաղկող և կազմող՝ Ղազար

Բարի աղաւթիւք ձերովք յիշեցէք զՂազար քահանայ՝ ընկարող և զկազմող սուրբ Աւետարանիս և զծնողսն*։

## 267

## ԳԱՆՁԱՐԱՆ

Ն. Զուղա 463, Մ.Տ.Մ.

գնող՝ Գրիգոր

վայր՝ Կոնկոկայ գիւղ

375բ Եւ զԳրիգոր երէցս, որ գնեցի զԳանձատետրս ի հալալ վաստակոց իմոց և եդի յիշատակ ի գեղս Կոնկոկայ, ի դուռն սուրբ Թորոսու և սուրբ Գէորգեայ, յիշատակ հոգւոյ իմոյ, և ծնաւղաց իմոց՝ հաւրն իմոյ Մարգարէի և մաւրն իմոյ Խաթուն-Մէլիքի: Որք կարդայք կամ աւրինակէք թողութիւն հայցեցէք ինձ՝ Գրիգոր երիցուս և ծնողաց իմոց, և աստուած զձեր մեղացն թողութիւն շնորհեսցէ, ամէն և եղիցի։

* Այս հիշատակագրությունը կարմիր թանաքով է։

Գրեցաւ ի թվ. Հայոց ՋԺԳ. (1464)։ Յայսմ ամի եկաւ Ամքայ սուլտանն Հասանն ԻՌ. (20.000) հեծելազաւրաւք և աւերեաց զԿեսարիոյ զերկիրն, և սաստիկ աւար էառ զթուրքմանն։ Եւ Քրիստոս աստուած զԿոնկոայս պահեայ ի նմանէ և ի նորա չար մտացն։

## 268

## ԱՒԵՏԱՐԱՆ

Գ. Նաթանեան, Արտօսր Հայաստանի, 151—152, Փիրղ. Նօտ. 218, Սրուանձ. Թորոս Աղբար, Բ, 341—342, Խաբբերդ քաղաք*

գրիչ՝ Ստեփաննոս
վայր՝ Խորձենոյ գաւառ, Խլպաշի վանf

... Յայսմ** հայկազեան թուրարերութեանս տումարի, յորում էր թիւ համարոյ թուականին թորգոմեան տոհմին ՋԺԳ. (1464)*** աւարտագործեալ եղև սուրբ և կենսատու Աւետարանս... ի վարժումն և ի մխիթարութիւն աւրհորդաց նորա, և ի պարծանս հանուրց հաւատացելոց, և ի փառս անմահ թագաւորին այսպէս գրեցին։

Զոր իմ անարժանի և անպիտան և սուտանուն Ստեփաննոս եպիսկոպոսիս, որ զաւրինակս գովելի և անսխալ վկայեալ ի բազմաց, և ցանկացող եղէ որպէս պատուական մարգարտի, և գրեցի զսա իմ անիմաստ և տկար մտաւքս ի գաւառիս Խորձենոյ, ի վանս որ կոչի Խլպաշի, ընդ հովանեաւ սուրբ Կարապետի։

Արդ, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք սուրբ Աւետարանիս զմեղապարտ գծողս զՍտեփան եպիսկոպոսս և զծնաւղսն իմ յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր, զԴաւիթ, զՆերսէսն, զՔարամն, զԼատիւն****, զՅովանէսն, զՊետրոսն, զՏաւնականն, զՏաւնապետն և զՄեծպարոնն, որ ստացան զսա ի հալալ արդեանց իւրեանց...։

Յիշեսջիք և զմարմառի տուողն զՓիլիպպոսն, որ զթուղթն ի վերայ կոկեցի...*****։

Աստանոր աւարտեցաւ քրիստոսահիմն և առաքելախաւս, մարգարտաշար, հոգիաբուխ Աւետարանս։ Գրեցաւ սա ի թուականիս Հայոց ՋԺԳ. (1464), ձեռամբ և անարհեստ և վատթար գրչի Ստեփաննոս եպիսկոպոսի, ի գաւառիս Խորձենոյ, ի վանս Խլպաշի, ընդ հովանեաւ սուրբ Կարապետի և ի բազմահաւաք սուրբ կրաւնաւորացս՝ տէր Յովաննէսին, տէր Նիկողոսին, տէր Կիրակոսին, տէր Մելքիսեթին, տէր Յովանիսին, տէր Մալաքիային, տէր Սիմաւոնին, տէր Դաւթին, տէր Աստուածատուրին,

---

* Հիշատակարանը Գ. Նաթանյանի հրատարակությամբ ավելի ամբողջական է, սակայն ունի որոշ թերություններ ու բացեր, որոնք լրացվում են Փիրղալեմյանի և Սրուանձյանի հրատարակություններով։

** Թերևս եղել է՝ «Ցամս»։

*** Գ. Նաթանյանի մոտ տպված է ՋՋԵ, անշուշտ, վրիպակով։

**** «Քարամ» և «Լատիւ» անունները բացակայում են Գ. Նաթանյանի հրատարակությունից։

***** Այս պարբերությունը նույնպես բացակայում է Գ. Նաթանյանի հրատարակությունից։

տէր Կարապետին* Նորաբողբոջ հասակին, և զհոգևոր եղբայրն իմ զհանգուցեալ... Աւնոփրիոսն, և զգործակալքս սոցա՝ զԹորոսն, զԴաւիթն, զՅակոբն:

Արդ, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք սուրբ Աւետարանիս և լսէք զձայն նորա՝ երեք ողորմիս տուք Մեծապարոնին և Պետրոսին և տզգականացն, ամէն։

Ձեռս երթայ՝ գիրս մնայ, երբ կարդաս՝ զանարժան գրիչս յիշեա**։

## 269

## ԱՒԵՏԱՐԱՆ

ԼՑՎ 216, այուն. 529—532, Վանի սուրբ Ծակոյ եկեղեցի 39

գրիչ՝ Ստեփանոս

Փառք... ուստի և տեսեալ զսորայս անճառ փրկագործութեան խորհուրդ ոմն պատուական և հաւատարիմ Պաւղոս մահդասի ի վաղուց հետէ ցանկացաւ այսմ աստուածախաւս սուրբ Աւետարանիս [//] (Յիշեցէք) և զհաւատարիմ մահդասին զՊաւղոս, և զամենայն արեան մերձաւորքն՝ զհայրն Ստեփանոս, և զմայրն զԳոհար, և զեղբարքն՝ զԹումա քահանայ, և զԱստուածատուրն, զՇամամ, և զդսաերքն՝ զԳոհար և զԱզիզ, և զկին իւր զԱւագ, և լի բերանով աստուած-ողորմի ասացէք, և աստուած ձեզ ողորմեսցի, ամէն։

Արդ, գրեցաւ սա ի հայրապետութեան տէր Զաքարիայ Աղթամարեցոյ և ի թագաւորութեան Ջըհանշա ղանին։

Արդ, յերես անկեալ աղաչեմ ես մեղաւք ղառածեալ գծողս Ստեփանոս՝ կրկին յիշման արժանի առնել զիս, և ծնաւղսն իմ՝ զհայրն Թումայ քահանայ և զմայրն զՈսկի, և զքոյրքն զԳոհար և զԲաղդատ, և զամենայն արեան մերձաւորքն իմ՝ զկենդանիքն և զհանգուցեալքն...։

Դարձեալ, յիշեցէք ի Քրիստոս զառաջնորդ սուրբ ուխտիս զԴաւիթ հեզահոգի կրաւնաւորն և զայլ միաբան եղբարքս՝ զմեծ և զփոքր, որ կամակից եղեն դրելոյ Աւետարանիս։

Տէր աստուած... ողորմեա Պետրոս կրաւնաւորին՝ հոգևոր հաւրն մերոյ, որ բազում մեղր է տուեր, և քաղցր տեսոյ քո արժանի արայ։

Արդ, ես յետնեալս ի կարգաւորաց և անարժանս ի յարժանաւորաց, անիմաստս ի յիմաստնոց, անգէտս ի գիտնականաց և անարուեստս ի յարուեստաւորաց՝ Ստեփանոս մեղսամած գծողս աղաչեմ կրկին յիշման արժանի առնել զհաւրեղբայրն իմ՝ Պաւղոս մահտասին, որ ետ ինձ գրել զԱւետարանս, և զկողակիցն իւր զԱւագ, և զորդիքն զԹումայ սարկաւագ, որ երիտասարդական տիօք փոխեցաւ առ Քրիստոս և եթող մեզ սուգ անմխիթար, և զԱստուածատուր, և զհայրն իմ Թումայ քահանայ, և զմայրն իմ զՈսկի, և զքոյրքն՝ զԳոհար և զԲաղտատ, և զամենայն արեան մերձա-

---

* Վերջին 6 անունները բացակայում են Գ. Նաթանյանի հրատարակությունից։

** Այս վերջին պարբերությունը նույնպես բացակայում է Գ. Նաթանյանի հրատարակությունից։

տորքն՝ զկենդանիքն և զհանդուցեալքն մեր, և սխալանաց և խոշորութեան գրիս անմեղադիր լերուք, դի կար մեր այս էր։

Դարձեալ, յիշեցէք ի Քրիստոս բոլոր սրտիւ զառաջ ասացեալն գործի Պաւղոս մահդասոմ՝ զԹումայ սարկաւագն...։ Լի բերանով աստուածողորմի ասացէք նոցա, և ողորմածն աստուած ձեզ ողորմեսցի, ամէն։ Ընդ նոսին և զԹումայ՝ Վարդազատու որդի՝ զՅիճենից ռէսն, և դեղբարքն... Զամարէն և զՄխիթարն և զՇապուխ յիշեցէք ի տէր աստուած, և դուք յիշեալ լիջիք ի տէր, ամէն։

Միածին որդի, որ մարմնացար ի սուրբ կուսէն և ծագեցար լոյս խաւարեցլոյս, ծագեա՛ զլոյս քո ի հոգի հոգևոր մաւրն մերոյ՝ Խաթունին և որդոյն Դարմանին, որ ի մանկութեան հասակի փոխեցաւ առ Քրիստոս և եթող մաւրն իւրոյ սուգ անմխիթար։ ...Յաւր միւսանգամ գալստեան քո՝ յարութեան քո արժանի արայ զՄարտիրոս ղորդի Սիոն քահանային, և զկենակիցն զԲաղդատ, և ղորդին զՍիան, ամէն*։

## 270

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 5515

գնող՝ Յովանէս

283բ Ի թըւականիս Հայոց ՋԺԳ. (1464). տէր Զաքարայ կաթողիկոսն էառ զէջմիածինն և Բ. (2) տարի ի տեղն նըստաւ և դեղակուր եղեւ ի նոցանէ, և սրբութիւն սուրբ խաչիս և աւետարաններս և գրեանքս ի յանաւրինաց ձեռն մատնեցաւ։ Եւ ես Յովանէս մաղթասի թափեցի զսուրբ Աւետարանս յիշատակ ինձ, և ծնաւղացն իմոց Դաւթին և Արուս-խաթունի, և կենակցին իմոյ Խութլու-Մէլիք մաղդասուն, և ծնաւղաց նոցին՝ Պաւղոսին և Սանդըխտին, և զաւակաց նոցին Սիմէոնին և այլոցն ամենեցուն, առհասարակ, հանգուցելոցն առ Քրիստոս, և լի բերանով և ուղիղ մտաւք աստուածողորմի ասացէք Յովանէս մաղթասոյն և Խութլու-Խաթունին, և ձեզ լսողացդ և աստուած-ողորմի ասողացդ ողորմի Քրիստոս յիւր միւսանգամ գալուստն, ամէն։

## 271

### ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

Ն. Ջուղա 407, Մ.Տ.Ա. Մ.Տ.Մ.

գրիչ՝ Ատոմ
վայր՝ Շատւան գիւղ

649ա Այս է վաստակ մատանց եղկելի տարտամ և մեղսամած եղեգնագծի Ատոմի։

---

* Հիշատակարանը գրված է Աղթամարի Զաքարիա Գ. կաթողիկոսի կենդանության օրոք, ուրեմն ամենաուշը՝ 1464 թ.։ Հաջորդ հիշատակարանում հենց տվյալ կա Զաքարիայի թունավորման և մահվան մասին։

... Զոր տեսեալ ղայսպիսի զանձս աստուածային և պայծառ լուսով սրբասնեալ և մաքրամիտ և պատուական քահանայն Կարապետ և մեծ փափագմամբ և ջերմեռանդ սրտիւ ցանկացող եղև սուրբ տառիս, և ի խնդիր եղեալ այս համբարեալ դանձիս և լուսափայլ և անդին մարգարտիս՝ անուշահոտ մանուշակիս և վարդափթիթ բուրաստանիս, և ետ գծագրել ղսա ի հալալ և յարդար վաստակոց իւրոց՝ յիշատակ հոգոյ իւրոյ, և ծնողաց իւրոց՝ հօրն խօջայ Ստեփանոսին, և մօրն Ջանմէլէքին, և կենակցին իւրոյ Շարմէլէքին, և եղբօրն Աւետիսին, և զաւակացն Յովանիսին, և սարկաւագ Հերապետին, որ տարաժամ և դառն մահուամբ էլ յաշխարհէս, և այլ ամենայն ազգականացն նոցա և արեան մերձաւորացն՝ կենդանեաց և հանգուցելոցն։

Եւ արդ, ես՝ Կարապետ քահանայ՝ անարժան ծառայս ծառայից աստուծոյ, սիրող եղէ այս սուրբ տառիս և ետու գծագրել զսա ի վերծանութիւն սքանչելեաց ամենայն արեամբ ներկեալ սուրբ մարտիրոսացն...։

Արդ, ես Կարապետ սոսկանուն քահանայ անարժան ծառայ ծառայից աստուծոյ, յոյժ փափագմամբ և ջերմ սիրով ետու գծագրել զսուրբ գիրքս զայս և դարձեալ ետու զսա ընծայ և նուէր ի դուռն ամէնաւրհնեալ սուրբ Աստուածածնին, որ կայ կառուցեալ ի կողմն Ոստան քաղաքին, ոչ կոչի Նոր-քաղաք, առ ափն ծովուն Ախթամարայ: Որով վայելեսցին զսա հըրճանօք մանկունք սուրբ եկեղեցոյ, և յիշեսցին յերկնագնաց և յաստուածամատոյց յաղօթս իւրեանց զիս՝ զանարժան զԿարապետ սոսկանուն քահանայս, և զծնօղսն իմ զխօջայ Ստեփանոսն և զՋանմէլէքն, և զպապն իմ զԱւետիսն, և զեղբայր պապուն զտէր Յովանեսն, և զՀերապետ սարկաւագն, որ դառն մահուամբ փոխեցաւ յաշխարհէս, և սուգ անմխիթար եթող ծնողիս, և զհօրքոյրն իմ զԽութլու-Մէլէք, և զքոյրն իմ զԴիլշատ, և զմուրում զՄէլէք-Խաթուն, և զհարսներն զէլթախաթուն և զԽոնձայ, և զզաւակսն իմ զԴիլշատ, զՋանմէլէք, զՍուլտան և զԽոնձայ:

Եւ արդ, ես անպտուղս ի բարեաց, մեղաւորս յարդարոց, և անկատարս ի կատարելոց, մեղանչականս յանմեղաց, և անկարգս ի կարգաւորաց, անյիշելիս ի գրչաց և անարհեստս յարուեստաւորաց, տգէտս ի գիտնականաց, բազմամեղ և անարժան, մեղսամած սոսկանուն քահանայ Ատոմ, որ զձև ունիմ քահանայի և գործոյն թափուր և ունայն գտանիմ, տեսի զսէր և զփափագ սորա, զոր ունէր առ հոգևորսն և իմով իսկ տկարութեամբս յանձն առի և ամենակարող զօրութեամբն աստուծոյ կատարեցի զսուրբ գիրքս զայս մեղսամած մատամբ իմով։ Բազում և մեծ աշխատութեամբ հասուցի զսա յաւարտումն ի յանուանի գեօղս ի Շատան, որ է գլուխ երկրին Ըռըշտունեաց, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին, և սուրբ Գէորգեայ զօրավարիս, և սուրբ Ոսկեանց քահանայիցս, ի հայրապետութեան տեառն Զաքարիայի, որ յայսմ ամի փոխեցաւ առ Քրիստոս, և ի նորընծայ հայրապետիս մերոյ տեառն Ստեփանոսի, և ի թուականի Հայոց ի յիննհարիւր և ի ԺԳ. ամի (1464), ի դառն և ի վշտալից ժամանակիս, յորժամ կամք ընդ հարկի և ընդ ծառայութեան ազգին նետողաց։

Նա և զծնօղսն իմ զԹումայ քահանայ և զՍիֆաք-Մէլէք, և զերախտաւոր պապն իմ զԱստուածատուր քահանայն, և զմիւս վարպետն իմ՝ զառա-

քինի աբեղայն զՅոճանէս Սանահնեցին, որ ուսոյց մեզ զարհեստս գրչութեանս, և զայլ ամենայն ազգատոհմքն մեր՝ զկենդանիս և զննջեցեալսն, և զայնոսիկ, որք երախտաւորք եղեն մեզ ի պէտս հոգւոյ և մարմնոյ։ Դարձեալ, յիշեցէք ի Քրիստոս զյառաջին քահանայք քաղաքիս՝ զհանգուցեալսն՝ զերկոսեան տէր Յովանէսն՝ զամոլքն, և զդասապետքն՝ զտէր Պօղոսն և զտէր Անտոնն, զերկու տէր Յովանէսքն, և զերկու տէր Ստեփանոսքն՝ զհոգևոր հարքն մեր յիշեցէք ի Քրիստոս և աստուած-ողորմի ասացէք, ես առաւել զհոգևոր եղբարսն իմ զտէր Ստեփանոսն և զտէր Յովանէսն Բուղանդարն, զտէր Կարապետ մահդասին և զտէր Կարապետ Բաղէշցին. դարձեալ յիշեցէք ի Քրիստոս զայժմու քահանայքս՝ զհոգևոր որդիքս մեր զտէր Ստեփանոսն, որ միջնորդ և կամակից եղև գրոցս, և զտէր Յովանէսն, և զտէր Սարգիսն, և զսարկաւագունսն ամենայն յիշեցէք ի Քրիստոս և աստուած-ողորմի ասացէք, և առհասարակ ժողովրդեանդ ողորմեսցի Քրիստոս, ամէն...։

## 272

## ՄԱՇՏՈՑ ԵՒ ԳԱՆՁԱՐԱՆ

Բոդլեան գրադարան Ms. Arm. E. 8
Մատենագրութիւն, Անհատական արխիվներ, Թղթ. 119

գրիչ՝ Երեմիա
վայր՝ Կեղի քաղաք

ա

236բ ... Արդ, աւարտեցաւ սուրբ տառս այս ի թվականութեան հայոց ՋԺԳ. (1464), ի հայրապետութեան տէր Ստեփանոսի, ի պարոնութեան Սֆանտարիս: Եւ արդ, ստացաւ զսա* յիշատակ իւր և ծնողաց իւրոց։

Արդ, որք հանդիպիք սմա գրելով կամ կարդալով կամ աւրինակելով յիշեսջիք յաղաւթս ձեր զվերո ասացեալն** և զիս՝ զմեղաւոր գրիչս զԵրեմիա կրաւնաւորս, և զծնողս իմ /// և զշա/// յիշեսջիք ի մաքրափ[այ]լ յաղաւթս ձ[ե]ր, որ զբազումս աշխա[տեց]ան զհետ իմ։ Եւ աստուած ձեզ՝ յիշողացդ և մեզ՝ յիշելոցս առհասարակ ողորմեսցի։

Արդ, ստացաւ սա ի հալալ արդեանց իւրոց յիշատակ իւր, և ծնողաց իւրոց, և ամենայն արեան մերձաւորաց իւրոց։

բ

237բ Գրեցաւ սուրբ Մաշտոցս այս ի քաղաքս Կեղի, ընդ հովանեաւ սրբոյն Սարգիս զաւրավարին և որդոյն նորա Մարտիրոսին, և այլ սրբոցն, որ աստ կան հաւաքեալ։

գ

123ա Ջուր, ա՜ւխ, կաթ մի շուր։

---

* Ստացողի և նրա ծնողների անունները գրելու համար տեղ է բաց թողնված։
** Մի տող դատարկ է թողնված։



15—94

Դ

159ա Զարագս ի չարին և զծոյլս ի բարին՝ զԵրեմիա գրչակս յիշեսջիք միով տէր ողորմաիւ, և ծնողաց իմոց, և ստացողի սորին, և նոյնդ ձեզ պարգևեսցի, ամէն։

Ե

198բ Միտքս մեռեալ ի մէջ սրտիս
Սիրտս նեխեալ ի մէջ փորիս,
Ջհոդիս մեռեալ ի մէջ մարմնոյս,
Ցարոյ շնորհաւք քո տէր Յիսուս՛։

## 273
## ԳԱՆՁԱՐԱՆ
Սրեան 6798

գրիչ՝ Երեմիա
վայր՝ Կեղո քաղաք

280բ ... Գրեցաւ սուրբ ‖ գիրքս, որ կոչի Գանձատետր, ասացեալ է ի հոգելից վարդապետացն ի խրախութիւն մանկանց եկեղեցայ, ձեռամբ Երեմիա սարկաւագի, ի Կեղո քաղաքս, ի թաղս որ կոչի Բարձր մահալա, ի դուռս սրբոց վկաիցն սուրբ Սարգսի զաւրավարի և որդոյ նորա Մարտիրոսի, և Գէորգա զաւրավարի, և սուրբ Յակոբա, և սուրբ Աստուածածնին, որոյ շնորհիւն եղև սկիզբն գրոցս, որ յամենայն ժամ զաւրացուցանէ զտկար և զտրտում բնութիւնս իմ, ապաւինելով յիր ղաւրութիւնն և ի բարեխաւսութիւնն, ամէն։

Արդ, որք հանդիպիք սմա կարդալով կամ աւրինակելով յիշեցէք զստացողս սորա զ**

## 274
## ԱՒԵՏԱՐԱՆ
Երևան 2816

ա

գնող՝ Տիրացու
վայր՝ Ախլցխա

Կամաւ ամենայն աստուծոյ և ողորմութեամբ նորին ես Տիրացու էրէցս գնեցի զսուրբ Աւետարանս ի հալալ արդեանց իմոց յիշատակ ինձ,և ծնողաց իմոց, կենակցին իմոյ Մարիամին. ‖ զաւակաց իմոց՝ դեռաբոյս և
288բ

* Մանր հիշատակագրություններ կան նաև ձեռագրի 55ա, 112ա, 117բ, 151բ, 165բ, 190ա, 194ա, 218ա, 220բ էջերում, սակայն նրանցում նոր ոչինչ չկա։

** Անունը լրացնելու համար տեղ է թողնված։

Ձեռագրի առաջին էջում մի ուսումնասիրող (Թերևս Հ. Թոփչյանը) կարմիր թանաքով գրել է «ՊԿԹ—1426»։ Մեսրոպ եպիսկոպոս Տեր-Մովսիսյանը նույն էջում գրել է «ԺԵ. դար», ուստի մեզ նման նա ևս չի գտել որևէ հիշատակություն թվականի մասին։ Տեղադրում ենք 1464-ի թվաշարքում նույն Երեմիա գրչի մի այլ հիշատակարանին առընթեր։

նորաբողբոջ պատանոյն Յոհանէս սարկաւագին և Գալստին, և այլ ամենայն արեան մերձաւորաց և երախտաւորաց։

Արդ, երես անկեալ աղաչեմ զձեզ, ո՜վ դասք սուրբ քահանայից, որք աւգտիք ի սմանէ կարդալով կամ աւրինակելով, զմեզ և զմեր ննջեցեալսն ի սուրբ յաղաւթս ձեր յիշեցէք և աստուած զձեզ յիշէ, ամէն։

289ա Արդ ես կրսերս յորդիս եկեղեցոյ, պարականս բիւր քանքարաց Տիրացու աւաքէրէցս յԱխլցխոյ, ետու զսուրբ Աւետարանս և զարծաթի սկին իմ յիշատակ ի սուրբ Գրիգոր եկեղեցին, յիշատակ անշիջ ինձ, և ծնողաց իմոց՝ պապին իմոյ Տիրացու քահանային, և հաւրն իմոյ Յոհանէս քահանային, և եղբարցն իմ Գալըսաին, Աստուածատրին և Քրիստոսատուրին, և զաւակին իմոյ Մխիթարշին, որ էր դպիր և երկոտասան ամաց փոխեցաւ առ Քրիստոս և եթող մեզ սուգ անմխիթար։

Արդ, աղաչեմ զձեզ, ո՜վ սուրբ ք[ահանայք], զմեզ և զմեր [նն]ջեցեալսն ի [սուրբ] յաղաւթս ձ[եր յիշ]եցէք, և աստուած զ[ձեզ] յիշէ, ամէն։

289բ Մի ոք յանդգնեսցի և յափշտակել ջանայ զմեր հոգոյ յիշատակս ի սուրբ եկեղեցոյս, եւ եթէ ոք յանդգնի և գողանայ կամ ծախէ՝ ընդ անլուծանելի կապանաւք մնասցէ և մեր մեղացս տիրանայ։ Իսկ պահպանողքն և խնամատարքն աւրհնին յաստուծոյ և յամենայն սրբոց նորայ, ամէն։

Եդաւ յիշատակս ՋԺԳ. (1464) թվին Հայոց։

## Բ

կազմող՝ Գրիգոր

288բ Եւ առաւել... ղկաւշկար Քարիմատինն, և զկենակիցն իւր զՄսըրմէլիքն, և զծնաւղսն իւր՝ զհայրն Կիրակոս և զմայրն իւր Նարին-Խաթունն, և զամենայն արեան մերձաւորսն իւր, որ ետ վերստին նորոգել զսուրբ Աւետարանս ի հալալ ընչից իւրոց, զոր եդեալ էր զսուրբ Աւետարանս Տիրացու աւագերէցն ի սուրբ Գրիգոր եկեղեցին։ Որ ոք որ լիակատար սրտիւ ասէ զտէր ողորմին, նա ողորմի նմայ Քրիստոս ի յաւուրն դատաստանի։

Զկազմող Գրիգոր էրէցս՝ զՂարալի որդի, յիշել աղաչեմ ի տէր, և աստուած զձեզ յիշէ, ամէն։

## 275

## ԱՒԵՏԱՐԱՆ

**Երևան 3701**

գրիչ՝ Մաղաքիայ
վայր՝ Էրերան վանք

... Արդ, գրեցաւ նամակս աստուածային և արարչին խաւսեցեալ կտակ
278բ և բանին կենաց հրամաեալ բանս՝ սուրբ Աւետարանս աստուածա||բան և աստուածախաւս, ի թուաբերութեանս Հայոց ՋԺԳ. (1464), ի վանքս Էրերան, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս և սուրբ Գէորգա զաւրա-

վարի, ի թագաւորութիւն Ջահանշային, ի հայրապետութեանն տեառն Գրիգորի, ըստ խնդրոյ և փափաքանաց հաւատարիմ և ուղղափառ պատուական Մուրատ մուղտասի, և կենակցին իւրոյ Դիլշատին, որ է մահդասի...։

279ա ... Արդ, ո՜վ մանդումք սուրբ եկեղեցոյ, որք հանդիպիք այսմ հոգիոմակ տառի կարդալով կամ աւրինակելով, յիշեսջիք ի սուրբ և երկնաթռիչ յաղաւթս ձեր Մուրատ մուղտասին, հաւր անուն Տողտոյլ, և մաւր՝ Աղրա-Մալիf, և իմ եղբաւրն է Աւէտ, և քուր իմ Յազիզ, և իմ պառաւին հաւրն անուն Ջաf, մաւր անուն Մանիշակ և հանգուցեալ ի Քրիստոս...։

Յիշեսջիք զխաւարեալս հոգով և զաղքատս ի բարեաց գործոց զփծուն
279բ || և զտխմար և զյետին գրիչ զՄաղագիայ սուտանուն կրաւնաւոր... ընդ նմին... զծնաւղսն իմ, և զազգականս, և զեղբարս, և զվարպետն իմ զտէր Յոհանէս, և զգրիս ուսուցիչն իմ զտէր Մատթէոս, և զամենայն երախտաւորսն մինչև ի մին հաց՝ յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր...*։

## 276

## ՄԱՇՏՈՑ

*Բ. Կիւլէսէրեան, Ցուցակ Անկիւրիոյ, № 214, սյուն. 991—992***

գրիչ՝ Նիկոլաոս
վայր՝ Գաղատիա

339ա ...Արդ, եղև գրաւ գրչութեանս, որ է Մաշտոց, ի մայրաքաղաքս Գաղատիա, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին, ի թուականութեանն Հայոց ի ՋԺԳ. (1464), ի հայրապետութեան տեառն Գրիգորի կաթողիկոսի և արհիեպիսկոպոսութեան տեառն Ներսէսի։

Բայց որ ստացաւ զգիրքս աստուածային պարոն Ալէքսանոսն ի հալալ արդեանցն ի յիշատակ իւր, և կողակցին իրոյ, և ծնողացն, և ամենայն արեան մերձաւորացն։

Արդ, որք հանդիպիք սմա կարդալով կամ աւրինակելով՝ յիշման արժանի առնէք զպարոն Ալէքսանոսն, որ ետ յիշատակ զգիրքս ի սուրբ Կարապետ եկեղեցինն։ Եւ զգծող գրոյս զՆիկոլաոս աբեղայս յիշեսջիք ընդ նմին՝ Հայր մեր որ յերկինս ասելով, ամէն։

---

* Գրչի կողմից դատարկ թողնված տողերի վրա, այլ ձեռագրով, գրված է հետևյալը՝ «Կամաւն աստուծոյ ես՝ Աղանանս կալայ սուրբ Աւետարանս՝ տվի Բքիշոյ վանքն ինձ քառասնից։ Տէր Ալեգսանոս եպիսկոպոս[ի] ձեռաւքն կատարեցինք քառասունքն»։

** Բ. Կիւլէսէրեանի «Ցուցակ հայերէն ձեռագրաց Կարմիր-վանուցն Անկիւրիոյ» (Անթիլիաս, 1959) արժեքավոր աշխատությունը ստացանք, երբ հիշատակարանների սույն հատորի առաջին մամուլներն արդեն տպագրված էին։ Այդ իսկ պատճառով հնարավորություն չունեցանք 1453-ի թվաշարքում տեղադրելու այդ թվականին Ցովանէս երէցի կողմից ընդօրինակված Ժողովածուի աղքատիկ բովանդակությամբ հիշատակարանը։

## 277

### ԱՒԵՏԱՐԱՆ

*«Թորոս Աղբար», Բ., էջ 463,*
*Զնքուշի Սիրահայեաց ս. Աստուածածնի վանք*

*գրիչ՝* Անանիա
*վայր՝* Հռոմկլայ, Խալիֆի գիւղ

*[Գրեալ] ի թվին մեր ՋԺԳ. (1464), ի հայրապետութեան տէր* Կարապետին *և ի թագաւորութեան... պարոն* Ջաֆամ-սլակին*: Գրեցաւ սուրբ Աւետարանս ի մայրաքաղաքս հռչակաւոր ի* Հռովմկլայս, *ի գիւղս* Խալիֆի *յորչորչեալ, ընդ հովանեաւ սուրբ Գէորգեայ և սուրբ Թէոդորոսի զինաւորաց... ձեռամբ* Անանիա *կրաւնաւորի...։*

## 278

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՄԱՏԹԷՈՍԻ ԱՒԵՏԱՐԱՆԻՆ, ՆԵՐՍԻՍԻ ՇՆՈՐՀԱԼՒՈՅ

*Երուսաղէմ 332*
*Ն. Պողարեան, Մայր ցուցակ, Գ., էջ 222*

604 *Ո՜վ աստուածայսէր անմման սուրբ կարդացող՝* Սարգիս Ջաչռիս *որդիս յաղաւթս քո յիշէ վասն աստուծոյ, աստուած քեզ յիշէ յիր ողորմութիւն. գրեցի թվիս ՋԺԳ. (1464)**։*

## 279

### ԱՒԵՏԱՐԱՆ

*«Միաբանք և այցելուք Երուսաղէմի», էջ 266*

*գրիչ՝* Մարտիրոս Հիզանցի
*վայր՝* Երուսաղէմ

*... Փափաքաւղ եղեալ եղկելիս... և անարուեստ գրիչս* Մարտիրոս, *յետինս ի կարգաւորաց և առաջինս յանցաւորաց գաղափարեցի զսա ինձ գանձ անկողոպտելի, ըստ կարի իմում զարդարեցի ամենայն գունովք, ի ժամանակս վերջինս ի թիւս չափոյ ...ՋԺԳ. (1464) ամի աբեթական տումարի տոհմիս, ի սուրբ և աստուածակոխ քաղաքս* Երուսաղէմ, *ընդ հովանեաւ սրբոյն Յակոբայ դամբարանի, որդւոյն Զեբեթեայ առաքելոյ։*

## 280

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Փիրդ. Նոտ. 219–220, Վան՝ Տիրամայր եկեղեցի*

*գրիչ՝* Մկրտիչ

*... Եւ արդ, ի յայսմ թուաբերութեանս Հայկական տումարիս ՋԺԳ. (1464), ի դառն և ի վշտաբեր ժամանակի գրեցաւ Աւետարանս ձեռամբ* Մկրտչի, *ի խնդրոյ* Պետրոս *քահանայի։*

---

* *Հրատարակիչը հայտնում է, որ այս թվականը Սավալանյանը կարդացել է «ՁԺԳ». այդ դեպքում հիշատակագրության թվականը համարելու է 1274։*





## 281

### ՄԱՍՈՒՆՔ ԱՍՏՈՒԱԾԱՇՆՉԻ

**Երևան 185**

ոմն ընթերցող

328բ *Ի թվաբերութեան Հայոց ՋԺԴ. (1465), յօդ[ո]ս[տոսի] ԺԵ. (15)։ Յայսմ ամի կալեալ եղև թագաւորն վրաց* Գորգի *ի յանաւրէն իշխանէն* Ղաւրղաւրէն, *[շարամանեալ կալան զայս]*։ Յետ որոյ նստաւ յաթոռ թագաւորութեան* Կոստանդին *եղբաւրորդին իւր։ Յետ* Կոստանդինին *նստաւ* Բագրատ *յետ մի ամի։*

## 282

### ՃԱՇՈՑ

**Երևան 3758**

*գրիչ՝* Յովանէս
*վայր՝* Գեղարքունեաց գաւառ, Կած գիւղ

ա

1170 *Աւրհնութիւն, գոհութիւն, բարեբանութիւն զթածին, ողորմածին և մարդասիրին աստուծոյ... որոյ շնորհաւք և աւժանդակութեամբ յանկ ելեալ աւարտեցաւ գերափառ և հոգիազարդ աստուածաբան տառս վասն խնդրոյ բազմերջանիկ և սրբասնեալ քահանայիցն տէր* Մանուէլի *և որդւոյն նորին տէր* Ստեփանոսի, *ձեռամբ բազմամեղ և անարժան գրչի* Յովանիսի, *ի թվականիս մերում Ջ. և ԺԴ. (1465) ամի...։*

1173 *... Ըստ այսմ պայմանի ամենագովելի...* Մանուէլ *քահանայն և տէր* Սաեփանոս *հարազատ նորին գրել ետուն զսուրբ տառս ի* Սանահնոյ *աւրինակէն, և մեծաւ փափագանաւք յարդար վաստակոց իւրեանց ստացան զսա յիշատակ բարի հոգւոյ իւրեանց, և ծնաւղաց տէր* Մանուէլին՝ *պարոն* Ամիրբէկին *և* Գուլմէլիքին, *որ ո՛վ հանդիպողք սուրբ կտակիս յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զդեռաբոյս որդիք տէր* Մանուէլին՝ *զտէր* Ստեփանոս *և* զԱմիրբէկ, *և զքոյր նոցա* զՄարգարիտն, *այլ և զեղբարքն՝ զփոխեցեալքն ի Քրիստոս՝* զԱստուածատուրն *և* զՍաւարն: *Դարձեալ, աղաչեմ յիշել առ Քրիստոս զկենդանի եղբարք տէր* Մանուէլին՝ զՍալթան *և* զէլբէկն, *և զմեծ եղբաւրորդին՝ զպատուելի երիտասարդն* զՄէլիքն, *և զքոյր տէր* Մանուէլին՝ զՅուստիանէ, *և զորդի նորին* զՓաշէն։ *Դարձեալ, աղաչեմ յիշել ի Քրիստոս զհարազատ որդիք* Սալթանին՝ զՇահ-

* *Ուղղագիծ փակագծի մեջ առնվածը գրված է այլ թանաքով ու ձեռագրով։*

նաղարն և զխօշնաղարն և զՄա[r]գարէ դպիրն և զՍանակն, և զորդիք էլ-
բէկին՝ զՅեղիշէ և զՅինոf և զՄաքէոս:
Դարձեալ... յիշեցէք զտէր Մանուէլ, և զամուսինն իւր զՆղիսաբէթ, և
զծաղկեալ որդիքն իւր զաէր Ստեփանոս, և զամուսինն իւր զխօսrովի-
դուխտ, և զզաւակնն իւր զՆեrսէս և զՄեսrոպ պատանիսն, և զԱմիrբէկն,
և զամուսինն իւր զԹուխծամ. յիշեցէք ի Քրիստոս զՄէլիfն, և զամուսինն
իւր զՍօլթանբախտ՝ զփոխեցեալն ի Քրիստոս, և զորդի նորին զԳրիգոr
պատանին, և մայր Մէլիfին՝ զՎաrղատիկին, և զՍալթան, և զամուսինն
իւր զԹամar, և զէլբէկն, և զամուսինն իւր զՁիշագ, և զՇանճաղարն, և
1174 զամուսինն իւր զԱւղուլ-Մէլիfն: || Այլ և աղաչեմ յիշել ի Քրիստոս
զպատուէլի երիտասարդն զԱվrանբէկ, որ է կնքահայր սոցա...։
Եւ արդ, գրեցաւ սուրբ տառս, որ կոչի Տարէանգիրք ի դառնացեալ
ժամանակիս, յորում նեղիմք յանօրինաց բռնութենէ, եւս առաւել ի
կրկնակի հարկապահանջութենէ. ի հայրապետութեան տեառն Գրի-
գորի ընդհանիւր Հայոց կաթողիկոսի և պատրիարգի Վաղարշապատու էջ-
միածնի, ի յաշխարհակալութեանն Ջճանշայ իմիրզին, որդւոյ Ղարայ-Ու-
սուֆին, ձեռամբ ամենամեղ և անարհեստ գրչի Յովանէսի, որ զանունս
ունիմ կարգաւորի և գործովս անպիտան։ Որ և եկեալ յԱrծկէ քաղաքէ տա-
րադէպ հանդիպեցաք ի գաւառս Գեղարfունի, ի գեւղս որ կոչի Կած. հան-
դիպեցաք բարե[պաշտ] առնս տէր Մանուէլին և մոռացաք ղատարական
կեանս մեր։ Վասն յոյժ սիրոյ և փափագանաց սորա ձեռնարկեալ սկիզբն
արարաք սուրբ գրոցս՝ ի մեծի աղուհացից պահոցն ի չորրորդ շաբաթին,
և աւարտեցաք աւժանդակութեամբ սուրբ հոգւոյն աստուծոյ՝ վերացման
սուրբ խաչի տամիս, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, և սուրբ Գրի-
գորի, և սուրբ Կարապետի, յեպիսկոպոսութեան գաւառիս Գեղսմայ
տեառն Ստեփանոսի, և վերադիտողութեան քաջ րաբունւոյն Սարգիս վար-
դապետի՝ սուրբ ուխտիս Հեrմոնի հաւր...։

Բ

754 ... Այլ և բազմամեղ և անարժան գրչիս Յովանիսի, և ծնօղացն իմոց
Յակոբ քահանայի և Սալչուկ-խաթունի տէրն տէրանց ողորմեսցի, ամէն։

## 283

## ՇԱՐԱԿՆՈՑ

«Մխսական», էջ 126

գրիչ՝ Գրիգոր

... [Գրեցաւ Շարակնոցս] յաստուածախնամ և ի հրեշտակահիմն վանքս... ընդ հովանեաւ սուրբ Գրիգորի և սուրբ Յակոբայ և սուրբ Սահակայ, և այլ կենսաբեր սուրբ Նշանաց՝ որ աստ գումարեալ կան, ի յառաջնորդութեան սուրբ ուխտիս տիեզերալոյս և մեծ հռետորի Յովհաննէս վարդապետի, ի դառն և ի նեղ ժամանակի։ Արդ, ես գրել Յովհանէս, որ այժմ կրօնաւոր է և ի մերձակայ աւուրս վարդապետ [է] լինելոց...։ [Անմեղադիր լերուք վասն խոշորութեան գրիս], զի ժամանակս ձմեռն էր, և խուցս մութն և ցուրտ, և նիւթս պակաս, և թանաքս աւեր. և իմ պիտոյքն

*ոչինչ այլ՝ բայց միայն ցամաք հաց, և խոցած ներքինս ի թանսարկուէն և արտաքինս՝ ի բնութեան տկարութենէ*:*

284

## *ԱՒԵՏԱՐԱՆ*

*Փիրգ. Նոտ. 221, Բաբերդ, ս. Աստուածածնի եկեղեցի*

*գրիչ՝* Մատթէոս
*վայր՝* Եղիվարդ

... *Ըստ այսմ օրինակի աստուածասէր և բարեպաշտ կինն* Ազիզ *ստացաւ զսուրբ Աւետարանս մեծափափագ սիրով և ետ ի դուռն* Նորազեղոյ *եկեղեցւոյն, որ յանուն սուրբ* Գրիգորի. *վասն յիշատակի հոգւոյ իւրոյ և առն՝* Խերադինին, *և զաւակացն՝ փոխեցելոցն ի Քրիստոս* Վիրապարին *և* Աստուածատրին...:

*Ցիշեսջիք ջերմեռանդ սիրով զսպասաւոր սուրբ եկեղեցւոյս* զՍարգիս *քահանայն և զտանուտէրքն* Նորգեղոյ՝ Ամիրն, *զ*Ջանիբէկն, *զ*Գալիկն, Սոլթանբէկն, *զ*Աւազն, Սարգիսն, Մխիթարն, *և զ*Պօղոսն, *զ*Սիրատեղն, *և զ*Մանիկն, *զ*Ազիզբէկն, *և զամենեսեան՝ մեծ և փոքր, որ կամակից եղեն և օգնական*:

*Եւ ես՝* Ազիզս *տվի զիմ հալալ գանձագին սուրբ Աւետարանս ընծայ և նուէրք ի սուրբ եկեղեցիս* Նորագեղոյ՝ *յիշատակ մեր ննջեցելոցն և կենդանեաց*:

*Եւ արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի գաւառս* Արարատեան, *ի փառաւոր վանքն* Եղիվարդայ, *ձեռամբ յոգնամեղ և փծուն գրչի* Մատթէոսի: *Ի կաթուղիկոսութեան տեառն* Յըրըստակէսի, *որ յայսմ ամի նստաւ յաթոռ հայրապետութեան, և եպիսկոպոսութեան տէր* Յովաննէսի՝ Հայոց-Թառոյ, *իշխանութեան* Ջհանշի՝ *որդւոյ* Ուսուֆի, *ի վերակացութեան երկրիս պարոն* Վիշելի, *ի մեծ թուականիս Հայոց ՋԺԴ. (1465)*: *Այլ և յիշեցէք ի Քրիստոս զհոգևոր հայրն մեր՝ զարի և քաջ* զՍարգիս *վարդապետն, և զիւր միաբանքն՝* զՄխիթար *աբեղայն, որ է հայր վանացս սուրբ* Գետարգելայ, *և զայլ միեղէն եղբարցս՝ զսրբասէր և ղհեզահոգի* Ալեքսանն, *և զ*Մատթէոսըն, *և զ*Յովհաննէսն...:

285

## *ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԿԱԹՈՒՂԻԿԷԻՑ ԹՂԹՈՑ, ՍԱՐԳՍԻ ՇՆՈՐՀԱԼՒՈՑ*

*Բաղէշ, Մ.Տ.Մ.*

*Ի հայրապետութեան էջմիածնի տէր* Ըստակիսի *և իշխանութեան* Ջհանշի**, *ի գաւառին* Արարատեան, *ի գիւղաքաղաքն* Եղիվարդ, *որ կայ*

---

* *Ծանոթագրության մեջ Ղ. Ալիշանը հայտնում է, որ «Ցիշատակարան գրոցն, յորմէ զայս յիշեմ, երևի գրեալ յամի 1463, ի հայրապետութեան տեառն Գրիգորի ընդհանուր Հայոց կաթողիկոսի, թէպէտ ըստ հասարակաց կարծեաց՝ Գրիգոր համարի վախճանեալ յառաջ քան զթուականդ զայդ»:*

** *Արիստակես կաթողիկոսը աթոռակալել է 1465—73 թթ., Ջհանշահը թագավորել է 1437—67 թթ., ուստի այս հիշատակարանի գրության ժամանակը որոշվում է երեք տարվա ճշտությամբ՝ 1465—67 թվականների միջև ընկած ժամանակամիջոցով:*

առ ոտս Հարաւոյ, ընդ հովանեաւ սուրբ և կմբեթային և խարսխայատակ և հաստակառոյց վիմօք շինեալ սուրբ զանգակատանս, որ յանուն սուրբ Աստուածածնի անուանեալ և սուրբ Յակոբիս և սուրբ Կուսանաց և աստուածընկալ լուսատու սուրբ Նշանիս, յառաջնորդութեան վանիցս նմին տէր Մանուէլի և եղբօրն՝ Բեշքենի:

## 286

## ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

Երևան 5313

գրիչ՝ Վարդան
վայր՝ Վան

ա

574ա ... Աւարտեցաւ սուրբ գիրքս այս յամի ՋԺԴ. (1465) թուականութեանս Հայոց, ձեռամբ յոգնամեղ և անարհեստ գրչի Վարդան մեղաւոր և անարժան երիցու, որ զանունս ունիմ ու զգործքս չունիմ, զկարգս ունիմ ու զկացքս չունիմ, ի խնդրոյ քրիստոսասէր և սրբահոգի քահանային Աւետիսին, քանզի որք մեծութեան ընչից ըղձանան ոչինչ աշխատութիւն զմտաւ ածեն յայլմէ յայլ անցանել զաւառս հեռագնացս ուղևորութեան, որպէս զի զշահսն աճեցուցանել մարթասցեն, նաև ընդ համատարած ծովուն ծփանաց նաւարկեալ, որ բարկացայտ ալեօքն լեռնացեալ կահաձև դաշտանան անդընդապ[տ]ոյտ խորոցն, բքացեալ կուտիցն, մէտ առ մէտ ալեացն ահ պակուցանող տեսողացն արկանելով։ Իսկ արիացեալքն ըստորիչիցն
574բ ի խիւղ խոռ||ոչիցն ի խորս խաւարին ձորոցն համարձակին ի քարաժեռս դժւարամուտ տեղեացն ի խնդիր ականց զանազանից, լաւ համարելով զմահ անձանց, քան թէ ունայն ձեռօք ղվատացն ժառանգել զանուն։ Եւ այլք ըստ քրէական արուեստիցն հալոցօք հնոցացն՝ զոսկոյն գիտ արուեստաւորեալ՝ յառաջ բերեն զանօթն պատուական։

Ըստ նմին օրինակի աստուածասէրս այս Աւետիս քահանայս ի խնդիր եղեալ այսմ հոգէնորոգ ծաղկաւէտ և վարդափթիթ, անուշահոտ բուրաստանիս ազնիւ համեղութեան. եւ ըստացաւ զմարգարտաշար զիմաստայեղձ և զանարիկ փարթամութիւնս՝ զպայծառութիւնս մանկանց Սիոնի և զուրախութիւնս սուրբ եկեղեցոյ ի վայելումն անձին իւրոյ և հոգևոր եղբարց իւրոց՝ մանկանց եկեղեցոյ։ Եւ յետ աստեացս յիշատակ անջինջ ի մէջ եկեղեցւ[ոյ] իւրն, և ծնողաց իւրոց բարեպաշտիցն Մկրտիչ քահանային և Մէլէք-խաթունին, [և ծնօղաց նորին՝ մօրն Բաղդատին և հօրն]*, և հօրեղբարցն Կարապետին և Աւետիսին, և մեծ պապուն Տիրացուին, և Մամախաթունին, և կենակցին Բէկխաթունին, և նորին ծնօղացն Խալիֆին և Խալիմ-խաթունին, և եղբօրն Յովանիսին, և այլ ամենայն արեան մերձաւորացն իւրոց՝ կենդանեացն և հանգուցելոցն...**։

* Փակագծի մեջ առնված հատվածը լրացված է լուսանցքում։

** Շարունակության մեջ էս թվարկվում են ստացող Մկրտիչ քահանայի ազգականները։ Բերվում են նաև նոր անուններ. «...Աստուածատրին, և որդոցն Ցոհանիսին, կնոջն Հաթունջանին, և որդոյն Սարխոշին, և կնոջն Փաշիջանին, Սարգսին և Ցակոբին, և Կարա-

Եւ գրեցաւ սուրբ գիրքս ի քաղաքս ի Վան, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին, և սուրբ Վարդանայ զօրավարին, և սուրբ առաքելոցն Պետրոսի և Պօղոսի, և սուրբ Ստեփաննոսի Նախավկային, և սուրբ Սահակ հայրապետին, ի կաթողիկոսութեանն տեառն Ստեփանոսի, և մերոյ եպիսկոպոսին՝ առաջնորդին Վարագայ տէր Յովանիսին՝ մեծին և փո-
575ա քուն, ի թագաւորութեանն Ջհանշային, || որ այս Բ. (2) ամ է, որ նստեր է
ի վերայ Բաղդատ քաղաքին և խսարեր է զորդին իւր զՓիր-Պուտախն, որոյ Քրիստոս աստուած զինքն ընդ երկայն աւուրս առնէ և զիւր թագաւորութիւմն աւրհնէ, ամէն։

Եւ արդ, ես՝ անպտուղս ի բարեաց, մեղաւորս յարդարոց, մեղանչականս յանմեղաց, ծառայ ծառայիցդ Յիսուսի Քրիստոսի Վարդան, տեսի զսէր և զփափաք իմաստուն վաճառականին Աւետիս քահանային, զոր ունէր առ հոգևորսն, և ըստ իմում տկար անձամբս յանձն առի և ողորմութեամբն աստուծոյ կատարեցի զսուրբ գիրքս զայս։

Եւ դուք՝ համդիպողք սորա, պատուական հարք և եղբարք, ընթերցողք և լսողք այսմ աստուածաշունչ մատենիս՝ յիշեցէք ի մաքրափայլ յաղօթս ձեր զվերոյ յիշեցեալն զԱւետիս քահանայն, և ըղծնօղսն իւր, և զմեծ պապն զՏիրացուն, և զՄամախաթունն, և զմօրքուրքն զԽաթուն-Մէլիքն, զՄուաթն և զՆսէֆն և զքեռիքն զԿարապետն և զՍտեփանոսն և զազգն ամենայն։ Եւ զիս զմեղաւոր և ղօզորմելի գրիչս զՎարդան յիշման արժանի արէք, զի յոյժ զառածեալ եմ մեղօք և այլ չունիմ յոյս և ապաւէն քան զՔրիստոս և զձեր սուրբ աղօթքդ, և զիմ ծնօղքն զՅովանէս քահանայն և Ջմրուխ, և զորդիքն իմ զՆիկողայոս քահանայն, որ սակաւ մի նա գրեաց, և զՅովանէսն, և զԳրիգորն, և զմայր սոցա, և զքոյրքն և զեղբարքն իմ, և զայնոսիկ, որ ի վերայ մեզ երախտիք ունին, և լի բերանով աստուածողորմի ասացէք, և Քրիստոս աստուած ձեզ և մեզ ողորմեսցի, ամէն։

Դարձեալ յիշեցէք ի Քրիստոս զԿարապետ քահանայն, որ նա եղև միջնորդ այսմ բարի գործոցս և զԲախշիկ սարկաւագն, և աստուած զձեզ յիշէ յիւր արքայութիւմ, ամէն։

Դարձեալ աղաչեմ զձեզ, ո՜վ սուրբ մանկունք եկեղեցւոյ, յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զԱւետիս քահանայն և զծնաւղսն իւր զՄկրտիչ քահանայն և զՄելիք-Խաթունն, որ ցանկացող են այսմ սուրբ գրոցս և ետուն ի դուռն սուրբ առաքելոցն Պետրոսի և Պաւղոսի անջինջ յիշատակ իւրեանց և ամենայն արեան մերձաւորացն, ի ձեռն սուրբ քահանայիցն՝ տէր Ստեփաննոսին, և տէր Խաչատուրն, և տէր Կարապետին, և տէր Թումին, և միւս տէր Կարապետին, և միւս տէր Ստեփաննոսին, և տէր Դանիէլին, և տէր Յովաննիսին, և սարկաւագացն առհասարակ և բնաւ ուխտ[ի] եկեղեցւոյն, զոր և վայելել տացէ տէր աստուած նոցա ընդ երկայն աւուրս։ Եւ որք յանգզնի հեռացուցանել զսա ի դրանէ սուրբ առա-

պետին, ... և եղբօրն Յովանիսին, և ոռդոյ նորին Միրաօին»։ Ներքին լուսանցքի վրա՝ «Դարձեալ յիշեցէք ի Քրիստոս զտէր Աւետիսի քուերքն՝ զՇողիաթուն և ըղՆսէֆ-խաթուն, և զերկու Յովանէս եղբայրքն, և աստուած ողորմի ասացէք նոցա, ամէն»։ Մերձավոր ազգականների անունները հիշատակվում են նաև գրեթե բոլոր վերքագրություններից հետո գրչի թողած համառոտ հիշատակագրություններում։

քելոցս Պետրոսի և Պաւղոսի գողանալով կամ գրաւելով՝ զմասն զՅուդային առցէ և զխաչահանուացն, զԿորխան, և զԴադանին, և զԱբիրոնին, ղԱնէսին, և զԱմրէսին, և զԿայենին*։

Բ

592բ Թանաքս հում է ու թուխտս հին. անմեղադիր լերուք։

287

ԱԻԾՏԱՐԱՆ

Մ. Աթոռ 22, «Էջմիածին», 1950 թ., սեպտեմբեր-հոկտեմբեր, էջ 84—85

գրիչ՝ Յովանէս Մանգասարենց
վայր՝ Արճէշ

273ա-275բ … Արդ, ըստ այսմ պատուիրանի ցանկացաւղ եղև աստուածային սուրբ և աւետաբեր Աւետարանիս ողորմելի և գառնացեալ կին Խալիմ-Խաթունն, և ստացաւ զփարթամ հարստութիւնս՝ զաստուածաբան սուրբ Աւետարանս յիշատակ իւրն և բարի զաւակին իւրոյ՝ գեղեցիկ և քաղցրատես երիտասարդին Կարապետին, որ գնաց ուրախութեամբ ի քաղաքն Սուլթանիա, և ի դառնալն ի տուն մատնեցաւ ի ձեռս արեանարբու չալատ տաճկաց, որ անմեղ նահատակեցին սրով և խանչալով։ Եւ ո՞ր լեզու կարէ պատմել զանմեղ սպանումն Կարապետին, որ էր նոր փեսայ՝ և հասրաթմահ նահատակեցաւ։ Նոյնպէս եղբայր նորին՝ խոշայ Յոհանէսն երիտասարդ հասակաւ, և նա յԻսպահւան սրով սպանաւ ի ձեռաց անաւրէն հարամկաց։ Եւ էր նա երկիւղած յաստուծոյ և զԵ. (5) ար առաջաւորաց պահոցն անսուաղ անցուցանէր։

Այլ և միւս փոքրիկ որդոյն՝ Էզդանբախշին, որ և նա տղայ հասակաւ գնաց ի վաճառ յԱրևելս, և դարձան ուրախութեամբ, և ի հասանելն ի Թավրէզ՝ ցաւ մահու դիպաւ և յաստուած փոխեցաւ։

Եւ ողորմելի հայր սոցա Գրիգորն, ՜խոց սրտով և դառն կենաւք, գնաց տարադէմ յԻսպահան վասն որդոյն Յոհանիսին, և ի դառնալն հեծեծանօք կսկծու մահ եղև ի Սոլթանիա:

Այս ողորմելի կին Խալիմ-Խաթունս զայս ամենայն անասելի կսկիծս տեսեալ և լալով զաւուրքն անցուցեալ և զյոյսն յաստուծոյ ոչ հատեալ, ստացաւ զտէրունեան սուրբ Աւետարանս յիշատակ իւրն, և ծնողացն՝ Ստեփանոսին և Նազմէլէֆին, և առն իւրում՝ Մարտիրոսին և Գրիգորին, և կենդանի որդոյն՝ Յոհանիսին, և եղբօրն՝ պարոն Գորգին, և դստերն Գուլփաշին, և ամենայն արեան մերձաւորաց նորին։ Լի բերանով և ուղիղ սրտիւ աստուած-ողորմի ասացէք գառնացեալ կնոջն Խալիմին, և գեղեցիկ նահատակ որդոցն Կարապետին, Յոհանիսին, և Էզդանբախշին, և Գուլփաշին, և հօրեղբօրն Սարգսին և ամենայն արեան մերձաւորաց նորին՝ կենդանեաց և մեռելոց, ամէն։

* Հաջորդ 575ր—576բ, 588ա-588բ և 591բ էջերի վրա գրանցված են արժեքավոր նվիրաբերական արձանագրություններ։ Նվիրատուներն են վանեցի խոջաներ ու արհեստավորներ, ստացողն է Վանի Պողոս-Պետրոս եկեղեցին։

*Այլ և ես անարժանս ի մանկունս եկեղեցոյ* Յօվանէս *քահանայ ըստ իմում տկարութեանս յանձն առի զսուրբ Աւետարանս և աւարտեցի կամաւն աստուծոյ ի թուականութեանս Հայոց ՋԺԴ. (1465) ամին, ի քաղաքս որ կոչի* Արճէս, *ի դուռն սուրբ տաճարիս Գէորգայ զօրավարի։*

*Յայսմ ամի սպան չարաչար* Ջհանշահ *փատշահն զորդին իւր* զՓիր-Պուտախ *խանն ի* Բաղդատ*, *և եկն ի* Թավրէզ *ի թաղթն։ Եւ են աթոռ և եպիսկոպոս երկրիս* Քաջբէրունոյ *իմաստուն և բանիբուն վարդապետն* Ստեփանոս *և տէր* Յօվանէս *արհիեպիսկոպոսն, և տանուտէրք քրիստոնէից՝ պարոն* Բախշայիշն *և խօջայ* Մանլամն: *Յայսմ ամի գրեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ* Յօվանէս *քահանայի, վասն որոյ միաբան աստուած-ողորմի ասացէք անարժանիս և ծնողացն իմ՝* Մանկասարին *և* Փաշին, *և կենակցին իմոյ* Շուքրանին, *որ յայս ամի փոխեցաւ ի Քրիստոս։*

*Եւ տէր աստուած ձեզ լսողացդ և կարդացողացդ և աստուած-ողորմի ասողացդ տացէ զիւր երկնից արքայութիւնն ձեզ և ձեր ծնաւղացն, և աւրհնեսցէ զձեզ և զարդարեսցէ յայս կեանքս որդովք և յայն կեանքն հոգով, ամէն։*

## 288

## ԳԱՆՁԱՐԱՆ

*Երևան 5338*

*գրիչ՝* Մելքիսէթ
*վայր՝* Վասպուրական

244ա /// *Փոխ[ե]ցաւ առ Քրիստոս և եթող սուգ անմխիթար ծնօղացն իւրոց և կենակցին* Շանմէլէքին, *և հարսին* Գաւնգուլին, *և զաւակաց նորին* Շանփաշին *և* Խաթունփաշին, *և եղբարցն մահդասի* Յօվան[իսին և] Կարապետին *և* Ջանիբէկին, *և որդոց* Կարապետին՝ Մէլէքին, Դօրգուն, Խալիֆին *և ամենայն արեան մերձաւորացն աստուած-ողորմի ասացէք։*

*Դարձեալ յիշեցէք ի Քրիստոս* զՅոճանէս *պատուական տանուտէրն, և զկենակիցն իւր, և զորդին իւր* զԱստուածատուրն, *և զկենակից նորին, և զաւակս իւրեանց* զՇանփաշէն *և* զԽաթունփաշէն, *և աստուած-ողորմի ասացէք նոցա, ամէն։*

*Դարձեալ յիշեցէք ի Քրիստոս և զխոճա* Դովլաթշէն, *և զեղ[բ]այրն իւր* զԱսպանճանշէն, *որ դառն մահուամբ ի յանօրինաց փոխեցաւ ի Քրիստոս***, *և* զՅակոբշէն, *և զծնօղսն իւր, և զաւակսն իւր զդեռաբոյս ծաղիկ* զՄիրաքն, *և* զՀոռմշէն *և զկենակիցն իւր* զԽփար-Խաթուն, *և զմայրն իւր* զԽասն-

* *Ռ.Ռ. Մկրտիչ քահանա տարեգիր ՋԺԵ. (1466) թվականի տակ նույնպես հայտնում է, որ «Ջհանշայն զԲաղդատն էառ. սա զորդին սպան» (Փիրղ. Նոտ., էջ 2-3)։*

** *Ղ. Փիրղալեմյանը, իր «Նշխարք պատմութեան հայոց» անտիպ աշխատության Բ. հատորում (Երևան, № 4515, էջ 191) մեջ է բերում 1463 թ. ընդօրինակված մի Ճաշոցի հիշատակարանից հետևյալ հատվածը. «Յիշեցեք ի մաքրափայլ յաղօթս ձեր* զԱսլան-Մէլիքենց Ասպանճանշէն, *և քաջ նահատակն* Սքանդարն, *որ ի ձեռաց անօրինաց մարտիրոսացաւ»։*

*Հավանաբար այս երկու հիշատակարանների մեջ խոսվում է միևնույն Ասպահանշահի մասին։*

*Խութլու, և զաղջն ամենայն ի աստուած-ողորմի ասացէք նոցա, ամէն։*
*Արդ, և ես՝ անպտուղս ի բարեաց, մեղաւորս յարդարոց, անկատարս*
*ի կատարելոց մեղանչականս յանմեղաց՝* Մելքիսէթ *սուտանուն քահա-*
*նայս, և զծնօղսն իմ* զՍտեփանոս *և* զԳօնար, *և ղաւակսն իմ* զՍիրուն,
244բ զԳորգն *և ղայլքն ամենայն, և զեղբայրն || իմ, և զքորքն իմ, և զամենայն*
*արեան մերձաւորքն իմ և աստուած-ողորմի ասացէք, ամէն։*
*Դարձեալ, և ես՝ անարժան ծառայս ծառայիցդ աստուծոյ* Յոհանէս
*ստացայ զսուրբ դիրքս զայս ի հալալ վաստակոց իմոց և ետու դրել զսա*
*յ[իշատ]ակ հոգոյ իմոյ, և ծնօղացն իմոց* Սիրանոսին *և* Խաթուն-Մէլէքին,
*և զաւակին իմոյ* Աստուածատուրն, *և կենակցին* Գօնգուլին, *և զաւակացն*
Շահփաշին *և* Խաթունփաշին, *և եղբարցն* Յովանէսին, Կարապետին *և*
Ջանիբէկին, *և եզբօրորդոցն* Մէլէքին, Գօրգուն *և* Խալիֆին, *և ամենայն*
*զարմից նոցին, այլ և* Դովլաթշին *և* Ասպանանշին *և* Յակոբշին, *և կենակ-*
*ցի Դովլաթշին՝* Իփար-Խաթունին, *և մօրն* Ասան-Խութլուփն, *և ամենայն*
*արեան մերձաւորացն, ամէն։*
*Դարձեալ, աստուած-ողորմի ասացէք* Խութլու-Մէլէք *խաթունին, և որ-*
*դոյն խոճա* Սֆանդարին, *և կենակցին* Սուլտանին, *և նոցին զաւակաց,*
*ամէն։*
*Գրեցաւ սա ի թվականիս Հայոց ի Ջ և ի ԺԴ. (1465), ի հայրապետու-*
*թիւն տեառն* Ստեփանոսի *և ի* Սմբատայ *թագաւորին։ Արդ, և ես՝* Յոհանէս
*ստացայ զսուրբ գիրքս զայս յիշատակ հոգոյ իմոյ և ետու զսա նուէր և*
*ընծայ ի դուռն սուրբ տաճարացն՝ սրբոյն* Յովհաննիսի և Ամենափրկչին,*
*զի հանապազ ընթերցին մանկունք եկեղեցոյ, որ են այժմ սպասաւոր*
*սուրբ եկեղեցոյն՝ տէր* Աստուածատուրն *և տէր* Կիրակոս, *և ով որ յետ*
*ձեզ լինի. խնամով պահեցէք և զիս անպարսաւ թողէք, զի կար մեր այս*
*էր...։*

## 289

## ՇԱՐԱԿՆՈՑ

*Լեյդենի համալսարան,* Or. 5521. *Ֆ. Մակլեր, Ցուցակ, № 61, էջ 145—146*

լրացնող
*վայր՝* Աղթամա՞ր

341բ *Արդ, գրեցաւ... ի քաղաքս* Սիս, *ընդ հովանեաւ սուրբ Նշանիս, ձե-*
*ռամբ* Հեթմոյ *քահանայի, և ըստացաւ զսա տէր* Սահակ *եպիսկոպոսն։ Եւ*
*յետ սորա անկաւ սա յայլ ոք և եկեալ հասաւ մի[ն]չև ի տէր* Զաքարիա
*կաթողիկոսն ամենայն Հայոց, զոր ըստացաւ զսա և ետ եղբաւրորդոյն իւ-*
*րոյ* Սըմբատ *թագաւորին, և նա ծախեաց. և ըստացաւ զսա սրբասէր և*
*բարէմիտ և հեզահոգի կրաւնաւորն* Յովանէս *և մայրն իւր* Փաշամէլիքն

---

* *Ձեռագրից թերթ է ընկել, շարունակությունը վերցնում ենք Ն. Ղալայանի ան-*
*տիպ ցուցակից, որի մեջ, 533 համարի տակ, նկարագրված է այս ձեռագիրը։*
*Սույն 244բ էջի լուսանցքում՝ ԺԵ. դարի ձեռագրով (գուցե հենց նույն գրչի)*
*գրված է «Դարձեալ յիշեցէք ի Քրիստոս ստացօղս Դանձար[ան]իս Զաքարայ կաթողիկոսըն*
*և ամենայն արեան մերձ[աւորքն]»։*

ի Մ. (200) և ի Ժ. (10) թանգա, ի հալալ և յարդար վաստակոց իւրեանց,
342ա և եառուն վերրստին || զարդարել զսա ոսկով և արծաթով, որպէս և տեսա-
նէք իսկ, ի վայելումն անձին իւրոյ, և յիշատակ հոգոյ իւրոյ և ծնաւղաց
իւրոց Սեռունին և Փաշամելէքին, և այլ ամենայն արեան մեր-
ձաւորաց իւրոց։ Վասն որոյ աղաչեմ ըղհանդիպողքգ սրմա տե-
սութեամբ կամ ուսմամբ՝ լի բերանով և ուղիղ մրտաւք աստուած-ողորմի
ասացէք ստացաւղի սորա Յովաննէս կրամաւորին, ե բարի ծրնաւղաց
իւրոց՝ հաւրն Սեռունին և մաւրն Փաշամելէքին, և եղբաւրն Կարապետին,
և քըւերցն իւրոյ Արմանի-խաթունին և Մուղան-խաթունին և Թավրէզ-խա-
թուն[ին], և համեստ և հարկևոր հարսին իւրո Խոնծայ-խաթունին:

Դարձեալ, աղաչեմ յիշել ի տէր և զերախտաւոր քեռին ըղտէր Ստե-
փաննոս արհեպիսկոպոսն, որ մականուն Գաւզալ կոչի, և զայլ ամենայն
արեան մերձաւորքն՝ զկենդանիքն և ըզհանդուցեալքն յիշեցէք և աս-
տուած-ողորմի ասացէք սոցա, ամէն։

342բ Յիշեցէք ի Քրիստոս և զհըռչակաւոր և ղանուանի նըկարողն ըղտէր Մի-
նասն, որ նըկարեաց ըզսուրբ անաւրինականքս, որ կա ի սմա։ Ընդ նոսին
և զիս զմեղաւոր ծառայս աստուծոյ, որ ղսակաւ շարակներս գծագրեցի
ՋԺԴ. (1465) թվ. ի հայրապետութեան տեառն Ստեփաննոս Նորընծաւ
կաթուղիկոսի։ Եւ ինքն Քրիստոս աստուած, որ առատն է ի տուրս բարեաց
ամենեցուն, առհասարակ, ողորմեսցէ ստացողին Յովանէս կրաւնաւո-
րին*, և Փաշին, և գըծողին, և ծաղկոզացն, և կազողին, և աստուած-ողոր-
մի ասողին, և նմա փառք յաւիտեանս, ամէն։

290

ՃԱՌԸՆՏԻՐ

ՄՑՎ 226 (41), հտ. Բ, էջ 419

գրիչ՝ Թումայ

ա

38բ Մանաւանդ ստացող սուրբ գրոյս զպարոն Սըմբատն, և զծնողսն իւր
ղամիր Գուոջիբէկն և զԴունիա-խաթունն, և զհաւրեղբայրն զտէր Ջաֆարի
կաթողիկոսն, զկենակիցն (Սմբատայ) զԲեկի-խաթունն**, և զնախնիքն
ամենայն, և զԹումայ մեղսաթաւալ գծողս, զկարդացողսն և զլսողսն, և
զաստուած ողորմի ասողս (յիշեցէք ի տէր)։

բ

71ա Ողորմած աստուած Յիսուս Քրիստոս, ողորմեա ամենայն հաւատա-
ցեալ քրիստոնէից, եւ առաւել ստացողի սուրբ գրոցս Սըմբատ թագաւո-
րին, և ծնաւղաց նորին՝ պարոն Գուոջիբէկին և Դունեա-խաթունին, և հաւ-
րեղբաւրն տէր Ջաֆարիա կաթողիկոսին, և կենակցին Բեկի-խաթունին և

* Տպված է «կրկին» (°)։
** Հրատարակիչ Բ. Սարգիսյանի սխալ ծանոթագրությամբ Բեկի-Խաթունը համար-վում է Գուաջիբեկի կինը, մինչդեռ պարզ է, որ Դունիա-Խաթունն է նրա կինը։

քըւերն խանում-խաթունին, և նախնեաց ամենայնի, և Թումայ մեղսաթաւալ գծողիս, կարդացողացն և լսողաց և աստուած-ողորմի ասողաց*։

## 291

## ԱՒԵՏԱՐԱՆ

Հ. Ս. Քոսեան, Ցուցակ հայերէն ձեռագրաց Արծնեան վարժարանի ի Կարին. № 55 (863)**

գրիչ՝ Հայրապետ
վայր՝ Աղթամար

...Ի հայրապետութեան տեառն Ստեփաննոսի կաթողիկոսի, ի դառն և վշտալից ժամանակիս, յորում ի խիստ և ի նեղութեան և ի չար ծառայութեան կամք ազգին նետողաց, զի յոյժ կեղեն և կեղեքեն զազգս քրիստոնէից։

---

* Այս հիշատակագրություններին Բ. Սարգսյանը կցում է մի ծանոթություն, որից երևում է նրա անտեղյակությունը ԺԴ—ԺԵ դարերի քաղաքական անցուդարձերին։ Ըստ նրա «Պարոն Սմբատն է Արծրունյաց իշխանն, որ հետո եղավ թագավոր Արծրունյաց, իսկ անոր հորեղբայրն Զաքարիա է Աղթամարա կաթողիկոսը, որ հաջորդեց Ստեփաննոս կաթողիկոսին՝ հավանորեն 1279—1303. և հանդիսավոր կերպով օծեց զՍմբատ՝ թագավոր Արծրունյաց։ Ուստի կը հետևի, թե հիշյալ ձեռագրի մեկ մասը Սմբատա թագավոր ըլլալնէ հառաջ գրված է, իսկ մյուսն անկեց ետքը, այսինքն 1303—1336 տարիներուն մեջ»։

Այստեղ ամեն ինչ շփոթված է։ Հիշատակված Զաքարիա կաթողիկոսը Աղթամարի նույնանուն կաթողիկոսներից երրորդն է, որ հիշատակվել է սկսում, որպես Վասպուրականի ազդեցիկ հոգևորականներից մեկը, սկսած 1414 թվականից, միանձնյա աթոռակալել է Աղթամարի (ապա նաև Էջմիածնի) կաթողիկոսական գահի վրա մինչև 1464 թվականը։ Պարոն Սմբատը կամ Սմբատ թագավորը այդ (թագավոր) տիտղոսով առաջին անգամ հիշատակվում է 1465 թվականին շարադրված նախորդ երկու հիշատակարաններում, իսկ հետագայում հիշատակված է ևս մի քանի անգամ (տե՛ս, օրինակ, 1466-ի թվաշարքում Մխիթար և Իսրայել գրիչների հիշատակարանները)։

Այսպիսով, տարակույս չի կարող լինել, որ անթվական այս հիշատակարանը գրված պետք է լինի ոչ թե 1303—1336 թթ. ընթացքում, ինչպես ենթադրել է Բ. Սարգսյանը, այլ ԺԵ. դարի 60-ական թվականներին, ավելի որոշակի՝ 1465—66 թթ.։

Սմբատի թագավոր օծվելու մասին տե՛ս մանրամասնություններ Ն. Ակինյանի «Գաւազանագիրք կաթողիկոսաց Աղթամարայ» (Վիեննա, 1920) աշխատության 111—114 էջերում, ուր մեջ է բերված նաև «Բիւզանդիոնի» 1900 թ. № 1196-ից հետևյալ հիշատակարանը «Եւ ապա եկն (յԷջմիածնէ) յԱղթամար տէր Ստեփաննոս արհիեպիսկոպոսն եւ ամենեքին ծովեզերեայք ժողովեցան եւ ձեռնադրեցին զտէր Ստեփաննոս կաթողիկոս ամենայն Հայոց, բազում եպիսկոպոսօք, վարդապետօք, կրօնաւորօք, քահանայիւք և ժողովրդեամբքն» եւ կը յաւելու «Եւ յայնժամ օծեցին զպարոն Սմբատ թագաւոր ըստ նախնեաց իւրոց Գագկայ, զի ի վաղուց անտի ազգս Հայոց չէր տեսեալ թագաւոր։ Փրկիչն մեր Քրիստոս զօրացուսցէ զնա եւ բարձրացուսցէ զաթոռ իշխանութեան մերոյ եւ զաթոռ յԱղթամարու եւ զսուրբ Աջն Լուսաւորչայ եւ զաթոռակալն մեր՝ զտեսուչ բանաւոր հօտիս զամենագով զտէր Ստեփաննոս կաթողիկոս ամենայն Հայոց եւ զնախնիս իւր ամէն»։

** Միջնորդությամբ՝ Ն. Ակինյանի, «Գաւազանագիրք կաթողիկոսաց Աղթամարայ» աշխատության (Վիեննա, 1920, էջ 1151)։

## 292

### ՃԱՇՈՑ

**Երևան 982**

*Ծվիրատու՝* Ղարիպշայ–Ստեփանոս

533ա *Ես՝* Ղարիպշայ *սուտանուն մուղդասի նուիրեցի զանձս* աստուածային սուրբ աթոռոյս սուրբ Խաչիս Աղթամարայ, ձեռամբ նորընծայ հայրապետիս մերո՝ տեառն տէր* Ստեփաննոսի *կաթուղիկոսի ամենայն Հայոց և պարոն* Սըմբատայ, *և տէր* Ստեփանոս *արքեպիսկոպոսիս, որ մականուն* Գօզալ *կոչի, և սուրբ կրօնաւորացս տէր* Յոհանէս *փիլիսոփայի, և տէր* Աւետիս *փիլիսոփայի, տէր* Հէրապետ *փիլիսոփայի, և տէր* Ստեփաննոսի *փիլիսոփայի, տէր* Ստեփաննոս *մուղդասի փիլիսոփայի, և տէր* Յուսէփի, *տէր* Մինաս *քաջ նկարող սորին**, և տէր* Ներսէսի, *տէր* Մկրտչի, *և տէր* Գրիգորի, *տէր* Յակոբի, *տէր* Յովանիսի, <*և տէր* Գրիգորի, *տէր* Յովանիսի>***, *և տէր* Սարգըսի, *և քահանայիցն՝ տէր* Առաքելին, *և տէր* Մկըրտչին, *տէր* Վարդանին, *և տէր* Թումին, *և տըւաք զսայ զանձ անկողոպտելի և կտակ անդառնալի ի դուռս սուրբ աթոռոյս՝ սուրբ և գերահրաշ սուրբ Խաչիս, և մանկունք սուրբ աթոռոյս վայելեսցեն զաստուածաշունչ գիրքս, և կարդան ըստ կարգի, և աստուած-ողորմի ասեն* Ղարիպշայ *մազգասոմ և իւր ծնօղացն։ Եւ մի ոք իշխեսցէ հեռացուցանել զսա ի դրանէ սուրբ Խաչիս, թէ ի հայրապետաց, թէ յեպիսկոպոսաց, թէ ի կրօնաւորաց, թէ ի քահանայից, թէ ի մերոց, թէ յօտարաց։ Եւ էն մարդն, որ յանդըգնի և հանէ զսա արտաքս՝ դատի ի Քրիստոսէ և զվարձն զՅուդային առնու և զանէծքն զԿայենին և զխաչահանուացն, ամէն։*

## 293

### ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

**Երևան 7661**

9բ *... Սորին բարեխօսութեամբն տէր Յիսուս՝ զաթոռակալ* Աղթամարայ *զտէր* Ստեփանոս *կաթողիկոսն դասակից արա ամենայն սուրբ հայրապետացն, և ես առաւել զստացող գրոցս՝ զդարբին* Վարդան *և զծնօղքն իւր, և աստուած-ողորմի սոցա և մեղաւոր գծողս և մերոցն...։*

## 294

### ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

*Ալիշան, Հայկարան, Ալիբունար գիւղ*

*գրիչ՝* Աստուածատուր

*վայր՝* Խլաթ

*Յամին ՋԺԴ. (1465) թվ. ի* Խլաթ *քաղաքի, ընդ հովանեաւ սուրբ Խորանացն, ի հայրապետութեան էջմիածնի տեառն* Արիստակիսի, *ձեռամբ* Աստուածատրոյն *և* Կիրակոսին, *ի խնդրոյ* Յովհաննէս *քահանայի...։*

---

* *Ձեռագրում սխալմամբ գրված է «անձս»։*

** *Մինասի նկարները, իրոք, վկայում են նրա շնորհունակության մասին։ 217ր էջի խաչելության նկարի ներքևում Մինասը թողել է հետևյալ հիշատակագրությունը՝ «զՄինաս նկարող եւ զծնողս իմ յիշեցէք ի Քրիստոս»։*

*** *Կրկնություն է։*

## 295

### ՄԱՇՏՈՑ

*«Թորոս Աղբար» Ա., էջ 77, Ջիլէի եկեղեցի*

*գրիչ՝* Թովմայ
*վայր՝* Խալկին գիւղ

*... Ո՞վ սուրբ ընթերցող, անմեղադիր լեր, զի ծածուկն և շտապն այսպէս լինի բանն. վասն յիշելոյ է պիտանի. և մեք ազգի ազգի և յոյժ տարաբերիմք։ Զմեռեալս հոգւով յիշեա, ո՛վ ժառանգող։*

*ԵԴՏԼԴԼՏ | | ։ ։ | ˙ ||| ։ | ⁝ | ։ | | .| | ⁝ ։ | | ։ ‿ ՑՌՌԻՄԻՄԻՆ**

*որ ՋԺԴ. (1465), գեօղն որ կոչի* Խալկին, *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին, ամէն։ Եւ զիս՝ զանպիտան զտէր* Թովմայն, *որ աշխատեցայ և գրեցի զտառս։ Ով որ զիս յիշէ նա աստուած զինքն յիշէ յերկնից արքայութիւն, ամէն։*

## 296

### ՄԱՇՏՈՑ

*Փերգ. Նոտ. 223, Երզնկա՝ ս. Կիրակոսի վանք*

*գրիչ՝* Աստուածատուր
*վայր՝* Տիրաշէն

*Դրեալ յ*Աստուածատուր *երիցէ, ի թվ. ՋԺԴ. (1465), ի հայրապետութեան տէր* Սարգսի, *ընդ հովանեաւ սուրբ աթոռոյս, որ կոչի* Տիրաշէն:

## 297

### ՃԱՇՈՑ

*Նիկոմեգիոյ առաջնորդարան, Մ.Տ.Մ.*

*գրիչ՝* Ջաւրվար
*վայր՝* Տիւրիկ

433ա— *Ի թվ. Հայոց ՋԺԴ. (1465) հոկտեմբեր ամսոյ ի ԺԱ. (11), ի քաղաքիս*
435բ *որ կոչի* Տիւրիկ, *ի սպասաւորութիւն սուրբ Սարգսի զինաւորին... ձեռամբ* Ջաւրվար *սուտանուն երիցուն...։ Յիշեսջիք զանարժան գծողս և զծնողսն իմ* զՍտեփանոս *քահանայս... որ աւգտեցաք ի նմանէ զգրոց բովանդակ նկարեալն և զկապելն...։*

## 298

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Փերգ. Նոտ. 221—222, Մարզուան, ս. Աստուածածնի եկեղեցի*

*գրիչ՝* Թորոս
*վայր՝* Երուսաղէմ

*... [Դրեցաւ] ՋԺԴ. ամի յաբեթական տումարի տոհմիս (1465), ի սուրբ և աստուածակոխ քաղաքս* Երուսաղէմ, *ընդ հովանեաւ սրբոյն Յակոբայ*

* *Այս ծածկագիրը մեզ չհաջողվեց վերծանել։*



16—94

դամբարանի՝ որդւոյն Ջեբեղեայ առաքելոյն ...ձեռամբ Թորոս աբեղայի...։

299

ԺՈՂՈՎԱԾՈՒ ՄԵԿՆՈՒԹԵԱՆՑ

Երևան 1834

գրաւ դնող՝ Յոնան

58ա Ի թվին Ջ. և ԺԴ. (1465) ես Յոնան աբեղայս առի Ժ. (10) կարմիր փող ի Սարգիս վարդապետէն ի փոխ, և զգիրս դրաւ դրի առ նա մինչև զփողերն տանք և զգիրքս առնունք, տէր Յովանիսին վկայութեամբ գրեցաւ գիրս, հոկտեմբեր է. (7)։

300

ԱՂՕԹԱԳԻՐՔ ԹՈՎՄԱՅԻ ՄԵԾՈՓԵՑԻՈՅ

«Արարատ», 1905 թ., էջ 734, Կիւմուշխանէ

գրիչ՝ Ազարիայ

Գրեցաւ սա ի թուականիս մերում ՋԺԴ. (1465), ձեռամբ մեղապարտ և անարժան երիցու Ազարիայի...*։

301

ՃԱՐԱԿՆՈՑ

Երևան 1618

գրիչ՝ Թումայ

ա

303բ ... Գրեցաւ ձեռամբ Թումայի սուտանուն աբեղայի և գործ[ով] ոչ. ի թվ. ԹՃԺԴ. (1465), քաղոց, յաղաչեմ յիշել ի տէր։

բ

197բ Քեզ երանի, որ հանդիպիս յայսմ ահեղ նաւակատեաց սուրբ խո՛չիս եւ պայծառ և շարադրեալ բուրաստանիս. և լի սրտիւ սուրբ զխաչն յի՛շես՝ ծնդրիկ ածես. յիշեա զԹումայ մեռեալ հոգիս ի սուրբ աղաւթըս քո. զիս յիշեսցես և աստուած զձեզ յիշէ, ամէն։

* Հրատարակողը չի անջատել միմյանցից խմբագրող Թովմայ Մեծոփեցու և ձեռագրի ընդօրինակող գրիչ Ազարիայի հիշատակարանները, որով և թյուրիմացություն է ստեղծվել՝ Թովմայի հիշատակարանի ժամանակի վերաբերյալ, որը 1446 թվականից հետո գրված լինել չի կարող։

## 302

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԱՌԱԿԱՑ ՍՈՂՈՄՈՆԻ

*Երևան 4211*

*նուիրատու*՝ Իսրայէլ

520բ *Յիշատակ է գիրքս* Իսրայէլին, Միքայէլին, Առաքել *վարդապետին։ Եւ* Իսրայէլս *տուաք զգիրքս* Սարգիս *վարդապետին, յիշատակ մեզ և ծնօղաց մերոց։*

*Դարձեալ աղաչեմ, որք կարդայք կամ աւրինակէք յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր և աստուած զձեզ յիշէ, ամէն։*

*Թվ. ՋԺԴ. (1465)։*

## 303

### ԺԱՄԱԳԻՐՔ ԵՒ ՏՕՆԱՑՈՅՑ

*ՕՑՀ հտ. Ա. 111, էջ 190*

*գրիչ*՝ Սամուէլ
*վայր*՝ Մանիլայ

ա

367 *... Արդ, գրեցաւ ի մի տուփ Սաղմոսարանս և Աղաւթամատոյցս և Պատարագս և Տաւնացոյցս ընդ հովանեաւ սուրբ Նշանին* Մանիլոյ *և Սուրբ լուսո, ձեռամբ բազմամեղ և [ան]արհեստ գրչի* Սամուէլի, *Թվ. ՋԺԴ. (1465) փետրուարի Զ. (6)։ Արդ, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք սմա կարդալով կամ աւրինակելով, յիշեսջիք ի սուրբ աղաւթս ձեր զհայրն իմ զ*Տիրացու *քահանայն, և զմայրն իմ, և զուսուցիչն իմ զ*Յովանէս *քահանայն, և զիս զանպիտանս, և աստուած զձեզ յիշէ յիւր սուրբ արքայութիւնն։ Եւ անմեղադիր լերուք ամենայն պակասութեան գրիս և աղալանաց։*

բ

156ա *Ո՞վ սուրբ քահանայք, աղաչեմ զձեզ վասն սիրոյն Քրիստոսի, յորժամ մատուցանէք զսուրբ և անմահ պատարագն՝ յիշեցէք զմեղապարտ գրիչս զ*Սամուէլս *և զհայրն իմ զ*Տիրացու *քահանայն։*

*Գրեցաւ թվ. ՋԺԴ. (1465)։*



*ՋԺԵ* *1466*

**304**

## ԱՒԵՏԱՐԱՆ

Ն. Ջուղա 474, Ս.Տ.Ա., Մ.Տ.Մ.

ա

Գրիչ
վայր՝ Եղիվարդ

250ա— ... Արդ, եղև սկիզբն և աւարտ գրչութեան սորա ի գեղաքաղաքն Եղի-
252բ վարդ, ի կաթողիկոսութեան տեառն Գրիգորի, ի թվ. Հայոց ՋԺԵ. (1466), ի ղանութեան Ջհանշային: Զոր ցանկացող եղեալ յայս հոգիաբուխ սուրբ Աւետարանիս ոմն քրիստոսասէր քահանա Մաքէոս անուն, բազում ջանիւք և աշխատութեամբ ծախեալ զամենայն ինչս իւր և գնեալ զսուրբ Աւետարանս յիշատակ հոգո իւրոյ, և ամուսնոյ իւրոյ Սերովդիային, և ծնողաց իւրոց՝ հաւրն Սարգսի և մաւրն Խոնձի, և եղբաւրն Յովաննիսի, և զաւակաց իւրոց, և հաւրեղբաւրն Հազարաբէկին, և յարեանառու մերձաւորաց՝ կենդանեաց և ննջեցելոց...։

բ

նկարող՝ Ազարիայ
վայր՝ յերկիրս Գանձակայ

Դարձեալ... յիշեցէք... զնկարող սորա՝ զանարժան Ազարիայս, որ անուամբս կրաւնաւոր ձևանամ և գործովս մեկուսացեալ կամ, քանզի եղև նկարակերտութիւն սորա ի յերկիրս Գանձակայ, ի յաթոռս Գառնակերի, ի դուռն Ծաղկոցի սուրբ Աստուածածնիս և յայլ սրբութեանցս, ի կաթողիկոսութիւն տեառն տէր Յովհաննիսի, առ տեղոյս աթոռակալութեան տէր Ներսեսի արքեպիսկոպոսի /// ընդ երկայն արասցէ անսասան ի պարծանս մեր, ամէն և եղիցի, եղիցի։

Ընդ նմին յիշեցէք ի Քրիստոս զաշակերտն մեր զՄելքիսէթ կուսակրաւն աբեղայն, և զՍիմոն մահդասին, և զտնտես Կիրակոսն, որ բազում սպասաւորութիւն արար, և միաբանք սուրբ եկեղեցոյս, և զծնաւղս մեր՝ զհայրն իմ Բարսեղ քահանայն և զմայրն իմ զԽանումքարն, որք ի Քրիստոս փոխեցան։

Այլ և աղաչեմ զամենեսեան, զի բազում աշխատութիւս /// ծաղիկ աւարտեցաւ ՋԺԶ. (1467) թվականիս։ /// պարոնն Գանձակայ, և յայսմ ամի թագաւորն վրաց Կավ[ր]կի ձեռս /// ի Ղաւրղաւրոյ քաջոյն և թագաւորեցաւ Բագրատ, զոր տէր աստուած զաւրացուսցէ զաւրաւն իւրով և զյաղթութիւն ի վերայ թշնամեաց արասցէ, և ինքն թագաւորեսցէ. եղիցի անուն տեառն աւրհնեալ, որ բարին է՝ տէրն ղայն առաջնորդէ։

## 305

## ԱԻԾՏԱՐԱՆ

**Երևան 3992**

*գրիչ*՝ Ստեփաննոս Եպիսկոպոս
*վայր*՝ Գանձակի գաւառ, Լեղանի սուրբ Աստուածածին

ա

612 *Եւ արդ սկիզբն եղև գործառնութեանս այսմիկ նախախնամութեամբ սուրբ հոգւոյն յաստուածապահ գաւառիս* Գանձակայ, *ընդ հովանեաւ Լեղանի սուրբ Աստուածածնիս և արհիական յաթոռիս. եւ առաջնորդութեան իմոյ* Ստեփաննոս *յեպիսկոպոսիս սուրբ ուխտիս, և կաթողիկոսութեան տեառն* Յոհաննիսի, *և թագաւորութեանն վրաց* Գաւրկի, *և ղանութեան* Ջահանշահի*:

*Արդ, աղաչեմ զձեզ, ո՞վ գաս երամից, որք հանդիպիք տեսութեամբ կամ կարդալով՝ յիշեսջիք ի մաքրափայլ աղաւթս ձեր զհայրն իմ* Ղարամաճ, *և մայրն* Ոսլուս, *և եղբարսն /// պարոն* Պէկպողէն, Հատիր-Մէլիք, Թամուր-Պողա, Ղարէն, *և դեռայբուս եղբաւրորդին* Պարիեզ *դպիրն, և զքոյրն իմ* զՍարաւդիէն, *որ վասն հոգոյն ծաղկել ետ և կապել, և զմիւս քեերքն՝* զԱսլուլն *և* Խաթուն**։

բ

181 *Բարեխաւսութեամբ սուրբ աւետարանչիս Մատթէոսի Քրիստոս աստուած ողորմեա ստացաւղի սորայ* Սահակ *միայնակեցի և հաւր նորա* Աբրահամու. *եւ մեղապարտ գծողի սորա* Ստեփանոս *աբեղայի, և հաւրն իմոյ* Ղարամանի, *և եղբարց սորա ողորմեա Քրիստոս աստուած։*

գ

288 *Բարեխաւսութեամբ սուրբ աւետարանչացս չորեցունց ողորմեա Քրիստոս աստուած սուրբ գրոցս ստացաւղի* Սահակ *միայնակեցի, որ ջերմեռանդ սիրով և յոյժ փափաքմամբ ստացաւ զսա, և ինձ՝ բազմամեղ գրչի։*

դ

481 *Բարեխաւսութեամբ սուրբ աւետարանչացս ողորմեա Քրիստոս աստուած բազմամեղ գծողի սորայ* Ստեփանոս *մեռեալ ոգի միայն անուամբ եպիսկոպոսի և ստացողի՝* Սահակ *ծերի անյիշատակի։ Աղաչեմ յիշել ի տէր միով տէր-ողորմիւ, ո՞վ հանդիպողք սուրբ գրոցս, և դուք յիշեալ լիջիք ի տեառնէ։*

---

* *Վրաց Գեորգի* VIII *թագավորը իշխել է 1446—1466 թվականներին, իսկ Ջհանշահը, ինչպես հայտնի է 1437—1467 թվականներին. ուստի անթվական այս հիշատակարանը գրված պետք է լինի 1446—1466 թթ. միջոցին։ Պայմանականորեն դնում ենք գրության վերջին հնարավոր թվականի (1466) շարքում։*

** *Այս երկրորդ պարբերությունը (սկսած «Արդ, աղաչեմ»-ից) գրված է այլ ձեռագրով։*

## 306

### ՄԱՇՏՈՑ

Երուսաղէմ 1784

գրիչ՝ Յակոբ
վայր՝ Աղուանք, Գիլստան գիւղ

...Ի թվին ՋԺԵ. (1466), ի լաւ և ընտիր աւրինակէ, ձեռամբ... Յակոբ գրչի, ի գիւղս որ կոչի Գիլստան, որ է Վարդուդ, ի հայրապետութեան տեառն Թոմայի Աղուանից կաթողիկոսի, ի խնդրոյ Բարիոգ կրամաւորի։

## 307

### ԱԻԵՏԱՐԱՆ

Ե. Լալայան, Ջաւախք, Ազգ. հանդ., Բ. 1897, էջ 287—288

գրիչ՝ Յովսէփ
վայր՝ Ականց գիւղաքաղաք

Յետինն ի գրչաց և անարժանն արուեստաւորաց սուտանուն քահանան, յերկիրս Քաջբերունեաց, ի գիւղաքաղաքս Ականց կոչեցեալ, ընդ հովանեաւ գեղեցկաշէն տաճարիս Թադէոսի առաքելի, սուրբ Յակովբի հայրապետի, և սուրբ Սարգսի զորավարի, և Ծիրանաւոր սուրբ Աստուածածնի, ի յառաջնորդութեան երկրիս և մերս գաւառի ուղղափառ քաջ և արի րաբունապետի Յովհաննէս վարդապետի և տէր Յովհաննէս եպիսկոպոսի, ի հայրապետութեան Հայոց տէր Ըստակէսի, ի թուին Հայոց ՋԺԵ. (1466) ամին, և ի խանութեան Ջհանշային, որ այս երկու ամ է զԹաբէզըն ի յոտի արար ի վերայ խանին, և նմա ոչինչ կարացան առնել։

## 308

### ԳԱՆՁԱՐԱՆ

Երևան 425

գրիչ՝ Ատոմ
վայր՝ Արծկէ

35ա Փառք... որ ետ կարողութիւն սխալամիտ և տկար ոգոյ Ատոմի հասանել յաւարտ Գանձարանիս, յամի ՋԺԵ. (1466) թըւականիս, ի խընդրոյ բարէմիտ Յովանիսին, զոր ըստացաւ զԳանձարանս ի հալալ վաստակոց իւրոց յիշատակ իւրն, և ծնողացն իւրոց Գորգուն*, և կողակցին իւրոյ Խոնդքարին, և զաւակաց իւրոց պարոն Գորգուն և Ամիրբէկին, եւ առաւել Սոնենց Ստեփանոս քահանային, ամէն։

Եւ արդ, գրեցաւ սուրբ Գանձարանս ի քաղաքս Արծկէ, ընդ հովա-

* Տողամիջում, այլ ձեռագրով ավելացված է՝ «և ուր խարսին՝ Խանումին»։

նեաւ սուրբ Աստուածածնին և պատերազմի սուրբ Նշանին և նախավկայ սուրբ Ստեփանոսին, ձեռամբ յոգնամեղ և անարհեստ գրչի Ատոմ սուտանուն քահանայի, որ մեծաւ աշխատութեամբ գրեցի զսա յիշատակ հոգւոյ խոջայ Յովանիսին, և կենակցին իւրոյ Խոնդֆարին, և որդոցն՝ պարոն Գորգուն և Ամիրբէկին, և ամենայն արեան մերձաւորացն...։

353բ ... Դարձեալ, յերես անկեալ աղաչեմ յիշել ի տէր զմեղուցեալ գծողս զԱտոմ քահանայ, և զծնաւղսն իմ զՄկրտիչ և զԽալինար, և զպատանեակն իմ զՅակոբ, և զուսուցիչն իմ զԿարապետ կրօնաւոր, և զԹումա մահղասի, լի բերանով աստուած-ողորմի ասացէք և աստուած ձեզ ողորմի, ամէն։

Բ

11բ Ո՛վ եղբարք, անմեղադիր լերուք, զի աւրս ցուրտ է։

## 309

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Փրզ. Նօտ. 225—226, Արճէշ՝ Արծուաբեր Աստուածածնի (Սուխորայ) վանք*

գրիչ՝ Ատոմ
վայր՝ Արծկէ

... Եւ ես՝ անպիտանս յամենայնի մեղուցեալ գրիչս Ատոմ... ձեռնարկեալ գրեցի զսուրբ Աւետարանս ի քաղաքս Արծկէ, ընդ հովանեաւ ամենամաքուր սուրբ Աստուածածնի տաճարիս, և սուրբ Ստեփաննոսի նախավկայիս, և ամենազօր սուրբ Նշանիս պատերազմի, ի հայրապետութեան տեառն Գրիգորի ընդհանուր Հայոց կաթուղիկոսի, իսկ յաշխարհակալութեան Ջհանշայի՝ որդւոյ Ղարայ-Ուսուֆին, ի թուականիս մերում ՋԺԵ. (1466) ամի։

## 310

## ԳԱՆՁԱՐԱՆ

*Երևան 3376*

գրիչ՝ Մկրտիչ
վայր՝ Աղթամար

240բ ... Արդ, այսմ գաղափարութեան ցանկացաւղ եղև հաւատարիմ և իմաստուն աստուածասէր քահանէն Յովանէս, և ստացաւ զսա ի հալեալ արդեանց իւրոց յիշատակ հոգոյ իւրոյ, հաւրն Դամուրին, և մօրն Ամբարին, և կենակցին Մարեմին, և եղբօրն Սիրունին, և հօրեղբաւրն Ստեփանոսին, և կենակցին Մարգըրտին, Սադաղին, կենակցին Դովլաթին, Աւետիսին, Հաս-Հաքունին, տէր Կարապետին* և զայլ ամենայն արեան մեր-
241ա ձաւորացն՝ կե||նդանեաց և հանգուցելոցն...։

* Երեք տող դատարկ է թողնված ստացողի մյուս ազգականների անունները գրելու համար։

Եւ արդ, ես… անյիշելիս ի գըրչաց Մըկըրտիչ… գծագրեցի զսա մեղսամած մատեամբ իմով, մեծաւ աշխատութեամբ, յաստուածախնամ կըղզիս Աղթամար, ընդ հովանեաւ հըռչակաւոր և երկնանման կումբէթայարկ սուրբ Խաչի տաճարիս, և ի հայրապետութեան տեառն Ստեփանոսի, և ի թուականութեան հռկազան տամարիս ՋԺԵ. (1466)…։

241բ … Դարձեալ, աղաչեմ… յիշման արժանի առնէք ղանարժանութիմս իմ, նաև զծնաւղքն իմ զԹումա և զՇահըլըմբաք, և զեղբարքն իմ զԽաչատուր և զՍախմադին և զԱզատբէկ, և զքուրքն իմ զՍալի-Փաշէն ու զՀաթու-Փաշէն, և ըզհաւրեղբարքն իմ, և զայլ ամենայն արեան մերձաւորքն…։

## 311

### ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

Փիրդ. Նօտ. 225, Աղթամար

գրիչ՝ Իսրայէլ
վայր՝ Մոկաց երկիր, Փասավանf գիւղ

… Արդ, գրեցաւ սա… յերկիրս Մոկաց, ի գեղս որ Փասավանf կոչի, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս և սուրբ Գրիգորիս և սուրբ Կարապետիս, ձեռամբ մեղաւոր Իսրայէլ գրչիս… և ի թուաբերութեանս Հայոց ՋԺԵ. (1466) ամին, ի զանութիւն Ջհանշին, և ի հայրապետութիւն նորընծայ տէր Ստեփաննոսին Աղթամարայ… բարեխօս լերուք առ Քրիստոս, որ պահէ ղգասս քահանայից սուրբ ուխտիս Առբերդոյ վանիցս՝ զԽաչատուր ստացող տառիս, և զերախտաւոր վարպետն զտէր Մկրտիչն, և զտէր Կարապետն, և զտէր Մարտիրոսն, և զրաբունապետն զԿիրակոս վարդապետն, և զՆերսէս հերպետն, և զՍտեփաննոս ճգնաւորն, և զՅովանէսն՝ Բելւեցին, և զՅովաննէս Աղթեցին, և զտէր Աւետիսն, և զտէր Մարտիրոսն, և զԱստուածատուր սարկաւագն, և զՊօղոս մաճակալն, և զտնտես զՍտեփաննոսն, և զշաղացպան Մարտիրոսն, և զՄկրտիչ հովիւն, ամէն։

Արդ, անկեալ յերես աղաչեմ զդասս քահանայիցդ, որ կայք ի սպասաւորութիւն Առբերդոյ վանից սուրբ Աստուածածնիս, և Առբերդոյ տանուտրայք և տանտիկնայք, զձեր ազն ու հացն, որ ի գրել գրոցս կերաք՝ մեզ հալալ արարէք, և խոշորութեան գրոցս անմեղադիր կալաք, զի կար մեր այս է։

## 312

### ՄԱՏԵԱՆ ՈՂԲԵՐԳՈՒԹԵԱՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑՒՈՅ

Փիրդ. Նօտ. 226, Նարեկա վանք

գրիչ՝ Յովհաննէս
վայր՝ Մոկաց գաւառ, Դաշտ գիւղ

… Կատարեցի ես՝ անարժանս և մեղօք ղառածեալս Յովհաննէս անուն… զկտակ մաղթանաց ամենագով սուրբ և հանճարեղ մեծանուն

Գրիգորի Նարեկացւոյ ...որում ցանկացող եղեալ Յոհաննէս քահանայն...։ Բայց գրեցաւ ի թուականիս Հայոց ՋԺԵ. (1466), ի գաւառիս Մոկաց, ի գեղս որ Դաշտ կոչի, ընդ հովանեաւ Անշողաց սուրբ Աստուածածնին և սուրբ Յակոբ հայրապետիս։

## 313

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 4123

գրիչ՝ Մխիթար
վայր՝ Մոկաց գաւառ, Բռնաշէն գիւղ

311ա [Աւարտեցաւ]... ի մեծ թուիս յեղանակ շրջագայութեան արեգական ստորիջիւք երկնաշու ճանապարհաւ՝ երկնից յերկիր հայելով, ըստ արարչութեանցն չափեալ՝ յելանելոյն Ադամայ ի դրախտէն մինչև ցայսր ամք ՑՊԽԱ. (6841), իսկ ի Հայոց թուականիս ՋԺԵ. (1466), ի յերկիրս Մոկաց, ի գեաղւս որ կոչի Բռնաշէն, ընդ հովանեաւն աստուծոյ, ի հայրապետութեան տեառն տէր Ստեփաննոսի և պարոն Սմբատայ, ի թագաւորութիւնս Հայոց՝ ի յանմահ թագաւորնին, որ տէր է երկնից ///** և յաշխարհէս խիստ մահրամ եղաւ և յաստուծոյ փառաւորեցաւ. և յիւր դատ-
311բ մանէն || և դառն աշխատանացն եւ դրել զսուրբ աստուածախաւս Աւետարանս յիշատակ հոգոյ իւրոյ, և ծնողացն, և եղբաւրն Յովսէփին, որ մեռաւ ի ղարիպութիւն՝ կարաւտաց[ա]ծ յիւր սիրելեացն...։

Դարձեալ, սրտայհառաչ ձայնիւ և արտասուալի դիմաւքս աղաչեմ զլուսայպայծառ և սրբայսնունդ մանգունքդ սուրբ եկեղեցոյ՝ քահանայք և ընթերցողք, որք հանդիպիք այս շնորհալից Աւետարանիս կարդալով կամ աւրինակ դնելով և ինձ՝ մեղայպարտ գրչիս Մխիթարիս աստուածողորմի ասացէք լի բերան, և ծնողացն մերոց Յոհանէս քահանային, և մաւր Մարթային, և զաւակն մերոց՝ Յովանէս սարկաւագին, և Առաքել
312ա սարկաւագին, և Մկր[տ]չին, և Կարապետին, և Սարգսիս, և || Ստեփանոս սարկաւագին, որ փոխեցաւ առ աստուած, և Ասեթին:

Եւս առաւել յիշեցէք զմեղաւոր գրիչս, և զկողակիցն մեր /// զեղբայրն իմ զԳրիգոր քահանայն, և զաւակս իւր զԿարապետ սարկաւագ, և զԽալիֆայ սարկաւագն, և զմեծ պապերքն իմ զԱստուածատուր քահանայ և զԳրիգոր քահանայն, և զհաւրեղբարքն իմ զՍտեփանոս քահանայ, և զորդին իւր զԳրիգոր քահանայ, և զՄկրտիչ քահանայ, զԱռաքել քահանայ, զԹումայ քահանայ, զվարպետն իմ զԱսում քահանայ, և զԹումայ քահանայ, և զամենայն արեան մերձաւորքս մեր, զՅովանէս և զԿարապետն...:

---

* Բնագրում՝ «ճանապահարաւ»։

** Ամբողջ ձեռագրի և հատկապես հիշատակարանի թերթերը միմյանց կպած են եղել. ապա պատռած լինելով շատ տեղերում դարձել են անընթեռնելի։

Այստեղ անընթեռնելի է մոտ 14 տող։

## 314

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Փիրղ. Նոտ. 226, Բերկրի, Ցուսկան որդու վանք*

*գրիչ՝* Իսրայէլ
*վայր՝* Մոկաց երկիր, Փասավանք գիւղ

*...Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի յարքունական երկիրս* Մոկաց, *ի գեղ անապատիս որ* Փասավանք *կոչի, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, և սուրբ Գրիգորիս, և սուրբ Կարապետիս, և այլ սրբոցս, որ աստ հանգուցեալ կան, ի թուականիս Հայոց ՋԺԵ. (1466) ամին, ի հայրապետութեան նորընծայ կաթուղիկոսի տէր* Ստեփաննոսի *և թագաւորին* Սմբատայ, *ձեռամբ մեղաւոր և անարժան գրչի* Իսրայէլ *սուտանուն ի կարգաւորաց... և զերախտաւոր վարպետք մեր զ*Մարգարայ Կռռեցին *և զ*Վարդան *մահտասին, որ մականուն* Մաքի *կոչի՝ լի բերանով ասացէք աստուած-ողորմի...։*

## 315

### ԳԱՆՁԱՐԱՆ

*Փիրղ. Նոտ. 227, Մշոյ ս. Յովհաննու վանք*

*գրիչ՝* Ստեփաննոս
*վայր՝* Եղրդոտ վանք

*... Գրեցաւ Գանձատետրս ի թվիս Հայոց ՋԺԵ. (1466), ընդ հովանեաւ սուրբ Յովհաննիսին, և սուրբ Աստուածածնին, և սուրբ Ստեփաննոս նախավկային* Եղըրդոտ *կոչեցեալ, ձեռամբ* Ստեփաննոս *գրչի, յառաջնորդութեան սուրբ ուխտիս տէր* Յովանէս *հերպետի և տէր* Յովհաննէս *եպիսկոպոսին, նաև այլ միաբանից՝ մեծի և փոքու։*

*Այս ամենայն եկն ի վերայ մեր վասն ծովացեալ մեղաց մերոց, քանզի յայսմ ամի քակեցին զբերդն* Մշոյ *և շատ չարիք արարին։ Եւ* Ջհանշէն *զ*Պաղդատն *էառ և երկու ամ ի խսար պահեց**։*

## 316

### ՃԱՇՈՑ

*«Թորոս Աղբար», Բ., էջ 479,*
*Չնքուշի Սիրտհայեաց ս. Աստուածածնի վանք*

*գրիչք՝* Յակոբ և Պաւղոս
*վայր՝* Խարբերդ

*... Գրեալ ի թվ. ՋԺԵ. (1466), ձեռամբ Բ. (2) գրչաց՝* Յակոբ *քահանայի և* Պաւղոս *սարկաւագի, ի* Խարբերդ *քաղաքի, ի թաղն* Սինամուտ,

* *Այս հիշատակարանին Փիրղալեմյանը ծանոթացել է Ա. Թոխմախյանի միջնորդությամբ։ Վերջինս սովորաբար հիշատակարանների բնագրերի փոխարեն ընդօրինակել է միայն նրանց հիմնական բովանդակությունը, այն էլ վերապատմելով հաճախ իր խոսքերով։ Հիշատակարանի վերջին նախադասությունը հավանաբար պետք է եղած լինի այսպես. «Եւ Ջհանշէն զՊաղդատն երկու ամ ի խսար պահեց և էառ»։*

*ի կաթողիկոսութեան տեառն* Սարգսի *և յեպիսկոպոսութեան տեառն* Յոհաննիսի, *և ի ամիրայութեան* Հասան-խանի, *ի խնդրոյ տէր* Յոհ[աննէս] *եպիսկոպոսի, ընդ հովանեաւ սուրբ Սարգսի զաւրավարին... ի յիշատակ իւր ծնողացն՝* Լիպարտին *և* Մանանային...:

## 317

## ԳԱՆՁԱՐԱՆ

*Մ. Աթոռ 53, «Էջմիածին» 1951 թ. ապրիլ—հունիս, էջ 88*

Սամուէլ Նաղաշ
*վայր՝* Երզնկա

313բ—314բ *Արդ, գրեցաւ եղանակաւոր տառս, որ կոչի Գանձատե[տ]րն ի մայրաքաղաքիս* Եզընկա, *ի գաւառս* Եկեղեաց, *ի յանապատս որ կոչի* Կապոսի ... *ի հայրապետութեան տէր* Սարգիս *արքեպիսկոպոսի, ի թվին ՋԺԵ. (1466), մայիս ամսո Ի. (20)....*

*Դարձեալ յերես անկեալ աղաչեմ, յիշեցէք ի սուրբ աղաւթս ձեր զքաղցրաձայն փիլիսոփայն զտէր* Մարգարէն, *նաև զմիւս վարդապետն զտէր* Երեմիայն՝ *պալեաւք ծերացեալն և զառաքինութեամբ զարգ[ար]եալն, նաև զգրոց աշակեր[տ]քն զտէր* Յովանէսն, *զտէր* Մաղաքիայն, *զտէր* Մարտիրոսն, *և զտէր* Աւետիս *սուրբ կրաւնաւորն, զտէր* Աստուածատուրն:

*Դարձեալ, յիշեցէք զնորաբողբոջ կուսակրաւն կրաւնաւորքս՝ զտէր* Աբրահամն, *զտէր* Պետրոսն, *զտէր* Աստուածատուրն, *զտէր* Սարգիսն, *և զտնտեսն զ*Կիրակոսն...:

*Արդ, աղաչեմ զամենեսեան յիշեցէք ի սուրբ աղաւթս ձեր զանպիտան և զփց[ում///* Սա]մուէլ Նաղաշն *և զպապ[ն///, զմայրն իմ զ*Գոհարն, *և զ*Մկրտիչն....

*Դարձեալ, աղաչեմ յիշեցէք զհաւրեղբայրն զտէր* Մանւէլն *և զհաւրաքուրն իմ զ*Մանխարն (*) *և զ*Յուդիտան *և զ*Մարգարիտն: *Անմեղադիր լերուք սղալանաց և խոշորութեան գրոյս, աղաչեմ, աղաչեմ։*

## 318

## ՃԱՇՈՑ

*ՍՕՀ հտ. Ա. 135, էջ 234—238*

*գրիչ՝* Հայրապետ
*վայր՝* Անաւարզա

ա

1025ա ... *[Յիշեցէք] զստացող սորա* Մաքէոս *քահանայն, որ ստացաւ զաստուածաշունչ կտակարանքս ի հալալ վաստակոց իւրոց, վայելումն անձին իւրոյ և յիշատակ հոգոյ, և ծնողացն իւրոց* Ստեփանոս *քահանային, և մաւրն իւր* Մարգարտին, *և աստուածատուր որդոցն իւրոց* Եսայի *սարկաւագին, որ բազում աշխատութեամբ զթուղթն կոկեաց, և* Մարուգէին, *և մաւրն իւրեանց* Ջուհարին, *և մեծ պապուն* Աբէլին, *և պապուն* Աբրահամին...:

Արդ, եղև սկիզբն դրոյս և աւարտումն ի թուականութեանս Հայոց ՋԺԵ. (1466), ձեռամբ Հայրապետ եպիսկոպոսի, ի յամուրս Անաւարզա, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին և այլ սուրբ Նշանացս որ աստ կան, ի կաթուղիկոսութեան տէր Ստեփանոսի Շաղրցոյ, վասն որոյ աղաչեմ զամենեսեան՝ զհանդիպողքդ այսմ մատենիս, որ ուրախու///

## բ

1024բ Արհնեալ է աստուած յամենայն ժամ, որ յանկ եհան զմատեանս աստուածային, որ կոչի Ճաշոյ դիրք, որ սկիզբն արարաք փետրուար ԺԷ. (17), և աւարտեցաւ հոկտեմբեր ԺԸ. (18). ապա ամիս մի հիանդ կեցաւ։

## գ

319 Զաշակերտս քո՝ զՎարդան դպիրս յիշեայ, ո՛վ սուրբ հայր Հայրապետ, որ ի խաչէն գրեսւ

## 319

## ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

*Բէռուպ գիւղ Անախոքայ, «Սիոն» թերթ, հա. Ա., էջ 99, Մ.Տ.Մ.*

Գրեցաւ ի յաշխարհս Շամիա, ի յերկիրս Սակունեաց, ի վանս սուրբ Աստուածածնի, ընդ հովանեաւ սուրբ Գէորդայ, դէմ յանդիման դեղջն յԱրամու, թվ. Հայոց ՋԺԵ. (1466), Թումա եպիսկոպոս, Սիմէոն քահանայ Մանդեանց եկեղեցւոյ։

## 320

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 7631*

գնող՝ Յովանէս
վայր՝ Ղրիմ

## ա

334ա ...Ի թվականութեանս Հայոց ՋԺԵ. (1466)-ին, ի հայրապետութեանն տեառն Ըռբսակէսի, և արհիեպիսկոպոսութեան տէր Մաղաքիաս սըրբասնեալ հայրապետի ամենայն հիւսիւական կողմանց։

Արդ, ի յայսմ ժամանակի ցանկացող եղև աստուածային հրամանիս և անկողոպտելի գանձիս պարոն Յովանէս բարեպաշտ և աստուածասէր տանուտէրն, և գնեաց զսա ի հալալ արդեանց իւրոց յիշատակ իւր, և ծնաւղաց իւրոց պարոն Մանուկին և Շիրին-Մէլիքին, և կենակցին իւրոյ Անեայ-խաթունին, և զաւակաց իւրոց Խաչերեսին, Զապլու-խաթունին և Եղիսաբեթ-խաթունին, որ տարաժամ մահուամբ և տղա հասակաւ առ Քրիստոս փոխեցան։ Այլ և քվերն իւրոյ՝ փոխեցելոյն ի Քրիստոս Ասլի-Մէլիք իրիցկնոշն, այլ և զկենդանիքն և զազգատոհմսն իւր՝ զեղբայրն իւր զպարոն Կարապետն, և զքւերորդին իւր զՅովանէս քահանայն, զի յոյժ յորդորեաց զքեռին իւր զպարոն Յովանէսն, որ գնեաց զսուրբ Աւետարանս, և եդ յիշատակ ի սուրբ Նիկաւլայոս եկեղեցին...։

Բ

335բ *Ես* Յովաննէս՝ *որդի պարոն* Մանուկին, *գնեցի զսուրբ Աւետարանս ի* Յովաննէս *իրիցուէ, որ է որդի* Յակոբ *քահանային սուրբ Քառասնիցն՝ ՌԲՃ. (1200) սպ[իտակ], միջնորդութեամբ* Գրիգոր *քահանային, վկայութեամբ ճոն* Գրիգորին *և* Վարդերեսին *և խաղաղ* Սովնշպէկին, *յիշատակ մեզ և մեր ննջեցելոցն, ամէն։*

## 321

## ԳԱՆՁԱՐԱՆ

*Երևան 8373*

*գրիչ՝* Յոճաննէս
*վայր՝* Կաֆայ

172բ *... Արդ, գրեցաւ տառս եղանակաւոր՝ գանձս և քարոզս աստուածայայտութեան և տաւնից տէրունականաց, ծննդեան և յարութեան, խաչի և եկեղեցոյ, գալստեան և ողոգոմենից, պահոց և մարտիրոսաց, առաքելոց և մարգարէից և ամենայն սրբոց համայնից ի թուակա[նութեանս] Հայոց ՋԺԵ. (1466), ի յետին և ի դառն ժամանակիս, ի մայրաքաղաքս ի* Կաֆայս, *առ ոտս սրբոյն Մինասայ, ի հայրապետութեան տեառն* Գրիգորի, *և արհիեպիսկոպոսութեան տէր* Մաղաքիաս *սրբասնեալ հայրապետի և տէր* Յովաննէս *եպիսկոպոսի, ձեռամբ նուաստ և անպիտան գրչի* Յոճաննէս *արեղի, ի խնդրո* Յովանէս *քահանայի, ի վայելումն /// եկեղեցւոյն։*

173ա *Արդ, աղաչեմ զամենեսեան որք || հանդիպիք այս սուրբ տառիս քաղցրանուագ Գանձարանիս յիշեսցիք ի տէր զ*Յովաննէս *պատուելի քահանայն, և զծնաւղսն իւր, և զաշխատողս ի սմա, և զսուրբ եկեղեցւոյս զժողովուրդքն, և զծնաւղսն իւրեանց, նայ և զիս զանպիտան գրիչս, և զծնաւղսն մեր։ Եւ որք յիշեն և ողորմի ասեն նա ինքն, որ ողորմած աստուած է՝ ողորմի իւրեանց հոգուն, ամէն։ Եւ վասն խոշորութեան և սխալանաց գրիս չի մեղադրելոյ, զի հոգ աշխարհիս և զբաղումն կենցաղոյս տեգերեալ երերէ զմեզ։*

*Այլ և յիշողք և ոչ մեղադրողք յիշեալ լիցին Յիսուսէ և ի Քրիստոսէ, ամէն։*

## 322

## ԳՐՈՒԹԻՒՆՔ ՎԱՐԴԱՆԱՅ ՄԱՐԱԹԱՑԻՈՅ

*«Միաբանք և այցելուք Երուսաղէմի», էջ 247—248*

*գրիչ՝* Մանուէլ
*վայր՝* Երուսաղէմ

*Արդ, գրեցաւ սա ի սուրբ և յաստուածակոխ քաղաքս* Երուսաղէմ, *ընդ հովանեաւ սուրբ հրեշտակապետացս Գաբրիէլի և Միքայէլի և ամենայն երկնաւոր զաւրացն, որ է տեղիք չարչարանաց փրկչին, ուր զառաջինն ապտակեցաւ, և ետուն Աննա քահանայապետին։ Այլ և աստ էջ*

Քրիստոս եկնաւոր զաւրաւքն ի փոխումն Տիրամաւրն, և վասն այն ասի սուրբ Հրեշտակապետք։

Աստ գրեցաւ սա ի թվիս Հայոց ՋԺԵ. (1466), ձեռամբ մեղսաթաւալ և տխմար գծողիս՝ անպիտան Մանուէլի, ի խնդրոյ Աբրահամ քահանայի՝ հաւր վանից սուրբ Յովհաննու Մկրտչին Լեռնակողմանն, ի պատճառս աղաւթից և ի մխիթարութիւն հոգևոր ի յաղաւթել ի սուրբ անաւրինականքս Քրիստոսի աստուծոյ մերոյ...*։

## 323

## ՄԱՇՏՈՑ

«Թորոս Աղբար», Ա. էջ 231–232, Բ. էջ 337—38

գրիչ՝ Հէրապետ

... Աւարտեցաւ սուրբ տառս, որ այժմ Մաշթոց կոչի բոլոր ի յամի ՋԺԵ... (1466), ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի տաճարիս և սուրբ Գէորգեայ զաւրավարին ի /// և յեպիսկոպոսութեան այս նահանգի տէր Ստեփաննոս վարդապետի և տէր Յովհաննէս եպիսկոպոսի՝ ծաղկեցուցէ զնոսա տէր աստուած ի վերայ ծաղկեալ գաւազանի իւրեանց։ Եղև լրումն սուրբ Մաշտոցիս ձեռամբ սուտանուն քահանայի Հէրապետի: Յիշեցէք զստացող գրոցս զբարեպաշտ և զերկիւղած կինն Սալչուկ-խաթունն ի բարի արմատոյն շառաւեղ... յիշատակ իւր և ծնաւղաց նորին Ստեփաննոսին, Գուլիզարին, և ջոջ պապուն Սերուն աղին, և մամուն Հէրմէլիքին...։ Յիշեցէք զՍալչուկ-խաթունն, և զայրն իւր զՋանիբէկն, և զզաւակսն իւրեանց զպարոն Գորգն, Մուսէնն, Շամշատինն, Մկրտիչն, Բուսէրն,** Նուբարն, Ալղուն, և զամենայն արեան մերձաւորսն... ղխաւչայ Մալհամն, և զծնողսն իւր՝ զՆիկողոսն և զՓիրուզբախդն***, և կողակիցն իւր զԲէկկիխաթունն, և զդեռաբոյս զաւակն իւրեանց զԴարմանն...։

Կրկին յիշեցէք ի Քրիստոս զՍալչուկ-խաթունն, որ կանգնաւ եկեղեցւոյ գլխոյն շինելոյ, ՃԾ. (150) թանկայ ութին ու քարին ետուր, ու նոր նորոգեցին...։ Եւ զՋանիբէկն յիշեցէք ի Քրիստոս աստուած, և զծնողսն իւր զՄարգարէն և զԹանգ-խաթունն...:

Յիշեցէք զՍալչուկ-խաթունն, և քուերս իւր զՀամօշն, զՍադաղէն, և զՋուլբարն****, զփեսէն զխաչատուրն, և զայլ քուերսն զԲէկին, զԱյմելիքն... զՀէրմէլիքն...:

Եւ արդ, ես՝ յետինս քահանայից և անիմաստ ի գիրս գրչութեան Հէրապետս... զիմ անարժան երեսս ձեզ ի գետին դնելով աղաչեմ... յիշեցէք զծնողսն իմ զՅովանէսն և զՍուլդան-Մէլիքն, և զզաւակս իմ զնորընծայ

* Ձեռագրի երկրորդ մասը (Եփրեմի, Մեսրոպ Մաշտոցի և Գր. Լուսավորչի աղոթքները) ընդօրինակել է նույն վանքում Սարգիս գրիչը, «ի յիշատակ և ի վայելումն որբասէր կրաւնաւորի Աբրահամ աբեղային, սպասաւոր Յովհաննու Լեռնակողմանն... Թվ. ՋԺԸ. (1469), մայիս ԺԵ. (15)»:

** «Թորոս Աղբար» Ա. հատորում՝ «Բուսէն», Բ. հատորում՝ «Բուրսէն»:

*** «Թորոս Աղբար» Բ. հատորում՝ «զԲէրուզբախն»:

**** «Թորոս Աղբար» Ա. հատորում՝ «Գուլնարն»: